# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ի ՍԿԶԲԱՆԷ ԱՇԽԱՐՀԻ

ՄԻՆՉԵՒ

ՑՄԵՐ ԺԱՄԱՆԱԿՍ




Digitized by Google

# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ի ՍԿԶԲԱՆԷ ԱՇԽԱՐՀԻ ՄԻՆՉԵՒ ՑՄԵՐ ԺԱՄԱՆԱԿՍ

ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ

## Հ. ՅՈՎՍԵՓԱՅ Վ. ԳԱԹԸՐՃԵԱՆՑ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷ

Ի ԽՆԴՐՈՅ

ՔԱՋԱՆՈՒՆ ԵՒ ՀՈՅԱԿԱՊ

ԻՇԽԱՆԻ

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՄԻՐԱՅԻ

ՏԱՏԵԱՆՑ

ԵՒ ՆՈՐԻՆ ԾԱԽԻՒՔ ԴՐՈՇՄԵԱԼ

---

ՀԱՏՈՐ Բ.

Միջին պատմութիւն


84/2



Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

ՌՄՅԱ 1852

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Վասն վախճանի եւ վասն սկզբանց ինչ որովք յօրինեցանն եւ որովք յօրինեցին մասունք մատենիս՝ խօսեցաք ի յառաջաբանի առաջնոյ տումարին բաւականութեամբ։

Մի ինչ միայն է որ զընթացս այսր տումարի՝ որ առաջիս կայ, այլակերպ քան զառաջինն ցուցանիցէ, այս ինքն՝ ներքին ընդարձակութիւն պատմութեանն, որպէս վաղ իսկ ի նմին յառաջաբանի կանխեցաք ասել՝ հանդերձ պատճառաւն։

Բովանդակեալ ունի հատորս զպատմութիւն դարուց իբրեւ հնգից, զայնպիսի ինչ ժամանակաց՝ որ հոծ եւ խիտ են քաղաքային, եկեղեցական եւ մեր իսկ տոհմային իրօք։ Զերեսին զոսա այնպէս չէր դիպող զատեալ եւ ուրոյն ի միմեանց գրել ամբողջութեամբ եւ իմանալ ճշդութեամբ՝ որպէս չենն իսկ դիպեալ որդեամբք զատեալք եւ ուրոյնք ի միմեանց՝ առանց ազդեցութիւն յիրեարս գործելոյ։ Եթէ հարկ իցէ կիրթ մարդոյ գոնեայ զընթացս իմն տիեզերական պատմութեան ունել նկարեալ ի մտի, ապա այսց ժամանակաց տեղեկութիւն առաւել քան զայլոցն կարեւոր է այնպիսւոյն իբրեւ քաղաքացւոյ, իբրեւ քրիստոնէի, եւ մանաւանդ՝ իբրեւ արեւելեան առն։ Նա եւ հանգամանք իսկ ժամանակացս, որպէս Թուի, առաւելուն իմն զաստիճան կարեւորութեանն։

Աղբիւրք կամ օգնականք՝ զորս ի կիրն արկաք, մանաւանդ թէ խմբագրեցաք իսկ ի նոցանէ, են՝ Թիլլմոն, Շթօլպերկ, Քաթէրքամփ, Ռիթթէր, Ալցոկ, Ափորշել, Փէրմանէտէր, Մէօլէր, Գէսլէր եւ այլք բազումք։

Ի դէպ է իսկ եւ իսկ նշմարել ընթերցանելեացն ինչ ինչ նոր ի պատմութեան տոհմային իրաց՝ եւ ըստ նիւթոյն եւ ըստ կերպարանացն։ Յայդ իսկ ածէր զմեզ հարկ պաշտամանն գրելոյ պատմութիւն տիեզերական։ Այս ինքն՝ ոչ ուրոյն ինչ ինքնագլուխ

GRAD
V.2
BUHR

դիտել զՀայոց պատմութիւն, այլ ի ճշմարիտ կայանին՝ ի դիրս կարգի տիեզերական պատմութեանն զետեղել։ Ի դոյն հարկ էր այնուհետեւ զբովանդակն եւ զմասունսն ընդ այնմ ամենայնի բերել ի կշիռ համեմատութեան, ընդ որում անկ էր նոցա միաբանել։ Յետ այնորիկ վասն որոշելոյ ինչ՝ կարեւոր պիտոյ էր զառանց աչառութեան բանադատութիւնն արկանել ի կիր եւ ջանալ ուղղել զայն ինչ՝ որում կարօտութիւնն եւ հնար գոյր ուղղելոյ։ Իսկ զճառս եկեղեցական իրաց եւ մատենագրութեան Հայոց այլում ընդարձակագոյն տեղւոյ եւ ժամանակի պահեմք։

Որպէս յայլում ամենայնի՝ նոյնպէս եւ ի սմին ոչ այլ ինչ կայր մեր ի մտի՝ բայց ջերմեռանդն սէր ճշմարտութեանն, այն՝ զի չճգնիմք զուր զարեգակնային ժամացոյց տիեզերացս ուղղել ըստ ժամացուցին զոր ի ծոցի մերում գտանեմք, այլ զսա մանաւանդ ըստ նմին յերիւրել՝ որչափ ինչ հնարն իցէ։ Սակայն եւ ոչ զայն ժպրհիմք ասել՝ թէ ամենայնիւ կատարեալ ինչ եւ անվրէպ առաջի ընծայեցաք, այլ զայս իմն բաւական համարիմք՝ եթէ զփուտ եւ զանհաստատ յատակն ի բաց պեղեցաք եւ զմասն մի ի հիմանցն զետեղեցաք։

Թողումք այսուհետեւ ընթերցանելեաց զայլն եւս ամենայն ընթացս մատենիս ինքնին առնուլ ի միտ եւ գտանել միանգամայն զօգուտն՝ որում ունիմք անվրէպ ակն, եթէ հաճեսցի ամենախնամին Տէր օրհնել զջոյզն վաստակ ձեռաց մերոց։ Առաւել ինչ քան զայս՝ ոչ Բարերարն աղնուական պահանջէ եւ ոչ վաստակաւորն։

Digitized by Google

## ՊԱՏԿԵՐ ՀԱՏՈՐՈՅՍ



# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### ՅԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ



---

# ՄԻՋԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

### Ի ԾՆՆԴԵՆԷ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՄԻՆՉԵՒ ՑԳԻՒՏ ԱՄԵՐԻԿԱՅ (1—1500)

## Ա.

### Յառաջնոյ մինչեւ ցԿոստանդիանոս ցՄԵԾՆ (1—313 կամ 324, ժամանակ իբրեւ 300 ամաց)։



* *


Digitized by Google

## Գ. Հռոմէական պետութիւն եւ եկեղեցի Քրիստոսի:

### Ա. Տոհմն կեսարեայ — Առաջին հալածումն քրիստոնէից — Աւեր Երուսաղեմի (1—70):



### Բ. Հայք առ կայսերօք կեսարեան տանն (ըստ տոհմային պատմագրաց): Առ հասարակ քաղաքային հանգամանք արեւմտեան Ասիոյ եւ առանձինն աշխարհացն սահմանակցաց Հայոց: Ուռհայաստան — Արշամ, Աբգար, Անանուն, Սանատրուկ եւ Երուանդ (34 նախ քան զՔր. — իբրեւ 80 յետ Քր.):



### Գ. Հայաստան (եւ Պարթեւաստան) առ կայսերօք կեսարեան տանն (ըստ արտաքին պատմագրաց): Արտաշէս (Բ.), Տիգրան (Բ.), Տիգրան (Գ.) Կրսեր, Արիոբարզան, Արտաւազդ (Բ.), Տիգրան (Դ.), Ոնոն, Արշակ (Բ.), Ռադամիզդ, Տրդատ (Ա.) (34 նախ քան զՔր. — իբրեւ 80 յետ Քր.):



Digitized by Google

Digitized by Google

Բ. Կոստանդիանոս Բ., Կոստաս, Կոստանդիոս, Յուլիանոս Ուրացեալ (355—363) — Յուլիոս, Լիբեր, Աթանաս, Հիլարիոս — Արիանոսութիւն, ժողով Սարդիկեայ (347), ժողովք Մեդիոլանու (355) եւ Արիմինեայ (359)։

## Գ. Արկադիոս եւ Ոնորիոս, Թէոդոս Բ., Վաղենտինիանոս Գ. (395—450) — Ոսկեբերան, Եպիփան, Յերոնիմոս, Թէոփիլոս — առաջին Որոգինեան գժտութիւն — Աւգոստինոս, Կիւրեղ Աղեքսանդրացի — Պեղագեան եւ Նեստորեան աղանդք — Երրորդ Ժողով Տիեզերական (431)



Digitized by Google

Digitized by Google

Digitized by Google

Digitized by Google

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԷՔ |
|---|---|---|---|
| 115 | 1 | Տիգրան (Գ.) | Տիգրան (Դ.) |
| 141 | 14 | Ιρηνάρχος | Εἰρηνάρχης |
| 330 | 40 | Գրիգոր | Գէորգ |
| 399 | 32 | Արտաբուրիոս | Արդաբուրիոս |
| 412 | 33 | Քղերդոն | Կզերդոն |
| 428 | 30 | Երանխոտէս Բազ-մակերպարան | Երանխոտէս կամ Բազմա-կերպարան |
| 458 | 5 | (253—352) | (253—350) |
| 463 | 29 | πολέμον | πολέμου |
| 378 | 53 | εἶκον | οἶκον |
| 495 | 43 | Arganena | Arzanena |
| „ | 44 | Corduena | Carduena |
| 524 | 21 | (421) | (421, ըստ մերոցն՝ 419) |
| „ | 40 | Արտաշէս Բ. | Արտաշէս Գ. |
| 525 | 1 | Արտաշէս Բ. | Արտաշէս Գ. |
| 526 | 1 | Յազկերտի Ա. | Յազկերտի Բ. |
| 527 | 29 | Թագաւորեցոյց | սակայն եւ յառաջ իսկ քան զայն՝ Թագաւորեցոյց |
| 543 | 13 | յԱռամանց | յԱռանձարեանց |
| 550 | 26 (յորէն. ծնչ) | Վարա զվաղանեայ | Վարազվաղանեայ |
| „ | 41 | ի զոսա ձեռաց | զոսա ի ձեռաց |
| 564 | 5 | Վեցերորդապէս | Եքսարք |
| 564 | 50 | πρωτεία | πρωτεῖα |
| 567 | 49 | Νάος | Ναὸς |
| 568 | 15 (յորէն. ծնչ) | որ է ի վեր է | որ է ի վեր |

Digitized by Google

# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՅԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ

---

### ՊԱՏԿԵՐ ԲԱԺԱՆՄԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՅԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ

Մեզ ծանուցեալ իմն առհասարակ է՝ թէ անպատեհ է կարգել զպատմութիւն ըստ բաժանման իւրաքանչիւր ամաց, դարուց կամ ըստ իւրաքանչիւր ժամանակի թագաւորութեան անցնիւր թագաւորաց, այլ դիւրագոյն այժմ յամենեցունց հաւանի՝ զետեղել զպատմութիւնն ըստ բաժանման Միջոցաց [1], Շրջանաց կամ Եղանակաց [2] ժամանակի:

Շրջանն կամ Եղանակ անորոշ ինչ ընդարձակութիւն ժամանակի է որ ունիցի ինչ իւր սեպհական պատմական նկարագիր՝ որով յայտնի իսկ ընտրիցի ի ժամանակաց անտի որ յառաջ եւ յետոյ քան զնոյն իցեն: Ամեն իրի՝ այսք բաժանման պատմութեան ըստ շրջանաց՝ հին եւ յառաջաւոր պատկեր է նոյն իսկ փոփոխումն աշխարհի կրթութեան մարդկան 1. ըստ քաղաքային եւ 2. ըստ եկեղեցական կենաց: Այսպիսի շրջանք անդ առնուն սկիզբն ուր նուէն պատմութեան, այս նոյն մարդն՝ յայլ իմն հանգամանս կենաց մտեալ՝ այլակերպ իմն այնուհետեւ երեւի եւ գործէ: Այլ եթէ յայժ իմն ընդհանրականագոյն եւ խորագոյն փոփոխումն հանգամանացն իցէ, շրջանն այն ընդհանրական՝ անուանի Միջոց կամ Անջրպետութիւն ժամանակի, եւ ընդ նովաւ կարգին բազում Շրջանք մանաւոր եւ մանր փոփոխմանց, որպէս եւ ընդ ստորիմք շրջանաց կարգին դարձեալ այլ եւս Հատուածք՝ եւս իմն մանրագոյնն փոփոխմանց:

Օհամօրէն ընթացս պատմութեան յետ Քրիստոսի՝ դրեթէ առհասարակ իմն սովորութիւն է այժմ բաժանել յերիս Միջոցս այլ եւ այլ Շրջանօք եւ Հատուածիւք՝ այսպէս.

Ա. Միջոցն ժամանակի է յորում տակաւին շահեալ տիրեն հռոմէական տէրութիւնն եւ յունական-հռոմէական հրահանգք եւ կրթութիւն. ըստ քաղաքային տէրութեանն մինչեւ ցկատարած Եերորդ դարու (1—480), իսկ ըստ եկեղեցական հանգամանաց՝ մինչեւ ցկատարած Էերորդ դարու (1—692): Ի սմին՝

1. Շրջան. Յ Աւգոստեայ մինչեւ ցկոստանդիանոսի Մեծն եւ ցհրովարտակն նորա ի Միլիոլանոն (1—313) կամ ցմիահեծան տէրութիւն նորա (1—324). — Ըստ եկեղեցական հանգամանաց՝ է ժամանակ հալա-

[1] Espace de temps. [2] Période.

*տատութեան եւ տարածման քրիստոնէութեան, եւ պատերազմի եկե- ղեցւոյ՝ արտաքուստ ընդ հեթանոսաց՝ հալածանօք, եւ ի ներքուստ՝ ընդ Գիտաց կամ Գնոստիկեանց եւ ընդ Հակառակերրորդականաց։*

**2. ՇՐՋԱՆ.** *Ի Կոստանդիանոսէ մինչեւ ցկործանումն Արեւմտեան տէրութեան Հռոմայեցւոց* (324—480)։ — *Այս շրջան ըստ եկեղեցական հանգամանաց՝ ընդարձակագոյն իմն է եւ հասանէ ցկատարած 7երորդ դարու, որպէս ասացաւ, այս ինքն ցժողովն Հինգվեցեան* (—692)։ *Ի սմին շրջանի երեւեցաւ շար իմն հերետիկոսութեանց որովք պայծառագոյն եղն ի մէջ ներքին էութիւն եկեղեցւոյ եւ վարդապետութիւն Նորա վասն Երրորդութեանն Աստուծոյ եւ վասն անձինն Քրիստոսի եւ վասն շնորհաց. բովանդակեալ յօրինեցան պայման եկեղեցական առաջնորդութեան եւ գեղեցիկ իմն կարգք աստուածեղէն պաշտամանց. ծաղկեցան հարք եկեղեցւոյ եւ վանականութիւն։ Ջնջեցաւ ամենեւին հեթանոսութիւն ի Հռոմէական պետութեան, բայց եւ ի Մահմետականութենէ միասեցաւ կաթուղիկէ եկեղեցի։*

**Բ. Միջոցն** *ժամանակի* (480—1300) *է՝ յորում կանգնեցան կացին Գերման եւ Սլաւ տէրութիւնք ի վերայ աւերակաց Արեւմտեան տէրութեան Հռոմայեցւոց եւ շրջեցին ի սեպհական առհմային կերպարանս զյունական-հռոմէական հրահանգսն։ — Իսկ ըստ եկեղեցական հանգամանաց՝ դայեակ սնուցիչ եղեւ Նոցա եկեղեցի եւ առացաւ ճոխութիւն մեծ ի միջի Նոցա, եւ անձկագոյնս ագխառնեցաւ Նա ընդ տէրութեան մինչեւ ց16երորդ դար։ — Այս միջոց ժամանակի կոչի բուն Միջին ժամանակ։ Ի սմին՝*

**1. ՇՐՋԱՆ.** *Ի գաղթականութենէ Գերման եւ Սլաւ ազգաց կամ ի կործանմանէ Արեւմտեան տէրութեան Հռոմայեցւոց մինչեւ ցԳրիգոր Է. քահանայապետ* (1073) *կամ ցարշաւանս խաչակրաց յԱրեւելս* (1095)։

*ա. Հատուած. Ի կործանմանէ Արեւմտեան տէրութեան Հռոմայեցւոց մինչեւ ցԿարողոս ցՄեծն կամ ցնոր արեւմտեան կայսերութիւն* (480—768)։ — *Ըստ եկեղեցական հանգամանաց է ժամանակ՝ երկրորդ յաղթութեան կաթուղիկէ եկեղեցւոյ՝ զոր յաղթեաց արիանոսութեան եւ հեթանոսութեան գերման ազգաց։*

*բ. Հատուած. Ի Կարողոսէ Մեծէ մինչեւ ցխաչակիրս կամ ցԳրիգոր Է.* (768—1073 *կամ* 1095)։ — *Ըստ եկեղեցական հանգամանաց նշանաւոր է բաժանումն Յունաց ի կաթուղիկէ եկեղեցւոյ։*

**2. ՇՐՋԱՆ.** *Ի խաչակրաց մինչեւ ցգիւտ Ամերիկայ* (1095—1492) *կամ ցսկիզբն Արեւմտեան հերձուածոյ* (1073—1517)։

*ա. Հատուած. Ժամանակք խաչակրաց եւ բուն ծաղկեալ ժամանակ Միջնոյն ժամանակի, քահանայապետք ի մեծի բարձրութեան, ասպետութիւն, վանական կարգք, դպրոցականութիւն եւ խորհրդականութիւն, գթացի շինուածք տաճարաց, եւ այլ եւ այլ աղանդոց երեւել* (1095—1300)։

*բ. Հատուած. Ժամանակն մինչեւ ցգիւտ Ամերիկայ եւ ցՀերձուածն մեծ* (1300—1492 *կամ* 1517)։ — *Նուազումն աշխարհական ճոխու-*

*թեան քահանայապետաց, եւ սովորութիւնք ինչ ժամանակին չարաչարք, աճումն աղանդոց: Ժողովք Պիսայ, Կոստանդիայ, Բասիլիայ, Ֆերրարայ, Ֆլորենտիայ եւ Լատերանու՝ մասամբ իմն միայն վճարեցին զբարւոք կարգաւորութեանն նորոգումն:*

**Գ. Միջոց** *ժամանակի* (1492 *կամ* 1517—1848), *յորում սկիզբն առնու նոր քաղաքականութիւն, նոր օրինակ պատերազմի, ընդարձակութիւն վաճառականութեան յետ գիւտին Ամերիկայ եւ ճանապարհի Արեւելեան Հնդկաց. ազդեցութիւն արուեստի տպագրութեան եւ ծաղկումն գիտութեանց եւ արուեստից: — Իսկ ըստ եկեղեցական հանգամանաց՝ լուծումն անձկագոյն կապոյ եկեղեցւոյ ընդ տէրութեան, եւ աղանդն Բողոքականութեան: — Նոր ժամանակ: Ի սմին՝*

**1. ՇՐՋԱՆ.** *Ի գիւտոյ անտի Ամերիկայ եւ ի սկսանելոյ Բողոքականութեան մինչեւ ցՎեստփաղեան խաղաղութիւնն* (1492—1648):

**2. ՇՐՋԱՆ.** *Ի Վեստփաղեան խաղաղութենէ մինչեւ ցգաղղիական յեղափոխութիւնն* (1648—1789):

**3. ՇՐՋԱՆ.** *Ի գաղղիական յեղափոխութենէ մինչեւ ցընդհանրական յեղափոխութիւնն Եւրոպայ* (1789—1848): — *Նորագոյն ժամանակ:*

*ա. Հատուած. Բուռն ժամանակ յեղափոխութեան մինչեւ ցխաղաղութիւնն Պարիսայ եւ ցժողովն Վիեննայ* (1815):

*բ. Հատուած. Ի ժողովոյն Վիեննայ ցգաղղիական յեղափոխութիւնն* 1830 *ամին:*

*գ. Հատուած. Ի յեղափոխութենէ անտի մինչեւ ցհասարակաց յեղափոխութիւն Եւրոպայ* (1848): — *Ամենեւին նոր ժամանակ:*





Digitized by Google

ՑՕՂԵՑԷՔ ԵՐԿԻՆՔ Ի ՎԵՐՈՒՍՏ, ԵՒ ԱՄՊՔ ՑԵՂԱՍՑԻՆ ԶԱՐԴԱՐՆ, ԲԱՑՑԻ ԵՐԿԻՐ ԵՒ ԲՈՒԽԵՍՑԷ ԶՓՐԿԻՉՆ, ԵՒ ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ ԱՌՀԱՍԱՐԱԿ ԾԱԳԵՍՑԷ։

ԵՍԱՅԻ ԽԵ. 8 (ԸՍՏ ԵԲՐ.)։

ԱՋՆ ՀՕՐ ԻՆՔՆԻՆ Է ԵՒ ԲԱԶՈՒԿ՝ ՄԻԱԾԻՆՆ ՔՐԻՍՏՈՍ. ՆՈՎԱՒ ՀԱՍՏԱՏԵՑԱՒ ԱՄԵՆԱՅՆ ԻՆՉ ՈՐ ԻՆՉ ՅԵՐԿԻՆՍ ԵՒ ՈՐ ԻՆՉ ՅԵՐԿՐԻ, ՀԱ՛ՐԿ ԷՐ ԶԻ ՆՈՎԻՆ ՍՐԲԵՍՑԻՆ ՈՐՈՎ ԵՂԵՆ ԵՒ ՀԱՍՏԱՏԵՑԱՆ։

Ս. ԳՐԻԳ. ԼՈՒՍԱՒ. ԱՌ ԱԳԱԹ. (ԸՍՏ ՁԵՌԱԳՐ.)։

Digitized by Google

# ՄԻՋԻՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Ի ԾՆՆԴԵՆԷ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ
## ՄԻՆՉԵՒ ՅԳԻՒՏ ԱՄԵՐԻԿԱՅ

## (1—1500)

## Ա

### ՅԱՒԳՈՍՏԵԱՅ ՄԻՆՉԵՒ ՅԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ ՄԵԾ
### (1—313 ԿԱՄ 324, ԺԱՄԱՆԱԿ ԻԲՐԵՒ 300 ԱՄԱՑ)

## Ա

### ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ

*Նախնական նուքա եւ կեանք եւ վարդապետ* (1—34):

### 1

ՀԱՏԱՔ անցաք ընդ մեծատարած դաշտս չորեքհազարամեայ պատմութեան՝ յորում նշմարեցաւ մարդկութիւնն ի միջէ արմնէ ի տոհմ, ի ցեղ, յազգ եւ առհասարակ իսկ ի մարդկեղէն բազմաբեւր սերունդ եկեալ[1]: Այլ յետ անկման առաջնոյ հօրն իւրոյ ըստ մարմնոյ՝ բնաւ ուստի՞ կարէր ունել մարդկութիւնն գոյութիւն կամ սերունդ կամ պատմութիւն, թէ ոչ յերկրորդ հօրէ անտի իւրմէ ըստ հոգւոյ, որ խոստացեալ էր անդէն իսկ ի սկզբանն[2]: Որպէս յառաջնոյ անտի Ադամայ եւ յետ փրկութեանն դատապարտութիւն եւ մահ սերընդեամբ յերկարեալ ձգի յառաջ կոյս, այսպէս յերկրորդն Ադամայ եւ յառաջ քան զփրկութիւնն կանխեալ ընթանայրն փրկութիւն եւ կեանք՝ յետս կոյս[3]: Սակայն հարկ էր լուսոյն՝ որ ի խաւարի անդ լուսաւոր էր[4], իբրեւ միջնորդաւ իմն՝ որպէս թէ լուսնով՝ (բնականն յայտնութեամբ ի հեթանոսսն եւ յաւելուածով օրինական յայտնութեան ի մէջ եբրայական ազգին) անցանել միանգամ ի տիւ՝ զի տացէ ինքն ինքեամբ առանց միջնորդի զլուսաւորութիւնն, եւ յայտնել միանգամ պատարագաւն առ ի քաւութիւն ամենայն իսկ ժամանակաց[5]: Դ,մին իւրի իբրեւ ի վախճանել իմն էր այն ժամանակ որ էր սահմանեալ յաստուածեղէն բարութենէ անտի եւ յիմաստու-

1 Գործ. Ժ. 26:
2 Ծնն Գ. 15:
3 Հռոմ. Ե. 12 եւ 17:
4 Յովհ. Ա. 4, 5:
5 Եբրայ. Թ. 26—28:

Digitized by Google

թենէ յառաջել իբրեւ գիշեր՝ նախ քան զօրն[1] եւ իբրեւ զձմեռն՝ յառաջ քան զամառն, անդէն այդ իմն զհորիզոնաւ պատմու-թեան երեւէր, եւ շնչէին հողմք ջերմագինք: Այնպէս զի զմերձեն ժամանակս հեթանոսութեանն եւ հրէութեան յղի իմն տեսա-նեմք, եւ զմարդկութիւնն համօրէն ի մօտոյ կամ ի հեռուստ, ի ներքուստ կամ արտաքուստ, գիտութեամբ կամ յանգէտս պատ-րաստեալ առ Փրկիչ անդր նշմարեմք:

2. Հռոմ կեդրոն եւ միջավայր համօրէն սահմանաց յԵփ-րատայ մինչեւ ցԴանուբ եւ ցՀռեննոս, եւ ի հաղորդութեան ընդ ամենայն կողմանց տէրութեանն՝ բովանդակեալ ունէր զամենայն մեծութիւն եւ զգեղեցկութիւն հնոյ աշխարհին: Անդ առաքէին հրամանատարք ազգի ազգի անուամբք յիւրաքանչիւր նահանգս. գունդք գունդք զօրականաց ունէին զնոսա ի հարկի եւ ի հնա-զանդութեան եւ ի կարգաւորութեան. եւ արգասիւք չքնաղ իբրեւ զՀռոմայեցիս ի հնութեան՝ իրաւագիտութեամբն եւ աջողակու-թեամբ կամ արուեստիւն իշխեալ: Ի գլուխ ամենայնի անցեալ կայր ինքնակալ Օկտաւիանոս Օգոստոս (յամէ 30 նախ քան զՔրիստոս), առ որով տիրեալ էր ընդ տիեզերս խաղաղութիւն եւ աղխեալ փակեալ մեհեանն Յանոսի: Ծաղկէր համաշխար-հական տուրեւառ վաճառաց, զի ընդ միով իշխանութեամբ միեալ՝ բարձեալ էին խափանիչք սահմանացն, եւ ծով սրբեալ ի հինից: Արուեստք եւ գիտութիւնք Յունաց որ առ Մակեդոնա-ցւովքն (յամէ 300 նախ քան զՔր.) տարածեալ էին յԱսիա, յԵգիպտոս, եւ վաղ քան զայն՝ յԻտալիա եւ ի հարաւային Գա-ղիա, առ Հռոմայեցւովք՝ տարեցաւ այն եւ յԱփրիկէ եւ յարեւ-մտեան Եւրոպէ: Հռչակաւոր դպրոցք ճարտարխօսութեան եւ փիլիսոփայութեան ծաղկէին յԱղեքսանդրիա, յԱնտիոք, ի Տար-սոն, յԵփեսոս, յԱթէնս, ի Կարքեդոն, որպէս եւ ի Գաղիա, ի Սպանիա, ի Լուսիտանիա եւ ի վերին Իտալիա: — Յարեւելս Հռոմէական պետութեանն մինչեւ ցեզերս իսկ Տիգրիս գետոյ՝ հռչա-կէր յունական լեզու, իսկ յարեւմուտս՝ հռոմայեցի լեզու. բայց ամենայն այր երեւելի հռոմայեցի՝ զերկոսին գիտէր:

3. Եւ "Հռոմ ի տիրելն իւրում համօրէն ազգաց՝ ծառայէր ամենայն ազգացն մոլորութեանց" (Ս. Լեւոն Մեծն): Խառնեա-ցան ի պաշտամունս Հռոմայեցւոցն եգիպտական պաշտօն անաս-նոցն, աստեղապաշտութիւն Քաղդէացւոցն եւ Փիւնիկեցւոց եւ մոգակրօնիկն պաշտօն: Բայց սակայն որպէս առ Յունաց[2] նոյնպէս եւ առ Հռոմայեցւոց քայքայեալ էին հաւատք առ կրօնս բազմ-աստուածութեան առասպելաբանութեանն. "Չիք ոք պառաւ ի պառաւանց, ասէ Կիկերոն, որ հաւատայցէ առասպելին Տարտա-րոսի եւ վայելչութեանցն Ելիսինեայ". եւ դարձեալ թէ "Չէ

1 Բ. Պետր. Ա. 19: Հռոմ. ԺԳ. 12:   2 Տես Հատ. Ա. եր 476—477:

## Բ

Ի սոյն նպաստ լինէին Հրեայք. քանզի հազարաւորք ի նոցանէ ցրուեալ էին ի Բաբիլոնի, ի Մարաստանի, ի Հայաստանի. առ Աղեքսանդրիւ երթեալ էին գաղթական յԵգիպտոս եւ առեալ իրաւունս քաղաքակից հաւասարութեան ընդ Յունաց, եւ յետոյ առ Պ. Լագոսն Պտղոմեաւ անցին այլ եւս գաղթականք. յԱսորիս մեծարեաց զնոսա Անտիոքոս Նիկատոր, ետ իրաւունս քաղաքակից հաւասարութեան յԱնտիոք ընդ Մակեդոնացւոց. ի Փռիւգիա եւ ի Լիւդիա 2000 երդս առաքէր Անտիոքոս Մեծն, եւ անտի սփռեցան ընդ այլ եւ այլ կողմանս Փոքրն Ասիայ եւ ի Յունաց աշխարհ: Ի Հռոմ առաքեցան նախ ի Պոմպէէ իբրեւ գերիք, այլ ապա ազատութիւն գտեալ՝ կալան զմեծ ինչ կողմն քաղաքին ի բնակութիւն, եւ Յուլիոս Կեսար տայր հրաման շինելոյ ժողովրդարանս, եւ առ Աւգոստեաւ (ըստ Փիլոնի) յամենայն իսկ աշխարհին Իտալիացւոց կային բազմամբոխ Հրեայք: Նմին իրի եւ բազումք ի հեթանոսաց բարեպաշտից յարեցան ի նոսա կամ իբրեւ “եկամուտք դրան„ (որք ի բաց կային ի հեթանոսական կարծեաց եւ ի բարոյից), եւ կամ իբրեւ “եկամուտք իրաւանց„ (որք առնուին յանձն եւ թլփատել եւ պահել զօրէնսն Մովսիսի):

Այս ամենայն Հրեայք որք այնու զի արտաքոյ քան զՊաղեստին էին՝ կոչէին “ի սփիւռս ազգաց„. էին ի հաղորդութեան ընդ քաղաքին Երուսաղեմացւոց եւ հնազանդէին եկեղեցական աւագացն որ անդ, եւ ամ ըստ ամէ տային զհարկ տաճարին “զերկդրամեանն„, առաքէին ընծայ պատարագս ի տաճար անդր, եւ ինքնին գային անդր պանդխտութեամբ բազում անգամ:

Սակայն եւ հեթանոսք գործեցին ազդեցութիւն ի վերայ նոցա՝ յունական բարուքն եւ գիտութեամբ եւ լեզուաւ: Բայց այս մանաւանդ ընդ այն Հրեայս անցանէր որ յԵգիպտոսն էին. որոց հարկ իսկ լինէր ունել զթարգմանութիւն գրոց սրբոց ի յոյն լեզու՝ զԵւթանասնից՝ զոր եւ աստուածեղէն իմն ազդեցութեամբ թարգմանեալ համարեցան[1]: Նա աւանիկ առ սկիզբն ի նոսա առանձինն իմն փիլիսոփայութիւն կրօնից ըստ օրինակի պիւթագորական-պղատոնական վարդապետութեանց. կատարեալ յօրինիչ այսր ճանաչի Փիլոն († 40 յետ Քր.): Կամէին այլաբանական եւ խորհրդական մեկնութեամբք գրոց սրբոց միաբանել իմն զգիրս ընդ պղատոնական տեսլեանց: Այնպէս իմն բարձրութիւն համարէին Աստուածութեան՝ զի անհնարին իսկ իցէ նմա խառնել կամ հպել յիրս աշխարհիս, այլ թէ միջին ինչ էութիւնք (Λόγος, Բանն կամ Բանք) ելանիցեն յԱստուածոյ անտի ի յօրինուած աշ-

նեալ էին՝ թէ ի հին մատենէն քահանայից կայցէ գրեալ թէ անդէն ի նմին ժամանակի զօրանալոց են արեւելք եւ ելեալքն ի Հրէաստանէ առնլոց են ի բուռն զտէրութիւնն„: Տակիտ. պատմ. Ե. 13:

[1] Տես Հատ. Ա. էջ 478:

խարհիս։ Այլ իմն մասն Հրէից յԵգիպտոս նուիրեալ էր զանձն ի վարուց զգաստութիւն, որ Թերապեւտքն կոչէին. Հռչակաւոր էր մանաւանդ ընկերութիւն ինչ Հրէից առ Մերիս լճիւ մօտ ի Մեմփիս, որք առանձինն յիւրաքանչիւր խցկունս[1] բնակէին, կերակրեալ հացիւ եւ ջրով եւ կրթելով ի պահս։

2. Բայց եւ անդէն ի մէջ Հրէիցն Պաղեստինացւոց ի ժամանակի երկայնամիտ քաղաքային գժտութեանցն՝ յօրինեալ էին կրօնական իմն կուսակցութիւնք։ Փարիսեցիքն օրինական կողմանն պաշտպանիչ էին եւ հնութեանց եւ աւանդութեանց նախանձաւորք՝ համարելով զսոսա մասն ամբողջացուցիչ գրոց սրբոց, մինչեւ կապել եւս զանձն ի նշանագիրս նոցա եւ յարտաքին ինչ ձեւս, թէպէտ եւ բազումք ըստ լաւագոյն մասինն եւեթ զհետ երթային վարդապետութեանն նոցա, որպէս Նիկոդեմոսն եւ Գամաղիէլ եւ այլք։ Իսկ կողմն Սադուկեցւոց՝ հայեցեալ թէ կարօտ իմն է ժամանակն նորոգութեան իմիք՝ ձեռն արկին իւրեանց իշխանութեամբ զայն վճարել, եւ թէպէտ զայլ եւս գիրս իբրեւ միաբանս ընդ 5 գրոցն Մովսիսի ընդունէին, բայց զաւանդութիւնս եւ զսովորութիւնս օրինաց չգրէին ինչ մեծ։ Ուրացան զանմահութիւն ոգւոյ եւ յայն սակս եւ զվարձս եւ զպատիժս յետ մահու եւ զյոյս յարութեանն. Թուի թէ յուրաստ էին եւ ի հրեշտակաց եւ յոգւոց եւ մանաւանդ ի սատանայէ[2], եւ այսպէս ամենեւին յերկրաւորս ընկղմեալ։ Ոչ ինչ հաղորդութիւն ունէր ընդ նոսա մեւս եւս կողմն Եսսենացւոց կամ Եսսէացւոց որ յարեւմտեայ եզերս Մեռեալ ծովուն բնակեալ էին միայնացեալ ի հրահանգս կրթութեան վարուց, պարապեալ ի մշակութիւն, ի հովուութիւն, ի ձեռագործս, մանաւանդ ի բժշկութիւն. (ըստ Փիլոնի) մօտաւոր իմն պաշտամունք կամեցեալ պաշտել զԱստուած՝ ամենեւին ի բաց թողին զպաշտամունս զոհից, ունէին զինչս հասարակաց, եւ էին բաժանեալ ի 4 կարգս։ — Սակայն երբեքին եւս ջոկքս չկարէին ինչ օգուտ ժողովրդեանն գործել՝ արտաքին սրբութեամբն, անխառն կրօնիւք եւ առանձնական մենութեամբ։ — Գալիլեացիք (կամ Գաւղոնացիք) էին մոլեգին նախանձաւորք քաղաքային ազատութեան. նոքին հակառակ Հերովդիանոսքն սորուկք եւ ողոքիչք այլազգւոյն Հերովդի որ իբրեւ ստրուկ եւ բարեկամ Օգոստեայ տիրէր ի վերայ նոցա բռնաւորութեամբ (յամէ 37 նախ քան զՔր.)։

Իբրեւ պատակ ամենայնի էր ընդ միմեանս հակառակութիւնն Հրէից եւ Սամարացւոց։ Սոքա յետ մերժելոյ ի Հրէից դարձելոց ի գերութենէ վասն կռապաշտութեանն իւրեանց՝ յետուստ ուրեմն արարին նորոգութիւն պաշտամանցն իւրեանց ի ձեռն Մանասէի քահանայի աքսորելոյ ի Հրէից՝ որ եւս նոցա միւսանգամ

1 Σεμνεῖον, μοναστήριον. 2 Գործ. ԻԳ. 8։

Digitized by Google

զՀինգ մովսիսեան գիրսն, եւ հրամանաւ Դարեհի Բ. Խորթորդւոյ արքայի Պարսից (423—404 նախ քան զՔր.). շինեցաւ տաճար ի Գարիզին լերին, եւ կարգեցաւ քահանայութիւն ի ղեւտական ցեղէ[1]: Բայց պաշտամունք նոցա բազում իւիք օտար ի Հրէիցն էին, զ5 գիրսն Մովսիսի եւեթ ընդունէին, միայն զԳարիզին լեառն համարէին տեղի երկրպագութեան Աստուծոյ[2]. բայց ակն ունէին եւ նոքա Մեսիայն: Ազգքն երկոքին անհաշտք իրերաց տային միմեանց անուանս թշնամանաց[3], չառնէին հաղորդութիւն, չտային փոխ[4], եւ ի ճանապարհորդելն իսկ ի միմեանց խորշէին անցանել ընդ սահմանս իրերաց: (Այսմ ամենայնի ընդդէմ զայրանայ Քրիստոս եւ բանիւ[5] եւ գործով[6]):

Յայսպիսի կրօնական շփոթութեանցն մէջ, յորս եկն յարեցաւ քաղաքային հարստահարութիւն եւ երկեւղ ի Հռոմայեցւոց, զրգռեալ զարթեաւ ի նոսա յոյս եւ ցանկութիւն լուսագունի իրիք ներքինն եւ արտաքին փոփոխման՝ զորոյ զժամանակն ամենեքին գիտէին թէ մօտ է՝ յԱստուծոյ իսկ պատգամանացն ուսեալ, սակայն բազումք իբրեւ երկրաւոր փառաւորութեան ունէին այնմ ակն:

## 3

Իբրեւ 4000 ամք անցեալ էին յորմէ հետէ տուեալ էին աւետիք մխիթարութեան առաջին հօրն եւ մօր մարդկութեան յորժամ անկանն[7]. յետ 2000 ամաց երկրորդեաց Աստուած զնոյն աւետիս Աբրահամու[8], նոյնպէս եւ Իսահակայ[9] եւ Յակոբայ[10], որում եցոյց իսկ Աստուած թէ յորմէ որդւոյ յորդւոց նորա իւրոց գալոց իցէ "ակնկալութիւնն ազգաց": Յառաջ իսկ քան զմուտն ի Քանան՝ յիշեցուցանէր Աստուած Մովսիսիւ անուանել մարգարէին զոր յարուսցէ ի միջոյ նոցա[11]: Բայց լուսաւորագոյն քան զնոյն նշմարէր Դաւիթ[12]: Այլ առաւել յաճախագոյն եւ յայտնագոյն բարբառէին մարգարէութիւնքն յորժամ երթայր եւ նուազէր ի փառաւորութենէ տունն Դաւթի. մխիթարէին զժողովուրդն մարգարէքն յուսով բարութեանց՝ զոր բերիցէ Մեսիայն, յիշատակեալ միանգամայն լուսաւորութեանն զանցս եւս կենաց նորա, եւ զայս մանաւանդ յորժամ վտարանդեալ ի գերութեան էին Իսրայելացիք: Այսպէս ի յաճախել ժամանակեան նեղութեանցն՝ պահէր եւ զօրանայր եւս քան զեւս ակնկալութիւն այնր

1 Տես Հաւ. Ա. էջ 360:
2 Յովհ. Դ. 19...:
3 Սիր. Ծ. 28: Յովհ. Ը. 48:
4 Ղուկ. Թ. 53:
5 Ղուկ. Ժ. 25—37:
6 Յովհ. Դ. 4...: Ղուկ. Թ. 52:
7 Ծնն. Գ. 15:
8 Ծնն. ԺԲ. 3. ԺԸ. 18. ԻԲ. 18:
9 Ծնն. ԻԶ. 4, 5. ԻԸ. 14:
10 Ծնն. ԽԹ. 14:
11 Երկ. օր. ԺԸ. 15: Տես եւ Յովհ. Ե. 46:
12 Սաղմ. Բ. ԽԴ — 8, 18. ՃԹ: Տես եւ Մատթ. ԻԲ. 43 — 45: Գործ. Դ. 25, 26: Եբր. Ա. 5, 13. Ե. 6. Թ. 13:

Digitized by Google

որ փրկիչն լինելոց էր[1]։ Այլ յետ Մաղաքեայ լռեալ դադարեալ էին մարգարէութիւնք ամս իբրեւ 400։

2. «Իբրեւ եկն եհաս լրումն ժամանակի՝ առաքեաց Աստուած զՈրդի իւր՝ որ եղեւ ի կնոջէ եւ եմուտ ընդ օրինօք, զի որ ընդ օրինօքն իցեն զորդեգրութիւն ընկալցին»։ Այլ պարտ էր նմա ոչ ըստ սովորական ընթացից բնութեան ծնանել, այլ որպէս առաջին մարդն՝ նոյնպէս եւ սա անմիջնորդական իմն արարչութեամբ ածեալ ի գոյութիւն ըստ մարմնոյն՝ ի մարմնոյ եւ յարենէ անարատ Կուսին՝ ուստի սահմանեալ էր նմա յղանալ եւ ծնանել[2] ի Բեթղահէմ Հրէաստանի[3], յետ տալոյ աւետիս Կուսին Մարիամու ի տանէ Դաւթի ի Նազարէթ ի ձեռն հրեշտակի թէ նա ընտրեցաւ յղանալ եւ ծնանել զՄեսիայն հօր՝ հոգւովն սրբով[4]։ Անդէն հեթանոսական իշխանութիւնն յանդէտս լինէր սպասաւոր խորհրդոյն Աստուծոյ՝ կոչելով ի սահմանեալ ժամանակին զԿոյսն ի Բեթղահէմ վասն աշխարհագրի ընդ ազգաւ հիւսանն Յովսեփայ ի տոհմէ Դաւթի որ խօսեցեալն էր նմա[5]։ Անդ ծնաւ Կոյսն ի գոմ ուրեք զՄանուկն զարմանալի զոր անուանեալ էր մարգարէն Աստուած, հզօր, հայր հանդերձելոյ յաւիտենին եւ իշխան խաղաղութեան[6]։ Իսկ Կոյսն երանելի ոչ երբեք յղացաւ այնուհետեւ ի սուրբ արգանդին, ուստի եւ անդրանիկն անուն զոր վասն Քրիստոսի առեն Մատթէոս եւ Ղուկաս, այսչափ միայն յայտ առնէ թէ չէր եղեալ Մարիամու այլ որդի յառաջ քան զայն. իսկ անուանեալ եղբարքն Քրիստոսի[7] ըստ եբրայական բարբառոյ ազգականս նշանակեն։

Ըստ նմին զարմանալի էր եւ որ ինչ առ ծննդեանն դիպեցաւ. երեւեցան հրեշտակք իբրեւ ի գոհութիւն փրկութեանն

1 Եսայի (750 նախ քան զՔր.)։ Թ. 2, 6, 7. ԺԱ. — 10. ԻԲ. — 9. ԻԵ. 8... ԻԹ. — 13...։ Երեմիա (650). ԻԳ. 5, 6. ԼԳ. 14 — 16։ — Դանիէլ († 536) Թ. 24—27։ Ուր պատմէ կանխագոյն թէ (հրովարտակաւ) գալուստն Քրիստոսի կամ Օծելոյն լինի յետ 69 եւթներորդաց, այս ինքն 483 ամաց, համարելով զամսն զոյնորիկ յելից անտի հրամանին վասն շինութեանն Երուսաղեմի, որ չէ ապաքէն ոչ հրամանն Կիւրոսի (Եզր Ա. 2, 3), ոչ Դարեհի Վշտասպեան (Եզր Զ. 6—11) եւ ոչ Երկայնաձեռնեան Արտաշէսի յ7երորդ ամի թագաւորութեան իւրոյ (Եզր Է. 12—26), որք ոչ վասն շինութեան Երուսաղեմի էին, այլ հրամանն զոր հան նոյն Արտաշէս ի 20երորդ ամի թագաւորութեան իւրոյ։ Արդ ի 20երորդ ամէ թագաւորութեան սորա որ է (ըստ ոմանց) 453 ամի յառաջ քան զՔր. ըստ հռոմայեցւոց թուականին եւ 299 ամի շինութեանն Հռոմայ՝ մինչեւ ց15երորդ ամն Տիբերեայ կայսեր, այս ինքն ցամն Հռոմայ 783, յորում եղեւ հրովարտակաւն գալուստ կամ յայտնութիւնն Քրիստոսի (Ղուկ. Գ.), անցին ճշգիւ 69 եւթներորդքն կամ ամքն 483. եւ ի կէս 70երորդ եւթներորդին (7 ամաց) այս ինքն յետ 3 կամ 4 ամաց լինելոց էր սպանումն Օծելոյն։ — Վերջին ի մարգարէից անտի գերութեան ժամանակին եւ Եզեկիէլ (600) ԼԴ. 11 — 16, 23։ Յետ դարձի գերութեանն Զաքարիա (520) Թ. 9, 10. ԺԲ. 10. ԺԳ. 6. եւ Անգէ (520) Բ. 8. 10, որ փառաւորագոյն զերկրորդ զԶօրաբաբելեան տաճարն քան զառաջինն զՍողոմոնեանն ցուցանէր՝ յայտ արարեալ թէ անդէն երեւելոց է «ցանկալին հեթանոսաց»։ Մաղաքիա վերջին ի մարգարէից (412 — 408) զնոյն յայտ առնէր, Գ. 1 — 4. Դ. 5, 6։

2 Եսայ. Է. 14։

3 Միքիա Ե. 2. զոր եւ ինքեանք իսկ Հրեայք հարցեալ ի Հերովդէ՝ ի նոյն առին. Մատթ. Բ. 5, 6։

4 Ղուկ. Ա. 26...։ Յովհ. Ա. 18։

5 Ղուկ. Բ. — 5։

6 Եսայ. Թ. 6։

7 Մատթ. ԺԲ. 46. ԺԳ. 55։ Մարկ. Գ. 31. Զ. 3։ Ղուկ. Ը. 19—21։ Յովհ. Բ. 12։ Գործ. Ա. 14։

Digitized by Google

զոր առաքեալն չառնէաք ի միտ մարդկութիւնն մեղաւոր[1]։ Նշանն նոցա զաւետիս խաղաղութեան որ նորոգն հաստատեցաւ եւ զհաշտութեան երկնից ընդ երկրի[2]։ Հովիւք ոմանք ի Հրէից ընկալեալ զաւետիսն զայն՝ ծնեալ հաստատէին առ փրկիչն նորածին[3], եւ յետ սակաւ ինչ միոյ հաստատէին իմաստունք յարեւելից մատուցանել նմա երկրպագութիւն իբրեւ Աստուծոյ[4]։ Այսպէս Հրեայք եւ հեթանոսք, այս ինքն համօրէն մարդկութիւնն որ զփրկութիւնն ընդունելոց էր՝ երեւէր հասեալ առ որոց անձն Որդւոյն Աստուծոյ։

„Զի պարտ էր Քրիստոսի ամենայնիւ եղբարցն նմանել[5]" թլփատեցաւ նա յաւուրն ութերորդի եւ կոչեցաւ Յիսուս (օգնութիւն Աստուծոյ)։ Սիմէոն արդարն եւ երկիւղած յԱստուծոյ լուսաւորեալ ի Հոգւոյն՝ ընկալաւ ի տաճարին զմանուկն իբրեւ Փրկիչ Իսրայելի եւ լոյս հեթանոսաց, յայտ արարեալ թէ կայ նա ի կանգնումն եւ ի գլորումն բազմաց ի մէջ Իսրայելի, եւ Աննա կին մի որ անդ էր, դրդեալ ի Հոգւոյն՝ խօսեցաւ օրհնութիւնս եւ մարգարէութեամբ քարոզեաց զնմանէ ընդ այնոսիկ որք ակն ունէին փրկութեանն Իսրայէլի[6]։

3. Իսկ վասն կենաց մանկութեան նորա այսչափ ինչ միայն գիտեմք թէ Մարիամ եւ Յովսէփ փախուցեալ գնացին առ ժամանակ մի յԵգիպտոս՝ ապրեցուցանել զնա ի մոլեգնութենէ Հերովդի զի սպանանել զնա կամէր, համարեալ եթէ նախանձորդ թագաւորութեան իւրոյ է, եւ արդեամբ իսկ կարծէր թէ սպան՝ յորժամ ետն կոտորել զմանկտին Բեթղահեմի յերկեմենից եւ ի խոնարհ. այլ յետ սակաւ ինչ միոյ դարձան նոքա՝ ակնարկութեամբ հրեշտակին ի Նազարէթ[7], ի գլուխ ելեալ մարգարէութեանն Ովսեայ[8] եթէ "յԵգիպտոսէ կոչեցից զՈրդի իմ"։ Յերկոտասաներորդ ամի հասակի իւրոյ ցուցանէ մանուկն սակաւիկ ինչ զճառագայթս աստուածեղէն իմաստութեանն ի տաճարին առաջի դպրացն որ զարմացեալ ընդ նա էին[9]։ Իսկ զի զամենայն իսկ հանգամանս կենաց մարդոյն ուսցէ՝ կայր մնայր Որդին Աստուծոյ մօրն եւ հօրն հնազանդ եւ հպատակ[10], եւ ըստ հին ինչ աւանդութեան՝ օգնական էր նա հօրն յարուեստ հիւսնութեան[11]։ Բայց ըստ հասակին աճել՝ աճէր իմաստութեամբ եւ շնորհօք, այս ինքն (ըստ Գրիգ. Նազ.) տակաւ առաւելագոյն շողացուցանէր զճա-

1 Ղուկ. Բ. 9—12։ Տես Եբր. Ա. 6։
2 Եփես. Ա. 52։
3 Ղուկ. Բ. 16...։
4 Մատթ. Բ. — 11։ — Գրիգոր Լուսաւ. ըստ Ագաթ. ԽԱ. "Աւետարանութեամբ հրեշտակացն առ հովիւսն՝ զաստուածեղէն փառացն գուշակէր, մոգուքն եւ խանձարուրք զխոնարհութիւն մարմնոյն զաղքատութիւնն ի մէջ բերէին, աստղն սպասաւոր լուսոյն՝ մոգուցն առաջնորդողք յայտնի ամենատեսանն տէրութիւն, երկրպագուք զետեղեալ զմարմինն, եւ երկնաւորացն ծանիցուք զաստուածութիւնն"։
5 Եբր. Բ. 17, 18։
6 Ղուկ. Բ. 21—38։
7 Մատթ. Բ. 19. 20։
8 Ովս. ԺԱ. 1։
9 Ղուկ. Բ. 46. 47։
10 Ղուկ. Բ. 50։
11 Մարկ. Զ. 3։

Digitized by Google

ծանչ խնամութեան, ճշմարտութեան եւ շնորհաց՝ ըստ չափու զարգանալոյ մարդկեղէն մարմնոյն[1]։

4

Այսպէս թէև առհասարակ հաւատացեալ էր ազգն հրէական ըստ մարգարէութեանն[2] թէ յառաջ քան զերեւել Մեսիային գալոց իցէ Եղիա մարգարէ պատրաստել զարքայութիւն նորա[3]. եւ արդեւանդք իսկ երեւեցաւ Եղիա յանձին Յովհաննու որ կարապետն եղեւ Քրիստոսի։ Որպէս սակաւիկ ինչ կանխագոյն քան զծնունդն Քրիստոսի աւետեցաւ ծնունդն Յովհաննու՝ հօր նորա Զաքարիայ, եւ յետ սակաւ ինչ միոյ ինքն կենարարն յարգանդի մօրն չոգաւ առ Եղիսաբեթ մայր նորա՝ սրբել զկարապետն իւր նոյնպէս ի մօրն արգանդի[4], այսպէս յետոյ՝ սակաւ ինչ յառաջ քան զերեւելն Քրիստոսի հրապարակաւ՝ կանխեաց եւ Յովհաննէս ըստ հրէական սովորութեանն յ30երորդ ամի հասակի իւրոյ ի 15երորդ ամի թագաւորութեանն Տիբերեայ կայսեր իբրեւ վարդապետ ժողովրդեան, եւ ըստ մարգարէութեանն որ լեալ էր զնմանէ՝ ցուցանէր վարս խստամբերութեան յանապատ առ Յորդանանու, քարոզելով ապաշխարել զի մերձեալ է, ասէ, արքայութիւն երկնից, եւ ցուցանելով թէ կայ ի միջի ձերում զոր դուքն ոչ գիտէք, եւ թէ գայ նա յետոյ քան զնա, բայց էր յառաջ եւ մեծ քան զնա։ Որպէս ի դէպ էր կարապետին Քրիստոսի՝ արկանէր նա մկրտութիւն ինչ ապաշխարութեան ի կիր, եւ ջանայր ուղղել զազգն հրէական ի թիւր կարծեացն՝ թէ աշխարհական փառաւորութեամբ գալոց իցէ Քրիստոսն։ Այս գայր ինքնին Յիսուս առ նա մկրտել ի նմանէ, որ եւ ստուգութեամբ այնուհետեւ եցոյց եւ քարոզեաց զՄեսիա. եւ ի վերուստ եւս յերկնից Հայրն յաւիտենական բարբառեալ վկայէր զՈրդւոյն սիրելւոյ, եւ Հոգին սուրբ ի զգօն կերպարանս աղաւնւոյ իջանէր ի վերայ Քրիստոսի. եւ այսպէս յայտնէր անդ Երրորդութիւն Աստուածութեանն[5]։ Յայնմ հետէ յայտ առնէր Յովհաննէս զՅիսուսէ թէ նմա պարտ է աճել եւ ինձ մեզմանալ՝ որպէս արուսեակն ի ծագել արեւուն լինի աներեւոյթ[6]։ Եւ արդեւանդք իսկ յետ սակաւ ինչ միոյ արկանէր զնա Հերովդէս Չորրորդապետ ի բանտ ի Մաքերա դղեակ, վասն զի չէր թոյլ նմա ունել զՀերովդիադա՝ զյափշտակեալ կին եղբօր իւրոյ Փիլիպպեայ, եւ յետուստ ուրեմն եւ գլխատել զնա Հերովդէս նենգութեամբ Հերովդիադայ[7]։ Թաղեցին զնա աշակերտքն նորա եւ գնացին եւ տուին զրոյց

1 Ղուկ. Բ. 40, 51։
2 Մաղաք. Դ. 5, 6։
3 Մատթ. ԺԷ. 10։ Մարկ. Թ. 10։ Ղուկ. Ա. 17։ Յովհ. Ա. 21։
4 Ղուկ. Ա. 5—25. 39—45։
5 Մատթ. Գ. 13—17։ Յովհ. Ա. 33։
6 Յովհ. Գ. 30։
7 Մատթ. ԺԴ.—11։ Մարկ. Զ. 16—28։

Digitized by Google

Յիսուսի[1]։ Նոյն քաղաքը ի Նազարէթ չեղին զհետ Յիսուսի, այլ կացին մնացին իբրեւ ուրոյն աղանդ՝ իբրեւ «աշակերտք Յովհաննու», զնա իւր համարելով Մեսիա։

2. Իսկ Յիսուս յետ մկրտութեանն չոգաւ մեկնեցաւ ի տեղի անապատ, ուր եկաց աւուրս 40 որպէս Մովսէս ի լերինն, եւ ըստ նմանութեան մարդկան՝ եղբարց իւրոց՝ փորձեցաւ ի հակառակորդէն Աստուծոյ ի սատանայէ, եւ յաղթեաց։ Այս սկիզբն առնէր հրապարակաւ վարդապետելոյ ըստ օրինակի հրէական վարդապետացն։ Առաջին բանք նորա նման էին քարոզութեան մկրտչին, զի ասէր՝ ապաշխարեցէք[2]։ Նոյն յետ այնորիկ յայտ արար եւ եցոյց հրէիցն երկայնամիտ բանիւք թէ յինչ իրս եկեալ է[3]. այս ինքն՝ ոչ լուծել զօրէնսն, զի յառակեսցէ, զի լուսաւորագոյն գործիցէ եւ տարածեսցէ[4]. եւ որպէս մկրտեաց Յովհաննէս՝ նոյնպէս եւ Յիսուս ի ձեռն աշակերտացն մկրտէր յապաշխարութիւն[5]։

Ըստ վարդապետութեանն՝ ուսոյց նա զԱստուծոյ թէ է հոգի, եւ պարտ է զի երկրպագուք նորա երկիր պագցեն նմա հոգւով եւ ճշմարտութեամբ[6], եւ զի նա միայն բարի է[7], պարտ է սիրել զնա յամենայն սրտէ, յամենայն անձնէ եւ յամենայն զօրութենէ[8]։ Ուսոյց նա զԱստուծոյ Հօրէ թէ ճանաչէ զպէտս մարդկան, հոգայ զնոցանէ, լսէ զաղօթս նոցա եւ թողու զմեղս նոցա[9], եւ այնպէս սիրէ զնոսա՝ մինչեւ եւ զՄիածինն իւր տալ նոցա[10]։ — Իսկ զՈրդւոյ, այս ինքն՝ զանձնէ ասէր թէ է ճշմարիտ Որդի Աստուծոյ, մի ընդ Հօր[11], փառակից ընդ նմա, առաքեալ ի նմանէ յաշխարհ, եւ թէ բանք նորա բանք Հօրն են. եւ զպատուէրս նորա լնու յերկրի ճշգրտութեամբ յօգուտ եւ ի բարութիւն մարդկան, եւ գայ միւսանգամ յարուցանել զմեռեալս եւ տալ իւրաքանչիւր ըստ գործս[12], եւ միանգամայն իսկ ասէ՝ է մեր կերակուր, լոյս, վարդապետ, հովիւ, ճանապարհ, ճշմարտութիւն, կեանք եւ բարեկամ մեր[13]։ — Իսկ զՀոգւոյն սրբոյ ուսուցանէր թէ է հոգի ճշմարտութեան զոր աշխարհս չկարէ ընդունել, բայց կացցէ մնասցէ նա առ աշակերտսն իւր. նա լիցի թարգմանն վարդապետութեան իւրոյ, ուսուցիչ ամենայն ճշմարտութեան, փառաւորիչ նորա եւ կշտամբիչ աշխարհի[14], եւ թէ առանց նորա չիք փոփոխումն ի լաւ անդր[15]։

Ուսուցանէր Յիսուս եւ վասն մարդկեղէն ազգի, այս ինքն զնախատուր հանգամանաց նորա, զանկմանէ, զվերստին կանգնելոյ, զվախճանէն եւ զպարտուց, զմոլորութեանց նորա եւ զանկեալութեանց՝ ասելով թէ ագարակ է աշխարհս եւ ցանեալ ի նմա սերմն բարի եւ որոմն. իսկ տանուտէրն (Աստուած) միայն զցորեանն բարի սերմանեալ է, իսկ չարն՝ սերմն սատանայի է. եւ թէ բարին եւ չարն աճելոց են խառն մինչեւ ցժամանակ հնձոցն (ցվախճան աշխարհի), յորժամ եկեալ հրեշտա-

1 Մատթ. ԺԴ. 12։ Մարկ. Զ. 29։
2 Մատթ. Դ. 17։
3 Մատթ. Ե—Է։
4 Մատթ. Ե. 17։
5 Յովհ. Գ. 22 եւ 26. Դ. 1, 2։
6 Յովհ. Դ. 23, 24։
7 Մարկ. Ժ. 18։
8 Մատթ. ԻԲ. 36—38։
9 Մատթ. Զ. 7—14. 25—34։
10 Յովհ. Գ. 16։
11 Յովհ. Ժ. 30։
12 Յովհ. Ե. 19—30. Զ. 37—40. Ը. 40, 42. եւ այլուր։
13 Յովհ. Զ. 35, 36, 45, 48, 51. Ը. 12, 35, 51. Ժ. 11, 14. ԺԱ. 25. ԺԴ. 6. ԺԵ. 13, 14։
14 Յովհ. ԺԴ. 10—17, 26. ԺԵ 26. ԺԶ. 7—15։
15 Յովհ. Գ. 5։

Digitized by Google

կացն իբրեւ հնձողք, փորձով՝ զչարսն ի հնոց (ի դժոխս), իսկ զբա-
րեացն՝ զցորեանն ի շտեմարանն Աստուծոյ (յերկինս) ժողովեսցեն [1]:

Ուսոյց դարձեալ թէ կատարելութիւն Հօրն նորա յերկինս՝ է չափ կատարելութեան մարդկան, եւ թէ վախճան մեր այն է՝ զի իբրեւ պատկերք Աստուծոյ լինիցիմք պատկերք նմանութեան այլոց մարդկան [2]. եւ թէ պարտ է անվրէպ՝ խոնարհ եւ անմեղական միտս մանկան եւ փոփոխումն բարուց ունել՝ վասն մտանելոյ յարքայութիւնն Աստուծոյ [3]. եւ թէ ճանաչելն զանձն տկարութիւն՝ է հիմն ճշմարիտ մեծութեան [4]. եւ թէ ցանկութիւն եւ փափաքն արդարութեան է հրեշտակ աւետաբեր՝ թէ լնլոց է երբեմն այն ցանկութիւն, եւ թէ սրբութիւն սրտի պահանջի վասն ընտանի Աստուծոյ լինելոյ, եւ թէ խաղաղասիրութիւն՝ նշանակ որդւոցն Աստուծոյ է, թէ ողորմութիւն առ ընկերն՝ ածէ ի գութ զԱստուած, եւ համբերութիւն հալածանաց առ սէր նորա՝ է գրաւական մխիթարութեանն Աստուծոյ եւ երանութեան յերկինս [5]:

Դարձեալ թէ եղբայրսիրութիւն կնիք է աշակերտաց նորա, թէ ճշգրտիւ պահել զհրամանսն նորա՝ են ցոյցք սիրոյ առ նա [6], եւ թէ բարերարութիւնն ի բոլոր սրտէ է մի միայն գեղեցիկ հատուցումն զըրկանաց զոր ի մերոցն թշնամեաց կրիցեմք [7], եւ թէ հրաման եղբայրսիրութեան հաւասար է մեծի հրամանին՝ զԱստուած սիրելոյ [8]: Դարձեալ թէ տուրք առատք առանց ցոյցս առնելոյ, աղօթք անտես ի մարդկանէ, պահք զուարթ երեսօք՝ են մթերք վասն մեծի աւուրն հատուցմանց [9]:

Նմին հակառակ ուսուցանէր թէ եւ հայելն իսկ առ ցանկանալոյ՝ շնութիւն է, ոխութիւնն՝ եղբայրսպանութիւն, այնպէս զի սիրտն իցէ աղբեւր պղծութեանցն [10]: Խիստ դատաստան թերութեանցն այլոց՝ լինի արժանի խիստ դատաստանաց ի վերայ մեր. ասել եւ չառնել, լսել եւ չածել ի գործ՝ յիմարութիւն է, իբրեւ այն որ ի վերայ աւազոյ տուն շինիցէ [11]: Եւ թէ թեթեւամտութիւն եւ սաստիկ հոգք վասն արծաթոյ եւ կերակրոյ՝ հեղձուցիչք ամենայն սերմանց առաքինութեան են [12]. թէ մեղք բուն ծառայութիւն գերութեան է, եւ ամենայն որ չար գործէ՝ է որդի հօրն, այնր՝ որ մարդասպանն է ի սկզբանէ, սուտ եւ հայր ստութեան [13]:

Դարձեալ թէ վիշտք զոր կրիցեմք իբրեւ աշակերտք Քրիստոսի՝ երկունք մշտնջենաւոր ուրախութեանն են. եւ թէ աղօթիւք կարող եմք զամենայն ինչ ընդունել՝ զոր ինչ խնդրիցեմք համեմատ կամաց նորա եւ վստահ ի նորա անուն լինելով [14]: Նմանեցուցանէ նա զինքն ճշմարիտ որթոյ, եւ զքրիստոնեայս բարեբարս՝ պտղաբեր բարունակաց, այնպէս զի որ զկամսն Յիսուսի առնիցեն՝ հասանիցեն ի մտերիմ բարեկամութիւն եւ յազգականութիւն նորա, եւ յորդիութիւն Հօրն նորա, եւ յետոյ ապա յանուն կեանսն ընկալցին զվայելչութիւնս մտերմութեանն այնորիկ [15]:

3. Զբարձր եւ զարդարեւ աստուածեղէն վարդապետութիւնս հաստատեաց Յիսուս մեծամեծ նշանօք: Առնէր զնոսա հրամանաւ Հօր իւրոյ եւ նորա գործակցութեամբ [16] զի ի մի

1 Մատթ. ԺԳ. 24—30, 36—43:
2 Մատթ. Ե. 45, 48, 14—16:
3 Մատթ. ԺԸ. 3:
4 Մատթ. Ե. 3:
5 Մատթ. Ե. 3—12:
6 Յովհ. ԺԵ. 10—14, 17:
7 Մատթ. Է. 43—44:
8 Մատթ. ԻԲ. 37—40:
9 Մատթ. Զ. 1—7, 16—21:
10 Մատթ. Ե. 28, 22 ԺԵ. 19:
11 Մատթ. Է. 1—5, 21, 26, 27:
12 Մատթ. ԺԳ. 3—7, 19—22:
13 Յովհ. Ը. 34, 44:
14 Յովհ. ԺԶ. 20—27:
15 Յովհ. ԺԵ. 1—10. ԺԴ. 21—23:
16 Յովհ. Ժ. 38. ԺԱ. 41. ԺԴ. 10—12:



Digitized by Google

առցէ աշխարհ թէ նա է Մեսիա[1]։ Յառաջին ի նշանացն զոր ի բարեխօսանաց սրբոյ մօրն իւրոյ արար ի Կանա ի հարսանիսն՝ էր փոխել զջուր ի գինի[2]։ Յետոյ բազմացոյց նա միանգամ զհինգ եւ միւսանգամ զեւթն նկանակս մինչեւ 4—5000 արանց յագել, թող զկանայս եւ զմանկտի[3]։ — Բժշկեաց զամենայն հիւանդութիւնս[4], դարմանելով եւ զհոգեւոր ախտս նոցա[5]։ Բայց եւ մահ ետ զաւար իւր ի դուրս ամենազօր ձայնիւն նորա[6]։ Հողմք եւ ալիք հնազանդեցին նմա[7]։ Դեւք չարք լինէին հալածական ի դիւահարաց՝ խոստովանելով զնմանէ երկիւղիւ թէ Որդի Աստուծոյ է[8], եւ ինքն յայտ արար թէ Աստուծոյ ամենազօր զօրութեամբն գործ է հանելն զնոսա[9]։ — Յայտ արար Յիսուս եւ զգերազանցագոյն մարգարէական պատիւ իւր բազում մարգարէութեամբք, քանզի գիտէր նա եւ զխորհուրդս մարդկան[10]։ Նոյնպէս նա աշակերտացն թէ զինչ լիցին կրելոց վասն իւր եւ վասն վարդապետութեանն իւրոյ[11]. մարգարէացաւ զանցից եւ զտարածելոյ եկեղեցւոյ իւրոյ[12], զկործանմանէ Հրէական ազգութեանն, Երուսաղեմի եւ տաճարին, եւ միանգամայն խառն ընդ նոսա եւ զվերջին դատաստանէն[13]։ Պատմեաց նա աշակերտացն որպէս եւ թշնամեացն իսկ[14] եւ զիւր անցս որ ի մօտոյ էին անցանելոց[15]։

## 5

Քանզի թէպէտ եւ վարք նորա համեմատ վարդապետութեան իւրում էին, մինչեւ համարձակել ասել զանձնէ թէ հեզ եմ եւ խոնարհ սրտիւ, եւ դարձեալ թէ ո՞ կարէ ի ձէնջ յանդիմանել զիս վասն մեղաց[16]. թէպէտ եւ չգոյր վայր որ չընկալեալ զերախտիս նորա՝ ուր ինքեան չգոյր տեղի ուր զգլուխն դնիցէ[17] թէպէտ եւ ընդ մեղաւորս նստէր, ընդ նոսա ուտէր զի ածցէ զնոսա յուղղութիւն[18], սակայն եւ այնպէս չհաւատային ի նա խստասիրտքն եւ անօրէն Հրեայք[19], մանաւանդ թէ զկծեցան դրդուեցան փարիսեցիքն եւ Դպիրք զի զկեղծաւորութիւն նոցա ասէր

1 Յովհ. Ե. 36 . . . Ժ. 25։
2 Յովհ. Բ. 1—11։
3 Մատթ. ԺԴ. 15—21. ԺԵ. 29—39. համեմատեա ընդ Մարկ. Զ. 34—44. Ը. 1—9։
4 Մատթ. Դ. 23, 24. Ը. 5—13. 2, 3, 14, 15. Թ. 20—22, 28—30. ԺԲ. 10, 13։ Յովհ. Դ. 47—53. Ե. 5—9. Թ։
5 Մատթ. Թ. 3—7։
6 Մատթ. Թ. 18, 19, 23—25։ Ղուկ. Է. 11—17։ Յովհ. ԺԱ. 11, 17, 43, 44։ Տես եւ Մատթ. ԺԱ. 5. Ը. 16, 17. համեմատեա ընդ Եսայ. ԼԵ. 5 . . . ։
7 Մատթ. Ը. 23—27։
8 Մատթ. Ը. 28—34։ Մարկ. Ա. 23—28. Ե. 1—7։ Ղուկ. Թ. 38—43։
9 Մատթ. ԺԲ. 22—28. ԺԷ. 18—20։ Ղուկ. ԺԱ. 14—26։ Տես եւ Մատթ. Ժ. 1, 8։ Ղուկ. Ժ. 17—20. եւ Մարկ. Զ. 12—13։
10 Մատթ. Թ. 4։ Յովհ. ԺԶ. 30։
11 Մատթ. Ժ. 16—25։ Յովհ. ԺԵ. 18—21. ԺԶ. 1—4։
12 Մատթ. ԺԳ. 31—33. ԻԲ. 2—10։ Ղուկ. ԺԳ. 27—30. ԺԴ. 16—24։
13 Մատթ. ԻԴ. 1, 2 . . . 15—28, 29—36 . . . ։ Տես Մարկ. ԺԳ։
14 Յովհ. Բ. 19—22։
15 Մատթ. ԺԷ. 21, 22։
16 Մատթ. ԺԱ. 29։ Յովհ. Ը. 46։
17 Մատթ. Ը. 20։
18 Մատթ. Թ. 11—13։ Ղուկ. Է. 36—50. ԺԵ։
19 Մատթ. ԺԳ. 13—16, 57, 58։

Digitized by Google

թշնամանէր[1], մինչեւ դարան գործել նոցա նմա բազում անգամ. բայց ապա ուրեմն յորժամ զՂազարոս զբարեկամ իւր յարոյց չորեքօրեայ՝ սահմանեցին նոքա յիւրեանս՝ սպանանել զնա անվրէպ[2]: Իսկ Յիսուս թէպէտ եւ ոչ զրգռէր զնոսա ի սպանութիւն անձին՝ բայց եւ ոչ կարճմտութեամբ խուսէր. այլ չոգաւ նա յԵրուսաղէմ ըստ պարտուցն ի վերջին պասեքատօնին, այժմ ուրեմն առաւել քան զառաջին նուագսն յայտնագոյն զմահուանէն բարբառելով, բայց միանգամայն եւ զերեքօրեայ յարութենէն[3]: Այլ զի ամենեւին առոյգ գիտէր զմահն որպէս եւ զմշտնջենաւոր տեւականութիւն գործոյն իւրոյ, յուսալ անդ զզաւակին՝ ցուցանելով զառաւելութիւն սիրոյն եւ զխոնարհութեանն, հաստատեաց զխորհուրդն Գոհութեան՝ իբրեւ իւր յիշատակ եւ ի նշանակ նորոց կտակարանաց[4], զի ի խորհրդեան անդ մինչեւ ցվախճան կատարածի աւուրց՝ ժողովեսցին առ միմեանս ամենայն աշակերտքն եւ ինքն ամենայն անձամբն հաղորդեսցի նոցա լնլով զառաջին բանն զոր ասացեալ էր կանխելով թէ Մարմին իմ ճշմարիտ կերակուր է եւ արիւն իմ ճշմարիտ ըմպելի[5]:

Որպէս ի սկզբան վարդապետութեանն նոյնպէս եւ ի կատարածին փորձեցաւ Յիսուս ի տկարութենէ մարմնոյ եւ ել յաղթող: Բայց անտուստ Փարիսեցիքն եւ խորհրդականութիւնն Հրէից հաւանեցուցին զժողովուրդն թէ հայհոյիչ է նա, ամբաստան եղեն առ Պիղատոս Պոնտացի դատաւոր ժամանակին՝ թէ վնասակար է նա ի կայսր, այն որ ուսուցն նոցա թէ տուք զկայսերն կայսեր, եւ զԱստուծոյն՝ Աստուծոյ: Այսպէս Յիսուս մատնեալ ի միոջէ յաշակերտացն (ի Յուդայէ), ուրացեալ երիցս ի միւսմէ (ի Պետրոսէ) եւ ի մնացելոցն աշակերտաց լքեալ թողեալ՝ հարցանէր ի դատաւորէն թէ նա՞ իցէ Քրիստոսն եւ թագաւոր. յայտարար եւ ոչ թագոյց թէ արդարեւ Քրիստոսն է եւ թագաւորն: Յետ բազում զխնդադարձութեան եւ խոստովանելոյ զանմեղութիւն նորա ապա մատնեաց զնա դատաւորն ի ձեռս առ ահի ժողովրդեանն: Յետ այնորիկ զանազանց, բազմապատիկ նախատեալ եւ թշնամանեալ մեռանէր զմահ խաչի, մատուցանելով աղօթս առ Հայր վասն հաշտութեան մարդկան ընդ Աստուծոյ. եւ սատանեալ շարժեցաւ բնութիւնն անմռունչ, եւ տուն զժոխք զաւար իւրեանց ի դուրս. վարագոյրն որ զարդութիւն հնոց կտակարանացն ծածկէր՝ ցելաւ վերուստ ի վայր. բերան առն հեթանոսի որ կայրն առ նմա ի պահու՝ օրհնեաց զԱստուած եւ խոստովան եղեւ թէ արդարեւ այրս այս արդար էր եւ Որդի Աստուծոյ. եւ ի հե-

1 Մատթ. Ե. 20. ԺԲ. 24—42. ԺԵ. 1—20:

2 Մատթ. ԺԲ. 14, 15: Ղուկ. ԺԱ. 53, 54: Յովհ. Է. 32, 45. ԺԱ. 46—56:

3 Մատթ. ԺԵ. 21, 22. Ի. 18, 19: Մարկ. Ժ. 33, 34: Ղուկ. ԺԸ. 31, 32:

4 Մատթ. ԻԶ. 26—28: Մարկ. ԺԴ. 22—24: Ղուկ. ԻԲ. 7—18, 19, 20: Տես Յովհ. Զ. 51—59. եւ ԺԴ. 1. Համեմատել ընդ Մաղաք. Ա. 11. եւ Եբր. Է—Թ: Ծնն. ԺԴ. 18: Սղմ. ՃԹ. 4:

5 Յովհ. Զ. 56:

ռաւոր ծովուն հնչեաց բարբառ խորհրդական ի լսելիս հեթանո-սաց թէ "Մեռաւ մեծն Պան,, եւ յետ այնորիկ հնչէր հեծու-թիւն խառն ընդ հիացման (ըստ Պղուտարքեայ † 120)[1]։ Զե-րիս ժամս, ի միջօրէէ մինչեւ ցերրորդ ժամ, խաւար կալաւ զաշ-խարհ եւ անսովորական իմն կարգաւ խաւարեցաւ արեգակն՝ ի լրման լուսնի։ Փղեգոն եւ մեւս եւս յոյն մատենագիր (առ Եւսե-բեայ) յանդէտս վկայեն զանսովորական իմն նուազութենէ արեգա-կան, եւ թէ ի նմին ժամանակի սասանութեամբ ապականեցաւ Նիկիա։ — Յովսէփ Արեմաթացի համարձակեալ յաղթէր եր-կիւղէն Հրէից, խնդրեալ ի Պիղատոսէ զմարմինն Յիսուսի՝ թա-ղեաց մեծաւ փառաւորութեամբ։ Եւ այնպէս լցաւ մարգարէու-թիւնն Եսայեայ[2] թէ "Տաց զչարս փոխանակ գերեզմանի նորա եւ զմեծատունսն փոխանակ մահու նորա,,։

2. Յետ երից աւուրց յաղթեաց Յիսուս մահու ելեալ ի գե-րեզմանէն զոր կնքեալ էին մատանեաւ քահանայապետքն եւ պա-հէին զօրականաւ՝ որ եւ քարոզք յարութեանն լինէին առաջի Հրէիցն։ Երեւեցաւ նա նախ մօրն առանձինն (որպէս հաւանու-թեան թուի), եւ ապա յետ կանանցն՝ երեւեցաւ Պետրոսի յոր-ժամ (երկրորդ անգամ) ընթացեալ էր նա ի գերեզման եւ դար-նայր յԵրուսաղէմ՝ զարմացեալ թէ զինչ եղեւ (յամի 34), եւ ապա երեւեցաւ եղբարց աւելի քան զ500 (որպէս հաւանութեան թուի ի Գալիլեա ուր ժամադիրն լեալ էր[3])։ Այնուհետեւ մերթ ընդ մերթ երեւէր նոցա Յիսուս՝ հաստատելով զհաւատս նոցա, մանաւանդ զԹովմայի որ այնպէս պնդեալ էր չհաւատալ, "Որպէս զի եւ յետինքս առաւել վստահագոյնք եւ հաստատագոյնք ի հաւատս յարութեանն լինիցիմք,, (Ս. Լեւոն)։ Կաց մնաց նա ընդ նոսա յաւուրս 40, տալով բազում նշանս առաջի նոցա[4], եւ ուսոյց նոցա զամենայն կարգս եւ խորհուրդս Եկեղեցւոյ իւրոյ, զքահանայութեան[5], զխորհրդոց ապաշխարութեան[6] եւ զմկր-տութեան[7]։ Ի միում նուագի յերեւելն աշակերտացն առ ծո-վուն Տիբերեայ՝ Պետրոս հրամանաւն նորա արար զարմանալի ինչ որս ձկանց։ Յետ խորհրդական որսոյն՝ հարցանէր զՊետրոս թէ սիրիցէ՞ նա զնա առաւել քան զայլ աշակերտակիցսն, զի ըստ ա-ռաւել սիրոյն զառաւելութիւն հովուութեանն առնիցէ նմա յանձն. եւ յետ երից պատասխանեացն թէ սիրեմ (իբր ի բժշ-կութիւն երիցն ուրացութեանց) երիցս առնէր նմա յանձն զամե-նայն հօտ իւր, յանձն արարեալ արածել ոչ միայն զգառինս այլ եւ զոչխարս իւր[8] (այս ինքն զամենայն ժողովրդականս եւ զկղե-

1 Տես ի Վարս Պղուտարքեայ (էջ 31 — 40) ի գլուխ հայերէն թարգմանութեան Զուգակշռաց նորա ի Հ. Եղիայ Վ. Թոմա-ճեան։

2 Եսայ. ԾԳ. 9։

3 Ա. Կոր. ԺԵ. 6։

4 Յովհ. Ի. 30։

5 Յովհ. Ի. 21—23։

6 Մատթ. ԻԸ. 16—20։

7 Տես Գործ. Ա. 3։

8 Յովհ. ԻԱ։

Digitized by Google

րանկանս)։ Եւ այսպէս ենոյր զխոստումն զոր յառաջ քան զմի ամ էր խոստացեալ՝ յորժամ ի հարցանել Յեսուսի ցամենայն աշակերտսն թէ զո՞ ոք ասիցեն զնմանէ թէ իցէ՝ յառաջ մատուցեալ Պետրոս դաւանէր զաստուածութիւն նորա։ Եւ Քրիստոս վասն տալոյ հաւատոյն զոր քան զայլսն եցոյց, եւ զի հայր նորա զնա եւեթ արժանի արար յայտնութեան իւրում տալոյ քան զայլ առաքեալսն՝ ինքն եւս Քրիստոս ասէր թէ "Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն[1]"։

Այսպէս կատարեաց Քրիստոս զխոստումն՝ կացուցեալ զՊետրոս իշխան առաքելոց եւ գլուխ Եկեղեցւոյ փոխանակ իւր, ի ժամանակի զի հասանէին աւուրք մեկնելոյ նորա առ հայր իւր։ Առեալ ածէր զաշակերտսն ի Բեթանիա եւ կրկնելով նոցա թէ "Երթայք ընդ ամենայն աշխարհ, քարոզեցէք զաւետարանն ամենայն արարածոց, մկրտեցէք զնոսա յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ", ամբարձեալ զձեռս օրհնէր եւ վերանայր յաշխարհէ՝ այնպէս սքանչելի եւ անհաս իմն օրինակաւ՝ որպէս եկեալն էր յաշխարհ։

Դարձան յԵրուսաղէմ առաքեալքն զարմացեալք, սպասել աւետեացն (Հոգւոյն սրբոյ) ըստ բանի վարդապետին իւրեանց՝ թէ "Նստարուք յԵրուսաղէմ մինչեւ զգենուցուք զօրութիւն ի բարձանց"։

## 6

Բայց յառաջ իսկ քան զայն ի դէպ է զքաղաքային անցս աշխարհին Հրէաստանեայ առ Հերովդեամբք՝ նշմարել։ Յամի իբրեւ 1 կամ 3 յետ Քր. մեռանէր Հերովդէս Մեծն բռնաւորեալ ամս իբրեւ 37—40՝ չարաչար ախտիւ որդնալից տոչորեալ, որ էր յայտնի իսկ պատիժ պատուհասի Աստուծոյ արդարութեանն[2]։ Ըստ կտակին նորա զոր հաստատեաց իսկ Օգոստոս իւիք իւիք փոփոխմամբ՝ բաժանեցաւ թագաւորութիւն նորա երեցունց որդւոց իւրոց։ Երիցագոյնն քան զամենեսին՝ Հերովդէս Փիլիպպոս չունէր ինչ ժառանգութիւն ի կտակին վասն դաւաճանութեան իրիք զոր խորհեցաւ մայր նորա եւ կայր առանց իշխանութեան։

Արքեղայոս երկրորդ որդի ընկալաւ իբրեւ Ազգապետ[3] զՀրէաստան, զՍամարիա եւ զԵդոմ, զմեծ կէս թագաւորութեանն։ Իշխէր նա չարաչար եւ մեծաւ բռնութեամբ, եւ յայն սակս իսկ անդէն յամի 6 (կամ 10) կոչեցաւ նա ի Հռոմ տալ պատասխանի. ընկեցաւ եւ վտարեցաւ ի Վիեննա Գաղղիացւոց։ Թագաւորութիւն նորա եղեւ նահանգ Հռոմայեցւոց եւ յաւելաւ յԱսորիս, եւ առաջնորդէր հազարապետօք կամ դատաւորօք[4] որք նստէին

1 Մատթ. ԺԶ. 13—19։ 2 Յովս. Հնախ. Ա. ԺԷ 606—9։ 3 Φύλαρχος. 4 Procurator.

Digitized by Google

ի Կեսարիա (Պաղեստինացւոց) պահել զխաղաղութիւն երկրին, առնուլ զհարկս եւ տեսանել զդատաստանս իբրեւ իշխանութեամբ կայսեր։ Զգործ դատաւորութեանն կալան մի ըստ միոջէ Կոպոնիոս, Մարկոս Ամբիւղիոս, Անիոս Ռուփոս, Վալերիոս Գրատոս, Պոնտոս Պիղատոս, եւ յետ նորա Մարկեղոս եւս եւ Մարուղղոս, (6—41)։ Հեծէին այնուհետեւ Հրեայք ընդ երկաթի լծով Հռոմայեցւոց, բայց մանաւանդ առ. Պոնտացւոյն Պիղատոսիւ (26—36), որ դառնացոյց իսկ զնոսա, զկրօնիցն եւս իրս անարգելով։ Այլ յետ անիրաւ դատաստանին զոր եցոյց Պիղատոս ի վերայ Կենարարին մերոյ՝ կոչեցաւ նա (յամի իբրեւ 35) ի Ղուկիոսէ Վիտեղլիոսէ հազարապետէ Ասորւոց որ էր այր ընտիր, երթալ տալ համար վասն գործոց իւրոց ի Հռոմ։ Ահա անդր Պիղատոս յամի ուրեմն իբրեւ 37 եւ պատմի աքսորեալ ի Վիեննա Գաղղիացւոց՝ ուր յուսահատեալ անձին արար։ Ընկէց Վիտեղլիոս ի պատուոյն եւ զԿայիափա եւ ուրախ եղեն Հրեայք։

Փիլիպպոս կրտսերագոյն յորդւոցն Հերովդի ընկալաւ իբրեւ Չորրորդապետ զհիւսիսային կողմն արեւելից Յորդանանու, այսինքն զսահմանսն Բատանէա, Տրաքոնիտիս, Գաւղանիտիս (Իտուրէա) եւ զԱւրանիտիս։ Պատմի նա լեալ զգօն, արդար եւ հանճարեղ, եւ նստէր նա ի Պանէաս զոր եւ ընդարձակեալ զարդարեաց եւ անուանեալ կոչեաց Կեսարիա Փիլիպպեայ։ Մեռաւ նա յամի իբրեւ 34 անորդի, եւ սահմանք նորա յաւելան յԱսորիս։

Հերովդէս Անտիպաս նորին եղբայր, ընկալաւ իբրեւ Չորրորդապետ զսահմանս Գալիլեայ եւ Պերէայ, եւ ինքն նստէր ի Տիբերիա։ Հատաւ նա յանդիմանութիւնս, թողեալ զկին իւր մոլորեցոյց զՀերովդիաս զկին եղբօր իւրոյ Հերովդի Փիլիպպեայ։ — Յետոյ ուրեմն կամեցաւ առնուլ յինքն զանուն թագաւորութեան, բայց ընդ այնր ընկեցաւ նա եւ աքսորեցաւ ի Լիոն (յամի 39), եւ Հերովդիաս չոգաւ զհետ նորա։ Անտի փախուցեալ ի Սպանիա՝ վախճանեցաւ։ Սա էր որ ի Յովհաննէ յանդիմանեցաւ եւ որոյ առաջի եկաց Քրիստոս եւ անարգեցաւ։

Վաղ քան զայն՝ Հերովդէս Ագրիպպաս Ա. թոռն Հերովդի Մեծի, որդի Արիստաբուղեայ, այր անառակ, բայց սիրելի կայսերաց՝ առ զչորրորդապետութիւն հօրեղբօր իւրոյ Փիլիպպեայ յամի իբրեւ 37. իսկ յամի իբրեւ 40 առ եւ զչորրորդապետութիւնն Անտիպայ, եւ ի յաջորդ ամին եւ զազգապետութիւնն Արքեղայ, այնպէս զի յամի անդ 41 իշխէր նա համօրէն իսկ Պաղեստինեայ իբրեւ թագաւոր։ Բառնայր նա զաղէտս երկրին, նուաղեցուցանէր զտուրսն, շինէր զքաղաքսն, բայց հալածէր եւ զքրիստոնեայսն։ Այլ իբրեւ յաւուր միում յորժամ ի Կեսարիայն էր՝ մեծապայծառ զարդարեալ լսէր հրճուակացն Տիւրացւոց եւ Սիդոնացւոց, զորս ի նեղ իսկ արկեալ էր հատանելով զպաշար նոցա,

Digitized by Google

դարեալ իմն էր ըստ թուոյ ցեղիցն Իսրայելի, յայն սակս եւ եկաց Պետրոս եւ խօսեցաւ թէ պարտ եւ պատշաճ է լնուլ զԹիւն զայն՝ յետ անկման Յուդայի, համեմատ Դաւթի մարգարէութեան[1], եւ այնպէս անց Մատաթիա ի կարգ առաքելոցն[2]:

Յետ 10 աւուր վերանալոյն Քրիստոսի, իբրեւ այգըն եղեւ պենտակոստական տօնին Հրէից (34 կամ 35), որ էր տօն յիշատակի օրէնսդրութեան հնոցն կտակարանաց ի Սինայի ի մէջ սրոտմանցն եւ փայլատականց՝ իբրեւ օրինակ հանդերձելոց, լինէր սաստէն նոյնպիսի հնչմանքբ բարբառոյ սաստկութեան՝ լրումն նորոցն կտակարանաց: Ի վերնատանն հրեղէն լեզուաց՝ իբրեւ նշանակաց կատարեալ յստակութեան, զօրութեան եւ եռանդեան զոր ի նոր լեզուս անդ իւրեանց էին ցուցանելոց առաքեալք, իջանէր ի վերայ նոցա եւ ի վերայ ամենայն աշակերտացն ժողովելոց՝ Հոգին. եւ յանկարծակի խօսէին նոքա եւ իմանային զնոսա ամենայն ազգք ժողովեալք ի տօնին: Սքանչելեօքն այնոքիւք, մանաւանդ բանիւն Պետրոսի որ նախ յարուցեալ խօսեցաւ առ նոսա՝ դարձան արք 3000 հաւատալ զՅիսուս Որդի Աստուծոյ, եւ ապաշխարել եւ մկըրտել յԵրրորդութիւնն: Այսպէս հեղմամբ Հոգւոյն սրբոյ առ զառաջինն հաստատութիւն Եկեղեցի եւ տեւականութիւն վասն ամենայն ժամանակաց:

Ընդ սքանչելիս բժշկութեան կաղին մուրականի զոր առ դրան տաճարին յարոյց Պետրոս զձեռանէն ունելով եւ ընդ համարձակութիւն քարոզութեան առաքելոցն ի տաճարին զայրացեալ սկսան Փարիսեցիքն, եւ մանաւանդ Սադուկեցիք վասն վարդապետութեան յարութեանն: Նմին իրի իսկ ածան յատեան 71 արանց խորհրդեանն նոցա Պետրոս եւ Յովհաննէս, եւ հրաման տուաւ նոցա լռել յայնուհետեւ զվարդապետութենէն, բայց նոքա բարւոք համարձակութեամբն տային պատասխանի թէ Աստուծոյ մանաւանդ հնազանդել պարտին քան մարդկան, եւ թէ չէ հնար նոցա զոր ինչ տեսինն եւ լուան՝ չխօսել: Սակայն եւ այնպէս առ ժողովրդեանն ահի՝ հարկ համարեցան արձակել զնոսա լռկով սպառնալեօք: Այլ իբրեւ ըստ բանիցն նոյնպէս ջերմութեամբ քարոզէին առաքեալքն՝ հաւանեցաւ եւ խորհուրդն Հրէից թողուլ զնոսա ըստ խրատուն Գամաղիելի, որ չէր տակաւին որոշեալ զանձն ի քրիստոնէութիւն, եւ ասէր թէ թոյլ տալ պարտ է զի եթէ յԱստուծոյ գործն իցէ՝ յարդեանց իրացն երեւեսցի, եւ այսպէս իսկ ժամանակս ինչ լռեալ կայր Սադուկեցւոցն մոլեգնութիւն:

Այլ իբրեւ տակաւ յորդէր քրիստոնէութիւնն եւ որ յառաջին վարդապետք հրէութեանն էին՝ եղեն ուսուցիչք քրիստոնէութեան եւ վիճէին իսկ ընդ Հրէիցն, միաբանեցին այնուհետեւ Փարիսեցիք եւ Սադուկեցիք հալածել առհասարակ զեկե-

1 Սղմ. ՃԸ. 8: 2 Գործ. Ա. 15 — 26:

Այսպիսի առաքելութեամբ ընկալեալ լինէին բազմամբոխ հեթանոսք յԱնտիոք ի ժողովս հաւատացելոցն, թէպէտ եւ աստ ուրեմն ոմանք ի դարձելոցն Հրէից ի քահանայից անտի եւ ի փարիսեցւոց՝ պահանջել իմն սկսան ի քրիստոնէիցն որ ի հեթանոսաց անտի էին՝ զպահպանութիւն եկամտիցն խրատուց՝ այս ինքն զթլփատելն եւս: Այսպէս եկեղեցին Անտիոքացւոց, որ էր ի հրէական եւ ի հեթանոսական քրիստոնէից, եղեւ երկրորդ իմն մայր եկեղեցի, եւ անդ զառաջինն կոչեցաւ Քրիստոնեայ անուն հաւատացելոցն, ուր յառաջագոյն կոչէր՝ Նազովրացի կամ Գալիլեացի. բայց էր եւ այն եկեղեցի կապեալ անքակ ընդ մայր եկեղեցւոյն յԵրուսաղէմ՝ որովք սիրոյ:

2. Իսկ Սաւուղ յետ դարձմանն դարձեալ չոգաւ յԱրաբիա՝ ուր ի մէջ բազմամբոխ Հրէիցն (զորոց Յովսեպոս պատմէ լեալ անդ՝ դառնալով Արաբացւոց ի հրէութիւն) քարոզէր զքրիստոնէութիւնն: Անտի եկն յԵրուսաղէմ (3 ամօք յետոյ քան զդարձն) բուն վասն զՊետրոս տեսանելոյ եւ զի ծանիցի ի նմանէ իբրեւ ճշմարիտ քարոզ աւետարանին[1]: Այսպէս առեալ իւր ընկեր զԲառնաբաս որ էր գիտուն ոք Ղեւտացի ի Կիպրոսէ (որպէս հաւանութեամբ է՝ մի յ72 աշակերտացն) որոյ եւ ածեալ իսկ էր զնա առ Պետրոս եւ առ Յակոբոս, սկսաւ ճանապարհ վասն քարոզութեան յԱսորիս եւ ի Կիլիկիա, եւ վճարեալ իսկ բազում ինչ յաջ ի հաստատութիւն քրիստոնէութեանն յԱնտիոք, այլ եւ ի հեռաստանէ օգնական էր եկեղեցւոյն Երուսաղեմացւոց՝ զոր հալածէր յայնժամ Հերովդէս Ագրիպպաս Ա. թագաւոր ի վերայ ամենայն աշխարհին Պաղեստինացւոց, եւ զի հաճոյ Հրէիցն լինիցի՝ սպանեալ էր զՅակոբոս զերէցն զեղբայրն Յովհաննու (44) եւ զՊետրոս ի բանտ արկեալ, ուստի աղօթիւք հաւատացելոցն եւ ի ձեռն հրեշտակին ապրեալ ազատեցաւ առաքեալն, մինչեւ Ագրիպպայ սատակեալ աստուածապատիժ՝ խաղաղութիւն առնոյր եկեղեցի ընդ Հռովմայեցւոցն իշխանութեամբ[2] (44):

Յայնմ հետէ սկիզբն առնէր Պաւղոս ընդ Բառնաբայ՝ առաջնոյ մեծի ճանապարհորդութեանն ի քարոզութիւն (45 եւ 46) ի Սելեւկիայ՝ ի Կիպրոս, ուր զփոխանակ բդեշխին զՍերգիոս Պաւղոս դարձոյց, եւ թերեւս ի նշանակ բարեկամութեանն առ զնորին անուն. ապա ի Պամփիլիա, ի Պիսիդիա, ի Լիկաոնիա՝ ուր ի Լիւստրա քաղաքի ի բժշկել Պաւղոսի զկաղ մի ի ծնէ՝ աստուածս զնոսա համարեցան քուրմքն (զՊաւղոս՝ Հերմէս եւ զԲառնաբաս՝ Դիոս), մինչեւ հազիւ կարացին հաւանեցուցանել չզոհել նոցա: Ամենայն ուրեք ընդունէին հեթանոսք զվարդապետութիւնն, բայց վասն մի Հրէիցն հակառակեալ հալածական հանէր զնոսա: Ապա մտեալ առ Ատտալիա ի նաւ՝ դարձան յԱնտիոք[3]:

1 Գաղ. Ա. 17—19: Գործ. Թ. 19—27: 2 Տես համառօտ 6: 3 Գործ. Ը—ԺԴ:

Բայց սաստ ուրեմն քննել գծառութիւն էր վասն քրիստոնէից դարձելոց ի հեթանոսութենէ թէ պահելոց արդեւք իցեն կատարեալ զմովսիսեան օրէնսն, վասն այնորիկ նախ առաքեցան Պաւղոս եւ Բառնաբաս յԵրուսաղէմ, ուր յառաջին ժողովն (50—52) առհասարակ յառաքելոցն միաբան բարբառով` իբրեւ յանուն Հոգւոյն սրբոյ` թէ Չեն կարեւոր հեթանոսացն պահել զօրէնսն Մովսիսի, այլ միայն զնոյեան արգելման (այս ինքն` ժուժկալել յարենէ եւ ի հեղձուցելոյ), եւ մանաւանդ ի բաց կալ ի զոհելոց եւ ի պոռնկութենէ:

Պաւղոս յետ բերելոյ զվճիռ ժողովոյն յԱնտիոք` սկսաւ զերկրորդ ճանապարհորդութիւնն (52 կամ 53) ընդ Շիղայի, անցանելով ընդ Ասորիս, ընդ Կիլիկիա եւ ընդ Լիկաւոնիա. Բառնաբաս բաժանեալ էր ի նմանէ եւ ընդ ազգականին իւրում ընդ Յովհաննու Մարկոսի երթեալ ի Կիպրոս: Ի Լիւստրա առ Պաւղոս ընդ իւր զՏիմոթէոս, եւ այնուհետեւ երկրին առնէին ճանապարհ ընդ Փռիւգիա, Գաղատիա եւ Միւսիա: Ի Տրովադա յաւելաւ ի նոսա բժիշկն եւ աւետարանիչն Ղուկաս, եւ անտի անցեալ ի Մակեդոնիա հաստատեցին եկեղեցիս ի Փիլիպպիս, ի Թեսաղոնիկէ եւ ի Բերիա: Ի Բերիա թողեալ Պաւղոսի զՏիմոթէոս եւ զՇիղայ` նաւարկէր յԱթէնս ի գլխաւոր կայան կռապաշտութեանն Յունաց, եւ քարոզէր փիլիսոփայից յԱրիսպագին զնա զԱստուածն անծանօթ. եւ յետ այնորիկ դէմ եդեալ հասանէր ի մեծատուն եւ ի բարեկեցիկ քաղաքն Կորնթացւոց. անդ առաջ նախ ընդունելութիւն Ակիւղաս ոմն հաւատացեալ, եւ աստուստ գրէր զառաջին առաքելական թուղթն այս ինքն զերկոսին Թեսաղոնիկեցւոց: Յետ $1\frac{1}{2}$ ամեայ աշխատութեանցն հաստատելոյ անդ եկեղեցիս` դառնայր ընդ Եփեսոս, ընդ Կեսարիա եւ ընդ Երուսաղէմ միւսանգամ յԱնտիոք[1]:

Բայց առաքելական եռանդն նորա զդադարեաց զդադարեաց զնա ի մեւս եւս երրորդ ճանապարհորդութիւն ի փոքրն Ասիա (54 կամ 55): Յետ այց առնելոյ եկեղեցեացն ի Փռիւգիա եւ ի Գաղատիա` գնաց յԵփեսոս, եւ յամեր անդ աւելի երկուս ամհանգիստ վաստակովք` հոգալով եւ զերս մօտաւոր քաղաքացն, նա մանաւանդ եւ զհոգս իսկ հեռաւոր եկեղեցեացն` ի Գաղատիա եւ ի Կորնթոս առաքելով թուղթս առաքելականս` զԳաղատացւոց եւ զԱ. Կորնթացւոց: Այլ իբրեւ ամբոխն` երկուցեալ թէ չինչ պաշտօն Արտեմեայ որով հաշտականութեամբ էր Եփեսոս` մերժեաց զնա խռովութեամբ, գնաց նա (յամին իբրեւ 57) ի Մակեդոնիա այց առնել եկեղեցեացն, եւ անտի գրէր զԲ. Թուղթն Կորնթացւոց: Այլ յետ սակաւ ինչ միոյ ամսոյ երթայր միւսանգամ ի Կորնթոս` զի զգժտութիւնս ամենեւին լռեցուսցէ: Ընդ նոյն

1 Գործ. ԺԵ. 36—ԺԸ. 22:

ժամանակս գրէր իբրեւ հեթանոսաց Առաքեալ եւ առ գլուխ քաղաքացն հեթանոսաց՝ ի Հռոմ։ Յետ ամիս 3 ի Կորընթոս յամելոյ՝ դառնայր այսրէն ընդ ճանապարհ Մակեդոնիայ (յամի իբրեւ 58), ուր եւ հասին առ նա երիցունք յԵփեսոսէ եւ ի մերձաւոր քաղաքաց եւ խօսեցաւ առ նոսա զգեղեցիկ բանսն խրատու եւ զվերջին հրաժարման, եւ ընդ Պտղոմայիս եւ ընդ Կեսարիա դարձաւ յԵրուսաղէմ[1]։ Անդ ուրեմն ի տաճարին յարձակեցան ի վերայ նորա Հրեայք ի փոքր Ասիացւոց՝ իբրեւ ի վերայ առն որ զօրէնսն անարգիցէ. ըմբռնեցաւ Պաւղոս, բայց վասն զի հռոմէական քաղաքացի էր՝ զերծաւ յիշխանութենէ Սինեդրիոնի եւ ածաւ ի Կեսարիա առ Փելիքս դատաւոր հռոմայեցի։ Արդարացոյց Պաւղոս զանձն առաջի Փելիքսի եւ Փեստոսի նորին յաջորդի եւ Ագրիպպայ Բ. արքայի՝ որ եկեալ էր ընդ քեռն իւրում Բերենիկեայ տալ ողջոյն Փեստոսի. եւ յետ երկամեայ կապանացն ի Կեսարիա՝ առաքեցաւ նա ի Հռոմ վասն բողոքմանն առ կայսր՝ հանդերձ Ղուկաւ եւ Արիստարքեաւ (61)[2]։

Ի թեթեւ կապանս ի Հռոմ իբրեւ ամս երկու՝ գրեաց նա զԹուղթն առ Եփեսացիս, Փիլիպեցիս եւ Կողոսացիս՝ որ առանձին իմն զփառացն Քրիստոսի, զփրկութենէ մարդկեղէն ազգի եւ զկոչմանէն հեթանոսաց ճառեն եւ զգուշացուցանեն ի հերձուածոցն որ ծնանիցին, որպէս եւ զսիրոյ եւ զընծայութեան Թուղթն առ Փիլեմոն ի Կողոսս վասն Ոնեսիմեայ ծառայի նորա փախուցելոյ։ Հաւանութեան է թէ յայնժամ ուրեմն գրեցաւ եւ Թուղթն առ Եբրայեցիս[3]։ Բայց եւ ի Հռոմ թուի թէ բազմացոյց նա հանդերձ ընկերօքն զթիւ հաւատացելոցն՝ դարձուցեալ եւ զոմանս ի տանէ կայսեր[4]։ Յայսմ վայրի լռեալ դադարէ պատմութիւն Գործոց Առաքելոց վասն իրացն Պաւղոսի։

Այլ ըստ հին ինչ վկայութեանց եղ Պաւղոս միւսանգամ յազատութիւն. եւ ըստ ցանկութեանն իւրում[5] պատմի քարոզեալ եւ ի Սպանիա։ Առանց երկմտութեան է թէ եկն նա ի Կրետէ եւ եթող անդէն զՏիտոս, եւ ի Նիկոպօղեայ (Եպիրացւո՞ց) գրեաց առ նա զԹուղթն հովուական։ Այսքէն իսկ ժամանակի գրեաց եւ զԱ. Թուղթն առ Տիմոթէոս յԵփեսոս։ Եկեալ ի Նիկոպօղեայ՝ շրջեցաւ միւսանգամ ընդ եկեղեցիս Տրովադայ, Մակեդոնիայ եւ Կորընթոսի. եւ յետ այնորիկ, ըստ պատմելոյ Դիոնիսեայ եպիսկոպոսի Կորընթացւոց (առ Եւսեբեայ), պատահեալ Պետրոսի՝ երկոքին միաբան փութացան ի Հռոմ վասն եղբարցն նեղելոց առ Ներոնիւ։ Անդ արկաւ երկրորդ անգամ ի բանդ, ուստի գրեաց զԲ. Թուղթն առ Տիմոթէոս յԵփեսոս. եւ ի բորբոքել միւսանգամ հալածանացն (67 կամ 68)՝ գլխատեցաւ

1 Գործ. ԺԹ — ԻԱ։
2 Գործ. ԻԷ — ԻԸ։
3 Եբր. ԺԳ. 24։
4 Փիլիպ. Ա. 13. Դ. 22։
5 Հռոմ. ԺԵ. 24, 28։

Digitized by Google

ծառայապես իբրեւ քաղաքակից հռոմայեցւոց, ուրախութեամբ՝ ընդունելով զպսակն ազատութեան[1]:

3. Իսկ Պետրոս յետ հաստատելոյ զեկեղեցին Երուսաղեմացւոց եւ շրջելոյ ընդ Պաղեստին եւ կարգելոյ զերս եկեղեցեացն, եւ յետ այնորիկ յԱնտիոք առաջնորդելոյ եկեղեցւոյն իբրեւ եպիսկոպոս ժամանակս ինչ՝ երթեալ քարոզէր ի Պոնտոս, ի Կապադովկիա, ի Գաղատիա, յԱսիա եւ ի Բիւթանիա. եւ ըստ ստոյգ պատմութեանց՝ եկն նա յամի իբրեւ 42 ի Հռոմ փախուստեայ յԵրուսաղեմէ: Անտի դարձաւ նա յԵրուսաղէմ ուր հրաշալեօքն ազատեցաւ ի հալածմանէն Հերովդի Ագրիպպայ Ա.: Յետ սորա վախճանին (44) գտանեմք զնա դարձեալ յԵրուսաղէմ[2] յամի իբրեւ 52, եւ յետոյ միւսանգամ յԱնտիոք. եւ որպէս վաղագոյն ասացաք՝ եղեւ գործակից հաստատութեան եկեղեցւոյն Կորնթացւոց ընդ Պաւղոսի: Եւ յետ այնորիկ վկայեաց նա ընդ նմա ի Հռոմ ի հալածանսն Ներոնի (67 կամ 68) խաչեալ՝ ըստ ակնարկելոյ մարգարէութեան Քրիստոսի[3], առ Վատիկանեան լերամբն ի մերձակի սահմանաց Հռոմէից, գլխիվայր՝ որպէս ինքն խնդրեաց (ըստ Որոգինեայ եւ Տերտուղիանեայ): Եպիսկոպոսութիւնն Պետրոսի ի Հռոմ առ հասարակ պատմի ի հնոց տեւեալ ամս իբրեւ 25, որ մեկնի զիւրաւ կրկին երթիւն նորա ի Հռոմ: Ըստ գեղեցիկ Թղթին իւրոյ առաջնոյ որ առ հաւատացեալսն Եբրայեցիս (ի սփիւռս հեթանոսաց) ի Պոնտոս, ի Գաղատիա եւ յայլ եւս սահմանակից կողմանսն՝ էր նա ի ժամանակի գրելոյն ի Բաբելոն, այս ինքն՝ ի Հռոմ[4]: Իսկ Բ. Թուղթն նորա առ Եբրայեցիս՝ յայտ իսկ հաւանութեան է թէ իցէ գրեալ սակաւ ինչ յառաջ քան զմահն[5]:

Պատմութիւն գործոց Առաքելոցն մեծաւ մասամբ զՊետրոսէ (յառաջին գլուխսն) եւ զՊաւղոսէ (ի վերջինսն) ճառէ, իբրեւ զառաքելոց՝ յորոց մին էր Առաքեալ Հրէից առաւելութեամբ իմն, եւ միւսն՝ Առաքեալ Հեթանոսաց. իսկ զբազմաց այլոցն առաքելոց՝ չյիշէ ինչ այնչափ: Այլոցն ևրի իսկ մութ իմն զրոյցս եւ պատմութիւնս զսոցունց ունիմք:

9

Յակոբոս որդի Ալփեայ կամ Յակոբոս Կրսերն, Եղբայրն, Ազգականն Քրիստոսի՝ եկաց առաջին եպիսկոպոս Երուսաղեմի. ակն ածէին ի նմանէ եւ Հրէայքն իսկ՝ վասն արդարութեանն եւ զգօնութեան. բայց եւ զՀրէայսն որ արտաքոյ քան զՊաղեստին՝ Առաքելական Թղթովն յորդորէր ի հաւատս որ հանդերձ գործովք

1 Բ. Տիմ. Դ. 8:
2 Գործ. ԺԵ. 7:
3 Յովհ. ԻԱ. 18, 19:
4 Ա. Պետր. Ե. 13:
5 Բ. Պետր. Ա. 13, 14:

Digitized by Google

կամ առ Կղաւդեաւ եւ կամ որ առաւել հաւանութեան է՝ առ Ներոնիւ ի Պատմոս աքսորեցաւ[1], (ըստ Տերտուղիանեայ՝ եւ նա նախ ողջանդամ ի կաթսայէ ձիթոյ եռացելոյ յոր արկեալ էր զնա Դոմետիանոս) եւ ի Պատմոս գրեաց զՅայտնութեան գիրսն (ԻԲ գլուխս) որ նմանութեամբք եւ մարգարէութեամբք ծանուն զանցից եկեղեցւոյ։ Դարձաւ անտի յԵփեսոս (յամի իբրեւ 97) եւ առաջնորդէր եկեղեցեացն Ասիացւոց նահանգին։ Ընդ յամի իբրեւ 98 գրեաց նա զԱւետարանն յաղաչելոյ եպիսկոպոսաց եկեղեցեացն այնոցիկ եւ քրիստոնէից, եւ ընծայութեամբն սիրոյ եւ աստուածութեանն Քրիստոսի՝ հիւսեաց զայլ երիս աւետարանս. եւ ինքն վախճանէր ծերութեան մահուամբ ըստ Քրիստոսի բանին[2] (ամաց իբրեւ 90), յամի իբրեւ 100՝ յԵփեսոս. եւ գերեզման նորա կայր աւերակօքն ի 5երորդ դարու։ Այլք եւս գործակիցք քարոզութեան աւետարանին եւ որ յանուանէ ի գիրս սուրբս յիշատակին՝ են Տիմոթէոս Լիկաւոնացի որդի առն հեթանոսի եւ կնոջ հրէի[3]. Տիտոս ծնընդեամբ հեթանոս, ծնեալ ուրեք հաւատութեան թուի յԱնտիոք, Փիլիպպոս սարկաւագ որ թուի կալեալ բնակութիւն ի Սամարիա Պաղեստինացւոց[4]. Ապողոս կամ Ապեղէս հրեայ աղեքսանդրացի որ գործէր զգործ աւետարանին մանաւանդ յԵփեսոս ուր ուսաւ նա զքրիստոնէութիւն ի ձեռն Ակիւղայ եւ Պրիսկիղղայ, եւ յետոյ ի Կորնթոս[5]. Սոսթենէս որ յառաջին էր վերակացու ժողովրդեանցին ի Կորնթոս[6]. Բառնաբաս, Շիղա, Փիլեմոն, Արիստարքոս, Եպափրոդիտոս եւ այլք։

Իսկ վասն երանելւոյ Կուսին՝ զոր ի խաչին յանձն առնէր Յիսուս սիրելի աշակերտին իւրում՝ ոչ ինչ յիշատակեն գիրք թէ ապրեալ յետ յարութեանն՝ երեւելոյ իցէ նմա Քրիստոս. բայց ո՞ է որ ընդ այս տարակուսեսցի։ Ոմանց իրիք յերկուանաց է թէ ըստ Քրիստոսի յանձնարարութեանն՝ էր առ Յովհաննու մինչեւ ցմահն։ Ըստ ոմանց վախճանեցաւ նա յամի իբրեւ 45 (այս ինքն յամի ցրուելոյ աշակերտացն յԵրուսաղեմէ յետ 12 ամաց յարութեանն Քրիստոսի, քանզի ըստ աւանդութեան իրիք այսպէս հրաման տուեալ էր Քրիստոս առաքելոցն՝ կալ անդէն մինչեւ ցնոյն ժամանակ). իսկ ըստ այլոց վախճանէր յամի իբրեւ 47 ի նմին քաղաքի, եւ ցուցանի գերեզման նորա ի ձորին Յովսափատու մօտ ի Գեթսեմանի։ Մեւս եւս երրորդ կարծիք այն է թէ առ տարաւ զնա Յովհաննէս յԵփեսոս եւ անդ վախճանեցաւ յամի իբրեւ 56։ Առաւել քան զամենայն հաւանութեան է ամն 45։

1 Յայտն. Ա. 9։
2 Յովհ. ԻԱ. 21, 22։
3 Գործ. ԻԱ. 8։
4 Գործ. Ը. 5։
5 Գործ. ԺԸ. 24 . . եւ ԺԹ. 1։
6 Գործ. ԺԸ. 17։

Digitized by Google

## 10

Նուիրքն հանգամանք Առաքելական եկեղեցւոյ։

1. Որպէս առ կենդանութեանն Քրիստոսի կայր ընտրութիւն կամ խտիր վարդապետաց եւ աշակերտաց, տեառն եւ ծառայից, քահանայի եւ ժողովրդականի[1], եւ ինքն Քրիստոս կարգեալ էր զայն ամենայն վասն եկեղեցւոյ[2]՝ նոյն օրինակ երեւէր ի կարգաւորութեան առաքելական եկեղեցւոյ։ Զի թէպէտ եւ ամենայն իսկ հաւատացեալք համարէին ազգ ընտիր, թագաւորութիւն եւ քահանայութիւն[3] (վասն ընդհանրական իմն եւ ներքին քահանայութեան մատուցմամբ, աղօթիւք եւ այլովք նոյնպիսեօք), այլ բուն տեղապահ Քրիստոսի էր Նուիրապետութիւնն[4] կամ քահանայապետութիւն՝ երեքումբք էական աստիճանօքն։

Ա. Սոյն երկուց բարձրագոյն աստիճանաց նախապատուութեան այս ինքն վասն Երիցութեան եւ Եպիսկոպոսութեան՝ թէպէտ եւ չգտանի ուրոյն անուանք ի նոր կտակարանս (քանզի երկոքին եւս մերթ Երէց եւ մերթ Եպիսկոպոս անուանին[5], մինչեւ առաքելոցն իսկ անուանել զանձինս Երիցունս[6],) բայց կայր կարի քաջ խտիր անձանց եւ իշխանութեան։

ա. Առաքեալքն զառաջնորդութիւն եկեղեցեաց կողմանց կողմանց միում ումեք տանէին յանձն, տալով նմա զամենայն լրումն իշխանութեան իւրեանց՝ կնքել իւրեանց յաջորդս[7] եւ իշխել ի վերայ քահանայից[8]։

Որպէս եպիսկոպոսունքս այսպիսիք էին կատարեալ յաջորդք առաքելոց՝ նոյնպէս եւ այն գլխաւորութիւն եպիսկոպոսութեանն Պետրոսի՝ անց պայազատութեամբ ի յաջորդսն Պետրոսի։

Թէպէտ եւ անկասկած իմն եւ անսուտ են պատմական զրոյցք զՊետրոսէ, սակայն ամենայն ուրեք մատուցանեն վկայութիւն բաւական առ հաստատել՝ թէ որպէս կարգեաց Քրիստոս[9] նոյնպէս եւ արդեամբք նա ունէր զգահերէց գլխաւորութիւնն ի վերայ ամենայն հօտին։ Իսկ եւ իսկ յետ վերանալոյն Քրիստոսի տեսանեմք զՊետրոս ամենայն ուրեք ի գլուխ երեւելի երեւելի ինչ գործոց. նա լինի առաջնորդ ընտրութեան Մատաթեայ՝ նորոյ առաքելոյ։ Յետ Հոգւոյն սրբոյ իջանելոյ՝ նա նախ ի մէջ անցեալ խօսէր առ ժողովուրդն[10], եւ յամենեցուն անուն՝ առաջի ատենին կամ Սինեդրիոնին[11], նա գործէ զառաջին զսքանչելիսն բժշկութեամբ[12], նա ածէ զառաջին պատիժն ի վերայ Անանիայ եւ Սափիրայ[13], նա բանայ նախ զդուռն հեթանոսաց՝ մտանելոյ յեկեղեցի[14]։ Պաւղոս յետ դարձին գայ յԵրուսաղէմ վասն ընդ Պետրոսի խօսելոյ[15]. յառաջնում ժողովին յԵրուսաղէմ՝ Պետրոս նախ գահերէց[16], եւ Աւետարանիչքն ի գրել անդ իւրեանց՝ ամենայն ուրեք յառաջագոյն քան զամենայն առաքեալսն զնա դնեն[17], թէպէտ եւ կոչումն նորա յետնագոյն էր, որով յայտ իմն է թէ եւ այլք յառաքելոցն զնա ճանաչէին եւ մեծարէին յայնժամ իբրեւ գլխաւոր։

1 Յովհ. ԺԳ. 14, 16. ԺԵ. 15։
2 Մատթ. ԺԸ. 18—20։ Մարկ. ԺԶ. 15։ Յովհ. Ժ. 26, 27։ Մատթ. ԻԶ. 26...։
3 Ա. Պետր. Բ. 9։
4 Hiérarchie.
5 Գործ. Ի. 17, 28։ Տիտ. Ա. 5, 7։
6 Ա. Պետր. Ե. 1։ Բ. Յովհ. Ա. 1. Գ. Յովհ. Ա. 1։
7 Ա. Տիմ. Ե. 17—19։
8 Տիտ. Ա. 5։ Տես եւ Յայտն. Բ, Գ։ Գաղատ. Դ. 14։
9 Տես վերագոյն հատուած 5. Թիւ 2։
10 Գործ. Բ. 14։
11 Գործ. Դ. 8։
12 Գործ. Գ. 4...։
13 Գործ. Ե. 1...։
14 Գործ. Ժ։
15 Գաղատ. Ա. 18։
16 Գործ. ԺԵ...։
17 Մատթ. Ժ. 2։ Մարկ. Ա. 36. Գ. 16։ Ղուկ. Զ. 14. Թ. 32։ Գործ. Ա. 13. Բ. 14։



Digitized by Google

Առաքելական հայրն Ս. Կղեմէս (որպէս առաւել հաւանութեան է) երրորդ յաջորդ առաքելապետին՝ յաթոռն Հռոմայ (92—101) վարէր զնոյն իշխանութիւն՝ յորժամ յարեաւ գժտութիւն ժողովրդականաց ընդ կղերականաց՝ յեկեղեցւոջ Կորընթացւոցն. քանզի անտի գրեցին ի Հռոմ, թէպէտ եւ վիճակն Կորընթացւոց չէր ընդ առաջնորդութեամբ եպիսկոպոսին Հռոմայ, եւ մանաւանդ մօտ էր Կորընթացւոց՝ Եփեսոս, ուր դեռ եւս կենդանի էր սիրելի աշակերտն Քրիստոսի Յովհաննէս: Իսկ Կղեմէս գրեաց առ նոսա թուղթս մեծաւ իշխանութեամբ եւ կշտամբութեամբ եւս՝ համեմատ բանից վարդապետին իւրոյ Պաւղոսի:

բ. Քահանայքն կամ երիցունք կարգեալ լինէին յեպիսկոպոսաց անտի ի բազմանալ հօտին՝ իբրեւ օգնականք նոցա[1], եւ մատակարարէին խորհուրդս ընդ հրամանաւ եպիսկոպոսին[2]. բայց իշխանութիւն նոցա չէր առժամանակեայ ինչ եւ անցաւոր, այնպէս զի մարթ իցէ զիշխանութիւն կարգի նոցա առնուլ միւսանգամ ամենեւին ի բաց:

գ. Յատուկ խոնարհագոյն աստիճան նուիրապետութեան էր սարկաւագացն (կամ սպասաւորաց) ըստ օրինակին հրամայելոյ ի Քրիստոսէ. սոքա էին յաջորդք 7 խնամակալաց աղքատացն որք ընտրեցան յառաքելոց, ոչ լոկ ի մատակարարութիւն տրոց՝ այլ եւ ի բարձրագոյն պաշտամանցն մատակարարութիւն, որպէս եւ արդեամբք իսկ տեսանեմք զնոսա զի մկրտէին[3]: Յիշին եւ Սարկաւագուհիք (որ եւ այրիք, քորք, պառաւունք[4]) որք դարմանէին զհիւանդս եւ ուսուցանէին զկանայսն երախայեցեալս. այլք ընտրէին ի սոյն գործ, դուն ուրեք կոյսք[5]:

Այն երիս աստիճանս կարգէին միշտ աղօթիւք առաքելոց կամ եպիսկոպոսաց եւ ձեռնադրութեամբ[6]:

2. Ըստ պատուիրանին Քրիստոսի[7] ընդունելութիւն ուրուք յեկեղեցի՝ լինէր ի ձեռն մկրտութեան՝ որ եւ կատարէր ընկղմամբ[8]:

3. Յետ մկրտութեանն դնէին առաքեալքն ձեռս ի վերայ իբրեւ կնիք պարգեւի Հոգւոյն սրբոյ (որ է ինքն խորհուրդն դրոշմի)[9]: Յետ այսպիսի սրբութեանց՝ կոչէին հաւատացեալքն սուրբք իբրեւ ընտրեալք իմն ի հեթանոսաց: Կապն սիրոյ զոր առ միմեանս ունէին հաւատացեալքն՝ ած զնոսա ի կամաւոր հաղորդութիւն ընչից ի սկզբան անդ[10], թերեւս նմանող իմն լինելով ընկերութեանն Քրիստոսի ընդ առաքելոց: Թէպէտ եւ այս ժամանակեան իմն եւ վայրական սովորութիւն էր, սակայն այլն ամենայն եկեղեցիք զնոյն հաղորդութիւն սիրոյ առ միմեանս ցուցանէին կամաւոր տրովք եւ հիւրընկալութեամբ եղբարց, զորոց յաճախ բանք կան ի թուղթս առաքելոցն:

4. Ամուսնութիւնն՝ որով այնչափ զեղծանէին հեթանոսք, խորհուրդ էր քրիստոնէիցն իբրեւ նշանակ սիրոյն Քրիստոսի առ Եկեղեցի[11], եւ չլուծանելի[12]. եւ առ նմին ծանուցեալ էր առանձինն պատիւ փառաւորութեան կուսութեանն[13]:

1 Գործ. ԺԴ. 23:
2 Ա. Տիմ. Ե. 17:
3 Գործ. Զ. 1. Է, Ը. 12, 38: Տես Ա. Տիմ. Գ. 8:
4 Հռոմ. ԺԶ. 1: Տիտ. Բ. 3:
5 Տես Ա. Տիմ. Ե. 9—11:
6 Գործ. Զ. 6. ԺԳ. 3: Ա. Տիմ. Դ. 14: Բ. Տիմ. Ա. 6:
7 Մատթ. ԻԸ. 20:
8 Հռոմ. Զ. 4:
9 Գործ. Ը. 14—17. ԺԹ. 5, 6: Եբր. Զ. 2:
10 Գործ. Բ. 44. Դ. 34:
11 Եփես. Ե. 32:
12 Ա. Կոր. Է. 11 եւ 39:
13 Ա. Կոր. Է. 32, 34, 38:

Digitized by Google

5. Նոյն գտանեմք եւ զառաջնում յառաքելական եկեղեցիսն որ զշնորհս մկրտութեանն կորուսեալ՝ միւսանգամ դարձան ի հաղորդութիւն Հոգւոյն սրբոյ եւ եկեղեցւոյ ի ձեռն խորհրդոյն ապաշխարութեան, խոստովանելով մի ըստ միոջէ զմեղս իւրեանց [1]:

6. Հիւանդք որ ի մահ էին՝ կոչէին զերիցունսն օծանել զի զօրասցին, եւ իբրեւ լրումն խորհրդոյ ապաշխարութեան՝ քաւեսցին եւ թողցեալ ինչ մեղք, եւ եթէ Տեառն կամք իցեն՝ եւ յախտէն իսկ բժշկեսցին [2]:

7. Քրիստոնեայքն որ ի Հրէից անտի էին՝ յաճախէին միշտ ի տաճարն. բայց ժողովէին միանգամայն ի տունս տունս ի պաշտօն Աստուծոյ [3]. ի ժողովս անդ կային միաբան յաղօթս, յորս յիշէին զհեռաւոր քրիստոնեայսն եւ զննջեցեալսն, ընթեռնուին բարձրաձայն հատուածս ի Հնոց կտակարանաց եւ ի յետոյ ժամանակս զթուղթս եւս առաքելականս [4]. երգէին սաղմոս կամ թերեւս առանձինն իսկ քրիստոնէական երգս [5]: Եւ խօսք եւս յետ ընթերցուածին լինէին՝ յեպիսկոպոսաց եւ յերիցանց [6], եւ ի սմին լինէր ընտրութիւն այլ եւ այլ պարգեւաց Հոգւոյն [7], յորս էր եւ ի լեզուս խօսել (որ ըստ ճշմարիտ մեկնութեան՝ էր պարգեւ խօսելոյ յօտար լեզու, զոր շնորհէր յայնժամ Հոգին): Կենդրոն այսց ժողովոց որ օր ըստ օրէ լինէին՝ էր խորհուրդն Հաղորդութեան՝ "Բեկանելն հացին,, [8]: Յառաջնումն կատարէր այն՝ ըստ օրինակին Քրիստոսի ընդ երեկս, եւ լինէր ընդ նմին եւ սեղան ինչ սիրոյ (ագապ) զոր միաբանն ուտէին. բայց սկիզբն լեալ էր սպրդելոյ եւ անկարգութեանն [9]: — Ի ժողովս անդ յողջոյն տալ միմեանց եւ յետ աղօթիցն տային իրերաց "զհամբոյր սիրոյ,, կամ "զհամբոյր սրբութեան,, [10]: Ընդ աղօթիցն խառնէին եւ պահս՝ յորժամ երեւելի ինչ գործ հասանէր վճարել [11]:

Իսկ ըստ ժամանակի ժողովելոյ նոցա՝ զամենայն օր կամէր Առաքեալ զի տօնք իցեն քրիստոնեայքն. բայց առանձինն իմն տօն խմբէին վասն երեւելի ինչ աւուրց գործոյ փրկութեանն: Յեկեղեցւոջ Երուսաղեմացւոց զառաջինն՝ օր Շաբաթուն երեւելի էր. նմին հակառակ ի մէջ քրիստոնէիցն որ ի հեթանոսաց անտի էին յԱնտիոք՝ նշանաւոր էր օր Միաշաբաթւոյն՝ վասն յիշատակի յարութեանն Քրիստոսի, անուանեալ "օր Տեառն,, [12] (Կիւրակէ, Տէրունական): Բայց եւ քրիստոնեայքն որ ի հրէութենէ էին՝ տօնէին զմիաշաբաթին հանդերձ շաբաթու, կամ թէ տակաւ անցեալ կայր այն փոխանակ սորա: Թէ յառաքելական ժամանակսն կատարէր արդեւք տօն զատկի յարութեան՝ չմարթի ի բանից Ա. Կորնթ. Ե. 7. ցուցանել, բայց յայտ իսկ հաւանութեան է թէ կատարէին:

Մերժեալ լինէին ի ժողովոց անտի ի ձեռն աւագաց եկեղեցւոյ որ կարի ինչ մեծամեծս յանցուցեալ էին՝ մինչեւ ցկատարեալ զղջումն նոցա եւ ցուղղութիւն [13]: Այս նզովումն կամ կտրումն ի հաղորդութենէ

1 Տես Գործ. ԺԹ. 18: Յակ. Ե. 16:
2 Յակ. Ե. 14 — 16: Տես եւ Մարկ. Զ. 13:
3 Հռոմ. ԺԶ. 4: Ա. Կոր. ԺԶ. 19: Կող. Դ. 15:
4 Կող. Դ. 16:
5 Գործ. Բ. 47: Եփես. Ե. 19: Կող. Գ. 16:
6 Ա. Տիմ. Ե. 17:
7 Ա. Կոր. ԺԲ:
8 Գործ. Բ. 42, 46. Ի. 7:
9 Ա. Կոր. ԺԱ. 20—34: Գործ. Զ. 2:
10 Հռոմ. ԺԶ. 16: Ա. Կոր. ԺԶ. 20:
11 Ա. Կոր. Է. 5: Տես Մատթ. ԺԷ:
12 Յայտն. Ա. 10: Տես եւ Գործ. Ի. 7: Ա. Կոր. ԺԶ. 2. ըստ Մատթ. ԻԸ. 1: Իգնատ. Թղթ. առ Մագն. Գլ. Թ: Բառնաբ. Թղթ. Գլ. ԺԵ: Ամենեւին յայտնի՝ Յուստ. Ջատագով. Ա. Գլ. ԿԷ:
13 Տես Ա. Կոր. Ե. 4..., համեմատեալ ընդ Բ. Կոր. 6—11: Տես եւ Մատթ. ԺԸ. 17:



Digitized by Google

էր սովորական եւ ի հրէութեան։ Նոյն պատիժք էին եւ որոց զմտաւ մի վարդապետութեանն ուրանային կամ աղաւաղէին[1]. քանզի յոյժ խիստ վճռախնդիրք էին առաքեալք վասն միութեան վարդապետութեան[2], մինչեւ յայս առնել մեծի առաքելոյն հեթանոսաց զի եթէ հրեշտակ յերկնից ուսուցանիցէ այլ ինչ վարդապետութիւն քան զոր ինքն ուսոյց՝ նզովեալ լիցի. եւ թէ յառնէ հերետիկոսէ յետ երկերի խրատելոյ՝ պարտ է ի բաց կալ եւ չհաղորդել ընդ նմա[3]։ Բայց սակայն քանզի ոչ առանց Աստուծոյ կամաց եւ թողլ տալոյ այն մոլորութիւնք կամ հերետիկոսութիւնք եղանէին՝[4] էին ի լաւութիւն եւ ի բարիս եկեղեցւոյ, զի ընտիրքն յայտնի իցեն, եւ զի ցուցցի թէ ոչ ճշմարիտ ի ներքուստ յեկեղեցւոյ էին որ այնպիսի միտս ունէին[5]։

## 11

Մոլորութիւնք յառաջնոյ ժամանակին։

Ա. Իբրեւ խառնուած Հրէութեան ընդ Քրիստոնէութեան՝ Եբիոնեանցն եւ Նազարացւոցն աղանդք։ — Բազումք ի Հրէից դարձելոց չկարէին յանձն առնուլ՝ թողուլ զմովսիսական օրէնսն, եւ բաց ի Քրիստոսէ եւ այլ ինչ աղբեւր արդարութեանն իւրեանց՝ զօրէնսն (մովսիսականս) դնէին, (ընդ որոց համակ կռուէր Առաքեալ[6],) մինչեւ յետոյ ի բազմանալ քրիստոնէիցն որ ի հեթանոսաց անտի՝ ինքեանք զատեալ որոշեցան լինել աղանդ, ոմանք մեղմագոյնք եւ ոմանք խստագոյնք ի կարծիս օրինական պահպանութեանն։ Եբիոնացիքն, որոց գլխաւոր քննեալ էր (ըստ Հեգեսիպպեայ) Թեբուտիս ոմն՝ էին խստագոյնք. ոչ ինչ հաղորդութիւն ընդ քրիստոնէութեան ունէին՝ բայց զի զՔրիստոս Մեսիա ճանաչէին. սակայն համարէին մարդ լոկ՝ ծնեալ ըստ բնութեան կարգի ի Յովսեփայ եւ ի Մարիամայ։ Ամենայն քրիստոնէից պարտ համարէին պահել զօրէնսն Մովսիսի. եւ յայն սակս զՊաւղոս յոյժ ատէին՝ իբրեւ ապստամբ յօրինաց անտի (ըստ Ս. Իրենեայ եւ Ս. Եպիփանեայ). միայն զաւետարանն Մատթէի յեբրայեցի լեզու արկանէին ի կիր. կոչումն անուան նոցա հաւանագոյն է թէ իցէ յԵբիոնէ ումեմնէ (ըստ Տերտուղիանեայ եւ Ս. Եպիփանեայ)։ — Իսկ Նազարացիքն կամ Նազովրեցիք (որ էր զառաջինն անուն ամենայն իսկ քրիստոնէից ի մէջ Հրէից[7]) զպահպանութիւն մովսիսեան օրինացն՝ համարէին լեալ պարտ, սակայն միայն վասն քրիստոնէից դարձելոց ի հրէութենէ. եւ ոչ զայն կարծէին թէ վասն փրկութեան պիտոյ եւ կարեւոր իցէ այն պահպանութիւն, նմին իրի եւ զՊաւղոս ընդունէին իբրեւ առաքեալ հեթանոսաց. (ըստ Ս. Յերոնիմեայ) հաւատային թէ Քրիստոս Աստուած իցէ. աւետարան նոցա՝ էր աւետարան ինչ ասորի-քաղդէացի լեզուաւ, որոյ հատակոտորքս, զոր այժմ ունիմք՝ յոյժ այլակերպ են ի Մատթեան

1 Ա. Տիմ. Ա. 20։
2 Ա. Տիմ. Զ. 3։ Բ. Տիմ. Ա. 13—14. Դ. 3։ Ա. Կոր. Ա. 10։ Գաղ. Ա. 6—9։ Եփես. Բ. 21. Դ. 11—16։ Տիտ. Գ. 10։ Ա. Կոր. ԺԱ. 18, 19։ Բ. Թեսաղ. Բ. 14, 15։ Բ. Պետր. Բ. 1։
3 Տիտ. Գ. 10։ Տես Հռոմ. ԺԶ. 17։ Բ. Յովհ. 10, 11. եւ պատմութիւնն առ Ս. Իրենեայ ընդդ. Աղանդ. Գ. գ. 4. որ պատմէ (լուեալ ի Ս. Պողիկարպեայ) թէ Յովհաննէս աւետարանիչ իբրեւ լուաւ թէ Կերինթոս ի բաղանիս ուրեք է՝ մեկնեալ իցէ անտի փութանակի ի բաց, զի մի անկցի ընդ փլատակօք՝ ի պատժել անդ Աստուծոյ զամբարիշտն.
4 Ա. Կոր. ԺԱ. 19։ Տես եւ Մատթ. ԺԸ. 7։
5 Ա. Յովհ. Բ. 19։ Տես եւ Բ. Յովհ. 9։ Ղուկ. Բ. 34, 35։
6 Գաղատ. Ե. 4։
7 Գործ. ԻԴ. 5։

Digitized by Google

գաւորել Քրիստոսի յերկրի ի գալստեան իւրում՝ յետ հասարակաց յա-րութեան, եւ արդարոց զեղխութեամբ վայելել յայնժամ ընդ նմա ի ժամանակին յայնմիկ: Այս կարծիքս՝ որ Հազարամեանութիւնն[1] կոչի, զօ-րացան յետոյ եւ ի մէջ քրիստոնէից յոչ ուղիղ իմանալոյ զբանս գրոցն Յայտնութեան՝ Ի. 2—6, (որպէս առ Պապիայ եպիսկոպոսի Յերա-պօլեայ Փռիւգացւոց, Յուստինեայ, Թերթեղ եւ առ Իրենեայ եւ առ այլոց), բայց սոքա ոչ զեղխական ինչ զվայելչութիւն դնէին: 2. Մեւս եւս աղանդ ամենեւին հակառակ եբիոնական կարծեաց, բայց համանման աղեքսանդրիական վարդապետութեան՝ որ զնիւթն իբրեւ բուն ինչ չա-րեաց դնէր, ուսուցանէր թէ մարմինն Քրիստոսի առաջօք էր եւ ոչ նիւ-թական. որով ապաքէն համօրէն քրիստոնէութիւնն դառնայ ի ցնորս. եւ յայն սակս իսկ ընդդէմ բախէին առաքեալք[2] եւ առաքելական հայրն Իգնատիոս[3] (Աստուածազգեցն) ամենայն զօրութեամբ՝ կար-ծականացս այսոցիկ կամ Երեւութականաց: 3. Մասամբ իմն մերձաւոր էին (ըստ Իրենեայ) ընդ Գիտաց՝ (զորոց այլուր պատմելոց եմք) Նիկո-ղայիտեանքն, զորոց յիշէ Յայտնութիւնն Յովհաննու[4]. եւ անուանս այս թուի լինել թարգմանութիւն Բաղաամեանցն անուան, նոյն իրի եւ նի-քեանք թուին նոյն լինել ընդ յիշելոցն առ Բ. Պետր. Բ. 15, եւ առ Յուդայի՝ 4—19, մանաւանդ՝ 11: Ընծայի նոցա անխտիր ինչ ազատու-թիւն ուտելոյ ի զոհելոյ կռոց, եւ լինել համարձակ ի մարմնոյ ցանկու-թիւնս:

Ըստ բանից հնոցն՝ (Իրենէոսի եւ Եւսեբեայ) գրէր Յովհաննէս աւե-տարանն իւր ընդդէմ Եբիոնացւոցն եւ Կերինթոսի եւ Նիկողայիտեանց՝ պատմական ինչ օրինակաւ կռուելով ընդ մոլորութեանց նոցա. եւ ար-դարեւ իսկ ի սքանչելի յառաջաբանի անդ աւետարանին իւրոյ՝ ոչ ընդ նոցա միայն մոլորութեանցն, այլ եւ ընդ այլոցն բազմաց թուի մարտնչել:

Բանն (Աստուած, արարիչ եւ փրկիչ) է, ասէ, արարիչ ամենայն իրաց (եւ ոչ եթէ այլ ոք արարիչ բարւոյ եւ այլ ոք չարի իցէ), ոչ խոնար-հագոյն քան զբարձրագոյն աստուածն, այլ ի յաւիտենից էակից ընդ նմա[5](ընդդէմ Կերինթոսի), նոյն իրի եւ ոչ լոկ մարդկեղէն ինչ էու-թիւն (ընդդէմ Եբիոնացւոց), նա եւ ոչ ի մկրտութեանն ժամանակի իջեալ ի Յիսուս, այլ ինքն Բանն մարմին (մարդ) եղեւ (ընդդէմ Կե-րինթոսի եւ Կարծականացն): Ոչ եթէ Յովհաննէս, որ մարգարէ լոկ էր՝ էր լոյսն ազգաց, այլ էր նա միայն վկայ լուսոյն՝ որ էր Բանն մարմին ե-ղեալ[6] (ընդդէմ աշակերտացն Յովհաննու Մկրտչի). ոչ եթէ օրէնքն Մովսիսի կարեւոր են առ հաղորդութիւն նորա եւ առ ի լինելոյ որդիս Աստուծոյ (ընդդէմ քրիստոնէից եղելոց հրէաբար), այլ հաւատք յաս-տուածութիւն նորա[7]:

1 Χιλιάσμος.
2 Ա. Յովհ. Ա. 1—3. Դ. 2: Բ. Յովհ. 7:
3 Իգնատ. առ Եփես. Է — ԺԸ. առ Զմիւռն. Ա — Ը. առ Տրալլ. Թ:
4 Յայտն. Բ. 6, 14, 15:
5 Յովհ. Ա. 1—3:
6 Յովհ. Ա. 6—8:
7 Յովհ. Ա. 12:

Digitized by Google

## Գ.

## ՀՌՈՄԷԱԿԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԵԿԵՂԵՑԻ ՔՐԻՍՏՈՍԻ

### Ա

### Տոհմ Կեսարեաց — Առաջին հալածումն քրիստոնէից — Աւեր Երուսաղէմի (1—70)։

### 12

Տէրութիւնն Հռոմայեցւոց առ Օգոստոսաւ՝ տարածեալ էր ընդ երիս մասունս աշխարհի, յԱտլանտեան ծովէ մինչեւ ցԵփրատ. ի Հռենոսէ, ի Դանուբայ, ի Սեաւ ծովէ մինչեւ ցանապատսն Ափրիկեայ եւ Արաբիայ, եւ այսպէս յիրաւի կոչէր սահման տէրութեան նորա Տիեզերք[1]։

1. Իտալիա էր երկիրն գլխաւոր բաժանեալ ի Վերին, ի Միջին, եւ ի Ստորին Իտալիա յաւելուածով կղզեացն Սիկիլիայ, Սարդինիայ եւ Կորսիկայ։ — 2. Սպանիա՝ բաժանեալ Ա. ի Լուսիտանիա (Փորթուգալ, Էստրեմատուրա) ի մէջ Դուրիոս եւ Անաս (Տուէրոյ եւ Կուատիանա) գետոց, Բ. ի Բեթիկէ (Անտալուզիա եւ Կռանատա) մինչեւ ցլերինսն Որոսպեդա, Գ. ի Տառակոնեան (մնացեալ մասն Սպանիայ ցՊիւրենեան լերինսն), Դ. ի կղզիսն Բալէարեան՝ Մայոր եւ Մինոր (Մեծագոյն եւ Փոքրագոյն)։ — 3. Գաղղիա ի Պիւրենեան լերանց ցՀռենոս՝ բովանդակէր նահանգս Ա. զԳաղղիա Նարբոնական՝ ի Պիւրենեանց մինչեւ ցՎարոս (Վար) եւ ցԱլպեան լերինսն, Բ. զԳաղղիա Լուգդունական կամ զԿելտական ի մէջ Լիգեր (Լուար), Սեկուանա (Սէն) եւ Արար (Սոն) գետոց, Գ. զԳաղղիա Ակուիտանեան կամ զԱկուիտանիա ի մէջ Պիւրենեանց եւ Լիգեր գետոյ, Դ. զԳաղղիա Բելգիական՝ ի մէջ Հռենոս, Արար եւ Հռոդանոս (Ռոն) գետոց, նմին իսկ բովանդակէր Գաղղիա եւ զՀելվետիա (Զուիցցերի) եւ զԳերմանիա զԱռաջին եւ զԵրկրորդ (այժմու Հռենեան գաւառն), որք յետոյ բաժանեցան ի Գաղղիայ։ — 4. Բրիտանական կղզիք (Անգղիա եւ հարաւային Սկովտիա) գրաւեցան ի Հռոմայեցւոց ի կէս առաջին դարու։ Բարբարիկն Բրիտանիա (Սկովտիա) եւ Հիբեռնիա (Իրլանդ) մնացին ազատ ի լծոյ Հռոմայեցւոցն։ — 5. Հարաւային կողմանք Դանուբայ, այսինքն Ա. Ռետիա եւ Բ. Վինդելիկիա՝ ի Լեպոնտեան եւ ի Տրիդենտեան Ալպից՝ ի մէջ Հռենոս եւ Ենոս (Ինն) գետոց՝ մինչեւ ցծովակն Բրիգանտեան (Պոտենսէ) եւ ցԻստրոս (Դանուբ) գետ, ձգելով մինչեւ ցծովակն Վերին Իտալիոյ (Թեսսին, Կրաուպիւնտէն, Թիրոլ, հարաւային Սուաբիա եւ մասն Պաւիէրայ), Գ. Նորիկոն՝ յԵնոս գետոյ մինչեւ ցՍաւոս եւ ցԿետիոս լեառն (Քալէնպերկ), ի Յուլեան Ալպից մինչեւ ցԻստրոս գետ (Աւստրիա, Ստիրիա, Կարինթիա, Կռանիա, Պաւիէրա եւ Սալցպուրգ), Դ. Պաննոնիա (Վերին եւ Ստորին) ի մէջ Իստրոս, Սաւոսայ (Սաւա) գետոց եւ Կետիոս լերին (Աւստրիա ի խոնարհ քան զԱնտառն Վիէննական, Ստորին Հունգարիա, Սլաւոնիա, Պոսնիա եւ Խրուատաստան), Ե. Միւսիա (Վերին եւ Ստորին) կոչեցեալ յետոյ Դակիա գետափնեայ՝ ձգէր յԻստրոս գետոյ ցլեառն Հեմոս եւ ցՊոնտոս

1 Orbis terrarum.

Եւքսինոս (Սերուիա, եւ Պուլկարիա): — 6. Աքայիա (Յունաստան) բովանդակէր՝ Ա. զՊեղոպոնեսոս (Մորա, 8 գաւառօք), Բ. զհելլադա՝ զԲուն կամ զՄիջին Յունաստան (8 գաւառօք), Գ. զՀիւսիսային Յունաստան՝ զԹեսաղիա եւ զԷպիրոս, զկղզիսն՝ զԷւբէա (Նեկրոպոնդէ), զԿիպրոս, զՀռոդոս, զՅոնիական կղզիսն եւ զայլս բազումս: — 7. Մակեդոնիա ի մէջ Եպիրոս եւ կամպանեան լերանց եւ Եգէոս ծովուն. — Թրակիա ի մէջ Հեմոս լերանց եւ ծովու: — Իլիւրիկէ (անձուկ մասք) երկիրն ծովեզերեայ ընդ երկայնութիւն Ադրիական ծովուն, յԻստրիայ մինչեւ ցԴրինոս եւ ցՍաւոս (Տրինա եւ Սաւա) գետս, ունելով զՅապիդիա, զԼիբուռնիա եւ զԴաղմատիա հանդերձ բազում կղզեօք: — 8. Զբուն Մեծն Դակիա չկալան ընդերկար Հռոմայեցիք. սա էր ի մէջ Դանուբ, Տիբիսկոս (Թիսա կամ Թայս) եւ Հերասոս (Փրութ) գետոց եւ Կարպաթեան լերանց (Վերին Հունգարիա, Արդեալ, Մոլտաւիա եւ Վալաքիա):

ՅԱսիա ունէին Հռոմայեցիք 1. զՀամօրէն Փոքրն Ասիա, բաժանեալ ի նահանգս Ա. Ասիա նահանգ՝ որ ունէր զՓռիւգիա, զԳաղատիա, զԼիկաւոնիա, զՄիւսիա, զԼիւդիա, զՅոնիա եւ զԿարիա, այս ինքն՝ զՀին Թագաւորութիւնն Պերգամոյ, Բ. Բիւթանիա նահանգ հանդերձ Պափղագոնիաւ եւ Պոնտոսիւ, Գ. Կիլիկիա, Պամփիւլիա (եւ Լիւկիա) հանդերձ Պիսիդիաւ, Դ. Կապադովկիա: — 2. զԱսորիս հանդերձ Փիւնիկեաւ եւ Պաղեստինաւ, ընդ մէջ Տաւրոսի, Միջին ծովու, Արաբիայ եւ Եփրատայ՝ որ հատանէր զսահման պետութեանն Հռոմայեցւոց: Հայաստան եւ Միջագետք յայնկոյս Եփրատայ սակաւ ինչ եւ եթ ժամանակ կացին ընդ Հռոմայեցւովք:

ՅԱփրիկէ էր ընդ իշխանութեամբ նոցա՝ Ա. Եգիպտոս, Բ. Կիւրենականն հանդերձ Մարմարիկաւ, այս ինքն երկիրն մինչեւ ցՍիւրտէ մեծ (այժմու արեւմտակողմն ծովեզերացն Եգիպտոսի եւ մասն մի Տրիպոլեայ՝ Պարքա,) հանդերձ Կրետէ կղզւով, Գ. Ափրիկէ՝ այս ինքն սահմանքըն Կարքեդոնի մինչեւ ցծայրն առ ծովեզերբ (Բիւզակիոն, Զեւգիտանա եւ գաւառն Սիւրտեան, այժմու Թունիս եւ մասն մի Տրիպոլեայ,) Դ. Նումիդիա (այժմու Ալճերի), եւ Մաւրիտանիա (այժմու Ֆէս եւ Մարոքքօ) ի Տուսկայ գետոյ մինչեւ ցծովն Ատլանտեան: — Այս էր տարածութիւն Հռոմէական պետութեան:

3. Իսկ գլխաւոր կողմանք սահմանակիցք էին՝

ՅԱսիա, Ա. տէրութիւնն Պարթեւաց յԵփրատ գետոյ մինչեւ ցԻնդոս գետ, Բ. Հայաստան եւ Միջագետք ի մէջ Եփրատ եւ Տիգրիս գետոց, յորոց վերայ տեւեալ կռուէին Հռոմայեցիք եւ Պարթեւք, Գ. Հընդկաց աշխարհ յայսկոյս եւ յայնկոյս Գանգէս գետոյ՝ ծանօթ էր Հռոմայեցւոցն վաճառականութեամբ:

ՅԵւրոպէ՝ Գերմանիա ի հիւսիսոյ պետութեանն Հռոմայեցւոց, ի Դանուբ գետոյ մինչեւ ցՀիւսիսային եւ ցԱրեւելեան ծով, ի Հռենոս գետոյ մինչեւ ցՎիստուլա եւ ցԿարպաթեան լերինսն. որ էր յայնժամ խոպան եւ լի խոխոմովք, անտառօք, եղտիւրօք եւ անհնարին անապատ եւ ցուրտ. Հերկինեան անտառն ձգեալ տարածանէր 60 աւուրց գնաց ճանապարհի յԱլպեան լերանց անդր, բայց գտանէր ի նմա եւ արօտ գեղեցիկ, իսկ յարմնեաց միայն գարի, վարսակ եւ միրգ վայրի: Բազմամարդն ժողովուրդն Գերմանաց (Հէէրմանաց, այս ինքն զօրականաց) էին բարձրանձունք, հուժկուք, կապուտակ աչօք եւ ոսկեգոյն խարտեաշ գանգրահեր վարսիւք, դոռ պատերազմու եւ սիրող ազատութեան:

Digitized by Google

Երեք գլխաւոր ցեղք էին նոցա. Ա. Ցոհմքն Սաքսոնացիք՝ բնակեալք ի մէջ Եղբայ եւ Ռենոս գետոց եւ առ Ալլէր, Լայնէ, Վիզէր, Լիպպէ, Ռուր եւ Եմս գետովք: Սոքա ունէին հասարակաց սերտ բնակութեան եւ միակութիւն երկրի եւ յայն սակս կոչեցան Սասսէն, այսինքն նստեալք եւ կամ ուղղագոյն եւս ի Սաքս զինուց որ էր ազգ-բնիկ սլաքի: Եւ գլխաւոր տոհմք սոցա էին Փրիսք, Բրուկտերացիք, Սիկամբրացիք, Քաւկացիք, Փոսացիք, Մարսացիք եւ Ամսիվարիացիք, Ուսիպետացիք, Տեւքտերացիք, Քերուսկացիք, Խատտացիք:

Փրանկք (կոչեցեալք ի Փրամեայ որ էր ազգ-բնիկ զինուց եւ կամ ի Փրանկ բանէ որ ազատն նշանակէ) էին դաշնաւորութիւն բնիկ յօրինեալ ի Սաքսոն տոհմից որպիսի բնիկ՝ ի Բրուկտերացւոց, ի Կատտացւոց, ի Սիկամբրացւոց եւ յայլոց, եւ էին բնակեալ ի մէջ պատնիշացն Հռոմայեցւոց եւ կողմանց Եղբայ ի հիւսիսային Գերմանիա. սոքա անկանէին առէպ ասպատակաւ ի վերայ սահմանացն Հռոմայեցւոց, մանաւանդ ի Գաղիա (յամէ 237):

Բ. Սուեւեան ցեղք (Թափառականք) էին վաղ ուրեմն միաբանեալ ի մի պատերազմական դաշնաւորութիւն. էին սաքնեթեր Սաքսոնաց ի Ռենոս գետոյ մինչեւ ցԱրեւելեան ծով, եւ բնակէին ընդ աջմէ ափանցն Եղբայ ի միջոցի աշխարհին Գերմանացւոց մինչեւ ցԴանուբ: Ի մանր տոհմից սոցա՝ Լանգոբարդացիք բնակէին ի պաղաքեր յընդարձակ դաշտին ընդ աջմէ ափանցն Եղբայ, մօտ ի Մագդեբուրգ. Անգղիացիք առ եզերբ Արեւելեան ծովուն. Մարկոմանք՝ նախ մօտ ի կողմանս վերին Ռենոսի եւ ապա ի Բոհեմիա եւ ի Մորաւիա. իսկ Կուադք՝ առ աւորին Դանուբաւ:

Խառնուրդ իմն Սուեւեան տոհմից էին Ալեմանքն՝ որք յիշին անդրանին ի սկզբանէ երրորդ դարու, բնակեալ ի մէջ Մայն գետոյ եւ պատնիշացն Հռոմայեցւոց եւ Դանուբայ: Սոքա էին պատերազմողք յոյժ, անցին նոքա (յամէ 211) ընդ պատնէշսն, ընդ գետն Հռենոս, նա ընդ Ալպս իսկ եւ մտին ի սահմանս Հռոմայեցւոց՝ առնուլ աւար բազում. եւ ապա ուրեմն կալան բնակութիւն հաստատուն ի կողմանս վերին Հռենոսի, եւ եղեն սահմանակիցք Բուրգունդացւոց:

Գ. Գոթական կամ գոթացի ցեղքն բնակեալ էին ի հիւսիսոյ արեւելից Սուեւաց առ Վիադրոս (Օտէր) եւ Վիստուլա գետովք, ի Պրուսիա, ի Սիլեսիա եւ ի Պոլոնիա: Բաժանէին նոքա յարեւելեան եւ յարեւմտեան Գութս եւ ի Գեպիդս. ի սոցա համարի էին եւ Ռուգիացիք՝ ի Պոմերանիա, Հերուլացիք՝ առ նոցին երի, Վանդաղք առ Արեւելեան ծովուն եւ Բուրգունդացիք յայժմու յարեւմտեան Պրուսիա, եւ այլք: Սոքա յարձակէին մանաւանդ ի վերայ արեւելեան ակերութեան Հռոմայ:

Այլ անդր եւս իսկ քան զՌենոս բնակեալ էին ցեղք Գերմանացւոց. Բատաւիացիք ի Հոլանդիա, Ներուիացիք ի մէջ Մոսայ (Մաաս) եւ Սքալդիս (Շելդէ) գետոց, Ուբիացիք՝ զԿողոնիաւ, Տրեւիրացիք՝ զՏրեւիրաւ, Նեմետացիք՝ զՍպիրաւ (Շփայէր), Վանգիոնացիք յՎորմատիա (Եղասա:) Բեղգիացիք նոյնպէս գրեթէ ամենեքին ի գերմանիացի տոհմէ էին խառնեալք ընդ Գաղիացւոց:

Կիմբրական Խերսոնեսոսն (Դանիա), Սկանդիա (Հարաւային Սուեդիա), Ներիգոն (Նորուեգիա) եւ Փիննինգիա (Ֆիննլանտա) համարեալ էին մասն Գերմանիայ:

Սարմատիա (Լեհաստան) կոչէր երկիրն ի Վիստուլա գետոյ մինչեւ ցՏանայիս (Դոն) գետ:

# 13

Կայսր Աւգոստոս էր միահեծան տէր այսր Հռոմէական պետութեան (յամէ 30 յառաջ քան զՔրիստոս — 14 յետ Քր.)։ Ջնջեալ բարձեալ էր ի միջոյ ի քաղաքային պատերազմունսն ամենայն այր աջողակ եւ հին ազատութեանն կամ ընկերհաշտութեանն նախանձաւոր, եւ բազմութիւն ամբոխին Հռոմայեցւոց մոլեալ կապեալ էր ի հաց անդր (ի ցորեանն որ բաժանէր ժողովրդեան) եւ ի խաղս (կրկէսին)[1] եւ զբաղեալ յանարգ զբօսանս։ Յայն սակս դիւրաւ իմն եւ անջան աջողէր Աւգոստեայ, որոյ էր իսկ իմաստութիւն եւ գիտութիւն առաջնորդութեան հանդերձ տեւական համառօտութեամբ եւ մեղմականութեամբ՝ այնուհետեւ զհռոմէական ընկերհաշտութիւնն ի Միահեծան իշխանութիւն դարձուցանել, ունելով խորհրդական առ իւր զԱգրիպպաս եւ զՄեկենաս (+ 8 նախ քան զՔր.) զորս ամբարձ իսկ ի պատիւս։ Բայց ներելով իմն բազմաժամանակեայ կանխակալ կարծեաց՝ զգուշացաւ Թագաւոր կամ Տէր անուն անձին չտալ, նա աւանիկ խորշէր եւ ի Դիկտատորին անուանէ, եւ չառ իսկ յորժամ մատուցաւ այն նմա (22 նախ քան զՔր.), այլ պահեաց զընկերհաշտական անուանս եւ զձեւս պաշտամանց իւրաքանչիւր։ Կեսար կամ Կայսր եւեթ զանձն անուանելով՝ զամենայն պաշտամունս տայր մի ըստ միոջէ մատուցանել անձինն ի ծերակուտէն եւ ի ժողովրդենէն, եւ մերթ ընդ մերթ տայր նորոգել (ի տասն ամէ ի տասն ամ)։ Իբրեւ Զօրաւոր[2] մշտջենաւոր՝ ունէր արձակ հրամանատարութիւն ի վերայ ամենայն զօրաց, եւ ընտրութիւն պատերազմի եւ խաղաղութեան։ Իբրեւ Իշխան[3] (յամէ 29) էր նա գահերէց ծերակուտին զոր նուազեցուցեալն էր հանելով անտի զանարժանս (29), մինչեւ ամփոփել զթիւն ի 600 այր (18) ուր յառաջն էին իբրեւ 1000, եւ գլուխ՝ խորհրդականութեան իւրք զոր ընտրեաց կազմեաց յ13 արանց երեւելեաց ծերակուտին առեալ մէն մի եւ յիւրաքանչիւր կարգէ պաշտօնէից, եւ էր վերագոյն առաջնորդ օրէնսդրութեան եւ դատաստանաց։ Ազգա ժողովով (որ գումարէր ի կապիտողինին) վճարէր Օկտաւիան զամենայն գործս որ արագն կատարելոց էին, քանզի ծերակոյտն երկիցս միայն ի տարւոջն գումարէր։ Իբրեւ Հազարապետ[4] (յամէ 23 նախ քան զՔր.) հանդերձ իշխանութեամբ ընտրելոյ զայլ եւս պաշտօնակիցսն՝ էր տեղապահ կամ երեւեցուցիչ ժողովրդեանն, եւ յայն սակս Վետոնէ ժողովրդեանն երթալ եւ անօսրանալ եւ տկարանալ սկսան այնուհետեւ։ Իբրեւ Քննիչ բարոյից[5] եւ Քրմապետ[6], (յամէ 13 նախ քան զՔր.) յետ վախճանի Լեպի-

1 Panis et circenses.
2 Imperator.
3 Princeps (senatûs.)
4 Tribunus, tribunitiae potestatis.
5 Censor.
6 Pontifex.

Digitized by Google

դասի քրմապետի ընդ իւրով տեսչութեամբն ունէր զաւանդն կեանս ժողովրդեանն եւ զկրօնս եւ զպաշտամունս. զայն նուիրական պատիւ նորա նշանակէ եւ Օգոստոսն՝ այս ինքն ‘Նուիրականն անուն (կոչեցեալ յամէ 27 նախ քան զՔր. 17 Յունու.), զոր Յոյնք թարգմանեցին Սեբաստոս (Պաշտելի)։ Ամիսն Սեքստիլիս կոչեցաւ ի նորա անուն՝ Օգոստոս (27), որպէս երբեմն Յուլիոս ամիս յանուն Յուլեայ Կեսարեայ։ Իբրեւ խանդաղատական իմն անուն եւ նշանակ տանուտէրական իշխանութեան տուաւ նմա կոչել Հայր հայրենեաց[1]։ Նա իբրեւ մնայուն Հիւպատ եւ մշտնջենաւոր Անթիւպատ (արտաքոյ քան զՀռոմ[2]) իշխանութեամբ ընտրելոյ իւր տեղապահս եւ պաշտօնակիցս՝ առաջնորդէր նա իրացն Հռոմայ եւ 25 նահանգացն։ Թէպէտ եւ կերպարանեցաւ եւս Ոկտաւիան հրաժարել յամենայնէ առաջի ծերակուտին, այլ ծերակոյտն միաբան ընդդէմ դառնայր խորհրդոյն այնմիկ, եւ միայն այսչափ ինչ յանձն առնոյր զի առաջնորդութիւն նահանգացն բաժանեսցի ի մէջ կայսեր եւ ի մէջ ծերակուտին (27, 13 Յունու. նախ քան զՔր.)։

2. Այսպէս կէսք ի նահանգաց տային առ Օգոստոս՝ Կեսարեանք կամ Կայսերականք կոչէին (որ իբրեւ չխաղաղեալ տակաւին՝ էին ընդ անմիջնորդական իշխանութեամբ Կայսեր եւ կային ի նոսա յաճախագոյն զօրք) եւ կէսք Ծերակուտականք[3] որոց առաջնորդէին Փոխանակք ընտրեալ առանց զինուորական զօրութեան, յորս եւ գործակալքն առաքէին միաբան հաւանութեամբ Իշխանին եւ Ծերակուտին եւ Ժողովրդեանն։ Օրէնս առաջնորդութեան նահանգացն ած Օգոստոս ի կարգ եւ յուղղութիւն այնու՝ զի վասն կարճելոյ զագահութիւն ժլատութեան գործակալացն՝ սահմանեաց նոցա հաս, իսկ զհարկս իւրաքանչիւր նահանգացն ինքն տայր հանել, ի Կեսարեան նահանգաց՝ վասն տերպհական գանձուն այսինքն կամ պատերազմի[4], իսկ ի Ծերակուտական նահանգացն՝ վասն գանձուն տէրութեան կամ պաշտօնէից[5]. եւ իսկ եւ իսկ երեւէր օգուտ ծաղկելով ձեռագործաց, վաճառաց, մշակութեան եւ այլոց նմանեաց։ Հատանել դահեկանս ոսկիս եւ արծաթիս կայսեր անկ էր, իսկ պղնձիս՝ ծերակուտին։ Իւրաքանչիւր տարեւորիկ փոփոխումն եւ հաղորդութիւն՝ բազում այլքանական պաշտօնեայք յորոց կէսք նոր յօրի-

1 Pater patriae.

2 Անթիւպատք կամ Փոխանակքն ընտրեալք զիշխանութիւն հրամանատարութեան ի վերայ նահանգին յոր առաքէին՝ յեւելանելոյ ի Հռոմայ կարող էին վարել, եւ ի մտանելն նոցա ի Հռոմ՝ դադարէր իշխանութիւն նոցա։

3 Ծերակուտական նահանգքն էին 1. Բետիկէ (մասն Սպանիոյ), 2. Նարբոնական նահանգն (Գաղղիոյ), 3. Կորսիկէ, 4. Սարդինիա, 5. Սիկիլիա, 6. Մակեդոնիա, 7. Թեսաղիա, 8. Աքայիա, 9. Ասիա, 10. Բիւթանիա, 11. Կրետէ, 12. Ափրիկէ, Նումիդիա։ Մնացեալ կողմանքն էին կայսերական նահանգք. բայց առ Տիբերիաւ (15 յետ Քր.) եւ Աքայիա եւ Մակեդոնիա եղեն նահանգ կայսերական առ ժամանակ մի։

4 Fiscus.

5 Aerarium.

կացան (յամի 27) տալ կրկին թոշակ փոխան առաւել մատղիրագոյն գնդոսս ի պահպանութիւն կայսեր յարդարելոյ, եւ զօր պահակապան քաղաքին Հռոմայ (3 վաշտս քաղաքականս[1]): Տօրմիղ նաւաց կայր առաջի Միսենոնի (ի Կամպանիա), առաջի Ռաւեննայ, Փրէժուսայ (Ֆրեժիւս) եւ ի Պոնտոս Եւքսինոս, եւ էր զօրն նաւական՝ 12,000: Այսպէս համօրէն զօրութիւնն էր 200,000, եւ հանդերձ օգնական գնդօք՝ իբրեւ 450,000 այր: — Իւրաքանչիւր զինուոր ի զինուորաց յետ 12—16 ամաց ծառայութեան առնոյր սահմանեալ չափ ինչ արծաթոյ փոխանակ բաժանման կալուածոց զրաւելոց որ յառաջին տուեալ լինէին նոցա:

Այս ամենայն էր ի պահպանութիւն սահմանաց եւեթ, քանզի չէր միտք Օգոստեայ պատերազմ. «Գեղեցիկ են, ասէր, դափնիք այլ անպտղաբերք», եւ «Զարմանամ, ասէր, ընդ Աղեքսանդրոս զի երկնչէր թէ յորժամ ամենայն աշխարհս յաղթիցէ՝ չմնասցէ այնուհետեւ զի գործիցէ. որպէս եթէ առաջնորդել մեծատարած իրիք տէրութեան չիցէ մեծ ինչ գործ քան զառնուլն զայն՝ աշխարհակալութեամբ»: Ոչ վասն այլ ինչ իրիք էր եւ կատարեալ նուաճումն մնացելոց կողմանցն Գաղղիոյ եւ Սպանիոյ, եւ հաստատութիւն կողմանցն Դանուբայ՝ յորս փոխեցան հռոմայեցիք զաղթականութիւնս:

3. Թերեւս վասն պատսպարութեան սահմանացն խորհեցաւ եւ զարշաւանսն Գերմանիայ՝ որ յետոյ ուրեմն ձախողեցաւ: Քանզի Դրուսոս որդի Օգոստեայ (յառաջին ամուսնութենէ կնոջ իւրոյ Լիւիայ) խաղաց ի վերայ Գերմանացւոցն յայնկոյս Ռենոսի եւ ի չորս արշաւանսն իւր եհաս մինչեւ ցՎիսուրգոս (Վեզէր) եւ յԱլբիս (Էլբա) գետ, հար զբազումս ի ցեղից նոցա եւ եդ զզէնս բազումս ի պահպանութիւն կողմանցն. եւ յետ վախճանելոյ նորա ի դարձին (12—9 նախ քան զՔր.) նորին պայազատք զզօրավարութեանն եղբայր նորա Տիբերիոս (9—7), Ահենոբարբոս (7—2), Վինիկիոս (2 նախ քան զՔր. — 2 յետ Քր.), եւ դարձեալ Տիբերիոս (2—4), եւ յետոյ Կուինտիլիոս Վարոս (5—9) կամէին նոյնպէս հաստատել զիշխանութիւն Հռոմայեցւոցն՝ փոփոխելով այսր անդր զցեղս նոցա, շինելով բերդս եւ կացուցանելով ի նոսա երկս լեգէոնս, մուծանելով զօրէնս Հռոմայեցւոց փոխանակ սովորութեանցն նոցա, եւ ջանալով փոխել զլեզուն նոցա՝ զի այնպէս շրջեսցի Գերմանիա ի նահանգ Հռոմայեցւոց:

Այլ զայրացեալ իմն ընդ այն Գերմանիքն, մանաւանդ ամբոխեցոյց զնոսա տեսիլ տապարացն եւ զաւազանաց նուիրակացն յորս հայէին իբրեւ ի նշանակս ծառայութեան իւրեանց: Իսկ եւ իսկ գտաւ նոցա եւ առաջնորդ ոք ազատութեան: Հերման կամ

1 Cohortes urbanae.

Արմինիոս իշխան ցեղին Քերուսկացւոց, որ էր կացեալ պատանդ ի Հռոմ, որպէս զբազումս ի պատանեկացն Գերմանացւոց, եւ լեալ երեւելի ի զօրուն։ Սա ած ի միաբանութիւն զմեծամեծս ցեղիցն եւ խորամանկութեամբ ածին զՎարոս ի խորագոյն կողմանս Տեւտոբուրգեան անտառին առ Վիսուրգոս գետով. զուր խրատէին զՎարոս որք զնովաւն էին զգոյշ լինել ի դաւոյ։ Ընտասուա մօտ ի կողմանս այժմու Պատերբոռնայ փակեցին զՀռոմայեցիսն ի մէջ լերանց ի լպիրծ տեղիս, եւ ի մրրկի եւ յանձրեւաց ժամանակի յարձակեցան ի վերայ նոցա ի բարձանց։ Յետ սաստիկ կոտորածի յաւուրս բազումս՝ լուծան լքան Հռոմայեցիք ի քաղցուէ եւ ի վիրացն, հալածեալք առէպ առանց յուսոյ փրկութեան։ Վարոս եւ այլ եւս զօրավարք արարին անձանց. համօրէն զօրն գեղեցիկ (35,000 այր) կամ կոտորեցաւ կամ անկաւ ի գերութիւն։ Բազումք ի նոցանէ նուիրեցան դից, եւ կէսք եւս վախճանեցան ի ծառայութեան բարբարոսացն, արք՝ որք ձեռնհաս էին արդեւք մտանել ի ծերակոյտն ի Հռոմ (9 յետ Քր.)։

Եհաս գոյժ իրացն ի Հռոմ ի ժամանակի զի այն ինչ ի գլուխ եղեալ էր վշտագին պատերազմն Պաննոնիացւոց եւ Դաղմատիացւոց որ յանկարծօրէն ապստամբեալ խաղային ի վերայ Իտաղիայ բազմամբոխ բազմութեամբ, եւ Տիբեր հանդերձ Գերմանիկեաւ նուաճեալ էր զնոսա մեծաւ քաջութեամբ եւ ճարտարին զօրավարութեամբ յերիս ամս (6—9 յետ Քր.) եւ ըմբռնեալ կամ յանձն լեալ էին գլխաւորք Պաննոնիացւոցն՝ Բատոն եւ Պիննէս եւ մեւս Բատոն գլխաւոր Դաղմատացւոցն։ Այլ գոյժն որ ի Գերմանիայ եհաս՝ խռովեցոյց միւսանգամ զՀռոմ, եւ չետ դնել միտ ուրախութեանն, յամեցոյց Տիբեր զձաղանսն որ սահմանեալ էին նմա ի ծերակուտէն, որպէս եւ այլ ինչ պատիւք՝ Գերմանիկեայ եւ մանկան Դրուսեայ որդւոյ Տիբերեայ։ Տրտմեալ տխրեալ էր Օգոստոս, հրաման տայր խոկ եւ խոկ զգուշութեան վասն՝ զամենայն պատանեակս Գերմանացւոց հանել մերժել յԻտաղիայ եւ արձակէր փութանակի զՏիբերիոս պահել զանցսն Ռենոսի (10 յետ Քր. գարնայնի)։ Բայց չկամէին Գերմանքն տանել յառաջ զարշաւանսն։ Ինքն Տիբերիոս անց ընդ Ռենոս եւ արշաւեաց հարուստ մի ի ներքս, եւ դարձաւ ի Հռոմ ուր զշքեղ ձաղանսն արար (12)։ Նորին եղբօրորդի Գերմանիկոս որդի Դրուսեայ՝ դիմեաց բազում անգամ յաղթութեամբ ի Գերմանիա, բայց միշտ դառնայր յետս ամրանալ ի դղեակսն Ռենոսի, եւ կոչեցաւ նա յետս ի ժամանակի յաղթութեանցն (14—16)։ Բայց եւ Հերման յիւրոց ազգականաց սպանաւ, զի առ ին կասկած թէ տիրել իմն կամի նոցա (21)։—Անշան իմն էին պատերազմունքն որ ի ձեռն Եղիւսի Գաղղոսի նախ ընդ Արաբացւոց եւ ապա ընդ Կանդակայ Թագուհւոյ Եթովպացւոց մղեցան (24 նախ քան

զՔր.) եւ ի ձեռն Ագրիպպայ ընդ Կանդաբրաց (19)։ Բայց ի հրեշտակութեանցն Պարթեւաց եւ Հայոց[1] եկին առ Օգոստոս եւ հրեշտակութիւնք ի Սկիւթացւոց, ի Սարմատաց եւ ի Հնդկաց (20)։

4. Սակայն աղէտք եւ շփոթք էին ի մէջ ընտանեացն Օգոստեայ։ Զգոյր նորա որդի, որդի քեռն նորա Ոկտաւիայ (†9 նախ քան զՔր. երբեմն կնոջ Անտոնեայ) փիրեզին եւ աջողակն Մարկեղոս որ փեսայացեալ էր ի Յուլիա դուստր Օգոստեայ՝ վախճանեցաւ տարաժամ (23), եւ Թոռունք նորա Գայիոս (Ծն. 20) եւ Լուկիոս (Ծն. 17) որդիք դստեր իւրոյ Յուլեայ որ տուաւ կնութեան Ագրիպպայ (անդստին յամէ 21) վախճանեցան նոյնպէս ի ծաղկի[2] (2 եւ 4 փետր. 21 յետ Քր.) յետ անուանելոյ նոցա մի ըստ միոջէ զհանդերձեալ արութեան եւ կոչելոյ Իշխանս մանկանց[3] եւ սահմանելոյ ի ծերակուտէն ի հիւպատոսութիւն (5 եւ 2 նախ քան զՔր.)։ Միւս եւս նոցին եղբայր Ագրիպպաս Պոստհումոս ծնեալ յետ հօրն մահու (12 նախ քան զՔր.) եւ որդեգիր Օգոստեայ (4 յետ Քր.) սպանաւ դաւաճանութեամբ ի Պղանասիա կղզի (Փիանոզա՝ ի հարաւոյ Էլբա կղզւոյ)՝ ուր աքսորեալ էր (4 յետ Քր.) վասն բիրտ եւ անսանձ բարուց, քանզի ոչ միայն արհամարհեալ անարգէր զՅուլիա (զերրորդ կին Օգոստեայ) իբրեւ մօրու, այլ եւ ի վերայ Օգոստեայ ծախանայր թէ չարար նմա ըստ խրատանց պայազատութեան իւրոյ։ Այսպէս այնուհետեւ եւ նորին մայր Յուլիա որ երրորդ անգամ լեալ էր առն՝ Տիբերեայ՝ աքսորեցաւ յՕգոստեայ ի Պանդատարիա կղզի վասն անառակութեանն (2 նախ քան զՔր.) որպէս յետոյ եւ նորին դուստրն կրսերն Յուլիա (28 յետ Քր.) ի Տրեմիտ կղզի (յԱդրիական ծովուն) նոյնպէս վասն անառակութեանն (4 յետ Քր.)։ Յետ ամաց հնգից շնորհեաց նմա գալ ի Հռեգիոն, բայց աւելի ինչ քան զայն չառ յանձն շնորհել՝ թէպէտ եւ աղաչեաց եւս զնա Տիբերիոս թղթով բազում անգամ։ Այս Տիբեր՝ որ էր ուրջու նորա ի Լիւիայ յերրորդ կնոջէն եւ փեսայացեալ ի դուստր նորա ի Յուլիա (յետ մահուն Ագրիպպայ) վաղ խնկառնուք իմն հայէր ընդ առաւել մեծարանս Թոռանցն Օգոստեայ։ Իբրեւ կամեցաւ իմն Օգոստոս (յետ դառնալոյ նորա ի պատերազմէն Գերմանաց, 7 նախ քան զՔր.) հեռացուցանել զնա առ ժամն առաքելով ի գործ վասն Հայոց աշխարհին, ի միտ առ Տիբեր եւ ինքնակամ խնդրէր հրաժեշտ՝ մեկնել ի հասարակաց գործոց. յետ բազում զիմնադարձութեան տրտմութեամբ թոյլ ետ Օգոստոս, եւ Տիբեր նաւարկեալ փութանակի եկն եկաց հեռացեալ յամենայն գործոց ի Հռոդոս ամս իբրեւ 7 (6 նախ քան զՔր. — 2 յետ Քր.)։ Այլ յետ վախճանին Գայեայ (4 յետ Քր.) այնուհետեւ

1 Տես ի հատոր Հ էջ 96։ 2 Տես ի հատոր անդ։ 3 Principes juventutis.

Digitized by Google

զՏիբեր մատուցանէր Աւգոստոս յառաջ հայեցեալ ի յաջողակու-թիւն նորա ի պատերազմի եւ դրդեալ եւս ի մօրէ նորա ի նեն-գաւորն Լիւիայ կացոյց զնա իւր որդեգիր (4 յետ Քր.), հրաման տուեալ՝ եւ նմա առնուլ յորդեգիրս զԳերմանիկոս զորդի եղբօր իւրոյ Դրուսեայ, եւ յետուստ կացոյց զնա ժառանգ իշխանու-թեան իւրոյ (11 յետ Քր.) թէպէտ եւ զժանդութիւնն նշմարէր։ Ապա յետ չորից ամաց յ76երորդ ամի հասակին վախճանէր ի՝Նոլա Կամպանիացւոց (19 Աւգ. 14 յետ Քր.) ի դառնալ իւրում ի Հռոմ ի Բենեւենտոյ ուր երթեալ էր հիւանդագին ընդ Տիբե-րեայ յուղարկել զնա ի Լիւրիկէ. Թագաւորեաց նա ամս 44։

Պատրաստեցան դաւաճանութիւնք վասն կենաց նորա յոմանց ումանց, ի Գաղղոսէ կուսակալէ Եգիպտացւոց (27), ի Փաննիոսէ, ի Կեպիոնէ եւ ի Մուրենայ միաբանելոց (22) եւ յԷգնատիոսէ Ռուփայ (18)։ Ամենեքին սոքա գլխով իւրեանց լուծին զվրէժն։ Միայն վերջին դաւաճանք որ միաբանեալ էին գլխաւորութեամբ Կիննայ (4 յետ Քր.) ապրեցան։ Կնէոս Կոռնելիոս Կիննա էր թոռն Պոմպէի ի դստերէ նորա, շնորհեալ էր նմա Աւգոստոս զկեանսն եւ էր ի պատուի եւ ի մեծութեան, սակայն եւ այնպէս միաբանեաց նա ընդ ազնուականաց ոմանց սպանանել զերախտաւ-որն ի ժամ մատուցանելոյ նորա զոհս առ բագինս։ Ոմն ի միջոյ անտի դաւաճանութեանն գուշակ լինէր Աւգոստեայ։ Վարանէր իմն Աւգոստոս եւ չկամէր հեղուլ զարիւն այնչափ ազնուականացն եւ այնպէս զհետ երթեալ խրատուն Լիւիայ՝ շնորհեալ ներեաց Կիննայ եւ միաբանելոց ընդ նմա եւ սահմանեաց եւս զնա հիւպատոս վասն միոյ ամին (5 յետ Քր.)։ Այն գթութիւն շահեցաւ զսիրտս ամենեցուն ի նա։ Աւգոստոս էր անհնարին քաջ յառա-ջնորդութիւն քաղաքային, նախ հակառակ անզօր եւ տաղտուկ ի քաջութիւնս պատերազմի, ամենայն իսկ յաղթութիւնք նորա զօրավարաց նորա էին մանաւանդ եւ ոչ նորա։ Խաղաղասէր էր յոյժ եւ շինող եւ սիրող հասարակաց շահու եւ բարութեան, մեղմ եւ արդար ի դատաստանս իւր, եւ պաշտպանիչ ուսմանց եւ մա-տենագրաց (Վիրգիլեայ, Որատեայ, Լիւեայ եւ այլոց[1])։ Այլ յամենայնի քաջ ի կերպարանել եւ արուեստաւոր բարուք, դարձեալ՝ թէպէտ եւ սակաւապէտ՝ բայց անժուժկալ ի ցանկու-թիւնս։ Սակայն եւ այնպէս հանին զնա Հռովմայեցիք յետ մահուն յաստուածութիւն։

Ապա եղեն չորք բռնաւորք արիւնառուշտք արդարեւ արժանիք թագաւորութեան Հռովմայեցւոց անպիտանացելոց, որ ոչ միայն ողջէին զնոսա՝ այլ եւ յաստուածութիւն եւս հանէին։

1 Տես վասն Աւգոստեան դարուն՝ Հատոր Ա. էջ 373—576։

## 13

Տիբերիոս Կղաւդիոս Ներոն (14—37) (անուանեալ այսպէս ի հօրէ իւրմէ ի Կղաւդեայ Ներոնէ) խել եւ խել դարձաւ ի Հռոմ ի կոչ մօր իւրոյ Լիւիայ, եւ այնպէս իմն երկուքին զերան յարդարեցին զի ի միասին հնչէր արտաքս թէ Օգոստոս վախճանեցաւ եւ թէ Տիբեր թագաւորէ (56ամեայ)։ Թէպէտ եւ պաղատանօք սա փաղփաղէր Տիբեր ի բուռն ինքնին զկայսերական իշխանութիւնն եւ դրէր իբրեւ զօրավար առ զօրսն եւ տայր նշանաբանս[1] առ դունդս անձնապահացն եւ ամրացուցանէր զանձն եւ զապարանսն զօրականօք եւ անձնապահօք, եւ առնէր ի գլուխ զիշխանութիւնն տալով սպանանել ի ծածուկ զԱգրիպպա Պոստհումոս, որպէս եւ յետ սակաւ ինչ միոյ զՅուլիա տանելով սովամահ (14), սակայն կեղծաւորէր առաջի ծերակուտին։ Իբրեւ տրիբունական իշխանութեամբ միայն (զոր ունէր յամէ 6 նախ քան զՔր.) կոչէր զծերակոյտն, չկարէր ի հեծեծանացն ընթեռնուլ անդ զճառն եւ տայր կատարել զընթերցուածն՝ իւրում որդւոյն Դրուսեայ։ Բացաւ կտակն Օգոստեայ զոր բերեալ մատուցին կուսանքն Վեստայեանք հանդերձ երիւք յիշատակարանօքն (վասն իւրոյ թաղմանն, վասն գործոց իւրոց զոր գործեաց, եւ վասն համագամնայ տէրութեանն զոր թողոյր՝ ցուցանելով զհամար քաղաքացեաց, դաշնաւորաց, զնաւուց, զնահանգաց եւ զհարկաց). սահմանեցաւ կանգնել տաճար աստուածութեան Օգոստեայ, Լիւիա եկաց քրմուհին եւ ի գլուխ քրմացն՝ Տիբեր, Դրուսոս, Գերմանիկոս եւ Կղաւդիոս (յետոյ կայսր). տունն յորում մեռաւ Օգոստոս ի Նոլա՝ փոխեցաւ ի տաճար նորա, զդին սենեկապետքն ածին ի վերայ ուսոց իւրեանց մինչեւ ցհրապարակն։ Ժառանգք Օգոստեայ ըստ կտակին էին Տիբեր եւ Լիւիա զոր ի դուստր տանն կեսարեանց դրեալ՝ հրամայէր կոչել այնուհետեւ Յուլիա Օգոստա։

Բայց Տիբեր կեղծաւորեալ յանձնէր. ըստ ծանր վաստակաբեկ եղեն սենեկապետքն աղաչել հաւանեցուցանել զնա՝ առնուլ զգլխաւորութիւն տէրութեանն. ապա զիջաւ իբրեւ ակամայ եւ յուսացեալ իմն թէ ի ծերութեան տացէ նմա հանգիստ, բայց չառ յանձն զպատիւս ինչ ի պատուոց՝ որպէս կոչել “Հայր հայրենեաց„ եւ կամ ունել պսակ քաղաքացեաց ի վերայ դրան ապարանից իւրոց, եւ ոչ մօրն կամեցաւ զի տացի անուն “Մայր հայրենեաց„ եւ կամ զինքն իսկ կոչել ի նորա պատիւ՝ “Որդի Յուլեայ„ (այս ինքն Լիւիայ)։ Սակայն եւ այնպէս խել եւ խել բարձ Տիբեր ամենեւին զժողովս ժողովրդեանն եւ այնպէս հանեալ ամենեւին ի քաղաքացեաց իրաւունք ընտրութեան աւագացն.

1 Mot.

Յայնմ հետէ ինքն կացուցանէր զհիւպատոսն եւ ինքն առաջի արկանէր ծերակուտին արս յընտրութիւն յայլ եւ այլ պաշտամունս։

2. Բայց լեգէոնքն որ ի Պաննոնիա եւ ի Գերմանիա էին՝ միանգամայն ապստամբեալ հեռացին Տիբերեայ։ Որ ի Պաննոնիա էին՝ խակ եւ խակ յետ մահուն Օգոստեայ առին զմի ի քաղաքացն եւ աւարեցին, եւ զՅունիոս Բղեսոս զհրամանատար զօրավար ստիպէին կամ թողուլ զնոսա եւ կամ տալ մէն մի դենար աւուրն թոշակ։ Առաքեցաւ Դրուսոս որդի կայսերն տուեալ նմա առընթեր զՍէյիանոս անձնապահապետ։ Ի վտանգ մեծ անկաւ Դրուսոս զի առփակեաց զնա զօրականն ի բանակին, այլ յանկարծ նուաղութիւն լուսնին զարհուրեցոյց զխռովեալսն եւ հանդարտեցին։ Իսկ լեգէոնքն Գերմանիոյ բազմամբոխք յոյժ առ Հռենոս գետով նոյնպէս յարուցին խռով. անձագարեալ անդր Գերմանիկոս ի կողմանց Գաղիացւոց ուր առնոյր նա երդումն հաւատարմութեան առ Տիբեր ի Սեկուանացւոց եւ ի Լեղգիացւոց. եւ ընդ առաջ նորա զօրականն ապստամբ՝ ահեկօր, չկամէին զՏիբեր, այլ զնա իսկ կամէին մատուցանել ի գլխաւորութիւն ինքնութեան. խռովեցաւ Գերմանիկոս, ի բերան անտի ուր խօսէր՝ մերժեաց զայրազին զհրապոյրսն եւ սպառնայր անձն անձին՝ որով։ Այլ թուէին իմն ցածնուլ՝ յորժամ ետն նոցա իբրեւ հրամանաւ Տիբերեայ՝ կրկին զարծաթն սահմանեալ ի կտակին Օգոստեայ վասն զօրականաց։ Թէպէտ եւ զրգռեցան միւանգամ՝ զի համարեցան թէ չառ յանձն Տիբեր զոր ինչ Գերմանիկոսն արար, այլ յետ այնորիկ ի գութ դարձեալ ի վերայ փախստեան կնոջն Գերմանիկեայ եւ մանկանն Գայեայ (Կալիգուլայ) ինքեանք որոնեցին սպանին զգլխաւորս խռովեցուցչացն։ Այնուհետեւ ի դէպ համարեցաւ Գերմանիկոս խաղալ նոքօք ի վերայ Գերմանաց ըստ գետ անդր, եւ կատարէր նա յաղթութիւնս բազումս (14—16)։

Համբաւ ապստամբութեանն ցածուցելոյ եւ յաղթութեանցն՝ եւ ուրախութեան եւ տրտմութեան պատճառք լինէին Տիբերեայ։ Ի ժամանակի զի նորա իսկ խորտակեալ էր զօրութիւն Գերմանացւոցն եւ այնուհետեւ մեծի իսկ աշխարհակալութեան կայր ակն՝ թուղթ զհետ թղթոյ առաքէր կայսր կոչել զԳերմանիկոս գալ եւ վայելել ի ձաղանան, եւ այսպէս ի կիսոյ անտի ասպարիզի փառացն դառնայր Գերմանիկոս յետս ի Հռոմ (16)։ Բայց չկարաց ժուժկալել նմա նախանձաբեկն Տիբեր, եւ ոչ մայր նորա ընդ առաքինին Ագրիպպինա դուստր Ագրիպպայ կին Գերմանիկեայ, զի սիրելի էին նոքա եւ զօրացն եւ համօրէն իսկ քաղաքին։ Յայն սակս յետ մեծապայծառ ձաղանացն Գերմանիկեայ (17) ի խռովել իրացն արեւելից առաքէր զնա կայսր յԱ-

Digitized by Google

սորիս։ Ընդ՝ յետ զՄապարոմիկիա եւ զԱրտաքսեսէ կացուցանելոյ նահանգ Հռոմայեցւոց (17), Թագաւոր զոք Հայոց տալոյ (18) եւ զԿոտիկոս հանդարտեցուցանելոյ, վախճանէր նա¹ յԱնտիոք (19, 'Նոյ.) դեղեալ ի Պն. Պիսոնէ դատաւորէ կամ կուսակալէ Ասորւոց զոր դոյլն իւր խորհրդով առաքեալ էր Տիբեր հանդերձ Պղանկինաւ կանամբն՝ որում պատուիրեալ էր ի Լիւիայ գնալ բրտագոյնս ընդ Ագրիպպինայ (17)։ Դարձաւ Ագրիպպինա ի Հռոմ աճեալ զաճիւնն Գերմանիկեայ որ ի Բրունդուսիոնէ մինչեւ ի Հռոմ ածաւ պատուով եւ եդաւ ի շիրմին Օգոստեայ, վասն դատ վասն ատնն մահուան, եւ Պիսոն մինչ չեւ ի գլուխ ելեալ դատաստանին ի ծերակուտի անդ՝ խեղդեալ գտաւ ի սենեկին (20). Պղանկինա ազատեցաւ աղաչանօք Լիւիայ, բայց յետ սորա մահուն եւ նա եգիտ զկէնժան՝ ատելեալ հրամանաւ Տիբերեայ (33)։

3. Յետ Գերմանիկեայ մահուան աներկիւղագոյն եւ համարձակագոյն էր Տիբեր. վասն զգուշութեան անձին իւրոյ՝ անդստին յամէ 15 էր նորա կացուցեալ զամբաստանութիւնս կամ զդատաստանս մահու վասն այնոցիկ որ խօսիցին ինչ չարիս զկայսերէ կամ անարգիցեն. բազմացան յածախեցին առաւել քսուք եւ զրպարտիչք այնուհետեւ, եւ առնոյին վարձս ատաստութեամբ, իսկ որ զրպարտեալն էին կամ ընդ կասկածանօք՝ արք երեւելիք եւ մեծատունք՝ սպանանէին եւ հատանէին ինչք նոցա յարքունիս։ Յամենայն դատախազութիւնս յիրաւի եւ յանիրաւի խառնէին եւ այն յանցանք անարգելոյ զկայսր, եւ բազում անգամ լինէր այն յանցանք այնոցիկ որ ազատ յամենայն յանցանաց էին։

4. Ի դոյն եւ յայլ եւս անկարգութիւնս Տիբերեայ խորհրդակից եւ խրատատու եւ դրդիչ էր Եղիոս Սէյանոս անձնապահապետ որ նախ արկ հիմն զինուորական բանակութեանն ի Հռոմ. զտասն վաշտսն անձնապահաց որ աստ անդ ցրուեալ էին ի քաղաքին՝ արտաքոյ պարսպացն ի միում վայրի տայր բանակել, զի առ ամենայն ինչ պատրաստ կայցեն, եւ կամէր առաւել հարթել իւր ճանապարհ յաթոռն։ Նմին իրի խրատ ետ նա (24) Տիբերեայ հեռանալ ի Հռոմայ։ Տիբեր ի բնէ միտագոյն ի նոյն խորհուրդ էր, քանզի ատեալ իւր կամէր ի մօրն ծերութենէ որ միջամտելով յիրս առաջնորդութեան լինէր, եւ դարձեալ զի վաղ ընդելեալ էր ի միայնութիւն յորժամ ի Հռոդոս էր, եւ երրորդ անգամ զի զեղխել իւր անտես ի մարդկանէ խորհէր։ Այլ եւ նա պատճառանօք նաւակատեաց տաճարացն Օգոստեայ ի Նոլա ի Կամպանիա եւ անտի անց ի գեղեցիկ կղզին Կապրեա (25), եւ չեմուտ երբեք յետ այնորիկ ի Հռոմ։ — Այնուհետեւ նիթեալ համարձակագոյնս Սէյանոս՝ որպէս էր սովորեալ զՏրուսոս

1 Տես ի խոհարհ էջ 100—101։



Digitized by Google

զորդի Տիբերեայ դեղով (23), նոյնպէս ջանայր կործանել եւ զտունն Գերմանիկեայ, եւ ի ձեռն Լիւիայ († 29) մօր Տիբերեայ եւ Լիւիլլայ († 31) այրւոյ կնոջ Դրուսեայ՝ աղարտէր զԱգրիպպինա զմայրն Ներոնի եւ զԴրուսեայ եւ մանաւանդ զՆերոն կամէր խոտորեցուցանել յանպատեհս եւ տալ պահապանօք իւր եւ պահել զնա եւ զմայրն, եւ ճշդիւ գիտել զամենայն գործս նոցա եւ զել եւ զմուտ նոցա (27)։ Յետոյ ուրեմն գրելով Տիբերի երկիցս առ ծերակոյտն, դատապարտեցաւ Ագրիպպինա, եւ Ներոն յայտ արարեալ թշնամի հայրենեաց, նա աքսորեցաւ ի Պանդատարիա կղզի եւ սա ի Պոնտիա կղզի, Դրուսոս եղեւ բանտարգել ի պալատանն (30)։ Զգոյշ ինչ այնուհետեւ խափան առաջի Սէիանոս, ամենայն ուրեք խառն ընդ Տիբերեայ պատուէր, խաղք հասարակաց յաւուր ծննդեան նորա լինէին, ծերակոյտն, ասպետք եւ առաջինք ի քաղաքացեաց պատկերս նմին կանգնէին, եւ զի պարգեւք եւ պատիւք ընդ նորա ձեռն ելանէին՝ ի նմանէ մանաւանդ ածէին ակն եւ երկնչէին՝ քան ի նորա տեառնէ։

Այլ մինչդեռ եւ ընդ վերջին աստիճանն ի վեր կամէր ելանել եւ վաղ պատրաստեալ էր դաւաճանութիւնն ի վերայ կենաց Տիբերեայ, ազդ եղեւ սմա ի ձեռն դուշակի։ Տիբեր ըստ իւրում սովորութեանն յանդէտս իմն լեալ՝ բդեաշխ եւս զնա ընդ իւր սահմանեաց, եւ յետ սակաւ ինչ միոյ մինչ դեռ դղրդէր քաղաքն ի պատիւ մեծարանաց Սէիանոսի՝ առաքեցաւ ի Տիբերեայ Նեւիոս Սերտորիոս Մակրոն տանել թուղթ զնմանէ առ մի ի բդեշխիցն. գումարեցաւ ծերակոյտն եւ իբրեւ եմուտ Սէիան մեծաւ ուրախութեամբ՝ քանզի կարծեցուցեալ էր նմա Մակրոն թէ իշխանութիւն տրիբունական խնդրէ վասն նորա ի թղթի անդ կայսր ի ծերակուտէն, անդէն տարեալ Մակրոն զանձնապահսն ի բաց՝ ցուցեալ նոցա զհրաման անձնապահապետութեան իւրոյ ի Տիբերեայ։ Ընթերցաւ թուղթն, յիմարեցաւ ընդարմացաւ Սէիան, սինկղիտիկոսք որ սակաւիկ մի յառաջագոյն խնդակից լինէին նմա վասն նորոյ իշխանութեանն, ետուն վճիռ եւ տարաւ ընդ հրապարակս ի բանտ նախատակոծ թշնամանալից ի ժողովրդենէն։

Տիբեր որ ընդ աւետաբերս իւրացն նիւթելոց ի բարձրաւանդակ ուրեք կղզւոյն հայեցեալ մնայր, պատրաստեալ միանգամայն զնաւսն առաջի կղզւոյն զի ապրեսցի մազապուր թէ ձախողանք ինչ դիպեսցին, առաքէր զհրաման սպանման նորա եւ որդւոցն եւ բարեկամաց մի ըստ միոջէ, նա աւանիկ եւ բազմութեան իսկ անմեղաց զորոց ամբաստանութիւն էր՝ թէ ընդ Սէիանոսի միաբանեալ իցեն։ Սակայն եւ ոչ աքսորեալքն ինչ ազատեցան ի յլկանացն. մեռեալ էր Ներոն ի կղզւոջն (31) եւ Ագրիպպինա յետ բազում չարչարանաց եւ միոյ ականն ստնլոյ ի հարուածոց ե-

Digitized by Google

բեալքն՝ յետոյ, զամբաստանութիւնն վասն անարգութեան կայսեր[1] բարձ, այլեւս զկոյսս կոյսս մաւրհակաց ամբաստանութեանց եւ վկայութեանց, զի եւ առ յապա եւս թէ կամիցի՝ չիցէ կարող պատժել զոք վասն նոցա, մինչ զի իբրեւ անկաւ նա յախտ յետ իբրեւ 8 ամսոց, ի հոգս իւր եւ ի տրտմութեան էին քաղաքացիքն։ Բուժել բուժեցաւ յախտէն՝ այլ այլ ոք էր նա այնուհետեւ, թերեւս խօթութիւնն ինչ դարձոյց զնա ի մոլեգնութիւն։ Պոտի-տոս եւ Ատանիոս Սեկունդոս ասպետ՝ յորոց մին ուխտ եդեալ էր յապաքինել նորա՝ նուիրել զանձն ի մահ եւ միւսն կռուել սուսերամարտիկ՝ ստիպեցան կատարել զոր խոստացանն, նա եղեւ զահավէժ եւ սա յաղթեաց հակառակորդին։ Այսպէս եղեւ յայտ առնէն այլանդակութիւն որ զամենայն ախտ միաբանեալ ունէր յանձին, մինչեւ տարակուսել իսկ թէ որ ախտ մանաւանդ զօրագոյն իցէ ի նմա, անողորմութիւն արդեւք թէ անառակութիւն կամ անմտութիւն։ Սպանան մի ըստ միոջէ Տիբերիոս Գեմելլոս հօր-եղբօրորդի նորա եւ ժառանգակից ըստ կտակին Տիբերեայ, հա-նին նորա Անտոնիա Կրտսեր (դուստր Ոկտաւիայ եւ Մ. Անտոնեայ, կին Դրուսեայ, մայր Գերմանիկեայ), այրն առաքինի Սիղանոս երբեմն աներ (37) եւ Մակրոն իսկ անձնապահապետ որ ամբար-ձեալ էր զնա յաթոռն (38)։ Ամբաստանութիւնք վասն անար-գանաց կայսեր միւսանգամ հաստատեցան (39)։ Ի քերց անտի նորա Ագրիպպինա եւ Յուլիա որ ի մեծի պատուի էին յառա-ջագոյն՝ իբրեւ դաւաճանք ի Պոնտոս կղզի աքսորեցան (39), եւ հան ի վաճառ զամենայն ինչս նոցա. նմին հակառակ զքոյր իւր եւ զամուսին զԴրուսիլլա յետ մահուն հանեալ էր յաստուածու-թիւն եւ կանգնեալ նմին բագին (38)։ Անհնարին էր վատնու-թիւնն զոր առնէր ի խնճոյս եւ ի խաղս, նմին իրի եւ յաճախէր ի յափշտակութիւնս՝ մանաւանդ ի մէջ մեծատուն քաղաքացեաց աշխարհին Գաղղիացւոց յոր չոգաւ դնել զօրս եւ զծաղրական արշաւանն ընդդէմ Գերմանաց (39)։ Անդ ի Լուգդունան եա դնել եւ մրցութիւն յոյն եւ հռոմայեցի ճարտարախօսութեան, յո-րում ճարտարախօսքն մրցէին ընդ միմեանս, եւ որ յաղթէր՝ առ-նոյր վարձս ի պարտելոյ անտի, իսկ ոյր ճառն կամ երգ որ ի նորա գովութիւն էր՝ ամենեւին յոռի գտանէր, պարտ էր այնպիսւոյն սպունգաւ կամ լեզուաւ ջնջել, ապա թէ ոչ՝ անկանել ի Ռոդանոս։

Պահանջէր մոլեգին իւր կատաղութեամբ պատիւ աստուա-ծեղէն (յամէ 38), եւ երեւէր իսկ հրապարակաւ երբեմն Հերմէս եւ երբեմն Բակքոս եւ կամ իբրեւ զայլ ոք ի դից։ Ինքն իսկ զիւր կին Կեսոնիա եւ զերիւար իւր Ինկիտատոր (զոր սահմանեալ էր ի հիւպատոսութիւն) կացոյց քուրմս աստուածութեան իւրոյ, ստիպէր եւ զՀրեայսն դնել զիւր պատկեր ի տաճարին Երուսա-

1 Crime de lèse-majesté.

դեսպանացն (40)։ Այսպէս ուրեմն խորեւ տուժութին պատրաստէր նմա մահուան տիրանց մեծամեծաց՝ Կասիոս Քերեա հարիւրապետ մի յանձնապահաց գնդէն՝ միաբանութեամբ բազմաց ի մեծամեծաց խորհրդեան։ Դաւաճանութիւն՝ սպանաւ այրն մոլեգին յետ 4 ամաց 30 հարուածովք ի 29երորդ ամի հասակին, յորժամ եղեալ ի թէատրոնէ երթայր ի պալատն (41)։ Կամէր իսկ այնուհետեւ ծերակոյտն հաստատել միւանգամ ընկերհասարակութիւն. այլ զօրականն անձնապահ որ միաբան ընդ խառնամբոխ ռամկին ցասուցեալ էր անհնարին ընդ սպանումն կայսեր եւ զգաղումն իսկ յառաջնորդաց սպանութեանն կատարեալ՝ ընդդէմ դարձաւ։

2. Այսպէս 50ամեայ հօրեղբայր Կալիգուլայ Տիբերիոս Կղաւդիոս Կեսար (41—54) որդի Դրուսեայ եւ Անտոնիայ Կրսերոյ, անփորձ բնաւորութ յաթոռն հակառակ կամաց ծերակուտին ի ձեռն անձնապահացն, եւ ընդ այնր եւ խրախուսէր ի նոցանէ պարգեւս, եւ Կեսարս սպանաւ։ Զառաջինն եւս եցոյց չափաւորութիւն եւ եղեւ սիրելի ամբոխին, բարձ զանիրաւութիւնս։ Բայց քանզի տկար էր միտք Կղաւդիոսի եւ մոռացօղ, զեղխ յոյժ ի կերակուրս եւ հեշտալ ի խաղս՝ չէր ատակ ինքնին իշխել այլ տանէին եւ բերէին զնա կանայք նորա եւ ազատացեալք, այնպէս զի ժամանակ թագաւորութեան նորա էր՝ նախ թագաւորութիւն Մեսաղինեայ եւ ապա Ագրիպպինեայ Կրսերոյ (դստեր Գերմանիկեայ, քեռ Կալիգուլայ) միաբանեալք ընդ ազատացելոցն դերեալ՝ Նարկիսեայ (ատենադպրի նորա) եւ Պալլասայ (գանձապահի նորա) եւ Կալլիստեայ (սենեկապանի նորա)։ Զգօյր չափ անամօթութեանն եւ ժանդութեանն Մեսաղինեայ, մինչ զի յաւակս իսկ եղեանուն նորա՝ նշանակել նովին զկանայս ժպիրհս եւ անառակս։ Յօժարեցուցեալ հրապուրէր յանպիտանութիւնս զկանայս մեծամեծացն. արք երեւելիք որք դարձան ընդդէմ հրապուրանաց նորա՝ սպանան մի ըստ միոջէ (Սիղանոս կուսակալ Սպանիացւոց † 41, Վինիկիոս երբեմն հիւպատ † 46, Պոմպէոս Մագնոս եւ Վալերիոս Ասիատիկոս † 47, եւ այլք բազումք)։ Յուղիա դուստր Գերմանիկեայ աքսորեցաւ եւ ապա սպանաւ (41), եւ էր այնուհետեւ ի վտանգի քոյր նորա Ագրիպպինէ հանդերձ մանկամբն իւրով Ներոնիւ։ Այլ յանկարծ գժտէր Մեսաղինէ ընդ ազատացելոցն երեցունց որ ցայն վայր գործակից էին նորա յամենայնի, գրգռեալ զնոսա ահն անձնապահել կորուսանել զնա։ Վաղվաղակի իսկ գտաւ նոցա ժամ դիպող. ի ժամանակի զի հեռացեալ էր Կղաւդիոս յՕստիա՝ ամուսնացաւ Մեսաղինէ ընդ Սիղիոսի միում ումեք յազնուականաց որ ի բդեշխութիւնն առաջնորդեալ էր։ Փութացաւ Նարկիսոս, եբաց զաչսն Կղաւդեայ, խնդրեաց զքաբաւականս ալքունեացն եւ զվստահսն որ հասանէր աթոռոյ նորա ի հարամանեաց տանէ։ Սպանաւ Սիղիոս եւ բազումք ընդ նմա, եւ

Digitized by Google

իբրեւ ջանայր տակաւին Մ՚եսաղինա հաճել միւսանգամ զմիտս Կղաւդեայ՝ առաքէր ՚Նարկիսոս անհրաման ի կայսերէ հազարապետ մի ի բուրաստանն Լուկուղղայ, ուր էր այնուհետեւ միայնացեալ Մ՚եսաղինա եւ անդ եղեւ սուսերահար (48)։

Այնուհետեւ խորհրդակցութեամբ Պաղղասայ ընտրեցաւ ի տիկնութիւն Ագրիպպինա (49) որ ամբարտաւանութեամբ, ծախսիրութեամբ եւ ժլատութեամբ գլէր զՄ՚եսաղինա։ Իսկ եւ իսկ խորհէր զԲ՚րիտանիկոս զորդի կայսերն ի Մ՚եսաղինայ՝ ի բաց հեռացուցանել, նախ իբր իւրում որդւոյն Կղաւդեայ Դոմիտեայ ՚Ներոնի զոր ի Դոմիտիոսէ Ահենոբարբայ (յորդւոյ Անտոնիայ երիցագունի Օկտաւիայ եւ Մ. Անտոնիոսի) ունէր՝ խօսէր կնութեան (49) զՕկտաւիա որ էր դուստր կայսերն յառաջին կնոջէ, եւ էր փոխխօսեալ Սիղանոսի ումեմն առն երեւելւոյ որ յառաջ հարսանեացն արար անձամբ անձին (53), եւ միաբանգամայն առայր կացուցանել զնա որդի եւ ժառանգ թագաւորութեանն (50)։ Սենեկա փիլիսոփայ՝ զոր դարձոյց Ագրիպպինա ի Կորսիկայ ուր աքսորեալ էր զնա Մ՚եսաղինայ՝ կացուցաւ ուսուցիչ որդւոյն (49) եւ Բուռոս զօրավարն Ագրիպպինա յանձնապահապետութիւն, երկոց վարդապետս պատերազմական արուեստի (51)։ Յետ այսորիկ իբրեւ նշմարէր Ագրիպպինա թէ չկամի իւր Կղաւդիոս հրաժարել ի քաջէն Բ՚րիտանիկոսէ եւ թէ սկսաւ խեթիւ իմն հայել ընդ նա՝ հեռացուցեալ նորա զհաւատարիմն ՚Նարկիսոս զեւր հանգստեան ի Կամպանիա, բարձ թունաւոր կերակրով զԿղաւդիոս ի միջոյ՝ միաբանեալ ընդ Պաղղասայ եւ ընդ Բուռոսի (54, հոկտ.)։ Այլ ամբոխն աստուածացոյց եւ զԿղաւդիոս։

Առ սովաւ հարաւային կողմանք ինչ Բ՚րիտանիայ նուաճեցան եւ տուաւ Կղաւդեայ եւ որդւոյ նորա անուն՝ Բ՚րիտանիկոս, քանզի եւ կայսր չոգաւ անդր տալ ճակատ ինչ (43—44). Մաւրետանիա (42), Հրէաստան (44) եւ Թրակիա (47) նահանգ եղեն հռոմայեցւոց։ Մղեցաւ ճակատ ընդ Գերմանաց ի ձեռն Գաղբայ զօրավարի (41) եւ ի ձեռն Կորբուղոնի (47)։ — Ոստիա քաղաք նաւահանգստի առ նովաւ շինեցաւ։

## 15

Զնա պայազատէր 17ամեայ Կղաւդիոս Դոմիտիոս ՚Ներոն Կեսար (54—68) ուրջու, որդեգիր եւ փեսայ Կղաւդեայ։ Զեհան Ագրիպպինա ի վեր զմահն Կղաւդեայ ժամս բազումս, մինչեւ ամենայն պատրաստեալ յարդարեցաւ եւ տարաւ անդր ՚Ներոն ի բանակն անձնապահաց ի ձեռն Բուռոսի, կոչեաց զնա զօրականն կայսր մեծաւ ցնծութեամբ, նոյնպէս եւ ծերակոյտն ընկալաւ զնա։ Հոյակապ փիլիսոփան Սենեկա եւ Բուռոս կոթեալ

նարոն ։ Կոչէր Ներոն ի Բայիս Կամպանիացւոց զմայրն որ էր յայնժամ յԱնտիոնի Տուսկանացւոց իբրեւ յազգայս, որպէս թէ հաշտել ընդ նմա կամիցի, եւ արդեամբք իսկ ընթրեօք մեծարեալ՝ արձակէր զնա համբուրիւ եւ խանդաղատութեամբ յեւս ։ Այլ այն ինչ մտեալ Ագրիպպինայ ի նաւն պատրաստեալ ի Բայեան ծոցին եւ յառաջեալ սակաւ մի՝ քակեցին ի ներքուստ տախտակամածք պատուհասաւոր նաւուն եւ ընկղմեցին դշխոյն ի ծովու. եղեն երկոքին ընկերք նորա ծովակուր, բայց Ագրիպպինա ապրեցաւ ի լող ։ Այնուհետեւ չէր ինչ այլոց արգելուլ քող ի վերայ չարեացն, առաքէր Ներոն զերկոսին ի զերեաց եւ սպան սա սրով զԱգրիպպինա որ էր դուստր հօր սահմանելոյ ի կայսերութիւն, քոյր, կին եւ մայր կայսերաց (59)։ Խեղդ նա զգոլ զանձս ազգատոհմին իւրոյ։ Այլ անհնարին իմն էին սոսկալիք եւ անձկութիւնք մայրաքաղաքին զամենայն իսկ աւուրս կենացն, սակայն առ ժամն աղաղացոյց նա զանձն առաջի ծերակուտին թղթով յղելով ի Սենեկայ եւ ընկալան իսկ զնա շքով յորժամ ի Հռոմ դարձաւ ։ Միայն Պետոս ոմն Թրասէա այր սինկղիտիկոս առաքինի ել ի բաց այն օր ի ծերակուտէն եւ ոչ չոգաւ իսկ ընդ առաջ նորա ։ Յետ սակաւ ինչ եւ ընդ անմեղն եւ ընդ առաքինին Սենեկայ նոյնպիսի անցք անցին, եւ Պոպպէա կայր այնուհետեւ տիկին (62)։ Բուռս վախճանէր օրհասիւ կամ դեղով, եւ առնոյր զգործ անձնապահապետութեանն ժառանգ Տիգեղղինոս (61), եւ Սենեկա խնջոյական հեռանայր յարքունեացն (62)։ Այսպէս բարձաւ ամենայն յորմէ ամօթ էր նմա ամէն ածել կամ պատկառել ։ Հաստատեցան միանգամ ամբաստանութիւնք վասն զկայսր անարգելոյ (62), սպանութիւնք զմիմեանս յաջորդէին ։ Յօրինեցաւ դաւաճանութիւն ինչ ի մէջ արանց սինկղիտիկոսաց, ասպետաց եւ զօրականաց գլխաւորութեամբ Պիսոնի ուրումն ազնուականի՝ զոր կամէին ամբառնալ յաթոռ կայսերացն ։ Յայտնեցաւ դաւն ի ձեռն միոյ ուրուք ի զերեացն Սկեւինեայ որ դաւադրութեանն կատարելոց էր։ Զարհուրեցաւ Ներոն ընդ բազմութիւն դաւաճանացն յայտնելոց, սպանան երեւելիք ի նոցանէ մի ըստ միոջէ եւ զսուսերն Սկեւինեայ զպատրաստեալն ետ կախել ի Կապիտողիոնին՝ նուէր Արամազդայ Վրէժխնդրի ։ Առաքեաց հրաման եւ առ Սենեկա մեռանել, եւ թերեւս էր նա կցորդ դաւոյն. եւ սա հատանել զերակսն ըստ սովորութեան ժամանակին, կամեցաւ նորին կին Պաւղինա երթալ զաւռնն զհետ եւ ետ իսկ հատանել զերակսն, այլ Ներոն հրամայէր արգելուլ զարիւնն եւ ապրեցաւ (65)։ Ի յաջորդ ամին նոյն հրաման մահու առաքեցաւ եւ առ այսն առաքինիս առ Պետոսն Թրասէա եւ առ Բարէայն Սորանոս (66)։

Մերձէր քան զամենայն էր Ներոնի՝ խաղալ ի թէատրոնի եւ ի կրկէսի վարել կառս, երգել եւ ընդ սրնգահարաց եւ վան-

Digitized by Google

դրօշահալոց մեռնել, անցեալ ի մէջ նոցա եւ մնացեալ ընդ օրինօք նոցա։ Ըստ նորա կոչուեցեալ եւ զունդ մի զօրականաց Օգոստեանս անուն որ յերգել նորա փառաբանօք՝ գովէին զնա կոչելով «Ապողոն գեղեցիկ»։ Յետ ի Նէապոլիս ի նոյն գործ երթալոյ (64), քաջալերեալ ի գովութենէ ձայնին իւրոյ զոր լուաւ ի հրեշտակութենէ ինչ քաղաքացն Յունաց՝ Յոյնք միայն, ասէ, իմանան զճարտարութիւն արուեստին իմոյ. այսպէս եւ նա ի Յունաց աշխարհ, շրջէր ընդ քաղաքս քաղաքս, ի խաղսն Ոլիմպեան, Պիւթեան եւ Իսթմեական, առնէր գուսանութիւնս եւ երգէր, թէպէտ եւ յոյժ մեղմ իմն եւ կարճ էր ձայն նորա, եւ դառնայր մտանէր ձաղանօք ի Հռոմ՝ ժողովեալ 1800 պսակս յաղթութեան յայլ եւ այլ մրցութիւնս։

Յետ ամբաւ սպանութեանցն եւ գործոց գազանութեան մի ինչ տակաւին պակաս էր ի համբաւ պարծանաց նորա՝ լինել այրիչ քաղաքաց։ Յանկարծակի ի միում աւուր 14 թաղիք քաղաքին Հռոմայ բորբոքեալ այրէին յաւուրն յորում յառաջ քան զ450 ամ Գաղղիացիք հրձիգ արարին զքաղաքն. զ7 տիւ եւ զ7 գիշեր տոչորէր բոցն եւ ոչ ոք իշխէր շիջուցանել, եւ Ներոն ի տանեաց ապարանից իւրոց հայեցեալ տեսանէր եւ քնարիւ հարկանէր զերգս այրմանն Տրովայ (64, 18—24 Յուլ.)։ Կամեցաւ միւսանգամ շինել զքաղաքն գեղեցիկ քան որպէս էրն, բայց սպառեցան գանձք տէրութեանն մանաւանդ վասն շինութեան շքեղ կայսերական պալատանն։ Իբրեւ ետես Ներոն թէ զայրագին իմն հայի ընդ նա ժողովուրդն վասն հրացն՝ յայլս իմն կամեցաւ զյանցանսն կրթել, այս ինքն՝ ի քրիստոնեայսն։

3. Քրիստոնէութիւնն այնու զի ի Հրէաստանէ էր ելեալ՝ զառաջինն հրէական ինչ աղանդ համարեցաւ հեթանոսացն. այլ իբրեւ կրօնք տէրութեանն վաղվաղակի նուաղել սկսան՝ ամենեցուն աչք ի քրիստոնեայս սկսան հայել։ Քանզի ամենայն առողջ միտաց եւ անաչառ սրտից սիրելի եւ անձկալի թուեցաւ այն վարդապետութիւն, որ ամենեցուն առանց ընտրութեան խոստանայր խաղաղութիւն ոգւոյ ընդ Աստուծոյ եւ կեանս յաւիտենականս այնոցիկ՝ որ հաւատայցեն ի Քրիստոս եւ ըստ նորա պատուիրանացն գնայցեն։ Բայց նոյն հակառակ որ ի մոլորութիւնս ծնեալ էր, եւ կապեալ ի հրէական կամ ի հեթանոսական կարծիս, կուրութեամբ հարեալ հատեալ ի գլխ, եւ համարէր թէ ընդ զեղն ապստամբն կործանի հռոմէական պետութիւնն, եւ կամ ունէր ինչ շահս արուեստի ի հեթանոսական խաբէութենէն՝ լինէր թշնամի եւ հալածիչ քրիստոնէութեանն։ Քրիստոնէութիւնն կոչէր ի հեթանոսաց աւելորդ պաշտօն, ժանտ. եւ քրիստոնեայք յաչս աշխարհասիրացն համարեալ էին Ազգ խուսափող ի լուսոյ[1], եւ ամբաստանեալ՝ ունել ատելութիւն առ ազգ մարդկան։

1 Gens lucifuga.

մի միոյն զատարապանաւ՝ տանէր անձամբ անձին՝ օգնականութեամբ միոյ ուրուք յազատաց իւրոց։ Այսպէս վճարէր Ներոն յ32ամ ամի հասակի (68, Յունիս.) աղաղակելով զանձն թէ "Որպիսի ճարտարս կորնչիմ"[1]։ Այնչափ ատելի էր ամէն վասն նորա՝ մինչեւ ժամանակս բազումս Ներոն համարել զնա քրիստոնէիցն։ Առ նովաւ Բրիտանիա եղեւ նահանգ Հռոմայեցւոց ի ձեռն Սուետոնի Պաւղինեայ։

5. Այլ անդէն ի բառնալ առհմին Կեսարաց մեծամեծ յոյզք եղեն ի Հռոմայեցւոց պետութեան, քանզի չգոյին ինչ օրէնք վասն պայազատութեան աթոռոյն, եւ զօրն զնէր եւ բառնայր զկայսերսն։ Թէպէտ եւ ծերունին 72ամեայ Սերուիոս Սուղպիկիոս Գալբաս առ զՀռոմ, բայց հեռացաւ ի նմանէ անձնապահքն վասն խստութեան նորա եւ օգնականութեամբ սոցա ընկէց զնա յետ 6 ամսոց բարեկամն Ներոնեայ Մարկոս Ոթոն եւ սպանաւ Գալբաս յանձնապահացն ի հրապարակամիջի քաղաքին (69, Յունուա.)։ Իսկ կայսրն նոր Ոթոն խոկ եւ խոկ յետ 3 ամսոց հարկ համարեցաւ խաղալ ի վերայ նախանձորդին իւրոյ Վիտելիոսի զոր գերմանական լեգէոնքն անուանեցին կայսր, յաղթեցաւ զօրն Ոթոնի առ Կրեմոնաւ ի զօրավարացն Վիտելեայ՝ ի Վաղէնտ եւ ի Կեկկինեայ, եւ Ոթոն որ ի Բրիքսեղլոն էր՝ իբրեւ լուաւ զպարտութիւն զօրու իւրոյ, սպար անձին՝ զի բարձցէ զքաղաքային կռիւն յոր յօժարեցուցանէին զնա զօրականք իւր քաջալերելով զնա (Ապրիլ)։

Վիտելիոս այնուհետեւ ընկալեալ էր յամենեցունց ի կայսրութիւն, բայց սակս վասն զեղխութեան եւ անգթութեան եւ անսանձ համարձակութեան իւրոցն զօրաց եղեւ ատելի ի Հռոմ։ Յայսեան անտարւոս լեգէոնքն Ասորւոց եւ կացուցին զզօրավար իւրեանց զՎեսպասիանոս կայսր. յարեցան ի նոսա լեգէոնքն Պաննոնիացւոց, եւ Պրիմոս յաղթեաց զօրացն Վիտելեայ առ Կրեմոնաւ, եւ ինքն Վիտելիոս սպանաւ ի ժողովրդենէ ի Հռոմ չարաչար, եւ դիակն ընկեցաւ ի Տիբերիս (69, Դեկ.)։

## 16

Յայսմ վայրի խռովեցուցիչք ի Հրէաստան նշանակել զկատարումն դատապարտանացն Աստուծոյ սպանողացն, մանաւանդ թէ զգողելոց մորերգին աղաղակաւ աստուածասպանացն թէ "Արիւն դորա ի վերայ մեր եւ ի վերայ որդւոց մերոց"[2]։ Քանզի զոր Յիսուս յառաջ մատնելոյ իւրոյ շքով յԵրուսաղէմ պատմեալ էր աշակերտացն արտասուօք՝ ի նշմարելն զքաղաքն ի հեռաստանէ[3], եւ տաւել եւս նկարեալ մանր յետ երկուց աւուրց՝ ի ցուցանել

1 Proh, qualis artifex pereo! 2 Մատթ. Իէ. 25։ 3 Ղուկ. ԺԹ. 41—44.

Digitized by Google

նման աշակերտացն գչինեալ տաճարին[1]. այն ամենայն յետ 37 ամաց եղն ի կատարումն մինչեւ ի սողոքայս ապստամբն :

Հրեայք թէպէտ եւ չունէին այնուհետեւ պատճառս ինչ ամբաստանելոյ զանձինս վերագոյն քան զայլ ազգս, քանզի հաւատարիմն լեալ էին նոքա, սակայն եւ այնպէս սաստիկ ատելութեամբ էին նոքա ընդ Հռոմայեցւոց՝ անբարտաւանելով իմն եւ պարծելով յազգն իւրեանց : Այն ատելութիւն երթայր եւ յաճախէր ոչ միայն սաստիկ հարստահարութեամբ կուսակալացն Հռոմայեցւոց՝ այլ եւ վասն անմիտ եւ անիրաւ գործոց Հրէիցն եւ վասն մոլորեցուցչացն եւ խաբեբայիցն որ քարոզէին նոցա ապստամբութիւն ընդդէմ Հռոմայեցւոցն, մինչեւ յիմարեալ եւ ոչ նշանացն բարկութեան որ յերկնից յայտնէին՝ զնէին միտ :

Ի ժամանակի զի նեղէր զնոսա Աղբինոս դատաւոր (յամէ 62 կամ 63), եւ Ագրիպպաս Բ. նորաձեւսն առնելով եւ յարելով ի Հռոմայեցիսն օտարանայր ի նոցանէ՝ երեւէր ի տօնի տաղաւարահարացն Յեսու կամ Յիսուս ոմն անուն ի տաճարին որ աղաղակ եղեալ գոչէր, «Ձայն բարբառոյ յարեւելից, ձայն յարեւմտից, ձայն ի չորից հողմոց, բարբառ ի վերայ Երուսաղեմի եւ տաճարին, բարբառ ի վերայ արանց եւ կանանց, բարբառ ի վերայ ամենայն ժողովրդեանն». յայնմ հետէ գոչէր նա սաստիկ զտիւ եւ զգիշեր. «վայ վայ Երուսաղեմի»։ Ողոքեցին զնա, գան հարին, սակայն նա ոչ ինչ բարբառէր քան զվայն զայն զարհուրանաց, այսպէս ամս 7 ընդ ամենայն տեղիս. այլ ի վերջնում պաշարմանն եկն եմուտ ի քաղաքն, շրջէր անդադար ի վերայ պարսպաց նորա շուրջանակի՝ եղեալ աղաղակ թէ «վայ տաճարին, վայ քաղաքին, վայ ժողովրդեանն». եւ յետ ուրեմն ած զնովին թէ «վայ եւ ինձ» եւ անդէն հար ընկեց զնա վէմ մի ի քարընկեց մեքենայից : — Ի տօնի զատկաց 65 ամին բացաւ ինքնին զհասարակ գիշերաւ պղնձի դուռն տաճարին՝ յետ լինելոյ անհնարին պայծառութեան լոյս. յետ սակաւ ինչ միոյ երեւէին յարեւմտից կառք պատերազմի եւ գունդք գունդք պատերազմողաց ընդ օդս. իսկ ի տօնի պենտակոստէից լուան քահանայքն գիշերի ի տաճարին աղմուկ եւ յետ այնորիկ բարբառ թէ «Գնասցուք աստի, գնասցուք»։ Բայց ամենայն ընդ վայր եւ վայրապար[2] :

2. Գեսսիոս Փղորոս (յամէ 65) յաջորդ Աղբինեայ անցոյց զանցոյց զառաջինովքն ժլատութեամբն եւ անգթութեամբ. պաշտպանէր նա եւ բազմութեան աւազակաց՝ զի առցէ բաժին յաւարէ նոցա : Երբեւ եսես թէ պատասխանատուութիւն կայ նմա՝ սաստկացոյց զհարստահարութիւն ժողովրդեանն զի ապստամբութեամբն նոցա արդարասցի. եւ հաս իսկ որում կամէրն, քանզի

1 Ղուկ. ԻԱ. 5–4, 20–24 : Մատթ. ԻԴ. 1–6, 5–22.

2 Յովսեփ. Հրէակ. պատեր: Տակիտոս Պատմ. Ե. Գլ. ԺԳ.

Digitized by Google

ի Պեղղա քաղաքին յայնկոյս Յորդանանու։ Իսկ Հրէայքն որ անդէն մնացին՝ առնէին յայնմ հետէ պատրաստութիւն պատերազմի. վիպագրին Յովսեպայ յանձն եղեւ Գալիլեա, Եղիազարու Եդովմէ. եւ միւս եւս ոմն Յովսեպոս եւ Անանոս քահանայապետ կացին հրամանատարք յԵրուսաղէմ։

3. Մինչ Հրէայք երկիցս յարձակեցան յԱսկաղոն եւ մերժեցան յետս՝ անկանելով ի նոցանէ 20,000 արանց, անտուստ Վեսպասիանոս զօրավար ժողովէր գունդ հարուստ յԱսորիս, եւ ի սկսանել յառաջորդ ամին (67) հասանէր առաջի Յոտապատայ ի Գալիլեա 60,000 արամբ, քանզի եւ Տիտոս նորին որդի խառնեցաւ ի նա։ Առաւուրս 47 դիմակալ եղեւ պաշարման քաղաքին Յովսեպոս մեծաւ քաջութեամբ, բայց ապա (Յուլ.) առաւ յարձակմամբ եւ ապականեցաւ հրով եւ սրով։ Ընդ գերեալսն էր եւ Յովսեպոս՝ զոր կամէր զօրավարն առաքել առ կայսր. բայց իբրեւ պատմեաց նմա Յովսեպոս թէ հասանիցէ յաթոռ կայսրութեան՝ պահեաց զնա առ իւր սիրով. ընդ նոյն ժամանակս եւ այլ եւս քաղաքք Գալիլեացւոցն մեծաւ աշխատութեամբ եւ արիւնհեղութեամբ առնին, եւ մինչեւ ցկատարած ամին՝ գրաւեալ էր ամենայն երկիրն յայնկոյս Յորդանանու։

Իսկ յԵրուսաղէմ ընդ նոյն ժամանակս կողմն Նախանձայուզաց բռնացեալ էր ի վերայ այլոց կողմանց, քանզի երկպառակեալ իմն էին։ Նախանձայոյզքս բարբառեալ որպէս թէ զԱստուծոյ փառսն խնդրիցեն՝ չկամէին ընդ ուրուք իշխանութեամբ մտանել, այլ զամենայն իշխանութիւն օտարի՝ մերժել յանձանց։ Սոքա նախ աւարհարութեամբ եւ սպանութեամբ մոլեգնէին ի վերայ հակառակորդացն ի մօտաւոր վայրսն Երուսաղեմի, եւ յետ այնորիկ առաջնորդութեամբ Եղիազարու ուրումն մտին յԵրուսաղէմ, գրաւեցին զտաճարն եւ անտուստ յարձակէին այսր անդր (68)։ Անանոս՝ որ երբեմն քահանայապետն էր, հաւանեցոյց զժողովուրդն մերժել զնոսա զինուք. եւ մերժեալ փակեցան իսկ ի ներքին կողմանս տաճարին, յետ սաստիկ կռուոյ։ Այլ Յովհաննէս Գիսկաղացի, որ ի Գիսկաղայ դղեկէ Գալիլեայ ապրեալ եկեալ էր ամբոխիւ յԵրուսաղէմ, նենգութեամբ կեղծաւորէր որպէս թէ կամիցի երթալ խօսել ընդ նոսա անուամբ Անանոսի, բայց արդեամբք խրատ ետ նոցա պնդել կալ հաստատուն եւ զԵդովմայեցիս կոչել ի թիկունս։ Եկին իսկ վաղվաղակի Եդովմայեցիքն 20,000 արամբ. չեթող զնոսա Անանոս մտանել ի քաղաքն, բայց ի գիշերի միում յորժամ մրրիկ էր, Նախանձայոյզք գաղտ բացին նոցա զդուռնն։ Այնուհետեւ միաբանեալ սոցա ընդ նոսա արարին կոտորած անհնարին ի մէջ հակառակորդաց իւրեանց, եւ անկան սրով 12,000 արք երեւելիք յորս եւ Անանոսն էր, մինչեւ զժգամել Եդովմայեցւոցն ընդ այն եւ դառնալ յետս։

4. Մինչդեռ նախանձայոյզքն յետ Հռոմէլոյ զօրուն երեւելեաւ՝ ի վերայ անառարկելի սպանն մոլեգնել. ամբաստանեքն՝ քան զամենեան արժանի պատուոյ համարէին։ Բազումք ի Հրէից կենաց իսկ փափագեալ անկեալ անձնատուր ի Վեսպասիանոս՝ ապաստանել ի Սեւղիանոս, որ կայր մօտ ի քաղաքի անդ անդորր, պատուեալ զի երկպառակութիւն Հրէից եւ առաջնորդաց նոցա դիւրացուցէ նմա զյաղթութիւնն։ Նա էր իսկ քաջ խորհրդոյն։ Քանզի Յովհաննէս Գիսկաղացին չկամէր զիջել որ հրամանատար առ իւր, եւ այնպէս Նախանձայոյզք յերկուս իմն բաժանեցան եւ անդադար մարտ պատերազմի էր նոցա ընդ միմեանս։ Միանգամայն ի նմին ժամանակի եւ արտաքոյ իսկ քաղաքին յօրինեցաւ զունդ աւազակաւորաց եւ աւազակաց եւ առաջնորդ նոցա Սիմոն ոմն անուն, որ խառնամբոխքն իւրովք առաւելացուցին զգունդն իբրեւ 20,000 այր։ Ընդ Սիմոնեանս միաբանեցին եւ Իդումայեցւոց 25,000 այր, եւ այնպէս պաշարեցին միաբան զԵրուսաղէմ։ Յայնժամ յարուցանէր ի քաղաքին հակառակ բանսարկութեանն Յովհաննու, եւ նա հալել համարեցաւ այնու հետեւ ամրանալ ի բերդն տաճարին։ Բայց քանզի երկնչէին իմն թէ խորհրդեսցէ նա քէն վրիժուց՝ ընկալան զՍիմոն ի ներքս զի պաշտպանեսցէ նոցա յերեսաց Յովհաննու։ Նա այսպէս յաւելաւ ի քաղաքին միւս եւս բռնաւոր յաճախել զընդդիմակացն վիշտս։

Իսկ Վեսպասիանոս զամն 68 հանէր ի դղեկս ապստամբական յաղթողն Իդումայեցւոց՝ յորում կացուցանէր զօրս յամուրսն եւ զաւանսն ի Կեսարիա։ Եւ յն ինչ կամէր ամենայն զօրութեամբն խաղալ ի վերայ Երուսաղեմի՝ հասանէր զրոյց թէ Ներոն ընկեցաւ եւ Գաղբա առ զաթոռն։ Յայն ամս յանկացեալ զարշաւանն՝ առաջանել փութապատած իբրայն, եւ մանաւանդ յորժամ լուաւ թէ Գաղբա եւս սպանաւ եւ անդ Օթոն (69)։ Նորա ուրեմն յետ մահուն Օթոնի ինքն Վեսպասիանոս ընտրեցաւ կայսր յԱսորիս յարկեղեան լեգէոնացն, եւ թողեալ զզօրն ի ձեռն որդւոյ իւրոյ Տիտոսի՝ մեկնէր ի Հռոմ։

5. Ընդ նոյն ժամանակս եւ յԵրուսաղէմ Եղիազար ոմն ի քահանայական տոհմէ կացեալ գլխաւոր գնդի երից (2400) Նախանձայուզացն՝ զրաւեալ կալաւ զներքին սրահ քահանայիցն ի տաճարին, եւ զՅովհաննէս Գիսկաղացի արգել ի արտաքին ժողովրդեանն. եւ սա 6000 արամբ լինէր նմա անդէն զինակալ՝ առնելով միանգամայն յարձակումն ստէպ ի վերայ քաղաքին՝ զոր զրաւեալ ունէր Սիմոն 1000 Նախանձայուզօքն եւ 5000 Իդումայեցւովք։ Յովհաննէս Գիսկաղացի այրէր զամենայն որ ինչ ի բուռն գայր, որով եւ բազում մթերք ցորենոյ որ բաւական էին ամաց բազմաց՝ այրեցան։ Յայսպիսի վիշտս էր Երուսաղէմ ի ժամանակի զի անտուստ Տիտոս (70) գայր մերձենայր իբրեւ 7



Digitized by Google

վտաւան բացագոյն ի պարսպացն։ Զորք Հռոմայեցի լէգէոնք էին նորա (իբրեւ 7000 այր) եւ 5000 ընտիր ընտիր զօրաց, եւ բազմամբոխ գունդ օգնական յԱգրիպպայ եւ յայլոց իշխանացն Արաբացւոց, եւ սկսաւ պաշարել սուրբ զքաղաքն Երուսաղեմացւոց։ Էր սա շէնեալ ի վերայ Ակրա բլրոյ՝ շուրջանակի 30 վտաւան (1½ ժամու գնաց ճանապարհի), փակեալ ուրեք անդնդովք, ուրեք ուրեք երեքին պատուարաւ եւ բազում ամուր ամուր աշտարակօք, յորոց երեւելի էին երեքինն՝ Հիպպիկոս, Փասայէլ եւ Մարիամնէ։ Տաճարն ի Մօրիա բլրին էր նա եւս առանձինն գրեթէ անառիկ իմն բերդ։ Իսկ ամբոխ ժողովրդեանն որ ի բնէ բազում էր յայժմ՝ առաւել եւս էր ստուարացեալ վասն մօտաւոր պասեքատօնին, որպիսի բազմութիւն չէր լեալ յառաջն երբեք։

Տեսիլ զօրուն Հռոմայեցւոց սթափեցոյց իմն զհակառակեալսն ընդ միմեանս։ Միաբանեցին նոքա ընդդէմ հասարակաց թշնամւոյն. այլ չէր տեւական խաղաղութիւնն։ Յովհաննէս ի ժամանակի տօնին, քանզի բացեալ էր Եղիազար զմուտս տաճարին, առ զօրաւ քահանայիցն մեծաւ կոտորածիւ. Մնացորդք գնդին Եղիազարու եւ ինքն իսկ Եղիազար հնազանդեցին Յովհաննու. եւ էին այնուհետեւ երկու եւեթ կողմանք (այս ինքն Յովհաննու եւ Սիմոնի) որ յարձակէին միւսանգամ ի միմեանս՝ յորժամ լինէր ինչ հանգիստ յարտաքնոցն։ Տիտոս յետ երկիցս առաքելոյ առ նոսա պատգամաւորութիւն հաշտութեան եւ մերժելոյ ի նոցանէ՝ ապա սկսաւ սաստկագոյնս բախել զքաղաքն քարընկէց մեքենայիւք։ Աւուրս 14 վաստակեալ՝ ապա մտին Հռոմայեցիք յառաջին պարիսպն։ Յետ 5 աւուրց առին պարիսպն երկրորդ եւ կացին մնացին անդ Հռոմայեցիք ի բաց մղեալ զյարձակումն Սիմոնի եւ զգնդին նորա։ Տիտոս իբրեւ պատրաստէր յարձակել ի վերայ երրորդ պարսպին՝ յղէր նոցա զիւրեանց ազգակից զՅովսեպոս խոստանալ նոցա միւսանգամ թողութիւն, բայց նոքա խոցեցին զնա նետիւ։

Տիտոս վասն կարելոյ արտաքուստ զպաշարումն՝ եւս ածել պատ զքաղաքաւն փոխանակ խրամոյն զոր խորացուցեալ էին, մինչեւ չկարել ումեք մտանել կամ ելանել։ Այնուհետեւ սաստկացաւ անհնարին սովն մինչեւ եւ զգարշելի ինչ իրս ուտել բնակչացն. զդիակունս որ կիսովին լուծեալ էին՝ փորէին հանէին ի կերակուր. նա եւ կին մի ի կանանց տոհմկաց առ եփեաց զմանկիկն իւր եւ կերաւ առ քաղցուն վտանգի։ Զարհուրեցաւ քաղաքն ամենայն եւ Տիտոս իբրեւ լուաւ՝ գժդմեցաւ եւ ասէր՝ թէ զանօրէնութիւնն զայն եւ զչարիսն թաղեսցէ ընդ աւերակօք քաղաքին։ Յայնժամ ամենայնի վերայ եւ ախտք ժանտք ի վերայ հասին, եւ ի 14որդ օրէ Ապրիլ ամսոյ մինչեւ ց1 օր Յուլեայ ընդ մի եւեթ դուռն հանան դիակունք իբրեւ 116,000 եւ ընկեցան ընդ պարիսպն 600,000

Լիկաոնիա, Լիւդիա, Յոնիա եւ Կարիա)՝ եղեւ նախ նահանգ Հռոմայեցւոց՝ Ասիա անուն[1] (132 նախ քան զՔր.), իբրեւ Թողեալ ժառանգութեամբ յԱտտաղեայ Գ. արքայէ Պերգամայ։ 2. Յետ այնորիկ երեքին պատերազմունքն Միհրդատայ (յամէ 88—64) մղեցին առաջն առնուլ յառաջ կոյս յարեւելս զզօրավարս Հռոմայեցւոցն զՍուղղա (88—85), զԼուկուղղոս (74—68) եւ զՊոմպէոս (67—63) անցանել ընդ Տաւրոս եւ առնել զբուն Թագաւորութեանն Սելեւկեանց՝ զԱսորիս զգլխաւոր վայր արքայութեանն արարեալ ընդ նահանգաւ (64)։ Ի ժամանակի պատերազմացս կամ՝ փոքր ինչ յառաջ լինէին նահանգ եւ այլ եւս Թագաւորութիւնք որ փոքր կամ մեծաւ հաղորդ անցեալ էին՝ հակեալք ի սորա կամ ի նորա կողմն։ 3. Թագաւորութիւնն Բիւթանիայ՝ ուր Թագաւորէին (յամէ իբրեւ 280) Թագաւորք Նիկոմեդէսք եւ Պրուսիասք, յետ վախճանին Նիկոմեդեայ Գ. եղեւ նահանգ Հռոմայեցւոց՝ իբրեւ ժառանգութիւն յամի 75 նախ քան զՔր., 4. Թագաւորութիւնն Կիլիկիոյ յամի 69, 5. Թագաւորութիւնն Պափլագոնիոյ, եւ 6. Մեծ (արեւմտեան) մասն Թագաւորութեանն Պոնտոսի ուր Միհրդատքն Թագաւորէին՝ յամի 64, 7. Թագաւորութիւնն Կիպրոսի յամի 57, 8. Թագաւորութիւնն ԳԼիւկիոյ յամի 50, եւ 9. Թագաւորութիւնն Գաղատիոյ կամ Գաղղոգրեկիոյ (հաստատեալ յամի իբրեւ 280)՝ յամի 25 նախ քան զՔր.։

Այլ մինչ չեւ Հռոմայեցւոց ընդ Տաւրոս անցեալ, այնչափ տկարացեալ էր Սելեւկեանցն Թագաւորութիւն՝ յապստամբութենէ Պարթեւաց (256), Բակտրիացւոց (254), Հայոց (190), Հրէից (130), եւ ցեղից ինչ Արաբացւոց եւ Ասորւոց, եւ ի ներքուստ պատահակաւ ի գժտութեանց արքունական տոհմին եւ ի հազարապետացն բռնութենէ, զի վաղ իսկ զրեթէ քայքայեալ տէրութիւնն էր, եւ մնացեալ կողմնք Եփրատայ, միջավայր Թագաւորութեանն, ի բազում մանր մանր Թագաւորութիւնս էր լուծեալ։

Սակայն Հռոմայեցւոց որ յետ այնորիկ ի ձեռն Անտոնեայ եւ Օկտաւիանեայ (40—30 նախ քան զՔր.) եւ առաջ առ կայսերօք գործ կալեալ յարեւելս՝ ոչ այն կամք էին, նա եւ ոչ դիւրին իսկ զայնպիսի զմանր Թագաւորս[2] միանգամայն ի միասին բառնալ իսկ եւ իսկ ի միջոյ, այլ ինքեանք իսկ զօրավարք Հռոմայեցւոցն՝ Պոմպէոս, Անտոնիոս, Օկտաւիանոս եւ յետ նոցա կայսերք կացուցանէին զնոսա կամ հաստատէին իբրեւ Թագաւորս կամ ցեղապետս[3] նիզակակիցս կամ դաշնաւորս[4], կախեալս զՀռոմայեցւոցն ճոխութենէ, զի մինչ չեւ հասեալ դիպող ժամուն արկանելոյ զկողմանսն զայնոսիկ ընդ նահանգաւ՝ արկցեն զԹագաւորս նո-

1 Asia propria. 2 Reguli. 3 Φυλάρχοι. 4 Socii.

Digitized by Google

ցս ի կերպս հռոմէական քաղաքականութեանն ի նուաճմանն հպա-
տակութեան ժողովրդեանն նոցա իւրաքանչիւր, ի նախանձու դըժ-
ուարութիւն նոցին խոկ թագաւորաց առ միմեանս, ի նենգաւորութիւն
եւ ի պատապատութիւն ընդդէմ զօրութեանն Պարթեւաց, որ էր
նոցա այնուհետեւ մի միայն ապաւէն յարեւելս[1]։

## 18

Այսպիսի էին տէրութիւնք շուրջ զՀայոց աշխարհաւ էին՝

1. Գամիրք կամ Կապադովկիա որոյ թագաւորութիւն ի պարսկական ժամանակաց յԱքեմենեան տոհմէ սկսեալ տեւեաց սկիզբն եւ յետ առ Սելեւկեանս նահանգ Մակեդոնացւոց եղելոյ ի ձեռն Եւմենեայ՝ այնպ միւսանգամ կանգնեցաւ թագաւորութիւնն (յամի իբրեւ 300 նախ քան Քր.) ի ձեռն Արիարաթայ Գ. որ միայն ազատեցաւ ի կոտորածէ ազգատոհմացն փախուցեալ ի Հայոց աշխարհ։ Տեւէր նոյն հարստութիւն մինչեւ զԱրիարաթ Թ. († 91 նախ քան զՔր.)։ Այնուհետեւ ընդունին Գամիրք ի Հռոմայեցւոց թագաւոր՝ զԱրիոբարզան Ա. (89) ընդ որում զաւակք հանեալ Տիգրան արքայ Հայոց ի ձեռն զօրավարաց իւրոց Միհրանայ եւ Բագադայ, մինչեւ մերժեալ զնա ի թագաւորութենէ կացոյց զԳորդիոս զորդի Միհրդատայ, որ Արիարաթ Ժ. կոչեցաւ։ Թէպէտ եւ հաստատեցաւ այսուհետեւ Արիոբարզան ի ձեռն Սուղղայ, այլ Տիգրան հան զնա միւսանգամ փախստեայ եւ տարաւ 30,000 գերի ի Տիգրանակերտ, մինչեւ յետոյ ի ձեռն Պոմպէոսի հաստատեցաւ Արիոբարզան յաթոռն (66)։ Վերջին թագաւոր նոցա Արքեղայոս քաջ Կոմանայ կացուցեալ յԱնտոնեայ, կոչեցաւ առ Տիբերիոս ի Հռոմ եւ մեռաւ ի տրտմութեան (17 յետ Քր.)։

2. Թագաւորութիւնն Պողեմոնեանն Պոնտոսի՝ էր մասն մի հին թագաւորութեան Պոնտոսի, յորում թագաւորեցին նախաատորութեամբ զօրավարացն Հռոմայեցւոց Գաղատ եւ Պողեմոնք Ա. եւ Բ. մինչեւ առաք եւ զայն ընդ նահանգաւ Ներոնի։

3. Փոքր Հայք նահանգ Սելեւկեանց, եղեւ թագաւորութիւն ուրոյն ի ձեռն Զարիադրայ կուսակալի (190 կամ 189 նախ քան զՔր.)[2] եւ պատմի տիրել ցեղի նորա ցամի 80 իբրեւ թագաւորս դաշնաւորս Հռոմայ։ Յետ այնորիկ տային Հռոմայեցիք զերկիրն զայն դրացի թագաւորաց իբրեւ յաւելուած իշխանութեան նոցա. Պոմպէոս ետ Տիգրանայ որդւոյ Տիգրանայ Մեծի արքայի Հայոց եւ յետ զնա առնելոյ ձերբակալ՝ փոքր տարակուսին ընդ հօրն գժտելոյ՝ ետ զայն Պոմպէոս, որպէս եւ յետոյ Կեսար, Դէյոտա-

1 «Հին իմն (ասէ Տակիտոս) եւ ընդունեալ սովորութիւն հռոմէական ժողովրդեանն է՝ եւ զթագաւորսն անգամ գործիս ծառայութեան ունել»։ Ագր. ԺԴ. 2։

2 Ստրաբ. ԺԱ. եւ կայ իսկ դրամ պղնձի Զարիադրայ արքայի գտեալ ի Սոփու-տիս այսպիսի ինչ գրով շուրջանակի Ζαδριάδου Βασιλέως Βασιλέων.

այլեւայլ ցեղից անտի յորոց խառնեալ ամփոփեալ էին Աղուանք ի միութիւն¹։ Էր ի հարաւակողմանն եւ ցեղ ինչ Հայոց ի գաւառէ Ալուանկայ, որում առ առաջին արշակունի թագաւորաւ կարգեցաւ Առան ոմն անուն ի նմին տոհմէ նահապետ՝ պատուով բիւրաւոր կողմնակալութեան կամ բդեշխութեան, եւ Առանայ իմն սահմանք համարէին երբեմն գաւառք Հայոց՝ Ուտի, Շակաշէն, Ձոր Գարդմանայ, Կողթ եւ այլ կողմանք²։ Մեւս եւս ցեղ բազմաւոր էին Գարգարացիք՝ զորս չէ իսկ պարտ շփոթել ընդ Գուգարացւոց. զի էին նոքա սկիւթացի ինչ կամ սարմատացի ազգ խառնեալ ընդ Աղուանից ի հիւսիսոյ առ ստորոտս մասին իւիք Կաւկասու որ Կերաւնեանն կոչէին³, զոր եւ խորհեցին թարգմանել Շանթային⁴։ Երեւելի քաղաքք նոցա էին Գանձակ Աղուանից, նիստ թագաւորին, Խաղխաղ՝ ձմերոց նոցա, որպէս երբեմն ձմերոց թագաւորին Հայոց, եւ Պարտաւ։ Առանձինն իմն անուանք թագաւորացն Աղուանից էին Առս-Վաղէն, Սանոյր, Վաչական։ — Պատմութիւն նոցա որ ընթանայ կից ընդ Վրաց է խառն ընդ անցից Հայոց աշխարհին. Առս-Վաղէն կամ Վաղարշ-Վաղան⁵ դաշնաւոր Տիգրանայ որդւոյ Տիգրանայ Մեծի եւս ճակատ ընդ Պոմպէի խառն ընդ արքային Վրաց (64 եւ 63), եւ նորին որդի Զաբեր եւս ձեռս ի Կանիդիոս (զինուորականն) դեսպանն⁶ Պոմպէի⁷։ Այնուհետեւ առաւել եւս խառն ընթանան իրք նոցա ընդ իրացն Հայոց, եւ յետ իսկ թագաւորութիւն նոցա մինչեւ ցՅուստինիանոս եւ անդր եւս։ Գոնեայ մասին իւիք Աղուանից⁸ որ Գարգարացիքն կոչէին (զորոց արդ իսկ ճառեցաւ)՝ էր լեզու առանձինն ի Հայոց լեզուէ "կոկորդախօս, աղխազուր, խժական, խեցբեկագոյն", եւ Հայք իսկ եառուն նոցա գիր գրչութեան նորագիւտ⁹։ Այլ թէ զկնի որոյ տակաւ անհետ ի պատմութենէ ազգն եղեւ՝ զայն դժուարին է ցուցանել։ Յամի 1088 առին Սելճուկեանք (ցեղ ինչ Արաբացւոց) զԳանձակ, եւ տակաւ մեկնեցան բազումք յԱղուանից ի կողմանս Կաւկասու, եւ յետ պահելոյ ժամանակս ինչ զիշխանութիւն աէրութեան իւրեանց՝ լինի անհետ տոհմային գոյութիւն նոցա։ Սմանք համարեցան զաղթեալս զնոսա ի կողմանց Կաւկասու յայժմու Աֆղանստան, եւ զԱֆղանսն լինել Աղուանս։

7. Սոցա ի հարաւոյ եւ Հայոց աշխարհին յարեւելից՝ էր դրացի աշխարհն Ատրպատականի կամ հիւսիսային մասն Մարաստանի գլխաւոր քաղաքաւն Գանձակաւ եւ կամ Թաւրիժիւ, յորում յետ լեալ թագաւորութիւն եւ թագաւորեալ Ար-

1 Ստրաբ. ԺԱ։

2 Բուզ. Դպր. Ե. Գլ. ԺԳ։ Խորեն. Աշխարհացոյց. Աղուանք։

3 Ստրաբ. ԺԱ. Աղուանք (Γαργαρεῖς) — տես եւ Խոր. Բ. 28։ Բիւզանդ եւ Խոր. Բ. Գլ. Ը. ի Հայկայ Թուոց յառաջ բերել զնոսա, այլ ինքն իսկ Գ. Գլ. ԾԴ. առանեսցին պղծալեզուս զնէ զնոսա։

4 Խոր. Աշխարհացոյց. Սարմատիա։

5 Դիոն՝ ԼԶ. 87, կոչէ Οροισις.

6 Legatus.

7 Դիոն անդ եւ ԼԷ. 3. 4։

8 Ստրաբ. ԺԱ. տես զԱղուանից թէ յ36 լեզուս բաժանեալ էին։

9 Խոր. Գ. Գլ. ԾԴ։

## 19

Այլ իսկ խնդրանէ հարազատութեան թագաւորացն մերոց Արշակունեաց աթոռ թագաւորութեանն էր առաջնոյ Հայոց աշխարհին ի մասին իւրք Միջագետաց՝ զի ի մնացուստ ղիտեցին թագաւորքն մեր զանցս եւ զշարժմունս արշաւանացն պատերազմաց որոց ասպարէզ էր մանաւանդ երկիրն Ասորւոց եւ Հայաստանի կողմանք Միջագետաց նախ առ Սելեւկեանքն եւ ապա առ Հռոմայեցւովք։ Համօրէն Միջագետք որ ի չորից կողմանց կրէին առեալ յարձակումն, յարեւելից՝ ի Պարթեւաց, յարեւմտից՝ ի Հռոմայեցւոց, ի հիւսիսոյ՝ ի Հայոց եւ ի հարաւոյ՝ յԱրաբացւոց, բաժանէին յերկուս երեւելի մասունս՝ Միգդոնիա (որ յետոյ զոնեայ ըստ հիւսիսային արեւմտեան կողմանն՝ կոչեցաւ Անթեմուսիա)՝ ընդ կողմն արեւելից, եւ Ուռհայաստան՝ ընդ կողմն արեւմտից։ Միգդոնիայ էր քաղաք գլխաւոր Մծբին՝ որ եւ Անտիոքիա Միգդոնացւոց կոչէր (այժմ Նսիպին), եւ քաղաքք առաւելք կամ բերդք՝ Գարիք (կամ Անաստասուպոլիս), Կենիկէ, Սինգարա, Զաւրդա (կամ Մասպիէ կամ Մասիա), (այժմու՝ Տարա, Մէնն, Արնճար, Ջեզիրէ) եւ այլք։ Ի կարգ հարաւային կողմանն որ անապատ իմն էին՝ բնակէին ցեղք ինչ Արաբացւոց, եւ չէին ինչ անուանի քաղաքքն Խառրիք կամ Կառրիք (որ են այժմու աւերակքն Հառանուայ), Զայիթա կամ Զանիթա, Գուրա, Ռասմանդա եւ Սիր։ Իսկ Ուռհայաստանի էին քաղաքք երեւելիք՝ Եդեսիա կամ Ուռհայ որ կոչէր յառաջին եւ Անտիոքիա[1] (այժմ Օրֆա) քաղաք գլխաւոր, Բատնէք (այժմ Սերուճէ), Կարրիք կամ Խառան (որոյ բնակիչք Հռոմայեցիքն կոչեցան), Նիկեփորիոն՝ յետոյ (ի չորրորդ դարէ հետէ) Կալլինիկեան՝ ապա (ի հինգերորդ դարէ հետէ) Լեւոնդուպոլիս (այժմ Ռակկա), Կիրկեսիոն (այժմ Քարքիսիա), Ապամէա (Րում-գալէ), Անթեմուսիա, Ռեսայինա (Ռաս-էլ-այն), Կոստանդիա, Իքնիկէ՝ եւ այլք։

Իսկ զանէ իսկ Մծբին քաղաք գլխաւոր Միգդոնիայ՝ էր քաղաք արքայութեան թագաւորացն Հայոց եւ կամ քաղաք գանձուց թագաւորին, որ թէպէտ եւ առաւ ի Լուկուղղեայ (68) պաշարմամբ, բայց կալաւ զայն Տիգրան յետոյ[2]։ Այլ առ Տիգրանաւ Մեծաւ՝ ի վերայ այսր մասին Միջագետաց զոր ի վաղուց ունէին Հայք՝ յաւելաւ ընդ այլ եւս կողմանց Ասորւոց[3] ապաքէն եւ դրացի նահանգն Ուռհայաստանի։ Ուռհայեցիք ժողովուրդ յոյն եւ ասորի՝ էին լեալ ինքնօրէն ազնկամի՝ յետոյ կալով ի թագաւորացն Ասորւոց յամէ 137 նախ քան զՔր. ի ժամանակի զի կռուէր

1 Պլին. Ե. 21. որպէս եւ ի վերայ դահեկանաց կայ «Անտիոքիա ի վերայ Կալլիրոյէ» (գեղեցկահոսն) վտակի։

2 Դիոն Կաս. ԼԶ. 7։

3 Տես Յուս. Ա. էջ 589։

Տիգրանի ընդ Անտիոքայ Է։ Ցուէր ի նոսա ազնուականացն ճոխութիւն, ազատութիւն քաղաքացւոց, եւ յունական իմն կեանք ընդ արեւելեան իշխանօք որ եւ ցեղապետքն կամ թեւլակալքն կոչէին։ Ոչ միշտ որդի ի հօրէ զիշխանութիւնն առնոյր ցեղապետն, այլ եղբարքն յԵդեսացւոց ընտրէին միշտ ի դրացի ազգաց այր մի՝ կացուցանել ի գլուխ առաջնորդութեանն պաշտպանել նոցա ոչ միայն յարտաքնոց ազգաց այլ եւ ի չարեաց սակաւապետութեան¹ եւ անիշխանութեան, բայց կամէին միանգամայն չէնել թագաւորին այնպէս ինչ հզօր իշխանութեան՝ մինչեւ զամենայն իսկ կարգս մեր ի վայր հարեալ կործանելոյ։ Ի կարգի առա թագաւորաց որոց անուանք են Աբգար կամ Մանոս (կամ Մաան) եւթներորդ էր Աբգար որդի Աբգարու որ նիզակակից եւ դաշնաւոր եկեալ էր ի բանակն Տիգրանայ արքայի Հայոց ի մեծ պատերազմի ընդդէմ Լուկուղղեայ (69 նախ քան զՔր.), բայց ի ձախողել պատերազմին անց ի կողմն Հռոմայեցւոցն եւ եղեւ մտերիմ եւ թիկունք օգնականութեան Պոմպէի (64), բայց եւ այնպէս յետ այնորիկ խաբկանօք մոլորեցոյց նա զԿրասոս յանապատի անդ Միջագետաց (53)²։

2. Այսպէս հաւանութեան թուի՝ իսկ եւ իսկ յետ սորա կալեալ ի թագաւորութիւն Օսրհոյեցւոց Արշամ արքայ Հայոց (յամի 34 նախ քան զՔր.)։ Վասնզի իբրեւ ձերբակալն եղեւ Արտաւազդ՝ զօրն հայազգին եւ նախարարք արքունեաց որք ի Միջագետս էին՝ անդէն ի Մծբին ընտրեալ էին զԱրշամ զհօրեղբօրորդի Արտաւազդայ ի պայազատութիւն թագաւորութեանն Արշակունեաց, քանզի որդիքն Արտաւազդայ փախեալ էին փառաւորի ընդ հօրն յԱղեքսանդրիա։ Այլ մինչ դեռ Արտաքսիսանն այն կամ Արտաշէս որդի անդրանիկ Արտաւազդայ յետ ամաց ինչ եկն կալաւ զգահն աշխարհին Հայոց, ի նմին ժամանակի՝ որպէս հաւանութեան թուի, եւ Արշամ ընտրեցաւ յաւագանւոյ անտի Եդեսացւոց, եւ այնպէս սկսաւ նա իշխել իբրեւ թագաւոր դաշնաւոր եւ հպատակ Հռոմայեցւոց³ ի Միջագետս Օսրհոյեցւոց եւ ի մերձաւոր նահանգս, ունելով սահմանս ի հիւսիսոյ զՄասեաց եւ զԿորդուաց լերինն, յարեւմտից զԵփրատ, յարեւելից զԱղիաբենէ կամ զԱտրպատական։

3. Յետ Արշամայ (✝ 3 նախ քան զՔր.) զոր անուանեալ կոչէին Ասորիքն Մանովա կամ Մաան ըստ անուան թագաւորաց կամ տեղապահացն Օսրհոյեցւոց⁴, թագաւորէր նորին որդի որոյ բուն հայ անուն անծանօթ է եւ միայն յայտնի՝ անուանն զոր կոչեցին նմա Ասորիք ըստ իւրեանց թագաւորացն անուան՝ Աբգար (իբրեւ 3 ամօք յառաջ քան զՔր.)։ Սա փոխէր զաթոռ

1 Oligarchie.
2 Դիոն Կաս.։
3 Խոր. Եղ 206։
4 Խոր. Եղ 205։

Digitized by Google

թղթով դաշանց կարգի պայմանադրութեանն սահմանելոյ ի Պար-թեւս. ընկալաւ զնոսա հազարապետն յաջողութեամբս մեծա-պատուով եւ խոստացաւ բանս խաղաղութեան[1]:

4. Յետ վախճանին Աբգարու (յամի իբրեւ 36) Անանուն կամ Անանէ (Մանուն, Մանով) նորին որդի եկաց թագաւոր յՈւռհայաստանի: Այլ Սանատրուկ որդի Աւդէի քեռն Աբգարու որ կարգեալ էր զնա վերակացութեամբ ի վերին կողմանս տէրու-թեան իւրոյ (ի Հայս)՝ կալեալ անդէն թագ նպաստաւորութեամբ Բագրատունեաց եւ Արծրունեաց որ դայեակքն իսկ լեալ էին նորա. քանզի սնեալ էր նորա Սանատ քոյր Խոսրովայ Բագրա-տունւոյ եւ կին Խոսրենայ Արծրունւոյ. եւ յետ ամաց ինչ խա-ղայր զօրաժողով ի վերայ Անանէի: Բայց չյերկարեաց պաշա-րումն քաղաքին Եդեսացւոց, քանզի Անանէի խորտակեալ բարձն ի կճեայ սեանէն անկելոյ ի վերայ նորա՝ յորժամ վասն շինուածոյ վերնատան ապարանից իւրոց կացեալ տայր հրաման, յղէին վաղվաղակի քաղաքացիքն պատգամ առ Սանատրուկ տալ ի ձեռս նորա զքաղաքն հանդերձ գանձուք թագաւորին. մտեալ ի ներքս թագաւորն զամենայն արու զաւակ տանն Աբգարու մաշեաց ի սուր սուսերի:

Առ սովաւ դէպ լինէր աւարել Մեհրդատայ ուրումն ի Հռո-մայ՝ երթալ առնել օգնականութեամբ Հռոմայեցւոց զաթոռ թա-գաւորութեանն Պարթեւաց փոխանակ Գոտարզայ արքայի նոցա: Բայց Սանատրուկ[2] քանզի բարեկամութեամբ էր ընդ Գոտար-զայ՝ խորամանկութեամբ արգելոյր զՄեհրդատ յերկարագոյնս ի քաղաքին Ուռհայեցւոց պատճառանօք մեծարանաց եւ ընթրեաց, մինչեւ պատրաստեցաւ Գոտարզ ի մարտ պատերազմի եւ յաղ-թեաց իսկ (49)[3]:

Որպէս Աբգար զԵդեսիա եւ Անանէ զապարանս արքունի՝ նոյնպէս եւ Սանատրուկ զՄծբին որ խախտեալ ի շարժմանէ էր՝ նորոգեալ շինէր կրկին պատուարաւ կանգնեալ իւր անդրի ի հրա-պարակին՝ մի դրամ ի ձեռին, նշանակ ապաւինելոյ գանձուց ի ծախսն[4]:

5. Ընդ պատմութեան վերջին երեցունց թագաւորացս խառն է եւ պատմութիւն քրիստոնէութեան: Ըստ ասորական մատենից դիւանին Եդեսիոյ (զոր ընթերցեալ Եւսեբիոս Կեսարացի ի Դորդ՝ եւ Մովսէս Խորենացի ի 5երորդ դարու) յախտ դժնդակ անկեալ էր Աբգար յեւթն ամաց հետէ (ըստ յետին գրոց Ասորւոց՝ ի բո-րոտութիւն): Իբրեւ ապա եկեւ նմա համբաւ բժշկութեանցն Քրիստոսի ի ձեռն Մար Իհաբայ բդեշխի Աղձնեաց եւ Շամշա-գրամայ նահապետի Ապահունեաց որք առաքեալ հրեշտակու-

1 Խոր. Բ. Գլ. ԻԶ. ԼԱ:

2 Զոր հատուածական իմն անուամբ թա-գաւորաց երկրին Աբգար կամ Ակբար Թոփ կոչեալ Տակիտ. ԺԲ. Գլ. 12 եւ 14:

3 Տես ի խոնարհ էջ 106:

4 Խոր. Բ. Գլ. ԼԴ—ԼԵ:



Digitized by Google

Մինչ չեւ առեալ Թղթոցն պատասխանի՝ վախճանի առաջին Թագաւորն քրիստոնեայ, եւ անդէն որդի նորա Սանատ յԵդեսիա բանայր զմեհեանս փակեալս, այլ ապստամբեալ զԱդդէ որ չառյանձն յօրինել խոյր "գագաթան որ ոչ երկիր պագանէ Քրիստոսի,,. եւ Հեղինէ կին Աբգարու քրիստոնեայ եւ առաքինի՝ առաքի յետս ի Խառան քաղաք ծննդեան իւրոյ ոչ անարգութեամբ, ուստի յետոյ գայ յԵրուսաղէմ դարմանել զաղքատս ի սովուն ժամանակի առ Կղաւդեաւ, եւ անդէն թաղի ի հոյակապ շիրմի[1]: Ընդ նոյն ժամանակս նորին Հօրաքեռորդի Սանատրուկ ի Հայս միանգամ ի հեթանոսութիւն. դարձեալ առ նախարարացն ակամէ՝ ի գաւառին Շաւարշան կամ Արտազ զԹադէոս սպանանէր, որպէս եւ զՍանդուխտ զդուստր որ դարձեալ էր ջերմեռանդն ի հաւատս քրիստոնէութեան Թադէի: Իսկ զբանէ իբրեւ ասել եւ առաքեալ հանգեալ է ընդ Թադէոսի՝ եւ Բարթուղիմէոս[2], բայց անստոյգ իմն է պատմութիւնն: Յ[illegible] Հայաստանի արկեալ էր արմատ քրիստոնէութիւն, այլ ի Հայս խառնեալ թառամէր փութանակի[3]:

6. Յետ վախճանին Սանատրկոյ (յամի իբրեւ 63) Երուանդ[4] ի մօրէ արշակունւոյ, այր սրտեայ, [illegible], զոր կացուցեալ էր Սանատրուկ ի փոխանակութիւն Հայոց աշխարհին, քանզի վաղ մտերմութեամբն եւ առատաձեռնութեամբ զամենեսին յինքն էր յանկուցեալ՝ կապեաց թագ յԵդեսիա, բայց ոչ ըզ եղեւ նմա թագադիր ի Բագրատունեաց՝ որք միաբանեալ էին առ որդիսն Սանատրկոյ եւ էին ընդ նոսա ի բանի: Ուշ եղեն եւ կոտորած առ Երուանդ եւ կոտորեաց զարքայորդիսն, այլ միայն Արտաշէս ի ձեռն սնուցողին ապրէր ի Հեր գաւառ ի Հովուականս, ուր հասանէր դայեակ որդւոցն արքայի Սմբատ որդի Բիւրատայ դայեկի հօրն նոցա եւ կացեալ ի հանդրուանս անդեորդացն այլակերպեալ բազում ժամանակս յերեսաց հետախուզացն առաքելոց յԵրուանդայ՝ անկանէր պալապանով առ Դարեհ Թագաւոր Պարթեւաց:

Այլ հանապազ խէթք եւ վարանք էին զԵրուանդաւ, մերթ զԹագաւորն Արեաց ջանայր ածել յաղերս՝ տալ ի ձեռս զմանուկն, եւ մերթ զՍմբատ՝ ասելով թէ ոչ Սանատրկոյ այլ մարի, հովուաց եւ անդեորդաց որդի է Արտաշէս եւ քո ընդ խաբս գնեալ. բայց մերժեալ ի նոցանէ թշնամանօք՝ զզայրացեալ ընդ ամուրն Բայբերդի ի Սպեր հանէր, ուր թողեալ էր Սմբատայ զդստերսն իւր (զՍմբատանոյշ եւ զՍմբատուհի) արամբք քաջօք, զորս սատակեալ Երուանդայ՝ զնոսա պահէր յամուրն Անի ոչ փառաւորութեամբ:

1 Ըստ Յովսեփեայ՝ էր Հեղինէ տիկին արքային Ադիաբենացւոց եւ դարձեալ ի Հրէութիւն:

2 Բուզ. Խոր. եւ այլք [illegible]:

3 Խոր. Բ. Գլ. Լ—ԼԶ:

4 Arbandesն անուն որ է Երուանդ, էր անուն ոչ անծանօթ ի մէջ իշխանաց ազգին Արշակունեաց յԵդեսիա յերկրորդ դարու:

6 *

Իսկ հակառակ զօրութեանն Երեւայ՝ զԹիկրանոս իւր հասոյ տանէր Երուսաղէմ ի Հռոմայեցիս, հրաժարէր նա ի թագաւորութենէն Ուռհայեցւոց, եւ փոխէր զաթոռն ի Հայս ի հին քաղաքն թագաւորանիստ յԱրմաւիր։

Այնուհետեւ ամրութեան եւ զգուշութեան ուշ ունէր թագաւորն, մինչ իսկ եւ հանապազ ահիւ դաւաճանութեան կամ մօտալուտ պատերազմին տագնապեալ։ Հայեցեալ յանկարծարան հնութիւն Արմաւրայ եւ զի հեռացեալ էր գետն ի քաղաքէ անտի՝ շինէր զԵրուանդաշատ (զՔաղաքն Երուանդայ) յեցեալ ի բլուր որձաքարեայ, ամրացեալ առաջի՝ Երասխ գետով, եւ միջնաբերդ ի միջի բարձրապարիսպ՝ դրօք պղնձեօք, ելանելեօք երկաթեօք որոգայթաւորօք՝ երկդիմի, մի՝ վասն ապստամբաց ադրանի ի տուընջեան, եւ միւս՝ վասն դաւաճանաց գիշերոյ։ Փոխէր անդր զամենայն սպաս թագաւորութեանն բաց ի կռոցն. զի վասն նոցա զհիւսիսով 40 ասպարիզաւ հեռի յԵրուանդաշատայ ի վերայ Ախուրեան գետոյ կազմէր քաղաք՝ զԲագարան, զի մի ի խառնել բազմութեան վասն զոհից ի քաղաքն արքունական՝ գերծ իցէ պահպանութիւն քաղաքին. կացուցանէր քրմապետ զեւր եղբայր զԵրուազ։ Մերձէր ընդ արքունական քաղաքին՝ գեղեցկութեամբն եւ դաստակերտն նորա Երուանդակերտ հանդերձ անտառաւ Ծննդոց՝ որմապատ արգելոցօք որսոյ երէոց թագաւորին[1]։

Այսպէս զամենայն անցս պատմութեան ի Միջագետս իմն ամփոփեալ՝ համառօտիւք կարճառօտս վճարէ զամենայն Մովսէս Խորենացի. սակայն այլ իմն պատմութիւնք առաւել եւս մանր մասամբք առաջի կան պատմել վասն բուն Հայոց աշխարհին։

## Գ.

### Բուն Հայաստան (եւ Պարթեւաստան) առ կայսերօք կեսարեան տանն (ըստ օտարազգի պատմագրաց)։

Արտաշէս (Բ.), Տիգրան (Բ.), Տիգրան (Գ.) Կրտսեր, Արիոբարզան, Արտաւազդ (Բ.) Տիգրան (Դ.), Ոնոն, Արշակ (Բ.), Ռադամիզդ, Տրդատ (Ա.) (34 նախ քան զՔր. — մինչեւ 80 յետ Քր.)։

## 20

Ա. Ըստ Յունացն պատմագրաց թէպէտ եւ յետոյ ժամանակաւ՝ չգոն զՀայոց ինչ պատմութեանց յիշատակք վասն ժամանակաց Ասորեստանեաց եւ Բաբելացւոց պետութեանն (ցամի իբրեւ 550), զի եւ ոչ յիշելոյ իսկ արժանի են զրոյցքն թէ յԱրմենիոսէ ումեմնէ յԱրգիական նաւորդացն սերեալ իցեն Հայք[2], եւ ոչ մեծ ինչ է բան Դիոդորի Սիկեղացւոյ զԲարզանեայ ումեմնէ Հայոց արքայէ որ առ Նինոսիւ.

1 Խոր. Բ. Գլ. ԼԶ—ԽԴ։

2 Ստրաբ. ԺԱ։

Digitized by Google

Արտաշիսի Բ. յԱրտաշատ՝ հանելով յԵրուանդաշատէ, ուր տարեալ էր զնոսա Երուանդ խափանեալ յԱրմաւիրայ, յորում նստոյց զնոսա Տիգրան[1]։ 6. Ծանօթ է դարձեալ փառաւորեալ Բուզանդայ՝ քարոզութիւն Թադէի եւ Բարթողիմեայ[2], եւ դարձեալ՝ 7. Թագաւոր ոմն Արշակունի (ըստ Խորենացւոյն՝ Աբգար) շինէ (այս ինքն նորոգէ) Ուռհայ քաղաքի[3], որով ապաքէն միաբանէ ընդ Խորենացւոյն դնել զԹագաւորն Հայոց թագաւորեալ առ ժամանակ մի ի Միջագետս. եւ 8. Սանատրուկ ոմն արքայ շինէ Մծուրս քաղաքի ի բուն Հայս առ Եփրատ գետով[4], առանձնական[5], տապան շիրմի նորա սկսանագործ հաստատչինեան ընդ շէրեւս այլոց հնոյն Նախարարաց ի բերդն Անի[6]։ 9. Նշանաւոր իմն է եւ գործն Հայ թարգմանչին երրորդ անկանոնական գրոցն Մակաբայեցւոց՝ (յառաջնում կէս հինգերորդ դարու) որ զՍենեքերիմ արքայ Ասորեստանեաց՝ կոչէ Սանատրուկ Ասորւոց իբրեւ առ համբաւոյն իմն անուամբ[7]։ 10. Զամին Թագաւորէ եւ զեղբօրն դատերէ զԱնտիգոնայ վկայէ ինքնին Խորենացի յառաջ քան զինքն յայլմէ ուրեքէ ի հայոց պատմեալ[8]։ 11. Վասն Արտաւազդայ Բ. Նշանաւոր են բանք մեծին Եզնկայ զի ասէ[9]. "Վիշապք... ոչ զոք ի Նախարարաց եւ ի դիւցազանց ումեք կապեալ առ իւրեանս կենդանի..., մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց՝ եթէ զմի Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, եւ նա ելանելոց է եւ ունելոց զաշխարհս". որք անմնեւին համեմատ են բանից Խորենացւոյն[10]։ 12. Նա եւ ինքն իսկ Խորենացի վկայէ թէ. "Առ մերով իսկ ժամանակաւ՝ բազումք ի դարբնաց, զհետ երթեալ առասպելին, յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ"։ 13. Ծանօթ է դարձեալ Բուզանդայ՝ Խոսրով արքայ Հայոց Տրդատայ[11], եւ 14. թէ Մամիկոնեանք են եկք ի Ճենաց աշխարհէն յետ դժուարութեան իրիք ի մէջ Թագաւորեալ ցեղին նոցա[12]։ 15. Թող զճիշդ համեմատութիւն բագնաց եւ մեհենից առ Ագաթանգեղեայ եւ Բուզանդայ յիշելոց, զորոց ընդարձակագոյնս պատմեալ Խորենացւոյն՝ միաբանէ ընդ նոսա ըստ անուանցն, թուոցն, եւ տեղեաց աստուածոցն նոցա[13]։ Ապա չէ ինչ ստեղծիչ պատմութեանցս ինքն Խորենացի։

Ոմանք դիւրաւ իմն կարծեցին զերկուցն դժուարութիւն այսպիսի ինչ օրինակաւ լուծանել։ 1. Վասն 100ամեայ պատմութեանն (34 նախ քան զՔր. — 70 յետ Քր.) որ մնացանդ առ Տակիտեայ պատմիչին՝ համարեցան դատնել իրացն ելս, երկուս Թագաւորութիւնս դնելով ըստ երկուցն պատմութեանց եւ բաժանելով նոցա ինքնակամ սահմանս ի Հայոց աշխարհին միումն զհիւսիսայինն (սահման դնելով ի հարաւոյ զԵփրատ գետ) եւ միւսումն զհարաւայինն. զառաջինն տալով Թագաւորացն իշխելոց ընդ Հռոմայեցւոց ծոխութեամբ, եւ զերկրորդն բուն օրինաւոր հարստութեան Թագաւորացն Հայոց Արշակունեաց, որպէս թէ ի Մծբնայ կամ յՈւռհայէ իշխիցեն եւ այնմ մասին Հայոց աշխարհին, մինչեւ հինգերորդ պայազատ այսր Թագաւորութեան թողեալ զկողմանսն Ուռհայեցւոց՝ առեալ իցէ ընդ այնր ի Հռոմայեցւոց եւ զհիւսիսային մասն եւ այնպէս ի միութիւն դարձեալ Թագաւորութիւնն։ 2. Իսկ որ յետ այնորիկ

1 Խոր. Բ. Գլ. ԺԶ. եւ ԽԹ։
2 Բուզ. Դպր. Ա. Գլ. Ա. եւ այլուր տեղեաց։
3 Դպր. Ե. Գլ. ԼԲ։ — Տես Խոր. Բ. Գլ. ԻԷ։
4 Դպր. Դ. Գլ. ԺԴ։
5 Դպր. Ա. Գլ. Ա։
6 Դպր. Դ. Գլ. ԻԴ։
7 Գ. Մակ. Զ. 4։
8 Բ. Գլ. ԼԳ։
9 Ա. էջ 104—5։
10 Բ. Գլ. ԿԱ։
11 Բուզ. Դպր. Ա. Գլ. Գ։
12 Բուզ. Դպր. Ե. Գլ. Դ. եւ ԼԷ. երկիցս։
13 Տես յԱ. Հատ. էջ 163—165։

Digitized by Google

ուրեք ուրեք պատմութիւն առ արտաքնոյն մատենագրաց զՀայոց կարգէ՝ չառնին յանձն զայնր ստուգութիւնն:

Այլ նախ կանոնական իմն եւ անհնարին մասնաւորին է եւ հակառակ իսկ դրից երկրին՝ այն բաժանումն աշխարհին. ոչ ճանաչէ ինչ այնպիսի խորհրդեանցն, եւ ոչ ընթացք պատմութեանն նորա առնուն զայն յանձն, այլ նմին հակառակ՝ (որպէս վաղ նշմարեցաք) յայտնի իսկ դնէ պատմագիրն առհմայսին զկողմանս զայնոսիկ ընդ իշխանութեամբ իւրոյ միոյ միայնոյ թագաւորի արշակունւոյ, զոր նուաճեաց նա ի հարկեր առնա յայնասիկ կամ ի Մծբին եւ կամ յՈւռհայ, եւ պատմէ առ հարկս յամենայն կողմանց Հայոց աշխարհին[1], եւ առաջնորդել համօրէն երկրին ի ձեռն վերակացուի[2], եւ զնախարարսն ոչ միայն Արծրունեաց[3], Գնթունեաց[4], Աղձնեաց եւ Ապահունեաց[5] (բնակելոց առ ստորոտ Մասեաց) եւ զԲագրատունեաց դայեկաց արքայորդւոցն՝ որոց եւ երկիր կարգեալ էր առաջ քան զերասխ գետ[6], դնէ ընդ հրամանաւ նոցին թագաւորաց, այլ եւ յանուանէ յիշէ զՀիւսիսային առաւրսն զՍնի բերդ, զՍպեր եւ Բայբերդ իբրեւ ի ձեռս թագաւորացն այնոցիկ[7]: Դարձեալ՝ եւ Հռոմայեցւոցն պատմագիրք չշատանան նովին անձուկ սահմանօք որ թագաւորացն նոցա յիշելոց ընծային, այնպէս զի ամենայն իսկ բուն Հայաստան հանդերձ ամուր ամուր տեղեօք (յորս յանուանէ յիշէին ի տեղեաց հարաւային կողմանց՝ կողմանք Արածանւոյ, Արտագերք, Տիգրանակերտ) է ասպարէզ պատերազմացն որ առ Տակիտեայ պատմին, եւ Պղինիոս իսկ եւ Ստրաբոն որ մօտ ի նոյն ժամանակս զՀայաստան աշխարհ սահմանեն՝ չգիտեն այնպիսի անձուկ եզերս կամ բաժանումն: Արդ յայտ իմն է թէ այսպիսի բաժանմամբ ոչ զարտաքին պատմագրացն կարեմք զմիտս հանել եւ ոչ զմերոցն:

Իսկ զպատմութեանցն որ յետ այնց ժամանակաց ուստեք ուստեք պատահիցին՝ ուրանալ զստուգութիւնն եւ չընդունել գոնեայ զմեծ ինչ մասն նոցա որք յիշատակարանօքն եւս ունիցին հաստատութիւն՝ չէ արդեւք գործ բանագնացական հանճարոյ:

Նաեւ յիրաւի էր մեզ ոչ զմի պատմագրութիւն միւսումն պատմագրութեան զոհել, եւ ոչ տարաժամ խառնմամբ զերկոսին ի մի ձուլել բանադրօսելով եւ զերկոսին միանգամայն այլայլելով, այլ այլում բախտաւորագոյն ժամանակի եւ արդեագոյն մասց զերան թողուլ, եւ այնպէս յետ կարգելոյ զառհմայսին պատմագրութիւնն[8]՝ մատչել առաւ եւ ի միւսոյ կողմանէ ուրոյն պատմութիւն:

## 21

Բուն Հայոց աշխարհ անկեալ կայր յարեւելից եւ յարեւմտից կուսէ ի մէջ երկոցունց պետութեանց ընդ միմեանս ի վէճ եկելոց՝ իբրեւ թումբ եւ ամբարտակ ի մէջ նոցա, եւ ինքն իսկ Հայաստան որպէս դիրք երկրին նոյնպէս եւ խորհրդով մարդկանն մերթ ի սոցա եւ մերթ ի նոցա կողմն կործեալ ծփէր[9]: Որպէս եւ բնակու-

1 Բ. Գլ. ԻԶ. եւ ԼԷ:
2 Բ. Գլ. ԻԳ. ի վերջ կայ:
3 Բ. Գլ. ԺԶ:
4 Բ. Գլ. ԻԴ:
5 Բ. Գլ. Լ:
6 Բ. Գլ. ԼԶ:
7 Բ. Գլ. ԼԷ. եւ ԼԸ:

8 Վերագոյն էջ 44—87:

9 Նշանաւոր յայժ են բանք Տակիտեայ զՀայոց. Բ. Գլ. ԾԶ. «Երկահակ իմն է ազգն այն ի վաղուց՝ ըստ մարդկանն խորհրդոց եւ ըստ երկրին դրից»: — Ambigua gens ea antiquitus, hominum ingeniis et situ terrarum.

Digitized by Google

Բայց դժուարութիւնք որ յընտրութենէ առաջի ծնանին, առաւելագոյնք ինքնագլուխք, թագաւորք ընդ իշխանութեամբ թագաւորին մեծի՝ որպէս ի Մարաստանի, ի Պարսկաստանի, յԵղիմայիս, ի Քարակէ՝ որ ակամայ իմն հնազանդէին, որպէս եւ յունական-մակեդոնական գաղթականաց քաղաքք որոց մեծամեծ ազատութիւնք էին եւ առանձին օրինակ առաջնորդութեան եւ միանգամ իմն յԱսորիս եւ ի Հայոց կոյս, բազմութիւն ազգաց եւ ցեղից տարբերելոց ի միմեանց բարուք, լեզուաւ եւ պաշտամամբք, հեռաւորութիւն արքունեաց թագաւորին (ի Ռագէս, յԵկբատանս եւ ի Տիզբոն՝ ըստ այլ եւ այլ ժամանակաց տարւոյ), այս ամենայն շփոթեալ խառնակէր զիրս առաջնորդութեան եւ տկարացուցանէր տակաւ, եւ տայր մուտ Հռոմայեցւոց ձեռնարկել ի վերայ նոցա, եւ յետոյ Պարսից՝ յափշտակել ի նոցանէ զպետութեանն գլխաւորութիւն:

Կարգ Պարթեւացն թագաւորաց զորոց մի ըստ միոջէ կցեմք պատմելոց՝ է այսպիսի ինչ ըստ յոյն եւ հռոմայեցի մատենագրաց: Յետ Արշակայ ԺԵ. այս ինքն՝ Հրահատայ կամ Փրահատայ Դ. (յամէ 37 — 1, ըստ այլոց 4 նախ քան զՔր.) պայազատէին կարգաւ Արշակ ԺԶ. կամ Հրահատակ (1 — 2, ըստ այլոց 4 յետ Քր.), Արշակ ԺԷ. Որոդէս Բ. (2 — 4), Արշակ ԺԸ. Ոնոն Ա. (4 — 14), Արշակ ԺԹ. Արտաւան Գ. (14 — ՚ Արշակ Ի. Վարդան եւ Արշակ ԻԱ. Գոտարզ զմիմեամբք եղանեն, բայց Վարդան դեռ եւս թագաւորէ յամի Քր. 41, ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց՝ 354), Արշակ ԻԱ. Գոտարզ (թագաւորէ յամի 47 յետ Քր.) Արշակ ԻԲ. Ոնոն Բ. (50 — 51), Արշակ ԻԳ. Վաղարշակէս կամ Վաղարշ Ա. (51 — 91), Արշակ ԻԴ. Բակուր (91 — 107), Արշակ ԻԵ. Խոսրով (107 — 121), Արշակ ԻԶ. Վաղարշակէս կամ Վաղարշ Բ. (121 — 149, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 433 — 460), Արշակ ԻԷ. Վաղարշակէս կամ Վաղարշ Գ. (149—191, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 461 — 502), Արշակ ԻԸ. Վաղարշակէս կամ Վաղարշ Դ. (191 — 208), Արշակ ԻԹ. Վաղարշակէս կամ Վաղարշ Ե. (208 — 220, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 520 — 530), Արշակ Լ. Արտաւան Դ. (որպէս հաւանութեան թուի՝ միահեծան յամէ 220 — 226): [Զվերջին պայազատս Արշակունեաց ոմանք դնեն այսպէս Արշակ ԻԸ. Արտաւան (193 — 199), Արշակ ԻԹ. Բակուր Բ. (199 — 209), Արշակ Լ. Վաղարշ Դ. (209 — 216), Արշակ ԼԱ. Արտաւան Դ. (216 — 226), այլ առաջին կարգն եւ ժամանակագրութիւն առաւել ըստ դահեկանաց է[1]]:

1 Դահեկանք Պարթեւացն թագաւորաց անուանեն զամենայն իւր թագաւորսն հասարակաց իմն անուամբ Արշակ, յանուն Արշակայ առաջնոյ, բայց ուրեք ուրեք զմասնաւոր իւր անուանն թագաւորացն յաւելուն հանդերձ պատմագրացն՝ որպէս զՈնոնին՝ Βασιλευς Ονωνης νικησας Αρταβανον, զԳոտարզեայն՝ Γωταρζης βασιλευς. Չէ անծանօթ եւ յետին արաբացի պատմագրաց որ զկարգ թագաւորացն Պարթեւաց խառն ի խուռն եւ այլ եւ այլ անուամբք դնեն՝ Գոտարզն անուն, զոր Բարինն բէն Ազամ՝ կոչէ Գուտարիզ կամ Գոտարիզ: ԶԱրտաւանայ՝ Αρσακου του καλουμενου Αρταβανου. ԶԲակուրայն Αρσακου Πακορου, զՎաղարշուն Բ. βασιλεως βασιλεων Ολαγα(σου) կամ Ολασου կամ Βολαγασου — Իսկ Մովսէս Խորենացի ի համարին իւր պայազատութեան Պարթեւացն Արշակունեաց չէ միաբան ընդ Յունացն եւ Հռոմայ պատմագրաց (Յովսեպոսի, Յուստինեայ, Տակիտեայ եւ այլոց բազմաց ժամանակագրաց), զի փոխանակ 30 պայազատաց 14 եւեթ դնէ կամ որպէս Ռինհալեր գերմանացի առէ՝ ամփոփէ, այլակերպ իմն ժամանակագրութեամբ եւ անուամբք, միայն զերկուս կամ զերիս զվերջին թագաւորսն նովին միաբան անուամբ ընդ Յունաց եւ Հռոմայեցւոց պատմագրացն անուանէ, այս ինքն՝ զԱրտաւան, զՎաղարշ, զՎաղէգեսոս (Խոր. Բ. ԿԴ. որպէս նախ քան զնա Աղաթ. յիշէ զԱրտաւան): Եթէ սկսանիցիմք համարել ի վեր կոյս յամէ մահուան վերջնոյ թագաւորին Պարթեւաց

Digitized by Google

## 22

Յորժամ Պոմպէոսն յետ Լուկուղղայ՝ երկրորդ անգամ հարկանէր զՄիհրդատ Զ. զՄեծն զարքայ Պոնտացւոց եւ յելանել նորա փախստեայ նախ ընդ Եփրատ եւ ապա ընդ Կաւկաս անցեր ի Վերսոնեսոս Տաւրիացւոց (65)՝ մտանէր նա զհետ նորա մինչեւ յԱրտաշատ, առնոյր ի մտի զօրավարն թէ չէ ինչ դիւրին պահել նուաճեալ զաշխարհ Հայոց Մեծաց եւ ոչ օգուտ ինչ այն Հռոմայեցւոց. նմին իրի իսկ թող նա այնպէս իբրեւ առանձինն թագաւորութիւն ի ձեռս Տիգրանայ հարկացն խոստմամբ։ Եւ ԶՓոքր Հայք որպէս եւ Կիլիկիա, Փիւնիկաստան, Ասորիք եւ մասն մի Միջագետաց հանեալ ի վերագոյն իշխանութենէ նորա։ Այսպէս եւ Արտաւազդ նորին որդի եւ պայազատ (կամ աթոռակից հօրն յառաջ քան զամն 50[1]) էր խաղաղութեամբ ընդ Հռոմայեցւոց, մինչեւ յետուստ առ Անտոնեաւ զարթեաւ գրգռութիւնն։

Զանզի յառաջնում ամի արքայութեան Հրահատայ Դ. արքայի Պարթեւաց (37—1 նախ քան զՔր.) գայր հասանէր Անտոնիոս (երկրորդ անգամ) ի կողմանց Խաղղէացւոց յարեւելս՝ անձամբ վարել յառաջ զպատերազմն զոր մղէին ցայն վայր զօրավարք նորա Վենտիդիոս եւ Սոսիոս, մանաւանդ զմտաւ ածեալ այնու դիւրագոյն զերծն վճարել, զի զՄոնէզ զոմն նախարար ի Պարթեւաց հատուած առ իւր ունէր, եւ ինքն Հրահատ զեղբարսն կոտորեալ էր ի սուր սուսերի (37 նախ քան զՔր.)։ Խաղայր այնուհետեւ Անտոնիոս բազմամբոխ լեգէոնօք ընդ Հայաստան իբրեւ ընդ երկիր բարեկամաց ժողովրդեանն Հռոմայեցւոց անկանել յաշխարհն Պարթեւաց, եւ յարգել արկեալ պաշարեր զՊրասպ կամ Փրասպ քաղաք Ատրպատականի, եւ անտուստ զօրավար նորա Ոպպիոս Ստատիանոս դիմէր միջամուխ ի Մարաստան (36)[2]։ Յետ սակաւ ինչ միոյ իբրեւ ներեալ տագնապէր Անտոնիոս առ վայրացն անտեղեկութեան՝ դուժկան հասանէր թէ եւ Ստատիանոս ի Մարաց անտի եւ ի Պարթեւաց վտանգեցաւ. վհատեցաւ զօրն հռոմայեցի, զանգիտել սկսաւ Անտոնիոս դուցէ Կրասսեայ անցք եւ ընդ նա անցանիցեն, տագնապաւ եւ մեծաւ զօրացն ծախմամբ դառնայր ընդ Հայս առանց ձմերելոյ եւ հազիւ հասանէր սակաւաւորօք յերկիր սահմանացն Հռոմայեցւոց, եւ

որ է 226 յետ Քր. զամսն զոր առայ խաղեսցի փոքր փոքր ի Թագաւորաց առաքի զորինքնամանեցւոց, եղանէ այսպիսի ինչ կարգ եւ ժամանակ պայազատութեան։ Արշակ Ա. Քաջ (239—198 նախ քան զՔր.), Արտաւազդ Ա. (198—172). Արշակ Բ. Մեծ (172—119). Արշակեան (119—89). Արշանակ (89—58). Արշէզ (58—38). Արշաւիր (38—8 յետ. Քր.)։ Թէ որպէս Ցուզանց եւ Հռոմայեց պատմագրաց ցայս անդի ժամանակագրեն՝ տես Հայ. Ա. էջ 501։

Ըստ Արշակունի (որ համեմատի Հրահատայ Դ.) զնէ խորենացի մի ըստ մերձէ այսպէս՝ Արտաշէզ Բ. (8—42 յետ Քր.), Դարեհ (42—72), Արշակ Գ. (72—91), Արտաշէս Գ. (91—111), Պերոզ որ եւ Վաղեգեսոս (111—145), Վաղարշ (145—195), Արտաւան (195—226)։

1 Քանզի Պերկերսն՝ որ ի նմին ամի պարետար ի Կիլիկիա էր՝ յիշատակէ զԱրտաւազդ արքայ Հայոց։

2 Ցանէ տասի է զանհեղանն Անտոնեայ յորդ երկրորդում կողմանս կայ՝ խոյր Հայոց կամ Մարաց Թագաւորաց եւ ազգին եւ ներ։

զամենայն վնաս գործոյն զայն յԱրտաւազդ արքայ Հայոց կրթէր՝ թէ ոչ ի դէպ ժամուն հաս ի թիկունս հայրագունդ զօրօք, որպէս հրամանն տուեալ էր[1]:

Զառաջինն հնարս հնարէր Անտոնիոս հրապուրել հանել զնա միանգամ յերկրէ անտի իւրմէ, այպս գեղեցիկ գեղեցիկ խոստմամբ առաջի արկանէր՝ զդուստր մի զիւր ի Կղէոպատրայ առ հարսնութիւն արքայորդւոյն Հայոց կամ զդուստր նորա առնուլ կնութեան որդւոյ իւրում Աղեքսանդրի ծնելոյ նոյնպէս ի Կղէոպատրայ: Յետուստ մտեալ բանութեամբ յերկիր սահմանացն Հայոց՝ մերթ հրեշտակութեամբ մերթ բարեկամաց թագաւորացն թելադրութեամբ եւ մերթ ահիւ հասանելոյն զարքայն Հայոց գալ ի բանակն: Ընդ կալաւ զնա ձերբակալ, արկ ի շղթայս ոսկիս[2] կամ յարծաթիս[3] եւ յետ որոգով եւ սաստիւ նուաճելոյ զաշխարհն՝ առ տարաւ զթագաւորն եւ զամենայն տուն նորա ի քաղաքն Աղեքսանդրացւոց՝ պարգեւ Կղէոպատրայ: Պտղոմէոս Փիղադեղփոս որդի Կղէոպատրայ առ զթագաւորութիւն Փիւնիկաստանի, Կիլիկիայ եւ Ասորւոց, եւ միւս եւս որդի նորա Կեսարիոն ծնեալ ի Յուլեայ Կեսարեայ կարգեցաւ բարձակից մօրն՝ դշխոյի Եգիպտացւոց, Լիբիացւոց, Կիպրացւոց եւ Խոր Ասորւոց. իսկ զՀայաստան եւ Անտոնիոս սահման թագաւորութեան որդւոյ իւրում ի Կղէոպատրայ՝ մանկանն Աղեքսանդրի, որում եւ սահմանեցաւ Յովտապէ դուստր թագաւորին Մարաց՝ կնութեան, քանզի հաշտեցաւ նա ընդ սմա դաշամբք նիզակակցութեան ընդդէմ Ոկտաւիանեայ եւ նմա արար յանձն զպահպանութիւն Հայոց աշխարհին (34)[4]:

Այլ յառաջագոյն իսկ մինչ չեւ տուեալ ձեռս բերդակալ զօրուն յԱնտոնիոս՝ ընտրեցին նոքա ի թագաւորութիւն զորդին Արտաւազդայ զանդրանիկ զԱրտաքսիաս կամ զԱրտաշէս որ պրծեալ ապրեալ էր ի ձեռաց Հռոմայեցւոց (34): Թէպէտ եւ տեղի ետ Արտաքսիաս Անտոնեայ եւ ել յաշխարհէն ի բաց, այլ երթեալ անկեալ առ Հրահատ Դ. միաբան ընդ նմա՝ տայր մարտ պատերազմի ընդ արքային Մարաց: Զառաջինն սա զօրանայր ի վերայ նորա (33) եւ ապա հարկանէր խորտակէր զնա Արտաքսիաս, եւ առնոյր զթագաւորութիւն հարցն իւրոց ի բուռն (32), քանզի չհասին եւս արքային Մարաց թիկունք օգնականութեան յԱնտոնեայ՝ որ զպատերազմաւ ուրեմն էր ընդ Ոկտաւիանեայ (Օգոստեայ)[5]: Իսկ եւ յետ այնորիկ Անտոնիոս ի միջոյ

1 Համառօտ. Լիւեայ Դպր. ճԼ:

2 Վելլ. Պատերկ. Բ. 82:

3 Դիոն. Կաս. ԽԹ. ի վերջ գլխոյ:

4 Կայ զանհեկան Անտոնեայ արծաթի եւ ոսկի դրամներու ցուցիչ նշանաւ (յամի 34). ի միում կողմանն գրոշմեալ՝ Անտոնիոս. Հայաստան ի գերութեան մաքնեալ (Armenia devicta). եւ պատկեր՝ զլուխ Անտոնեայ եւ տաբերթ խոյր Հայոց թագաւորին. եւ ի միւսում կողմանն գլուխ Կղէոպատրայ եւ գիր այսպիսի՝ Կղէոպատրայ թագուհւոյ թագաւորաց, որդւոց թագաւորաց:

5 Թաց. Բ. Գլ. Գ. 3, 4: Յովսեփ. Հնախ. ԺԵ. 5: Պլուտարք. Անտ.:

բարձաւ պարտեալ՝ Օկտաւիան զօրգլուխն Արտաւազդայ, զեղբայրն Արտաշիսի՝ յԱղեքսանդրիայ ի Հռոմ փոխէր, եւ ի գալ իւրում յարեւելս (30—29) չունէր ինչ պատճառս գռալոյ ընդ Արտաշիսի, քանզի սա ոչ միայն օգնական չէր Անտոնեայ՝ թշնամւոյ նորա, այլ եւ թշնամի եւս։ Բայց քանզի Արտաշիսիս առ հասարակ իսկ առ Հռոմայեցիսն ունէր ոխութիւն սաստիկ վասն հօրն տարապարտուց մահուան[1], եւ յետ սակաւ ինչ միոյ յերկուս իմն բաժանեալ Հայոց՝ կէսք Հռոմայեցւոյ եւ կէսք Պարթեւաց կողմանն ածէին թէկն, իբրեւ զօրացան առաջինքն՝ նենգ գործեալ սպանին զարքայ (21)[2]։ Իսկ եւ իսկ առէն առաքեցին նախարարքն ի Հռոմ առ կայսր խնդրել թագաւոր ի պատանեկաց անտի Արտաւազդայ, զեղբայր Արտաշիսի՝ Տիգրան անուն։ Հաւանէր Օգոստոս եւ գործ ի ձեռն տայր այնուհետեւ Տիբերեայ իւրում որդեգրի, եւ սա անդէն եկեալ մտեալ միջամուխ ի Հայաստան հռոմէական լեգէոնօք՝ նուաճէր զկողմանսն ընդ ձեռամբ, եւ Տիգրանայ՝ զոր ընդ իւրն ածեալ էր, կապէր թագ յանդիման նախարարացն ի բեմի (20, յառաջ քան զՅունիոս ամիս)[3]։

1 Տակ. Բ. Գլ. Գ. 4։

2 Տակ. անդ։ Դիոն ԾԴ։

3 Տակ. անդ։ Սուետոն յՕկտաւ. ԻԱ. ի Տիբեր. Թ։ Վելլ. Բ. 94. եւ Բ. 122։ Դիոն անդ։ Փլոր. Գ. 12։ Մեքսա. Ռուֆ. ԺԹ։ Եւտրոպ. Է. 5։ Ովրատ. Թուղթք, Գիրք Ա. Թղթ 12. տող 26.

Զի մի արդեօք այնմ իցես
Թէ Հռոմայեցւոց իրք որպէս.
Կանտաբրացին, լուր դու զայս,
ՑԱգրիպպայ ձեռն է յորսայս,
Իսկ Հայն՝ Կղաւդեայ Ներոնեայ
Գոռ զօրութեամբն անկեալ կայ։

Զնոյն ակնարկէ եւ Վիրգիլիոս (Ենէակ. Ը. ի վերջ կոյս) յորժամ յօրինէ զնկարագիր վահանին զոր եա, ասէ, Ենեայ՝ Աստղիկ ի գործնոցէն Հեփեստեայ, յորոյ վերայ նկարեալ կային գործք եւ արութիւնք որդւոց եւ թոռանց Ենեայ. ընդ այլսն նուաճեալս մի ըստ միոջէ վիպելն նկարեալ անդ եւ Դահք անհնազանդք եւ Երասխ զայրագին եւ կամուրջ կամրջաց (pontem indignatus Araxes), այս ինքն՝ Հայք անձնահանոյքք ծառայութեան Հռոմայեցւոց։

Դիպող յոյժ ի համառօտութիւն պատմութեանս եւ անդէն իմն յիշատակարանք վասն անցից Հայոց աշխարհին են դահեկանքն գեղեցիկք որ ի մուզարանս Եւրոպայ կան, ոսկի եւ արծաթի, ամենեքին դրոշմեալ ի սմին ամի (20 նախ քան զՔր.)։ Ի միում կողմանն նոցա է միշտ գլուխ Օգոստեայ կամ միոյ ուրուք ի դից (Փերոնիայ, Բաքքոսի), իսկ ի միւսում կողմանն կայ արձանագիր, երբեմն՝ Հայաստան առեալ (Armenia capta) եւ պատկեր՝ խոյր Հայոց թագաւորին եւ առ նմին՝ մի կամ երկու կապարճք գեղեցիկք եւ աղեղն. երբեմն նոյնպէս՝ Հայաստան առեալ, եւ պատկեր ինչ այլազգի՝ զի Նիկէն յաղթութեան թեւաւոր երանս ածեալ ի վերայ ցլու սանձէ զնա, որով ակնարկի նուաճումն Հայոց աշխարհին յայնկոյս Տաւրոսի (որ թարգմանի՝ ցուլ) եւ ասանձին Տարաւն նահանգի Հայոց՝ զոր կոչէին Հռոմայեցիք Taurantium կամ Taurauntium; մանաւանդ զի ըստ Ղիբանիոսի իսկ վկայելոյ՝ նշանակ Տաւրոս լերին էր ցուլ ինչ պղնձի յարեւելս. երբեմն նոյնպէս՝ Հայաստան առեալ եւ պատկեր՝ Սփինքս մի կծկեալ նստեալ, եւ պատճառն իսկ Պղինիոս, Սուետոն եւ Դիոն՝ իսկզբանն վարել Օգոստեայ սփինքսագիր մատանեաւ ի կնիքս իւր. եւ երբեմն գործեալ՝ այլազգի ինչ արձանագիր՝ Հայաստան ստացեալ առեալ (Armenia recepta), Մեծանշխոյն Կեսարեայ որդւոյ, եւ պատկեր՝ կին մի (նշանակ Հայաստան աշխարհի) ի ծնրադրութ. Առաջինն եւ չորրորդն ի դահեկանաց սոսկ արծաթիք են, իսկ երկրորդն եւ երրորդ՝ ոսկիք։ Թող զերկուսին արծաթի դահեկանսն զոր արդեն երեքին վերահասցուք կայսերական դրամահատութեան համեալ են ի պատիւ Օգոստեայ. ի միումն ի նոցանէ երեւեցուցանի Հայաստան՝ իբրեւ կին անկեալ ի ծունր, խոյր Հայոց թագաւորին ի գլուխ իւր, եւ արձանագիր շուրջանակի՝ Մեծանշխոյն Կեսարեայ որդւոյ, Հայաստան առեալ. եւ յայլումն երկոտին նոյնպէս Հայաստան ի կերպարանս կնոջ խոնարհելոյ ի ծունր՝ կարկառեալ առաջի զձեռան իբրեւ թէ զամենայն աւանդիցէ ի ձեռս յաղթողին։ Զայսն իմն եւ բանիւք նկարէ Ովրատիոս ի Գոնաե (ի Տրամականն ԺԴ. 227) յասելն "Ա՛րդ խնդրէ Հայն խաղաղութիւն, արդ կարկառեալ մատուցանէ զաղեղն"։ Կայ միւս եւս դահեկան արծաթի ի միում մուզարանի դշխոնագիւտ յոյժ ի սմին ամի (20 նախ քան զՔր.) քանզի է նշանակեալ ի նմա իններորդ նուագն Զօրավարութեան Օգոստեայ, այս ինքն՝ imp. VIIII. եւ ոչ

Digitized by Google

Այլ չյերկարէր Տիգրան ի թագաւորութեանն եւ ոչ որդի նորա Տիգրան Կրսեր ընդ քեռն իւրում Երատոյի՝ զորս միաբանեալ էր հայրն ընդ միմեանս ի բարձակցութիւն թագաւորութեան եւ ի կցորդութիւն ամուսնութեան ըստ չարաչար սովորութեան ժամանակացն[1]։ Բայց որպէս հաւանութեան թուի՝ քանզի հակէին իմն նոքա ի կողմն Պարթեւաց, առաքէր Օգոստոս միւսանգամ զՏիբեր (յամի 6) յարեւելս, սակայն նա մեկնեցաւ ի Հռոդոս զայրացեալ ընդ հօրուն՝ վասն նախամեծար իմն զԹոռունսն (զԳայիոս Կեսար եւ զԼուկիոս Կեսար) քան զինքն առնելոյ[2], եւ առաքէր զինուորական դեսպանս որ հրամանաւ կայսեր անցին կացուցին յաթոռ թագաւորութեան Հայոց զԱրտաւազդ զոմն անուն[3]։ Այլ Տիգրանեայ գտեալ օգնականութիւն ի Պարթեւաց անտի՝ եկն կալաւ միւսանգամ զաշխարհն, մերժեալ անտի զԱրտաւազդ մեծաւ կոտորածիւ իսկ Հռոմայեցւոցն (2 նախ քան զՔր.)։ Յետուստ հարկ համարէր Օգոստոս առնուլ առաքել զիւր միւս եւս որդեգիր զԳայիոս (զորդի Ագրիպպայ) զօրօք՝ նուաճել զերկիրն սարտուցեալ։ Այն ինչ հասեալ Գայեայ յԱսորիս՝ ձեռնթափ լինէր Հրահատակ արքայ Արեաց (1 յետ Քր.) եւ Տիգրան անկեալ էր վաղ ի ճակատու ուրեք ընդ ազգաց դրացեաց զոր յարուցեալ էին ի վերայ նորա Հռոմայեցիքն եւ Երատոյ հրաժարեալ առ ժամն։ Այսպէս եկեալ մտեալ Գայիոս յերկիր սահմանացն Հայոց զառաջինն յաջողութեամբ հանէր զիրսն ի գլուխ, եւ ըստ Հայոց իսկ խնդրելոյ՝ զԱրիոբարզան զոմն զորդի Արտաւազդայ արքայի Մարաց մատուցանէր ի թագաւորութիւն, որ էր այր շքեղ տեսլեամբ եւ քաջասիրտ (1 յետ Քր.)։ Այլ ի յաջորդ ամին (2 յետ Քր.) գրգռեցաւ մասն մի Հայոց ի մարտ պատերազմի, եւ ինքն Գայիոս առ ամրոցաւն Արտագերից յորժամ մօտագոյնս մատուցեալ խօսէր ընդ ամրականսն՝ առ վէրս յԱդդուայ կամ յԱդդոնէ ումեմնէ սպաւ։ Պնդեցին այնուհետեւ Հռոմայեցիք զպաշարումնն եւ եղեն ընդ երկար

VIII. որպէս ընթերցեալ իմն է Միոնէ ի վերայ օրինակի երկց նորին դահեկանի դըամելոյ ի մատենադարանին Կոռլենի ուրուք ի Փողկա). ի միում կողմանն է գլուխ Աւգոստեայ, եւ ի միւսումն՝ զինուոր հայ կանգուն՝ նիզակ յաջումն եւ աղեղն ի ձախում՝ յեցուցեալ ի գետին, հայոցի հանդերձիւ (կամ զգահիւք) եւ գլխանոցաւ, եւ գիր շուրջանակի՝ Caesar div. f., Armenia capta.

1 Տակ. Բ. Գլ. Գ. 5։ Դիոն. Ծե. 11։ Եւ կայ ոսկին երաշխաւոր դահեկան պղնձի ունելով ի միում կողմանն զպատկեր այր Տիգրանայ թագ. Հայոց ի գլուխ եւ գիր շուրջանակի Βασιλευς βασιλεων Τιγρανης (արքայ արքայից Տիգրանէս), եւ ի միւսումն կողման պատկեր Երատոյայ եւ գիր շուրջանակի՝ Ερατω βασιλεως Τιγρανου αδελφη (Երատոյ Տիգրանայ արքայի քոյր)։ Կայ միւս եւս դահեկան նոյնպիսի եւ գիր շուրջանակի Βασιλευς μεγας νεος Τιγρανης (Թագաւոր մեծ Կրսեր Տիգրանէս)։

2 Տես վերագոյն էջ 47։

3 Յայտ իսկ հաւանութեան է թէ ոչ Արտաւազդայ Առաջնոյ՝ այլ այսմ իսկ Արտաւազդայ անկ է դահեկանն նկարագրեալ վերագոյն էջ 86, որպէս ցուցանէ նմանութիւն դրոշմին ընդ դրոշմի դահեկանին Տիգրանայ Կրսերոյ առաջին աթոռակալի նորա. քանզի ի դէպ է թէ ի միոջէ արուեստագիտէ իցեն երկոքին, մանաւանդ զի եւ անունն Արտաւազդայ է գրեալ առաւել ըստ հռոմայեցի հնչման Αρταυασδου եւ ոչ Αρταβαζου, որպէս գրէին արդեւք յայն արուեստագէտք դրամահատութեան, եթէ էր Արտաւազդն Ա. յաջորդ Տիգրանայ մեծի՝ որոյ դահեկանացն եւ դրոշմն եւս այլ իմն նկարագիր ունի։

Digitized by Google

զինակալ ամրականք· բայց յետուստ եսուն ձեռս, եւ առ Գայիոս անուն Զօրավար եւ այնպէս խաղաղէր երկիրն։ Այլ ի դառնալ իւրում ի Հռոմ՝ ի Լիկիա մեռանէր Գայիոս ի վիրացն զոր ի Հայս առ (4) [1]։

Արդ այ Արիոբարզան չյերկարեալ ի կեանս՝ առնոյր զթագաւորութիւնն յԱւգոստեայ, եւ ծերակուտին հրամանաւ՝ նորին որդի Արտաւազդ, այլ չհամեցան ընդ նա Հայք, թերեւս զի չէր արշակունի։ Նմին իրի առաքեաց յետ նորա Աւգոստոս յաթոռն զՏիգրան զոմն ի տոհմէ թագաւորացն Հայոց, (որպէս հաւանութեան թուի ի թոռանց Արտաւազդայ Ա.) [2]։

Յետ սորա առ մեւսանգամ դշխոյն Էրատոյ զթագաւորութիւնն ի բուռն, բայց ձանձրացեալ ազգքն ի նմանէ՝ զի անընդել իսկ ընդ կանացի առաջնորդութիւնն էր, եւ զնա մերժեցին ի թագաւորութենէն։ Այսպէս մնայր դատարկ աթոռն մինչեւ յեղափոխ փոփոխմունք դրացի աշխարհին Պարթեւաց ածին նոցա զոմն ի թագաւորութիւն։

1 Վելլ. Պատերկուլ. Բ. Գլ. ՃԲ. Ց. 4. որ ընդ Գայեայ իսկ եկն զինուորութեամբ ի Հայս։ Տակ. անդ։ Դիոն՝ անդ։

2 Տակ. անդ։ Դիոն Կաս. ԾԵ. 11 եւ մանաւանդ Հասակասոր իւր նորին գրոց նորոգ գտեալ։ Յոյցին երախաւոր եւ գրեթէ համբրէն իսկ պատմութեանցս գեղեցիկ վէպս կայ անուանեալ Յիշատակարանն Անկիւրական, այս ինքն արձանագիր առաձարքն կանգնեցելոյ յԱնկիւրա Գաղատացւոց ի պատիւ Աւգոստեայ (Σεβαστεία, Augustea), յորում կայ քանդակեալ մասն ինչ կտակին Աւգոստեայ զոր էր նորա յանձին արարեալ Վեստեան կուսանաց զի տացեն ծերակուտին (Տակիտ. Ա. Գլ. Ը.)։ Այս մասն կտակին էր գրոշմեալ ի Հռոմ յերկուս տախտակս պղնձիս (ըստ Սուետ.), եւ անտի անց օրինակն յԱնկիւրա։ Ի սմին պատմէ Աւգոստոս համառօտ զերեւելի անցս կենացն եւ գործոց։ Առանձինն իմն զիրացն որ ի Հայս գործեցան՝ ասէ. (Տախտակ Ե.)

. . . [Arme]niam. [ma]iorem interfecto. rege. ejus. Artax[ia. cu]m. posse[m. provinciam. facere.] ma[lui majorum nostrorum. exemplo. reg[nu]m. id. [ad Tigranem. Artavasdis. filium. nepotem. Tigranis. regis. per. [Tib.] N[e]ro[nem qui tu]m. e[rat. privignus meus. transferre. ea]n[de]m. gentem. postea. i[nsur]gentem. et. rebellantem. d[omitam.]per Caium. filium, meum. regi. Ari[obarz]a[ni. regis. Medorum. Artavasdis. filio. regendam. tradidi. et. post. e[ius.] m[ort]em. filio. ejus. Artavasdi, quo. interfecto. Tigrane[m] qui. erat. ex. regio. genere. Armeniorum. oriundus. in. id. reg[num misi]. . .

Լրումն ընձեռեալ տեղեկաց հաւաստեացն արձանագրիս լինի ի հատուածոյն յունական թարգմանութեան նորին արձանագրի զոր գտեալ է Համիլտոն անգղիացւոյ անդէն յԱնկիւրա՝ նոյնպէս փորեալ ի կնիք վերայ պատկէս.

Ἀρμενίαν τὴν μείζονα ἀναιρεθέντος τοῦ βασιλέως [Ἀρτ..], δυνάμενος ἐπαρχ[ε]ίαν ποιῆσαι μᾶλλον ἐβουλήθην κατὰ τὰ πάτ[ρ]ια ἐμῶν ἔθη βασιλείαν Τιγράνῃ Ἀρτ[αου]άσδου υἱῷ, υἱωνῷ δὲ Τιγράνου βασιλέως δ[οῦναι] διὰ Τιβερίου [Ν]έρωνος ὃς τότ' ἐμοῦ πρόγονος ἦν. καὶ τὸ αὐτὸ [ἔθ]νος ἀφιστάμενον καὶ ἀναπολεμοῦν δαμασθὲν ὑπὸ Γαΐου τοῦ υἱοῦ μου βασιλεῖ Ἀριοβαρζάνει βασιλέως Μήδων Ἀρταβάζου υἱῷ, παρέδωκα καὶ μετὰ τὸν ἐκείνου θάνατον τῷ υἱῷ αὐτοῦ Ἀρταουά[σ]δῃ. οὗ ἀναιρεθέντος Τιγράνην, ὃς ἦν ἐκ γένους Ἀρμενίου βασιλικοῦ εἰς τὴν βασιλείαν ἔπεμψα.

„Զմեծն Հայաստան՝ ի սպանանել թագաւորի նորա Արտաշիսեայ, յորժամ կարողն էի առնել ընդ նահանգաւ՝ լաւ համարեցայ ըստ օրինակի նախնեացն մերոց տալ զայն թագաւորութիւն Տիգրանայ որդւոյ Արտաւազդայ, թոռան Տիգրանայ արքայի ի ձեռն Տիբերիոսի Ներոնի որ որդեգիր իմ էր յայնժամ։ Յետ այնորիկ յորժամ յետս եկաց եւ ապստամբեաց ազգն այն՝ նուաճեցի ի ձեռն Գայեայ որդւոյ իմոյ եւ ետու ի ձեռս Արիոբարզանայ որդւոյ Արտաւազդայ արքայի Մարաց զի առաջնորդեսցէ, եւ յետ նորա մահուան՝ որդւոյ նորա Արտաւազդայ։ Իսկ եւ սա սպանեալ՝ զՏիգրան որ էր յարքունի տոհմէ Հայոցն՝ առաքեցի ի գահն թագաւորութեան„։

## 23

Վղանզէ եւ սաստ ուրեմն նմանագոյն իմն անցք ընդ այն ժամանակս անցանէին: Ի գալ Օկտաւիանեայ յարեւելս՝ կարգել զիրս կողմանցն՝ հասանէր առ նա յԱսորիս հատուած՝ մի ոմն ի մեծամեծաց անտի Պարթեւացն Տրդատ անուն ամբաստան ղանագաբոյնն Հրահատայ: Ընտուստ յԱսորւոց հնարիւք ի ձեռն բարեկամացն իւրոց եւ ծածուկ Հռոմայեցւոցն օգնականութեամբ մերժեալ զՀրահատ՝ ինքն Տրդատ մատչէր ի թագաւորութիւն ընտրութեամբ նախարարացն: Այլ Հրահատայ սկիւթացի գնդօք այսրէն դարձեալ՝ առնոյր միւսանգամ ի բուռն զիշխանութիւնն, եւ Տրդատ փախստեայ ի Հռոմ հասանէր՝ առեալ ընդ իւր զորդին Հրահատայ (25 նախ քան զՔր.)[1]: Բայց Աւգոստեայ յիւր շահ արկեալ զդէպսն ի կիր, փոխանակ պաշտպան սմին կալոյ՝ առեալ առաքէր զպատանեակն առ հայր իւր (23)՝ պահանջեալ ընդ այնր զդրօշսն եւ զնշանսն Հռոմայեցւոց որ առ Կրասաւ (53) եւ առ Անտոնեաւ (36) գերեցան: Յամէր իմն եւ դանդաղէր Հրահատ՝ մինչեւ անագան ուրեմն յորժամ եկեալ Աւգոստեայ յԱսորիս (20, գարնայնի)՝ սպառնալ իմն սկսաւ, եւ նորին որդեգիր Տիբեր պատրաստէր յարձակել ի վերայ Պարթեւաց՝ ի կողմանց Հայաստան աշխարհին, յայնժամ առ յանձն Պարթեւն տալ զնոսա ի բաց հանդերձ գերեօքն հռոմայեցւովք՝ ոչ ի պատերազմէն ինչ այնչափ զանգիտեալ, որչափ յիւրոցն իսկ հնազանդելոց որ ի բնէ զայրագինք ընդ նա էին (20): Տայր շինել Աւգոստոս առ յիշատակի իրացն՝ մեհեան Վրէժխնդիրն Արեայ ի Կապիտողիոնին, եւ ի նմին զնշանսն կախէր[2]: Այսպէս զոր Կեսարն կամէր եւ վասն որոյ Անտոնիոսն ջանացաւ՝ զայն հան Աւգոստոս առանց զինուց ի գլուխ:

Բայց խորամանգն Աւգոստոս առաքէր ընդ պարգեւսն իւր եւ կին մի իտալիացի Թերմուսա կամ Մուսա անուն ի հարճութիւն արքային Պարթեւաց: Նորա հասեալ տիկնութեան Արեաց՝[3] նախ հաւանեցուցանէր զթագաւորն զչորեսին որդիսն առաքել ի Հռոմ ի պատանդութիւն (8 նախ քան զՔր.)[4], եւ ապա զիւր եւ զնորին որդի զՀրահատակ սահմանել ի պայազատութիւն,

1 Սոյն ակնարկի եւ ի կտակին Աւգոստեայ (Տախտ. Ե.):

2 Լիւ. Համառ. 139: Ովիդ. Երգոց գպր. Երգ 2, տող 17, Թղթոց գպր. Ա. Թուղթ 18, տող 54: Ովիդ. Փառաւոր. գպր. Ե. տող 593: Սուետոն. ի Տիբեր. 9: Յուստ. ԽԲ. 5: Դիոն Կաս. ԽԱ. 31 — 33. 39: — Կան եւ դրահեկանք Աւգոստեայ, յորոց ի միում կողմանն է գիր՝ Signis receptis S. P. Q. R., եւ երբեմն՝ կայ պատկեր վեցսիւնեան տաճարին Արեայ, յորում երեւի արծուէնշանն լեգէոնական (յամէ 20): Դարձեալ յայլում դրահեկանի (յամէ 18) կայ գիր այսպիսի՝ Civib. et sign. milit. a Part. recup. եւ պատկեր՝ Կամար ձաղանաց եւ Աւգոստոս ի վր չորեքձիեան կառօք արշաւէ նստեալ ի մէջ երկուց արանց պարթեւաց:

3 Կայ դրահեկան Հրահատայ Դ. յորոյ ի միւսում կողմանն երեւի պատկեր Թերմուսայ կամ Մուսայ հանդերձ անուամբ նորա Μουσα.

4 Ի սոյն հայի դրահեկանն Աւգոստեայ, յորում նշմարի այր պարթեւ որ մատուցանէ պատանեակս առ կայսր, (յամէ 8 նախ քան զՔր.): Եւ Աւգոստոս ինքնին ի

Եւ յետ սորա դիմեաց բարձ ի միջոյ զծերունին Հրահատ, զի իւր որդի Հրահատակ հասցէ փութանակի տէրութեանն (1 նախ քան զՔր.)[1]:

Չվայելեաց Հրահատակ ի թագաւորութեանն, խնդրեցաւ վրէժ հօրն՝ սպանմամբ նորա (2 կամ 4 յետ Քր.), եւ ոչ Որոդ Բ. նորին յաջորդ աշխարհին՝ այլ յայլմէ ինչ ցեղէ՝ յերկարեաց ինչ, այլ յետ սակաւուց եւ զսա վաղվաղակի ի կենաց՝ հերձուածք ի նախարարացն Պարթեւաց ի Հռոմ հասանէին կոչել զՎոնոն զերիցագոյն յորդւոցն Հրահատայ Դ.[2] եւ առաքէր զնա Օգոստոս մեծաւ կազմութեամբ եւ բազմութեամբ՝ (Թերեւս յամի իբրեւ 10): Թէպէտ եւ ի սկզբանն ուրախ եղեն Պարթեւք ընդ թագաւորն նոր (10—15), այլ յետ սակաւուց ինչ միոյ անհաճել իմն սկսան թէ յայլմէ աշխարհէ թագաւոր խնդրեցին, եթէ ի դաստառ Հռոմայեցւոցն կանգնեալ ուրեմն է աթոռ Արշակունեացն, եւ թէ՝ որ ծառայ սորուն կայսերն էր եւ զայնչափ ամս ծառայութիւն կրեալ՝ Պարթեւաց հրամանս տայցէ: Զայրացուցին զնոսա եւ Վոնոն՝ զի ոչ ըստ նախնեացն օրինակի կեայր, դուն ուրեք յորս ելանէր, դուն ուրեք յերիվար հեծանէր, զի դեսպակօք ընդ քաղաքն շրջէր, զհայրենի կերակրոցն պարզութիւն արհամարհեալ անգոսնէր, ծառք իմն հանապազ էին նորա յոյնքն (գիտունք եւ ճարտարախօսք) ընկերակիցք նորա ըստ Հռոմայեցւոց օրինակին: Իսկ ընտանեբարն հեզութիւն եւ դիւրամատոյցն առ ամենեսին լինել՝ անծանօթ առաքինութիւնք թուէին նոցա: Այնուհետեւ երթան կոչեն զԱրտաւան զոմն առնուն ի տոհմէ Արշակունի՝ նստեալ ի մէջ Դահաց ազգին՝ ի թագաւորութիւն (յամի 15): Զառաջինն ի պատերազմին մատնեցաւ Արտաւան Գ. այլ միւսանգամ զօրացեալ առնոյր ի բռնէ զթագաւորութիւնն[3]:

2. Յաղթեալ պարտեալ Վոնոն փախստեայ ի կողմանս Հայոց անկանէր: Իսկ սոքա յետ զիւրեանց թագաւորն մերժելոյ՝ "առանց տեառն էին մնացեալք՝ քան եթէ յազատութեան[4],,. բայց զի անխառն իմն էին եւ ի Հռոմայեցիս անդր եւ ի Պարթեւս, իբրեւ չգիտէին թէ զո ընտրեսցեն՝ ընկալան զՎոնոն զփախստեայն՝ ի թագաւորութիւն (16):

կտակին առէ (Յախա. Զ.) Rex Parthorum Phrates Orodis filius, filios suos nepotesque omnis misit in Italiam, non bello superatus, sed amicitiam per haec suorum pignora petens.

1 Տակ. Բ. 1: Յովսեփ. Նախն. պատմ. ԺԸ. 3: Վիրգ. Մշակ. Բ. 170, Գ. 30: Վելլ. Պատերկ. Բ. 101: Սուետ. յՕկտ. 43. Ստրաբ. Զ. ի վախճան կայս:

2 Բաց ի Տակիտեայ (Բ. եւ ԺԲ. 11) եւ կտակն Օգոստեայ (Տախտ. Զ) A me gentes Parthorum (petierunt per) principes earum gentium, regesque eos (զլխաւորսն) acceperunt, Parthi Vononem regis Phratis filium, regis Orodis nepotem, Medi *etc.*

3 Տակիտ. Բ. Գլ. Ա: Յովսեփ. Նախն. պատմ. ԺԸ. 3: Ստրաբ. 288: Դիոն. ԾԶ: 68: — Արտաշրի մատենագիրք դիւրաւ պատմութեան Պարթեւաց՝ յԱրտաւանայ առաքեալ նոր իմն հարստութիւն զնին սկսանել կոչելով զնա Աշկանեան, իսկ զառաջինն Ա շակեան:

4 Magis sine domino quam in libertate. Տակիտ. Բ. անդ:



Digitized by Google

Իսկ երբեւ զայն զգաց Արտաւան՝ սպառնալ սկսաւ։ Եւ զի միայն ոյժ եւ զօրութիւն Հայոց չէր բաւական դէմ ունել զօրացն Արեաց, եւ դարձեալ եթէ Հռոմայեցւոց ինչ զօրութեամբ հասանէր պաշտպանել Վոնոնի՝ հարկ էր յայնժամ տալ պատերազմ ընդ Պարթեւաց. յայն սակս լաւ համարեցաւ Կրետիկոս վերակացու Ասորւոց կոչել զՎոնոն յԱսորիս եւ զգուշանալ նմա պատահարանաց, բայց զսպաս թագաւորութեանն եւ զանուն թողուլ նմա, մինչեւ տացէ նա զորդ ի Հռոմ վասն իւրացն (16 — 17)։

Զուարճացաւ զուարթացաւ կայսր Տիբերիոս իբրեւ լուաւ զպղտորութիւն իւրացն արեւելից, զի այնպէս պատճառանօք զԳերմանիկոս որ սիրելին ամենեցուն էր՝ հանեալ ի լեգէոնաց անտի որ ընդելեալ ի նա էին՝ առաքեսցէ ի գաւառս արտաքինս, եւ այնպէս նենգ ինչ նմին գործիցէ կամ ի վտանգս ինչ արկանիցէ։ Այնպէս առաջի արկեալ նորա ծերակուտին թէ միայն Գերմանիկեայ իշխանութեամբ մարթի կարգ լինել իւրացն արեւելից՝ զհետ տանելին առնել յանձն զհրամանատարութիւն ամենայն նահանգացն որ յայնկոյս ծովու իցեն, բայց զԿրետիկոս Սիղանոս՝ որ խնամի էր Գերմանիկեայ, քանզի դուստր նորա խօսեալ էր Ներոնի երիցու որդւոյ Գերմանիկեայ, հան կայր ի վերակացութենէ Ասորւոց եւ կացուցանէր ընդ այնր զՊիսոնն վայրենաբարոյ զի կածիցէ զյառաջադիմութիւն Գերմանիկեայ (17)։

Նաւարկեալ հասանէր Գերմանիկոս յԱսիա եւ չուեալ յԱսորիս անցանէր ի Հայաստան կողմ, զի յառաջ քան զամենայն ի կատարումն իւրացն փութայր, հրաման տուեալ Պիսոնեայ զկէսն մի լեգէոնաց կամ ինքնին եւ կամ ի ձեռն որդւոյն ածել զհետ յերկիր սահմանացն Հայոց։ Թէպէտ եւ նա չառնէր զհրամանն ի գլուխ՝ սակայն ինքն Գերմանիկոս խաղաղութեամբ եւ հեզութեամբ յանկուցանէր զմտաւորս աշխարհին։ Նաեւ թէ յօժարագոյն եւ միաբանագոյն է ազգն ի Զենոն որդի Պողեմոնեայ արքայի Պոնտացւոց, զի սա մանկուց ի մանկական տիոց նմանող նախանձաւոր լեալ էր բարուց եւ սովորութեանն Հայոց, վարժ յորս նոցա եւ ի խրախճանս եւ այնպէս ածեալ զեւրեւ զնախարարսն եւ զխառնաղանճ ռամիկ մարդիկ։ Զնա առեալ Գերմանիկեայ հաւանութեամբ մեծամեծացն յԱրտաշատ քաղաքի առաջի բազմամբոխ մարդկան խռնելոց կապէր զպատիւ թագաւորութեան ի գլուխ։ Մատուցեալ երկիր պագին թագաւորին, գոչեցին միաբան բարբառով՝ կեցցէ արքայ Արտաշէս (Արտաքսիաս), փոխեալ զբարբարիկ անունն Զենոն՝ յանուն հայրենի թագաւորացն իւրեանց (18)[1]։

1 Տակիտ. տարեգ. Գր. ԾԶ։ Յովսեփ. հնախօս. պատմ. ԺԸ. 5։ Մաւետան ի Կաղեդաւղ. Ա. Դիոն։ Ի սոյն դէպս թուի հայել եւ դրոշմեալն Տիբերիայ (յաւել 19) յորոյ ի միւս կողմանն կայ պատկեր՝ Յաղթութեան որ յեցեալ ի գաւազան մի կայ պսակ զարթից։

ցուցանէր վերիցագոյն յորդւոց անտի իւրոց Արշակ անուն ի Թագաւորութիւն Հայոց աշխարհին եւ առաքէր պահանջել եւ զգանձսն արքունի Թողեալս իմն ի Վոնոնէ յԱսորիս եւ ի Կիլիկիա, եւ մեծաբանեալ սպառնայր գրաւել ունել ի Հռոմայեցւոց անտի զհին սահմանակալութիւնս Պարսից եւ Մակեդոնացւոց զոր Կիւրոսի եւ Աղեքսանդրի երբեմն ըմբռնեալ էր, եւ արդեամբք խաղայր ի Գամիրս կոյս (34)։

Այլ անտուստ զանխուլ յԱրտաւանայ՝ հրեշտակք երեւելիք ի Պարթեւաց ի Հռոմ հասանէին (35) առաքեալ ի Սինակեայ որ էր այր առհմիկ եւ մեծատուն եւ յԱբդեայ[1] ներքինւոյ՝ որոց յարեցուցեալ էր յիւրեանս եւ զայլս եւս ի մեծամեծացն. քանզի չգտանէին զոք յԱրշակունեաց ի բարձ թագաւորութեան, զի զբազումս ի նոցանէ կոտորեալ էր Արտաւանայ, եւ որ ի միջին էին՝ չէին հասեալ ի չափ, յայն սակս խնդրէին զՀրահատ զաւակ Հրահատայ Դ. ի Հռոմէ։ Միայն, ասեն, անուն Արշակունեաց եւ առաջնորդ ոք գործոյն պիտոյ է. շատ այնչափ է թէ կամիցի կայսր, եւ արիւն եւ զաւակ Արշակայ երեւեսցի ի գետեզերս Եփրատ գետոյ։

Հաճոյ թուեցաւ Տիբերիոյ, շքեղագոյն զՀրահատ եւ նիւթէր առանց պատերազմաց ներգործութեամբ զերան ի գլուխ տանել։ Բայց Արտաւանայ ի վերայ հասեալ դաւաճանութեանն զԱբդոս սիրոյ պատճառանօք կոչեցեալ ի խրախունս մեղմ դեղով ծիւրեալ ծնդեցուցանէր, իսկ զՍինակն իբրեւ յանդէտս զիւրաց զաւոյն՝ արգելոյր ի գործ արքունի, եւ անտուստ Հրահատ որ զերդն ուսեալ էր ի Հռոմ (երբեւ ի 40 ամաց հետէ)՝ մինչեւ յԱսորիս էր առ չժուժալ հայրենի բարուցն խստութեան՝ յախտ անկեալ մեռանէր։

2. Սակայն եւ այնպէս չեկաց ի բաց ի գործոյ անտի կայսր, առեալ առաքէր զՏրդատէս ի նմին առհմէ ի Թոռանց անտի Հրահատայ Դ. Թագաւոր հակառակ Արտաւանայ, եւ զՄիհրդատ զեղբայր Փարսմանայ արքայի Վրաց ընտրէր ի Թագաւորութիւն Հայոց աշխարհին փոխանակ Արշակայ որդւոյն Արտաւանայ. եւ ի վերայ ամենայնի կացուցանէր զՎիտեղլոս վերակացու կամ դատաւոր Ասորւոց (զհայր Վիտեղեայ կայսեր), զի առաջնորդեսցէ իրացն մեքենաւորութեան։

Անտուստ նախ Միհրդատ առեալ խոստումն ի Փարսմանայ լինել նմա ձեռնտու եւ զինու եւ պատրանօք, վարձէ սրա՝ առնել կաշառաբեկ ոսկւով բազմաւ զծառայս Արշակայ արքայի Հայոց ի սպանումն արքայի, որ եւ նենգ գործեալ սպանանէն իսկ զնա։ Ի նմին ժամանակի եւ Փարսման յաճախագունդ զօրօք Վրաց դիմեալ հասանէր յերկիր սահմանացն Հայոց եւ զԱրտաշատ քա-

1 Abdus.

զօրք թագաւորութեանն առնուր ի բռունն։ Իսկ եւս Արտաւան զզօրսն՝ կամէր զիւր որդի զՄիհրդատ առաքել, խնդրել զգէն մերժուեզօրսն եւ զզաւնդս գունդս պարթեւական զօրացն ի ձեռն գումարէ, առաքեալ կոչէր եւ զօր մարդիկ մարձկանութեանն։ Բայց Փարսման արքայ վաղագոյն եւս յարեցուցեալ էր յինքն զԱղուանս, եւ ածեալ գունդ մարձկան ի Սարմատաց՝ որոց իշխանք¹ երկոցունց եւս կողմանց առեալ էին ծառայել վարձու (ըստ օրինակի Հելուետիացւոց ի նորագոյն ժամանակի), եւ յետ ածելոյ զազգսն սարմատականս փութանակի յերկիրն Հայոց ընդ Ճանապարհն Կասպից՝ փակեցին զկապանն զայն (զԴրունսն Կասպից կամ զԱլանաց) արգելուլ զանցս վարձկացն ի Պարթեւաց։ Այնուհետեւ Իբերանք Վիրք ի կռիւ զՊարթեւան կոչէին՝ ի վերայ յարձակելով կամ դիմելով ի վերայ եկելոցն զճարակէ, եւ իսկ եւ այն թէ պաշարեալ ունէին զնոսա։ Չկարացին ժոյժ ունել թշնամեացն Պարթեւք, ի մէջ առեալ զարքայորդին առիթէին տալ պատերազմ։ Այնուհետեւ ճակատ առ ճակատ, թէ առ թէ յերկուց կողմանց ռազմն յարդարէր, զօրութիւն Պարթեւացն էր այրուձին նոցա, իսկ Փարսմանայ էին եւ հետեւակք բազում ի Վրաց եւ յԱղուանից։ Յայնմ վայրի ի մէջ անցեալ պարթեւն յիշեցուցանէր զօրացն զիշխանութիւն տէրութեանն արեւելից, զտոհմականութիւն ազգին Արշակունեաց եւ զՎրացւոցն զվատատոհմութիւնն։ Իսկ Փարսման զայն յուշ արկանէր թէ [illegible] ազատ լեալ են ի պարթեւական տէրութենէ, եւ թէ որչափ մեծամեծք գործքն իցեն՝ զոյնչափ յետ յաղթութեանն՝ փառաւորութիւն եւ օգտութիւն, այլ թէ փախչիցին՝ յաւիտեան վտանգ մեծ եւ աղէտք. միանգամայն առաջի զահեղ տեսիլ իւրեանց ճակատուն ցուցանէր եւ անդի զզունդս գունդս Մարացն ոսկեհուռն, աստի արս, անդի առ եւ ուսք եւ ապուռ։ Յերկարէին ձգէին խառնուրդքն ժամս բազումս, մինչեւ Փարսման եւ արքայորդին Պարթեւաց պատահէին միմեանց մեծաւ աղաղակաւ. հար զնա Փարսման ընդ սաղաւարտն եւ մինչդեռ կրկնել կամէր՝ առ արագագնաս յարշաւանի երիվարն եւ անձնապահաց հասեալ՝ պատել ակամն զվիրաւորաւն. սակայն զհամբաւ իմն հարաւ թէ մեռաւ արքայորդին, զահի հարան Պարթեւք եւ ետուն ձեռս։

Արմաեալ Արտաւանայ՝ ամենայն իսկ համօրէն Արեաց զօրութեամբ հասանէր յերկիրն Հայոց՝ հանել վրէժ, այլ զի հնուտք վայրացն Վիրք էին՝ նոցա լինէր յաղթութիւնն։ Սակայն եւ այնպէս չկայր նա ի բաց ի գործոյ պատերազմին՝ թէ ոչ անդուստ Վիտեղիոս գումարեալ ի մի վայր զլեգէոնսն՝ հանէր համբաւ թէ ի Միջագետս յարձակելոց իցէ, եւ այնպէս արկանէր նմա երկեղուկս։ Այնուհետեւ ի բաց դարձեալ Արտաւանայ ի Հայոց աշ-

1 Sceptuchi.

Digitized by Google

Գոտարզայ ախոյեան վախճանելոյ՝ Վոնոն Բ. որ իշխէր յայնժամ Մարաց՝ կոչեցաւ ի թագաւորութիւն (50), եւ սակաւաժամանակեան եւ առանց գործոց ինչ քաջութեան առաջնորդեալ՝ հաւանութեամբ այլոցն եղբարց անց պայազատութիւնն ի Վաղարշ Ա. (51—91) նորին որդի ի յոյն հարճէ[1]: Իսկ Բակուրայ եւ Տրդատայ որ էին ծնեալ ի բուն կնոջէ արշակունւոյ՝ սահմանեցաւ երկիր թագաւորութեան, միում Մարաստան, եւ միւսում Հայաստան (51): Առաջինն իսկ զրգռէր պատերազմ 12ամեայ ի Հայոց աշխարհին՝ նախ Վրաց ընդ Պարթեւաց, եւ ապա Հռոմայեցւոց ընդ Պարթեւաց:

## 25

Էր լեալ Փարսմանայ արքայի Վրաց որդի մի Հռադամիզդ անուն՝ բարձրահասակ, զօրեղ, ճարտար յառաջնորդութիւն եւ ի մէջ ազգաց արուարձանեաց բարեխառն եւ երեւելի: Իբրեւ ետես հայրն ծերունի թէ պայազատութեանն ակն եդեալ է եւ մտադրին ի նա է ժողովուրդն՝ դարձոյց զմիտս նորա յայլ՝ ցուցեալ զՀայոց աշխարհ զոր եւ ինքնին, ասէ, եւտու եղբօր իւրում Միհրդատայ՝ մերժեալ անտի զՊարթեւս: Այնուհետեւ Հռադամիզդ յարուցեալ գայր ի Հայս առ հօրեղբայր իւր հաւատարմի պատճառաւ, կեղծաւորեալ թէ ընդ հօրն գժտեցաւ. եւ մօրուին առերլութեան չկարաց ունել ժոյժ. եւ պատուեալ եւ մեծարեալ ի Միհրդատայ իբրեւ որդի սիրելի՝ գաղտ զնախարարս Հայոցն միաբանէր ի խաբագործ ապստամբութիւն: Յետ այնորիկ հաշտութեան պատճառանօք առ հայրն հասանէր. որոյ այնուհետեւ պատճառեալ պատճառս պատերազմի ընդ արքայն Հայոց թէ ի տալ իւրում պատերազմ ընդ արքային Աղուանից եւ ի կամելն կոչել զՀռոմայեցիս ի թիկունս՝ ընդդէմ դարձաւ Միհրդատ, գումարէր գունդ հարուստ ի ձեռս որդւոյն: Զահի հարաւ թագաւորն Հայոց ընդ յանկարծ արշաւանն, փախեալ ամփոփեալ անկանէր յամուրն Գառնւոյ[2] յորում կայր զօր պահականն Հռոմայեցի եւ հրամանատար Կեղիոս Պողղիոն եւ Կասպերիոս հարիւրապետ: Իբրեւ ետես Հռադամիզդ թէ անհնարին առնուլ է զամուրն, զբռնութիւնն թողեալ՝ սկսաւ կաշառաւորել զՊողղիոն որ հաւանեցուցանէր զթագաւորն ելանել յամրոցէն յիշեցուցեալ նմա թէ չէք ինչ երկեւղ. եղբայր երիցագոյն է քո, ասէ, Փարսման եւ դուստր քո կին է Հռադամիզդայ եւ դու նորա հօրեղբայր, եւ չէք ինչ այլ ապաւէն բայց անձուրս թափուր ի ոսկւոյ: Յաճախեաց Հռադամիզդ զպարգեւսն եւ ի ձեռն Պողղիոնի սպառեցան գաղտ ի զօրականն՝ արք որ սախալէին ապստամբեալք զթագաւորն ի

1 Տակիտ. ԺԲ. Գլ. Ժ—ԺԵ:  2 Gorneae.

զամբիզ առնուլ թագ։ Իբրեւ համբաւ իւրոյն տարածանէր՝ ըն
ընդէլին ամօթով զօրավարք Հռոմայեցւոցն՝ թէ դուցէ զամենեսին
իբրեւ զՊեղիգնոս համարիցին լեալ, եւ առաքէր ի Կապադովկիայ
խոյս եւ խոյս Հերակլեոնոս Գաբինոս դեսպան (կամ պրետոր) ըն-
դէմնաւ՝ առնել դարման իւրոյն չփաթելոց, որպէս ինչ պատշաճ
ժամանակին իցէ։ Ձգտեալ անցանէր Գաբինոս զերրորդն Տաւրո-
սի, եւ իբրեւ բազում ինչ ածէր ի կարգ մեղմական հանդարտու-
թեամբ քան բռնութեամբ եւ զէնս՝ հասանէր հրաման դառնալ
այսրէն յԱսորիս՝ զի մի մարտ պատերազմի ընդ Պարթեւաց
դրդռեսցի։

3. Վասնզի Վաղարշ Ա. զայն ժամ դիպող համարեցաւ դրա-
ւելոյ զերկիրն Հայոց զոր առաջեալ ունէին հարք նորա եւ թա-
գաւոր օտար եկեալ կալեալ էր. զաւանդ կալմէր, զոր բռնանայէր,
զիւր զեղբայր զՏրդատէս ի բարձ թագաւորութեան պատրաստէր։
Իսկ եւ խոյ ի մտանել Պարթեւացն առանց ճակատու պատերազմի
մերժեցան անտի եւ առ ի Վիրս, եւ քաղաքք Հայոց՝ Արտաշատ
եւ Տիգրանակերտ մտին ընդ լծով։ Բայց խստութիւն կարա-
ձմեռն ձմերայնւոյն եւ համբարաց նուազութիւն եւ որ ի նո-
ցունց ժամանէր՝ ստիպէր զՎաղարշ ի բաց կալ յաշխատանէն։

Իբրեւ եւս Հռոմայեցիք թէ դատարկ է երկիրն՝ եկն կալաւ
միւսանգամ զաշխարհն, եւ եւս խիստ խստագոյն քան զառաջինն նա-
ադն ի վերայ բնակչացն զազանէր՝ վասն զի յետս ի նմանէ կացին
եւ զի միւսանգամ ապստամբելոց են ի դէպ ժամու։ Չկարացին
այնուհետեւ ժուժ ունել Հայք, զայրացան դրդուեցան ամբոխն, ա-
ռեալ խռպարանչեաց զդէն իւր՝ եկին պատեցան զարքունեօքն. արտա-
ցեալ ելանէր թագաւորն արագութեամբ երիւարացն հասանել
ի Վիրս։ Զճանապարհային առ ծերպն վտանգի՝ նեղեալ կնոջ
նորա Զենոբիայ՝ աղաչէր մահուամբ ապրել յապախնութեանն
թշնամեաց. զառաջինն զիրկս արկանէր, ի վեր առնոյր, մխի-
թարէր զնա թագաւորն. յետոյ ստիպեալ հարկանէր վաղա-
կաւորաւն եւ խոց վիրաւոր ածեալ յափն Երասխ գետոյ ար-
կանէր ի խաղն՝ զի մի եւ դիակամբն ընկեցին զամբարշտեան։ Բայց ծիփանք
Ջուրցն առ ափն մղեցին զնա յափն կայս. տեսին հովիւք եւ ի գեղջն
ի մեջ առեալ թէ ի առհմիկաց է՝ պատեցին զվէրս բարեշանն
դարմանեալ ըստ դեղոց չենակաւորացն. իբրեւ գիտացին թէ ո եւ
ուստի է՝ առին ածին յԱրտաշատ քաղաք։ Այն ինչ դարձեալ
էր անդր Տրդատ միւսանգամ զօրութեամբն Պարթեւաց. կա-
ցուցին զԶենոբիա առաջի Տրդատայ որ ընկալաւ խոկ զնա մեծա-
սիրով եւ ունէր զնա ըստ թագուհեաց օրինի յարգանօք
(51—53)[1]։

1 Տակիտ. ԺԲ. Գլ. ԽԴ—ԾԱ։ — ընթեռ զգեղեցիկ բանաստեղծութիւն իւր՝ որ
Զայս անուն Ռադամիզդայ եւ Զենոբեայ Զենոբիայն կոչի.
մա նիւթ Մետաստասիոյ բանաստեղծ՝ յա-

## 26

Ի միւսում ամին (54) այն ինչ թագաւորեալ Ներոնի հառանէր ի Հռոմ զրոյց խառն թէ միւսանգամ դիմեցին Պարթեւք եւ կալան զՀայոց աշխարհ եւ Հռադամիզդ ի բաց ել յուսահատ, բայց արդեամբք մեկնեալ էր անտի եւ Վաղարշ. քանզի յարեաւ հակառակ թագաւորութեան նորա իւրոյոյն որդի Վարդան: Բայց քանզի զաթոռ թագաւորութեանն Հայոց ոչ Հռոմայեցւոց հրամանաւ գրաւեալ ունէր Տրդատ, առհմանէր կայսր Ներոն վասն իրաց Հայոց աշխարհին զԴոմետիոս Կորբուղոն զայր հզօր եւ բարձրանձն, զօրաւոր բանիւք եւ ի վերայ աջողակութեանն եւ իմաստութեան՝ եւ գոյաւոր եւս եւ ընդ ամենայն կազմածով պիտոյից (54): Ի զնդից անտի արեւելից՝ կէսք օգնական զօրուն հանդերձ երկուք լեգէոնօք՝ յԱսորիս առ Ումիդեայ Քուադրատեայ դեսպանի հրամայեցան կալ, եւ կէսք նոքին չափով առհմանեցան Կորբուղոնի հանդերձ վաշտիւք եւ գումարտակօք[1] որ ի Գամիրս ի ձմերոցս էին: Պարձեալ հրաման տայր կայսր եւ դաշնաւոր թագաւորաց, Արիստաբուղեայ՝ որդւոյ Հերովդի արքայի Քաղկիսայ, որում զՓոքուն Հայոց զթագաւորութիւնն ետ Ներոն, եւ Սոյեմայ արքայի Եմեսացւոց՝ որում նոյնպէս զԾոփաց աշխարհին թագաւորութիւն շնորհեաց կայսր[2] համգամնաւկել զօրս. իսկ զԱգրիպպա Բ. զԱրտէրն եւ զԱնտիոքոս արքայ Կոմագենեաց եւ մասին իւիք Կիլիկիայ՝ հրամայէր մտանել ի սահմանս Պարթեւաց, եւ միանգամայն պատուէր տայր արկանել կամուրջ ի վերայ Եփրատայ: Սոքա ամենեքին ի համբաւոյ անտի մեծարոյ կարծիս զԿորբուղոնէ ունէին, եւ իբրեւ նաւարկեալ ի Հռոմէ հասանէր նա յԵգիս Կիլիկեցւոց՝ անձապարեաց ընդ առաջ նորա Կուադրատոս, զի մի յորժամ յԱսորիս գայցէ Կորբուղոն առնուլ զմասն զօրացն որ առհմանեալ էր նմա՝ ամենեցուն աչք ի նա կայցեն:

Ախոյեանս երկոքին միաբանութեամբ հրեշտակս առ Վաղարշ արձակէին խրատ տալ՝ զխաղաղութիւն քան զպատերազմ մեծարոյ ընտրել՝ տուեալ պատանդս եւ ցուցեալ մեծարանս առ ժողովուրդ Հռոմայեցւոց ըստ սովորութեան նախնեաց իւրոց: Խորամանկութեամբ յանձն առ Վաղարշ առ ժամն, եւ զերեւելիս երեւելիս ի տոհմէ Արշակունեացն ի ձեռն տայր Հռոմայեցւոց՝ ոչ միայն զի պարապով կարգեսցի ի մերս պատերազմի, այլ զի եւ զհակառակորդս թագաւորութեանն հեռացուսցէ պատանդութեանն պատճառանօք: Նախ Հիստէոս չոգաւ առ նոսա ի թագաւորէն հրամանաւ Ումիդեայ Կուադրատեայ, բայց յետոյ

1 Cohortes alaeque.
2 Տես եւ Յովսեփ. Նախն. պատմ. Ի. 5. եւ Վասն Հրէ. պատեր. Է. 27:

Digitized by Google

ցաւ արքայն Արեաց ի մեծի պատերազմի ընդ Վրկանաց, առաքէր պատասխանի՝ խրատ տուեալ աղաչել զկայսր զի հաստատեսցէ նմա զԹագաւորութիւնն եւ այնպէս զբաւ պատերազմին լինիցի: Յանձն առ Թագաւորն, այլ իբրեւ գայր ի տեղին առՀմանեալ ի միաբանութիւն տեսութեան՝ տեսեալ զբազմութիւն զօրուն Կորբուղոնի զի իբրեւ ի ճակատ կազմեալ կայր ի Թիկանց նորա, Հանդարտեալ Թէ դաւ է՝ դարձաւ յետս (57):

Եդ ի մտի այնուՀետեւ Կորբուղոն չյերկարել զուր զպատերազմն: Զի զայս զրգռեալ յօժարեցուցէ պաշտպանել անձանց իւրեանց եւ մի տապաստան յամուրսն իւրեանց լինել կալ զասպարի՝ խորՀուրդ ի մեր արկանէր զամուրսն աւանս եւ քակել. եւ ինքնին իսկ յանձն առնոյր զբաւն անառիկն որ ի ՆաՀանգին Մանանդաւացւոց (°) էր՝ կործանել, իսկ զմնացուածս Կոռնեղեայ Փղակկեայ եւ Ինստէոսի Կապիտոնի տանէր յանձն: Արդ քաջալերեալ զօրավարին զիւր զունդն յաւուր աւուրին՝ ի չորս մասունս զնոսա բաժանէր, զկէսս սաՀմանէր զի ի մի վայր կուտեալ գործիցեն կրակ եւ այնպէս փոս գործեալ բրիցեն զՀիմունս բերդին, զկէսս վասն ամբողջս յարմունսն մատուցանելոյ եւ զբազումս դարձեալ վասն ջաՀս եւ պարս ի մեքենայից ի ներքս արձակելոյ. իսկ պարսաւորացն եւ նետողաց սաՀմանէր տեղիս զի ի Հեռաստ Հարկանիցեն զպնակիչսն: Այնպէս յետ չորից ժամուց մեկնեցան ի պարսպաց յառաջամարտիկքն, խափանեցան նիզք եւ պաՀանգք դղեկացն, զրաւեցան եղանելով ի վեր՝ մաՀարձանք: Զամենայն այր Հասակաչափ կոտորեցին, իսկ ամբոխս որ անզօր ի պատերազմ էր՝ վաճառակուր եղեւ պսակ ի գլուխ[1]. իսկ այլն ամենայն եղեւ աւար յաղԹողացն: Այնպէս եւ դեսպանն Փղակկոս եւ զօրագլուխն Կապիտոն փուԹանակի զիւրեանց գործ վճարէին, եւ ի միում աւուր երեք ամրոցք առան. մնացեալքն առ աՀի եւ կէսք եւս կամակար եւ տուին ձեռս:

Այնպէս քաջալերեցաւ զօրավարն դիմել եւ ի վերայ արքունական քաղաքին Արտաշատու, բայց ոչ դէպ ուղիղ ընդ կամուրջն՝ այլ Հեռի ուրեք ի քաղաքէն անցին ընդ Հուն գետոյն: Զի ոչ յանձն Տրդատ սահմանեալ կալ ի քաղաքին զի մի զիւրսն պաշարեցուցէ, բայց եւ զանձս Հռոմայեցւոց ընդ Երասխ գետ չկամէր արգելուլ զի մի ի մօրուսան ընկղմիցին Հեծելազօրքն իւր. յայն սակս ի մտի եդեալ այնուՀետեւ տալ ճակատ եւ փախուստ ինքն պատճառելով արկանել զնոսա յորոգայթ՝ յանկարծ գայր պատէր շուրջ զբանակաւ Հռոմայեցւոցն, այլ վաղ զգուշացեալ էր Կորբուղոն եւ զզօրսն ոչ միայն ի ճանապարՀ այլ եւ իբրեւ ի ճակատ էր կարգեալ: Թէպէտ եւ յարձակէր Տրդատ մեծաւ զօրուԹեամբ առանց մօտելոյ իբրեւ նետա-

1 Այսպէս սովորուԹիւն էր Հնոց պսակաւոր առնել գերին:

ընկէց զմի, այլ մերթ աղաչելով եւ մերթ սպառնալով փախչել, զի թերեւս այնպէս զխիտ առ խիտ կարգեալ դասս Հռովմայեցւոցն ի միմեանց քայքայեսցէ եւ զհետ բաժանելոցն անկանիցի։ Այլ նոքա ըստ զօրավարին հրամանի ի հեռուստ եւեթ կռուէին եւ ի փախչելն նոցա չմտանէին զհետ։ Այսպէս իբրեւ օրն տարաժամէր ապա ի բաց մեկնել սկսաւ թագաւորն։ Իսկ Կորբուղոն անդէն բանակ հարեալ խորհէր գիշերախառն հասանել պաշարել զԱրտաշատ թեթեւագոյն լեգէոնօքն՝ կարծեալ թէ անդր ուրեմն մեկնեցաւ Տրդատէս։ Ապա զրոյց ետուն լրտեսքն թէ հեռի ուրեք ի Մարս կամ յԱղուանս մեկնեցաւ թագաւորն։ Յայն սակս ընդ այգն ընդ առաւօտն զթեթեւ վառեալսն առաքէր առաջի՝ երթալ պատել զքաղաքորմովն. այլ ինքնակամ բացին զդրունսն քաղաքացիքն եւ այնպէս ապրեցան ի սրոյ. սակայն զքաղաքն Արտաշատու հրձիգ առնէր եւ կործանէր հարթյատակ, քանզի վասն պահպանութեան քաղաքին զօր բազում պիտոյ էր յաղագս ընդարձակութեան պարսպացն, եւ չկամէր բաժանել զզօրութիւն իւր Կորբուղոն։ Իբրեւ եհաս համբաւ իրացն ի Հռովմ՝ հրամանաւ ծերակուտին պաղատանք[1] վասն յաղթութեանն եղեն, եւ սահմանեցան պատկերք եւ կամար եւ հանապազորդ բղեշխութիւն վասն կայսեր, եւ հրամայեցաւ ի ծերակուտէն զի ընդ տօնական աւուրս դրեսցի օր յաղթութեանն եւ օր աւետեաց յաղթութեանն եւ պատմելոյ ի ծերակուտի անդ (58)[2]։

Իսկ Կորբուղոն յետ քնջելոյ զԱրտաշատ՝ ի դէպ համարեցաւ զահն եւ զերկեւղ որ վասն նորին էր ի կիր արկանել առ ի դրաւելոյ զՏիգրանակերտ. խաղայր գնայր ոչ իբրեւ թշնամութեան կերպարանօք զի մի զյոյս թողութեանն հատանիցէ եւ ոչ դանդաղագոյնս ինչ եւ յանհոգս։ Զճանապարհայն կէսք ի բնակացն մատչէին ի պաղատանս, կէսք թողեալ զիւրաքանչիւր գեօղ՝ յանտառս եւ ի խոխոմս կամ ի քարանձաւս իսկ ամրանոցին, առեալ ընդ իւրեանս որ ինչ սիրելի եւ պատուական էր նոցա։ Իսկ զօրավարն Հռովմայեցւոց առ պաղատաւորսն զգթութիւն ցուցեալ՝ զփախստէիցն արագ զհետ պնդէր, անողորմ առ այնոսիկ որ ի թագստոցսն էին, զի բազում անգամ յելս եւ ի դրունս քարայրիցն լցեալ կրկուս եւ խռիւ՝ հուր ի ներքս արկանէր։ Յանցանել նորա զկողմամբք Մարդաղւոյ[3] արք տեղւոյն սովորեալք յաւազակութիւն՝ ի վերայ յարձակէին զօրացն եւ ի դի-

1 Supplicationes.

2 Տակիտ. ԺԳ. ԳԼ. ԼԴ—ԽԱ։ —Կայ վկայ եւ գանձական արծաթի (quinarius) Ներոնի յամէ առաջ յայսմանէ (58). յորոյ ի միւսում կողման ի միջի է գիր՝ Հայաստան (Armeniac. այս ինքն Armeniaca victoria կամ Armenia capta). եւ պատկեր՝ Յաղթութիւն զի ընթանայ՝ պսակ յաջու ձեռին, եւ կամ պսակ եւ արմաւենի եւս. իսկ յայլում գործեալ ի նոյնպիսի գանձականի՝ Յաղթութիւն զի դրէ ի վերայ վահանի։

3 Տես. Mardi, զորոց եւ Պղինիոս Զ. 16. ասէ լինել ժողովուրդ բնակեալ ի մէջ աղբերաց Տիգրիս եւ Եփրատ գետոց։

Digitized by Google

մնալ նոցա ի վերայ՝ ամրանային ի լերինսն. Կորբուլոն զՎերան արձակեալ ի վերայ նոցա՝ ինքն վարէր յառաջ վաստակաբեկս եւ ծարաւիս, եւ կերակուր՝ միայն զմիս ոչխարաց ունէին, մինչեւ գային հասանէին յարտավայրս ուր հատին հունձս զօրականն, եւ նուաճեալ զերկուս ամրոցն յոր ապաստանեալ էին Հայք՝ մտանէին ի գաւառն Տարօնոյ[1]: Անդ ուրեմն մօտ ըմբռնեցաւ մի ոմն ի մեծամեծաց զինու հանդերձ[2], տանջանօք խոստովան եղեւ թէ ի դաւաճանութիւն եկեալ էր. խնդրեցան, գտան պատժեցան եւ խորհրդակիցք դաւաճանութեանն, որ բարեկամութեանն պատճառանօք պատրաստէին զսպանութիւն զօրավարին: Յետ սակաւ ինչ միոյ հրեշտակք ի Տիգրանակերտէ հասանէին թէ ի բաց են դրունք քաղաքին եւ պատրաստ քաղաքացիքն, եւ մատուցեալ տային ձեռն ի ձեռն զօրավարին պարգեւ ասպնջականութեան՝ պսակ ոսկի. ընկալաւ զնոսա պատուով Կորբուլոն, եթող զքաղաքն ինքնօրէն աղխկամբ: Այլ զմիջնաբերդն կամ զզեակն արքունի զոր պատերազմասէրք ի քաջացն երիտասարդաց փակեալ ունէին՝ առ. յարձակմամբ յետ բազում դիմադարձութեան:

Իբրեւ այսպէս լռեալ դադարէր երկիրն առաջի նորա, եւ զՏրդատ որ եկեալ հարկանէր զսահմանս Հայոց ի կողմանց Մարաց՝ ի բաց մերժէր յուսահատ ի թագաւորութենէ, այնուհետեւ Ներոնեայ հրամանաւ առեալ զՏիգրան յազնուական տոհմէ Գամրաց, զթոռն Արքեղայ արքայի սոցա, զոր եւ առաքեալ էր կայսր Ներոն ի Հռոմէ՝ կացոյց ի թագաւորութիւն Հայոց աշխարհին. թէպէտ եւ ոչ ամենեքին ի Հայոց ընկալան զնա սիրով, քանզի չէր նա ի տոհմէ Արշակունեաց, սակայն եւ բազումք տաղտկացեալ ձանձրացեալ էին ի Պարթեւացն ամբարտաւանութենէ եւ լաւ համարէին զթագաւոր զոր Հռոմայեցւոց տուեալ իցէ: Թողեալ Կորբուլոնի ի պաշտպանութիւն թագաւորին 1000 այր ի լեգէոնականաց, 3 վաշտս ի զօրաց դաշնաւորաց, եւ 2 թեւս տանեւձիոյ՝ ինքն մեկնեալ երթայր յԱսորիս, քանզի Ումմիդիոսեայ Կինիդեայ վախճանեալ՝ նմա յանձն եղեւ վերակացութիւն աշխարհին (59 — 60)[3]:

## 27

Այլ ցայնվայր չէր տակաւին դադարեալ պատերազմ ընդ բուն զօրութեանն Արեաց: Սակայն յայնմ հետէ թողեալ Վաղարշու զարշաւանս պատերազմին ընդ Վրկանից՝ խառնէր մտա-

1 Ընտիր օրինակք Տակիտեայ անուանեն զՏարօն (կամ Տարաւն) Taurauntium, իսկ ռամկօրինակքն՝ Taurantium կամ Tauranitium կամ Tauramnitium.

2 Վաղուցաւ անուանն ըստ փրանսիական Հնագր. Բ. 9. 5:

3 Տակիտ. ԺԴ. Գլ. ԻԳ—ԻԵ. Տակիտ. ԺԶ. 5: Դիոն. ԿԲ. — Կան գործեալ գա-



Digitized by Google

դիւրագոյնս յիրան արեւմտից։ Ազդ լինէին նմա իրք Կորբուղոնեայ, թէ Տիգրան այլազգի օտարածին ի թագաւորութիւն Հայոց աշխարհին կարգեցաւ, մերժեցաւ իւրոյրոյն եղբայր Տրդատէս, անարգեցաւ անգոսնեցաւ Արշակունեացն փառաւորութիւն։ Մինչդեռ տակաւին ի փորձանս էր՝ գուժկանք հասանէին թէ Տիգրան ելեալ ի Հայոց աշխարհէ ասպատակ եդեալ աւերէ զաշխարհն Ադիաբենայ։ Զկծեցան զայրացան նախարարք, զի ոչ այնուհետեւ զօրավար Հռոմայեցւոց՝ այլ եւ ծառայն նոցա ստրուկ յանդգնեալ անգոսնէ զԱրեօք. առաւել եւս բորբոքէր զնոսա Մանաւազ իշխան Ադիաբենական աշխարհին, նոյնպէս եւ Տրդատ լռութեամբն եւ կամ չափով զիւր աղէտսն մրմնջելով։

Յատեան կոչէր Մաղարշ զաւագանին՝ ածեալ կացուցեալ առաջի զՏրդատէս. Զսա, ասէ, զիմ եղբայր զհամահայր, քանզի կրսերագոյն քան զիս էր, իմ զգլխաւորութիւն թագաւորութեանն յանձն առեալ, զնա ածի ի ժառանգութիւն արքայութեան Հայոց աշխարհին որ երրորդ է իշխանութեան մերոյ յետ Մարաց աթոռոյն։ Այլ չառան այնմ թոյլ Հռոմայեցիք, որք եւ այժմ քակեցին խզեցին զդաշինս խաղաղութեանն ի կորուստ անձանց իւրեանց։ Այլ ես զոր ինչ ցայժմ յապաղելովս յանցեալ՝ զայն այսուհետեւ քաջութեամբ ուղղեցից։ Զայս ասէր եւ թագ ի գլուխ կապէր Տրդատայ, եւ զգունդ առնեւձիոյ որ ի պահպանութիւն թագաւորին կարգեալ էր՝ ի ձեռն տայր Մոնեձայ, եւ առ նմին գունդ օգնական յԱդիաբենական նահանգէ. հրաման տայր նոքիմբք զՏիգրան ի բաց հալածել ի կողմանց Հայոց մինչեւ ինքն զզօրութիւն իւրացն Միրկանից լուծեալ՝ զամենայն Արեաց զօրութիւն ուստեք ուստեք գումարեցէ յարձակել յերկիր տէրութեանն Հռոմայեցւոց։

Իսկ եւ զայն զգայր Կորբուղոն ի ձեռն պատգամաւորաց՝ երկուս լեգէոնս ի ձեռն տայր Վերուղանեայ Սեւերոսի եւ Վեկտիոսի Բոլանեայ հասուցանել ի թիկունս օգնականութեան Տիգրանայ արքայի, պատուէր տուեալ զամենայն կարգաւ եւ յօրինուածով քան եթէ ճեպով ինչ գործել, եւ առ կայսր գրէր յղել զօրավար զոք առանձինն ի պաշտպանութիւն Հայոց աշխարհին։ Քանզի ինքն յԱսորւոց աշխարհին զգոյշ կայր արշաւանին Մաղարշու, կարգէր զետեղէր զլեգէոնսն որ առ ձեռն կային՝ զափամբք Եփրատ գետոյ, եւ զքաջամութիւն խառնաղանճ զօրու նահանգին վառէր կազմեալ, զրաւէր ունէր զանցս մտին Պարթեւաց եւ խնոյր զջուրս կողմանցն։

Հեկանք ոսկիք եւ արծաթիք Ներոնի՝ յորոց ի միում կողմանն է գլուխ Ներոնի մերկ, եւ ի միւսումն՝ երբեմն պատկ ի կողնւոյ, երբեմն Դեմետրէ (դիք արմտեաց) կայ կանգուն՝ հասկս յաջում ձեռին եւ ղահ ի ձախումն. եւ դարձեալ՝ Զինուոր մի կանգնեալ յաջու ձեռին վաղակաւոր, եւ ի ձախումն նիզակ, եւ աջու ոտամբն կոխէ զկառափն մարդոյ կամ զառաղաւարոս մի։ Անտեղին ոսկի են յամէ 60, այլ նոյն պատկերք կրկնին եւ ի դրամս յաջորդ ամացն (61, 62, 63)։

Անդուստ աճապարէր Մանէճ յառաջ քան զհամբաւ իւրոցն հասանել, բայց հասեալ ի Տիգրանակերտ եգիտ լցեալ զօրականօք եւ պնդեալ համբարօք զքաղաքն որ ի բնէ ամուր էր պարսպօքն եւ փոսս առաջի. յետ ի հեռաստանէ անօսր նետիւք ի վերայ քաղաքացւոցն սպառնալոյ՝ մատուցանէին սանդուղս եւ մեքենայս Ատրպատականք, այլ մերժեցին զնոսա յետս ամրականքն մեծաւ կոտորածիւ:

Յայնժամ առաքէր Կորբուղոն առ Վաղարշ հրեշտակութեամբ զԿասպերիոս հարիւրապետ՝ որ առ Մծբնացւոց քաղաքաւ տայր զպատգամն առաջի թագաւորին Արեաց մեծաւ սաստկութեամբ. Խոնարհեցաւ, ասէր, երկիր նահանգին Հռոմայեցւոց, եւ թագաւորդ դաշնաւոր եւ նիզակակից Հռոմայեցւոց յարգել արկեալ պաշարես զվաշտս Հռոմայեցւոց. կամ ի բաց կալ պարտ է ի պաշարմանէ եւ կամ բանակն Հռոմայեցւոց փոխեսցի յերկիր սահմանաց քոց: Վաղ մեղմացեալ կակղացեալ էր թագաւորն վասն իւրոցն ձախողանաց. չգոյր խար երիվարաց, կերեալ սպառեալ էր մարախն զամենայն դեղ դալար, եւ պատրաստեալ լեգէոնք յԱսորիս. Թող առաքեմ, ասէր, հրեշտակս առ թագաւորն Հռոմոց խնդրել զՀայոց աշխարհ եւ հաստատել զխաղաղութիւնն. եւ առ Մանէճ յղէր ի բաց կալ ի Տիգրանակերտէ, եւ ինքն դառնայր այսրէն յետս. բայց եւ Կորբուղոն հարկ համարէր ի բաց հանել զզօրսն իւր ի Տիգրանակերտէ (61):

Այլ պատգամաւորք թագաւորին դարձան ունայն ի Հռոմէ, եւ յայտնի իսկ այնուհետեւ ձեռն ի գործ արկանէին Պարթեւք ի մարտ պատերազմի: Այլ որպէս յառաջագոյնն խնդրեալ էր Կորբուղոն, առաքեցաւ ի կայսերէ եւ Կեսեննիոս Պետոս ի զօրավարութիւն պատերազմին 3 լեգէոնօք, բերեալ պատուէր եւ վասն Պոնտացւոց, Գաղատացւոց եւ Գամրաց օգնական զօրացն. ընդ ակամբ իմն հայէր ընդ նա Կորբուղոն, բայց եւ Պետոս անգամեալ արհամարհէր զգործս նորա, անուամբ եւեթ ասէր զքաղաքս վկանդեաց. Ես, ասէ, զհարկս եւ զօրէնս Հռոմայեցւոցն, եւ փոխանակ թագաւորութեանն ստուերի՝ զհռոմէական իրաւունս ի վերայ պարտելոցն արկից: Այսպէս փքացեալ եւ ուռուցեալ՝ կամուրջ արկեալ անցուցանէր զզօրսն ընդ Եփրատ, եւ մինչեւ անցեալ ձմերայնւոյն եւ պատրաստեալ պաշարս՝ անցուցանէր փութանակի ընդ Տաւրոս առնուլ զՏիգրանակերտ: Առնուլ առ ամուրս ինչ եւ աւար դոյզն, այլ քանզի ընդ երկայն ճանապարհս թափառէր եւ պաշարն սպականէր եւ ձմեռնն տակաւին ի վերայ կայր՝ ի բաց դարձոյց այսրէն զզօրսն յետս, եւ գրէր թուղթ ի Հռոմ բանս մեծամեծս թափուրս յաղթեանց, որպէս թէ վճարեցաւ պատերազմն:

Digitized by Google

Նմին հակառակ Կորբուղոն ստէպ կայր պահէր զեզերսն Եփրատու, եկեալ հասեալ էին գունդք գունդք Պարթեւաց ի դաշտսն մօտաւորս խափանել զկազմած կամրջացն, այլ նա նաւս մեծամեծս գերանօք ընդ միմեանս կապեալ՝ աշտարակս ի վերայ կանգնէր, խաղացուցանէր ընդ գետն եւ բալիստրօք մերժէր զնոսա ի բաց առաւել քան զնետընկէց մի, եւ յառաջ վարեալ զգործ կամրջացն յայնկոյս առ ափամբք զբլուրսն գրաւէր, մինչեւ թողին լքին Պարթեւք զամենայն պատրաստութիւն յԱսորիս դիմելոյ եւ դարձան ի կողմանսն Հայոց մեծաւ ակնկալութեամբ յաղթութեան ընդդէմ Պետայ։

Բանզի աստ ուրեմն Պետոս անտեղեակ պարթեւական արշաւանին որ ի վերայ կայր, զմին ի լեգէոնացն թողեալ էր հեռագոյն ի Պոնտոս, զմնացեալսն անօսրացուցեալ՝ բազմաց հրաման տալով մեկնելոյ։ Խրատ տային նմա զօրագլուխք իւր առ ժամն զեզերբն յամել մինչեւ զզօրսն ստուարացուսցէ։ Այլ նա զի մի զայլոցն ինչ խորհրդոց զհետ երթեալ թուիցի՝ ի բաց հանէր զլեգէոնսն ի ձմերոցացն եւ խաղայր յառաջ։ Զառաջինն իբրեւ ետես թէ անկաւ հարիւրապետ մի սակաւաւորօք հանդերձ զօրօք առաքեալ էր առաջի իւր լրտեսել, զարհուրեցաւ դարձաւ յետս. այլ իբրեւ ետես թէ ոչ պնդեցաւ Վաղարշ այլ եւս զհետ, քաջալերեալ այնուհետեւ 3000 ընտիր ընտիր հետեւակաց ի գլուխ Տաւրոսեան լերինն որ անդ մօտ էր՝ կարգէր արգելուլ զանցս թագաւորին եւ զբուն քաջս առնեւձիոյ ի պատեհ տեղւոջ ի դաշտին զետեղէր, թողեալ եւ վաշտ մի ի պահպանութիւն կնոջն իւրոյ եւ որդւոյն զորս նստոյց յամրին Արշամաշատու. եւ այսպէս ցանեաց ցրուեաց զզօրութիւն գնդին իւրոյ։

Իսկ Վաղարշ թէպէտ եւ լուաւ թէ առատ հեծելազօրօք եւ անտի հետեւակօք եկեալ կալեալ է Պետոս զճանապարհսն, ոչ ինչ շրջեցաւ ի խորհրդոցն, այլ բռնութեամբ եւ սպառնալեօք զնոսա ահաբեկ առնէր, եւ զսոսա սուր ի վերայ եդեալ կոտորէր։ Ապրեալքն ի հետեւակաց անտի ընդ երկայն շաւիղս եւ ընդ անճանապարհ տեղիս խոյս վիրաւոր ի բանակն դառնային մեծացուցեալ առ ահին վտանգի զզօրութիւն թագաւորին Արեաց, զխստութիւնն եւ զկազմութիւն եւ զբազմութիւն ազգաց նորա։

Վաղ յառաջ քան զճախողանսն ակամայ ստիպեալ էր Պետոս ի զօրագլխացն առաքել զրոյց առ Կորբուղոն թէ տկարագոյն է առաջի թագաւորին. բայց եւ Կորբուղոն ոչ ինչ աճապարեաց, այսպէս զմտաւ ածեալ թէ յորժամ վտանգքն աճիցեն՝ գովութիւն օգնականութեանն յաճախիցէ. սակայն հրաման տայր 3000 լեգէոնականաց եւ 800 հեծելոց եւ դոյնչափ եւս օգնական զօրաց ուղւոյ պատրաստել։ Այլ իբրեւ հասանէր միւսանգամ գոյժ ի Պետեայ՝ որ այնուհետեւ զարհուրեալ վհատեալ առաքէր պաղա-

Digitized by Google

տանս առ Կորբուղոն գալ փութանակի ի պաշտպանութիւն զկրօ-շուց եւ արծուենշան նշանացն[1], յայնժամ թողեալ Կորբուղոնի զկէսն մի զօրացն ի պահ կամրջացն Եփրատու՝ միացելովքն եւ երամակաւ ուղտուց ռոճկաբերաց աճապարէր ընդ Կոմագենէ եւ ընդ Գամիրս՝ յերկիր սահմանացն Հայոց։ Ընդ առաջ գային նորա նախ Պակտիոս հարիւրապետ, ապա եւ այլ եւս զօրականն պատճառելով պատճառս փախստեանն, այլ նա առ իւրաքան-չիւր դրօշս դառնալ հրամայէր եւ ի Պետոսյ գտանել թողու-թիւն, զի եւ, ասէ, յորժամ թշնամւոյն յաղթէք՝ յայնժամ միայն տամ ներումն։ Իսկ ցիւր զօրսն ասէր քաջալերելով՝ ոչ ե-թէ ի պաշտպանութիւն գիւղից եւ քաղաքաց Հայոց երթամք, ասէ, այլ ի պաշտպանութիւն գնամք Հռոմայեցւոց բանակին եւ երկուցն լեգէոնաց, եւ ցուցանէր նոցա թէ միում միում ի զօրա-կանէ պսակ վասն ազատութեան այնց քաղաքացեաց պատրաս-տեալ կայ ընդունել ի ձեռանէ զօրավարին, եւ այնպէս առ հա-սարակ ուրախութեամբ զտիւ եւ զգիշեր վարէին յառաջ հա-սանել։

Այլ վաղ ի նեղ անկեալ էր Պետոս. զի Վաղարշ միանա-ցեալ մօտաւորին մերթ զամուրն Արշամաշատու հարկանէր, եւ մերթ յարձակել արկեալ տագնապեցուցանէր զլեգէոնսն, որ եւ բաց ի պատնէշսն արտաքս չիշխէին ելանել։ Ապա ուրեմն յուսա-հատ լեալ Պետոսյ նախ առաքէր թուղթ առ թագաւորն Արեաց տրտնջելով. եւ իբրեւ ոչ որպէս կամէրն ընկալաւ պատասխանի՝ յղեալ հրեշտակս ինքնին խնդրէր խօսել ընդ թագաւորին։ Առա-քեաց Վաղարշ զՎասակ զզօրավար հեծելազօրուն հանդերձ Մոնոբազաւ ատրպատականաւ. յետ երկուց աւուրց մաքառման, ապա միաբանեցին երկոքին կողմանքն, Արեաց՝ թողուլ ազատ ի պաշարմանէ զլեգէոնսն Հռոմայեցւոց եւ ամենայն իսկ զօրուն Հռոմայեցւոց ի բաց ելանել ի սահմանացն Հայոց, եւ զամենայն բերդս եւ զամուրս աշխարհին եւ զռոճիկ տալ ի ձեռս Արեաց, եւ յետ այնորիկ ունել Վաղարշու իշխանութիւն առաքելոյ հրեշտակս առ կայսր Ներոն վասն իրաց Հայոց աշխարհին։ Ընդէն հրաման տայր թագաւորն առաջի բանակին Արեաց արկանել կամուրջ ի վերայ Արածանւոյ[2] իբրեւ նշանակ յաղթութեանն Արեաց, յայն սակս եւ Հռոմայեցւոց չտուաւ թոյլ ընդ այն ան-ցանել, այլ՝ ընդ այլ գնային առքա կորակոր յետ անցանելոյ ընդ լծով[3]։ Կանխէին կային Հայք ի վերայ ճանապարհացն, զգերեալսն յառաջագոյն եւ զգրաստսն զոր ճանաչէին ի բաց հանէին ի նո-ցանէ. մինչեւ եւ զհանդերձս եւս եւ զզէն եւս զզարդ յափշտակէին

1 Արծուենշանն՝ դրօշ էր հանրէն լե-գէոնին յոսկւոյ կամ յարծաթոյ, կացու-ցեալ ի ծայր ձողոյ եւ տառամբ ունէր կայ-ծակունս թեւօքն։

2 Arsanias, որ է ինքն հարաւային բա-զուկն յերկուց բաժնից անուն Եփրատայ։

3 Տես եւ Սուետ. ի Ներ. ԼԹ. Յ. Եւ-տրոպ. եւ Որոսիոս։

Digitized by Google

եւ թողոյր խել զօրականն առ ահին զի մի պատերազմ լինէր ի մէջ դրդուեցի, ըստ զօրավարին խել խրատու։ Թողին լքին զվիրաւորսն իւրեանց. ի միում աւուր երթային անձնապարեալ իբրեւ 40,000 քայլ ճանապարհի։ Իսկ Վաղարշ հրաման տուեալ ածել կուտել զզէն եւ զզարդ եւ զդիակունս Հռոմայեցւոցն՝ զրահանս զրահանս առ ի ցոյցս պարծանաց, եւ ինքն հեծեալ ի փիղն արքունական եւ ազգականք թագաւորին յերկուսս՝ անցին ի լեառն ընդ գետն Արածանի եւ ոչ ընդ կամուրջն, քանզի հնչէր շշնչիւն առա՝ թէ նենգեալ շինողացն՝ խարխուլ զկամուրջն կազմեցին։

Ընդ առաջ պատահէր Կորբուղոն փախստէիցն առ ափամբք Եփրատայ. տրամեալ տխրեալ կային զօրագլուխքն, հազիւ կարէին տալ ողջոյն միմեանց վասն արտասուացն. համառօտ ինչ միայն զօրավարքն երկոքին ընդ միմեանս խօսեցան. ի բաց մերժէր Պետոս ի ձմերոց՝ ի Գամիրս յորժամ շառ յանձն Կորբուղոն ըստ խրատու նորա դառնալ միաբան ի պատերազմ։ Յետ պատգամաւորութեան ի միջի լինելոյ՝ Վաղարշու ընդ Կորբուղոնի, հաստատեցաւ՝ նմա զամենայն զօր պահապան ի բաց հանել յաշխարհէն Հայոց եւ նմա քակել զամուրս զոր յայնկոյս Եփրատայ գործեաց, եւ այնպէս թողան Հայք ինքնօրէն աղէկամի (62)[1]։

## 28

Մինչ դեռ ի Հռոմ ըստ առաջին թղթոցն Պետեայ՝ նշանք եւ տօնք յաղթութեան ի վերայ Պարթեւաց կատարէին եւ կամարք ի վերայ կապիտողեան բլրոյն կանգնէր ըստ ծերակուտին վճռոյ, անդէն ի սկզբան գարնայնոյն (63) հասանէին հրեշտակք Պարթեւացն հրովարտակաւ Վաղարշայ խնդրել՝ զի տացի թագաւորել Տրդատայ ի վերայ Հայոց։ Հարցաւ հարիւրապետն Հռոմայեցի որ ընդ հրեշտակացն եկեալ էր թէ ուստի կամ որպէս եւ կամ զինչ անցք ընդ Հայաստան անցին. նա կայր պատմէր զամենայն եւ թէ որպէս ի բաց ելին անտի ամենեքին Հռոմայեցիք։ Ի վերայ հասին այնուհետեւ թէ զոր վաղն առեալ են՝ զայն խնդրեն Պարթեւք. եհարց կայսր զմեծամեծսն, սահմանեցաւ պատերազմ մանաւանդ եւ ոչ խաղաղութիւն ամօթով, եւ զօրավարութեանն գործ յանձն լինէր Կորբուղոնեայ փոխանակ Պետեայ՝ այնպիսի ինչ իշխանութեամբ որով առաքեցաւ երբեմն Պոմպէոս ի վերայ ծովական հինին. իսկ զՊետոս յորժամ դարձաւն ի Հռոմ՝ այսչափ ինչ բաւական համարեցաւ կշտամբել կայսր, "Ներեմ, ասէ, քեզ վաղվաղակի, մի գուցէ որ այնպէս փաղփաղդ առ երկնչել եւ՝ յերկարագոյն հոգովք ի խօթութիւն ինչ անկանիցիս"։

Սակայն ամենայն այն առ ի ցոյցս զօրութեան էր. քանզի չկամէին Հռոմայեցիք աւելի ինչ քան զայս՝ զի ի Հռոմայեցւոց

1 Տակիտ. ԺԵ. ԳԼ. Ա—ԺԸ.

Digitized by Google

խնդրեցին Պարթեւք զԹագաւորութեանն հաստատութիւն։ Բայց զայն իսկ չառնուին Հռոմայեցիք յանձն թէ յայնպիսում ակարութեան եւ իբրեւ յայլոց պարտեալ՝ ի նոյն բռնադատեցին։ Յայն սակս եւ Կորբուղոն՝ թէպէտ եւ ժողովեալ եւս էր իսկ եւ իսկ լեգէոնս նորա եւ խաղացեալ յերկիրն Հայոց, եւ զոմանս ի նախարարաց երկրին որ նախն ի բաց կացեալ էին ի Հռոմայեցւոց փախստեայ յիւրաքանչիւր ամրոց հանեալ եւ քակեալ զամուրս նոցա՝ մինչեւ ցի առնել ահիւ զբնակիչս Հարթակողմանցն եւ զԵռանակողմանցն, ղաւառն եւ զանառաց, սակայն եւ այնպէս վաղվաղակի ընդ հրեշտակացն որ դառնային յայնժամ ի Հռոմէ, յղէր հարիւրապետս յուշ առնել Արեաց արքայի թէ չեւ եւս է վճարեալ պատերազմն, չէ պարտ չէ պատշաճ ա-կաւին ինչ աջողութեանց ամբարտաւանել. Նա՛ եւ այսպէս է, ասէ, Տրդատայ առնուլ պարգեւ զԹագաւորութիւնն եւ Վաղարշու նիզակակցից զՀռոմայեցիս ունել՝ զմտաւ ածեալ զերկպառակութիւն եւ զատամբակութիւն ազգացն որոց իշխէ, ուր Թագաւորքն Հռոմայ ամենայն ուրեք խաղաղութիւն է եւ առս միայն պատերազմ։

Քանզի եւ Վաղարշ չէր ինչ յօժար ի կռիւ ընդ Հռոմայեցւոց, յանձն առ. եւ ժամադիր եղեալ գայր Տրդատէս ի տեղին՝ ուր ընդ Պետոսայ պաշարեալ էին յառաջագոյն լեգէոնք Հռոմայեցւոցն։ Վաղագոյն յառաջեալ առաքէր Կորբուղոն ի բանակ անդր Տրդատայ զՏիբերիոս Աղեքսանդրոս (զեղբօրորդի Փիլոնի եբրայեցւոյ զդարձեալն ի հեթանոսութիւն) զպաշտօնեայ պատերազմի[1] եւ զՎինիկիանոս Աննիոս զիւր փեսայ ոչ միայն ի պատիւ մեծարանաց Տրդատայ, այլ զի եւ կասկած դաւաճանութեան ի միջոյ բառնայցի յորժամ զայնպիսի գրաւականս առ իւր ունիցի։ Այս յերկոց կողմանց քան քան հեծելովք առ միմեանս մատչէին. իսկ եւ իսկ իբրեւ ետես Տրդատէս զԿորբուղոն՝ վաղվաղ նախ իջեալ յերիվարէն եւ ոչ Կորբուղոն դանդաղեցաւ իջանել. առեալ այնուհետեւ զաջոյ ձեռն ի ձեռն իւերեաց՝ յառաջեալ գովէր զօրավարն Հռոմայեցի զարքայորդին զի թողեալ զպատերազմացն վտանգս՝ իմաստութեամբ զգուշաւորացն եւ զօգտակարացն եհար բուռն։ Իսկ Տրդատ նախ զազնուականութենէ իւրոյ արքունական առհմին յեղյեղեալ բազում ինչ՝ ապա յաւելոյր խոնարհութեամբ թէ երթամ ի Հռոմ առնել պատիւ մեծարանաց եւ յանձնել փառս կայսեր, այլ ոչ զի Արշակունիս ի պատասանս ինչ երթայցեմ՝ որպէս թէ ձախողեալ վատթարեալ իցեն Պարթեւք։

Այս յետ այնորիկ հաւանեալ յանձն առնոյր Տրդատէս հանել դնել զպատիւ Թագաւորութեանն առաջի պատկերին

1 Quartier-maître.

Digitized by Google

կայսեր՝ զի աղա ի կայսերն ձեռանէ առցէ ի գլուխ իւր. եւ վախ-ճան խօսիցն լինէր՝ համբոյր միմեանց տալով զօրավարին եւ ար-քայորդւոյն։

Այսպէս յետ աւուրց ինչ ի վերայ անցանելոյ՝ անտի կարգե-ցան կացին գունդք գունդք հեծելոցն մեծաւ շքեղ փառաւորու-թեամբ ըստ պարթեւական սովորութեանն, եւ առաջի խումբք լեգէոնացն մեծապայծառ արծուէնշան նշանօքն եւ դրօշաւքն եւ պատկերօք կայսերացն յետ մահուն աստուածացելոց. ի միջա-վայրի բեմին արկաւ աթոռն կայսերական [1] յորոյ վերայ հանգու-ցեալ կայր պատկեր Ներոնի։ Իսկ սա մատուցեալ Տրդատ՝ յետ ըստ սովորութեան զզոհսն ինքնին կատարելոյ՝ քանզի քուրմ իսկ էր, հանէր զԹագն ի գլխոյն եւ արկանէր առաջի պատկերին։ Յետ ամենայնի տայր Կորբուղոն ընթրիս Թագաւորին. անդ հարցանէր տեղեկանայր Թագաւորն զպատճառս զինուորական ինչ սովորութեանցն զոր նոր տեսանէր, թէ ընդէր զսկիզբն պա-հու պահանորդացն սրընգաւ ազդ առնիցէ հարիւրապետն, կամ զկատարած ընթրեացն եղջերափողով, եւ էր վասն ի վերայ բագ-նին կանգնելոյ առաջի տեղւոյ հաւադիտութեանն ի բանակի անդ՝ լուցանիցի խարոյկ յառաջնում պահու գիշերոյն [2], եւ զամենայն լուեալ յարգէր գովէր Թագաւորն։ Ի վաղիւ անդր խնդրեալ հրաժեշտ երթալ տեսանել զմայրն եւ զեղբարսն, Թողոյր զդուստրն պատանդ եւ թուղթ մի առ կայսր, եւ ինքն երթեալ գտանէր զեղբայր իւր զՓակուր ի Մարս եւ զՎաղարշ յԱտրպա-տական։ Իսկ սա տայր նմա պատուէր՝ մի յանարգութիւն առաջի Հռովմայեցւոցն զանձն իջուցանել, այլ հաւասար հիւպատիցն գտանել պատիւ (64) [3]։

Ամին իրի անկանէր Տրդատ ի ճանապարհ ընդ ցամաք մեծաւ փառաւորութեամբ բազմամբոխ մարդօք եւ սպասաւորաց դասա-կօք եւ անհնարին կազմութեամբ. եւ երթային ընդ նմա 3000 հեծելոց ի Հայոց եւ ի Պարթեւաց եւ բազումք ի Հռովմայեցւոց անտի, եւ յերկարեալ ձգէր ճանապարհն զամիսս 9. ընդունէին զնա քաղաքքն ընդ որ անցանէր տօնական զարդու եւ անհնարին ծախուք յարքունուստ ըստ կայսերական հրամանին։ Ի հասանել նորա յԻտալիա՝ առաքեցան նմա ընդ առաջ դեսպակք, քանզի ցայն վայր գայր հեծեալ յերիվար՝ սաղաւարտ ոսկի ի գլուխ։ Երթայր դէպ ուղիղ առ Ներոն ի Նէապոլիս եւ յետ զմրցու-թեանցն խաղս ցուցանելոյ՝ առ ած զնա ինքնին կայսր ի Հռոմ։ Ընթացաւ ընդ առաջ քաղաքն ամենայն ընդունել զնա եւ տե-սանել զԹագաւորն ինքնին ի գլխովին [4], զի էր իսկ բարենշան եւ գեղեցիկ հասակաւ եւ անձամբ։ Հրովարտակաւ ծանուցեալ

1 Sella curulis.

2 Այս ինքն՝ զի այնպէս զգիշերն ողջոյն բաժանեալ հուրն՝ առ նախ կացցեն ի պա-հու պահանորդքն։

3 Տակիտ. ԺԵ. Գլ. ԻԴ — ԼԱ.

4 Տակիտ. ԺԶ. Գլ. ԻԳ. ԻԴ.

Ներոնի զօրն՝ յորում տանելոց էր թագ Տրդատայ՝ գիշերախառն պատրաստեցաւ զարդարեցաւ Հրապարակն[1] սրահակօք ոսկեհուռն, և ամբոխ ժողովրդեանն ի հանդերձս սպիտակս կարգեալ կայր ի միջավայրի և զայլ կողմանս բակ առեալ ունէր զօրականն զինուքն փայլելովք, և տանիք ապարանիցն լի եղեն մարդկամբ: Ընդ այգն հասանէր Ներոն ի հանդերձս տօնականս ծերակուտին և անձնապահօքն հանդերձ և եկեալ ի բեմն նստէր յաթոռն կայսերական: Անտուստ և Տրդատ անցեալ ընդ մէջ զօրականին սպասաւորօքն իւրովք՝ առաջի կայսեր յողջոյն, ապա ի վեր ամբառնայր զնա կայսր աջու ձեռամբն և համբուրեալ զնա հրամայէր տալ նմա նստել ի վերայ աթոռոյն ի խոնարհ առաջի բեմին: Ընդ առեալ դնէր կայսր զթագ արքայութեան Հայոց ի գլուխն Տրդատայ, և այր մի յանձնապահաց անտի թարգմանեալ կրկնէր զբանս Հայոց թագաւորին ի լսելիս ժողովրդեանն, և ընդ նմին բարձրանայր գոչիւն աղաղակի ուրախութեան ամբոխին: Յետ այնորիկ ի թէատրոնին Պոմպէի, զոր ետ Ներոն զարդարել ոսկիապատ ի ներքուստ և հովանոցօք ծիրանեովք՝ կատարէին խաղք հրամանաւ ծերակուտին ի պատիւ Հայոց թագաւորին՝ զոր ընդ աջմէ իւր առ նստոյց կայսր, և ապա եղան ընթրիք մեծամեծք: Վասն այսր ամենայնի ողջունեցաւ Ներոն՝ Զօրավար և ածաւ պսակ դափնեայ ի Կապիտողինն:

Յապաղեցեալ դառնայր այնուհետև արքայ Տրդատ մեծապարգեւ ի կայսերէ՝ առեալ ընդ իւր բազմութիւն արուեստաւորաց ի շինուած Արտաշատ քաղաքի (66)[2]: Ի միւսում ամին սպանաւ զօրավարն քաջ Կորբուղոն ի Կենքրէս հրամանաւ Ներոնի (67):

Այր մեծ Տրդատէս հաւատարմութեամբ առ Հռոմայեցիսն, և ի խռովութիւնս անդ որ յետ մահուն Ներոնի եղեն՝ յարեցաւ ի Վեսպիանոս՝ որ անձապարեաց յղել առ նա պատգամ կալ հաւատարիմ ի ժամանակի զի ընտրեցաւ նա յարեւելս կայսր (69)[3]: Յետ ամաց ինչ դէպ լինէր Ալանաց անցանել ընդ պահակն իւրեանց կամ ընդ Դրունսն երկաթիս՝ դնել արշաւանս ի Մարս: Եղբայր Տրդատայ՝ արքայ Մարաց հազիւ կարաց թափել ի նոցանէ զիւր կանայսն 100 տաղանդօք: Ապա անցանէր հէնն և ի Հայս. եւ ընդ առաջ նոցա արքայ Տրդատէս ի ճակատ, բայց փոքր մնաց եւս եւ անկանէր նա ի բուռն. քանզի մի ոմն յԱլա-

1 Forum.

2 Սուետ. ի Ներոն. ԺԳ: Յովսեպ. Նախն. պատմ. ԺԷ. Գլ. Ե. 4: Պլին. Լ. Բ. Գ. 3: Դիոն ԿԳ. 1—7. ԿԱ. 3. ԿԲ. 19: — Կայ յամէ տասն յայսմանէ (66) դաճեկան Ներոնի պղնձի՝ յորայ ի միում կողմանն՝ է գլուխ Ներոնի պսակաւոր ի դափնեայ և վահան Եղեգ զլանիւք, և ի միւսումն կողմանն՝ տաճար Յանոսի դրամբ փակելովք և գիր շուրջանակի Paci p. r. terra mariq. parta Janum clusit; և կամ Հռոմ ի կերպարանս կնոջ նստեալ, նիզակ յաջոյն և վահան ի ձախում:

3 Տակ. Պատմ. Բ:

նաց ի հեռաստանէ ձգեաց պալատն ներդեայ եւ քարշէր յինքն մինչեւ անձապարեալ կարէր Տրդատ զներդեայն եւ այնպէս փախչէր անձնապուր (75)[1]. (որպիսի ինչ եւ ընդ անուանակից առաջին քրիստոնեայ Թագաւոր Հայոց դիպեցաւ. Խորեն. Գիրք Բ. Գլ. ՁԱ): Յայնժամ հարկ համարէր հայրն նորա Վաղարշ արքայ Արեաց խնդրել Թիկունս օգնականութեան ի Հռոմայեցւոց եւ զորդի մի յորդւոց Վեսպիանոսի տարեալ ի զօրավարութիւն պատերազմին ընդ Ալանաց: Ջանալ ջանայր ի Հռոմ Դոմետիանոս զի ինքն տարեսցի ի նոյն գործ եւ հնարէր խել պարգեւօք հաւանեցուցանել զԹագաւորսն արեւելից (զՀայոցն եւ զՄարաց եւ զՊարթեւաց) զի զնա խնդրեսցեն յանուանէ: Սակայն չեղեն ինչ պէտք իրացն. Ալանք յետ աւարառութեան դարձան ինքնակամ յետս[2]: Որչափ ինչ յետ այնորիկ Թագաւորեաց Տրդատէս՝ այն չէ յայտ:

Գ.

Փլաւեանք — Տրայիանոս, Ադրիանոս, Անտոնինոսք, Սեպտիմիոս Սեւերոս, Բ. Գ. Դ. Ե. հալածանք եկեղեցւոյ (70 — 211):

29

Մինչ դեռ յարեւմուտս Վիտելիոս, Գաղբա (Յունի. 68 — Յունուար. 69), Ոթոն (Յունուար. — Ապր. 69) եւ Վիտելիոս (Ապր. — Դեկտ. 69) մղէին զմիմեանս յաթոռոյ, անտուստ յարեւելս Վեսպիանոս ընտրեցաւ կայսր: Տիտոս Փլաւիոսն Վեսպիանոս (կամ Վեսպասիանոս ծն. մօտ ի Ռէատէ) ուստի առ սկիզբն նոր տոհմ կայսերական՝ էր յառաջագոյն առաքինացեալ զօրավարութեամբ ի Բրիտանացւոց պատերազմին եւ ի նահանգին Ափրիկեայ կացեալ կուսակալ մեծաւ աջողակութեամբ, եւ այժմ ուրեմն մղէր ճակատ ընդ Հրէից մեծաւ իմաստութեամբ: Իբրեւ լուաւ Վեսպիանոս թէ Գաղբա թագաւորեաց՝ առաքեաց զիւր որդի զՏիտոս ի Հռոմ տանել մեծարանս նորոյ կայսերն: Իբրեւ գնացեալ Տիտոս միւսանգամ ի Պաղեստին լուեալ զլուր մահուն Գաղբայ, այնուհետեւ Գ. Լիկինիոս Կրասսոս Մուկիանոս եւ Տիբերիոս Աղեքսանդրոս կուսակալ Եգիպտացւոց աշխարհին՝ յորդորեցին զՎեսպիանոս լինել կայսր. իբրեւ ակամայ իմն առ յանձն, նախ յԱղեքսանդրիա առաջնորդութեամբ Տիբերեայ Աղեքսանդրի երդմնի եղեւ նմա զօրն (1 Յուլ. 69) եւ ապա (3 Յուլ.) ի Կեսարիա գունդն Հրէաստանեայց: Թողեալ այնուհետեւ Վեսպիանեայ զգործ հրէական պատերազմին ի ձեռն Տիտոսի եւ առաքեալ յառաջոյ քան զինքն զՄուկիանոս մասամբ

1 Յովսեփ. Վասն Հրէից. պատ. Գիրք Է. Գլ. ԻԷ. 2 Սուետ. ի Դոմետ. Բ:

մնալ զօրացն յիտալիա՝ մինչ շրջէր ընդ Ասորիս ժողովել արծաթ ի զարդ պատերազմին։ Մինչ չեւ Մուկիանու հասեալ՝ եկին ի կողմն Վեսպիանեայ Անտոնիոս Պրիմոս հրամանատար Պաննոնացւոց եւ Միւսիացւոցն լէգէոնաց եւ տարմիզ նաւացն ի Ռաւեննա։

Առաքէր Վիտելլիոս ի Հռոմէ զԱղիէնոս Կեկինա ի վերայ Պրիմոսի. Թէպէտ եւ աճապարեաց կալաւ Կեկինա զԿրեմոնա բայց անվստահ ի զօրսն իւր՝ յանձն առ յարել ի Պրիմոս եւ զզօրսն եւս ի նոյն հաւանեցոյց հրապարակախօսութեամբ։ Սակայն իսկ եւ իսկ շրջեցան միտք նոցա, ընտրեցին միաբանգամ զՎիտելլիոս մեծաւ աղմկաւ, զԿեկինա կալան ձերբակալ եւ զՊրիմոս եւս յորդորէին յարել ի Վիտելլիոս։ Յետ մանր մանր ինչ ճակատուց՝ ապա առ Բեդրիակոնիւ զրգռէր ճակատ մեծ յորում զօրքն Վիտելլեայ առանց զօրավարի այնպէս աներկիւղ եռանդն պատերազմէին զի գիշերն միայն կարաց հատանել զկռիւն ընդ մէջ, եւ ի վաղիւ անդր (30 Հոկտ.) յետ անհնարին սաստիկ կռուոյ՝ ապա սուտ համբաւաւ թէ Մուկիանոս ի վերայ հասեալ կայ՝ տխրեցան առաքել զկապեալն Կեկինա առ Պրիմոս ի դաշինս խաղաղութեան։ Թէպէտ եւ այն դաշինք կատարեցան՝ սակայն իբրեւ բացին զդուռնս քաղաքին՝ որ լի էր յայնժամ վաճառականօք, եղեւ ամենայն աւար զօրացն Պրիմեայ, նա աւանիկ եւ զօրականին իսկ Վիտելլեայ, եւ սպանան ի պատերազմին եւ ի քաղաքին իբրեւ 15,000 այր։

Ի Հռոմ՝ բդեշխքն երկոքին Ատտիկոս եւ Կեկիլիոս հանդերձ Սաբինեաւ Վեսպիանեայ եղբարբ չոգան ի պաղատանս հաւանեցուցանել զՎիտելլիոս զյուսաբեկն եւ զարհամարհեալ յամենեցունց, թողուլ ի բաց զթագաւորութիւնն, բայց իբրեւ մերժեցան ի գերմանացի անձնապահաց անտի՝ առեալ զԴոմիտիանոս զմեւս որդի Վեսպիանեայ եկին ի Կապիտողիոնն։ Պաշարեալ զնոսա կուսակցացն Վիտելլեայ նախ զշէնսն շուրջ զբարձրաւանդակաւն Կապիտողիոնին այրեցին, եւ ապա ելեալ ի բուն կատարն յետ կռուելոյ զբազումս ի մարդկանէ եւ զնուէրսն յափշտակելոյ՝ հրձիգ արարին զմեհեանն Արամազդայ եւ բդեշխքն երկոքին առաքեցան ձերբակալ առ Վիտելլիոս։

Անտոնիոս հասանէր առ պարսպօքն Հռոմայ զօրն Վեսպիանեայ զօրավարութեամբ Պետիլիոսի Կերէալեայ աներոյն Վեսպիանեայ, եւ Պրիմեայ։ Իբրեւ Կերէալիս յանձնուկ փութայր քաղաքին ի նեղ մեծ անկաւ՝ յուսացաւ Վիտելլիոս թէ մարթի այսու հետեւ դաշանց ինչ խաղաղութեան ի միջի լինել, նմին իրի խաւրոց զօրացն հրաման տայր յետս կալ։ Այլ իբրեւ ետես Վիտելլիոս թէ խաբեցաւ ի միտս իւր, ցնցոտեօք՝ միայն հացարար մի եւ խոհակեր ընդ իւր առեալ եւ փախստեայ՝ անկանել ապաւինել ի Տերրակինա. ապա իբրեւ միաբանգամ խաբեցաւ համբաւաւ

Digitized by Google

ուլք խաղաղութեան դարձաւ ի պաղատն. զոր իբրեւ եգիտ դա-տարկ ի մարդկանէ՝ սողեցաւ ներքս թաքչել ի խուղ դռնապա-նին ածեալ զօտի ընդ մէջ լցեալ ոսկեդէք դահեկանօք: Ապա գտին զնա զինուորքն արիւնալից խածատեալ ի շանց եւ կիսամեռ մերկանդամ, եւ կապեալ ձեռս յետս, ճոպան ի փող՝ ձգեցին ընդ քարշ յերեւելի հրապարակս քաղաքին, մինչեւ զինուոր մի գեր-ման յազգէ հար զնա առ գլխայն, եւ ապա շրջեցուցին զգլուխ նորա ընդ քաղաքն ամենայն (22 Դեկտ.):

Յետ Վիտելեայ վախճանին հասեալ Մուկիանոս ի քաղաքն՝ առաջնորդէր ամենայնի անուամբ եւ կնքովն Վեսպիանոսի. կա-ցուցաւ Դոմիտիանոս առաջի զօրացն իբրեւ որդի կայսերն, ընկա-լաւ եւ ծերակոյտն զՎեսպիանոս եւ որդւոցն նորա տայր անուն՝ կեսարս: Իսկ Վեսպիանոս որ յԱսորւոց անտի անցեալ էր յԱ-ղեքսանդրիա ժողովել իւր արծաթ՝ ել ի քաղաքէ անտի բարկու-թեամբ վասն թշնամանացն զոր կրեաց նա յԱղեքսանդրացւոց ան-տի՝ որք վասն յառաջակամ ընծայութեանն իւրեանց վարձուց ակն ունէին ի կայսերէ, բայց նա ընդ այնր ծանր հարկս արկ ի վե-րայ նոցա եւ զմեհեանս եւ զգանձս նոցա զհասարակաց թափեաց դատարկացոյց:

Սակայն Հռոմ ընկալաւ զնա ի սկզբան աշնայնւոյն (70) մե-ծաւ սիրով եւ եղեւ իսկ մեծարոյ եւ ընդունելի քաղաքացեացն: Էր նա արդարեւ պատշաճ թագաւորելոյ ի ժամանակին յայն-միկ յորում գրեթէ քայքայեալ իսկ էր տէրութիւնն: Վասն որոյ միւսանգամ զպատեալ զանձ աշխարհին՝ եդ դարձեալ զա-ռաջին չափ հարկին, եւ զնահանգսն զոր հանեալ էր Ներոնի յա-զատութիւն՝ միաւորեաց միւսանգամ, զՀռոդոս, զՍամոս, զԼիւ-կիա, զԱքայիա, զԹրակիա, զԿիլիկիա եւ զԿոմմագենէ: Նուա-զութեամբ շինէր շինուածս հասարակաց (յորոց մի է հոյակապ Կողոսէոնն մեծ՝ երեւելի քան զամենայն թատրոն Հռոմայ) եւ մատենադարան մի: Շինեաց միւսանգամ զմեհեանն Արամազդայ, եւ քանզի ի մեհենին յայնմիկ այրեալ էին երեւելի յիշատակա-րանք տէրութեանն՝ ետ նա ժողովել զօրինակս նոցին որ գտան, եւ եդին առ հասարակ իբրեւ 3000 տախտակք պղնձիք: Փոյթ էր նմա զհասարակաց ուսմանէ, յոր կարգէր եւ վարձուք ուսուցիչս: Նո-րոգեաց միւսանգամ զպահպանութիւն զինուորական կարգաց, եւ էր խիստ եւ անաչառ այլ ոչ բռնաւոր. զդատաստանս արքունա-կան յանցանացն՝ զորոց վերադոյն ճառեցաւ, զայն բարձ ի միջոյ, եւ դարձոյց ի ծերակոյտն զառաջին պատիւ մեծարանացն՝ յետ հե-ռացուցանելոյ ի միջոյ զանարժանսն: Բայց սակայն ըստ խրա-տուն Մուկիանու զփիլիսոփայսն ստոյիկեանս եւ կիւնիկեանս հան ի Հռոմայ՝ այնու զի վարդապետութիւն նոցա չէր համեմատ միա-պետական առաջնորդութեան: Զ.Յուլիոս զոմն Սաբինոս՝ որ ի

Յուղիոսն Սեսարեայ ներեալ զանձնէ ասէր եւ անուանէր զանձն Կեսար՝ որպէս չեղեալ մեռ պաղատանաւքն բանից նորա. Նոյնպէս եւ զՀեղուետիոսն Պրիսկոս որ նախատեալն էր զնա՝ որպէս իբրեւ ռամկավար գրգռիչ, այլ ապա ընդ այն աւաղէր թէ չսպանանելոյն հրաման անագան եհաս։ Նա աւանիկ եւ մտերիմն նորա Աղիէնոս Կեկկինա ի դաւաճանութեան գաեալ սպանաւ։ Եւ քաղաքային պատերազմօքն որ վասն կայսերութեան եղեւ՝ ապստամբեալ էին ի Հռոմայեցւոց Բատաւացիք, յորս յարեցան եւ բազում ազգք Գաղղիացւոց եւ Գերմանացւոց. Վեսպասիանոս Կերէալիս զօրավար պատերազմաւ սաստեաց ած զնոսա ի պատգամաւորութիւն դաշանց, բայց սակայն հարկ համարեցան եւ Հռոմայեցիք ընդունել զԲատաւացիս իբրեւ դաշնաւորս (69—70)։ Նմին հակառակ քաջն Յուլ. Ագրիկոլա նուաճէր մեղմականութեամբ եւ արդարութեամբ զամենայն հարաւային Բրիտանիա (Անգղիա), եւ ամրացուցանէր որմով յերեսաց հիւսիսային Բրիտանացւոց (Սկովտիացւոց) եւ նաւէր շուրջ զՍկովտիա (78—85)։ Մեռաւ Վեսպասիանոս ամաց իբրեւ 70, կացեալ կանգուն ի ձեռս սպասաւորացն ասելով՝ թէ Ինքնակալն պարտ է կանգուն մեռանել (23 Յունի.)։

2. Տիտոս Փղաւիոս Վեսպասիանոս (79 — 81) պայազատէր զհայրն ամաց իբրեւ 40։ Էր նա կրթեալ ընդ Բրիտանիկոսի Ներոնի հրահանգօք, բարենշան, պատկառելի երեսօք, սուր ուշով յիշողական, աջողակ ի զէն եւ յերիվար, քաջ վարժ ի հռոմայեցի եւ ի յոյն լեզու որովք եւ ճառս եւ երգս իսկ յօրինէր, եւ ճարտար յարուեստ երաժշտաց։ Առաջին կեանք նորա լի էին անառակութեամբ առ թշնամին իւր եւ շուայտութեամբ, մինչեւ երկնչել իմն թէ մեւս եւս Ներոն երեւելոց իցէ, այլ յառաջինմէ օրէ իշխանութեան իւրոյ եցոյց նա զանձն արժանի կոչելոյ "Բերկրութիւն մարդկեղէն ազգի"[1]։ Սովոր էր կորուսեալ զօրն անուանել յորում չէր ումեք արարեալ երախտիս, եւ բազում անգամ լուան զի ասէր թէ ոչ ոք պարտի գնալ տրտմեալ յերեսաց կայսեր։ Նա եւ առ թշնամիսն եւ առ դաւաճանս՝ եցոյց նա զինքն մեծանձն ըստ քրիստոնէական իմն չափոյ՝ եթէ արժան իցէ ասել. միայն զրպարտիչքն որ ժանտ իմն ի մէջ մարդկան էին՝ առին զչափ արդար խստութեան նորա, զանազան հալածեալ ի Հռոմայ։ Ի ժամանակս աւհագին սասանութեանց եւ յորդութեանց լերինն Վեզուվայ, որովք ծածկեցան Հերկուլանոն եւ Պոմպէիք եւ Ստաբիք[2] եւ վնասեցան Պուտէոլիք, Կումիք եւ այլ եւս տեղիք (79), չոգաւ ի Կամպանիա վասն նպաստաւորութեան նեղելոցն. եւ ի լինել հրդեհ ի Հռոմ 3օրեայ, եւ զհետ նորա սրածութիւն՝ եցոյց զմարդասէր բարսն, տալով յիւրոց ընչից

1 Delicium generis humani. Մանուանդ. Պոմպէիք, ուստի բազում գանձք
2 Ի 100 ամաց հետէ պեղմն քաղաքացն, հնութեան որ ըստ օրէ ելանեն։

կառուցելոյն, եւ նոքիմբք կանգնէր յիշատակարան մնայուն ի սիրտ ժողովրդեանն առաւել քան հոյակապ շինուածովքն իւրովք։ Այրեալ էր հուրն զանգին մատենադարանն Օգոստեայ, զԹատրն Պոմպէի եւ զմեհեանն Կապիտողեան. Թէպէտ եւ զսոսա ոչ՝ սակայն զայլ եւս շինուածս հասարակաց յիւրոց ընչից կանգնեաց, հան ի գլուխ եւ զշինուած Կողոսէոնին եւ զբաղանիսն զոր վասն աղքատաց ետ շինել որ եւ ի նորա անուն կոչի՝ Տիտոսի բաղանիք։ Զերկոցունց սոցա նաւակատիս կատարէր յաւուրս 100 մրցութեամբ սուսերամարտկաց, կոտորածիւ 9000 գազանաց եւ նաւամարտիւ կռուով յամփիթէատրոնին լցելոյ ջրով։ Այլ աղէտք այն են՝ զի յետ երկուց ամաց ի ծաղկի կենացն տենդիւ վախճանէր յերկրին Սաբինացւոց. անհնարին էր սուգ ժողովրդեանն ի վերայ նորա (13 Սեպտ. 81)։

3. Տիտոս Փղաւիոս Դոմետիանոս (81—96) կրսեր եղբայր եւ պայազատ Տիտոսի՝ որ վաղ իսկ ի սկզբան Թագաւորելոյ եղբօրն՝ կամէր լինել բաժնակից՝ պատճառելով իմն Թէ այլայլեալ իցէ կտակ հօրն, մինչ չեւ հանեալ Տիտոսի զոգին՝ աճապարեաց ի Հռոմ ի կայսեր անձնապահացն։ Ի սկզբան Թագաւորութեանն ուղղութիւն իմն ցուցանէր շինելով զԿապիտողիոնն եւ զայլ եւս շինուածսն այրեալս, տալով ժողովել օրինակս գրոց ի մատենադարանէն Աղեքսանդրիայ փոխանակ այրելոցն մատենից, սկսելով արդարութեան դատաստանաց եւ տեսչութեան նահանգաց, եւ արգելլով զգիրս նախատանաց առն ի վերայ ընկերի իւրոյ։

Այլ յետ սակաւ ինչ միոյ՝ դարձան այսրէն ժամանակքն Ներոնի։ Ի վերայ զուր ամբարտաւանութեանն եւ մանկական անպարծութեան՝ էր նորա յօժարութիւն անչափ իմն վատնութեան՝ որ ածէր զնա ի հարստահարութիւնս եւ յանագորոյնութիւնս՝ հաստատելով միւանգամ զդատաստանս արքունական յանցանացն եւ նեցուկ բռնաւորութեան իւրոյ արարեալ զզօրականն զվարձն աճեցուցանելով։ Զամիսսն Սեպտեմբեր եւ զՀոկտեմբեր ետ կոչել ըստ իւրում անուան Գերմանիկոս եւ Դոմիտիանոս, քանզի ի միումն ծնեալ էր եւ ի միւսումն Թագաւորեալ. եւ մեհեան եւս տայր կանգնել վասն Փղաւեան ցեղին։ Այն որ նստեալ ի շինին իւրում առ ստորոտով Ալբանեան լերինն որսայր ճանճս (քանզի այն իսկ էր նորա զբօսանք մեծ քան զամենայն), ժպիրհ ամբարտաւանութեամբ անուանէր զանձն ի հրովարտակս իւր "Տէր եւ Աստուած", Թէպէտ եւ ծանօթ էր ամենեցուն անզօր տկարութիւն նորա։

Քանզի ծաղր եղեւ նա արշաւանօքն զոր ի վերայ Կատտաց եդ եւ տանելովն ձաղանս վասն յաղԹութեան՝ զոր չէր կատարեալ։ Պատերազմող ազգք Դակաց եւ Գետաց առաջնորդութեամբ Թագաւորին իւրեանց Դեկեբաղայ միաբանեալ ընդ դրացեացն

Digitized by Google

եւ առ ի բաւական լինելոյ ծախուցն՝ եա փոխել զանդրիսն Դոմիտիանու զոսկիս եւ զարծաթիս ի դրամս, նա աւանիկ եւ զիւր աւելորդ սպասս, եւ խափանեաց զբազմագին խաղսն մրցանաց։ Թէպէտ եւ զայս ամենայն հաւանութեամբ ծերակուտին առնէր՝ այլ ժողովուրդն ընդելեալ ընդ խաղսն եւ զօրականն ընչասէր քրթմնջէին։ Սակայն Ներուա ջանայր շահել զնոսա ներելովն մեծանձնութեամբ Կալպուռնիոսի Կրասոսի՝ որ խորհեցաւ նմա դաւաճանութիւն, եւ անձնապահացն որ գրգռեալն եկեալ էին առ նա խնդրել զմահ Պարթենիոսի եւ Պետրոնիոսի՝ մատոյց զիւր պարանոցն զի զնոսա զերծուսցէ, այլ զուր։ Նմին իրի յետուստ քանզի անորդի էր՝ առ յորդեգիրս եւ ի ժառանգ զՏրայիանոս զօրավար սպանիացի (ծն. 18 Սեպտ. 54 յԻտալիկա քաղաքի) որ սիրելի էր առաջի զօրուն (Հոկտ. 97), եւ յետ սակաւ ժամանակեան այլ ուրախարար իշխանութեանն՝ թողեալ համբաւ լաւութեան եւ ազնուականութեան վախճանէր (Յունուար. 98) տենդիւ զոր ջեռաւ նա ի կշտամբել իւրում զոք սաստկութեամբ։ Յառաջ իսկ քան զնա վախճանեալ էր Վիրգինիոս Ռուփոս 83 ամաց, այն որ ի գժտութեան՝ թէ ո՛ իցէ լինելոց կայսր, երիցս մերժեաց զհրաւէրն ընդունելոյ զպատիւն։

2. Մ. Ուղպիոս Տրայիանոս (98—117) 43 ամաց (առաջին կայսր ոչ հռոմայեցի, միանգամայն մեծ եւ երեւելի, իբրեւ զօրավար եւ իբրեւ մարդ), անց ի մէջ իբրեւ նոր իմն առաւօտ հռոմէական պետութեանն։ Նա յետ բառնալոյ զդատաստանս ամբաստանական յանցանացն՝ նորոգեաց միւսանգամ զառաջին ազատ կարգսն. դարձոյց ի ժողովս ժողովրդեան զիրաւունս ընտրութեանցն յիւրաքանչիւր պաշտամունս, եւ ետ ծերակուտին զազատութիւն ցուցանելոյ իւրաքանչիւր զիւր կարծիս, եւ ի դատաւորսն՝ զճոխութիւն մեծարանացն։ Առաջնորդէր նա մինչեւ եւ ի մանր մանր ինչ իրս, էր սակաւապէտ վասն անձինն, առատ ի հասարակաց օգտակար ծախս, որպէս՝ վասն վարժոցաց յուսումն մանկտւոյ աղքատաց ի քաղաքսն Իտալիոյ ըստ խրատու կնոջն իւրոյ լաւի Պղոտինայ, եւ վասն արքունական պողոտայից, վասն ջրմղի[1], յիշատակարանաց եւ շինուածոց (յորոց մի է հոյակապ սիւնն Տրայիանու՝ յիշատակ պատերազմաց նորա, 128 ոտն բարձրութեամբ, որ ցայժմ կայ ի հրապարակին զոր ինքն շինեաց[2]. զայն սիւն կալաւ օրինակ՝ Մարկոս Աւրելիոս յորժամ եան շինել սիւն վասն պատերազմին Մարկոմանաց, եւ Նապոլէոն ի շինել զսիւնն Վանդոմայ ի Պարիս)։ Ի նմանէ շինեցաւ եւ նաւահանգիստն Կենդում-Վեքքիէ (Չիւիթավէքքիա)։ Առ հասարակ իսկ առ նովաւ արուեստն հռոմէական եհաս ի կատար բարձրութեան իւրոյ։

1 Aqua Marcia.

2 Forum Ulpium.

Հան նա զվրէժս ծանականաց Հռոմայեցւոցն ի Դակաց, զի յաղթեալ նոցա պատերազմաւ՝ բարձ զհարկն ամենամեայց և զԴեկեբաղոս առիպեաց ի հնազանդութիւն (101—103) և ինքն կատարեաց զաւաչին ձաղանսն։ Այլ միւսանգամ յետս եկաց Դեկեբաղոս (105) և ըմբռնեալ նենգութեամբ զԼոնգինոս զօրավար կայսեր՝ պահանջէր փոխանակ ընդ ազատութեան նորա տալ մեծամեծ սահմանս երկրի։ Մինչ դեռ տատանէր կայսր՝ Լոնգինոս անձին արար զի զերծուցէ ի վարանաց զհայրենիսն։ Այնուհետև արկեալ Տրայիանու կամուրջ ի վերայ Դանուբ գետոյ՝ ետ ճակատ մեծաւ զօրութեամբ և յաղթեաց։ Դեկեբաղոս ընդ իւր սուրն եղանէր, և գանձք նորա գտան թաղեալ ի յատակի Սարգետիա գետոյ։ Կատարեաց Տրայիանոս զերկրորդ ձաղանսն ի վերայ Դակաց, և ի Դակիա որ նահանգն եղև Հռոմայեցւոց՝ բնակեցոյց տունս հռոմայեցիս աղքատս, յորոց բազում քաղաքք շինեցան։

Նա և ընդ հզօր ազգին Պարթևաց ետ մարտ պատերազմի (երկիցս) վասն կարգելոյ պայազատ յաթոռ թագաւորութեանն Հայոց (նախ յամի 107 և ապա յամի 114—116)։ Ընդ Տրայիանոս ընդ Եփրատ և ընդ Տիգրիս, առ զՍեղևկիա և զՏիզբոն, Հայաստան և Միջագետք և Ասորեստան եղեն նահանգք Հռոմայեցւոց առ սակաւ մի ժամանակ, և յաթոռն Պարթևաց եդաւ թագաւոր այլ։ Մինչ ի ձեռն կուսակալաց նորա և Նուբիա եղև ընդ Հռոմայեցւովք (մինչև ցկէս երրորդ դարու), անտուստ Տրայիանոս խաղաց եհաս մինչև ցգոգ ծովուն Պարսից, կամէր արշաւել յԱրաբիա՝ զորոյ զհիւսիսայինն կողմն Պաղմա կուսակալ Ասորւոց վաղ կալեալ էր (105), այլ Ադրիա քաղաք եղև նմա դիմակալ, և ապա յախտ (Ջրգողութեան) անկեալ ստիպէր դառնալ ի Հռոմ. վախճանէր զճանապարհայն (Օգ. 117) 64 ամաց ի Սելինոս (Տրայիանուպոլիս)։ Այլ աճիւն նորա ոսկւոյ սափորով եդաւ ի ներքս ի սեանն շինելոյ ի նմանէ։ Դարս երկուս գոչէր պայազատաց նորա ծերակոյտն. "Դու լեր երջանկագոյն քան զԱւգոստոս և ազնուագոյն քան զՏրայիանոս"։

3. Այսու իսկ վարուց նորա են աշխարհակալութեանն ցանկութիւն և ցանկասիրութիւն. և զի այնպէս համարէր թէ մերժումն պաշտաման աստուածոցն, յոր ինքն յարեալ իսկ էր, քաղաքային յանցանք իցեն՝ մուծաւ Տրայիանոս զազնուականութիւնն և զզգօն բարձն և ի վերայ քրիստոնէից ցուցանել, մինչև հալածել իսկ զոսա մահուամբ. և արգելոյր զժողովս նոցա՝ խառն ընդ ծածուկ չարաչարն ընկերութեանց[1]։

Ամօք ինչ կանխագոյն քան զամն 103 կայր ինչ հալածումն ի Բիւթանիա՝ որպէս յայտ ի թղթոյ Կրտսերոյն Պղինեայ

[1] Hetaeria.



Digitized by Google

է՝ քեռորդւոյ Մեծին Պղինեայ եւ կայսերն իսկ բարեկամի որ էր կացեալ փոխանակ բդեշխի նահանգացն Բիւթանիայ եւ Պոնտոսի (103—105). այն թուղթ որպէս եւ պատասխանի կայսերն տան տեղեկութիւնս վասն դատաստանացն որ զքրիստոնէից լինէին։ Յայտ առնէ Պղինիոս՝ թէ չիք ինչ յայտնի սահմանեալ վասն դատելոյ զքրիստոնեայսն. յայն սակս հարցանէ՝ թէ չիցէ՞ պարտ արդեւք գնալ ներելով հասակին նոցա, եւ կամ յորժամ ի բաց կացեալ իցեն ի քրիստոնէութենէ. կամ թէ անունն քրիստոնէութեան առանց յանցանաց բաւակա՞ն իցէ առ ի պատիժ։ Յետ այնորիկ պատմէ նա թէ որպէս ինքն զդատաստանսն վճարիցէ. «Հարցանէի, ասէ, թէ քրիստոնեա՞յք իցեն. իբրեւ ասէին թէ այո, հարցանէի երկիցս եւ երիցս սպառնալով մահ։ Որ ի նմին յամառէին՝ զնոսա առաքէի ի պատիժս առանց ընդբանս ինչ ածելոյ. քանզի թող իցէ որ ինչ իցէ դաւանութիւն նոցա, սակայն որպէս կարծեմ զոնեայ դիմադարձութիւնն նոցա եւ անհնարին յամառութիւն՝ արժանի է պատժոյ։ Յանցանք քրիստոնէիցն, ասէ, որպէս նոքին պատմեցին որ ի նոցանէն դարձեալ էին, ոչ ինչ այլ ինչ է՝ բայց ի սահմանեալ ինչ աւուր յառաջ քան զծագել արեւու ժողովել ի միասին եւ երգել փոխնփոխ երգս ինչ Քրիստոսի իբրեւ Աստուծոյ, դնել դաշինս միմեանց՝ չգողանալ, չյափշտակել, չշնալ, չերդնուլ սուտ, չուրանալ զաւանդն։ Ապա մեկնին ի միմեանց եւ յետոյ միւսանգամ ժողովին ի սեղան ինչ հասարակաց։ Բայց եւ այս սեղան կայսերական հրամանաւն (որ արգել զծածուկ ընկերութիւնսն) այժմ արգելաւ։ Յետ զայս լսելոյ, ասէ, հարկ համարեցայ երկուս աղախնայս զոր նոքա սպասաւորս[1] անուանեն, տանջել՝ զի ի վերայ հասից իրացն ճշմարտութեան։ Այլ ոչ ինչ եգի ի մէջ, բայց անչափ ինչ աւելորդ կարծիք[2]. յայնժամ, ասէ, դադարեցուցի զհարցափորձն եւ առ քեզ դիմեմ։ Արժանի խորհելոյ ինձ իրքն թուին՝ մանաւանդ վասն բազմութեան ամբաստանելոցն։ Քանզի բազումք յամենայն հասակէ, յամենայն կարգէ, յարանց եւ ի կանանց ամբաստանութիւն կրեն կամ կրելոց են։ Ոչ ի քաղաքս միայն, այլ եւ ի գեղս եւ ի շէնս սփռեցաւ եմուտ այս ժանտ աւելորդն պաշտաման՝ զորոյ զառաջս դեռ եւս մարթի առնուլ, որպէս թուի։ Զի աստոյգ իմն է՝ եթէ յայնժամ միւսանգամ լցցին մեհեանք՝ որք արդ լքեալ թողեալ են, եւ նուիրական սովորութիւնք՝ որ ի բազմաց հետէ դադարեալ են՝ միւսանգամ կատարեսցին, եւ ի բազում տեղիս դարձեալ անասունք զոհից գնիցին ի վաճառ, որոց գնողք վաղ անօրացան. աստուստ մարթի ի մտի առնուլ՝ թէ որչափ բազմութիւն մարդկան մարթի դառնալ յուղղութիւն՝ եթէ տացի տեղի զղջանաց»։

1 Ministrae. 2 Superstitio.

Տայ նմա պատասխանի Տրայիանոս, թէ «Պահեալ ես զճանապարհն ուղիղ ի հարցափորձի ամբաստանելոցն վասն քրիստոնէութեան։ Քանզի չմարթի վասն իրացս այսոցիկ կարգել մի ենթ կանոն առ հասարակ։ Չէ պարտ խնդրել գտանել զնոսա, այլ եթէ ամբաստանեսցին եւ ցուցցին յանցեալք՝ յայնժամ պատժեսցին»։ Դարձեալ հրաման տայ չդնել ունկն ամբաստանութեանց որ առանց ձեռնագրոյ իցեն, զի այն, ասէ, յօրինակ չարութեան լինիցի եւ հակառակ մերոցս ժամանակաց է։

Այլ եթէ քրիստոնեայքն յանցաւոր էին եւ մահապարտք՝ ընդէ՞ր չտայ հրաման որոնելոյ զնոսա. ապա թէ արդար՝ հի՞մ պատժէ յորժամ գտանին[1]։ — Սակայն եւ այն անիրաւ հրաման թուի թէ մեղմացոյց զհալածումն, այլ ոչ ամենայն ուրեք։ Սաստիկ էր հալածումն ի սահմանս կուսակալութեանն Ասորւոց. քանզի Շմաւոն ազգական Քրիստոսի եպիսկոպոս Երուսաղեմի (յաջորդ Յակոբայ Կրտսերոյ) 120 ամաց, յետ 45ամեայ եպիսկոպոսութեանն չարչարեալ խաչեցաւ հրամանաւ Ատտիկոսի փոխանակի բդեշխին Ասորւոց, եւ զնա յաջորդեաց յեպիսկոպոսութեանն Յուդաս (106)։ — Սուրբն Իգնատիոս աշակերտ Պետրոսի եւ Յովհաննու՝ եպիսկոպոս Անտիոքայ ի 40 ամաց հետէ, ածաւ առաջի Տրայիանու՝ իբրեւ եկն սա յԱնտիոք, եւ յանդիմանեցաւ վասն համարձակ քարոզութեանն։ Այլ աներկեւղ արդարացոյց զանձն այրն աքանչելի, դաւանեաց զհաւատն եւ ել վճիռ ի կայսերէ թէ Իգնատիոս՝ որ ասէ զխաչեցեալն կրել յանձին իւրում, կապեալ ածցի զօրականօք ի Հռոմ՝ լինել կերակուր գազանաց ի թէատրոնի։ Եմուտ ծերունին ուրախութեամբ ի նաւ ի Սելեւկիա. զճանապարհայն դիպեցաւ աշակերտակցին իւրում Պողիկարպեայ ի Զմիւռնիա. աստ յամեաց յերկարագոյն նաւն, եւ աստի գրեաց չորս թուղթս՝ զմարգարիտս զանձուց եկեղեցւոյ. անդր եկին Ոնեսիմոս եպիսկոպոս Եփեսոսի զոր Պաւղոսն դարձուցեալ էր 46 ամօք կանխագոյն, Դամաս եպիսկոպոս Մագնեսիայ առ Մէանդրոս գետով եւ Պողիբիոս Տրալլացւոց եպիսկոպոս բազում երիցամբք հանդերձ։ Ընթեալ անտի ի Տրովադա՝ ուր այց արար նմա եպիսկոպոսն Փիլադելփիացւոց, անտի նաւեալ ի Նէապոլիս եւ ապա ընդ Փիլիպպիս ի նաւահանգիստն Եպիդամնոսի, եւ աստի մտեալ երկրորդ անգամ ի նաւ՝ շրջեցաւ զհարաւակողմամբ Իտալիոյ, եւ մինչ կամէր ելանել ի Պուտէողիս ընթանալ ընդ հետս Պաւղոսի՝ հողմն աջողակ առ տարաւ զնոսա փութանակի յՕստիա ի բերան Տիբերեայ. (տասն) զինուորքն պահապանք նորա փութային հասուցանել ի Հռոմ, քանզի ժամանակք խաղուցն մրցանաց մօտ ի կատարել էին։ Այլ եղբարքն ի Հռոմ զամենայն հնարս հնարէին զժողովուրդն հա-

1. Տերտուղ. Ջատագովութիւն։

ւանեցուցանել չխնդրել զարդարն[1]: Ի միտ առ սուրբն Հոգ-ւոմն, եւ իսկ եւ իսկ յետ ողջունին յորդորեաց զնոսա սէր ճշմա-րիտ ունել առ նա եւ մի արգելուլ զնա ընդ երկար ի Տեառնէ առ որ փութայ: Վաղ իսկ եւ ի Հռովմայեցւոց թղթին զոր ա-ռաքեաց մինչ չեւ հասեալ ի Հռոմ, (քանզի լուեալ թէ ոմանք յեղբարց կանխեալ քան զնա՝ կամին արգելուլ զմահ նորա), գրեալ էր աղաչելով՝ թոյլ տալ զի աղացեալ ժանեօք գա-զանացն՝ գտցի հաց սուրբ Քրիստոսի: Ըստ նմա (Դեկտ. 20) ի թէատրոնն՝ եկաց յաղօթս վասն եկեղեցւոյ եւ վասն կարճելոյ աւուրց հալածանացն, բայց անդէն անիծանէր զնա ժողովուրդն անգութ, եւ արկաւ առաջի առիւծուց երկուց որ ծախեցին զնա իսկ եւ իսկ. ոսկերքն որ մնացին՝ պահեցան ի Հռոմ:

## 31

Պ. Էլիոս Ադրիանոս այր Յուլիայ Սաբինայ դստեր քեռն Տրայիանու եւ որդի Ադրիանու Ափրիկեցւոյ մերձաւոր ազգականի եւ հայրենակցին Տրայիանու՝ եկաց կայսր ըստ կամաց Պղոտինայ կնոջ Տրայիանու որ անժառանգ էր. Նախ ասիացի լեգէոնք ընտրե-ցին կայսր եւ ապա ընկալաւ զնա ծերակոյտն: Չունէր զազնուական բարս Տրայիանու, սակայն խաղաղասէր էր եւ իմաստութեամբ իսկ եթող վաղվաղակի զոր առեալ էր Տրայիանու պատերազմաւ յայնկոյս Եփրատայ. զԴակիա պահեաց ակամայ վասն գաղթա-կանութեան Հռովմայեցւոց որ անդն էր: Բայց ընդ այսր ամե-նայնի՝ ջանայր տալ առաւելագոյն հաստատութիւն տէրութեանն անդէն ի ներքս բազմագոյն ուղղութեամբք եւ սաստկացուցանե-լով զզինուորական կարգացն պահպանութիւն: Վասն գործին իսկ այդորիկ շրջեցաւ ինքնին կայսրն ընդ ամենայն նահանգս մեծա-տարած տէրութեանն, եւ այն մեծաւ մասամբ հետիոտս եւ բա-ցաւ գլխով՝ որպէս ի սառնասառոյց կողմանսն Գերմանիայ, նոյն-պէս յարեւակէզ երկրին Եգիպտացւոց (120—131): Շինեաց զԹումբն պատնէշ յԱնգղիա ընդդէմ արշաւանաց Պիկտացւոցն: Եւ նա ի ձեռն Սաղուիոսի Յուլիանու յօրինել ժողովածոյս[2] քաղաքային իրաւանց ի հռովմէական պրետորացն. զխորհրդա-կանն իւր առնոյր մանաւանդ յարանց իրաւագիտաց, եւ արար նոր իմն յարդարումն պաշտամանց տէրութեան՝ բաժանելով զնո-սա ի պալատական, ի հասարակաց եւ ի զինուորական պաշտա-մունս:

Առանց պատերազմի անց ժամանակ թագաւորութեան նորա, բաց յերկքամեայ սաստիկ պատերազմէն (131—133) որ մղեցաւ

1 Քանզի յառաջին վերագոյն իշխանու- մարտիկացն եւ գազանաց տալով զոք ի
թենէ անուր ժողովրդեանն Հռովմայ այս մահուանէ:
Նշխար մնացեալ էր՝ ի կախս սուսերա- 2 Անուանեալ Edictum perpetuum.

ընդ Հրէից ապստամբելոյ վասն հռոմայեցի գաղթականութեանն (Եղիական Կապիտողեան) զոր նստոյց կայսր յԵրուսաղէմ՝ շինելով ի վերայ աւերակաց նորա եւ մեհեան Արամազդայ։ Յետ յաղթութեանն՝ ի թշնամանս Հրէիցն եդաւ պատկեր խոզենի մարմարեայ ի վերայ միոյ ի դրանց քաղաքին։ Սակայն եւ ոչ ի նուիրական տեղիս քրիստոնէիցն խնայեցաւ. ի Գողգոթա պատկեր մի Ադոնիան, ի տեղւոջ թաղմանն Քրիստոսի՝ պատկեր Արամազդայ եդաւ, եւ ի Բեթղահէմ՝ տնկեցաւ անտառ Ադոնիայ։

Ճոխապարծութիւն նորա վասն արուեստից՝ բաց ի Ջրանցից, ի կամրջաց, յերգարանէն[1], ի տաճարաց եւ յայլոց նմանապիսեաց զոր ի Հռոմ եւ յԱթէնս եւ յայլ քաղաքս տայր յօրինել, ցուցանէին մանաւանդ ամարանոցն[2] նորա ի Տիբուր (Թիւոլի) հանդերձ բուրաստանօքն եւ պատկերացն մթերօք, եւ մեծայաղթ շիրիմն նորա՝ այս ինքն Գղեակն Ադրիանու[3] (այժմ անուանեալ՝ Գղեակ Հրեշտակի) ի Հռոմ։ Փիլիսոփայք եւ գիտունք ժամանակին (Պղուտարքոս պատմագիր, Հերոդէս Ատտիկոս ճարտասախօս, Փաւորինոս գաղղիացի հնագէտ) դեգերէին յարքունիս նորա։

Քանզի անորդի էր Ադրիանոս՝ առ նախ յորդեգիրս եւ ի ժառանգ զԼուկիոս Եղիոս Վերոս (136), եւ իբրեւ սա վասն անառողջութեանն վախճանեցաւ տարաժամ, առ զՏիտոս Աւրելիոս՝ որ յայնմ հետէ Եղիոս Անտոնինոսն կոչեցաւ (138), բայց այսպիսի ինչ պայմանաւ՝ զի եւ Անտոնինոս առցէ յորդեգիրս զՄարկոս Աւրելիոս Անտոնինոս եւ զԼուկիոս Վերոս (որ յառաջն Կոմոդոս կոչէր) զորդի յառաջագոյն ճառեցելոյն Վերեայ։ Այս ընտրութիւնք նորա վկայեն զիմաստութենէ նորա։ Անկաւ Ադրիանոս ի հիւանդութիւն ցաւագին եւ այնպէս տակաւ ինչ յառաջ քան զմահն հասաւ յանագորոյնութիւն եւ ի ցասումն, եւ վախճանեցաւ ամաց իբրեւ 63 (Յուլ. 138)։ Բայց առանձին կեանք նորա չէ էին անբիծք, եղծ զանուն իւր սիրովն առ Անտինոյոս բիւթանացի՝ որում յետ մահուն կանգնէր անդրիս բագինս. շանցն իւրոց վախճանելոց շինէր շիրիմս եւ արձանագիրս ի վերայ դրոշմէր։

Ստոյգ ինչ է թէ զառաջինն ընդ ակամբ հայէր Ադրիանոս ընդ քրիստոնեայսն, համարելով զնոսա աղանդ ինչ ի Հրէից, յայն տակս եւ քրիստոնէիցն որ ի Հրէից անտի էին՝ արգելաւ մտանել յԵղիա։ Սակայն զայն չառ յանձն՝ զի ամբոխիւ եւ խռովութեամբ առանց դատաստանաց պատժեսցին։ Քանզի տեսեալ Գրանիանեայ Սերենոսի փոխանակի բդեշխին Ասիացւոց՝ զի տաղտկացեալ ատելութեան հեթանոսացն՝ չարչարէին մոլեգին զքրիստոնեայսն, ի տօնս հասարակաց խնդրէին բերել զնոսա ի մէջ եւ դատել առանց հարցափորձի տալ յամբիթէատրոնն առաջի գազանաց, գրեաց առ Ադրիանոս։ Յաջորդն Գրանիանեայ Մինուկիոս Փուն-

1 Odeum. 2 Villa. 3 Moles Hadriani.

դանոս ընկալաւ պատասխանի ի կայսերէ՝ «Պէտ է ոչ քրիստոնէութիւնն այլ յանցանք ըստ օրինաց պատժեսցին, եւ զրպարտիչքն կամ ամբաստանիչք քրիստոնէից մատնեսցին ի պատիժս ըստ ծանրութեան յանցանացն՝ զորս զայլոց զրպարտեն»:

2. Տ. Անտոնինոս Պիոս (138—161) 47ամեայ, հայր հայրենեաց, էր ազնուազգին կայսր ի կայսերաց. ի 23 ամս իշխանութեանն նորա զոր վարէր հանդարտութեամբ եւ առանց աղմկոյ՝ էր ի բարութեան տէրութիւնն համօրէն: Ներքին կարգաւորութիւնն զոր հաստատեաց Ադրիանոս՝ այն աճէր միշտ, լինէր քաջ մատակարարութիւն գանձուն արքունի, արք պիտանիք կային մնային յերկարագոյնս ի պաշտամունսն իւրեանց եւ ծաղկեալ փթթէր նորոգապէս տէրութիւնն: Տայր վարձս ուսուցչացն կարգելոց հրապարակաւ, փոյթ էր նմա վասն օգտակար շինուածոց եւ գիտութեանց եւ այլոց նոյնպիսեաց, ամենայն ուրեք համարձակ էր մտանել առ նա, եւ յիշխանութեան անդ իւրում էր իբրեւ դոյզն ոք կայսրն եւ առանց նենգութեան եւ կեղծաւորութեան: Եւ զի զմի ոք ի քաղաքացեաց կամէր մանաւանդ պահել քան հազար թշնամեաց յաղթել՝ բայց սակս առ հարկէ եւեթ եւ որչափ ինչ կարեւոր էր՝ տայր պատերազմ ընդ դրացի ազգացն Գերմանացւոց եւ Դակաց եւ յաղթող էր նոց, եւ այսպ կարգէր առ Հռենոս եւ Դանուբ գետովք ամրոցս եւ զզօրս ընտիրս լեգէոնաց ի պահպանութիւն սահմանացն: Նա առանձին եւ ազգք օտարք ընտրեցին զկայսրն լինել դատաւոր եւ իրաւարար յերս իւրս: Վախճանեցաւ նա 70 ամաց (7 Մարտ. 361), ամենայն եւ այնպէս տարաժամ իմն էր մահ նորա:

Այսպիսի կայսր զգօն եւ արդար եւ եւ քրիստոնէիցն ազատութիւն՝ կեալ ըստ իւրեանց մտացն խղճի, թէպէտ եւ ի նահանգսն ուրեք ուրեք լինէր հալածումն հաւատացելոցն ի ձեռն կուսակալաց կամ ժողովրդեանն: Վասնզի սովն եւ յորդութիւն ջուրց Տիբերիս գետոյ, սասանութիւնն որով քանդեալ քաղաքք յԱսիա եւ ի Հռոդոս կործանեցան, հրայրեացք ի Հռոմ, ի Նարբոն, յԱնտիոք եւ ի Կարքեդոն՝ իբրեւ արկածք յաստուածոցն համարեցան ի հեթանոսաց անտի՝ վասն քրիստոնէիցն ամբարշտութեան[1]: Դարձեալ եւ այնպէս իմն համարէին թէ քրիստոնեայք ի ժողովել իւրեանց ի ծածուկ եւ ընդ մութն (այս ինքն՝ վասն ահին հեթանոսաց) ի մի վայր՝ գործեն խժդժեան անառակութիւնս եւ զենուն մանկունս մատաղս, ցանեն արիւն ի վերայ եւ խառնելով ուտեն թաթաւելով հաց յարիւն նոցա, զոր եւ Թիեստեան կերակուրն անուանէին. (զի ի միում ի բանաստեղծութեանցն Սենե-

1 Տերտուղ. ի Պաշտպանողականութեանն առ. «Զաղէտ՝ Աստուած անձրեւ՝ ասէ զայն քրիստոնէից. եթէ Տիբերիս ելանէ ողողանէ, եթէ Նեղոս ոչ ելանէ ի դաշտս, եթէ երկինք զկայ առնուն, եթէ երկիր շարժի, եթէ սով, եթէ ժանտ, իսկ եւ իսկ հնչէ աղաղակն թէ զքրիստոնեայս առ առիւծուն»:

կայ՝ Իսպանիայէ առ ի յանդէտս անկանել ընդ ձորն իւրում Յոկատեայ, եւ զԵրիքաւեայ ումեմնէ յառաջագոյն պատմի ուսեալ զմանկունս իւր խաբեալ յԱստուծոյ յերկնէ եղօրէ): Յայն ամս սուրբն Յուստինոս յամի իբրեւ 150 տայր զառաջին պաշտպանութիւն իւր՝ գրեալ առ Անտոնինոս Պիոս եւ առ երկուս Կեսարսն, առ Ծերակոյտն եւ առ ժողովուրդն Հռովմայեցւոց, ցուցանելով թէ անիրաւ է հալածումն վասն քրիստոնէութեան. չեն, ասէ, անաստուածք՝ զի պաշտեն զՄին Աստուած զՀայր եւ զՈրդի եւ զՍուրբ Հոգի. եւ այնպէս, ասէր, զրպարտին քրիստոնեայք վասն անաստուածութեան, որպէս երբեմն Սոկրատ՝ յորժամ ի դիւաց պաշտամանէ զմարդիկ կամեցաւ զերծուցանել: Ցիրաւի երկիր պագանեն քրիստոնեայք կայսերյն՝ վասն զի Աստուած է, եւ զի այնպիսի յատակ մարդասպանութիւն ուսոյց, եւ չկարեն իսկ հեթանոսական աստուածոցն պագանել երկիր, քանզի եւ նմանել իսկ փարուց նոցա ոչ ոք յառաքինի մարդկանէ կարող է: Նա յետ այնորիկ նկարէ մի ըստ միոջէ զժողովս քրիստոնէիցն եւ զառաքինութիւնս նոցա, յորում բաղդատէ յայտնապէս զխորհրդոյն գոհութեան վասն հարկի իւրեանց: Զայս թուղթ տեսեալ ազնիւն Անտոնինոս գրէր առ քաղաքս բազումս Ասիացւոց կարծել զժողովուրդն ի մոլեգնելոյ ընդդէմ քրիստոնէիցն (որպէս յայտ առնէ Մելիտոն եպիսկոպոս Ասիացւոց առ Կեսարեայ):

3. Մարկոս Աւրելիոս Անտոնինոս (161—180), փեսայ Անտոնինեայ յաջորդեալ զնա 40 ամաց՝ զատ արժանի կոչելոյ թագաւոր «Իմաստասէր կամ Փիլիսոփայ»: Առ նա իսկ եւ իւր զՂուկիոս Վերոս յԱւգոստոս (այս ինքն՝ բարձակից) (161—169): Բայց առ ինքնակալն իսկ եթող ի ձեռս նորա զգործ առաջնորդութեանն՝ զի ինքն տացէ զանձն յանգործ դատարկութիւն եւ ի զեղխութիւն: Ի ժամանակս 19 ամաց թագաւորութեան Մարկոսն Աւրելիոսի՝ յաջորդէին մի ըստ միոջէ յորդութիւնք ջուրց, սովամահութիւնք, սով եւ սրածութիւն ի ներքս, պատերազմ ընդ Պարթեւաց եւ Գերմանաց ի սահմանակողմանսն:

Թէպէտ եւ պատերազմն Պարթեւաց ի ձեռն զօրավարացն Վերոսի յաղթութեամբ վճարեցաւ (165), այլ մշտազին յոյժ էր կռիւն ընդ Գերմանացւոց. քանզի ոչ միայն Ալանք եւ Բաստառնացիք եւ այլ եւս հիւսիսային ազգք (Թերեւս մնեալ ի Գոթաց) յարձակէին ի Դակիա՝ այլ եւ խառնէին ազգքն բնակեալք զԴանուբ գետով որ միաբանեալ էին ի մի դաշնաւորութիւն կոչեցեալ յանուն Մարկոմանաց, որոց դաշնաւոր էին ցեղք Կուադաց, Վանդալաց, Հերմոնդուրաց, Նարիսքաց, Յազիգաց, նա եւ Սարմատաց իսկ, (որ ապաքէն առաջին իմն նշմարանք են գաղթականութեան ազգաց): Առքա սկսան զանուանեալ Մարկոմանեան պատերազմն ընդ Հռոմայեցւոց, որ տեւեալ բաւէր ամս 13

Digitized by Google

(166—180), եւ դառնէին յաղթող Գերմանքն բազմամբոխ յաճախութեամբն իւրեանց՝ մինչեւ հասանել նոցա մեծաւ կոտորածիւ յԱկուիլէա, այնպէս՝ զի պիտոյ էր այնուհետեւ աշխատութիւն մեծ ապրեցուցանել զտէրութիւնն Հռոմայեցւոց ի կործանմանն վտանգէ, երիցս անցանելով կայսեր ինքնին ընդ Ալպս ի մարտ պատերազմի ի վերայ բարբարոսացն։

Ի ժամանակս պատերազմացն այնոցիկ (յետ վախճանի զեղխն Վերոսի [169] որ բեռն մանաւանդ էր Մարկոսի Աւրելեայ եւ ոչ օգնականութիւն), ի նեղ մեծ անկաւ բանակն Հռոմայեցւոց յետ պարտութեան իրիք՝ որպէս հաւանութեան է։ Քանզի մինչ դեռ փակեալ յանջրդի ուրեք տեղւոջ եւ առանց իսկ սրոյ՝ ծարաւոյն եւ պարտասելով սատակելոց էր զօրն Հռոմայեցւոց, առաքեաց Աստուած (ըստ հեթանոսացն բանից՝ դիքն) մրրիկ սաստիկ անձրեւով։ Ժողովեցին Հռոմայեցիք զջուրն վահանօքն եւ սաղաւարտիւք եւ սթափեցան ինքեանք եւ երիվարքն հիւծեալք։ Ապաքէն եւ Կուադք զնոյն ժամ՝ դիպող համարեցան յարձակելոյ ի վերայ նոցա սաստկութեամբ, բայց զօրութիւն մրրկին էր ընդդէմ նոցա եւ պաշտպանէին Հռոմայեցւոցն կարկուտն անհնարին եւ փայլատակունքն, եւ այնպէս կանգնէին յաղթութիւն մեծ Հռոմայեցիքն։

Այս դէպք ոչ ի քրիստոնէից միայն (որպէս՝ յԱպողինարեայ յեպիսկոպոսէ Յերապօղեայ Փռիւգացւոց ի ժամանակակցէ Մարկոսն Աւրելեայ, որպէս եւ ի Տերտուղիանեայ՝ որ Ներէա յաղօթից քրիստոնէիցն զօրականաց զերան լեալ ասէ), այլ եւ ի հեթանոսաց (ի Դիոնէ Կասեայ, ի Յուղեայ Կապիտողինեայ եւ յայլոց) պատմին եւ ըստ երկոցունց իսկ կողմանցն կարծեաց՝ համարին իրքն սքանչելիք. Նոյն դէպք հաստատին եւ ի դահեկանաց որ ցայժմ կան եւ յանտոնինեան սեանէն, յորս Մարկեայ Աւրելեայ դիւցապաշտութեանն ընծայելին իրքն եւ կամ Անձրեւաբերն Արամազդայ։ Այլ նմին հակառակ յիրաւի է համարել ընդ քրիստոնէիցն մատենագրաց՝ թէ զայն նշան Աստուած աղօթիւք քրիստոնէիցն գործեաց, քանզի լեգէոնն Մելիտինացի որ ի պատերազմի անդ դիպեցաւ՝ էր ի քրիստոնէից,(թէպէտ եւ վաղ իսկ յառաջ քան զայս դէպս կոչէր լեգէոնն այն Փայլատակիչ[1], եւ ոչ յետ այսց դիպաց՝ որպէս ոմանք ի մատենագրաց համարեցան)։

Յետ դիպացն այնոցիկ՝ արարին Գերմանքն դաշինս խաղաղութեան ընդ Հռոմայեցւոց եւ ետուն նոցա 100,000 գերի յետ (174)։ Միւսանգամ յամի 178 գրգռեցաւ երկրորդ Մարկոմանեան պատերազմն, բայց մինչ չեւ ի գլուխ հաներ՝ վախճանեցաւ Մարկոս Աւրելիոս ի Սիրմիոն կամ ի Վիեննա Պաննոնիացւոց՝ 59 ամաց (Մարտ. 180). ազնուականութիւն մտաց նորա եւ

1 Fulminatrix.

յաղթութիւն բարոյական կործեաց նորա յայտ յիւրոց իսկ՝ գրոց է։ Բայց սակայն պարսաւի իմն վասն կարի ներողն լինելոյ առ կին իւր՝ առ ժանտաբարոյն Փաւստինա (զոր եւ գովէ ի գիրս անդ) եւ առ կուսակալսն ընչաքաղցս։

4. Սակայն եւ առ այսպիսի կայսերաւ տեւէր՝ մանաւանդ թէ դաժանագոյն իմն էր հալածումն քրիստոնէից։ Քանզի ջանայր Մարկոս Աւրելիոս միաւանգամ զպաշտօն դիցն յաճախել՝ զի անտի իմն յուսայր դարման հաստատութեան տէրութեանն, մանաւանդ զի գրգռէին զնա քուրմքն եւ փիլիսոփայքն թշնամիք քրիստոնէութեան, որք զքրիստոնեայսն ցուցանէին ուրացողս աստուածոցն, պատճառ ամենայն չարեաց տէրութեանն, եւ զպատուհասն նոցա արդար եւ իրաւացի։

Մարտիրոսքն Զմիւռնացիք, քանզի չառին յանձն ուրանալ զՔրիստոս՝ տարածեցան ի վերայ սայրասուր խեցեաց, եղեն բրածեծ չարաչար եւ բազումք ի նոցանէ արկան առաջի գազանաց՝ զբօսուցանել զժողովուրդն։ Մի ոմն ի նոցանէ, որ ինքնակամ մատնեաց զանձն ի ձեռս դահճաց՝ առ ահին յանձն առ զոհել կռոց, որ ապաքէն ի յանդգնութենէ անտի էր՝ զոր միշտ անգոսնէր եկեղեցի։ Իսկ եպիսկոպոսն նոցա Պողիկարպոս գրեթէ 100 ամեայ, աշակերտ Յովհաննու առաքելոյ, դատապարտեցաւ ի խարոյկ, քանզի անցեալ իմն էր ժամանակ խաղուցն թատերաց (165)։

Պատմութիւն վկայութեան այսր առաքելական հօր կայ ի թղթի եկեղեցւոյն Զմիւռնացւոց առ եկեղեցին Փիղադելփիայ՝ զորմէ ինքն իսկ Սկաղիգեր քննիչ սուր եւ անհաւան եւ միանգամայն բողոքական նախանձաւոր՝ ի համօրէն եկեղեցական պատմութեան ոչ ինչ գիտեմ, ասէ, որ այնպէս շարժիցէ զսիրտ իմ եւ իբրեւ այն թէ զիս արտաքոյ քան զանձն հանիցէ, որպէս այդ թուղթ։ Գլխաւոր բանք թղթոյս՝ յորում նշմարի կատարեալ պատկեր հանգամանաց քրիստոնէից հալածելոց եւ նոցին հալածչաց եւ միանգամայն հաւատք նոցա յԱստուածութիւն Քրիստոսի եւ պատիւ մեծարանաց առ սուրբսն, են սոքին։

Սպասեաց Պողիկարպոս զի տացի ի ձեռս, որպէս եւ Տէրն արար՝ զի եւ մեք նմին լինիցիմք նմանողք, ոչ յայն միայն հայելով որ մեզ ինչ օգուտ իցէ, այլ եւ յայն՝ որ ընկերին շահ է։ Քանզի ճշմարիտ եւ հաստատուն սիրոյ այսպէս վայելէ՝ ոչ զանձին փրկութիւն միայն, այլ եւ զամենայն եղբարց փրկութիւն կամել։ Ամենայն իսկ մահունք մարտիրոսութեան որովք կատարեցան կամք Աստուծոյ՝ երանելի եւ ազնուական իմն էին, քանզի մեզ երկիւղածացս յԱստուծոյ՝ վայելուչ է յամենայնի Աստուծոյ տալ զիշխանութիւնն։

Ո՞ է՝ որ ոչ զարմասցի ընդ քաջարութիւն, ընդ հաստատութիւն եւ ընդ աստուածսիրութիւն եւ ընդ սէր այնոցիկ որք եղեն գանալից ցմերկանալ երակաց, մինչեւ արգահատել մօտակացացն եւ հեծել, ուր ինքեանք այնպէս լի էին քաջալերութեամբ՝ զի ոչ ոք ի նոցանէ զարհուրեցաւ կամ յոգւոց հան, այլ ամենեքին ցուցին մեզ թէ ի լլկել իւրեանց իբրեւ Քրիստոսի վկայք՝ հեռի ի մարմնոյ էին,

Digitized by Google

կամ թէ մանաւանդ Տէրն իսկ առընթեր կացեալ մխիթարէր զնոսա: Շնորհօքն Քրիստոսի արհամարհեցին զժամանակեան տանջանսն՝ ի միում ժամու ի յաւիտենից պատժոց զանձինս փրկելով: Հուր անողորմ տանջչացն՝ ցուրտ թուէր նոցա, քանզի զյաւիտենական հուրն ածէին զմտաւ, զայն որ ոչն շիջանի եւ յորմէ ինքեանք զերծանէին. սրտի աչօք հայէին ի բարութիւնսն որ կան պահին այնոցիկ՝ որ խոստան համբերեն. զորս ունկն ոչ լուաւ, ակն ոչ ետես, ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, բայց այժմ այնոցիկ որ ոչ այսուհետեւ մարդիկ, այլ հրեշտակ իսկ էին՝ ցուցան ի Տեառնէ: Ըստ նմին օրինակի եւ որ գազանացն վայրենեաց սահմանեալ էին՝ յերկարագոյնս չարաչար լլկեցան՝ տարածեալ ի վերայ սայրասուր խեցեաց եւ պլոկք եւս տանջանօք զորս ած ի վերայ փոխանակ բդեշխին (Ստատիոս Կուադրատոս), զի ակն ունէր թէ յերկարելով ցաւոցն ածիցէ զնոսա յուրացութիւն:

Բազում ինչ հնարեցաւ սատանայ հակառակ նոցա, այլ Աստուծոյ գոհութիւն, չկրէր ամենեցուն զամօթս: Երկչոտքն՝ հաստատութեամբ քաջասիրտն Գերմանիկեայ զօրացան, որ յորժամ առաջի գազանաց վայրենեաց արկաւ՝ յառաջ իսկ քան զայլսն անց կաց ի մէջ: Զի իբրեւ հաւանեցուցանել զնա ջանայր փոխանակ բդեշխին եւ աղաչէր գոնէ խնայել հասակի մանկութեանն, գրգռեաց զմի ի գազանացն ի վերայ անձին իւրոյ՝ զի փութով յանիրաւութենէն եւ յանօրէնութենէ զանձն ղերծուցէ: Զարմացաւ ամենայն ժողովուրդն ընդ արութիւն քաջութեան աստուածասէր եւ երկիւղած ազգին քրիստոնէից եւ բողոք բարձեալ գոչէր. Բարձէք զանաստուածսըն. զՊողիկարպոս՝ այսր: Բայց մի ոմն Կուինտոս անուն Փռիւգացի՝ որ այն ինչ յաշխարհէ անտի իւրմէ եկեալ էր, դողալ սկսաւ իբրեւ զգազանսն ետես: Սա իսկ ինքնակամ զանձն մատուցեալ էր եւ զայլս եւս ի նոյն գործ հաւանեցուցանելով: Այլ իբրեւ ժամանակ հանդիսին եհաս, խոնարհեցաւ ի հաւանութիւն փոխանակի բդեշխին, երդուաւ եւ զոհեաց: Նմին իրի՝ մի գովեսցուք զնոսա, եղբարք, որ անձամբք զանձինս երթեալ մատուցանեն: Ոչ զայս ուսուցանէ աւետարանն:

Իսկ սքանչելին Պողիկարպոս իբրեւ նախ լուաւ թէ մահու նորա ցանկայ ամբոխն, ոչ ինչ վհատեալ զանգիտեաց, այլ կամէր մնալ ի քաղաքին: Սակայն բազմագոյնք հաւանեցուցանէին զնա ելանել երթալ ի բաց: Յայնժամ ել գնաց նա ի տեղի մի ի շինին ոչ ինչ հեռի ի քաղաքէն, եւ անդէն ընդ սակաւուց ոմանց զտիւ եւ զգիշեր առնէր աղօթս վասն ամենեցուն եւ վասն եկեղեցեաց որ ընդ ամենայն երեսս երկրի իցեն: Երիւք աւուրբք յառաջ մինչ չեւ ըմբռնեալ էր՝ ետես նա տեսիլ իբրեւ այն թէ բարձ գլխոյ նորա բորբոքեալ այրիցի: Դարձաւ առ այնոսիկ որ ընդ նմայն յաղօթս կային եւ ասէ մարգարէանալով՝ Կայ մնայ ինձ այրել կենդանւոյն: Իբրեւ մօտ հասին խնդրակքն՝ չոգաւ նա ի միւս եւս շէն: Այլ նոքա իբրեւ զնա ոչ գտին՝ կալան զերկուս ի ծառայիցն՝ յորոց մին ի տանջանսն եղեւ մատն: Եւ զի սա անակից էր՝ չէր հնար այնուհետեւ Պողիկարպոսի թաքչել. նուիրակք եւ հեծեալք ելին ընդ ծառայիւն ի ճաշուն ժամանակի յաւուր ուրբաթու հանդերձ սովորական զինուքն իւրեանց՝ իբրեւ ի վերայ աւազակի: Անագան յերեկոյին անկան ի վերայ նորա ի վերնատանն: Անտի կարէր նա յայլ ինչ շէն ապրել, այլ ոչ կամեցաւ եւ ասէր՝ Տեառն կամք լիցին: Եւ իբրեւ լուաւ զձայն արանցն այնոցիկ՝ էջ առ նոսա ի վայր եւ խօսեցաւ ընդ նոսա: Նոքա զարմացան ընդ ծերութիւն նորա, ընդ զօրութիւն զուար-

Digitized by Google

*թուլութեան նորա, եւ ասէին ամենք. Զի՞ խոկ պիտոյ էր այս ճիգ առ ըմբռնելոյ զայր մի այսպիսի զծերունի: Նա եւ վաղվաղակի հրաման տնել առաջի նոցա կերակուր եւ ըմպելի որչափ ինչ հաճոյ իցէ նոցա, բայց խնդրեաց ի նոցանէ սակաւ ինչ ժամանակ՝ զի անխափան մատուսցէ աղօթս: Իբրեւ շնորհեցաւ նմա այն, կայր կանգուն եւ մատուցանէր աղօթս բարձրաձայն լի շնորհօքն Աստուծոյ՝ ժամս երկուս ի բուն, մինչեւ սքանչանալ լսողացն, եւ բազումք զղջանային զգալն խուռեանց ի վերայ այսպիսի երանելի ծերոյ: Յետ կատարման աղօթիցն՝ յորում ամենեցուն անուանէր յիշատակ ընդ որոց կենակցեալ լեալ էր, փոքունց եւ մեծաց, նշանաւորացն եւ աննշանից, նա եւ կաթուղիկէ եկեղեցւոյ որ բնակեալն է ընդ ամենայն երկիր, քանզի ժամանակ չուելոյն հասեալ էր՝ նստուցին զնա յիշկան վերայ եւ վարեցին տարան ի քաղաքն:*

*Պատահեաց ընդ առաջ՝ Հերովդէս խաղաղութեան դատաւոր (Ἰρηνάρχος) ընդ հօրն իւրում Նիկետայ դեսպակաւ, առին զնա ընդ իւրեանս եւ բուռն հարեալ զնմանէ՝ ասէին ցնա. Զի՞նչ չար իցէ զկայսր Տէր կոչել, խունկ ծխել եւ ապրել: Զառաջինն ոչ ինչ ետ նոցա պատասխանի. այլ իբրեւ ստիպեցին ասէ. Զեմ առնելոց զոր խրատէքն: Նոքա իբրեւ չկարացին հաւանեցուցանել, խօսեցան ընդ նմա բանս խառնի եւ ընկեցին զնա ի կառաց անտի ի բաց՝ մինչեւ վիրաւորեցաւ ոսկր սրունիցն: Բայց նա իբրեւ ոչ ինչ փաչաման կրեալ՝ այնպէս երթայր ուրախութեամբ մինչեւ հասուցին զնա յամփիթէատրոնն: Մինչ դեռ այնպէս տատանիկ էր ամոքէն աղմուկ աղաղակին՝ զի ոչ ուրուք բան լինէր լսելի, հնչեաց առ Պողիկարպոս ձայն բարբառոյ յերկնից յորժամ եմուտ նա ի ներքս, թէ Զօրացիր եւ քաջ լեր, Պողիկարպէ: Զայն որ խօսէր ոչ ոք եսես, բայց զձայնն լուան այնք ի մերոց որ առընթերն կային:*

*Իբրեւ ածաւ նա յառաջ եւ ազդ եղեւ թէ Պողիկարպոս ըմբռնեցաւ, եղ անհնարին դղրդիւն եւ ամբոխ աղաղակի: Կացուցին զնա առաջի փոխանակի բդեշխին որ հարցանէր զնա թէ արդարեւ դու Պողիկարպոսն իցես: Իբրեւ ասաց թէ այո, խրատէր զնա ուրանալ, յորդորէր ծերութեանն խնայել եւ ասէր բազում ինչ յորոց սովորն են ասել, որպիսի ինչ՝ թէ Երդուիր ի բախտ կայսերն (է Բախտն՝ որ եւ դէպ իսկ անուանեալ. է յունարէն նախանտիրս փրկութեանն Հռովմայեցւոց երդնուլն ի Բախտ [τύχη] կայսերն, եւ է լատիներէն՝ ի Գենի [Genium] կայսեր). Լեր ուշ ի կուրծս. ասա՝ Բարձցին ի միջոյ անաստուածքն (այս ինքն՝ քրիստոնեայք): Յայնժամ հայեցաւ Պողիկարպոս խոժոռադէմ ընդ ամենայն ամբոխ հեթանոսացն անօրինաց շուրջանակի, ձգեաց ի վերայ նոցա զձեռն իւր, յոգւոց հան, հայեցաւ ի վեր յերկինս եւ ասէ. Բարձցին ի միջոյ անաստուածքն: Ապա ստիպէր անթիւպատոսն՝ երդնուլ եւ հայհոյել զՔրիստոս՝ զի արձակեսցի: Ետ պատասխանի Պողիկարպոս. Ութսուն եւ վեց ամ ծառայեցի նմա եւ չար ինչ ինձ ոչ արար, զիա՞րդ զիմ Թագաւոր հայհոյիցեմ՝ որ զիսն փրկեաց: Միւսանգամ ստիպէր զնա անթիւպատոսն թէ Երդուիր ի բախտ կայսերն: Ետ նա յայնժամ պատասխանի եւ ասէ. Թէ յայն պնդեալ կաս զի ես ի բախտ կայսերն երդուայց եւ այնպէս իմն կեղծաւորանիս՝ չգիտել զինչ ոք ես իցեմ, լուր արդ համարձակաւ. Ես քրիստոնեայ եմ. եթէ կամիս ուսանել զվարդապետութիւն քրիստոնէիցն՝ տուր ինձ առ այն օր մի եւ դիր ինձ ունկն: Ասէ փոխանակ բդեշխին. Հաւանեցո զժողովուրդդ. Ետ Պողիկարպոս պատասխանի. Ընդ քեզ խօսել պատրաստ եմ, քանզի ուսեալ եմք իշխանութեանց եւ պետութեանց որ յԱստուծոյ կարգեալ են՝ զայն*

Digitized by Google

արժանաւոր մեծարանս գնել՝ որ ոչ հակառակ խղճի մտաց մերոց են։ Բայց զնոսա չհամարիմ արժանի՝ պաշտպանել անձին առաջի նոցա։

Սակայն գազանս վայրենիս ունիմ, ասէ, անթիւպատոսն, որոց առաջի տամ զքեզ արկանել, թէ չգաս ի խրատ։ Եւ նա պատասխանի. Բեր զնոսա այսր, մեր միտք ոչ եթէ ի լաւագունէ անտի ի վատթարագոյն ընթանան. այլ զայն գեղեցիկ համարիմք՝ ի չարէ անտի յայն որ արդարն է, զանձն ածել։ Միւսանգամ ասէ անթիւպատոսն. Թէ չգաս ի միտս, հրով տամ զքեզ մաշել՝ եթէ զգազանսն արհամարհես։ Ասէ Պողիկարպոս. Դու հուր սպառնաս որ վայրկեան մի բորբոքէ եւ իսկ եւ իսկ վաղվաղակի խափանի եւ չես գիտակ հրոյ հանդերձելոյն դատաստանաց եւ յաւիտենից պատժոց որ չարացն կան պատրաստեալ։ Բայց դու զի՞ կաս յապաղես. բեր այսր որ ինչ քեզ հաճոյ է։ Մինչ զայս եւ զայսպիսիս ասէր, լի լինէր համարձակութեամբ եւ ուրախութեամբ, եւ շնորհք Աստուծոյ սփռեցան ընդ երեսս նորա։ Այնպէս կաց նա առանց ի կոր կործանելոյ եւ չփոթելոյ ի բանից անտի՝ մինչեւ անթիւպատոսին իսկ զարմանալ։ Առաքեաց նա յամփիթէատրոնն զքարոզն եւ ետ գոչել երիցս. Պողիկարպոս խոստովան եղեւ թէ քրիստոնեայ է։

Իբրեւ զայն բարբառեցաւ քարոզն, գոչեաց ժողովուրդ հեթանոսացն եւ Հրէից որ ի Զմիւռնիա բնակէին, անհնարին բարկութեամբ եւ բարձրագոչ բարբառով. Սա է վարդապետ յԱսիա, հայր քրիստոնէից, սա զմեր աստուածսն կործանէ, որ զբազումս ուսուցանէ՝ ոչ զոհս աստուածոցն մատուցանել եւ ոչ երկիր նոցին պագանել։ Զայս ասելով աղաղակէին եւ աղաչէին զՓիլիպպոս Ասիարքէս (այսպէս կոչէին ի Նահանգին Ասիոյ վերակացուք հասարակաց խաղուցն եւ մրցումներու, որք իւրեանց իսկ ծախուք տային խաղս ի պատիւ աստուածոցն) զի արձակեսցէ առիւծ մի ի վերայ Պողիկարպոսի։ Եւ պատասխանի Փիլիպպոս թէ չէ ինձ այն օրէն, քանզի այն խաղք վաղ անցան։ Յայնժամ գոչեցին ամենեքին առհասարակ թէ այրեսցի Պողիկարպոս, քանզի հարկ էր ի գլուխ ելանել տեսլեան բարձի գլխոյն այրելոյ, որպէս յաղօթսն տեսեալ էր եւ ցհաւատացեալսն որ ընդ իւր էին՝ ասացեալ, թէ կենդանւոյն այրելոց եմ։ Արդ կատարեցաւ ամենայն արագագոյն քան զձայն բանից։ Ամենայն ամբոխն երեր յարուեստանոցաց եւ ի մեծերից փայտ հերձեալ եւ խռիւ. իսկ Հրեայքն, որպէս սովոր իսկ են յիրս այսպիսիս, երագագոյնք քան զայլսն էին՝ տալ փութով ձեռն գործոյն։

Իբրեւ խարոյկն պատրաստեցաւ՝ մերկացաւ զձորձս իւր Պողիկարպոս, եդ զգօտին ի բաց, եւ ջանայր զկօշիկսն լուծանել, զոր յառաջն երբեք չէր արարեալ, քանզի ամենեքին ի մօտակայացն հաւատացելոց վիճէին թէ ո քան զո յառաջագոյն հպել ի նա կարիցէ։ Քանզի վասն սրբութեան գնացից նորա եւ յառաջ իսկ քան զսպիտակութիւն հերացն՝ ամենեքին ի լաւաց մեծապատիւ մեծարէին զնա։ Ապա ագուցին նմա հանդերձ զոր յայրելն սովոր են ագուցանել (այս ինքն՝ զգեստ եւ [illegible])։ Յորժամ կամէին բեւեռել զնա հաստատուն. Թողէք, ասէր, այսպէս, զի որ տայն ինձ կրել զհուրն, տացէ ինձ եւ առանց ձերոց բեւեռաց միալ հաստատուն ի խարուկիս։ Բեւեռօք չպնդեցին զնա, բայց զձեռսն կապեցին, զորս ինքն իսկ կալաւ յետս զի կապեսցեն, իբրեւ խոյ ընտիր ի հօտէ մեծէ, որ մատչի ողջակէզ պատրաստեալ հաճոյ Աստուծոյ։ Յետ այնորիկ հայեցեալ յերկինս ասէր. Տէր Աստուած ամենակալ Հայր Որդւոյ քո սիրելւոյ եւ օրհնելոյ Յիսուսի Քրիստոսի, որով ընկալաք զգիտութիւն քո. Աստուած հրեշտակաց եւ

Digitized by Google

զօրութեանց եւ ամենայն արարածոց եւ համօրէն ազգին արդարոց՝ որ կենդանի են առաջի երեսաց քոց․ օրհնեմ զքեզ՝ զի արժանի արարեր զիս յաւուրս յայսմիկ եւ ի ժամուս՝ հաղորդութեամբ վկայիցն քոց լինել կցորդ բաժակի Օծելոյ քո ի յարութիւն կենացն յաւիտենից, հոգւոյ եւ մարմնոյ, անեղծութեամբ Հոգւոյն սրբոյ․ ընդ որս եւ ես եղէց ընկալեալ ի քէն պարարտ եւ ընդունելի պատարագաւ, որպէս պատրաստեցերն եւ յառաջագոյն յայտնեցեր եւ լցեր, անսուտ եւ ճշմարիտ Աստուած։ Վասն այնորիկ գովեմ զքեզ վասն ամենայնի, օրհնեմ զքեզ եւ փառաւոր առնեմ զքեզ հանդերձ յաւիտենական երկնաւորն Յիսուսիւ Քրիստոսիւ Որդւով քով սիրելւով, ընդ որում քեզ եւ Հոգւոյն սրբոյ պատիւ, այժմ եւ յաւիտեանս, Ամէն։

Իբրեւ նա ասացեալ զԱմէնն եւ կատարեալ զաղօթսն՝ լուցին զաւհիճքն զհրակին։ Իբրեւ բոց սաստիկ ի վեր առնոյրէր՝ տեսաք սքանչելիս մեծ, որք եւ յայն սակս պահեցաք զի պատմեսցուք այլոց զայն քաջողջեցեալք։ Հուրն զօրէնէր կամար ի վերայ իբրեւ առագաստ հինչ ուռուցիկ ի հողմոյ, եւ պատէր զմարմնով վկային շուրջանակի, որ կայցեալ ի միջի անդ՝ ոչ եթէ մարմնոյ ինչ այրելոյ նման էր, այլ հացի որ եփիցի կամ ոսկւոյ եւ արծաթոյ որ ի քուրայս ջեռնուցուն։ Եւ հոտ խնկ անուշութեան հարաւ ի մեզ ըստ նմանութեան բուրման խնկոց կամ այլոց ինչ անուշահոտ արմատոց։ Այլ իբրեւ անսին անպարիշտքն՝ թէ չմաշի մարմին նորա ի հրոյ անտի՝ ձայն եստուն կատարչին (Confector, որ ճաղանաց օրհնաւորանաց է ընտրողն փորը զեղջն հարուածովն, եւ կամ է մոլեգնել նոցա առ ի հրապարակաւ հանդիսացեալ՝ սպանանել) երթալ եւ մխել սուսեր ընդ մարմին նորա։ Իբրեւ նա զայս արար՝ արիւն այնչափ հոսեաց մինչեւ շիջուցանել զհուրն եւ զարմանալ ամենայն ամբոխին ընդ խտիրն որ ի միջի էր ընդ անհաւատսն եւ ընդ ընտրեալս։ Այսպիսի ոք էր սքանչելի մարտիրոսն Պողիկարպոս որ առ մերովք ժամանակօք առաքելական եւ մարգարէական վարդապետ եկաց եւ եպիսկոպոս կաթուղիկէ եկեղեցւոյն Զմիւռնացւոց։ Ամենայն բան՝ զոր հան նա ի բերանոյ, կատարեցաւ կամ կատարեսցի։

Այլ իբրեւ եսես նախանձոտ չար հակառակորդ ազգին արդարոց զզեղեցիկ մեծ վկայութեան անձն՝ որոյ գնացք խիզախնէ անարատ լեալ էին եւ այժմ անմահութեան պսակ ի գլուխ առեալ առանց հակառակութեան զվարձս մրցութեանն տարաւ, այնուհետեւ ջանայր՝ զի մի ինչ նշխար ի նշխարաց նորա տարցի ի մէնջ, քանզի բազումք խսկ կամէին առնել եւ ցանկացեալ էին լինել ի հաղորդութեան ընդ սուրբ մարմնոյ նորա։

Նմին իրի արկ բանսարկուն ի միտս Նիկետայ խնդրել ի փոխանակէ բդեշխին՝ չտալ քրիստոնէից զմարմինն, զի մի, ասէ, զխաչեցեալն թողեալ՝ սմա սկսանիցին դնել պատիւ։ Զայս ասէին նոքա դրդեալք եւ խրատեալք ի Հրէից անտի որ մեզն ուշ ունէին յորժամ հանել զնա ի հրոյն կամէաք։ Չէին այնմ գիտակ՝ թէ մեզ չէ հնար երբեք զՔրիստոս թողուլ, զայն՝ որ ի փրկութիւն ամենեցուն որոց փրկեսցին ընդ ամենայն աշխարհ՝ չարչարեցաւ, անմեղն վասն մեղաւորաց, եւ թէ զայլ ոք (կէտն- Հւնն) չկարեմք պատուել (Ներկղոսե–...)։ Առաջի սորա՝ որ Աստուծոյ Որդի է անկանիմք երկրպագութեամբ․ զմարտիրոսսն՝ զաշակերտս եւ զնմանողս Տեառն յիրաւի սիրեմք վասն առաւել սիրոյ նոցա առ իւրեանց Թագաւոր եւ վարդապետ, եւ ձ այր՝ թէ նոցա ընկերս եւ աշակերտակիցս կարէաք լինել։ Իբրեւ

*զգայ հարիւրապետն հաւանեցուցին զայն ջան. ճգնութեան Հրէիցն՝ եւ արկանել զդիակնն ի հուր անդր եւ այրել։ Բայց մեք յետ այնորիկ զոսկերաւորն ժողովեցաք, որ ծանրագին են քան զականս պատուականս եւ քան զոսկի, եւ պահեցաք զնոսա ի պատշաճ տեղւոջ, ուր եւ շնորհեսցէ մեզ Տէր ժողովել ըստ կարի, եւ ուրախութեամբ եւ խնդութեամբ կատարել զօր մարտիրոսութեան նորա առ յիշատակի այնոցիկ՝ որ ճգնեցան, եւ ի կրթութիւն եւ ի պատրաստութիւն նոցա՝ որ ճգնելոցն են։ Այսչափ վասն Պօղիկարպոսի՝ որ ընդ երկոտասանիցն որք ի Փիղադելփիա էին՝ վկայեաց. բայց առաւել քան զայլսն սա յիշի, մինչեւ եւ հեթանոսաց ամենայն ուրեք զնմանէ խօսել։ Ոչ միայն վարդապետ քաջ էր նա, այլ եւ ի մէջ մարտիրոսացն երեւելի եւ հոյակապ երեւէր՝ մինչեւ ամենեցուն ցանկալ նմանել մարտիրոսութեան նորա, քանզի այս մարտիրոսութիւն ըստ պատուիրանաց աւետարանին կրեցաւ։ Տեսական համբերութեամբն՝ անիրաւ անթիւպատոսին յաղթեաց, եւ զպսակ անմահութեանն, կեալ ուրախութեամբ խառն ընդ առաքելոցն եւ արդարոցն ամենեցուն, փառաւոր առնէ զԱստուած զՀայր եւ օրհնէ զՏէր մեր՝ որ առաջնորդէն մեզ, որ հովիւն է ի վերայ համօրէն կաթուղիկէ աշխարհիս։*

Ի Գաղիա ուր նորոգ իսկ հաստատեալ էին եկեղեցիքն Լուգդունայ եւ Վիեննայ ի Ս. Պոթինեայ որ եկեալ էր անդր յԱսիայ, ձգեցան յատեան քրիստոնեայքն անհնարին զրպարտութեամբք. ասկայն ըկանօքն, հրով, գազանօք, տարաշէկ աթոռովք եւ այլովք նոյնպիսեօք չկարացին հանել խոստովանութիւն ինչ ի նոցանէ՝ բայց թէ “քրիստոնեայ եմ եւ առ մեզ չգործի ինչ ամօթոյ„։ Այսպէս փափուկք քաջութեամբ համբերեցին տանջանաց եւ քերանաց, յորս նշանաւոր էր մանաւանդ Բղանդինա։ Պոթինոս եպիսկոպոս Լուգդունայ 90ամեայ հարա-տաթուր եւ մեռաւ ի բանտի. նա եւ դիակունք իսկ տուժելոցն հանեալ ի գերեզմանաց եւ արկան շանց առաջի, հրաման տուեալ զի մի ոք այնուհետեւ ի քրիստոնէից թաղեսցի (177)։ Վասն հռովմէական քաղաքացեացն ածաւ առանձինն հրաման մահու ի կայսերէ եւ այնպէս գլխատեցան. եւ ոմանք որ ի հարցափորձի անդ ուրացեալ էին եւ կալեալ ի դիպահւոջ մինչեւ ցհասանել հրամանի կայսերն որ արձակէր զնոսա ազատս՝ զղջացան եւ յերկրորդ հարցափորձին խոստովան եղեն առաջի ատենին եւ այնպէս խառնեցան ի գունդս մարտիրոսացն։ Պատմութիւն հալածանացս կայ ցայժմ ի թղթին գաղիական եկեղեցեաց առ եկեղեցիս Փոքրն Ասիայ։

Իսկ ի Հռոմ սաստիկ էր յոյժ հալածումն մօտ յամն 167 եւ 168։ Աստ ուրեմն վկայեաց Ս. Յուստինոս փիլիսոփայ, որ յետ տալոյ կայսեր զերկրորդ պատասխանատուութիւնն, առաջի Յունիոսի Ռուստիկոսի վերակացուին Հռոմայ, որ վարդապետ փիլիսոփայութեան կացեալ էր Մարկոսի Աւրելեայ, նմին իրի եւ հայր իսկ կոչէր զնա կայսրն, դատապարտեցաւ ի մահ, մանա-

Digitized by Google

ւանդ թելադրութեամբ Կրեսկեայ շնականն փիլիսոփայի որ նախանձորդ էր նորա եւ պարտեալ բազում անգամ ի վիճմանն:

Մարթի իմն ասել՝ թէ ընդ Մարկոսի Անտոնինեայ անց գնաց անհետ եւ բախտ տէրութեանն՝ որ յետ այնչափ բռնաւորացն հինգ իշխանս մի ըստ միոջէ եսես՝ որպիսիս դժուարին է յաճախ ի պատմութեան գտանել: Բարեխորհն Ներուա սկսաւ դարմանել զվէրս հայրենեացն. Տրայիանոս ընդ ազնուականութեան եւ մեղմականութեան՝ եցոյց վաստակս մեծամեծս եւ արքունական զաւազանաւն եւ սուսերաւն: Ադրիանոս իբրեւ մարդ ոք դոյզն՝ ունէր թերութիւնս մեծամեծս, այլ առաջնորդութիւն նորա էր արժանի գովութեան: Երկոքին Անտոնինոսք էին իմաստունք ի գահոյս թագաւորութեան. սակաւք ի փիլիսոփայից ա- ղաբողոնաւ դպրոցին այնպէս կեանս կէին՝ որպէս ուսուցանէինն. իսկ Անտոնինոսքն էին փիլիսոփայք ի ծիրանւոյն իւրեանց, կացին Թագին ցածունք եւ կալան զաշխարհ ի խաղաղութեան: Ամենայն իսկ պատիւք աստուածացուցման ընծայեցան ի ծերակուտէն եւ ի ժողովրդենէ՝ Մարկոսն Աւրելեայ, եւ յետ 100 ամաց իսկ տակաւին զպատկեր նորա ընդ պատկերս աստուածոցն դնէին Հռոմայեցիք՝ սիրով: Ընդունայն, մանաւանդ թէ անպարկեշտ պատիւ. որոյ մխիթարութիւն չգնաց զհետ նորա անդր՝ ուր հայիմք ցաւագին, ասէ ոմն ի մատենագրաց, ըղձանալով թէ նա որ զՔրիստոս հալածեաց յանդամն նորա, գտեալ իցէ ողորմութիւն յայնմանէ՝ որ ի խաչին վասն իւրոց խաչահանուացն աղաչէր թէ թող դոցա, զի ոչ գիտեն՝ զինչ գործեն:

5. Յետ առաջնորդելոյ տէրութեանն ամս իբրեւ 80 ի ձեռն իմաստուն կայսերաց, եկն եւ յաթոռն (180 — 192) Կոմոդոս Անտոնինոս նորին որդի 19ամեայ ի Փաւստինայ կնոջէ, ա- նազգորդն եւ ամբարտաւան եւ չար: Իսկ եւ իսկ գնեաց խաղաղութիւն ի Մարկոմանեացն՝ զի կեցցէ ի հանդարտութեան. հեռացոյց յանձնէ զիմաստուն խրատտուս հօրն իւրոյ եւ եթող զառաջնորդութիւն տէրութեանն ի ձեռն արանց անարգաց եւ բռնաւորաց:

Ինքն եւ զանձն ի խաղս սուսերամարտկացն, եւ ինքնին իսկ կռուէր իբրեւ զմի ի նոցանէ. երեւէր նա (735իցս) հրապարակաւ ի կերպարանս Հերակլի հռոմայեցւոյ: Չգայր չափ ապա- նութեանցն, եւ յաճախէր օր ըստ օրէ ի գործ յիմարութեան մինչեւ յետ 12 ամաց՝ հարճ նորա Մարկիա միաբանեալ ընդ Լետոսի անձնապահապետի եւ ընդ Էղեկտոսի սենեկապետի տայր սպանանել (31 Դեկտ. 192): Առ սովաւ մեծ ինչ մասն Կապիտողիոնին հանդերձ մատենադարանաւ ի փայլատականց լուցեալ այրեցաւ (189), եւ մեւս եւս հրդեհ զտաճարն Խաղաղութեան շինեալ ի Վեսպասիանեայ, յորում կայրուտ Երուսա-



Digitized by Google

ղեմնացուոցն էր՝ այրեաց հանդերձ մեհենիւն Վեստայ եւ մասամբ պաղատանն։

Որպէս ի սպանել տանն Կեսարեանց՝ նոյնպէս եւ այժմ իբրեւ վախճանեցաւ տոհմն Անտոնինեանց յարեան գժտութիւնք։ Թէպէտ եւ որ սպանինն զԿոմոդոս՝ ամբարձին փութանակի յիշխանութիւն զայրն առաքինի 67ամեայ զՊօւպղիոս Հեղուիոս Պերտինաքս զվերակացուն Հռոմայ (193, Յունուար. 1). այլ յետ երից ամսոց վասն խնայութեան իւրք արծաթոյ զայրացեալ անձնապահացն զրգռելոց ի Լետոսէ՝ սպանաւ այրն ազնուական ի պաղատանն, եւ շրջեցուցին զգլուխ նորա ի ծագ նիզակի ընդ քաղաքն (30 Մարտի)։ Այնուհետեւ յանդգնեալ անձնապահացն հանին զթագաւորութիւնն ի վաճառ՝ տալ ում առաւելն տացէ։ Սուղպիկիանոս աներ Պերտինակայ տայր 20,000 սեստերտս, բայց Դիդիոս Յուլիանոս մեծատուն քան զամենեսին ի Հռոմ ետ 25,000 եւ կոչեցաւ կայսր, ընկալաւ զնա ակամայ ծերակոյտն եւ ժողովուրդն։ Սակայն լեգէոնքն որ ի նահանգսն էին ինքեանք եւս կամեցան կացուցանել կայսր, եւ այնպէս ի միում ի նմին ժամանակի Սեպտիմիոս Սեւերոս ի Իլլիւրիկէ, Պեսկեննիոս Նիգեր (այր ծերունի, մեծատուն, քաջ եւ իմաստուն) յԱսորիս եւ Կղոդիոս Աղբինոս ի Բրիտանիա՝ ընտրեցան կայսր ի զօրացն, եւ քաղաքային պատերազմն եւեթ էր սահմանելոց թէ ո՛ ի սոցանէ զաթոռն կալցի։

6. Սեպտիմիոս Սեւերոս (193 — 211) յառաջ քան զամենեսին առ զՀռոմ. ընկալաւ զնա ծերակոյտն եւ զՅուլիանոս ետ սպանանել (1 Յունի)։ Կայսրն նոր ի բաց արձակեաց զանձնապահսն, եւ փոխանակ նոցա կացոյց անձնապահս յիւրոց զօրաց բազմագոյնս քան զնոսա չորեքպատիկ։ Ապա խաղաց նախ ի վերայ Նիգերայ զոր թշնամի հայրենեաց յայտ արար ծերակոյտն, եւ յետ բազում ճակատուց յաղթեաց եւ հար զնա առ Իսսեաւ ի Կիղիկիա (196), եւ ինքն Նիգեր ի փախստեան ըմբռնեալ սպանաւ. յետ այնորիկ դիմէր ի վերայ Աղբինեայ ընդ որում մինչեւ ցայնժամ միաբանութեամբ էր խորամանկ իմն մտօք, յաղթէր նմա առ Լուգդունաւ ի ճակատու եւ Աղբինոս փախուցեալ առնէր անձին (197)։ Այսպէս ի գլուխ հանեալ Սեւերեայ զպատերազմն քաղաքային մեծաւ անագորունութեամբ՝ յաղթէր եւ Պարթեւացն (198)։ Ապա դառնայր ի Հռոմ ձաղանօք յետ կալոյ յարեւելս ամս 6 (203)։

Աստ ուրեմն տակաւ երեւէին բարք անգթութեան նորա, զոր առաւել եւս գրգռէր սիրելին նորա Պղաւտիանոս այր ժլատ։ Այլ իբրեւ զնա ետ սպանանել (204) որդի կայսերն՝ Կարակաղղա, որ եւ համակ գժտութեամբ էր ընդ եղբօր իւրում Գետայ, առաւել եւս բռնաւորագոյն եղեւ կայսրն եւ ծարաւի արեան. առաջնոր-

Digitized by Google

դէր զճնուորական իմն խստութեամբ, եւ վասն փոքր ինչ կասկածանաց կոտորէր զբազմութիւն արանց երեւելեաց։ Յետուստ ուրեմն վասն չթողլոյ դատարկ զլեգէոնսն՝ եդ արշաւանս ի Բրիտանիա ընդդէմ Կալեդոնիացւոց (209), նորոգեաց զպատուարն զոր Ադրիանու էր շինեալ, եւ մեռաւ յԷբորակոն (Եորք) 66 ամաց առ սրտին նեղութեան վասն որդւոյ իւրոյ Կարակաղղայ՝ զի փորձեաց սա անդ երկիցս սպանանել զհայր իւր։ Մինչ չեւ մեռեալ՝ ետ բերել առ մահճօք իւրովք զսափորն կճեայ (յոր արկեալ պահէին Հռոմայեցիք զաճիւն մեռելոց իւրեանց) "Դու, ասէ, ընդունելոց ես զայրն որում չլինէր բաւական աշխարհս", եւ յառաջագոյն իսկ ասացեալ էր ուրեք թէ "Ամենայն ինչ եղէ եւ չեղեւ ինչ օգուտ" († Փետր. 211)։

7. Առ Կոմոդեաւ ի խաղաղութեան էին քրիստոնեայք (ըստ Գիոնի Կասեայ ի բարեխօսելոյ Մարկիայ սիրելւոյ նորա, բայց ո՞ կարիցէ հաւատալ նմա ի սմին), այս ինքն՝ զի չեղեւ ինչ մեծ հալածումն, այլ կային միայն օրէնքն առաջինք որոց կատարումն զյօժարութենէ ժողովրդեան այլ եւ այլ տեղեացն կայր կախեալ։ Առ սովին իսկ կայսերաւ վկայեաց երեւելի Հռոմայեցին Ապողոնիոս որ ի ծերակուտէն դատապարտեցաւ ի մահ։ Առ Պերտինաքսաւ, Դիդիոսն Յուլիանեաւ եւ Պեսկեննիոսն Նիգերաւ ոչինչ հալածումն կայսերական հրամանաւ երեւի եղեալ։

Իսկ Սեպտիմիոս Սեւերոս զառաջինն սիրով էր, ասեն, ընդ քրիստոնէից, քանզի ունէր նա բժիշկ քրիստոնեայ զՊրոկուղոս Տորպակիանոս անուն՝ որ զերծոյց զնա ի վշտագին ախտէ, եւ պաշտպանեաց իսկ նա (ըստ Տերտուղիանեայ) ի միում նուագի արանց եւ կանանց երեւելեաց՝ յերեսաց մոլեգնութեան ժողովրդեանն ի Հռոմ իւրով վկայութեամբն։ Սակայն զառաջին օրէնսն ոչ եբարձ, մանաւանդ թէ արգել եւս զդառնալն ի կրօնս Հրէից եւ քրիստոնէից։ Յետ յաղթելոյ նորա նախանձորդաց իւրոց՝ եդ ունկն բանից թշնամեաց քրիստոնէիցն՝ որք ամբաստան լինէին թէ չեղեն նոքա կցորդ ուրախութեանն հասարակաց (այս ինքն պաշտամանցն հեթանոսաց զոր կատարէին յուրախութեան անդ), քանզի թշնամիք տէրութեանն են՝ ասեն։ Նմին իրի կողմնակալք՝ որ հակառակ քրիստոնէիցն էին, մոլեգնէին չարաչար։

ՅԱփրիկեցւոց աշխարհին (200) անթիհիւպատոսն (Վիգիղիոս Սատուռնինոս) ետ սպանանել ի Կարքեդոն զ12 Սկիղղիտեան վկայսն որ անուանին այսպէս ի Սկիղղիտէ քաղաքէ Ափրիկեցւոց։ Դարձեալ ի վկայելոցն առ նորին յաջորդաւ Մինուկիոսիւ Տիմինոսիւ անթիհիւպատոսիւ՝ էին նշանաւոր կանայքն Փեղիկիտաս (ի գերեաց կարգէ) եւ Պերպետուա (յազնուական տանէ). զՊերպետուա որ էր 22 ամաց ոչ հաւանեցոյց յուրացութիւն՝ ոչ մանուկն սանդեաց որ ի գիրկսն հիւծեալ ծիւրէր եւ



Digitized by Google

ոչ հայրն ծերունի հեթանոս՝ որ անկեալ յոտս նորա պաղատէր եւ զոփայր (203)[1]։

Նորոգեցաւ եւ յԵգիպտոս ընդ նոյն ժամանակս հալածումն մեծ՝ մանաւանդ յԱղեքսանդրիա, յորժամ հաս անդր կայսրն, եւ տեւէր ամս բազումս. մի ոմն ի վկայից անտի էր եւ Լէոնիդաս հայր Որոգինի, եւ Պոտամիէնա կոյս գեղեցիկ՝ որում սպառնային մատնել զնա սուսերամարտկացն լկտեաց, այլ նա կացեալ հաստատուն սպանաւ հալեալ կապարաւ՝ հանդերձ Բասիղիդեաւ զինուորաւ որ պաշտպանեալն էր նմա ի չարչարել զնա զինուորականացն, եւ ընդ այնր տուեալ էր կոյսն խոստումն լուսաւորելոյ զնա. (ի մէջ ամացն 204 եւ 211)։

Ի դէպ է թէ եւ ի Գաղիա սաստիկ էր հալածումն, զի ըստ բազմաց իսկ վկայութեանց՝ գրեթէ ջնջեցան իմն քրիստոնեայք ի Լուգդունան հանդերձ եպիսկոպոսաւն իւրեանց՝ որ էր Ս. Իրենէոս յաջորդ Ս. Պոթինոսի, ընդ որում եկեալ էր նա անդր յԱսիայ. (202 կամ 203, թերեւս եւ անագան եւս՝ 208)։

Պատմութիւն մարտիրոսաց Սկիղղիտեան վկայից, Փեղիկիտայ եւ Պերպետուայ, Պոտամիէնայ եւ Բասիղիդեայ, որպէս եւ այսց Լուգդունեան վկայից որ մինչեւ ցայժմ առանձինն կան՝ վաւերական են։

## Ն.

Սեւերէ է Կարակաղղայ մինչեւ ցԴիոկղետիանոս — Նուաղումն տէրութեանն, Զ. Է. Ը. Թ. հալածումն եկեղեցւոյ (211—284)։

**32**

Ի ՄԱՀՈՒԱՆԷ անտի Սեւերեայ կայսեր մինչեւ ցկործանումն տէրութեանն մղէին Հռոմայեցիք ընդ Գերմանաց՝ գոգցես մի միայն հանապազորդ մարտ պատերազմի։ Բաց ի սոցանէ՝ պատերազմ էր նոցա եւ ընդ Պարսից յարեւելս, ուր Արտաշիր որդի

1 Ի վաւերական վկայաբանութեան անդ պատմէ ինքն Պերպետուա զտեսիլն զոր ի բանտին ետես. զոր եթէ ոք առ երազս եւս ունիցի, սակայն եւ այնպէս ցուցանէ թէ հաւատային ուրեմն յայնժամ քրիստոնեայք եթէ գոյ ինչ տեղի քաւութեան (քաւարան), եւ թէ աղօթք մեր կարող են լինել օգնական ննջեցելոցն անգէն։ Եղբայր Պերպետուայ եղբայր մի Դինոկրատէս անուն վախճանեալ ութնամեայ ի քաղցկեղէ յերեսն։ Պերպետուա ի մատուցանելն աղօթս միաբան ընդ բանտակցացն՝ եւ ի բերանոյ նորա անուն Դինոկրատեայ զարմ ոչ ինչ էր խորհեալ յաղագս նորա։ Զայս նշան համարեցաւ Պերպետուա եթէ կարօտ է նա աղօթից, եւ սկսաւ առնել աղօթս վասն նորա առ Աստուած մեծաւ եռանդմամբ։ Եւ ի գիշերին յայնմիկ ետես նա զԴինոկրատէս զի ի խաւարչտին ուրեք տեղւոջէ ուր կային եւ այլք բազումք՝ ելանէր եւ երեւէր ննջեալ ի տապոյ եւ ի ծարաւոյ, աղտեղի եւ տժգոյն եւ կային վէրքն յորս մեռաւ յերեսն։ Մատուցանէր Պերպետուա աղօթս վասն նորա, բայց էր նա անջրպետեալ ի նմանէ մեծաւ ինչ անջրպետութեամբ։ Կայր առ Դինոկրատեաւ աւազան ջրոյ լի՝ այլ բարձրաբերձ եզերօք, եւ ի ձգնել իւրում ի վեր ըմպել անտի ջուր՝ ոչ կարէր։ Իբրեւ զայս ետես արթնեցաւ Պերպետուա, զարթեաւ եւ ի միտ առ թէ ի ննջութեան եւ ի վիշտս է եղբայրն, բայց քանզի վստահ էր թէ լսէ նմա Աստուած՝ առնէր օր ըստ օրէ աղօթս վասն նորա։ Եւ ահա ի միում

Digitized by Google

Սասանեայ պարսկի յարուցեալ ի վերայ Արտաւանայ Դ. արքայի Պարթևաց, որ էր 31երորդ պայազատ Արշակունեացն՝ մերժեաց զնա յաթոռոյ յետ 3օրեայ պատերազմին, և այնպէս կանգնեցաւ եկաց թագաւորութիւնն Սասանեանց (յամէ 226 մինչև ցամն 651)։

Յաղ Հռոմայեցիք անդէն յիւրեանս յերիս իմն կարգս մարդկան բաժանէին։ 1. Կարգ զօրականացն որ վասն անդադրուն պատերազմաց օրըստօրէ ստուարացեալ աճէր ի սահմանակողմանս, ժողովեալ մեծաւ մասամբ ի բարբարոս նահանգաց և խառնեալ գերմանն, դակ և այլովք խժական վարձկանօք, զորս բազում վարձուք և պարգևօք և բաշխիւք տրոց միայն՝ բաւական էին կայսերք ունել ի չափու։ 2. Կարգ այնոցիկ որ իրաւունս քաղաքացեաց Հռոմայ ունէին և էին ջղատեալք բարեկեցութեամբ, որոց չգոյր ամենևին զօրութիւն բարոյից, այլ միայն ծանծաղագոյն իմն հրահանգք ուսմանց։ 3. Կարգ ծառայից կամ գերեաց անարգելոց որոց ոչ ինչ գոյին իրաւունք, ոչ պատիւ և ոչ զօրութիւն, ոչ զօրականաց ինչ նպաստ կարէին լինել և ոչ քաղաքացեաց օգուտ. զի կէսք ի նոցանէ՝ սուսերամարտիկքն էին զրեթէ ի վայրենութիւն ելեալք, կէսք բեռնակիրք և մշակք, և կէսք արբանեակք զեխութեան և անառակութեան, լքեալք լուծեալք հնացեալք։ — Կայսերքն կամ յառաջին և կամ յերկրորդ կարգէ անտի էին. և յայն սակս երբեմն զբրտութիւն և զանագորոյն բարս արիւնառուշտ զօրականին ունէր կայսրն, և երբեմն՝ զգեղխանս և զմեղկութիւն թուլամորթութեան քաղաքացեացն. և միշտ իսկ որպէս վասն վարձուց զօրականին՝ նոյնպէս և վասն ամբաւ ծախուց արքունեացն և զբօսանաց անսպառէր ամբոխին յաճախէր հարստահարութիւն և ծանրութիւն հարկաց[1]։

յաւուրց երբեմն ընդ այլոց խառնամբոխ ժողովրդեանն ի կղզեացն նստէր, եւս նա ի սեղանն՝ սեղմ լուսաւոր և նշմարեալ անդէն զինքն բաւես մաքուր և գեղեցիկ զգեցեալ, սեղմ երեսացն յորում վէրքն լեալ էին՝ էր այնուհետև սոյն, եզր ուսողանին այնպէս ցանցառոյն էր՝ մինչև ցմէջս իսկ մանկանն հատանէր, և յեղէր անդ կայր տաշտ մի որով ըմպէր իսկ և ջուրն ոչ նուազէր ամենևին, և յետ այնորիկ երթայր նա խաղալ ընդ օրինակի մանկանց։ Ի մեռ առ Պերգամոսու թէ զերծաւ նղովս իւր ի նեղութենէ անտի։

1 Ասիկիոս անձն անուն երեսելի ի շռայլութեան առ Աւգոստոսաւ՝ ծախեալ 5.000.000 փղորինս իբրև եւս թէ 500.000 փղորինք միայն մնայցին՝ եթէ զամենայն պարման հատուցանէր՝ թոյն առ. մի [illegible] յընթրեաց նորա առայր 500 փղորինս վասն ձկան միոյ որոյ կշիռ էր 5½ լիտր։ Ի միում նուագի Լուկիոս Հռոմէր Պողիկողոսեան ի միում ընթրեաց ոսպնեալ զհազար երից նահանգաց մանձկանացն. և ի կենդայս ուրեք՝ միայն պատկք վաղգիցն զոր ձմերայնի բերեալ էին յեզիպտացւոց աշխարհէ՝ առաւել քան զ80.000 փղորինաց գինք էին։ Վիտելլիոս առայր յօրինել սեղան անհնարին ընդարձակութեամբ զոր Միներուայ վահան կոչէր, և ընդոր համագամք որոց՝ եթէ կարի սակաւ՝ 50.000 փղորինաց գինք էին, յորս էին լեզուք փիւնիկահաւուց, ուղեղք սիրամարգաց և փասիանաց, կէթ մուրենէ և այլ ինչ ազնիւ ձկանց և այլ ևս նմանօրինակք։ — Ի տունս մեծամեծացն զատակք խոհակերաց կային ի սպասու, և զսեղանսն շուրջ կանգնեալ կային ծառայք ի գերեաց սեռ և սպիտակ յամենայն հասակէ և ի տիոց, զարդարեալք ոսկւով և արծաթով. որք բազում անգամ զգլխերն ամենայն կային յանկեան ուրեք մատուցիք և ուշադրութեամբ հրամանաց, և եթէ սակաւիկ ինչ հաղային կամ փռնչէին՝ ըմպէին ընդ այնր զան. Այլ ընթրիք բազում անգամ յերկարէին զբազում ժամս և զգա-

2. Յետ Անտոնինեանց առեալ զաթոռն Սեպտիմիոս Սեւերոս յառաջնմէ կարգէ անտի, ի վախճանել իւրում կացոյց ի հաստատ պայազատութիւն զերկոսին զորդիս իւր զԱնտոնինոս Բասիանոս Կարակալլա (211—217), անուանեալ այսպէս առ թշնամանաց իմն ի հանդերձէ իմեքէ Գաղղիացւոց զոր սիրէր եւ այլոց տայր պարգեւ, եւ զՍեպտիմիոս Գետա. այլ վասն սաստիկ ատելութեանն որ հաստատեալ եւ արմատացեալ էր ի սիրտս նոցա՝ չկարացին միաբանել նոքա ի մի առաջնորդութիւն եւ իւրաքանչիւր ունէր իւր առանձինն գունդս անձնապահաց: Այնուհետեւ բաժանեցան եւ նահանգք թագաւորութեանն ի մէջ երկոցունցն՝ յարեւմուտս եւ յարեւելս: Սակայն եւ ոչ այնպէս լուծաւ հակառակութիւնն՝ մինչեւ ի միում յաւուրց տայր Կարակալլա սպանանել զԳետա ի բազուկս մօրն իւրոյ Յուլիայ Դոմնայ, քանզի առ նա խոյս ապաստանեալ էր Գետա ի վտանգին. կոտորեաց եւ զկուսակիցս նորա՝ արս իբրեւ 20,000 (212), սպան եւ զՊապինիանոս իրաւագէտ՝ զի չառ նա յանձն արդարացուցանել զեղբայրսպանութիւն նորա: Այլ իբրեւ սպառեցան մթերք խնայութեան հօրն, վասն տալոյ վարձս զօրականին առատութեամբ եւ վատնելոյ յանխնայ՝ կոտորէր զմեծատունսն եւ տայր որոց ի նահանգսն էին իրաւունս հռոմէական քաղաքացեաց ընդ բազում գնոց[1]: Այլ ոչ միայն վասն ժողովելոյ արծաթ այլ եւ տագնապեալ եւս ի մտացն խղճէ՝ եւ [illegible] եղբայրասպանն ի Հռոմայ (213) շրջել ի նահանգսն. նեղէր զնոսա հարստահարութեամբ, երեւէր ի Մակեդոնիա իբրեւ Աղեքսանդրոս՝ կրելով զկազմեալ զէնսն նորա եւ զզրահս եւ զսաղաւարտն սպասուն ի կիր արկանելով եւ կազմե-

զում գիշեր. յետ իւրաքանչիւր սեղանոյ՝ տանդյին գեղ փոխելոյ շուրջառեալքն, եւ ցժամանակս միւսոյ սեղանոյն փափկանային բաղանեօք ի ջուր ցուրտ կամ ջերմ որոյ կէս բազում անգամ՝ գինի եւ իւղք անուշունք էին, թեպէտ եւ մարմինք այնպիսեացըն փափկանակի խանգարեալ ապերզանային եւ ծիւրէին ծնգէին տարաժամ:

Անցուցանէին զլէին զաղբ կանանց ախնասերք Հռոմայեցւոցն, երկիցս եւ երիցս յաւուրն իւրովք անուշիւք զմարմինս օծանէին, ժամս բազումս կային առաջի վարսավիրայից՝ տալ գանգրել ոլորել զվարսն արուեստիւ, ցանէին փոշի ոսկւոյ եւ այլ եւս ինչ ազգս փոշւոյ ի հերսն, եւ զմորթ եւ զյօնսն ծարրէին. նոյնպէս անհնարին էր եւ փառաւորութիւն եւ գրգութիւն անկողնոց. բարձից եւ գեղապակաց. զեղխութիւն ի շինուածս եւ յամարանոցս յաւելոյր առ ըստ ամէ. ամարանոցք Ղուկուղղեայ եւ Կեսարեայ փայր ինչ էին առ փափկակեաց բարեկեցիկ կենաց ի տունս կայսերացն: Ըստ նմին չափոյ յաճախեալ էր եւ զեխութիւն ի ձեռակերտս արուեստից. մի մի անօթ յաղնուագոյն ինչ քարէ՝ 10.000 փղորինաց էր: Ի տունս Սենեկայ 500 սեղանք կային այնչափ մեծագինք մինչեւ միոյ ի նոցանէ արժել 50.000 փղորինս: Պոպպէա կին կայսերն Ներոնի [illegible] ամբակաց ջորւոց իւրոց ոսկի, եւ Կալիգուլայ էին նաւք ծովու յեղեւնափայտէ, որոց առաջք ընդելուզեալ էին ակամբք պատուականօք:

Զգայր ամենեւին կրթութիւն եւ հրահանգք եւ ի տունս եւս մեծամեծացն, բայց միայն զի զերեւելի երեւելի ինչ մատեանս հնոցն ընթեռնուին, այլ գլխաւոր գործ Հռոմայեցւոցն խաղք եւեթ էին. Որդիք եւ թոռունք Սկիպիոնեանցն երեւելի եւ անուանի լինէին ի վարել զկառս եւ արշաւեցուցանել, եւ ինքնին իսկ կայսրն եւ մեծամեծք նորա ի թատերն առաջի ժողովրդեանն կաքաւէին: Առիւծունք, վագերք եւ ինձք հարիւր առ հարիւր ելանէին յասպարէզն եւ կոտորէին. ոչ ինչ ընդհատ էր ի նոցանէ եւ կատարած սուսերամարտակացն:

Անչափ յաճախեաց բազմացաւ անօրէնութիւն եւ չարութիւն, մինչեւ միում ի պատմչաց ժամանակին ասել՝ թէ զարբինք երկաթոյ առաւել ընդ գործ շղթայից վաստակեն քան ընդ յօրինուած գործեաց մշակութեան:

1 Constitutio Antoniana de civitate.

ընդ իւր փաղանգ ի 16,000 արանց մակեդոնացւոց, եւ յԱսիա իբրեւ Աքիլլէս: Առաւել իմն մոլեգնէր յԱղեքսանդրիա. քանզի զայրացեալ ընդ բանս ինչ թշնամանաց զոր էին խօսեալ զնմանէ երբեմն քաղաքացիքն, յետ մտանելոյ ի քաղաքն եւ ընդունելոյ նոցա զնա մեծաւ փառաւորութեամբ՝ ժողովէր զամենայն երիտասարդսն իբրեւ այն թէ կազմիցէ ի նոցանէ գունդ մի անձնապահաց, եւ կոտորեալ զնոսա՝ ապա առաքէր ի քաղաքամէջ անդր զզօրսն յաւար եւ ի կոտորած, եւ ինքն ի տանեաց մեհենին Սերապեայ դիտէր զանցս իրացն: Յետ այնորիկ սպան զնա անձնապահապետն իւր Մակրինոս ի պատերազմին զոր տայր նա ընդ Պարթեւաց, 29 ամաց (Ապրիլ. 217):

3. Օսոյն Սեպիլիոս Մակրինոս (217—218) որ եւ Անտոնինոս զանձն անուանեաց՝ ընտրեցին իսկ եւ իսկ զօրականն, ընկալաւ ծերակոյտն եւ ինքն առ իւր կեսար՝ զԴիադումենիանոս զիւր որդի: Այլ մինչդեռ նա յԱսիա էր՝ ընտրեցաւ ի լեգէոնացն կայսր՝ Բասսիանոս Հեղիոգաբաղոս քրմապետ արեգական յԷմեսա Ասորւոց, թելադրութեամբ հանուոյն իւրոյ Յուղիայ Մեսայ (քեռն Յուղիայ Դոմնայ մօր Կարակաղղայ), քանզի կարծեցոյց իմն Մեսա թէ Հեղիոգաբաղոս որդի իցէ Կարակաղղայ սատուածացելոյ, եւ կաշառեաց իսկ գանձուք բազմօք զզօրականն նահանգին Ասորւոց, որ զայրացեալ իմն էին ընդ Մակրինոս վասն խստութեանն: Թէպէտ Մակրինոս փախուցեալ անձապարէր ի Հռոմ, քանզի ընդ նա կամէր ժողովուրդն եւ ծերակոյտն, այլ նաեւ որ անցուցանէր զնա ի Բիւզանդիոն՝ վարեցաւ ի մրրկէ այսրէն յետս եւ ըմբռնեալ ի խնդրակացն սպանաւ հանդերձ 10ամեայ որդւովն Դիադումենիանեաւ (Յունի. 218):

4. Հեղիոգաբաղոսն մանուկ 14ամեայ, որ կոչեցաւ Աւրելիոս Անտոնինոս Հեղիոգաբաղոս (217—222) առ բեր ընդ իւր ի Հռոմ զամօթալից պաշտօն արեգական, այս ինքն՝ զթուխ վէմն զնդաձեւ անկեալ յօդոց, զոր պաշտէինն յԷմեսա. չգոյր չափ անամօթութեան, անառակութեան, շուայտութեան եւ անգթութեան նորա: Ոչ երբեք այնպէս էջ յանարգութիւն ծերակոյտն որպէս առ սորի մանկամբս որ եւ զհանին իւր զՄեսա նստոյց ընդ ծերս ծերակուտին: Կարգեաց ծերակոյտ ինչ գահերիցութեամբ մօր իւրոյ Սոյեմիայ (դստեր Մեսայ) վասն հանդերձից եւ զարդուց կանանց եւ կարգի տան: Երեւէր ի հրապարակս մերթ երկայն փիւնիկեցի կամ մար պատմուճանաւ, մերթ կանացի գումարտակօք ականց պատուականաց, ամբոխիւ սրնգահարաց եւ ծնծղայիւք եւ ձեռօք եմեսացի պաշտամանն. եւ ինքնին եւս յառնէր ի կաքաւս առաջի վիմին յանդիման մեծամեծացն Հռոմայեցւոց:

Իւր իսկ հանին Մեսա խրատ ետ նմա կացուցանել իւր ժառանգ զԱղեքսիանոս (այս ինքն՝ զԱղեքսանդրոս Սեւերոս) զոր-

դի Մամմէայ որ էր կրտսեր դուստր Մեսայ։ Բայց իբրեւ չկարաց Հեղիոգաբաղոս ապականել զբարսն Աղեքսիանու, սկսաւ դարան գործել նմա, այլ անձնապահքն եղեն ի կողմն մանկանն եւ սպանին զմատանշանն Հեղիոգաբաղոս, որ ց19երորդ ամ կենացն՝ արար չորս կանայս եւ ամբոխ բազում հարճից, եւ զամենայն խակ ազգս յոռութեանց հան ի գլուխ (Մարտ. 222)։

5. Իսկ պատանեակն 14ամեայ Աղեքսանդրոս Սեւերոս (222 — 235) էր կրթեալ զգուշութեամբ ընդ խնամակալութեամբ մօր իւրոյ Մամմէայ, եւ եցոյց ձիրս չքնաղս եւ առաքինութիւնս մեծամեծս ի թագաւորութեան իւրում։ Ի չին նորա բարք յստակք եւ անարատք. բաժանեալ էր նա զժամս իւր յառանձին պաշտօն, յուսումն եւ ի գործս իրաց տէրութեան։ Յառանձին ինչ տաճարի[1] ընդ պատկերաց արանց երեւելեաց զոր պատուէր, եդեալ ունէր եւ զԱբրահամու եւ զՔրիստոսի։ Մայր նորա լուաւ զհամբաւն Որոգինեայ եւ կոչեցեալ զնա յԱղեքսանդրիայ՝ խօսեցաւ ընդ նմա, եւ ինքն իսկ Աղեքսանդրոս մերձ էր եւ յօժարագոյն ի քրիստոնէական վարդապետութիւն։ Զանուանս այնոցիկ զոր յառաջնորդութիւն նահանգաց առաքէր՝ ծանուցանէր հրապարակաւ, զի որ ունիցի ինչ զնոցանէ ամբաստանութիւն՝ ցուցցէ. քանզի ասէր թէ արդարեւ անարժան իմն է՝ եթէ յընտրել մերում զկուսակալսն որոց յանձն լինելոց են կեանք եւ արարք մարդկան՝ զայն չառնիցեմք զոր քրիստոնեայք եւ հրեայք առնեն՝ յորժամ ծանուցանեն զանուանս այնոցիկ որ ի քահանայութիւն իցեն կարգելոց։ Բազում անգամ յեղյեղէր զբանն զոր ի քրիստոնէից լուեալ էր՝ թէ Զոր դու ոչն կամիս զի արասցեն՝ զայն եւ դու մի այլոց առներ[2], եւ էր դրոշմեալ զայն ի վերայ պալատանն[3]։

Ամբարձ նա յառաջին պատիւ զծերակոյտն, եւ ի միջոյ նորա ընտրեաց իւր զգուշութեամբ խորհրդականս՝ արս պատուականս երեւելիս 16։ Կարգեաց նոցա գահերէց զհոյակապ իրաւագէտն զՈւղպիանոս, եւ մերժեաց ի բաց ի պաշտամանցն զարսն զանարժանս զոր մոյծ Հեղիոգաբաղոս, որպէս եւ զմէհն առաքեալ էր վաղ յետս յԷմեսա։

Այլ զինչ արդեւք ձեռնհաս էր վճարել առաքինութիւն եւ իմաստութիւն պատանեկի միոջ ընդդէմ ապականութեան ժամանակին եւ զօրականացն բռնաւորութեան։ Զանալ ջանաց նա ոչ միայն ունել զսաստ ի չափու այլ եւ քաղցրութեամբ եւ սիրով ածել զիւրեւ, այլ զուր եւ ընդ վայր։ Իւր իսկ առաջի ետես զի սպանին զբարեկամն իւր զՈւղպիանոս, եւ Դիոն Կասիոս պատմագիրն ապրեցաւ ի նոյնպիսի մոլեգնութենէ փախստեամբ ի

1 Lararium.

2 Տոբիթ Դ. 16. Զոր դու ատես՝ ումեք մի առնիցես։

3 Բայց աւելի իմն քան զայն թելադրէ Քրիստոս, յորժամ ասէ՝ Մատթ. Է. 12. Զամենայն որ զինչ կամիցիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս եւ դուք արարէք նոցա, եւ Ղուկ. Զ. 31. Որպէս կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջիք եւ դուք նոցա։

Digitized by Google

Գերմանիա։ Այսպէս կռուէր Աղեքսանդրոս զամենայն ժամանակս կենացն ընդ զօրականացն ժպրհութեան։

Ի յարձակել Արտաշրի Սասանեան առաջնոյ Թագաւորի նորոյ տէրութեանն Պարսից (յամէ 226) ի սահմանս Հռոմայեցւոցն մինչեւ ի Գամիրս կոյս եւ խնդրել զերկիրն մինչեւ ցծովն Եգէականն եւ ցՊրոպոնտիս, խաղաց ի վերայ նորա Աղեքսանդրոս (231 — 233), այլ զելից իւրացն այլ եւ այլ իմն են պատմութիւնքն. որպէս հաւանութեան է՝ ցածոյց եւ զապստամբութիւն լեգէոնի իւրոյ յԱնտիոք։ Այլ յորժամ ձեռնէր ի կողմանս Ռենոսի արգելուլ զասպատակ Գերմանացն՝ մօտ ի Մոգունտիա սպանաւ հանդերձ մարբն եւ հաւատարիմ բարեկամօք ի վրանի իւրում՝ 27 ամաց ի ձեռն զօրականին զորս գրգռեաց Մաքսիմինոս Թրակացի (Աւգ. 235)։

Այրս բիրտ եւ վայրենի Յուլիոս Մաքսիմինոս Թրակացի (235—238) որ յերիտասարդութեանն հովիւ լեալ էր անդէոց, եւ ապա զօրութեամբ մարմնոյ եւ քաջութեամբ գտեալ անուանս ի զօրուն՝ տակաւ ել ի զօրավարութիւն, եւ յայնժամ ի խորհրդակցաց դաւոյն ընտրեցաւ կայսր եւ առ իւր աթոռակից զիւր որդի համանուն։ Հալածէր նա կասկածանօք անագորոյնս՝ ոչ միայն զբարեկամսն Աղեքսանդրի, յորս ապաքէն եւ քրիստոնեայք էին, այլ եւ առհասարակ զբազումս յարանց ազնուականաց. եւ յետ խռովութեան իւրոյ միոյն՝ ետ նա կոտորել 4000 այր առանց հարցափորձի։

## 33

Առ Սեւերոսն Աղեքսանդրիւ եղեւ համարձակութիւն քրիստոնէից շինելոյ եկեղեցիս, եւ ի միում նուագի յորժամ ել առաջի կայսեր գժտութիւն ինչ ի Հռոմ վասն տեղւոյ իրիք եկեղեցւոյ ընդ առն աշխարհականի, վճիռ ետ կայսր՝ թէ քրիստոնէից լիցի տեղին. «Բանզի լաւ է, ասէ, թէ պաշտեսցի Աստուած՝ որպիսի ինչ եւ իցէ օրինակաւ, քան եթէ ի գինեվաճառս փոխեսցի տեղին»։ — Իսկ Մաքսիմինոս ի պատճառս ահագին սասանութեանն որով ապականեցաւ Կապադովկիա եւ Պոնտոս, յայտնի իսկ պատուիրեաց հալածումն հրովարտակաւ՝ սահմանելով պատիժ մահու գլխաւորաց քրիստոնէիցն եւ ուսուցչաց նոցա, եւ այրեցան իսկ յեկեղեցեաց քանի մի։ Այլ այն հալածումն ոչ ընդ երկար ինչ էր եւ ոչ ընդ ամենայն տեղիս։

Ընդ նոյն ժամանակս յետ վճարելոյ յաղթութիւնս ընդդէմ Գերմանաց (236)՝ խաղաց Մաքսիմինոս ի Պաննոնիա տալ անտի պատերազմ ընդ Սարմատաց (237)։ Այլ վասն ագահութեանն՝ գրգռեաց զամենեսին։ ՅԱփրիկէ ուր յարձակեցաւ ժողովուրդն ի վերայ գանձապետին՝ որ զատապարտեալ էր զարս մե-

ծառանս ի տոյժս մեծամեծս՝ ապստամբեցին եւ ընտրեցին կայսր զայրն ընտիր 80ամեայ զանտիհիւպատոսն զԳորդիանոս Ա. հանդերձ որդւովն իւրով 46ամենիւ Գորդիանու Բ. յակամայ կամս նոցա, եւ ընկալաւ իսկ զնոսա ծերակոյտն։ Այլ Մաքսիմինոս մրմռեալ ձեպէր մեծաւ քինու յիտալիա (238)։

Թէպէտ եւ վաղ պարտեցան Գորդիանոսքն յԱփրիկէ ի կուսակալէն Մաւրիտանիայ ի Կապեղղիանոսէ, քանզի անպատրաստք իսկ էին, եւ անկաւ ի կենաց՝ որդին ի ճակատու եւ հայրն անձին առնելով, սակայն ընտրեաց ծերակոյտն փոխանակ նոցա զանկզետիկոսն զՊուպիենոս Մաքսիմոս (մեծ՝ վաստակովք) եւ զԿեղեկոս Բաղբինոս (երեւելի՝ ընչաւետութեամբ), եւ ըստ խնդրոյ ժողովրդեանն եւս նոցին ընկեր իբրեւ կեսար՝ զկրսերն Գորդիանոս զԹոռն Գորդիանու անտիհիւպատոսի։ Մաքսիմինոս կայր պաշարէր զԱկուիլեա, այլ քանզի զկամուրջս Իսոնտիոս (Իզոնցոյ) գետոյ հատեալ էին քաղաքացիքն, ինքն յամենայն զինուոյ տայր կազմել կամուրջ եւ հարկանել զքաղաքն։ Սակայն իբրեւ չյաջողեալ յարձակմանն եւ սաստկացեալ եւս կարօտութեանն տուրանջել սկսաւ զօրն՝ չարչարեաց Մաքսիմինոս զոմանս ի հրամանատարաց նոցա. յայնժամ յարեան ի վերայ եւ սպանին զնա հանդերձ որդւովն (Մայ. 238), եւ ածան զգլուխս նոցա ի Հռոմ, թէպէտ եւ տուեալ էին տուրք նմա երդուեալ կալ հաւատարիմ յաւիտեան։ Այնպիսի իմն անցք անցին եւ ընդ այրսն երկոսին լաւս ընդ Պուպիենոս եւ Բաղբինոս ի Հռոմ. քանզի չկամէին անձնապահքն ընդ կայսր որ ընտրեալ ի ծերակուտէ իցէ, եւ սպանին զնոսա չարաչար (15 Յուլ. 238)։

2. ԶԱնտոնիոսն Գորդիանոս Գ. (238—244) 14 կամ 17-ամեայ ընկալան ամենեքին առհասարակ։ Յարեցաւ նա զհետ արանց լաւաց, եւ եդ յաջողութեամբ արշաւան ի վերայ Գոթաց, Ալանաց, Սարմատաց եւ Պարսից յարձակելոց յԱսորիս առ Շապհով Ա. (յամի 241—243)։ Յարշաւանսն նորա ընկեր էր միշտ Միսիթէոս այր լաւ[1], որոյ խորհրդովն իսկ վարէր ցանկ Գորդիանոս ի խաղաղութեան եւ ի պատերազմի եւ հայր կարդայր զնա։ Այլ յետ Միսիթեայ վախճանին անձնապահապետ նորա Փիլիպպոս Արաբացի՝ որոյ հայրն աւազակ լեալ էր, յարոյց խռովութիւն եւ ետ ընտրել զանձն կայսր եւ սպանանել գաղտ զԳորդիանոս՝ զոր զօրականն եւ ծերակոյտն՝ իւրեանց որդեակ կոչէին, եւ ժողովուրդն՝ բերկրութիւն իւր (փետր. 244)։

3. Մ. Յուղեաւ Փիլիպպոս (244—249) առէպ ապստամբութիւնք էին՝ մանաւանդ ի Պաննոնիա։ Յամի 248 տօնեցաւ առնովաւ 1000երորդ ամն շինութեան Հռոմայ։ — Մեծ իմն այն գովութիւն է Փիլիպպեայ զի արգել զպղծութիւնս հակառակս

1 Որում եւ ծերակոյտն անուն պատուեալ՝ Pater principum et reipublicae.

Digitized by Google

բնութեան որ առ հասարակ հրապարակաւ յայնժամ լինէին, զոր եւ ոչ առաքինին Աղեքսանդրոս իշխեաց կարծել։

Այս սրբոյն լեզէոնքն Պաննոնիացւոց ընտրեցին կայսր զԴեկիոս։ Խաղաց ի վերայ նորա Փիլիպպոս, այլ ի պարտութեան մատնեցաւ, եւ յետ փախստեանն՝ ի Վերոնա սպանաւ, որպէս եւ որդին նորա համանուն եւ բարձակից (յամէ 247) սպանաւ ի Հռոմ յանձնապահացն (Սեպտ. 249)։

4. Որպէս նպաստաւոր իմն էր Փիլիպպոս քրիստոնէից՝ մինչեւ ոմանց յեկեղեցական պատմագրաց կարծել թէ քրիստոնեայ իսկ լեալ իցէ, սակայն չմարթի ցուցանել. թէպէտ եւ Նիկիբուր գերմանացի նշանաւոր մատենագիր պատմութեան Հռոմայեցւոց՝ չհամարի ինչ այնչափ անհաւանութեան զիրսն։ Բազմացան առ նովաւ քրիստոնեայք յամենայն իսկ կարգս եւ յաստիճանս, եւ նուազեալ օր ըստ օրէ կռապաշտութիւնն՝ տարածանէր եկեղեցի։ Ի սմին իսկ ժամանակի Փաբիանոս քահանայապետ Հռոմայ (236—250) առաքեաց (ըստ վկայութեան Ս. Գրիգորի Տուրոնացւոյ ի 6 դարու՝) 7 քարոզս աւետարանին, իբրեւ եպիսկոպոս հանդերձ քահանայիւք ի Գաղիա (յամի իբրեւ 245)։ Սոքա հաստատեցին 7 եկեղեցիս. Ս. Գրատիանոս զեկեղեցին Տուրոնայ (Թուրայ), Ս. Տրոփիմոս զԱրելատայն, Ս. Պաւղոս զՆարբոնայն, Ս. Սատուռնինոս զՏոլոսայն (Թուլուզայ), Ս. Սարեմոնիոս զԱրուեռնայն (Կլերմոնի՝ յՕվեռներ), Ս. Մարտիալէս զԼեմովիկիայն (Լիմոժ քաղաքի), իսկ Ս. Դիոնիսիոս որ թուի թէ գլխաւոր ամենեցուն էր՝ զեկեղեցին Պարիսայ. սա անուանի Առաքեալ Գաղիայ (որ եւ վկայեաց առ Մաքսիմիանոսիւ յամի 287)։ — Մօտ ի վախճան թագաւորութեանն Փիլիպպեայ յարուցին հեթանոսք խռովս ի վերայ քրիստոնէից յԱղեքսանդրիա, եւ բաց յայլոց բազմաց՝ սպանան ընկանօք սուրբքն Մետրաս եւ Կուինտա եւ Ապողոնիա կոյս (249)։

5. Դեկիոս Տրայիանոս (249—251) որ առ իւր կեսար զիւր երեց որդի անուանակից, էր ի հռոմայեցի ազնուական տոհմէ, նախանձաւոր խստագոյն վարուց եւ փառաց առաջնոցն Հռոմայեցւոց. նմին իրի իսկ եւ իսկ կացոյց միւսանգամ պաշտօն համարակալութեան (քննութեան վարուց քաղաքացեացն) որ ի ժամանակաց անտի Օգոստեայ անկեալ էր ի մոռացօնս, եւ ընտրեցաւ ի սոյն ի ծերակուտէն Վաղերիանոս (որ յետոյն եկաց կայսր)։ Ինքնին Դեկիոս գրեաց առ սա զընտրութիւնն, բայց նա չառ յանձն հեռանալ ի զօրուէն, եւ ասէր թէ ապականութիւն բարուց ժամանակին առանց բժշկութեան է։ Այլ Դեկիոս իբրեւ այր հռոմայեցի՝ եւ զտեւումն հաստատութեան պետութեանն կապեալ ընդ պաշտաման դիցն անմահից համարէր, նմին իրի իսկ ամենայն սաստկութեամբ հզօր բնութեան իւրոյ՝ եդ ի մտի ջնջել

բնաբարձ զքրիստոնէութիւնն, ուր միայն ի սմանէ պարտ էր ակն ունել վարուց ուղղութեան եւ տէրութեանն հաստատութեան։

Իբրեւ 38 ամք էին զի վայելէր եկեղեցի ի խաղաղութեան (թէ առցի ի բաց համառօտ եւ մանաւոր հալածումն Մաքսիմինեայ)։ Այլ ոչ ամենեցուն ի քրիստոնէից եղեւ այն օգուտ։ Ընդ տունկսն ընտիրս բուսաւ խառն եւ պաղձն բազում, ի ծաղիկս դրախտին Աստուծոյ՝ սուտ էին բազումք եւ մերձ ի թօթափել անդէն յառաջնում մրրկի անդ. զոսա կամէր իմն ընտրել տէր այգւոյն։

Հան Դեկիոս անդէն յամի 249 հրաման ի նահանգսն՝ ոչ եթէ այնչափ սպանանել զքրիստոնեայսն՝ որչափ նորանոր տանջանօք ածել յուրացութիւն։ Զմանր հանգամանս այսր մեծի հալածմանն նկարեն թուղթք Ս. Կիպրիանու եպիսկոպոսի Կարքեդոնացւոց, եւ թուղթ Ս. Դիոնիսիոսի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց առ Փաբիոս եպիսկոպոս Անտիոքայ (առ Եւսեբեայ)։

Ածէին կուտէին զքրիստոնեայսն ի հրապարակս վաճառացն. անդ ստիպէին երկիր պագանել եւ արկանել խունկս դիցն պատկերաց։ Սփռեցան տարածեցան առաջի նոցա ազգի ազգի գործիք տանջանաց, եւ ջանային ածել զնոսա ի վհատութիւն պէսպէս ըկանօք։ Գունդագունդ արկանէին զնոսա ի բանտս, մինչեւ հարկ իսկ լինել զբազումս ի նոցանէ առաքել առ ժամանակ մի յաքսորս՝ զի եւ այլոց գտցի տեղի։

Բազումք անդէն իսկ ահագին պատրաստութեամբն, եւ եւս բազմագոյնք ի հասանել արդեամբք տանջանացն առնուին յանձն զուրացութիւնն. կէսք հաւանեալ էին ցանելոյ խունկս կամ ուրանալոյ զքրիստոնէութիւն, եւ կէսք ապրէին՝ առեալ արծաթոյ մուրհակ յորում վկայէին իմն թէ զոհեցին կռոց։ Բազմաց անուանք մնացան ստութեամբ ի մատեանս հարցափորձիցն՝ որպէս թէ հնազանդեցին հրովարտակի թագաւորին, այլ եկեղեցի մերժէր զամենայն իսկ լռելեայն հաւանութիւն։ Բազումք ի տկարացելոց անտի դիմէին առ մարտիրոսն կամ խոստովանողս խնդրել զբարեխօսութիւն նոցա բանիւ կամ գրով։ Ըստ բարեխօսութեան նոցա թողուին եպիսկոպոսունք՝ դարձելոցն զեկեղեցական ապաշխարանսն՝ կամ ամենեւին եւ կամ մասամբ միով։ Այլ բազում անգամ դէպ լինէր զեղծանել բարեխօսութեամբն նոցա, եւ խոստովանողքն իսկ անցին բազում անգամ ըստ չափ. այս ի Կարքեդոն եւ յԱղեքսանդրիա մանաւանդ դիպեցաւ, եւ յայն սակս ընդդէմ դառնային այնպիսի չարաչար սովորութեան՝ անդ Ս. Կիպրիանոս եւ սաս Ս. Դիոնիսիոս Աղեքսանդրացի։

Սակայն եւ մեծ ինչ մասն քրիստոնէիցն մանաւանդ յԵգիպտոս՝ նահատակեցան վասն Քրիստոսի։ Ի վերայ եպիսկոպոսացն առաւել կատաղէր բռնաւորն։ Ի Հռոմ վկայեաց Փաբիանոս քա-

Digitized by Google

հանայապետ (250). Ծերունին Աղեքսանդրոս եպիսկոպոս Երուսաղեմի, դատեալ ի Կեսարիա մեռաւ ի բանտի. մարտիրոսացաւ եւ Բաբիղաս Անտիոքայ եպիսկոպոսն՝ ընդ որում թաղեցան շղթայքն, որպէս ցանկացեալ էր. այսպէս եւ Աղեքսանդրոս եպիսկոպոս Կոմանայ Պոնտացւոց ձեռնադրեալ ի Գրիգորէ Սքանչելագործէ: Պիոն կամ Պիոնիոս քահանայ եկեղեցւոյն Զմիւռնացւոց ըմբռնեցաւ ի Պողեմոնէ քրմապետէ Ասիացւոց յաւուր յիշատակի Ս. Պողիկարպեայ, ձգեցաւ նա ճոպան ի փող առաջի բազմին՝ ուր եպիսկոպոսն նորա Եւղեմոն կայր այն ինչ ուրացեալ զՔրիստոս առ տանջանացն ահի. ապա հրամանաւ Յուղեայ Պրոկուղեայ Կուինտիղիանեայ փոխանակի բդեշխին դատապարտեցաւ ի խարոյկ. բեւեռով պնդեցին զնա եւ ի շառաչել հրոյն շուրջանակի փակեաց զաչսն մատուցանել աղօթս, եւ յաւելն զԱմէնն հան զոգին. եւ ի յափշել հրոյն զատաւ մարմինն առանց ապականելոյ եւ գէսքն երեւացն չքեղացեալ՝ մինչեւ զարմանալ հեթանոսացն զամարտելոց ի տեսիլ:

Թագուցեալ ապրեցան վասն հաւատացելոցն օգտի Մեծն Դիոնիսիոս Աղեքսանդրիայ, եւ Գրիգոր Սքանչելագործ Նէոկեսարեայ Պոնտացւոց (✝ 270) անկեալ ի բլուր մի հանդերձ իւրով սարկաւագաւն: Սորին վարդապետ Որոգինէս կրեաց կապանս եւ բանտ: Թող զանթիւ զանհամար ժողովրդականսն որ ուրեք ուրեք սպանան:

Առ Դեկեաւ զառաջինն անցին Գութք ընդ Դանուբ մտել ի սահմանս տէրութեան Հռոմայեցւոց: Դեկիոս զառաջինն յաղթաղեալ ընդդէմ նոցա ապա պարտեցաւ սաստիկ ի Ճակատու, քակեցաւ զօրն Հռոմայեցւոց, ինքն կայսրն հանդերձ Դեկիոսիւ՝ իւրով որդւով սուզաւ յեղանիւրս, կրեալ զպատիժ կոտորածի այնչափ անչափ անմեղացն (Հոկտ. 251): Բայց ինքն էր զօրավար երեւելի եւ գգաստ վարուք:

6. Տրեբոնիանոս Գաղղոս մատնեաւ Դեկեայ՝ որպէս կարծի, զնա յաջորդեալ (251—253) առնոյր բարձակից զիւր որդի զՎողուսիանոս, գնէր խաղաղութիւն ի Գոթաց տարեւոր հարկօք եւ թողլով նոցա զաւար եւ զգերին հռոմայեցի: Եւ նա այնուհետեւ զանձն ի բարեկեցութիւն, ուր Գութք ասպատակաւ ապականէին եւ աւերէին զփոքրն Ասիա: Բայց երկոքին եւս յիւրեանց զօրաց սպանան (Մայ. 253), յորժամ անտուստ հակառակորդն նոցա Էմիղիոս Էմիլիանոս յաղթեաց Գերմանացւոցն: Թէպէտ եւ ընկալան զսա իբրեւ կայսր, այլ անդէն խաղացեալ հասանէր զաղիական լեգէոնք Վաղերիանոս բարեկամ Գաղղոսի, եւ յայնժամ սպանանէին եւ զԷմիղիանոս զօրք իւր (Օգ. 253):

7. Պիկինիոս Վաղերիանոս (253—259) յազնուական տոհմէ, զօրավար քաջ եւ քաղաքագէտ իմաստուն եւ հանճարեղ է

արար զՀռոմայեցիս անկարութեամբ իւրոց մեծամեծաց, եւ թուէր իմն թէ նորոգեսցէ նա միասնական զառաջին մեծութիւն զօրութեան հռոմէական տէրութեանն։ Մինչ անդուստ զօրավարք նորա պահէին զսահմանսն յարշաւանաց Գերմանացն՝ ինքն խաղաց ի վերայ Պարսից, այլ հարաւ չարաչար եւ անկաւ ի ձեռս Շապհոյ Ա. (259), որ թշնամանօք ունէր զնա։ (Յետ 7 ամաց վախճանէր Վաղերիանոս ի գերութեանն իբրեւ 70 ամաց, 266)։

8. Գալլիենոս Գաղլիէնոս (259 — 268) նորին որդի եւ բարձակից՝ այր թեթեւամիտ, ունէր ի ժամանակին միայն տուանձինն զառաջնորդութիւնն որում չէր ամենեւին ձեռնհաս. չարար ինչ նա փոյթ զհօրն արկածից յորժամ լուաւ. տեսեալ զապստամբութիւն եւ զքայքայումն տէրութեանն՝ ինքն յանձնէր հանապազօր ի շուայտութիւնս եւ ի լկտութիւնս։ Հրեշտակք կամ Գեսպանք[1] 19՝ որ գործակալութեամբ ի նահանգսն կային յետոյ կացին եւ եղեն ինքնագլուխք։ Այսպէս եղին կացին առ նմա իշխանք յորոց բազումք զիւրեանց որդիս կացուցին կեսարս. եւ անուանին նոքա Երեսուն բռնաւորք. բայց մեծ մասն նոցա սպանաւ ի զօրականէն[2]։

Ոչ ի սոցա միայն հապստահարութենէ՝ այլ եւ յասպատակէ Պարսից յարեւելս եւ Գերմանացն յարեւմուտս խանգարեալ աւերէր տէրութիւնն։ Գութք աւերէին զերփէին զԳաղղիա, զՊաննոնիա եւ զՅունաց աշխարհ. թողեալ զնոսա կայսերն անձապարեաց յարձակէր ի վերայ Աւրէողոսի, բայց սպանաւ նա առ Մեդիոլանու յորժամ պաշարեալ ունէր զնա անդ (Մարտ. 268)։ Ի մեռանել իւրում յանձն արար Գաղլիէնոս կացուցանել իւր յաջորդ զԿղաւդիոս զօրավար որ մնեալ էր յետս զԳութսն ի Դիւրիկէ։

9. Առ Գաղղոսիւ յորժամ եղեւ ժանտ սաստիկ՝ հրամայեցան զոհք վասն դիցն հաշտութեան. բայց զի չեղեն կցորդ զոհիցն քրիստոնեայք՝ տանջեցան իբրեւ պատճառք ախտին։ Այսպէս սպանաւ Կոռնեղիոս քահանայապետ (252) եւ նորին յաջորդ Լուկիոս (253) եւ երեւելի վկայն Հիպողիտոս երէց եկեղեցւոյն Հռոմայ։ Իսկ Վաղերիանոս զառաջինն նպաստաւոր էր քրիստոնէից եւ ունէր իսկ զիւրեւ այս բազումս ի քրիստոնէից, այլ յամի իբրեւ 257 մոլորեցոյց զնա Մակրիանոս ոմն անուն՝ նորոգել զհեթանոսութիւնն եւ այնպէս արգելուլ քրիստոնէից ժողովել ի գերեզմանս մարտիրոսացն։ Ս. Ստեփանոս

1 Legati.

2 Ոդենաթոս ի Պաղմիւրա, Մակրիանոս յԱսորիս, Վաղէս յԱքայիա, Պիսոն ի Թեսաղիա, Աւրէողոս ի Իլիւրիկէ, Պոստհումոս ի Գերմանիա, Բաղիստա ի Թրակիա, Եմիլիանոս յԱղեքսանդրիա, Սատուռնինոս գործեալ ի Գերմանիա, Տրեբեղղիանոս ի մէջ Իսաւրացւոց, Եղիանոս եւ Տետրիկոս յԱկուիտանիա եւ ի Սպանիա, Լողլիանոս զերգմանիք Հաւեռոսի ի Գաղլիա, Վիկտորինոս յայլում մասին Գաղլիոյ եւ այլք յայլ տեղիս։

Digitized by Google

քահանայապետ Հռոմայ սպանաւ կամ մեռաւ ի բանտի. Դիոնիսիոս Աղեքսանդրիոյ եպիսկոպոս աքսորեցաւ ի Լիբիա. այլք յեպիսկոպոսաց եղեն գանակոծ եւ դատապարտեցան յերկաթահատս եւ ի քարահատս շղթայիւք յոտս: Այս աւել եւս սաստկացոյց կայսր զհալածումն՝ հրաման տուեալ զերիցունս իսկ եւ իսկ սպանանել, զայրանց երեւելեաց յափշտակել զինչս եւ եթէ յամառեսցին՝ գլխատել: Նոյն կատարէր հրամանն մեծախստութեամբ: Ս. Սիքստոս Բ. քահանայապետ սպանաւ ի վերայ զերեզմանի Ս. Կաղիքստեայ քահանայապետի. յետ երից աւուրց ածաւ խորովեցաւ ի վերայ կայծականց սարկաւագապետն նորա երեւելին Լաւրենտիոս, որ ի պահանջելն ի նմանէ ատեանին Հռոմայ ցուցանել զգանձ եկեղեցւոյն, եցոյց զաղքատսն՝ թէ սոքա են ոսկի եւ արծաթ մեր, եւ զկուսանսն եւ զայրիս՝ թէ սոքա են մարգարիտք մեր եւ ականք պատուականք (10 Օգ.): ՅԱփրիկէ 153 քրիստոնեայք միանգամայն գլխատեցան եւ կամ արկան ի բորբոքեալ հնոց կրոյ յՈւտիկա, եւ յայն սակս անուանեցան Սպիտակ զանգուած[1] (Օգ.): Այժմ ուրեմն ընկալաւ զպսակ մարտիրոսութեան եւ մեծն Տասկիոս Կեկիլիոս Կիպրիանոս եպիսկոպոս Կարքեդոնի (258)[2]. յետ նորա վկայեցին բազումք մի ըստ միոջէ: — Ի Սպանիա կենդանւոյն այրեցաւ Փրուկտուոսոս եպիսկոպոս Տառակոնայ (259), զոր ցայժմ պատուեն Սպանիացիք:

Իսկ եւ իսկ իբրեւ տիրէր Գաղիէնոս՝ դադարէր հալածումն: Նոյնպէս նորին պայազատ Աւրելիոս Կղաւդիոս Բ. (268—270) ետ քրիստոնէիցն խաղաղութիւն եւ տէրութեանն հաստատութիւն: Արար ձերբակալ եւ զԱւրէոլոս զկայսրն հակառակ կայսեր, յաղթեաց ի Միւսիա երիցս Գոթաց եւ ազգաց միաբանելոց ընդ նոսա (269). բայց յետ սակաւ ինչ միոյ վախճանէր ժանտիւ ի բանակին ի Սիրմիոն (Հոկտ. 270):

10. Քաջն Լուկիոս Դոմիտիոս Աւրելիանոս (270 — 275) որ ցուցեալ էր յառաջ ի նմանէ՝ ամբարձեալ էր ի կարգէ դոյզն զինուորութեան ի զօրավարութիւն, եւ եղեւ իսկ նորոգիչ միութեան տէրութեանն[3]: Եհար նա զԳութս, բայց հարկ համարեցաւ թողուլ նոցա զմեծն Դակիա (272) զգաղթականս Հռոմայեցւոցն փոխեալ ի Միւսիա[4]. մերժեաց հան զՄարկոմանս եւ զԱղեմանս որ հասեալ էին մինչեւ յՈւմբրիա, յաղթեալ առ Մետաւրոս լերամբ՝ եւ ամրացուցանէր զՀռոմ նոր պարսպաւ: Ապա ել նա ի վերայ Սեպտիմիայ Զենոբեայ հոյակապ եւ իմաստուն եւ մատենագէտ դշխոյին Պալմիրացւոց, որոյ սահմանք թագաւորութեանն էին Ասորիք,

1 Massa candida.
2 Տես ի խոնարհ յեկեղեցական մատենագիրս.
3 Restitutor imperii.
4 Dacia Aureliani.

(ըստ Յուստինեայ՝ եւ մասն մի Եգիպտոսի եւ մասն մի Փոքուն Ասիայ)․ զայս թագաւորութիւն հաստատեալ էր այրն նորա Ոդենաթոս (յամի 262) որ ընդ յաղթութեանցն ի վերայ Պարսից ընկալաւ աթոռակցութիւն ի Գաղիենոսէ։ Յաղթեաց Աւրելիանոս դշխոյին մեծաւ պատերազմաւ երկիցս առ Անտիոքիաւ եւ առ Եմեսաւ (272), պաշարեաց զնա անդէն ի Պաղմիւրա եւ ապա կալաւ զնա ձերբակալ՝ յորժամ անցանէր նա ընդ Եփրատ փախստեայ ի Պարսս (273)։ Խնայեաց նա ի հոյակապ քաղաքն Պաղմիւրացւոց զոր Սողոմոնի շինեալ էր՝ քանզի բացին նմա զդրունս քաղաքացիքն, այլ իբրեւ կոտորեցին զպահականսն զօրուն՝ դարձաւ Աւրելիանոս, զմեծ մասն բնակչացն կոտորեաց եւ քանդեաց զշքեղ մեհեանն եւ զապարանս։ Բայց եւ աւերակքն ցայժմ եւ առնեն զամենեսին զարմանալեօք։ Ածաւ Զենոբիա ի Հռոմ ի ձաղանս յաղթութեանն ոսկւով շղթայիւք, իսկ Լոնգինոս փիլիսոփոս եւ հազարապետ թագաւորութեան նորա անդէն սպանաւ։

Յետ նուաճելոյ եւ զԵգիպտոս եւ այսպէս զհամօրէն արեւելս հաստատելոյ՝ խաղաց նա ի Գաղիա ի վերայ Տետրիկոսի որ զբռնացեալ ունէր զԳաղիա եւ զՍպանիա․ անդ Տետրիկոս ի ճակատու ուրեք առ Կատալաունեաւ (Շալոնաւ)՝ ձանձրացեալ ի մարդախոշոշ զօրականէն եւ անվստահ յիւր կեանսն՝ եթող զանձն լինել ձերբակալ, որպէս վաղ իսկ լեալ էր նա ի բանի ընդ Աւրելիանոս՝ գրեալ առ նա թուղթ աղաչանաց զալ փրկել զնա․ (273)։

Անդէն ի նմին ամի արար ձաղանս, յորում ածաւ Զենոբիա ի շղթայս ոսկիս, զարդարեալ ականքք պատուականօք, եւ Տետրիկոս համօրէն անուանակից որդւովն ածաւ ի տես, եւ ինքն կայսր անցանէր ի կառս զոր ձգէին չորք եղջերուք՝ զորս բերեալ էր նորա յաւարէ միոյ ուրուք ի թագաւորացն Գոթաց։ Յետ ձաղանացն՝ առաքեցաւ դշխոյն արեւելեց ի Տիբուր ուր պարգեւեաց նմա ապարս, եւ դստերք նորա եղեն ապանց մեծամեծաց ի Հռոմայեցւոցն։ Իսկ Տետրիկեայ ետ այր զվերակացութիւն նահանգին Լուկանիայ, ասելով թէ առաւել լաւ է յայսպիսում ի գեղեցիկ երկրի միում նահանգի տեսուչ կալ, քան յայնկոյս Աղպեց թագաւորութեան միոջ կալ առաջնորդ։ Որդերն Տետրիկոս յետոյ եկաց սինկղիտիկոս։

Ի սակաւ ժամանակին՝ զոր յետ ձաղանացն եկաց նա ի Հռոմ, հան օրէնս բազումս լի արդարութեամբ, այլ ոչ առանց խստութեան։ Զորս ի հասարակաց պաշտամունս էին եւ գտան գործեալ հարստահարութիւն՝ ետ սպանանել։ Բայց եւ այնոցիկ որ առին զէն հակառակ նորա՝ ներեաց առհասարակ եւ զգիրս ամբաստանութեան որ զնմանէն էին՝ ետ այրել հրապարակաւ։ Եւ պնդել զլատակն Տիբերեայ, ուր արգել ինչ նաւար-

կութեան կայր։ Յետ հոգալոյ բարւոք զպարէն քաղաքին՝ ի բաշխմունս ցորենոյն եւ իւղոյ յաւել եւ միս խոզենի, կամէր եւ գինի տալ՝ բայց արգել զնա վերակացուն Հռոմայ ասելովն՝ թէ յայնժամ Հռոմայեցիք կաքաւս եւս եւ սագս ի նմանէ ունիցին ակն առնլոյ։

Սակայն Աւրելիանոս՝ ոչ միայն ջերմ էր ի դիւցն պաշտօն, եւ յայն սակս զմեհեան արեգականն ի Պաղմիրա զարդարեաց մեծապատարագօք եւ ի Հռոմ շինեաց արեգականայինն Աստուածոյ մեհեան եւ եդից ոսկւովք սպասուք, այլ եւ յաջողութեամբքն հպարտացեալ՝ փոխեաց զանպաճոյճ կեանսն, յետ ձաղանացն ագանէր հանդերձս ոսկւով եւ ականմբք պատուականօք, եւ կապեաց թագ ի գլուխ, այն՝ որ երբեմն յորժամ կայսրն իսկ էր՝ չառ յանձն տալ կնոջ իւրում ծախս վասն միոյ մետաքսեայ հանդերձի, ասելով թէ քաւ լիցի ի մէնջ ըստ ծանրութեան ադամանդաց կշռել հաւասար ոսկի (քանզի այսպէս թանկագին էր յայնժամ մետաքս)։ Իսկ ի վերայ դահեկանացն՝ կոչէր նա "Տէր մեր եւ Աստուած"։ Ապա ուրեմն եդ նա ի մտի ջնջել զքրիստոնէութիւն եւ յօրինեալ պատրաստեցան իսկ հրովարտակք ի դոյն (274), բայց խափանեցաւ գործն մահուամբն նորա, որ հաս իսկ եւ իսկ ի վերայ. զի մինչդեռ կամէր երթալ ի վերայ Պարսից պատերազմաւ՝ ի Կլեւրիկէ վասն խստութեանն սպանաւ՝ 63 ամաց (Մարտ. 275)։

11. Յետ 6ամսեայ անտէրընչութեան՝ ապա ի բազում անգամ աղաչելոյ զօրացն եդ ծերակոյտն կայսր զարժանաւորն ի միջոյ սինկղիտիկոսացն՝ զծերունին 75ամեայ զԿղաւդիոս Տակիտոս (275—276) ի տոհմէ Տակիտեայ պատմագրի. էր նա այր ազնիւ, յաղթեաց Ալանաց յայնկոյս Կաւկասու, բայց չյերկարեալ մեռաւ ի Տարսոն Կիլիկեցւոց (Ապր. 276)։ Յայնժամ յԱսորիս Պրոբոս եւ ի Հռոմ Փլորիանոս եղբայր Տակիտեայ եղան կայսր, այլ Փլորիանոս յիւրոց սեպհականաց սպանաւ ի Տարսոն՝ ուր եկեալ էր ի վերայ Պրոբոսի։

Աւրելիոս Պրոբոս (276 — 282) ի խոնարհագոյն կարգաց էր, այլ գտաւ երեւելի ի մէջ կայսերաց։ Մղեաց յետս զԳերմանս առ Հռենոս գետով եւ ի կողմանս Դանուբայ, դիմեաց եհաս մինչեւ ցԷղբա գետ, արար հարկատու ինն իշխանս յիշխանաց եւ ամրացոյց զսահմանսն՝ ածեալ խրամ հանդերձ որմով. զՊարսիկսն ստիպեաց դնել դաշինս խաղաղութեան։ Ջանայր նա եւ զազգսն զայնոսիկ Գերմանաց զբարբարոսս ածել ի կարգ եւ ի բարս. եւ շինել 70 քաղաքս քանդեալս եւ աւերեալս եւ առնէր մարդաշատ նստուցանելով զգերիսն ժողովեալ ի պատերազմաց. զլեգէոնսն պարապեցուցանէր յարդարել պողոտայս, կամուրջս եւ այլ եւս նոյնպիսիս, նա եւ տնկել այգեստանս ի Գա-



Digitized by Google

դիա եւ ի Պաննոնիա, եւ ջանայր իմն զի նուաճեսցին եւ զի-նուորքն: Այլ այն չթուեցաւ հաճոյ լեգէոնացն, սպանին զայն-պիսի կայսր բարեախորժ (Աւգ. 282). սակայն արկին արտասուս ի վերայ նորա անագան եւ կանգնեցին նմա յիշատակարան:

12. Յետ այնորիկ ընտրեցաւ ի զօրուէն կայսր՝ անձնապա-հապետն Աւրելիոս Կարոս (282 — 283) որ արար աթոռակիցս զերկոսին որդիսն իւր զԱւրելիոս Կարինոս եւ զԱւրելիոս Նումերի-անոս: Հար Կարոս զԳոթս, մերժեաց զՊարսիկս ի Միջագետաց, եւ որպէս պատմեն՝ մեռաւ հարեալ ի փայլատականց, բայց որպէս հաւանութեան թուի՝ սպանաւ դաւաճանութեամբ (Դեկտ. 283). յետ սակաւ ինչ միոյ եւ զգօնն եւ կիրթն Նումերիանոս սպանաւ յիւրմէ աներոյ յԱռիսսէ Ապերայ (որ թարգմանի Վարազ) (Աւգ. 284) յարշաւանս անդ ի վերայ Պարսից: Յայնժամ ըն-տրեաց զօրն զԴիոկղետիանոս՝ կայսր, որ իւրով իսկ ձեռամբ սպան զԱպեր: Ի յաջորդ ամին խաղաց եկն ի վերայ նորա Կարի-նոս ի Հռոմէ՝ շռայլեալն եւ ատեցեալ յամենեցունց. այլ անդէն զճանապարհայն յիւրոց իսկ զօրաց ի Միւսիա սպանաւ (Մայ. 285) եւ այնպէս ամենեքին ընկալան միաբանութեամբ կայսր զԴիոկղետիանոս:

Ջ.

Հայք առ Հռովմէական կայսերօք (ըստ ժամանակին դասաւորութեան):

Արտաշէս Բ. Արտաւազդ Բ. Տիգրան Ա. Տիգրան Գ. (Բ.) Վաղարշ, Խոսրով Ա. Տրդատ յաջորդքն Խոսրովայ (յամէ 80—287):

34

ՄԻՆՉԴԵՌ Երուանդն ի մօրէ եւեթ արշակունի բռնացեալ թագաւորէր ի Հայս (յամէ 64), անդ ուրեմն ի մէջ արքայոր-դւոց Արեաց աշխարհին սնանէր մանուկն Արտաշէս որդի եւ ժա-ռանգ Սանատրկոյ, դայեկութեամբ Սմբատայ որ էր ի պատուի ընդ մեծամեծ զօրավարսն Արեաց, վաղ համբաւեալ քաջութեանն գործովք, եւ առեալ ունէր տեղի բնակութեան զԲատ եւ զԱ-զոմն նահանգս ի Մարաց աշխարհին: Աստատին ցուցանէր Սմբատ արութիւն քաջութեան ընդդէմ Աղուանից եւ Ալանաց, մինչեւ ըստ նախարարացն խրատու յօժարէր արքայն Արեաց առնել հա-տուցումն վաստակոց նորա: Տուաւ Սմբատայ գունդ յԱտրպա-տականէ եւ յԱսորեստանէ երթալ հաստատել զԱրտաշէս ի գահն հայրենի: Գարնայնի ելանէր Սմբատ զօրօք ի սահմանս Ուտէացւոց, երթայր ստուարանայր գունդն ի զօրաց եւ ի նա-խարարաց յարելոց կողմանցն այնոցիկ՝ եւ հասանէին առ ափն ծո-վուն Գեղամայ, եւ աճապարէր Սմբատ ի վերայ բանակին Երուան-դայ ի վերայ Ախուրեան գետոյ:

Digitized by Google

«Քանզի եւ Երուանդ փութանակի գունդ էր կազմեալ ի Հայոց եւ ի Վրաց զօրավարութեամբ արքայի նոցա Փարսմանայ, ածեալ եւ զօր վարձկան ի Փոքրն Հայոց (Գամրաց) եւ ի Միջագետաց. այլ քանզի լեգէոնք Հռոմայեցւոցն դանդաղէին իմն հասանել ի Թիկունս դաշնաւոր թագաւորին, յայն սակս յաճախէր նա պարգեւս զօրացն եւ նախարարացն՝ գինս հաւատարմութեան, եւ յառաջագոյն իսկ արկ յինքն զԱրգամ զտանուտէր ազգին Մուրացան (զաղթականութեանն Մարաց ի զաւակէ Աժդահակայ) դարձուցեալ ի նա զգահն երկրորդական՝ զոր հանեալ էր ի նոցանէ Տիգրանայ Բ. արքայի Արշակունւոյ: Այլ ամենայն զուր եւ ընդ վայր: Իսկ եւ իսկ իբրեւ կարգէր ճակատ Երուանդ մօտ ի ճամբարն իւր եւ երեւէին նշանքն Արտաշիսի, Արգամ ի կողմն եղանէր հետեւակօքն՝ առեալ յառաջագոյն խոստումն յԱրտաշիսէ՝ պահելոյ զամենայն զառաջինն պատիւն. եւ ի յառաջ մատչել ճակատուն Արտաշիսի ի հնչիւն փողոցն պղնձեաց եւ ի «խոյանալն Սմբատայ իբրեւ զարծուի յերամս կաքաւուց», զայլն խառնէին նախարարք որ էին յաջակողմն եւ ի ձախակողմն թեւսին Երուանդեանց. իսկ միջավայր կամ կենդրոն գնդի թագաւորին, որ էր կազմեալ ի Վրաց եւ ի վարձկան զօրուէն՝ բախէին մեծաւ սաստկութեամբ, եւ արք անունք քաջք Տաւրացիք զգլխս ի բռին եդեալ պայմանեալ էին թագաւորին սպանանել զԱրտաշէս՝ զոր ի մէջ անցեալ ապրեցուցանէր որդի սանուտին նորա Գիսակ, բայց ինքն կործանէր՝ կտրեալ անկեալ կիսոյ գլխոյն ի վայր:

Հայեցաւ Երուանդ ընդ անհնարին կոտորած գնդին իւրոյ, եւ հանգոյց ի հանգուցէ երիւարաւ փախստեայ յԵրուանդաշատ: Սմբատ յառաջեալ սակաւ վաշտկանաւ պնդէր զհետ թագաւորին մինչեւ ցատարաժամել աւուրն, եւ դադարէր առ քաղաքաւն մինչեւ ցգալուստ բուն զօրուն հանդերձ Արտաշիսիւ: Իսկ սա յետ բանակելոյ զգիշերն ի ստեղւոջ ճամբարուն Երուանդայ (Մարաց մարգին) եւ այգուն տայր թաղել զդիակունսն՝ զմիջաւուրբն հասանէր առաջի քաղաքին, եւ մարտուցեալ զօրութեամբ ձեռս ետուն քաղաքացիքն, եւ ի խուժել զօրականին ի ներքս յարքունիսն՝ մի ոմն սակրեր հար զգագաթն Երուանդայ:

Յետ հրամայելոյ Արտաշիսի թաղել զԵրուանդ մահարձանօք իբրեւ խառնուրդ արեան Արշակունեաց՝ գտեալ Սմբատայ զԹագն Սանատրկոյ ի տան գանձին, ըստ ասպետութեանն իրաւանց՝ դնէ ի գլուխն Արտաշիսի թագաւորել ի վերայ Հայոց աշխարհին (80—135°):

Մեծապարգեւ առաքին այնուհետեւ յետս զօրք Մարացն եւ Պարթեւաց. պատուի Արգամ երկրորդութեան պատուով եւ յակընթականս պսակաւ եւ գնդօք, կարմիրն ռնապանօք, ու-



Digitized by Google

կեղէն պատուաքաղաքն եւ տարգալաւ եւ բաժակօք ի տաճարին արքունի։ Սմբատ ի վերայ Թագակապ ասպետութեանն առնու զիշխանութիւն արեւմտեայ զօրուն՝ հանդերձ վերագոյն հրամանատարութեամբ ի վերայ ամենայն զօրուն Հայոց, գործակալաց նահանգացն եւ համօրէն տանն արքունի. Ներսէս որդի Գիսակայ կարգի ի նահապետութիւն ազգի՝ որում անուն Դիմաքսեան (ի հատանելոյ կիսոյ դիմացն Գիսակայ), որպէս եւ պատանեակք 15 ի զաւակէ Տուրայ՝ որ սպանաւ յԵրուանդայ վասն գաղտ պատգամս ի Պարթեւս առ Արտաշէս հասուցանելոյ, կարգեցան յազգ՝ ըստ նախնւոյն անուան կոչելով Տրունիք։ Տեղի ճակատուն Երուանդաւան կոչեցաւ, եւ դաստակերտն Երուանդայ (Երուանդակերտ) Մարմէտ՝ որ Թարգմանիցի Մարն եկն (այս ինքն Արտաշէս որ մարն կոչէր յԵրուանդայ)։ Իսկ եւ իսկ խաղայր Սմբատ հրամանաւ Թագաւորին յամուրն Բագարան. անդ ձերբակալ արարեալ զԵրուազ՝ զեղբայր Երուանդայ եւ երկան զուլանէ ընկենու ի գրգանս գետոյն Ախուրենի, եւ փոխանակ նորա կարգի ի քրմապետութիւն ընտանին Արտաշիսի Մոգպաշտէ (անուանեալ այսպէս յաշակերտութենէ առն ուրումն մոգի). այլ յետ սակաւ ինչ միոյ՝ փոխէ անուն Արտաշէս զբազմութիւն պատկերացն ի մեհեանն նոր Արտաշատ քաղաքի՝ զոր շինեաց նա ի մայրից անտառին Երասխայ նորոգ, կամ կատարեաց զշինութիւնն (զոր էր սկսեալ Տրդատայ արուեստագիտօքն ածելովք ի Հռոմայ)։ Ողասակս ծառայիցն Երուազայ՝ պարգեւէ Սմբատայ Թագաւորն, եւ հրաման տայ նմա զընտիր ընտիր գանձուց մեհենիցն եւ զգանձսն Երուազայ հանդերձ յաւելուածով՝ տանել պատարագ արքային Ալանաց իբրեւ հօր իւրում եւ օգնականի։

Հռոմայեցիք՝ որ ցայն վայր լուռ եւեթ կային Թողեալ զԵրուանդ անօգնական, Թերեւս զի մի պատերազմ մեծ ընդ Պարթեւաց գրգռիցեն, իբրեւ եղ ամենայն ի գլուխ եւ առ Արտաշէս զԹագաւորութիւնն՝ փութացան այնուհետեւ զառաջին հանգամանս հպատակութեանն առ իւրեանս՝ նորոգել. առաքեցան ի կայսերէ հարկահանք առ Թագաւորն Հայոց, եւ լեգէոնք Հռոմայեցւոց հասեալ պատրաստեալ կային ի սահմանակողման արեւմտից աշխարհին սպառնալ մարտ պատերազմի։ Յանձն առնու Թագաւորն Հայոց զդաշնաւորութիւն Հռոմայեցւոցն հանդերձ կրկին հարկաւ եւ հաստատի ի Թագաւորութեանն՝ մինչ չեւ եկեալ Սմբատայ ի կողմանց Պարթեւացն։

2. Յետ այնորիկ դէպ լինէր (ըստ յաճախ սովորութեանն) ելանել Ալանաց ասպատակաւ յերկիրն Հայոց՝ հանդերձ բազմութեամբ ազգացն բնակելոց ի լերինն Կովկասու եւ հիւսիսային կիսոյ Վրաց աշխարհին, որք հեղան զեղան ընդ Կուր գետ այսր. Ձգեալ հասանէր Արտաշէս բազմութեամբ տալ ճակատ։

Չերբակալ եղեւ որդի արքային Ալանաց եւ մեկնեցան նոքա այսրէն ըստ գետն յետս. բայց չեւ եւս էր լեալ զրաւ պատերազմին՝ այլ արքա ի ձախմէ եւ նոքա յաջմէ գետոյն բանակեալ կային, զի չառնոյր յանձն Արտաշէս տալ զպատանեակն յետս, մինչեւ եկն եւ Սաթինիկ դուստր թագաւորին բարենշան՝ ի դարաւանդ մի գետոյն, ձայն տայր թարգմանաւ ի բանակն Արտաշիսի «Քեզ ասեմ, ասէ, այր քաջ Արտաշէս որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց, եկ հաւանեաց աչապեղոյ դստերս Ալանաց՝ տալ զպատանիդ». Մատեաւ յեզր գետոյն թագաւորն եւ հաճոյ թուեցաւ նմա կոյսն ծաւի եւ փարփառ. ըստ խորհրդոյ դայեկին ածաւ Սաթինիկ ի տիկնութիւն եւ տուան ի վարձանան ոսկի բազում եւ մորթ կարմիր, եւ կռեցան դաշինք ի մէջ երկուց թագաւորաց՝ մի մանկանց Ալանաց այսուհետեւ հինիւ ելանել յաշխարհն Հայոց:

Արդէն յառաջագոյնն՝ առաւել եւս յետ այնորիկ շինութեան աշխարհին ուշ ունէր թագաւորն. զաղթականութեամբ բազմամարդի զերկիրն առնէր, եւ նախ Ալանացն զաղթականութեամբ: Քանզի յետ վախճանի աներոյ իւրոյ հօրն Սաթինկան՝ այլ ոմն բռնացեալ կալաւ զաթոռն: Արշաւեցաւ անդր Սմբատ եւ զնա մերժեալ թագաւորեցոյց զեղբայրն Սաթինկան, եւ ած գերի բազում ի հակառակորդաց անտի ի բնակութիւն ի Շաւարշական գաւառ որ Արտազն կոչեցաւ, քանզի այս իսկ անուն էր առաջին բնակութեան նոցա՝ ուստի ածանն: Առաւել քան զարտաքսեան գերին ած Սմբատ յորժամ արշաւեցաւ ի վերայ Կասպիցն ապստամբելոց՝ բերեալ եւ զԶարդման թագաւոր նոցա ձերբակալ, նոյնպէս Առաւեղեանքն յազգէ Ալանաց՝ որ վասն մերձաւորութեան ազգականութեանն եկին զհետ Սաթինկան: Այսպէս եւ տոհմն Ամատունեաց (այս ինքն՝ եկաց) եկելոց ի կողմանց Ահմատանի, ի սերընդոց Մանուեայ հրէի ածելոց անդր յԱրշակայ Ա. արքայէ Պարթեւաց: Սահմանք իւրաքանչիւր գիւղից եւ ագարակաց որոշեցան, եւ հաստատեցան նշանք սահմանաց՝ քարինք կոփածոյք չորեքկուսիք. եւ ծաղկէր այնուհետեւ երկիրն եւ լեռնային եւ դաշտային՝ մշակութեամբ, յաճախեցին գնացք նաւաց ի ծովակն եւ ի գետս՝ հանդերձ շինութեամբ կամրջաց. մուծաւ գիր կամ ճշդագոյն՝ համար շաբաթուց, ամսոց եւ տարեաց:

3. Սակայն չէր յաջողեալ Արտաշիսի ի տան իւրում: Սաթինիկ որ կոխեալ ոսկի եւ մարգարիտ եմուտ յառագաստ, ոչ գտա- առանց կասկածանաց անհաւատարմութեան: Նա եւ զխաղաղական տեւչութիւնն պղտորեցին ոչ սակաւ արքայորդիքն. անդրանիկն ի նոցանէ Արտաւազդ եղ աչք եւ անձնահաճ եւ մոլեգին բարուք. քսութեամբ ած զհայրն ի ցասումն ի վերայ Արգամայ, ապա ի ճաշուն յոր հրաւիրեաց Արգամ զարքայ՝ յարուցին որ-

Digitized by Google

դիք արքայի խռովութիւն՝ թէ գաւ է, անդէն ի հացին քարշեցին զգլուխ նորա, առաքեցաւ գունդ եւ սպանան բազումք յազգէն Մուրացան, այրեցան ապարանք Երուանդայ եւ հարճ նորա Մանդու ածաւ Արտաշէսի։ Թէպէտ եւ դարձուցան յԵրուանդ միւանգամ արքայքն, այլ յետ ամաց երկուց՝ զրգռեցաւ Արտաւազդ ի մարտ պատերազմի ընդ որդւոյն Երուանդայ, յաղթեաց արքայորդին եւ սատակեցաւ Երուանդ ամենայն տամբն եւ ապարանք ազգին այնորիկ աւերեցան։ Այսպէս դրեթէ ջնջեցաւ մեծ մարական գաղթականութիւնն ի Հայոց աշխարհին, որոյ զօրութիւնն ի դէպ է թէ կասկածելի իմն լեալ իցէ տոհմի թագաւորացն Հայոց։

Զպատիւ երկրորդութեանն վաղ առեալ էր Արտաւազդայ՝ հանդերձ ամենայն սահմանօք տանուտէրութեանն որ ի հիւսիսոյ Երասխայ էին, բայց սկսաւ նա դնել ակն եւ իշխանութեան ասպարապետութեանն Սմբատայ։ Խռովեցաւ հայրն, բայց տեղի ետ նմա ասպետն ծերունի եւ մեկնեցաւ ի Տմորիս ի վերայ սահմանաց Ասորեստանի։

Այլ պատիւ ասպարապետութեանն զոր առ Արտաւազդ՝ ած ի նախանձ զեղբարսն. յայն սակս եւ հայրն յետ զորդի իւր զՄաժան ի քրմապետութեանն պատիւ հանելոյ՝ յԱնի արքայական դիցն Արամազդայ՝ ըստ հին օրինակին ընդ չորս բաժանս զզօրսն բաժանէր. արեւելեանն՝ ի ձեռն Արտաւազդայ, արեւմտեանն՝ Տիրանայ միւս եւս որդւոյ, հիւսիսայինն՝ Զարեհի որ էր միւս եւս չորրորդ որդի, եւ հարաւայինն՝ Սմբատայ։ — Զարեհ որ յորս երէց նահատակ էր եւ առ պատերազմունս տաղտուկ՝ ըմբռնեցաւ յարքայէն Վրաց ի Կարձամայ. հասին Արտաւազդ եւ Տիրան հանդերձ Սմբատաւ եւ թափեցին զեղբայրն իւրեանց ի կապանացն։

Հայեցեալ այնուհետեւ Արտաշէսի ընդ կազմութիւն աշխարհին եւ ընդ որդւոցն զօրութիւն քաջութեան՝ ի ժամանակի ինչ աղմկոյ իրացն Հռոմայեցւոց նշկահեալ չետ նոցա զհարկսն։ Առաքէր կայսր Դոմետիանոս (Տրայիանո՞ս) գունդս, փախստեայ լինէր Տիրան առաջի նոցա արեւմտեան զօրօքն մինչեւ ցմեծ հովիտն Բասենոյ. անդ հասանէր Արտաւազդ եւ Զարեհ արեւելեան եւ հիւսիսային զօրօքն. սաստկանայր պատերազմն եւ իբրեւ ի տագնապի էին որդիքն արքայի՝ հասանէր ծերունին Սմբատ տանել յաղթութիւն եւ զրաւ պատերազմին. տարան փախըստեայ զզօրն հռոմայեցի խորագոյն ի Փոքրն Հայս (ի Գամիրս) եւ ասպատակ եւս ի սահմանս Հռոմոց դնէր զօրն հայազունդ։ Բայց յետ սակաւ ինչ միոյ յարուցեալ գայր կայսր Տրայիանոս (՞) խաղալ ի վերայ Պարթեւաց. աճապարեաց ընդ առաջ նորա Արտաշէս մեծաւ գանձուք բերեալ եւ զանցելոց ամաց

Digitized by Google

զհարկսն եւ ցածոյց իսկ զնա։ Ի դառնալ կայսեր ի Պարթեւական արշաւանէն՝ իջեալ Մաժան առաջի նորա յԱսորիս զԱրտաւազդայ եւ զՏիրանայ մատուցանէ անհաստատութիւն, զի մինչ խնդրել կամէր յԱրտաւազդայ զԹշնամանացն Անտոնեայ խոյոյ դայեկի եւ զզօրավարութիւնն Տիրանայ յինքն կամէր տանել։ Չեղ. նմա ունկն կայսր. բայց աղդ եղեւ անհաստատանելոյն եւ ապաներին զՄաժան յորսս։ Այս Միայ այնուհետեւ Արտաշէս հաւաստարիմ կայսեր (Տրայիանու եւ Ադրիանու նորին պայազատի ի ժամանակի ապստամբութեան Ասորւոց, Միջագետաց եւ Պարթեւաց°) մինչ զի հրամանս տայր կայսր ընդ զիւգապաստան իւր (մերտակացուս չափուց եւ կշռոց) երթալ եւ Արտաշխի առ Պարթեւան վասն դաշանց. անդ (ի Մարանդի, ի Բակուրակերան աւանի) հիւանդացեալ Թագաւորին ի կենաց վճարէր, մինչ չեւ դարձեալ Աբեգայի Աբեղինից նահապետի որ առաքեալն էր յՅոբիզա առ Անահիտ տիկին խնդրել բժշկութիւն Թագաւորին եւ կեանս. բերաւ դիակնն եւ յուղարկեցաւ մեծաւ շքով ի Հայոց աշխարհին (135)[1]։

## 35

„Օնի Արտաւազդայ Բ. որ յետ աւուրց ինչ Թագաւորութեանն եղեալ յորսս երիվարաւն հանդերձ անկեալ ի վիհ մեծ անհետ բարձաւ ի միջոյ՝ Թագաւորեաց նորին եղբայր Տիրան (135—156°) զոր պահէր նա առ իւր յԱյրարատ ի համար Թագաւորութեան. պատիւ երկրորդական գահուն զոր Արտաւազդն ունէր՝ տուաւ ի Տիրանայ պատանեկի ումեմն Արախնաւու անուն առն քաջի եւ զգաստասիրտի՝ որ առեալ էր զկինն զհռոմեյեցի զոր առաքեալ էր Արտաւազդայ, հանդերձ զօրավարութեամբ արեւելեան զօրուն. եւ ինքն Թագաւորն ի կողմանս Եկեղեաց ի Զորմէջն աւանի որսոց եւ զբօսանաց պարապէր, պարծեցեալ յերիւարսն իւր երկուս անհնարինս արագութեամբ։ Փեսայացեալ էր նմա այրն հզօր Տրդատ որդի Սմբատուրհեայ դստեր Սմբատայ Բագրատունւոյ ի դուստր Թագաւորին յԵրանեակ. այլ չժուժեալ Տրդատայ ընդ պչրանօն սորա՝ զդեղձան հերսն կտրեալ գանալից հանէ զնա յիւրմէ ի բաց։ Ի փախչելն Տրդատայ ամբանեալ ի Մարս՝ անդէն ի կողմանս Աղուանաց հասանէ համբաւ թէ վախճանեցաւ Թագաւորն՝ ի ճանապարհի ձեան հիւսոյ կալեալ[2]։ Իսկ փոխանակ Երանեկայ հափափեաց տարաւ Տրդատ

1 Խոր. Բ. Գլ. ԽԳ—ԿԱ։ — Որչափ ինչ մասն ի պատմութեանէն Արտաշիսի եւ Արտաւազդայ ունիցի վկայութիւն յերգոցն վիպասանաց՝ տես Գարեգ. Հայոց մատենագրութեան՝ էջ 48—51։

2 Զյածախութենէ այսպիսի արկածից ձեան ի հիւսիսակողմանս Հայոց յիշէ Սորաբոն (Դպր. ԺԱ. Հայաստ.) "Պատմէ, ասէ, թէ յանցանել մարդկան զառապառովք լերանց երբեմն ամենայն խոկ ուղեկցօք ծածկէին ի ձեանէն անկելոյ ի լերանց անտի. եւ զի յայնպիսի վտանգէ ազրեցին՝ ունէին ճանապարհորդք ցուպ (երկայն) ընդ իւրեանս, զի կոչեալ զայն ուղղորդ ի վեր եւ շնչել (ընդ ծակ ինչ) կարիցեն, եւ անցաւորացն զիւրեանց արկածն նշանակել"

Digitized by Google

ի Սպեր փլաղէնեկ զհայրն Բակրոյ նահապետի Սիւնեաց որ առ-պընջականն լեալ էր նորա։

2. Տիգրան Գ. (Բ.) եղբայր Տիրանայ եւ պայազատ (156—195°) ի բաց կացեալ ի հպատակութենէ հարկաց առ Հռոմայեցիսն, զոր պահեալ էին հաստատուն հայրն եւ եղբարքն[1], ընդ Պերոզայ Ա. կամ Վաղարշայ Գ. (Վաղոգեսեայ) արքայի Պարթեւաց գնէր արշաւանս ի նահանգս Հռոմայեցւոցն ի կողմանս Փոքուն Ասիայ։ Իսկ կայսր (Լուկիոս) հասեալ յարեւելս զօրօք նուաճէր զՀայս, եւ զՏիգրան որ յարշաւանսն անդ ձերբակալ լեալ էր յաղջկանէ միոջէ (իշխանոյ կողմանցն այնոցիկ)՝ արձակեաց կայսր յաթոռ իւր՝ տուեալ նմա կնութեան զմերձաւոր իւր զՍուփիա (զՍոփի)։ Բայց Տիգրան զորդիսն որ ի նմանէ եղեն կարգէր յուրոյն նախարարութիւն (Սոփսեանս)՝ զի մի յիրաւունս արեան Արշակունեաց մտանիցեն։ Նոյնպէս նահապետութեան պատուով հատուցումն իմն առնէր Տիգրան ցեղից ինչ (որպէս Կորձէից, Վծնեից եւ այլոց) վասն վաստակոց նոցա եւ սիրոյ եւ հաւատարմութեան զոր ընդ Թագաւորն ցուցին՝ տալով ճակատ ընդ Հռոմոց՝ ի ժամանակի զի ըմբռնեալ էր նա ի կալանս։

3. Նորին որդի եւ պայազատ Վաղարշ (195—210°) զժամանակ խաղաղութեանն արկ ի կիր ի շինութիւն աշխարհին. շինեցան մի ըստ միոջէ քաղաքքն անուանակիցք Վաղարշաւան եւ Վաղարշապատ կամ Նոր քաղաք (երբեմն աւան Վարդգէսի ի վերայ Քասաղ գետոյ, տեղի ծննդեան իւրոյ ի գետախառնուրդս Մուրց եւ Երասխ գետոյ) եւ փոխէր անդր զաթոռն եւ առնէր ձմերոց զարքունական քաղաքն Աղուանից զԽաղխաղ յՈւտի նահանգի. հաստատէր տօն աշխարհախմբութեան ի մուտն Նաւասարդի իբրեւ ի սկզբան ամի նորոյ ի Բագրեւանդ զբագնիւն որ առ գերեզմանին Մաժանայ, վայելել եկելոցն յամենաբեր պտղոյ։

Այլ յանկարծ ուրեմն հայրն հասանէր նմա երթալ հարկանել զասպատակ սարմատական ազգացն դիմելոց ըստ Կուր գետ այսր. յետ խորտակելոյ զնոսա՝ անց նա զհետ նոցա ընդ կապանն Ճորայ, ուր միւսանգամ յօրինեցաւ ճակատ եւ պարտեցաւ հէնն առաջի զօրութեան քաջացն Հայոց։ Բայց զարքայ հարին աղեղնաւորք կորովք։

Այլ Նորին որդի եւ պայազատ Խոսրով Ա. (210—253°) զունդ կազմեալ միւսանգամ խաղայր ի վերայ՝ խնդրել զվրէժ հօրն. հարկանէր զազգսն խառնաղանճս մեծաւ պատերազմաւ եւ կանգնեալ արձան յոյն գրով՝ նշանակեալ զիւր տէրութիւնն եւ առ Հռոմայեցիս զդաշնաւորութիւն հնազանդութեանն (Թերեւս զի եւ Հռոմայեցւոցն ահիւ՝ որոց նուաճեալ իսկ էր զնոսա բազում

Եւ բազում անգամ (որպէս զՍանատրկոյ եւ զՏորին առնաւէ պատմէ Խորենացի Բ. Գլ. ԼԶ.) դատնէին խնդրակքն զծածկեալսն ի նշանակելոյ չանց զոր ընդ իւրեանս առնէին։

1 Խոր. Բ. Գլ. ԿԲ։

անգամ, կարծեցին յապստամբէ)։ Դառնայր այնուհետեւ յետս Թագաւորն բազմամբոխ պատանդօքն զոր առ մի ի հարիւրոց։ Այպէս ընդ Պարթեւաց՝ նոյնպէս եւ ընդ Հռոմայեցւոց խաղաղութեամբ էր միշտ, նա եւ ոչ ի պատերազմին զոր տայր Արտաւան Դ. արքայ Պարթեւաց ընդ կայսեր Կարակաղլայ ի Միջագետս՝ միաբանեցաւ ինչ ի կռիւ, այլ ցուցանէր նա զանձն ոչ ի սորա եւ ոչ ի նորա կողմն մտեալ։ Սակայն եւ այնպէս յետուստ վասն միատոհմի ազգականութեանն ընդ արքունական տոհմին Պարթեւաց՝ ակամայ գրաւեցաւ ի պատերազմունս մեծամեծս։

Վասնզի թէպէտ եւ յաղթել յաղթեաց Արտաւան Հռոմայեցւոց, այլ այն յաղթութիւն քայքայեալ էր զզօրութիւն գնդին Պարթեւաց. յայն սակս Արտաշիր ոմն անուն նախարար Պարսից կամ Թագաւոր Պարսկաստանի որդի Սասանայ պարսկի Ստահրացւոյ՝ դիպող զժամն համարեցաւ եւ ապստամբեցուցեալ զիւր հայրենի աշխարհն՝ միաբանեալ առ յինքն զգաւառս ի նախարարացն, որպէս եւ զերկուս եւս ցեղսն արքունական տոհմին Արշակունեաց զԱսպահապետի եւ զՍուրենեան Պահլաւն որք ի բնէ իսկ խանտաւորութեամբ էին ընդ երրորդ ցեղին Կարենեան Պահլաւի՝ զի ի նմանէ կայր հարստութիւն Թագաւորացն։ Ի պայտութիւն մտանեցան Պարթեւք եւ անկաւ Արտաւան. ամբարձաւ այնուհետեւ յաթոռն արեւելից Սասանեան հարստութիւնն Պարսից ի ձեռն Արտաշրի (226)։

Ճեպէր Խոսրով ընդ Արտաւան ի թիկունս օգնականութեան Արտաւանայ իբրեւ իւրոյ հարազատութեանն, եւ իբրեւ երկրորդ Թագաւորութեան Արեաց. այլ իբրեւ լուաւ թէ անկեալ է Արտաւան՝ դառնայր այսրէն մեծաւ տրտմութեամբ։ Այնուհետեւ սկիզբն առնէր Թագաւորն Հայոց տարեւոր պատերազմացն վրիժուց ընդ Պարսից տէրութեանն (ամս 10 (°))։ Ամ ըստ ամէ զարնայնի բացեալ զդրունս Ալանաց՝ սարմատական գնդօք գնէր արշաւանս յԱսորեստան բազում անգամ հասեալ ի դրունս Տիզբոն քաղաքի արքայութեանն Պարսից՝ ի նեղ մեծ զԱրտաշիր հասուցանէր. հանէր մասն ի մեծ աւարէն ոչ միայն զօրացն այլ եւ քրմացն՝ հինգերորդս, եւ պատարագս մեծամեծս յեւթն բագինս մեհենիցն։ Կայսր Փիլիպպոս (մանաւանդ թէ Աղեքսանդրոս Սեւերոս) լինէր Խոսրովայ ձեռնտու զօրօք ի մարտ պատերազմի, եւ մինչեւ ցամս իբրեւ 250 (°) եւ անդր ինքն միայն Թագաւորն Հայոց վարէր յառաջ զպատերազմն իւրովք զօրօք մեծաւ զայրացմամբ, մինչեւ վարել զԱրտաշիր յաշխարհն Հնդկաց. զգուեալ էր մանաւանդ վասն Կարենեան Պահլաւ ցեղին զոր կոտորեաց Արտաշիր՝ յորժամ հատուածեալ դայլն գլխաւորան իւրեանց Վեհսաճանաւ ի կոչ Թագաւորին Հայոց[1]։

1 Խոր. Բ. Գլ. ՀԲ. ՀԳ.

Պատուացաւ ձանձրացաւ Թագաւորն Պարսից, մտանէր յամեա-հետեւ ի հնարս հայթայթանաց. անդ Անակ ումն անուն նախապետ Սուրենեան Պահլաւին հրապուրեալ խոստմամբ Թագաւորութեան Պարթեւաց ի վերայ բնիկ աշխարհին Քուշանաց երկրորդական պատուով, անկանէր իբրեւ հատուածի պատճառաւ առ արքայն Հայոց հանդերձ ընտանեօքն հալածեալ ընդ խաբս ի դորացն Պարսից ի սահմանս Արտաշատականի: Ընկալաւ զնա Թագաւորն մեծաւ խնդութեամբ ի ձմերոցին ի Խաղխաղ քաղաքի: Սեղծաւորէր այնուհետեւ պարթեւն մտերմութիւն բազում, մինչեւ ծածուկ խորհրդեանն պատճառաւ մեկուսացուցեալ սպանանէր զԹագաւորն ի Վաղարշապատ. դիմեցին զհետ սպանողին նախարարք եւ զօրն հայկական եւ արարին զեռամեծ ի Տարբերական կամրջացն Արտաշատու զնա եւ զնորին եղբայր եւ զգործակից երկվարզք հանդերձ եւ զտոհմն Անակեան՝ ազգաւ, որպէս հրամանն տուեալ էր Թագաւորն՝ յորժամ չեւ էին ջերմ ոգիքն ի ծոցոյն Թափեալ (253°)[1]:

4. Միաբանեցին այնուհետեւ նախարարք Հայոց աշխարհին եւ կոչեցեալ ի Թիկունս օգնականութեան զօր հռոմայեցի ի փախգիւղ՝ ընդդէմ դարձան Արտաշրի ամս իբրեւ եւթն (253—260°): Այլ քանզի Հռոմայեցիք զբաղեալ իմն էին ընդդէմ Սկիւթական ազգաց կամ Գոթաց յարձակելոց ի Միւսիա, ի Թրակիա եւ ի Յունաց աշխարհ՝ ամենեւին զօրանայր Արտաշիր ի վերայ Հայոց աշխարհին. եղանէին այնուհետեւ փախստեայ յաշխարհէն նախարարքն, եւ այնպէս լինէր Հայաստան մարզ Պարսից տէրութեան առաջնորդեալ պարսիկ մարզպանաւ (260—287°)[2]:

Այս ուրեմն նուաճեցան հնազանդեցին նմա նախարարքն, դարձան եւ մտարանդեալքն յետս, փոխեցան քարինքն սահմանաց (հաստատեալք յԱրտաշիսէ) յանուն Արտաշրի, մերժեցան պատկերք դից Արշակունեաց եւ ի Բագաւանի հրամայեցաւ անշէջ առնել զկրակն որմզդական ըստ մոգութեանն օրինաց, եւ զամենայն կարգէր Արտաշիր մեծաւ յօրինուածութեամբ: Բայց տոհմն Մամիկոնեան կոտորեցաւ, քանզի Արտաւազդ Մանդակունի տարեալ ապրեցոյց առ կայսր զմանուկն Տրդատ զորդի Խոսրովու զշառաւիղ պայազատութեանն Արշակունեաց ի միջոյ որդւոյն[3], որպէս եւ Անայ տանուտէր տոհմին Ամատունեաց զդուստր Թագաւորին զԽոսրովիդուխտ տարեալ անկաւ յամուրն Անի:

Ծուղկեալ զարգանայր մանուկն Տրդատ առ Լիկինեայ կամ Լիկիանեայ կոմսի[4]. պարապէին միտք նորա ի հրահանգս

1 Խոր. Բ. Գլ. ՀԴ. Ըստ Ագաթանգեղեայ ուսուերահայն լինել Խոսրովու եղեւ յետ իբրեւ երից ամաց դաւաճանն Անակայ ի Հայս:

2 Խոր. Բ. Գլ. ՀԶ:

3 Ագաթ. էջ 37:

4 Ագաթ. էջ 38: — Ըստ Եւարագրեայ՝ էր Լիկինիոս գահերեցն, ի վաղուց մեծ-

Digitized by Google

յունական փիլիսոփայութեանն[1] եւ մարզիւք՝ ի վարժս ուժոյ ընդունութեանն, պսակէր պարծանօք ի մրցութիւնս Պեղոպոնեսացւոց, զի երկիցս միով ձեռամբ եկեր զեղջերս ցլուց վայրենացելոց՝ միանգամայն ոլորելով զվիզսն սատակէր[2], եւ դարձեալ ի Հռոմ՝ յորժամ ատուցեալ արկ զնա Հակառակորդն ի վայր ի կառացն, բուռն հարեալ արգել զարշաւան կառաց նորա։ Ընդ Պ. Լիկինեայ երթայր ի մարտ պատերազմի ի վերայ Գոթաց (282) ի Պաննոնիա, ուր ապրեցոյց զՊ. Լիկինիոս՝ յորժամ եկին ի վերայ նորա ընդդէմքն յետ զկայսր Կարինոս ի Միւսիա սպանանելոյ. երթայր ընդ նմա եւ ի վերայ Պարսից յանապատն Միջագետաց կամ Արաբացւոց (283)։ Իսկ ի մեռանել Նուագի Հարաւ զօրն Հռոմայեցի եւ Տրդատայ վերադարձեալ երկրորդ՝ առ զատապաղէնն եւ զԿիւր առնապէնն եւ անց ի լեռ ընդ Եփրատ յայնկոյս ի բանակն Հռոմայեցւոց առ Պ. Լիկինիոս[3] (284)։ Վերջին ի նահատակութեանց անտի լեալ պատմի մենամարտութիւնն ընդ արքային Գոթաց փոխանակ կայսերն։

Պսակեցաւ այնուհետեւ Տրդատ (ըստ Խորենացւոյն՝ առ Դիոկղետիանոսիւ) ի թագաւորութիւն Հայոց աշխարհին, եւ միանգամայն պատրաստեցաւ մարտ պատերազմի ի վերայ Պարսից (386?)։ Հասեալ Տրդատայ ի Գամիրս յաճախագունդ զօրօք Հռոմայեցւոց՝ գային հասանէին ընդ առաջ ի կոչ նորա բազումք ի նախարարաց Հայոց աշխարհին եւ պսակեցաւ Տրդատ ի Սմբատայ ասպետէ։ Մղէին մի ըստ միոջէ ճակատք բազումք, եւ դրաւեցաւ այսրէն երկիրն յամս ոչ սակաւս։ Այսպէս կանգնեցաւ եկաց միւսանգամ հարստութիւն Արշակունեացն ի Հայս յետ իրեւ 30 (?) ամաց անտէրընչութեան՝ ուր բուռն տոհմ Արշակունեաց մերժեալ անկեալ էր ի թագաւորութենէ Արեաց աշխարհին եւ թուէր ընդ իւր ձգեալ ի կործանումն եւ զՀայոցն թագաւորութիւն։

Աւտայ այր արդար եւ ժուժկալ՝ որ ցայնվայր դիմակալ լեալ էր յամրին Անւոյ (որ չէ ինչ զարմանալի վասն արեւելեացն՝ որ անհնարին էին արուեստի եւ մեքենայից պաշարման) կացուցաւ ի

րիմ Գաղերիոսի եւ ընդ նմա նահատակեալ ի պատերազմին ընդդէմ Ներսեհի արքային Պարսից, եւ ապա ընտրեալ ի նմանէ ի կեսարութիւն։

1 Ագաթ. էջ 640 "Յառաջագոյն էր անդէտ փիլիսոփայական մասց հանճարգիտութեան, զի ուսեալ էր զայն"։

2 Զբանսն Խորենացւոյն թէ "Զերկուց ցլուց վայրենեաց (մի զմիս կնի) միով ձեռամբ կալեալ զեղջերսն թափեաց հանգերձ ընդվզեալ ղախղախմամբ" (Բ. Գլ. ՀԹ), լուսաւորագոյն գործեն բանք Պղինեայ (Բն. պատմ. Գիրք Ը. Գլ. 45). "Թեսաղացւոց ազգին գիւտ է յարշաւեցուցանելն զերիվարսն՝ եղջերօք զվիզսն ոլորեալ սպանանել զցուլս". եւ Սուետոնիոն (ի Կղաւդ. 21) "Ցոյց ի հանդիսի հեծեալս Թեսաղացիս որք ցուլս վայրենիս հալածիցեն ընդ ընդարձակութիւն կրկէսին, եւ ի վաստակելն նոցա եւ ի պարտասել ի վերայ յարձակիցեն եւ բուռն հարեալ զեղջերացն ի գետին ընկենուցուն"։ Այս սովորութիւն Թեսաղացւոց վաղ անցեալ էր յԵփեսոս եւ լեալ տօն տարեկան ի Զմիւռնիա, որպէս ցուցանէ մարմարիոնն ածեալ աստի յԱնգղիա, յորում քանդակեալ երեւին հեծեալք որ յարշաւանի անդ յանկարծ բուռն հարեալ զեղջերաց ցլուց պարատոեալց՝ զարկանեն զգետնի, եւ գիր ի ներքոյ Ταυροκαθαψιων ημερα որ է Օր (տօնի) ցուլն զետնելոյ։

3 Խոր. Բ. Գլ. ՀԹ. եւ Ագաթ. էջ 194։

Digitized by Google

հազարապետութիւն աշխարհին, Արտաւազդ մանդակունի դայեակն թագաւորին՝ ի սպարապետութիւն, որպէս եւ Տաճատ ոմն նորին քեռայր ի նահապետութիւն Աշոցայ՝ զի զքոյր մի ի կոտորածէ քերցն Արտաւազդայ ապրեցոյց ի Կեսարիա[1]: Առաքեցաւ ասպետն ածել զկոյսն Աշխէն զդուստր Աշխադարայ (որպէս հաւանութեան է՝ արքային Ալանաց) ի հարսնութիւն արքային՝ դրեալ արշակունի եւ զգեցուցեալ ծիրանիս[2]: Այլ անդադար էր մարտ պատերազմի ընդ տէրութեանն Պարսից առ Շապհով՝ մինչեւ ցկատարել ստացուած երկրին: Այս հանդարտեցաւ երկիրն ի Պարսկական պատերազմէն իբրեւ յամս 40: Յայսմ խաղաղութեանն ժամանակի հնչեաց քաղցրաձայն բարբառ աւետարանին յետ բարձրաբարբառ որոտմանց ի մէջ Թմբրելոցն[3]:

Այսպէս ազգային պատմագրութիւնն. որ միայն ի վերջ կոյս եւ այն խիկ խիկ եւեթ միաբան է ընդ արտաքին պատմագրութեանն՝ զոր այժմ առաջի կայ տեսանել:

## Է.

### Հայաստան (եւ Պարթեւաստան) առ յաջորդօք Ներոնի կայսերօք (ըստ արտաքին պատմագրաց):

Աշխադար, Պարթամասիր, երեակն միաբանութիւն Հռոմայեցւոց, Պարթամասպատ, Ատեդինէս, Սոյեմոս, Սանատրուկ, Վաղարշ, Տրդատ (Բ.), Արտաւազդ (Գ.), Տրդատ (Գ.) (80—297):

### 36

Ըստ արտաքնոցն պատմութեան առ Դոմիտիանոսիւ թագաւորէր ի Հայս Աշխադար ոմն անուն, որպէս հաւանութեան թուի՝ որդի եւ ոչ թոռն Տրդատայ Հայոց արքայի եղբօր Վաղարշու Ա. արքայի Պարթեւաց: Այլ յետ երկայնժամանակեան թագաւորութեան Վաղարշու († 91) թագաւորէր Պարթեւաց նորին եղբայր Բակուր (որ ցայնժամ թագաւորն էր Մարաց): Բայց վասն ներքին անդադարն գժտութեանց չյերկարեալ սորա յիշխանութեանն, մատչէր ի բարձ թագաւորութեան եղբայրն Բակուրայ՝ Խոսրով (107—121): Սա վասն ի զգուշէ զիւր աթոռն առնելոյ զՊարթամասիր զորդի Բակրոյ եւ զիւր եղբօրորդի կարգէր ի թագաւորութիւն Հայոց աշխարհին՝ մերժելով անտի զԱշխադար արքայ:

Չառ յանձն զիրն կայսր Տրայիանոս եւ պահանջէր յարքայէն Արեաց հանել զզօրսն իւր յաշխարհէն Հայոց եւ թողուլ զԱշխադար յաթոռ իւրում: Այս զայրացաւ սէգ Հռո-

1 Խոր. Բ. Գլ. ԻԲ:
2 Խոր. Բ. Գլ. ԻԳ:
3 Խոր. Բ. Գլ. ԿԸ—ԻԳ:

Digitized by Google

ձանձրացին ընդ ամբարհաւանութիւն Պարթեւին՝ զի չառ զայն յանձն, պատրաստեցաւ եւ յարշաւանս ի վերայ արեւելեայց: Իբրեւ ետես Թագաւորն Արեաց զկազմութիւն եւ զպատրաստութիւն զնորին Հռովմայեցւոց՝ անձապարեալ առաքէր առ Տրայիանոս յԱթէնս հրեշտակս բանիւք խաղաղութեան եւ պարգեւօք, աղաչեալ փոխանակ Աշխադարայ՝ Պարթամասիրայ տալ զԹագաւորութիւնն: Արհամարհեաց կայսր զպարգեւսն "Զանդէս բարեկամութեան ի գործոց է, ասէ, եւ ոչ ի բանից,, եւ խաղայր յԱսորիս: Ի մտել նորա (115) առանց դիմադարձութեան մինչեւ ցԹափսակոս, ցԶեւգմա եւ ցՍամոսատ որ ձեռս եառուն ի նոսա՝ անդուստ ձեպէր Պարթամասիր արքայ առաքել առ նա հրեշտակս մեծաւ մեծարանօք: Չարար նոցա երեսս կայսր, խաղաց ընդ Եփրատ ի վեր, անց ընդ Սատաղ քաղաք մինչեւ ցԵկեղեաց գաւառ[1], հաս ի կողմանս Կարնոյ ի բուն սիրտ Հայոց աշխարհին, նուաճեալ զկողմանսն՝ հրաւիրեաց առաջի զՊարթամասիր. եկն Թագաւորն ի բանակ անդր եւ զթագն հանեալ դնէր առ պատուանդանաւ բեմին (որպէս երբեմն հօրեղբայր իւր յանդիման Ներոնի), զի ինքնին կայսր առեալ պսակեսցէ զնա: Այլ իբրեւ ետես զօրն հռովմէական որ շուրջն կայր՝ զԹագաւոր արշակունի զորդի Բակրոյ զեղբօրորդի Խոսրովու մերկ ի թագէ իբրեւ գերի կացեալ առաջի Տրայիանու՝ անարիւն յաղթութիւն զիւրն անուանէր, եւ բարձրաձայն ուրախութեան բարբառով գոչէր զկայսր՝ Հայկական[2] (այս ինքն յաղթող Հայոց): Իբրեւ ետես զօրն թէ զարհուրեցաւ Պարթամասիր եւ կամէր սրանալ ի բաց՝ հարկին կալան զնա առաջի Տրայիանու. սակայն համարձակութեամբ յայտ արար Թագաւորն թէ ոչ իբրեւ գերի կամ յաղթեալ՝ այլ ինքնակամ եկի այդր զի հաստատեսցի ի կայսերէ թագաւորութիւնս: Բայց Տրայիանու այլ ինչ կայր ի մտի. արար նա զերկիրն ընդ նահանգաւ եւ հրաման ետ ամենայն հայ մարդկան չելանել ի բաց յաշխարհէն: Սակայն զՊարթամասիր եթող ազատ երթալ իւրայովքն հանդերձ յուպէտ յուկամ, բայց ետ նմա հեծեալս ուղեկիցս՝ զի մի զճանապարհայն ընդ այլոց խօսելով յոյզս ինչ գրգռիցէ: Զարմացաւ խռովեցաւ ընդ իրսն Պարթամասիր, գունդ կազմեաց եւ ետ ճակատ, այլ անդէն յառաջնում պատերազմին անկաւ եւ հնազանդեցաւ Տրայիանու աշխարհն:

Այսպէս յետ այնորիկ նուաճեցան մանր մանր թագաւորութիւնքն որ ի հիւսիսոյ կուսէ մերձաւոր սահմանակից Հայոց էին, Խաղտեացն եւ Վրաց եւ Աղուանից եւ ասիական Սարմատաց մինչեւ ցսահմանս Սաւրոմատայ Բ. արքայի Կիմմերեանն Բոսպորայ: Մինչդեռ անդուստ Տրայիանոս գրաւէր ի նմին ամի եւ առնէր նահանգ եւ զԱդիաբենէ կամ զԱսորես-

1 Ελέγεια τῆς Ἀρμενίας. 2 Armeniacus.

տան եւ կարգէր զզօրսն ի ձմերոց յամուր ամուր տեղիս Հայոց եւ Միջագետաց ի պահպանութիւն եւ ի պատրաստութիւն պատերազմի միւսոյ ամին (116), ի Հռոմ տայր հատանել ծերակոյտն դահեկանս յորս ցայժմ երեւի Տրայիանոս նիզակ ի ձեռն՝ կանգնեալ պատերազմական հանդերձիւն ի մէջ նշանակաց Տիգրիս եւ Եփրատ գետոց եւ առ ոտս նորա կին (նշան Հայաստան աշխարհի) կալեալ կծկեալ եւ շուրջանակի գիր՝ թէ "Հայաստան եւ Միջագետք արկան ընդ իշխանութեամբ ժողովրդեան Հռոմայեցւոց[1]," այս ինքն՝ թէ եղեն ընդ նահանգաւ. եւ առանձինն իսկ անցք Պարթամասիրայ քանդակեցան ի կոթողն անդ Տրայիանու[2]:

Թէպէտ եւ ընդ նոյն ժամանակս ևս առաքեաց արքայն Պարթեւաց հրեշտակութիւն վասն դադարման պատերազմին եւ ետ պատանդս, սակայն եւ այնպէս անդէն զարնայնի (116) անցեալ Տրայիանու ընդ Տիգրիս՝ մտանէր առանց դիմադարձութեան ի ձմերոցս արքայութեանն Պարթեւաց՝ ի Տիզբոն, եւ անդ ողջունեցաւ ի լեգէոնաց իւրոց՝ Ինքնակալ Պարթեւական եւ կացուցանէր Պարթամասպատ (ըստ Մաղաղայ՝ որդի Աշխադարայ՝ որ յայնուհետեւ անհետ լինի ի պատմութենէ)[3]:

Այլ ոչ տեւական ինչ իրքն էին. անդէն ի միւսում ամին (117) կայսր Ադրիանոս թողոյր զկողմանսն գրաւեալս յետս, եւ թոյլ տայր Պարթամասպատայ ի բաց մերժել ի թագաւորութենէ յիւրայոց անտի եւ գտանել յառաջին աթոռ թագաւորութեան իւրոյ Խոսրովու արքայի: Իսկ եւ իսկ պահապանք Հռոմայեցւոցն հանդերձ գնդապետաւն վերակացուաւ աշխարհին ի բաց ելանէին ի քաղաքաց եւ ի բերդից Հայոց աշխարհին կայսերն հրամանաւ, եւ Պարթամասպատ եկեալ ունէր զաթոռ թագաւորութեան Հայոց մեծաց հաւանութեամբ Հռոմայեցւոց եւ Պարթեւացն[4], որպէս եւ ինքեանք իսկ Հայք խնդրեցին ի կայսերէ[5]: Յետ փոխմանն Պարթամասպատայ (139) հաստատեցաւ ի գահէ նորա Աքեմենիդ անուն ի թագաւորութիւն Հայոց աշխարհին, պսակեալ՝ կամ յԱնտոնինեայ Պիոսէ ինքնին գլխովին ի Հռոմ, եւ կամ նորա հրամանաւ անդէն ի Հայս (140)[6]:

1 Armenia et Mesopotamia in potestatem P. R. (այս ինքն Populi romani) redactae յամէ 116 (Հայաստան եւ Միջագետք արկեալ ընդ իշխանութեամբ Հռոմէական ժողովրդեան) եւ պատկեր ի մէջ՝ Տրայիանոս կանգուն յեցեալ ի նիզակն, Եփրատ եւ Տիգրիս տարածեալ ի գետնի եւ ընդ ձախու ոտամբն Հայաստան կիսամէջ յորայս:

2 Ի կոթողն տաս որ յետոյ ածաւ ի շինութիւն կամարին Կոստանդիանոսի Մեծի, ցայսօր նշմարի Պարթամասիր մորուօքն առաջի Տրայիանու յանդիման զօրացն համեմատ պատմութեանն Դիոնի ԿԸ. 17. Սեքստեայ Ռուփոսի ԺԴ. եւ Ի. Եւտրոպեայ Ը. 2: Տես Վ. Լանգլուա, Դրամկերագք. Յուն. Յամ. Դ: Զարշաւանէն Տրայիանու ի Հայս յիշէ եւ վաւերական վկայաբանութիւնն Ս. Իգնատիոսի:

3 Կան դրամք Տրայիանու յորս է գիր շուրջանակի կամ Պարթամասպատ տալով կամ "Տուաւ թագաւոր Պարթեւաց" Rex Parthis datus. S. C. եւ կամ "Թագաւորութիւնք սահմանեալք" հանդերձ պատկերաւ նորա՝ զի սահմանէ զթագաւորութիւնս, ամենեքին յամէ 116:

4 Դիոն Կաս. եւ Սեքստ. Ռուփ. անդ:

5 Սպարտիան. յԱդրիանոս:

6 Յամբլիքոս բաբելոնացի ի բանագիրծութեանն իւրում, առ Փոտայ Մատենադարի. 94: Դրամնեալք վասն գիտելոյ գրոշմեալ դահեկան յորս ի միում կողմանն

Digitized by Google

Այլ չէր ինչ այնմ հասեալ Վաղարշ Բ. (121—149). սա զառաջինն բարեկամութեամբ էր ընդ Հռոմայեցւոց առ Ադրիանաւ։ Ալանք եւ Մասքութք միաբանեալ եղեն արշաւան ի Մարս եւ ի Հայս եւ հասին մինչ ի կողմանս Գամրաց. ապա ուրեմն պարգեւօքն Վաղարշու Բ. եւ սպառնալեօք Փլաւեայ Առիանեայ վերակացուի նահանգին Գամրաց դարձան այսրէն յաշխարհն իւրեանց (135)։ Ընդէն ի միւսում ամին ամբաստանս ի Հռոմ առ Ադրիանոս տանէր արքայ Վաղարշ Բ. զՓարսմանէ Վրաց արքայէ թէ նա գրգռէ զազգ Ալանաց ի վերայ Պարթեւաց. եկն հրաւիրեալք նորա առաջի ծերակուտին, բայց չվճարեցաւ ինչ. եւ Փարսման որ անդ յայնժամ դիպեցաւ, փառաւորեցաւ եւ եղեւ նմա համարձակութիւն զոհս ի Կապիտողիոնին մատուցանելոյ (136)[1]։ Դարձեալ՝ ինկզման թագաւորութեանն Անտոնինեայ Պիոսի՝ յղէր առ նա Վաղարշ հրեշտակութիւն տանել թագ ոսկի[2], զի թերեւս ընկալցի յետս զաթոռն ոսկի զոր ա՛ռ առաքեալ Տրայիանոս ի Հռոմ՝ յաղթութեանն նշանակ, զոր եւ Ադրիանոս խոստացեալ էր տալ յետս[3]։ Բայց իբրեւ չեհաս ում կամէրն եւ յետ այնորիկ թագաւոր եւս Հայոց առանց նորա հաւանութեան կացուցաւ Աքեմենիդ՝ խորհէր այնուհետեւ Վաղարշ յարձակել ի Հայաստան երկիր։

Թէպէտ եւ ինքն խափանեալ արգելաւ թղթովք Պիոսի Անտոնինեայ, այլ նորին յաջորդ Վաղարշ Գ. (149 — 191) առ Մարկոսն Աւրելիոսիւ եւ Ղուկեաւ Վերեաւ՝ մինչ ինքն ի Միջագետս յարձակէր եւ յաղթէր իսկ Հռոմայեցւոց, առաքէր անդուստ զիւր զօրավար զԽոսրով ի Հայս։ Թագաւորն Հայոց՝ որ էր յայնժամ Սոհեմոս որդի եւ պայազատ Աքեմենիդայ, խնդրեաց թիկունս օգնականութեան ի Սեւերիանեայ վերակացուէ Գամրաց ընդդէմ Խոսրովու, եւ ընկալաւ իսկ։ Սակայն եւ այնպէս ի նեղ անկեալ ստիպեցաւ ելանել փախստեայ ի Հռոմ, ուր եւ սինկղիտիկոսութեան պատիւ առնոյր՝ որպէս պատմի։ Յետ այնորիկ աճապարէր Խոսրով ընդ առաջ Սեւերիանու որ լեգէոնօք եկն ընդ առաջ նորա, փակէր զնոսա զօրավարն պարթեւ յԷրեգն աւանի, կամ ուրեք յԵկեղեաց նահանգի, եւ սատակէր նետահար. նա եւ զօրավարն եւս ի բուռն անկեալ մեռաւ ի դիպահուոջ սովամահ (161 — 162)[4]։

կայ Antonius Cos III. Augustus (Անտոնիոս հիւպատոս երրորդ անգամ, Օգոստոս), եւ ի միւսումն կողմն գնէ թագ ի գլուխ Հայոց թագաւորին ինքնին կայսր կացեալ կանգուն պճնազարդեալ եւ շուրջանակի գիր՝ Rex Armeniis (կամ Armeniae) datus. S. C. Տուաւ թագաւոր Հայոց. Հր. Ծերակուտին. (գրոշմեալ) յամս 140—143։

1 Դիոն. Դալ. 69։

2 Յուղ. Կապիտ. Անտ. Պի. 9։ Աւր. Վիկտ. Հա. պատմ. 15։ Կայ մետաղ գեղեցիկ հատեալ զանհեկան, ի միում կողմն գլուխ Անտոնինեայ, եւ ի միւսումն կայ կանգուն կին պարթեւ որ ի ձախոյն ունի աղեղն հանդերձ կապարճիւք եւ աջով ձեռամբն մատուցանէ պսակ Անտոնինոսի (նշանակ արեւելից). գիր շուրջանակի՝ Parthia S. C. (Պարթեւաստան. Հր. Ծերակ.)։

3 Յուղ. Կապիտ. յԱնտ. 9։ Սպարտիան. յԱդրիան. 13։

4 Ղուկիան. ի վերայ Աղեքսանդրի ըղձի.

Ի նեղ մեծ հասին Հռովմայեցիքն՝ մինչեւ հարկ իսկ լինէր Լուկեայ կայսեր խաղալ յարեւելս։ Հասեալ կայսեր յԱնտիոք եւ ինքն ի դատարկութիւն հատեալ զեզերելով մերթ յԱնտիոք եւ մերթ ի Դափնիս Անտիոքացւոց, առաքէր անտի զզօրավար իւր զԱւիդիոս Կասիոս ընդ Միջագետս, որ թափէր զամենայն նահանգսն գրաւեալս ի Պարթեւաց, զՍեղեւկիա տայր աւար զօրացն, զի անկան յանկարծ ի վերայ զօրացն յետ ընդունելոյ զնոսա սիրով, եւ զքուն իսկ քաղաքն նոցա զՏիզբոն հրձիգ առնէր, մինչեւ դարձոյց զնա այսրէն ախտ ժանտ։ Յառաջ իսկ քան զայն այլ զօրավարք կայսեր՝ Ստատիոս Պրիսկոս եւ յետ նորա մահուն Մարտիոս Վերոս արք հիւպատոսականք անցեալ ընդ Գամիրս՝ յետ զառաջինն ի նեղ անկանելոյ՝ գրաւէին այսրէն յետս զաշխարհն Հայոց, առեալ եւ զգլուխ քաղաքացն զԱրտաշատ ի բուռն (163 — 164)։ Կացուցանէր այնուհետեւ Լուկիոս զՍոյեմոս որ կոչեցաւ ի Հռոմէ՝ այսրէն ի թագաւորութեանն, եւ անուանեցան կայսերքն երկոքին Լուկիոս Վերոս եւ Մարկոս Աւրելիոս՝ Հայականք (164)[1]։

Յորժամ յետ Կոմոդայ կայսեր յարեան կացին կայսերք երեք, յորոց մի էր յարեւելս Պեսկեննիոս Նիգեր (կամ Նիգրոս) եւ ի սա յարեցաւ արքայն Արեաց Վաղարշ Գ. (191 — 208), նմին հակառակ Սանատրուկ արքայ Հայոց (որպէս թուի՝ որդի Սոյեմայ) եւ ոչ ի մի ի նոցանէ միտեցաւ, թէպէտ եւ առաքեաց եւս առ նա Նիգրոս խնդրել թիկունս օգնականութեան, մինչեւ զօրացաւ ի վերայ Նիգերայ՝ Սեւերոս (193)[2]։

Սակայն նորին որդի եւ պայազատ Վաղարշ (195 — 210) միաբանեալ ընդ անուանակից թագաւորին Արեաց՝ եւ ապստամբ եւս ի Հռովմայեցիս դնէին ի ժամանակի զի գրաւեալ էր Սեւերոս ի մարտ պատերազմի ընդ երկրորդ նախանձորդին իւրում ընդ Ալբինեայ յարեւմուտս։ Այլ յետ վճարելոյ պատերազմին այնորիկ՝ խաղայր Սեւերոս դէպ ուղիղ յարեւելս. տճա-

որ եւ զԿալլիմորփոս մատենագիր ժամանակակից յառաջ բերէ ի գիրսն իւր վասն պատմագրութեան։ Յաւղ. Կապիտող. ի Մարկ. Աւրել. Ը։

1 Յամբլիկոս Բաբել. ժամանակակից իրացն առ Փոտայ Մատ. 94։ Դիոն եւ Յաւղ. Կապիտոլին. ի Մարկ. Անտոնին. Թ։

Ի զահեկանսն Մարկոսի Աւրելեայ կայ ի միում կողմանն յետ անուանն նորա՝ Armeniacus, եւ ի միւսում կողմանն կին մի նստեալ տրտում տխուր առաջի գրօշուն Հռովմայեցւոց եւ ի ներքոյ գիր՝ Armenia. զահեկանք արծաթիք՝ յամէ 164, 165, 166։

Իսկ Լուկեայ Վերեայ՝ բաց ի նոյնօրինակաց յորս երեւի դարձեալ Հայաստան ի կերպարանս կնոջ նստեալ տխուր ձեռն ի ծնօտին առ նշանի յաղթութեան Հռովմայեցւոց, կան եւ զահեկանք այսպիսի ինչ գրով՝ Յաղթանակն Աւգոստոսի, Հ. Ծ. եւ պատկեր գեղ յաղթութեան եւ առ ոտն նորա Հայաստան ի մէջ հայրենական զինուց, յեցեալ ի նուռ մի (յամէ 163 եւ 164). կամ ինքն Վերոս կացեալ կանգնէ նշան յաղթութեան եւ այր հայ կայ կքեալ ի ներքոյ նշանին եւ առաջի կայսեր (զահեկան պղնձի յամէ 165). կամ կայսր զինկալն ճոխացուցանէ ի վերայ առն Հայոյ (յամէ 165). եւ կամ նստի կայսր ի գահոյն իւր (sede curuli) եւ բազմ առեալ կայ զօրականն եւ ի մէջ նոցա կայ արքայն Հայոց, որում դնէ թագ ի գլուխ ինքնին կայսր Վերոս, եւ գիր շուրջանակի՝ Թէ Տուաւ թագաւոր Հայոց (Rex Armeniis datus). զահեկան ոսկի յամէ 164 եւ արծաթի՝ յամէ 165)։

2 Հերոդիանոս. ի Սեւեր։

տայր ընդ առաջ նորա արքային Հայոց եւ ընդունէր ի նմանէ հաշտութիւն խաղաղութեան զանձուք բազմօք եւ պատանդօք՝ առաքեալ առ նա եւ զուստր աղեղնաւորաց ի քաջացն Հայոց ի թիկունս օգնականութեան գործոյն պատերազմի[1]: Բայց ի մերոյ Նոսփաց կացուցանէ Թագաւոր՝ Արտաւան զոմն զորդի կամ զեղբայր Վաղարշու, քանզի դժտութեամբ խիկ ընդ միմեանս էին[2]: Ապա երթեալ հարկանէր Սեւերոս զՊարթեւս, զրաւէր զՄիջագետս, երրորդ անգամ լինէր Տիզբոն յաւար Հռոմայեցւոց զօրուն (197)[3]:

Այլ սորին որդի Կարակալլայ զրգռէր միւսանգամ ի մարտ պատերազմի ընդ Արտաւանայ Դ. Պարթեւաց արքայի (—226): Բայց մինչդեռ անդէն յԱսորիս էր՝ հրաւիրեալ կոչէր թղթով զքրիստոնեայ Թագաւոր Ոսրհոյենացւոց զԱբգար զվերջին եւ ածէր ընդ նուաճանօք զաշխարհն Ոսրհոյենացւոց. ապա կոչէր նոյնպէս զԹագաւորն Հայոց զՎաղարշ որ միահեծան տիրէր յայնժամ մարբն հանդերձ եւ դնէր զնոսա ի դիպահուոջ, զի խորհէր նոյնպէս զՀայաստան աշխարհ նուաճել Հռոմայեցւոց կացուցանել: Զայրացեալ գրգռեցան Հայք ի մարտ պատերազմի, առաքեցաւ ի վերայ նոցա Թէոկրիտոս անձնապահապետ կայսեր եւ խորտակեցաւ նա առաջի Հայոց զնդին:

Ի նմին ժամանակի գրգռեցաւ եւ պատերազմի ընդ Արտաւանայ, զի խնդրէր կայսր զդուստր Թագաւորին Արեաց կնութեան՝ զի այնպէս իրաւունս ինչ պայազատութեան պարթեւական աթոռոյն ունիցի (216): Իբրեւ չառ յանձն Արտաւան՝ յարձակեցաւ կայսր, առ զԱրբելա եւ զայլ եւս քաղաքս բազումս, եւ քանդեալ ցրուէր զոսկերս Թագաւորացն Արշակունեաց ի գերեզմանացն. բայց չհեշտեաց մնալ ճակատուն Պարթեւաց որ պատրաստէր, եւ դարձաւ ի Միջագետս ուր սպանաւն խիկ վաղվաղակի (217)[4]: Թէպէտ եւ նորին յաջորդ կայսր Մակրինոս կամէր խօսել ընդ Արտաւանայ ի հաշտութիւն, այլ ի պայմանան չմիաբանեալ ճակատեցան երկիցս առ Մծբնացւոց քաղաքաւ. ի պարտութիւն մատնեցան Հռոմայեցիք, յանձն առ Մակրինոս տալ զգերիսն յետս եւ առնուլ փնոց զխաղաղութիւնն: Անդր առաքէր այնուհետեւ Մակրինոս եւ առ որդի Հայոց Թագաւորին առ Տրդատ Բ. թագ արքայութեան հանդերձ մարբն նորա որ կացեալ էր ցայն վայր ի դիպահուոջ ամիսս 11, Թագաւորել փոխանակ հօրն որ ի կալանս վախճանեալ էր (218)[5]:

Յայսպիսում հանգամանս էին Հայք մօտ ի կատարած պարթեւական պետութեան:

1 Հերոդիան. Գ. Գլ. 73: Զոնար. Ա. 8:
2 Դիոն ՀԵ. (ի վախճան կայր):
3 Դիոն. Հերոդ. Գ. 10, 1: Սպարտ. Կառակ. 6: Եւտրոպ. Ը. 11: Օրոզ. 21:
4 Դիոն ՀԷ. 12, 21: Սպարտիան. Կարակ. 6:
5 Դիոն ՀԸ. 27: Յուլ. Կապիտոլ. ի Մակրին: Հերոդիան. Դ. 14:



Digitized by Google

## 37

Ի սկզբան անդ Սասանեան հարստութեանն եւ Աղեքսանդրոս Սեւերոս քաջաւ (230 — 234) մարտ պատերազմի ընդ Արտաշրի, եւ ըստ Հերոդիանու՝ ոչ ինչ աջողեցաւ, բայց Լամպրիդիոս որպէս եւ դէպքն որ զհետ արշաւանին եղեն՝ այս ինքն կարճել Արտաշրի ի կոխելոյ զսահմանս Հռոմայեցւոց, վկայեն թէ գտաւ յաղթող Աղեքսանդրոս, թէպէտ եւ ոչ առանց մեծի կոտորածի յերկուց կողմանց։ Այլ Շապուհ Ա. նորին որդի յարձակի միւսանգամ ի սահմանս Հռոմայեցւոցն եւ պաշարեալ առնու զՄծբին, առ Գորդիանու Գ. հասանէ մինչեւ յԱնտիոք եւ խաղայ իսկ ի Կապադովկիա եւ ի Կիլիկիա։ Գորդիանոս որ չոգաւ ի վերայ նորա ի պատերազմ (241 — 243) այնու իմն խորհեցաւ գտանել օգնականութիւն՝ զի զՈւռհայեցիսն զորս նուաճեալ հնազանդեցուցեալ էր Սասանեանց, արկ յինքն՝ զմի ոմն ի տանէ Աբգարեանց մնացեալ միւսանգամ ի թագաւորութիւն, եւ այնպէս լինէր նա յառաջադէմ ի Միջագետս՝ մինչեւ հասանել մօտ ի Տիզբոն։ Այլ Փիլիպպոս Արաբացի՝ որ սպանն զԳորդիան յարշաւանի անդ, առ գնոց զխաղաղութիւնն։ Մեծացաւ զօրացաւ Շապուհ յետ զՎաղերիանոս առնելոյ ձերբակալ (259), անկաւ ի վերայ քաղաքին Անտիոքացւոց եւ աւերեաց, մինչեւ քաջն Ոդենատոս պաղմիւրացի անկանէր ի վերայ նորա ի դառնալ նորա այսրէն յանցս Եփրատու, պնդէր զհետ նորա եւ յաղթէր մեծաւ յաղթութեամբ առաջի Ուռհայեցւոց քաղաքին, հանէր ի նմանէ զՄծբին եւ մերժէր զնա յամենայն իսկ Միջագետաց, եւ այնպէս առնոյր ի կայսերէ անուն "զօրավար արեւելից", թէպէտ եւ կոչէր նա զինքն թագաւոր Պաղմիւրայ յամէ առաջի յաղթութեանն (260)։

Այն թագաւորութիւն Պաղմիւրացւոց մինչեւ ցվերջին կործանումն ի ձեռն Աւրելիանեայ՝ էր թումբ ընդդէմ զօրութեանն Սասանեանց՝ ընդ որում հապաղէր կռուէին այնուհետեւ ինքեանք կայսերքն։ Ինքն Աւրելիանոս ի պատրաստելն ի պատերազմ ի վերայ Որմզդի Ա. (յամէ 273) որդւոյ Շապհոյ Ա. վախճանէր, նոյնպէս եւ Պրոբոս ի պատրաստելն ի վերայ Վռամայ Բ. (յամէ 276) որդւոյ Վռամայ Ա. (յամէ 273 — 276)։ Կարոս ած ի գործ զխորհուրդն եւ եհաս յաղթութեամբ առաջի Տիզբոնի (282 — 283), այլ Նումերիանոս որ զնայն յաջորդեաց, զանգիտեալ դարձաւ յետս։ Իսկ եւ իսկ դարձաւ գրաւեաց Վռամ Բ. միւսանգամ զՄիջագետս. բայց մինչ դեռ յԱսորիս էր Դիոկղետիանոս պատրաստեալ ի վերայ նորա, զանգիտեալ յապստամբութենէ եղբօրն իւրոյ Որմզդի, առաքեաց պատուիրակս առ կայսր խնդրել խաղաղութիւն. եւ զայն Դիոկղետիանոս պայ-

Digitized by Google

ման եղեալ՝ զՄիջագետս Թողուլ եւ զՏիգրիս համարել սահման երկոցունց տէրութեանցն (290): Բայց քանզի Վռամ Բ. զբաղեալ էր ի տագնապէն՝ չառ յանձն, եւ ոչ նորին որդի Վռամ Գ. մինչեւ հարկ լինել Գաղերեայ զինուք ածել զՆերսեհ զնովին յաղթող (յամէ 294)՝ յընդունելութիւն պայմանին (297):

2. Օրինչ առ այսորիկ Հայք: Թողեալ ի բաց զՊրոկոպիոս (զմատենագիր վեցերորդ դարու) որ պատմէ ի վախճան կոյս պարթեւական պետութեանն (յամի իբրեւ 222) Արտաւանայ Գ. արքայի Պարթեւաց յետ մահուն Տրդատայ Բ. Թագաւորեցուցանել ի Հայս զեւր եղբայր զԱրշակ, եւ ազգականացն Արտաւանայ դիմել առ Արշակ ի Հայս ի տիրելն Արտաշրի[1]. զայս ամենայն ի բաց Թողեալ՝ այն իմն ըստ արտաքին պատմագրութեանն՝ առանց երկմտութեան է՝ Թէ Արտաշիր իսկ եւ իսկ յառաջին ամս տէրութեանն ի Հայս յարձակէր եւ յաղթէին Հայք Արտաշրի՝ որ ի նեղ անկեալ դարձաւ յետս՝ երթալ ժողովել իւր զօրութիւն ի կողմանց Հնդկաց, որպէս ասէր համբաւն. (յառաջ քան զամն 229)[2]: Նա աւանիկ եւ ի պատերազմունսն Աղեքսանդրի ընդ Արտաշրի՝ էր Հայաստան նիզակակից կայսեր. ըստ Հերովդիանու յերիս գունդս Աղեքսանդրոս զզօրսն բաժանեաց. զառաջինն առաքէր ընդ հիւսիսի ընդ դաշնաւորն Հայաստան մտանել յաշխարհն Մարաց, զերկրորդն ընդ հարաւ արձակեալ՝ զմիջինն յինքն առնոյր՝ ապա յետոյ միաւորել ուրեք ի Միջագետս զհիւսիսայինն եւ զհարաւայինն: Տակաւին ի զօրսն Մաքսիմինեայ կայսեր Թրակացւոյ կայր գունդ աղեղնաւորաց ի Հայոց ի գերմանական պատերազմին (236)[3]: (Եթէ հաւատասցեմք իմն Զոնարայ՝ Փիլիպպոս յետ Գորդիանու վախճանին եԹող Շապհոյ ի դաշինսն՝ ընդ Միջագետաց եւ զՀայաստան աշխարհ, այլ յետ սակաւ ինչ միոյ միւսանգամ ած նոցին Թէկն եւ գրաւեաց:) Այս ուրեմն յամի իբրեւ 249 նուաճէր Շապուհ Ա. զՀայաստան ընդ իւրեւ, եւ Թագաւորն Հայոց Արտաւազդ Գ. տայր նմին ձեռն հակառակ Վաղերիանու կայսեր[4]: Ի նմին հանգամանս գտանեմք զաշխարհն Հայոց եւ յետ երկոտասան ամաց յորժամ դշխոյն Պաղմիւրացւոց պաշարեալ ի քաղաքին իւրում գրէր առ կայսր Աւրելիան՝ Թէ "Սպասեմ օգնական զօրու ի Պարսից, Սարակինոսք ընդ մեզ են, Հայք ընդ մեզ են„, Թէպէտ եւ կայսր զնոսա արգել եւ զսոսա կաշառեալ կամ պատրեալ ի բաց կալաւ (273)[5]:

Սակայն յամի իբրեւ 295 միւսանգամ տեսանեմք զՀայս ընդ իշխանութեամբ կայսեր: Քանզի Ներսեհ արքայ Պարսից նախան-

1 Պրոկոպ. Գիրք Գ. վասն շինուած. Յուստինիանու, ուր պատմէ նա զայն իբրեւ ի Հայոց պատմութենէ:

2 Այսպէս Դիոն Կաս. Գիրք Ձ. Գլ. Գ. որ ի սմին (229) ամի եկաց բդեշխ ընդ կայսեր, եւ սորա պատմութիւնն իսկ հասանէ մինչեւ ցայն ամ:

3 Հերոդիանոս. Է. Գլ. Բ. եւ Զոսիմ.

4 Տրեբ. Պողլիոն Գ:

5 Անդ:



Digitized by Google

ձաւոր փառաց Շապհոյ Բ. յարձակեցաւ եւ առ զինու զՀայաստան եւ զՄիջագետս: Զառաջինն դիմեաց ի վերայ նորա Գաղերիոս սակաւագոյն զօրօք եւ յանդգնութեամբն մատնեցաւ ի պարտութիւն (296): Աճապարեաց Գաղերիոս առ Դիոկղետիանոս արդարացուցանել զանձն եւ հայցանել զխորհուրդ նորա. հազիւ հազ ընկալաւ նա ի նմանէ գունդ նոր, քանզի զայրացեալ իմն ընդ իրսն էր Դիոկղետիանոս: Այնուհետեւ Գաղերիոս մեծաւ իմաստութեամբ զպատերազմն մղեաց՝ երեւեցուցեալ զանձն ի ճակատու իբրեւ զինուոր եւ իբրեւ զօրավար, եւ արար յաղթութիւն կատարեալ: Նոյն Ներսեհ փախստեայ վիրաւոր ի Հայոց աշխարհէն՝ թողեալ անդէն բանակ բազմագանձ հանդերձ կանանեօքն եւ որդւովք եւ քերբք: Ընդ սոսա ամենեաքն եցոյց Գաղերիոս ազնուականութիւն՝ առաւել օրինակաւ Աղեքսանդրի եւ Սկիպիոնեայ քան իւր ինչ սրտին յօժարութեամբ: Թէպէտ եւ բազումք այնպէս իմն խորհէին՝ թէ արդ վախճան հասեալ իցէ պետութեանն արեւելից, սակայն այլազգ իմն Դիոկղետիանոս խորհէր. զնահանգս զորս առանց բռնադատութեան եւ մեծաց ջանից չէր հնար պահել՝ սաստիկ քան զամենայն թշնամիս զնոսա համարէր: Նմին իրի կացան դաշինք ընդ Պարսից արքայի, հինգ գաւառք յաւելան ի սահմանս Հռոմէական պետութեանն, Եփրատ եւ Տիգրիս կացին սահմանք, Տրդատէս Գ. եկաց կամ հաստատեցաւ միւսանգամ յաթոռ թագաւորութեան Հայոց Մեծաց ընդարձակագոյն սահմանօք, իբրեւ թագաւոր դաշնաւոր Հռոմայեցւոց, եւ հրաժարեցաւ արքայն Արեաց ի վերագոյն իմն իշխանութենէ ի վերայ Հայոց թագաւորին (297)[1]: Կամ ի զօրութենէ հաստատութեան դաշանցս եւ կամ առ սաստիկ բեկման պարսկական ուժոյն տեւեաց խաղաղութիւնն յամս իբրեւ 40:

## Բ

Բռնակալական կայսրութիւնն, ի Դիոկղետիանոսէ ցմիահեծան կայսրութիւնն Կոստանդիանոսի, Ժ. հալածանք եկեղեցւոյ (284—324):

## 38

ԱՆԴՍՏԻՆ ի թագաւորութենէն Գ. Վաղերիանոսն Դիոկղետիանոսի (284 — 305) առ վախճան ժամանակ զինուորական բռնակալութեան զօրականին, այնուհետեւ սկիզբն առնու ժամանակ բաժանման արձակ իշխանութեան եւ տէրութեան ի մէջ կայսերաց բազմաց:

1 Զօսիմ. Եւտրոպ. Ամմ. Մարկել. — ԺԸ. կայ ի հռովմէական հաւաքածուս ընդ Ար. Եւսեբեայ՝ Եկեղ. պատմ. Գիրք Ը. Գլ. յորջորջմանն Գաղերիոսի եւ Armeniacus.

Digitized by Google

Դիոկղետիանոս էր ազատեալ Անուղինոսի ուրումն սինկղիտիկոսի կամ (ըստ այլոց) որդի առն ուրումն ատենադպրի՝ ծնեալ ի Դիոկղէա քաղաքի Դաղմատացւոց ի Դիոկղէա մօրէ, եւ անուն էր նորա Դիոկղէս, բայց ընդ ծիրանեայն առ եւ զանունն Դիոկղետիանոս։ Էին նորա միտք ժիրք եւ կրթեալ փորձիւ, արուեստ կերպարանելոյ կամ կեղծաւորելոյ, խորհրդական խնամտութիւն մեծ եւ հաստատուն տեւականութիւն յընթացութեան միջնորդաց գործոց իւրոց եւ յածելն զնոսա յաջողէին։ Իբրեւ դառնայր Նումերիանոս ի Պարսից արշաւանէն (284) եւ վասն աչացաւին ի դեսպակի փակեալ էր զճանապարհայն, սպան զնա Ապեր եւ աւուրս ինչ չեհան ի վեր զմահ կայսերն, մինչեւ հոտ նեխոյն եղեւ գուշակ իրացն. եղեւ կապեալ զԱպերայ եւ ածաւ նա յատեան առաջի արծուենշանաց կայսերական խարանին եւ արկաւ ի կապանս։ Քանզի Կարինոս աթոռակից Նումերիանեայ արհամարհեալ եւ անգոսնեալ էր յամենեցունց՝ յայն սակս իբրեւ դատարկացեալ իսկ աթոռն համարեցաւ եւ ընտրեաց զօրն զԴիոկղետիանոս՝ կայսր։ Եւ զի Դիոկղետիանոս զօրագլուխ էր առանձին անձնապահաց (քանզի հարկ լեալ էր յայնժամ կայսերաց, բայց ի պալատական անձնապահաց անտի՝ զորոց կասկած էր միշտ, այլ ինչ առանձին անձնապահս ունել) երդուաւ առաջի զօրուն՝ թէ ոչ ինքն ինչ եղեւ պատճառք մահու կայսեր, այլ Ապեր՝ զոր եւ ածեալ էր անդր կապեալ. զայս ասէր եւ անդէն միեալ սուր ընդ պորտ նորա սպանանէր։

Իսկ եւ իսկ խաղայր Դիոկղետիանոս ի Բիւթանիա եւ մտեալ շքով ի Նիկոմիդիա ի մայրաքաղաք նահանգին՝ պատրաստէր ի մարտ պատերազմի ընդ Կարինեայ։ Սա որ ցայնժամ ի շուայտութիւնն եւ ի զեխութիւն հատեալ էր՝ յանկարծ առ ահին Դիոկղետիանու եկն ի միտս եւ եցոյց զօրութիւն բազում. Եւ ի Գաղիայ յաճախագունդ զօրօք, վերակացու Վենետացւոց աշխարհին Սաբինոս Յուլիանոս որ կացեալ էր կայսր՝ ի պարտութիւն մատնեցաւ առաջի նորա եւ անկաւ ի ճակատու առ Վերոնաւ. այնուհետեւ բազում ճակատք ի Իլիւրիկէ ընդէմ Կարինեայ ընդ Դիոկղետիանու եւ ելք իրացն ընդ տարակուսանօք էին՝ մինչեւ պատերազմն առ Մարգոսիւ ի Միւսիա եղեւ Կարինոսի՝ որ եւ յաղթեցաւ զհետ փախստէիցն, բայց յանկարծ թողլին զնա իւրքն եւ սպան զնա հազարապետ մի նորա, զորոյ զկինն առեւանգեալ էր։ Փառաւորեաց Դիոկղետիանոս զիւր յաջողութիւնն՝ ոչ զոք յայնցանէ որ առին զէն ընդդէմ նորա, պատուհասելով (285)։

2. Վասն քաջ պահպանութեան սահմանաց տէրութեանն առ Դիոկղետիանոս իւր բարձակից (Օգոստոս) զընկեր զօրավարութեան իւրոյ զՎաղերիոս Մաքսիմիանոս (286) որ էր բիրտ ոք

զօրական. սա կոչեաց զանձն Հերակղէոս (Հերակղեան), իսկ Դիոկղետիանոս առ իւր անուն Յովիոս (Արամազդեան)։ Դիոկղետիանոս պահեաց իւր բաժին զԱրեւելս, իսկ Մաքսիմիանոս առ զԱրեւմուտս. նա զՆիկոմեդիա եւ սա զՄեդիոլան (որպէս եւ զՏրեւիր եւ զԱրեղատ) արար քաղաք գլխաւոր բաժնի տէրութեան իւրոյ։ Կատարեցան յաղթութիւնք բազում, ցածոյց Մաքսիմիանոս զապստամբութիւն Բագաւդացւոց ի Գաղիա, մերժեաց յետս զասպատակ ազգաց ազգաց գերմանացւոց յարձակելոց ի Գաղիա (286 եւ 287), անց ընդ Հռենոս եւ եհար զՖրանկս եւ զերկուս յիշխանաց նոցա հնազանդեաց (288). Նոյնպէս եւ Դիոկղետիանոս յետ պարգեւօք եւ հրեշտակութեամբ դարձուցանելոյ զնա Պարսից յետոյ (289), ետ բազում անգամ ճակատս ընդ այլոց ազգաց գերմանացւոց, ընդ Կուադաց եւ Կարպիացւոց, դարձեալ՝ ընդ Սարմատաց, Սկիւթաց, Գոթաց եւ Սարակինոսաց մեծաւ յաջողութեամբ (290)։ Ի վերայ այսր ամենայնի զարմանալի թուէր մանաւանդ միաբանութիւն երկոցունց կայսերացն, զորմէ ոմն ի գովչաց նոցա ասէր՝ թէ Հռենոս, Դանուբ, Նեղոս, Տիգրիս եւ երկոքին ովկիանոսք հանդերձ սահմանօքն փակելովք ի մէջի նոցա այնպէս առաջնորդէին միաբանութեամբ յերկոցունց կայսերացն՝ որպէս երկու աչք միոյ գլխոյ միաբան միով լուսով վարին։

3. Սակայն եւ այնպէս երկոքին Օգոստականքն չհամարեցան զանձինս բաւական՝ լինելոյ դիմակալ ներքին եւ արտաքին թշնամեացն։ Վասնզի զԲրիտանիա բռնացեալ ունէր Կարաւսիոս ոմն անուն. գործ յանձն եղեալ նմա ի Մաքսիմիանոսէ երթալ հարկանել նաւատորմիղ նաւուք զծովային հէն փրանկ եւ սաքսոն ազգացն յարձակելոց ի Գաղիա, բայց նա թոյլ տուեալ նոցա զառաջինն առնել կապուտ կողոպուտ զծովեզերան Գաղեայ՝ ապա ի վերայ նաւաց հինին անկանէր առնուլ զկապուտն եւ ընդ այնր տալ սակաւ ինչ բնիկ տերանցն. ազդ եղեն իրքն Մաքսիմիանեայ, այլ Կարաւսիոս ապստամբեալ եւ ի Բրիտանիա եւ օգնականութեամբ փրանկ եւ սաքսոն ազգաց զօրս կոչեաց եղեւ դիմակալ (287), մինչեւ յետուստ հարկել Մաքսիմիանու ընդունել զնա կայսր եւ դնել ընդ նմա դաշինս խաղաղութեան (289)։ Յեգիպտոս՝ Աքիղղեւս եկաց կայսր, յԻտալիա՝ Յուղիանոս, Աֆրիկէ կրէր ասպատակ ի հինէ, Գերմանք, Սարմատք եւ Գոթք կային միշտ կազմ ի պատերազմ։ Յայն սակս իւրաքանչիւր յՕգոստականացն առ իւր մէն մի կեսար եւ միանգամայն որդեգիր (292). Դիոկղետիանոս զվայրենաբարոյն Գայիոս Գաղերիոս ատեցող քրիստոնէից, եւ Մաքսիմիանոս զազնուականն եւ զզգօնն Փղաւիոս Կոստանդիոս Քղորոս (Տժգոյն, կոչեցեալ այսպէս ի վերջին յոյն մատենագրաց, որդի Եւտրոպեայ առն երեւելւոյ Դարդանիացւոյ եւ Կղաւդիայ դստեր

Կրիսպեայ եղբօր Կղաւդեայ (Բ.), երկոքին եւս զօրավարք քաջ էին։ Թող Կոստանդիոս զՀեղինէ առնուլ զԹէոդորա զդուստր խորթ՝ Մաքսիմիանեայ, որպէս եթող եւ Գաղերիոս զիւրն՝ զի առցէ զՎաղերիա զդուստր Դիոկղետիանոսի։ Ի մէջ չորեցունց արանցս այսոցիկ եղեւ այնուհետեւ միւս եւս նոր բաժանումն համօրէն տէրութեան. քանզի միում միում ի նոցանէ բաժանեցան նահանգք յառաջնորդութիւն եւ ի պահպանութիւն, առանց բառնալոյ զմիութիւն տէրութեանն։ Դիոկղետիանոս առ զարեւելեան նահանգսն եւ զԵգիպտոս, Գաղերիոս՝ զԹրակիա, զԻլիւրիկէ, զՄակեդոնիա եւ զՅունաց աշխարհ, Մաքսիմիանոս՝ զԻտալիա, զԱփրիկէ եւ զկղզիսն, Կոստանդիոս՝ զԲրիտանիա, զԳաղիա, զԻսպանիա եւ զՄաւրիտանիա (292)։

Թէպէտ եւ ծանր թուի էր այս բաժանումն վասն հպատակացն՝ զի հարկ էր այնուհետեւ չորս արքունիս եւ չորս գունդս զօրաց պահել իւրեանց ծախուք, սակայն անհրաժեշտ թուի կարեւոր էր առ ժամանակ մի ի փրկութիւն տէրութեանն։ Նաեւ արդեամբք իսկ նուաճեցան վաղվաղակի կայսերքն հակառակք որ ուրեք ուրեք յարուցեալ կային։ Մաքսիմիանոս զերծոյց զԱփրիկէ յապստամբէ, յաղթեաց Յուլիանու յԻտալիա որ ելեալ ի վերայ խարուկի մխեաց սուսեր ի սիրտ իւր (292)։ Կոստանդիոս նախ զԲոնոնիա (Պուլոնեը ի Փիքարտի) Թափեալ ի Կարաւսեայ (292), յետ յօրինելոյ նաւատորմիղ նոր՝ չոգաւ ի վերայ Աղեկտոսի՝ որ ի միւսում ամի սպանեալ զԿարաւսիոս յաջորդեաց զնա, եմուտ ընդ Տամեսիս գետ ի ներքս, եւ նուաճեաց միւսանգամ զԲրիտանիա (296) յետ 10ամեայ ինքնօրէն իշխանութեանն։ Ի նմին ամի եւ Աքիլեւս ամիս 8 պաշարեալ ի Դիոկղետիանոսէ յԱղեքսանդրիա եւ ապա ձերբակալ լեալ սպանաւ յետ ամս 5 զԵգիպտոս ունելոյ. բայց անագորոյնութեամբք ինչ եղծ կայսր զփառս յաղթութեանն։ Կոստանդիանոս որդի Կոստանդեայ էր ի միասին յարշաւանի աստ 22ամեայ եւ եցոյց նահատակութիւն բազում։ Բերդիւք որ նորոգ յօրինեցան՝ պահեցան քաջ սահմանքն եւ ընդարձակեցան եւս մինչեւ ցՏիգրիս գետ՝ տալով Գաղերեայ մարտ պատերազմի ընդ Պարսից (297)։ Այլ գործ առաջնորդութեան տէրութեանն էր այնուհետեւ ամենեւին ի ձեռս իշխանացս այսոցիկ։ Աւգոստականքն երկոքին առաւելքոյ քան զՀռոմ խորհէին ընդ իւրեանց պաշտօնէից եւ հանէին հրամանս առանց հաստատութեան ծերակուտին, որ այնուհետեւ էր լեալ իբրեւ յիշատակարան ինչ հնութեան։ Բարձեալ էր ի միջոյ եւ խտիր արքունական [1] եւ հասարակաց [2] գանձուց, զի երկոքին այնուհետեւ ի ձեռս կայսերացն էին։ Նա ուանիկ զարգարէր Դիոկղետիանոս շինուածովք զՆիկոմեդիա՝ ի մտի եղեալ անցուցանել զնա

1 Fiscus. 2 Aerarium.

գեղեցկութեամբ քան զՀռոմ զոր ոչ այնպէս սիրէր. մինչեւ վաստակաբեկ լեալ Նիկոմեդացւոցն ի բազում աշխատութենէն՝ երկին զաղթեցին բազումք այլուր, զորոց զտունս եւ զտարաս խառնէր Դիոկղետիանոս ի շինուածս իւր։

## 39

Արտաքին հանգամանք եկեղեցւոյ յառաջին 18 ամին Դիոկղետիանոսի էին ի մեծի յաջողութեան։ Յամենայն քաղաքս տէրութեանն կային քրիստոնեայք եւ եկեղեցիք, եպիսկոպոսունք էին մեծարոյ առաջի գործակալաց տէրութեանն, նա եւ կինն եւս կայսր ակն ածէր ի քրիստոնէութիւն, անդէն յարքունիսն՝ ի մեծամեծ իսկ պաշտամունս առհասարակ մտանէին եւ ելանէին քրիստոնեայք։ Բայց առկայծ երեւէր եւ փառասիրութիւն, հեռ եւ նախանձ ի մէջ քրիստոնէիցն եւ նոցին հովուաց, որովք արժանի իսկ էին խրատելոյ յԱստուծոյ հարուածովք, որպէս ասէ իսկ Եւսեբիոս. թէպէտ եւ չէր այն ամենեւին պատճառ ահագին հալածանացն որ ի կայսերաց յանկարծ ածաւ ի վերայ։

Դիոկղետիանոս եւ Մաքսիմիանոս զառաջինսն չէին ինչ յօժար ի հալածումն։ Պատմութիւն թերական լեգէոնին չթուի ստոյգ. այս ինքն՝ թէ Մաքսիմիանոս ի խաղալ իւրում ի մարտ պատերազմի ի վերայ Բագաւդացւոց ի Գաղիա՝ հրաման տուեալ իցէ թերական լեգէոնին որ ի քրիստոնէից էր՝ հալածել զքրիստոնեայս առ Հռոդանոս գետով, եւ ի նոցա անսաստել յետ երկիցս մի առ տասն ի նոցանէ կոտորելոյ՝ զամենայն իսկ զգունդն տուեալ իցէ կոտորել։ Մաքսիմիանոս զինուոր քրիստոնեայ ի Թեբեստէ Նումիդացւոց (296) եւ Մարկեղոս հարիւրապետ ի Տինգիս Մաւրիտանացւոց (298) սպանան, քանզի նա չառ յանձն զինուորել՝ թերեւս վասն կռապաշտական ինչ պաշտամանց որ կից ի նոյն էին, եւ սա՝ զի ի խնճոյս ուրեք ի պատիւ Մաքսիմիանեայ չառ յանձն զոհել սախին կամ դիցն, այլ բարկութեամբ ընկէց զգէն եւ զգաւտի իւր ի բաց ասելով թէ Քրիստոսի միայն կամիմ զինուորել։ Մինչ զՄանիքեցիսն հալածէր Դիոկղետիանոս իբրեւ աղանդ ինչ պարսկային արգելեալ մտեալ ի սահմանս Հռոմայեցւոց՝ տուեալ հրովարտակ առ Յուղիանոս փոխանակ բդեշխին Ափրիկեայ (զոր ցայժմ ունիմք), յորում հրամայէ տայր զգլխաւորս նոցա այրել հանդերձ գրովք նոցա եւ զմնացեալսն սպանանել, եւ զայնոսիկ որ յերեւելի պաշտամունս իցեն՝ յերկաթահանս առաքել եւ զինչսն գրաւել յարքունիս։

Սակայն դառնաբարոյն Գաղերիոս ատեցող քրիստոնէութեան, առաւել եւս գրգռեալ ի պաշտօնասէր մօրէն իւրմէ (ի Ռոմուղայ), արար նախ սկիզբն հալածելոյ զքրիստոնեայսն յար-

քաղաքին իւրում եւ ի զօրու։ Այսպէս յամի կրկին 302 յորժամ զոհքն կատարէին յանդիման կայսերն Դիոկղետիանոսի եւ չելա-նէր պատգամ յանասնոցն ընդերաց, քուրմք զքրիստոնեայս ցուցին այնմ պատճառ, յայն սակս զայրացեալ իսկոյն կայսեր՝ հրամայեաց սպառ զի որ յարքունիս նորա իցեն եւ չզոհիցեն՝ լինիցին բրածեծ, եւ որ ի զինուորութեան կարգէ իցեն՝ ի բաց արձակես-ցին։ Այսչափ ինչ եւեթ հրամայէր Դիոկղետիանոս եւ դադարէր։

2. Նոյն Գաղերիոս զձմեռն ամենայն (302—303) անցուցեալ ի Նիկոմեդիա՝ հնարէր հայթայթէր հաւանեցուցանել զկայսր հանել հալածումն առհասարակ։ Դիոկղետիանոս զառաջինն ասէր թէ բաւական է զոր արարն եւ թէ վտանգ մեծ է՝ հեղուլ այնչափ արիւն։ Այլ կրկին կարի շատ առիպեաց զնա Գաղերիոս՝ կոչեաց գումարել երեւելեաց ի զօրավարաց զօրուն՝ որք ի խորհրդեան անդ եղին ի կողմն Գաղերեայ։ Սակայն եւ յայնժամ՝ հարցցուք, ասէր Դիոկղետիանոս, նախ զպատգամ պատասխանւոյն ի Միղետոս. Թերեւս ասելին իսկ կամէր նա ժամ առնուլ առ ի քա՛ջ զխորացն խորհելոյ։ Նոյն պատգամ ի Միղետեայ թէ պարտ է զքրիստո-նեայս բնաջինջ սատակել. եւ յետսուստ ուրեմն միաբանեցաւ Դիոկղետիանոս խորհրդոյն Գաղերեայ, թէպէտ եւ այն չէ յայտ թէ ո՛ր ներքին պատճառք ածին զնա յայս հաւանութիւն։

Սահմանեցաւ վճռով հալածումն եւ եղեւ սկիզբն ածելոյ ի գործ զայն վճիռ ի 23 փետրուար ամսոյ (303) յաւուր տօնի Տեր-մինոսի դիցն Սահմանաց։ Նոյն անձնապահպանեան բազում զօրա-գլխօք եւ հարիւրապետօք հանդերձ յեկեղեցի անդր Նիկոմեդիոյ՝ որ ի բարձու ուրեք եւ ի բազմամբոխ տեղւոջ քաղաքին կայր. խորտա-կեցաւ դուռնն, մտին ամենեքեան հեթանոսք ի սրբութիւնսն, զոր խնդրէին գտանել պատկեր ինչ աստուածութեան, զգիրս սուրբս գտեալ՝ հրկէզ արարին։ Գաղերիոս որ ընդ Դիոկղետիանոսի հայէր ի պալատանէն ի կողմն եկեղեցւոյն, կամէր հրամայել առնել հր-ձիգ զեկեղեցին, բայց չետ թոյլ Դիոկղետիանոս վասն մօտաւոր տանցն եւ վասն վտանգին զամենայն իսկ քաղաքն հրդեհելոյ։ Նմին իրի եհաս զօրն անձնապահ կործանման գործեօք, եւ եկե-ղեցին որ ի բազում ժամանակաց հետէ ի նախանձ եւ ի զայրուցս զհեթանոսսն գրգռէր՝ եղեւ ի սակաւ ժամու հարթայատակ հաւա-սար երկրի։

Ի վաղիւ անդր ել հրովարտակ հալածմանն։ Թէպէտ եւ չէր այն ամենայնիւ ըստ մտաց զազանաբարոյն Գաղերեայ՝ որ կամէր իսկ զի ամենայն իսկ քրիստոնեայ որ զոհել դից յանձն ոչ առնու՝ այ-րեսցի կենդանւոյն, սակայն եւ այնպէս սաստիկ յոյժ էր եւ ըստ մտադրութեան իսկ խորհրդոց քաջ կշռեալ եւ յարմարեալ առ ի ջնջ-ջելոյ զքրիստոնէութիւնն, եթէ էր ինչ այն հնարաւոր։ 1. Հրա-մայէր հրովարտակն զամենայն եկեղեցիս ի համօրէն աւերութեան

բռնել ի հիմանց, 2. արգելուլ զժողով քրիստոնէից ի պաշտօն՝ մահու պատժովք, 3. եպիսկոպոսաց եւ երիցանց հրաման տայր զամենայն գիրս սուրբս տալ ի ձեռս դատաւորաց՝ որոց պատուէր էր այրել զնոսա հրապարակաւ, 4. զամենայն ինչս եկեղեցւոյն կամ վաճառել ում առաւելն տացէ, կամ զրաւել յարքունիս եւ կամ այլազգ իմն ցրուել, 5. աղնուականք եւ պատուականք ի քրիստոնէից զրկէին ի պատուոց իւրաքանչիւր, եւ թէպէտ եւ հռոմէական քաղաքացի եւս էին՝ սակայն տայր հրաման այնուհետեւ ածել զնոսա ի տանջանս, 6. քրիստոնեայք որ ի խոնարհագոյն կարգէ էին՝ կորուսանէին զազատութիւնն, իսկ գերիքն զյոյս յազատութիւնն ելանելոյ, 7. պատուէր էր դատաւորաց զամենայն ամբաստանութիւն զքրիստոնէից ընդունել եւ դատել, 8. նմին հակառակ չէր իշխանութիւն քրիստոնէից վասն զրկանաց իւրեք դատախազութիւն մատուցանել, այլ լինել ընդ խստութեամբ օրինացն՝ առանց բարերարութեան օրինացն եւ պաշտպանութեանն հաղորդելոյ։ Պատմագիրն քաջ փորձ յաշխարհական իրս (Գիպպըն անգղիացի) "Այս նոր իմն օրինակ տանջանաց, ասէ, այսպէս խուճապիչ՝ այսպէս գաղտագնաց, այսպէս ծածուկ եւ այսպէս թշնամանիչ թերեւս քան զամենայն հնարս հզօրագոյն էր առ ի զանշարժութիւն քրիստոնէիցն խախտելոյ։ Այլ թէպէտ եւ շահուց ցանկութիւն եւ այլ եւս կարիք մարթէին լինել գործակից ի կատարումն կամաց կայսերացն, սակայն հարկ էր զի երբեմն վասն պահպանութեան կարգաւորութեան առաջնորդութեանն՝ քաղաքականութիւնն ի ներքս անկեալ պաշտպանէր ըլկելոցն, քանզի չէր հնար զխաւարաց հռոմէական պետութեանն բառնալ զամենայն երկեւղ պատժոց ի միջոյ եւ տալ ազատութիւն ամենայն գործոց խաբէութեան եւ բռնութեան՝ առանց արկանելոյ ընդ մեծաւ վտանգաւ եւ զիւրեանց իսկ զսեպհական իշխանութիւնն եւ զայլս յիւրեանց հնազանդելոցն"։ Մի ոմն ի քրիստոնէիցն յերեւելեաց նախանձ առեալ արդարութեամբ այլ ոչ իմաստութեամբ՝ ի բաց հաներ զհրովարտակն ամօթալից պատառէր կտոր կտոր՝ ասելով. "Ահա հռչակ յաղթութեանցն ի վերայ Գոթաց եւ Սարմատաց"[1]։ Ընդէն ըմբռնեցաւ այրեցաւ ի մամուլս, խորովեցաւ (այս ինքն՝ տանջեցաւ հրով) եւ ապա այրեցաւ։

Յետ աւուրց ինչ մինչ դեռ տակաւին ի միասին էին իշխանքն երկոքին՝ ել հուր ի կայսերական պալատանէն Նիկոմեդիայ։ Ըստ Լակտանտեայ՝ ի Գաղերեայ այն եղեւ՝ վասն յանցաւորս զքրիստոնեայսն ցուցանելոյ, բայց Կոստանդիանոս որ ի պալատան անդ էր յայնժամ՝ վկայէ (ի ճառին իւրում առ ժողով սրբոցն այս ինքն՝ հաւատացելոցն) թէ ի փայլատականց լուցաւ։ Մա-

1 Քանզի ակներեւ հրովարտակին ընդդէմ նշանակէր։

կայն այն իմն ճշմարիտ է՝ եթէ արկ Գաղերիոս զայն պատահար ի կիր հաւանեցուցանել զԴիոկղետիանոս թէ խորհեցան քրիստոնեայք դաւ՝ զկայսերան զերկոսին այրել կենդանւոյն։ Այնուհետեւ սկիզբն արար Դիոկղետիանոս մոլել կատղել ի վերայ հաւատացելոցն որ յարքունիսն նորա էին՝ իւր իսկ առաջի տալով տանջել զնոսա անագորոյնս վասն կալոյ ի վերայ իւրեանց հաստատութեան։ Այլ իբրեւ ել մեւս եւս հրդեհ յետ չորեքտասան աւուրց՝ ել Գաղերիոս մեծաւ աղմկաւ ի Նիկոմիդիայ ասելով թէ չկամիմ կալ հայել զի այրեսցեն զիս կենդանւոյն քրիստոնեայքն։ Բորբոքեցաւ անհնարին եւ սաստկութիւն Դիոկղետիանու՝ հալածել զամենայն իսկ զքրիստոնեայսն ի Նիկոմիդիա։ Այն նորա Պրիսկա եւ դուստր Վաղերիա՝ որ էր լեալ առն Գաղերիոսի, եւ էին քրիստոնեայք կամ երախայք եւ կամ միայն միտադրյնք ի քրիստոնէութիւն՝ առիպեալ յանձն առնուլ զոհել կռոց։ Դորոթէոս եւ Գորգոնիոս սենեկապանք հանդերձ այլովք բազմօք չարչարեալք սպանան։ Պետրոս սենեկապան կախեցաւ եւ եղեւ դանակօք մինչեւ պատառ պատառ անկանել մարմնոյ յոսկերացն, ապա քացախ խառնեալ աղով ի վերայ արկին եւ յետոյ խորովեցաւ մեղմ հրով։ Անթիմոս եպիսկոպոս Նիկոմիդիայ գլխատեցաւ, եւ յետ նորա քրիստոնեայքն նիկոմիդացիք կոտորեցան դունդ դունդ, այրեցան կամ ընկղմեցան ի ծով ի նաւակս ծակոտս։ Ի Նիկոմիդիայ տարածեցաւ հալածումն ընդ ամենայն տէրութիւնն, այլ ոչ այնպէս սաստկութեամբ։ Քանզի հան Դիոկղետիանոս մեւս եւս գիր՝ զառաջնորդս եկեղեցեացն ի բանտ արկանել, եւ մեւս եւս՝ արձակել զնոսա եթէ զոհեն կռոց, իսկ զդիմադարձսն տանջել, եւ երրորդ՝ զմարմինս քերել մինչեւ դայցեն ի հնազանդութիւն։

Գրէր կայսր եւ առ Մաքսիմիանոս Հերակղէոս եւ առ Կոստանդիոս Քղորոս նոյնպէս հալածել զքրիստոնեայսն։ Մաքսիմիանոս չոգաւ զհետ օրինակին Դիոկղետիանու, եւ ի վկայելոցն առ նովաւ ի Հռոմ՝ նշանաւոր է կոյսն երեքտասանամեայ Ագնէս՝ յոր երիտասարդ մի միայն յանդգնեցաւ հայել յայրատս եւ անկաւ կիսամեռ՝ մինչեւ աղօթք կուսին յարուցին զնա։ Իսկ Կոստանդիոս ետ փակել միայն զեկեղեցիսն եւ քակել եւս զոմանս ի նոցանէ զի մի առաւել եւս գրգռեսցէ ինչ զկայսր, բայց անձանց քրիստոնէիցն չարար ինչ վնաս։ Նա աւանիկ քրիստոնէիցն որ ի պալատանն էին՝ յընտիր արար կամ զոհել կամ ի պատուոյն անկանել. ոմանք յօժարեցին զոհել, բայց զնոսա իսկ արձակեաց Կոստանդիոս ի պատուոյն, իսկ զքրիստոնեայս հաւատարիմս Աստուծոյն իւրեանց՝ պահեաց յիշխանութեան իւրեանց, այսպէս ի մտի եդեալ թէ նոյնպէս հաւատարիմ են սոքա եւ իշխանին իւրեանց։ Սակայն ի Սպանիա՝ ուր առաւել հզօրագոյն էր հրաման Մաքսիմիանու քան Կոստանդեայ, դատանեմք եւ զո-

Digitized by Google

մանս վկայեալս, որպէս ի Կեսարաւգոստա (ի Սարակոսա) զեւրեւեղն սարկաւագն սուրբ զՎինկենտիոս՝ որ յամի 303 ածաւ ի Վաղենկիա նօթի, ձեռօք եւ պարանոցաւ կապեալք ի շղթայս առաջի Դակիանոսի կուսակալի հանդերձ եպիսկոպոսաւն իւրով Վաղերիոսիւ։ Աքսորեցաւ Վաղերիոս. իսկ զՎինկենտիոս յետ խորովելոյ զմարմինս նորա եւ աղիւ զվէրսն շփելոյ՝ արկին ի բանտ խաւարին, եդեալ զոտսն ի կոճեղ եւ զմարմինն վիրաւոր տարածեալ ի վերայ խեցեաց։ Սակայն արկ Աստուած ի վերայ նորա քուն քաղցրանիրհ, եւ իբրեւ զարթեաւ՝ ետես փոխանակ խեցեացն՝ ծաղիկս եւ զհրեշտակս զի երգէին, եւ նա սկսաւ երգել ընդ նոսա. իսկ պահապանքն որ զայն լուան՝ դարձան ի քրիստոնէութիւն։ Բայց կուսակալն ետ տանել զնա յանկողին կակուղ՝ զի մի ի վիրացն մեռանիցի, քանզի կամէր միւսանգամ մատուցանել ի տանջանս, այլ ոչ այն կամք էին Աստուծոյ. մեռաւ անդէն Վինկենտիոս՝ զորոյ զվէրսն համբուրէին հաւատացեալքն վաղենտիացիք նպաստաւորութեամբ պահապանացն։ Թէպէտ եւ ետ արկանել Դակիանոս զմարմին նորա ի տեղի ինչ ճախճախուտ՝ լինել կեր գազանաց եւ թռչնոց, բայց զի ագռաւ մի յագռաւուց զգուշացեալ պահէր զնա՝ ապա ետ արկանել ի պարկ եւ կապեալ զնմանէ երկանաքար ընկենուլ ի ծով հեռի ի շինէն։ Սակայն եւ այնպէս չոգաւ խրեցաւ այն յեզր ինչ՝ ուստի ի տեսլենէ ուսեալ՝ չոգան առին գաղտ Վաղենտիացիք՝ զետեղել ընդ սեղանով։ (Այսպէս՝ Ս. Աւգոստինոս)։ — Իսկ յայլ կողմանս տէրութեանն ճշդիւ հրովարտակքն կատարէին։

3. Այլ չեհաս տակաւին այնմ զոր կամէր Դիոկղետիանոս, յայն սակս ել միւս եւս չորրորդ հրովարտակ (304)։ Զայս արար Դիոկղետիանոս՝ որպէս հաւանութեան է, ի դառնալն իւրում ի Հռոմէ՝ ուր կատարեաց զքսանամեակն իւր (20 Նոյ. 303), յորժամ եհաս ի Դեղփիս եւ ել անդ պատգամ յԱպողոնեայ թէ "Չկարեմ այսուհետեւ ճշմարիտ ինչ պատմել յառաջագոյն, քանզի արքն արդարք արգելուն զիս"։ — "Զբարձրեալն Աստուած կոչեմ ինձ վկայ, ասէ Կոստանդիանոս (առ Եւսեբեայ ի վարս Կոստ.), զի ես յայնժամ պատանեակս լուայ բազում անգամ ի նմանէ՝ զի հարցանէր մեծաւ յօժարութեամբ զիւր պաշտպանիչսն թէ ո՞յք այն արդարքն իցեն, եւ մի ոմն ի քրմաց անտի ետ պատասխանի թէ քրիստոնեայքն են։ Զայս, ասէ, լուաւ եւ իսկ եւ իսկ եհան զայն ահագին հրովարտակ որ ի սայր արիւնաթաթախ սուսերի գրեալ էր"։ Հրամայէր այս վերջին հրովարտակ նորա զպատուիրեալսն վասն կղերականաց անցուցանել եւ ընդ ժողովրդականսն, մի միայն ամբաստանութեան, այլ որոնել խնդրել զքրիստոնեայսն ամենայն փութով, եւ եթէ ոք ոչ զոհիցեն՝ դաժանագոյն տանջանօք սատակել։

Digitized by Google

Նոյնուհետեւ իբրեւ հուր այրիչ սփռէր տարածանէր հալածումն աշխարհին յԱսիա, յԱփրիկէ եւ յԵւրոպէ: «Երկրին գազանքն վայրենիք մոլէին յարեւելից յարեւմուտս բաց ի Գաղղիոյ» (որպէս ասէ Լակտանտիոս): Ի միում իսկ ամսեան պատմի լեալ թիւ վկայիցն աւելի քան զ15,000 (ըստ հռոմէական վկայաբանութեանն): Զմիմեամբք եկեալ առնէին կուսակալք զհրամանն կատարել: Ընտիրհիւպատոսն Փռիւգիոյ ետ այրել եկեղեցի մի յեկեղեցեաց որ լի էր քրիստոնէիւք (ըստ Եւսեբեայ քաղաք ինչ համօրէն բնակեալ ի քրիստոնէից): Յեգիպտոս աւելի քան զ40,000 քրիստոնեայք պատմին կոտորեալ եւ 700,000 մերժեալ կամ հալածեալ յանապատս:

Բախտաւոր իսկ այնք ի քրիստոնէից էին որ գլխատէին փութանակի կամ կոտորէին. քանզի զբազումս թողուին հիւծել ցմահ ի բանտս եւ կրել ստէպ ստէպ քերանս եւ պրկանս: Երկանէին ի կիր շրջանակս երկաթիս զպարանոցաւ, սայրասուր խեցիս, երկաթս վառեալս տապաշէկ, ջուր, ձէթ եւ ձիւթ եռացեալ եւ կապար հալեալ ի վերայ հեղուին եւ կամ ընկղմէին ի նոսա. ոմանք ծայրատեցան, կէսք մասն մասն կտրելով անդամոցն պատառեան, եւ կամ հերձան անդամք նոցա՝ երբեմն պրկելով պարանօք եւ ապա աստի անտի ուժգին ձգելով, եւ երբեմն կապելով զնոսա զոտից յաստս ծառոց կորացուցեալս առ միմեանս զորս ապա ի վեր թողլով հերձանէին յերկուս զմարմինս նոցա: Եւսեբիոս որ բազում անգամ աչօք իսկ ետես, Այնչափ յաճախագոյն էր թիւ սպանելոցն, ասէ, ի Թեբայիս, ուր էր նա յայնժամ, մինչեւ վաստակաբեկ լինել դահճացն եւ բթանալ զործեաց սպանմանացն: Ակներեւ մատենագիրն ետես՝ զի ի Տիւրոս արկան քրիստոնեայք առաջի գազանաց, որպէս բազում անգամ դիպէր, այլ չմերձեցան ի նոսա գազանքն՝ թէպէտ եւ շատ գրգռէին զնոսա հեթանոսքն, մինչեւ հարկ լինել գլխատել զնոսա: Լնուին զաջոյ ձեռս քրիստոնէիցն խնկով եւ ածէին ի վերայ բագնաքեալ կայծականց, այլ բազմաց ձեռք այրեալ սպառեցան, քանզի եւ բանալ անգամ զձեռն չառնուին յանձն՝ զի մի կարծիս տացեն թէ արկին խունկ ի կրակն: Այլ խստութիւն հալածանացն ոչ միշտ եւ ոչ ամենայն ուրեք նոյնպէս էր՝ վասն այլեւայլ մտաց դատաւորացն. յայն սակս շնորհեցաւ ոմանց ի քրիստոնէիցն՝ զի ակն մի նոցա եւեթ խլեսցի կամ այրեսցի, կամ ծունգ մի ի ծնգաց նոցա հրով կաղացի եւ երթիցեն վաստակել ի բովս:

Վասն այսր ամենայնի՝ չէին ինչ զարմանք թէ յայսպիսի չարաչար տանջանաց եւ յայնչափ անչափ մարտիրոսաց եւ խոստովանողաց միջոյ՝ բազումք եւս, նա աւանիկ եւ ոմանք յեպիսկոպոսացիսկ գտեալ իցեն թուլագոյնք: Ստիպէր տագնապէր Դիոկղետիանոս մանաւանդ ջնջել ի միջոյ զգիրս սուրբս, զորս իբրեւ գտա-

Digitized by Google

նէին՝ այրէին հրապարակաւ։ Ոմանք ի դատաւորաց այսպէս իմն եղին ի մտի թէ ի տալ քրիստոնէից զգիրս իւրեանց ի ձեռս նոցա՝ վճարի ամենայն։ Յայն սակս թէպէտ եւ ոմանք իսկ եւ իսկ ետուն զգիրս սուրբս (որ մատնիչքն կամ տուիչք կամ մատնտուք[1] կոչեցան), սակայն այլք խորագիտութեամբ կամ երկդիմի բանիւք կամեցան ապրեցուցանել։ Նոտոսին այլ եւ այլ կարծիք եւ գժտութիւնք ծնան՝ մանաւանդ յԱփրիկէ ի մէջ քրիստոնէից։

Իսկ բռնաւորքն երեքին յետ այնչափ կոտորածի անմեղացն՝ համարեցան թէ հասին որում ցանկայինն, եւ պարծանօք իմն դրէին ի վերնագիրս հրովարտակացն թէ "անուն քրիստոնէից եւ քրիստոնէութիւն ջնջեցաւ եւ պաշտօն աստուածոցն նորոգեցաւ։"

## 40

Դիոկղետիանոս յամի 305 ի 60երորդ ամի հասակի իւրոյ յետ 20ամեայ թագաւորութեանն՝ թող զիշխանութիւն իւր ապաքէն կամաւ, եւ ստիպեաց իսկ զՄաքսիմիանոս զնոյն առնել, որ եւ նա յանձն ակամայ։ Յառաջնում աւուր Մայիսի ամսոյ ինքն Դիոկղետիանոս հանդերձ Գաղերիաւ անց փառաւորութեամբ ի բարձրաւանդակ մի մօտ ի Նիկոմեդիա, ուր արծուին Արամազդայ կանգնեալ ի սեան վերայ նշանակէր զտեղին ուր երբեմն Կոստանդիանոս եւ Գաղերիոս առին զծիրանին։ Անդ խօսեցաւ Դիոկղետիան արտասուօք առաջի զօրացն՝ յայտ արարեալ զիւր խոնջութիւնն եւ զկարեւոր պէտոյս հանգստեանն եւ զհարկն տալոյ զբեռն տէրութեանն ի թիկունս արանց հզօրագունից։ Ակն ունէր զօրն՝ թէ Կոստանդիանոս եւ Մաքսենտիոս ամբարձցին ի պատիւ կեսարութեան, այլ ստիպեալ էր Դիոկղետիանոս ի Գաղերեայ՝ ոչ զնոսա՝ այլ զՍեւերոս (զկաքաւիչն եւ զարբեցող) եւ զՄաքսիմինոս (զքեռորդին Գաղերեայ զվայրենաբարոյն եւ զեկրոն) ընտրել։ Այսպէս արկեալ անդէն Դիոկղետիանու զիւր ծիրանին զուսովք Մաքսիմինեայ՝ ել ի կառս իւր իբրեւ դոյզն ոք եւ անցեալ ընդ մէջ Նիկոմեդիայ գնայր յաշխարհ իւր հայրենի։ Այսպէս զվերջին 9 ամս կենացն հան Դիոկղետիանոս ի զլուխ մշակութեամբ մօտ ի Սալոնա ի Դալմատացւոց աշխարհին (մերձ յայժմու Սփալաթրոյ), շինեալ անդէն պալատ մի՝ որոյ աւերակք ցայժմ երեւին։ Ի նմին աւուր եւ Մաքսիմիանոս նոյնպէս հրաժարեցաւ յաթոռոյն՝ տուեալ զծիրանին իւր Սեւերայ։

Կոստանդիոս եւ Գաղերիոս կարգեցան Օգոստոսք. նա ոչ զամենայն Արեւմուտս, այլ զԻտալիա եւ զԱփրիկէ ետ կամաւ ցԳաղերիոս, եւ Գաղերիոս արար յանձն Փղաւիանեայ Սեւերոսի, որպէս եւ զԱսորիս, զՊաղեստին եւ զԵգիպտոս Մաքսիմինոսի

1 Traditores.

Գոթեայ կամ Դակայ (Դակիացւոյ)՝ իւր պահեալ զփոքրն Ասիա, զԻլլիւրիկէ եւ զԹրակիա. զՄակեդոնիա եւ զՅունաց աշխարհն չէ յայտ (305):

Գաղերիոս ազգի ազգի անագորոյնութեամբք եւ անառակութեամբք լինէր խարազան համօրէն արեւելից. ամենայն ինչք հնազանդելոց իւրոց՝ ինչք տէրութեանն համարեալ էին եւ ամենայն մարդիկ՝ գերիք նորա, արք երեւելիք ի պատիժս թշնամանաց մատնէին՝ ի կապանս, ի լլկանս, ի խաչ, ի հուր եւ ի կերակուր գազանաց. արջք էին նորա անձոռնիք որ զանուանս նորա կրէին եւ զորս սնուեալ բերել ի ժամ սեղանոյն ի զբօսանս՝ տայր արկանել առաջի նոցա մարդիկ զի պատառեսցեն: Թշնամի էր գիտութեանց՝ զորս արուեստս վաճառականաց համարէր, կէսք ի խօսնակաց աքսորեցան եւ կէսք սպանան. եւ փոխանակ նոցա զօրականք բիրտք ի նահանգան առաքէին՝ առնել դատ առանց խորհրդականաց ըստ կամի:

Նորին հակառակ՝ Կոստանդիոս վասն հեզութեանն (զոր ակարութիւն իմն համարէր Գաղերիոս) եւ վասն սիրոյ հասարակաց օգտի՝ սիրելի էր ամենեցուն: Նորին որդի (ի Հեղինեայ) Կոստանդիանոս ծնեալ ի Նայիսոս Միւսիացւոց՝ էր լեալ երեւելի ի սպասուն Դիոկղետիանոսի, յետոյ ի Գաղերիոսէ առ նախանձու պահեալ առ իւր զգուշութեամբ, մինչեւ յաջողեցաւ նմա փախչել առ հայր իւր մազապուր հանդոյց ի հանդուցէ՝ կոտորելով զձիս իջեւանացն ընդ որ անցանէր: Ուրախութեամբ ընկալաւ զնա Կոստանդիոս ի Բրիտանիա ի ժամանակի զի մտանէր նա ի նաւ երթալ ի մարտ պատերազմի ընդ Կաղեդոնացւոց եւ Պիկտաց: Ընդ յետ յաղթութեանն մեռաւ Կոստանդիոս յԷբորական (ի գլխաւոր քաղաքին Անգղիոյ) շուրջ պատեալ յորդւոց իւրոց (ի Դալմատիոսէ, ի Յուլիան Կոստանդիոսէ եւ յԱննիբաղիանոսէ) եւ ի դստերաց (ի Կոստանդիայ, յԱնաստասիայ եւ յԵւտրոպիայ ծնելոց ի Թէոդորայ) զորս արար նա յանձն անդրանկին իւրում Կոստանդիանոսի (25 Յուլ., 306):

Իսկ եւ իսկ ընտրեցաւ Կոստանդիանոս ի զօրուէն Օգոստոս. առաքեաց զրոյց վասն իրացն առ Գաղերիոս, որ յետ զայրանալոյ սաստիկ՝ զառաջինն միայն իբրեւ կեսար ընկալաւ զնա եւ զՍեւերոս անուանեաց Օգոստոս: Նուաճ եղեւ առ ժամն Կոստանդիանոս եւ անձապարեաց ի Գաղիա երթալ մերժել զասպատակ ազգացն գերմանացւոց, կատարեաց յաղթութիւնս մեծամեծս, կալաւ զերկուս յիշխանաց նոցա եւ զերի, եւ որպէս զնոսա՝ նոյնպէս եւ ի սոցանէ արկ առաջի գազանաց յամփիթէատրոնին (որպէս երբեմն եւ Տիտոս ընդ Հրեայսն արար). այսպէս եւ այս այր հռոմայեցի ըստ հռոմայեցի մտաց գործեաց (307):

2. Իսկ Մաքսենտիոս որդի Աւգոստականի եւ փեսայ Աւգոստականի սահմանեալ ի Դիոկղետիանեայ ի կեսարութիւն՝ զայրացեալ իմն էր ընդ աներ իւր ընդ Գաղերիոս՝ զի ընկեցն զնա յետոյ: Իբրեւ ետես նա թէ ատեալ է Գաղերիոս ի Հռոմ վասն սաստկութեան հարկաց (ուր ազատ ի հարկաց լեալ էին քաղաքացիքն Հռոմայ իբրեւ ի 500 ամաց հետէ), եւ առաւել եւս քան զնա ատեալ էր զեղխն Սեւերոս, արկ զժողովուրդն յինքն եւ արար եւս կաշառաբեկ զպահապանսն անձնապահսն ի ժամանակի՝ զի չէր Սեւերոս ի Հռոմ եւ անուանեցաւ կայսր (306): Բայց զանգիտեալ Մաքսենտեայ յառաջակայ իրացն՝ աղաչեաց կոչեաց զհայր իւր ի Կամպանիայ (ուր միայնացեալն էր) յօգնականութիւն: Առ Մաքսիմիանոս միւսանգամ յօժարութեամբ զծիրանին՝ զոր առկամայն թողեալ էր. կամէին երկոքեան հաւանեցուցանել ի գոյն եւ զԴիոկղետիանոս, բայց նա չառ յանձն: Եւ այնպէս էին յայնժամ տեարք 6. Գաղերիոս, Սեւերոս, Կոստանդիանոս (Աւգոստոսք), Մաքսիմինոս (Կեսար), եւ երկոքին հակառակաթոռքն Սեւերոսի՝ Մաքսենտիոս եւ Մաքսիմիանոս (Աւգոստոսք):

Զուր զայր այնուհետեւ Սեւերոս ի վերայ Հռոմայ, փակեցան դրունքն առաջի նորա, ամրացեալ էր քաղաքն, եւ զօրք նորա՝ որ երբեմն ընդ հրամանաւ Մաքսիմիանու լեալ էին, անցին ի կողմն սորա եւ ինքն Սեւերոս ստիպէր անկանել ի Ռաւեննա: Անդ պաշարեաց զնա Մաքսիմիան, մինչեւ յանձն եղեւ նմա Սեւերոս՝ առեալ ի նմանէ խոստումն պահելոյ զնա թագաւորաբար. սակայն Մաքսենտիոս՝ միայն զօրինակ մահուն եթող նմա ազատ յընտրութիւն (Յունու. կամ Փետր. 307): Ամրացոյց Մաքսիմիանոս զանձն բարեկամեալ ընդ Կոստանդիանոսի մատուցանելով նմա պատիւ աւգոստականութեան եւ զիւր դուստր զՖաւստա՝ կնութեան (31 Մարտ. 307): Վասնզի Գաղերիոս խաղաց զօրօք ի վերայ Հռոմայ՝ զոր յայնժամ զառաջինն ետես, բայց չկարացեալ առնել ինչ եւ երկուցեալ գուցէ թօթափիցին ի նմանէ զօրք իւր, դարձաւ յետս ամօթալից՝ թողեալ զքաղաքն Իտալիոյ զճանապարհայն յաւար զօրացն (307:)

Սակայն մահուամբն Սեւերեայ չնուաղեաց թիւ մեցեցն իշխանաց. քանզի եդ փոխանակ նորա Գաղերիոս Աւգոստական զՎալերիոս Լիկինիոս կամ Լիկիանէս զզօրավարն պատերազմակից պարսկական պատերազմին ընդ Ներսեհի, որ եւ էր նման նմա բարուքն, եւ ետ նմա զԻլիւրիկէ (307): Ընդ այն ցասուցեալ Մաքսիմինոսի յԱսիա՝ ետ զօրացն կոչել զինքն Աւգոստոս (308):

Զայնու ժամանակաւ ջանայր Մաքսիմիանոս ի Հռոմ՝ զիւր որդի զՄաքսենտիոս ի բաց հանել, եւ չյաջողեալ գնաց փախստեայ առ Կոստանդիանոս փեսայ իւր: Ապա կեղծաւորեցաւ՝ իբրեւ այն թէ եթող ամենեւին զծիրանին սակայն արդեամբք ջանայր

Digitized by Google

ըմբռնել զաթոռն. Նախ ի ժամանակի զի երթեալ էր Կոստանդիանոս փոքու մասամբ զօրացն ի վերայ Փրանկաց, առ միւսանգամ զԹագն յարեցուցեալ յինքն զմնացեալ մասն զօրացն. Իբրեւ զփայլակն այնպէս երագ դարձաւ Կոստանդիանոս ընդ Հռենոս այսր, պաշարեաց կալաւ զնա ի Մասիլիա եւ յետ յանդիմանելոյ զնա՝ շնորհեաց զկեանսն, նա եւ ի պալատան եւս առ իւր պահեաց (308)։ Երկրորդ անգամ փորձեաց նա իւրով ձեռամբ սպանանել զԿոստանդիանոս, բայց ընդ խաբս սպան զներքինին նորա յանկողնի եւ անդէն ի գործն ըմբռնեցաւ. յընտիր առարաւ նմա օրինակ մահուն եւ արար զանձն խեղդամահ (310)։

Իսկ Գաղերիոս՝ որ վաղ ընկալեալ զԿոստանդիանոս իբրեւ Օգոստոս՝ պատրաստէր միշտ ընդդէմ Մաքսենտեայ, ունելով ի մտի յետ երկուց ամաց կատարել մեծաւ փառաւորութեամբ զքսանամեակն իւր, անդէն ի նմին ամի յորում Մաքսիմիանոսն սպանաւ՝ անկաւ եւ ինքն ի գարշելի հիւանդութիւն, երեւէր եռանդն որդանց ի մարմին նորա եւ լի էր ցաւովք։ Սակաւիկ ինչ յառաջ քան զմահն կոչեաց յետս զհրովարտակն հալածանաց եւ ընդ այնր եւ ի Սարդիկէ (մօտ յայժմու Սոֆիա) հրովարտակ արդահատութեան յանուն իւր եւ Կոստանդիանոսի եւ Լիկինիոսի, եւ կախեցաւ այն հրապարակաւ ի Նիկոմեդիա (Ապր. 311), ապա մեռաւ յետ իբրեւ տարեւոր չարչարանացն (Մայ. 311)։

Մաքսիմինոս եւ Լիկինիոս բաժանեցան զգաւառսն. նա առ զԱսիա եւ զԵգիպտոս, իսկ սա զԼիւրիկէ։ Կոստանդիանոս կալաւ նոյնպէս զգաղիական գաւառսն, իսկ Մաքսենտիոս զԻտալիա եւ զԱփրիկէ։

3. Մաքսենտիոս՝ յերից իշխանաց սատի էր համարեալ իբրեւ յափշտակող Թագաւորութեանն, եւ էր իսկ ինքն բռնաւոր անագորոյն, յափշտակող եւ անառակ. որ ոչ միայն քրիստոնէից այլ եւ ամենայն հնազանդելոց իւրոց լինէր հալածիչ։ Կամէր յայնմ հետէ մեծաւ պատրաստութեամբ պատերազմի զամենայն արեւմուտս յինքն վտարել։ Խաղաց Կոստանդիանոս տկարագոյն զօրօք ի վերայ նորա եւ անց ընդ Ալպս։ Իսկ Մաքսենտիոս անդէն ի քաղաքին յամէր ըստ խրատու ըղձից իւրոց՝ որ ստէպ զհանդերձեալն կամէին յառաջագոյն պատմել յընդերաց կանանցն յղեաց եւ մանկանց սանդրիեցաց եւ առիւծուց հերձելոց, եւ ինքն կայսր անդուստ խաղուք ասպարիզին ջանայր զքօսեցուցանել եւ յանկուցանել զժողովուրդն։

Բայց եւ Կոստանդիանոսի ոչ միայն տկար՝ այլ եւ վհատեալ եւս զօրքն էին։ Նմին իրի դիմէր նա առ Աստուածն քրիստոնէից զոր մեծարէր հայր իւր, զի ցուցցէ նմա զաջ իւր։ Յայնժամ զմիջաւուրբ ետես զնշան խաչին լուսեղէն ի վերոյ քան զարեգակն, եւ գիր թէ՝ "Այսու յաղթեա„ կամ "յաղթեսցես„։ Զարմանք

կալան զԹագաւորն եւ զզօրսն։ Ընդ էն ի գիշերին յայնմիկ երեւեցաւ նմա Քրիստոս նովին նշանաւ՝ հրաման տուեալ գործել զնմանութիւն նորա եւ տանել առաջի զօրուն։ Այսպէս եւ յօրինել Կոստանդիանոս զխաչանշան դրօշն[1] որ եղեւ այնուհետեւ գլխաւոր դրօշ տէրութեանն Հռոմայեցւոց, եւ էր նիզակ ոսկեպատ, կցեալ առ նովաւ առ ի շեղ գաւազան՝ զորմէ կայր կախեալ ծիրանի մեծագին ոսկեհուռ եւ ականակապ եւ ի վերայ պսակ, եւ ի ծայր դրօշուն՝ անուանն Քրիստոսի այսպէս ☧ ։ Ընդ ստուգութիւն տեսլեանն բազում անգամ երդուեալ ինձ, ասէ Եւսեբիոս. վկայեն սմին եւ հեթանոսք անգամ որ զնորանշան ինչ իրաց յառաջ քան զյաղթութիւնն պատմեն, թէպէտ եւ ոչ միաբան ինչ միմեանց[2]։

Այսպէս յարձակեցաւ Կոստանդիանոս ի վերայ հզօրագոյն գնդին Մաքսենտիոսի, յետ հարկանելոյ զհեծելազօրս նորա առ Աւգուստեաւ Տաւրինացւոց (Թուրին) եւ զանձնապահապետն նորա զՌուրիկիոս Պոմպէանոս առ դղեկաւն Վերոնայ ի ճակատու. մի ըստ միոջէ ձեռս ետուն ի նա Ակուիղէա, Մուտինա (Մոտենա) եւ այլ եւս քաղաքք։ Ճակատեալ կայր մօտ ի Հռոմ առ Միղուեան կամրջօքն (Փոնթէ Մոլլէ) ինքն Մաքսենտիոս. անդ խորտակեցաւ ճակատն, այրուձին ի բաց մղեցաւ, եւ գունդք անձնապահ զօրուն որ պնդեալ կային՝ կոտորեցան, հազարաւորք ի թշնամեաց անտի ի Տիբերիս սատակեցան առ տագնապ փախըստեանն. եւ առ խռնել բազմութեանն ինքն եւս Մաքսենտիոս անկեալ ի գետն հանդերձ երիվարաւ՝ սատակեցաւ (28 Հոկտ. 312)։

Ի վաղիւ անդր մտանէր Կոստանդիանոս յաղթութեամբ ի քաղաքն՝ իբրեւ տէր Իտալիայ եւ Ափրիկեայ, եւ ողջունեցաւ ուրախութեամբ իբրեւ նորոգիչ հասարակաց բարութեան։ Կանգնեաց զպատկեր իւր ի Հռոմ, խաչ ի ձեռին եւ վերնագիր ի վերայ թէ "Փրկչիւ ազատեցաւ քաղաքն եւ նորոգեցաւ իբրեւ ճշմարիտ քաջութեանն նշանաւ"։ Վասն շնորհակալութեան սահմանեաց նմա ծերակոյտն կամար յաղթութեան. այս կամար բովանդակեցաւ յամի 316 եւ ցայժմ կայ։ — Այսպէս ոչ համարեցաւ յամօթ զյաղթութիւն իւր ընծայել խաչելոյն Քրիստոսի ի մէջ ամպարիշտ քաղաքին թաթաւելոյ արեամբ քրիստոնէիցն, այնմ որ իսկզբանէ հետէ գայթակղութիւն եւ յիմարութիւն է աշխարհի։ Ըստ վկայութեան հեթանոսացն իսկ պատմագրաց (որպիսի Զոսիմոսն է) եցոյց զթուլութիւն ի յանցաւորսն, զկարի իսկ չարագործսն եւեթ սպանանէր եւ զվաշտս անձնապահացն Մաք-

1 Labarum. Այն անուն էր գլխաւոր դրօշուն Հռոմայեցւոց եւ նախ քան զԿոստանդիանոս։

2 Նազարիոս ի գովութեանն Կոստանդիանոսի, նոյնպէս եւ միւս եւս անանուն գովիչ նորին կայսեր։

Digitized by Google

անձնատուր ի բաց եւեթ արձակէր՝ մերկացուցեալ ի զինուորական հանդերձէ։ Աւերակեաց եւ զեկեղեցիս քաղաքաւն, փոյթ առնէր ի վերայ այրեաց, կուսանաց եւ որբոց։ Սահմանեաց մահու պատիժ ի վերայ քաւուց որովք լի էր Հռոմ։

Ընդ սոյն Մաքսիմինոս յորժամ խաղայր ի վերայ Լիկինիոսի իբրեւ դաշնաւոր Մաքսենտիոսի՝ հարաւ առ Ադրիանուպօլիս քաղաքաւ, գնաց փախստեայ ի Նիկոմիդիայ ի Տարսոն. ուր յուսահատեալ առ դեղ մահու եւ ի դեղոյ անտի կէր թանչս ատամունս իբրեւ հուր ինչ ներքին, որ եւ զաչսն ի բաց ի գլխոյն ա-տոյց, եւ յետ Յամենայ լլկանացն սատակէր (313)՝ ապաշխարեալ առ Քրիստոս զոր ի վերայ աշակերտացն հալածեաց անողորմս։ Նորին ամուսին եւ մանկունք եւ բարեկամք, անողորմն հալա-ծիչք քրիստոնէից, սպանան հրամանաւ Լիկինիոսի։ — Զայսու ժամանակաւ մեռաւ առ տրտմութեանն եւ անձկութեան եւ Դիոկղետիանոս։ Նորին կին այրի Պրիսկա եւ դուստր նորա Վա-ղերիա կրեցին բազում ինչ ի Մաքսիմինոսէ. եւ յայնժամ շրջէին թափառական յերեսաց Լիկինիոսի որ զրպարտէր իսկ զնոսա թէ խորհին դաւաճանութիւն. յետոյ ըմբռնեցան եւ հրամա-նաւ նորա եղեն ծովակուլ (313)։

4. Այնուհետեւ Ադրաստականքն երկոքին Կոստանդիանոս եւ Լիկինիոս ի սկզբան 313 ամին եւ տուեալ հրովարտակ ի Մեդիոլա-նոն ընդունել քրիստոնէից միաբանգամ զկրօնս իւրեանց, եւ տուեալ ամենեցուն ազատութիւն պաշտել զԱստուած որպէս օ-րինակաւ եւ կամիցին։ — Այլ չյերկարեաց այն միաբանութիւն նոցա։ Կոստանդիանոս խնդրէր նոր ինչ բաժանումն, որ էր իսկ իրաւացի, Լիկինիոս չառ յանձն, խորհեցաւ դաւ ի վերայ նորա. յայնժամ զրգռեցաւ մարտ պատերազմի. յետ պարտութեան առ Կեփաղիս քաղաքաւ յարեւմուտս հիւսիսոյ Սիրմիոնի, եւ առ Մարտեաւ մօտ ի Փիլիպպուպօլիս, ի բաց ետ Լիկինիոս զՄա-կեդոնիա, զՅունաց աշխարհ եւ զԻլիւրիկէ (զգաւառս հարաւ-ային կողմանցն Դանուբայ, բաց ի Թրակիայ եւ ի ստորին Մի-սիայ) (314)։

Յայնմ հետէ խաղաղութիւն էր ամս 8. մեծապէս ջանէր Կոստանդիանոս ի ժամանակին յայնմիկ խաղաղասէր օրինօք եւ բազում յաղթութեամբք ի վերայ Գերմանացւոցն։ Իսկ Լիկինիոս անառակութեամբն եւ նոր հալածանօք լինէր ամենեցուն ատելի. զի զքրիստոնէից՝ ոչ միայն զպաշտամունսն խափանեաց, այլ եւ սպան եպիսկոպոսունս բազումս եւ ժողովրդականս, ընդ որս եւ զօրականս 40 ի Սեբաստիա Հայոց ըստ վկայութեան հարցն (Գրիգորի Նիւսացւոյ, Բարսղի, Եփրեմայ)։

Գրգռեցան ընդ միմեանս կայսերքն երկոքին այլաբարոյք։ Չէ ինչ յիւրին ընտրել թէ ո յորոյ վերայ նախ դիմեաց. այնչափ ինչ

միայն ստուգութեան է՝ թէ այնու իմն իրաւացի էր գործն Կոստանդիանոսի զի անց նա ի մէջ իբրեւ պաշտպանիչ քրիստոնէութեան։ Արշաւեցին հարուստ բանակօք կայսերքն երկոքին Կոստանդիանոս եւ Լիկինիոս (322). յետ պատերազմին առ Ադրիանուպօլեաւ՝ ուր յաղթեաց Կոստանդիանոս արուեստիւ պատերազմի, դիմեաց Լիկինիոս ի Բիւզանդիոն, եւ յորժամ Կրիսպոս որդի Կոստանդիանոսի եհար զտորմիղ նաւաց նորա ի Հելլեսպոնտոս՝ փախեաւ Լիկինիոս յԱսիա. անդ ետ պատիւ կեսարութեան Մարտինիանոսի եւ գումարեաց գունդ նոր։ Թող Կոստանդիանոս զպաշարումն Բիւզանդիոնի, անց ընդ Բոսպորոս եւ վատթարեցոյց զհակառակորդն իւր՝ ոչինչ հեռի ի Քրիւսոպօլեայ (Իւսկիւտար)։ Բիւզանդիոն եւ Քաղկեդոն բացին առաջի նորա զդրունս։ Անկաւ Լիկինիոս փախստեայ ի Նիկոմեդիա (8 Սեպտ. 323)։

Անդուստ կին նորա Կոստանդիա քոյր Կոստանդիանոսի եկն առ եղբայր իւր եւ առ ի նմանէ խոստումն թողուլ զԼիկինիոս կեալ ի հանդարտութեան պատշաճ մեծարանօք, այսպիսի ինչ միայն պայմանաւ՝ զի ի բաց թողցէ Լիկինիոս զծիրանին եւ զՄարտինիանոս ի բաց լուծցէ ի պատուոյն։ Հնազանդեաց Լիկինիոս, կոչեցաւ ի սեղան եւ տուաւ նմա Թեսաղոնիկէ ի բնակութիւն. այլ յետ այնորիկ վաղվաղակի ետ սպանանել զնա Կոստանդիանոս պատճառանօք թէ գաղտ բանագնաց ընդ թշնամիս տէրութեանն եղեւ։ Իսկ Մարտինիանոս սպանաւ յիւրոց իսկ զօրաց։ Մնաց այնուհետեւ Կոստանդիանոս միահեծան տէր պետութեանն Հռոմայեցւոց (324)։

## 41

Թէպէտ եւ ամն 313 համարի ըստ հասարակաց սովորութեան վախճան հալածմանն, այլ պատմութիւնն իսկ ցուցանէ թէ այս մանաւանդ յայսմ յ324 ամի դիպեցաւ, յորում բարձան անհետ եղեն ամենայն իսկ հալածիչք ի միջոյ, ընկալաւ եկեղեցի խաղաղութիւն, եւ հան ընդ իւր Կոստանդիանոս յաթոռ զկրօնսն քրիստոնէութեան [1]։

Այսպէս կանգնեցաւ կաց տիեզերական եկեղեցի ի ձեռն արանց երկոտասանից աննշանից եւ առանց դպրութեան, յաղթե-

1 Այլ եւ այլ իմն հաշուի թիւ հալածանացն։ Ընդհանրին ի 4. դարէ սովորութիւն է 10 հալածանս համարել՝ յայտնի իսկ ըստ համեմատութեան 10 հարուածոցն Եգիպտոսի եւ կամ 10 եղջերաց գազանին (Յայտ. ԺԷ. 12.)։ Նա եւ համար 10 հալածանացն եւս պէսպէս իմն է. սովորական քան զամենայն է Ս. Աւգոստինոսի, այս ինքն 1. առ Ներոնիւ, 2. առ Դոմետիանոսիւ, 3. առ Տրայիանու, 4. առ Մարկոսն Աւրելեաւ, 5. առ Սեպտիմեաւ Սեւերեաւ, 6. առ Մաքսիմինոսիւ, 7. առ Դեկեաւ, 8. առ Վալերիանեաւ, 9. առ Աւրելիանեաւ, 10. առ Դիոկղետիանու մինչեւ ցվախճան հալածանացն Լիկինեաւ։ — Ղակտանտիոս՝ 6 եւեթ. Սուլպիկիոս Սեւերոս՝ 9 միայն հալածանս հաշուէին։

լով գիտութեան եւ զօրութեան աշխարհի որ ընդդէմ դառնայր նոցա յամենայն զօրութենէ իւրմէ. սոյն կայ առաջի ակն յանդիման իբրեւ ճշմարիտ խոկ եւ անժխտական սքանչելիք։

Ապաքէն աստուածեղէն զօրութիւն եւ լուսաւորութիւն վարդապետութեանն Քրիստոսի՝ առ համեմատութեամբ յիմարութեան եւ մթոյն կռապաշտութեան՝ գործէր ազդեցութիւն բազում ի վերայ պատրաստական սրտից մարդկան ի ժամանակի հասարակաց կարօտութեան մարդկութեանն, մանաւանդ զի ընթանայքն ի միասին ընդ վարդապետութեանն բարձրագոյն նշանք եւ անշահասէր միտք առաքելոցն եւ քարոզչաց աւետարանին, որ յամենայնէ եւ ի բնաւէ հրաժարեալ՝ զանձինս եւս ի վերայ դնէին։ Քաջասրտութիւն խոստովանողացն Քրիստոսի յիւրաքանչիւր չափու, ի հասակէ եւ յազգէ, որ զամենայն ինչ հանդերձ արեամբ տային վտարանդի՝ յաճախէին զարմանս եւ ածէին ի նոցա ջատագովութիւն, եւ սրբական եւ առաքինի կեանք նոցա եւ առ միմեանս սէրն ածէր ի շինութիւն եւ ի նմանութիւն[1]։

Միանգամայն եւ բազում ինչ արտաքին նպաստ լինէր ի դոյն, որպիսի ինչ ընդարձակ տարածումն յունական լեզուի, քաղաքային միաւորութիւն այնչափ ազգաց ի մի տէրութիւն, եւ այն զի Հռոմայեցիքն երբեմն ազատք՝ իբրեւ գերի անկեալ հեծէին ընդ բռնաւոր կայսերօքն իւրեանց, եւ այլ եւս ազգք հնազանդեալք զկորուստ ազատութեան իւրեանց եւ զտոհմային առանձնականութեան աշխարհին, որովք եւ գրգռէին ի ցանկութիւն այլոց ինչ անանցն բարութեանց զոր Աւետարանն խոստանայր՝ ցուցանելով տարակուսելոցն վստահութիւն, մեղաւորացն սփոփութիւն, յանցաւորացն ներումն, աղքատացն յոյս երկնաւոր ուրախութեանցն։ Մանաւանդ զի գերեաց որք մեծ իմն մասն հռոմէական տէրութեան էին՝ քարոզէր բարձրագոյն ինչ ներքին ազատութիւն եւ ուսուցանէր նոցա եւ նոցին տերանցն՝ ճանաչել եւ մեծարել զմարդկեղէն պատիւն։ Վաճառականն քրիստոնեայ՝ բազմադիմի հաղորդութեամբքն եւ ճանապարհորդութեամբք լինէր տարածիչ քրիստոնէութեանն, զօրականն ի զօրուն եւ ի գաւառսն յոր տանէին զնա լեգէոնքն, գերին՝ որում բազում անգամ յանձն էր ի տան տեառն իւրոյ կրթութիւն մանկանց, ջանայր յաւելուլ որդիս եկեղեցւոյ, բայց մանաւանդ քան զամենայն՝ կանայք քրիստոնեայք ի մէջ ընտանեաց իւրաքանչիւր։

Այլ զի այս սփոփիչ եւ կենարար վարդապետութիւն՝ վարդապետութիւն խոնարհութեան էր, միանգամայն եւ ի բաց մերժէր զնշմարանս եւս զգայական իրաց եւ հեղձուցանէր զամենայն ցանկութիւն՝ ի վէգ եկեալ կռուէին ընդ նմա մեծաւ բռնու-

1 Կեկիլիոս հեթանոս առ Մինուկեայ ասենայք սիրեն զմիմեանս մինչ չեւ զմիփեղկեալ զարմանալով իմն ասէ թէ «Կքէ- մանս ծանուցեալ»։

թեամբ՝ ոգի աշխարհիս եւ ցանկութիւն մարմնոյ եւ զգալի կրից, կռոցն պաշտամունք՝ որք տածիչ զգայական ցանկութեանցն էին, եւ նոցին հզօրն պաշտօնեայք, արուեստագէտք շահասէրք եւ վաճառականք զոհիցն պատրուճակաց, պերճութիւն, ամբարտաւանութիւն եւ ճարտարխօսութիւն անուանելոցն փիլիսոփայից, յամառն եւ անօգուտ հրէութիւն, եւ ամենայն իսկ համօրէն երկրաւոր զօրութիւն հռոմէական պետութեան՝ որ թէպէտ եւ առ ամենայն կարծիս յիմարութեան նորոգ գտանէր, բայց ընդ քրիստոնէութեան եւեթ մղէր սատանայական իմն անագորոյնութեամբ ի ձեռն հռոմէական բազմահնար տանջանարանացն. համառօտ իսկ ասել՝ ամենայն զօրութիւն դժոխոց ջնջել փութայր անդէն ի ծաղկին զտունկն փափուկ զերկնաւոր։

Բայց զի՞րդ մարթ էր դատարկացուցանել զխորհուրդս ամենազօրն Աստուծոյ։ Յաղթեցաւ պարտեցաւ աշխարհըս մեղմական զգօնութեամբ ի ձեռն ակարաց։ Յիմարեցաւ իմաստութիւն աշխարհիս, ժողովրդանոցն հրէական եւ բազմաստուածութիւնն անկան կործանեցան առաջի խաչին Քրիստոսի։ Զուր ցրուէին զհաւատացեալսն վտարանդութեամբք, ընդ վայր հեղուին զարիւն քրիստոնէիցն հեղեղաբար. վտարանդութիւնք՝ պատգամաւորութիւնք աւետեաց քրիստոնէութեանն էին, եւ արիւն մարտիրոսացն էր սերմն քրիստոնէութեան (Տերտուղ.)։

Այսպէս ի խորոց չինականացն մինչեւ յաթոռ հռոմէական ինքնակալութեանն շահեաց կալաւ քրիստոնէութիւն ընդ ամենայն երկիր, եւ ընդ ամենայն ծագս տիեզերաց հնչեաց բարբառ նոցա[1], ի գլուխ ելեալ մարգարէութեանն Եսայեայ թէ "Յարեւելից ածից զզաւակ քո եւ յարեւմտից ժողովեցից զքեզ. ասացից հիւսիսոյ թէ ած, եւ հարաւոյ թէ մի արգելուր. ածէք զորդիս իմ ի հեռաստանէ եւ զդստերս իմ ի ծագաց երկրէ"[2]. եւ դարձեալ "Այսպէս ասէ Տէր. ահաւասիկ ամբարձից զձեռս իմ ի վերայ ազգաց եւ ի կղզիս կանգնեցից զնշան իմ, եւ ածցեն զորդիս քո ի ծոցս իւրեանց, եւ զդստերս քո ի վերայ ուսոց իւրեանց բարձեալ բերիցեն։ Եւ եղիցին թագաւորք դայեակք քո եւ կանայք նոցա մանկակալք քո"[3]։ "Քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս ի վկայութիւն ամենայն հեթանոսաց[4]"։ "Ի Տեառնէ եղեւ այս, եւ է սքանչելի յաչս մեր"[5]։

1 Հռոմ. Ժ. 18։
2 Եսայ. ԽԳ. 5. 6։
3 Անդ. ԽԹ. 22. 23։
4 Մատթ. ԻԴ. 14։
5 Մարկ. ԺԲ. 11։

Digitized by Google

## 42

### Վերջին հեթանոսական մատենագրութիւն։

Երգիծաբանութիւն։ — Բանաստեղծք երեւելիք կայսերական ժամանակին յետ ոսկի դարուն են՝ Ա. Պերսիոս Փղակկոս (34 — 62) յազնուական տանէ՝ Վոլաթերրացի, որ ի 6 Սատիրայսն կամ Հեգնութիւնսն իւր յանխնայ այպանէ զթիւրութիւն եւ զապականութիւն ժամանակին։ — Բ. Յունիոս Յովենալիս առ Կղաւդեաւ ծնեալ յԱկուինոն, աքսորեալ յԱդրիանոսէ յԵգիպտոս՝ ուր մեռաւ իսկ առ սրտին նեղութեան. 16 Հեգնութիւնք նորա գրեալ են յստակ եւ ճարտար ոճով եւ են ճշգրիտ պատկեր վարուց ժամանակին։ — Գ. Հեգնականն[1] Պետրոնեայ (զորմէ չէ յայտ թէ արդեւք հանդիսադիրն խրախութեանց Ներոնի իցէ) նկարէ մեծաւ ճարտարութեամբ եւ նրբութեամբ բարբառոյ զքաղաքականս աղքատներոցն։ — Դ. Վաղերիոս Մարտիալիս սպանիացի առ Դոմետիանեաւ, որ յաճախէր ի փաղաքշանս մեծամեծացն։

Ի վիպական բանաստեղծութեան ոչ ոք եցոյց ինչ երեւելի, այլ էր ամենայն ծառայական իմն նմանութիւն առաջնոցն, մանաւանդ Վիրգիլեայ։ — Ե. Սիղիոս Իտաղիկոս այր մեծատուն եւ քաղաքագէտ († նախ քան զՃր.) զերկրորդ պունիական պատերազմ ընծայեցոյց վիպասանութեամբ։ — Զ. Աջողագոյն էր քան զնա Ստատիոս ողոքիչ Դոմետիանու, որ բաց յերկուց վիպասանութեանց (Աքիլլէս, Որդիք Ոդիպեայ) յօրինեաց ըստ նմանութեան Յունաց պսակէից բազում երգս քնարականս (որք վասն այլ եւ այլ կերպարանացն՝ Անտառք կոչին)։ — Է. Աննէոս Ղուկանոս երեւելի քան զամենայն բանաստեղծս կայսերական ժամանակին, սպանեալ ի Ներոնէ. անաւարտ իմն է վիպասանութիւնն նորա «Փարսաղիա», անուն՝ մնացեալ թերակատար։ — Ը. Զատուցիչն՝ Աննէոս Սենեկա գրեաց ողբերգութիւնս ոչ վասն երեւեցուցանելոյ ի բեմի, այլ վասն ընթեռնլոյ։

Այս Աննէոս Սենեկա սպանիացի՝ հայր Սենեկայ ստոյիկեան փիլիսոփայի որ դաստիարակն եղեւ Ներոնի, առ Տիբերիաւ գրէր զվարս եւ զբանս առաջնոցն հռետորաց։ Իսկ Փաբ. Կուինտիլիանոս ուսուցիչ ճարտարխօսութեան առ Վեսպասիանու գրեաց «Հրահանգս ճարտարխօսութեան», յորում յայտ առնի թէ զինչ ճշմարիտ ճարտարխօսութիւնն իցէ եւ զինչ ճանապարհ այնմ հասանելոյ։

Պատմագրութիւն։ — Ի հռոմայեցի պատմագրաց անտի՝ բաց ի Կուրտեայ Ռուփոյ որ զարդարուն նկարագրաւ զգործսն Աղեքսանդրի պատմէ, եւ անյայտ իմն է ժամանակն նորա, նշանաւորք են՝ Ա. Վեղղէոս Պատերկուղոս գովիչ Տիբերեայ եւ Սէիանու, յորոց ժամանակին իսկ եկաց. սա գրեաց համառօտ ինչ տեսութիւն հռոմէական պատմութեան, յորում համառօտիւ անցանէ ընդ ժամանակս ընկերհաշտութեանն մեծաւ դրուատեօք, իսկ զժամանակս կայսերացն պատմէ միայն իբրեւ վարս կայսերաց յորդորանիւ անդ իւրեանց. որպէս սորա համառօտութեանն ըստ, նոյնպէս եւ Կուրտեայն ճոռոմաբանն ճառք՝ անբնականք իմն են։ — Բ. Փղորոս առ Տրայիանու՝ արկ ընդ գրով զհռոմէական պատմութիւնն արձանագրական իմն համառօտութեամբ եւ պերճախօս բանիւք, ի Ռոմուղոյ մինչեւ ցԱւգոստոս։ — Գ. Կոռնեղիոս Տակիտոս մեծ եւ երեւելի քան զամենայն պատմագիրս Հռոմայեցւոց, որ առ Վեսպասիանու ի պատիւս

1 Satiricon.

եւ յաւագութիւնս վայելեալ եւ լաւութեամբն եւ իմաստուն չափաւորութեամբ ապրեալ առ Դոմիտիանու, ապա ուրեմն առ Տրայիանու ի ծերութեանն եւս զանձն ի պատմագրութիւն եւ գրեաց՝ Ա. Աննալէս[1] որ է տեսութիւն ներքին եւ արտաքին դիպաց անցքութեանն յամէ 14 — 69 յետ Քր., մեծաւ քննութեամբ հանեալ ի հրապարակաւն յիշատակարանաց[2], յորս բազում ինչ զհայոց իրաց կայ պատմեալ մեծաւ ճշդութեամբ։ (Առաջին 6 գիրք միայն կան պահին, յորոց դարձեալ հինգերորդն հատակոտոր իսկ է, եւ 11—16 գիրք անբողջ են, միայն երկուց անաց պատմութեան ի բաց անկեալ։) Բ. Պատմութիւնք[3], որ է պատմութիւն ժամանակի իւրոյ ի Գալբայ մինչեւ ցմահ Դոմիտիանու։ (Միայն 4 գիրք մնացեալ են եւ մասն մի հինգերորդին մինչեւ ցամն 71։) Գ. Վարք Յուլեայ Ագրիկոլայ աներոյ իւրոյ որ նուաճեաց զԲրիտանիա. ուր նկարի իբրեւ այր արդարեւ հռոմայեցի ըստ հնոց բարեաց ժամանակաց լեալ եւ կացեալ մնացեալ հաստատուն ի առհմայքին անպաճոյճն բարս ի ժամանակի հասարակաց ապականութեանն։ Դ. Վասն աշխարհին Գերմանիոյ, յորում իբրեւ միմեալ զայլազգին ընդ ապականութիւն բարուց ժամանակին՝ բուռն հարկանէ յանդիմանն կացուցանել զչապականեալ բարս ազգացն այնոցիկ։ Ե. Խօսք[4] վասն ճարտարախօսաց, յորում գեղեցիկս համեմատի ընդ միմեանս ճարտարախօսութիւն ընկերհասարակաց եւ կայսերական ժամանակին, յայժ հաւանութեան է թէ չէ Տակիտեայ, այլ թերեւս՝ Քուինտիլիանեայ։ — Դ. Սուետոնիոս Տրանկուիղլոս գաղտնեաց դպիր Ադրիանու կայսեր գրեաց զվարս 12 առաջին կայսերաց, մեծաւ մասամբ ի հրապարակաւն յիշատակարանաց եւ ի պատմութեանէ յածելոյ ի բերանս մարդկանն։ — Ե. Յուստինոս մատուցանէ քաղուած ինչ պատմութեան ոչ ճիշդ, քաղեալ ի բազմահմուտ, ի յարմարեալ եւ ի գեղեցիկ մասանէ Տրոգոսի ուրուեմն Պոմպէի պատմագրի, գաղղիացւոյ առ Աւգոստեաւ, որ այժմ չէ ի միջի, բայց ի քաղուածոյ անտի Յուստինեայ եւ ի գլխակարգութեանցն մնացելոց յայտ է թէ քաջ եւ գեղեցիկ կարգաւ՝ ազգահամարական իմն օրինակաւ ճառեալ է զասիական եւ զյունական անցութեանց պատաշաճելոց մակեդոնական պետութեանն առեալ ի բարւոք աղբիւրաց։ — Զ. Զմիջագին ժամանակ կայսերացն նոսելոց զքնուարական բանաստրութեամբ՝ պատմեն ժողովածոյք ինչ փոքունց պատմագրաց Աւգոստեան (կայսերական) ժամանակին (117—285), որք են 6 թուով։ Այս ինքն՝ 1. Եղիոս Սպարտիանոս (առ Դիոկղետիանու) պատմագիր վարուց Ադրիանու, Ղուկիոսի Վերոսի, Դիդիոսի Յուլիանու, Սեպտիմեայ Սեւերեայ, Պեսկեննիոսի Նիգրոսի. զորս վարս ընծայեալ է մատենագիրն՝ Դիոկղետիանու, իսկ զԿարակալլային եւ զԳետայն՝ Կոստանդիանոսի։ — 2. Վուլկատիոս Գալլիկանոս (նոյնպէս առ Դիոկղետիանու)։ — 3. Տրեբելլիոս Պոլլիոն (դարձեալ առ Դիոկղետիանու եւ Կոստանդիանու) որ գրեաց զգործս կայսերացն ի Փիլիպպեայ մինչեւ ցԿղաւդիոս, եւ դարձեալ զԳալլիենեայ եւ զ30 բռնաւորացն։ — 4. Փղաւիոս Վոպիսկոս Սիրակուսացի (առ Կոստանդիանու) որ գրեաց զգործս Աւրելիանու, Տակիտեայ, Փղորիանու, Պրոբայ, Փիրմոսի, Սատուռնինոսի, Պրոկուղայ, Բոնոսայ, Կարոսի, Նումերիանու, Կարինեայ։ — 5. Եղիոս Ղամպրիդիոս որ յետ նորա գրեաց զգործս Կոմոդայ, Դիադումենայ, Հելիոգաբաղայ եւ Աղեքսանդրի Սեւերեայ։ — 6. Յուլիոս

1 Annales.
2 Acta.
3 Historiae.
4 Dialogus.

Digitized by Google

կողմնակալին (նոյնպէս առ Դիոկղետիանիւ եւ Կոստանդիանու) գրեաց զկեանս զԱնտոնինոսի Պիոսի, զԱղբինեայ, զՄակրինոսի, զերկուց Մաքսիմինոսաց, զերից Գորդիանոսաց, եւ զԲաղբինեայ: — Քան զամենեսին գովութեան արժանի ի սոցանէ է Վոպիսկոս. զի թէպէտ եւ այլքն ամենեքին գրեն առնլով ի դիւանաց, ի մուրհակաց եւ յայլոց հրապարակաւ ինչ գրելոց, այլ զամենայն խառն ի խառն առանց պատմական ձրից եւ բիրտ իմն բանիւք մատենագրեն, որով առն ապաքէն վկայութիւն թէ եղծեալ վատթարեալ ուրեմն են դպրութիւնք եւ հրահանգք ժամանակին:

Ի կարգ կայսերական պատմութեանն յառաջ մատուցանեն՝ 1. Սեքստոս Վիկտոր ափրիկեցի զոր կայսր Յուլիանոս ած ի պաշտամունս տէրութեան կացուցանելով վերակացու Պաննոնիայ (360) եւ Թէոդոս Մեծն կացոյց վերակացու Հռոմայ, եւ է նորա դիր՝ Համառօտութիւն հռոմէական պատմութեան: — 2. Եւտրոպիոս Թղթադիր[1] Կոստանդիանու որ եւ չոգաւ ընդ Յուլիանու ի պարսկական արշաւանն, եւ եկաց եւս առ Վաղեսիւ եւ գրեաց չափաւոր ինչ համառօտութիւն հռոմէական պատմութեան: — 3. Առ Վաղեսիւ է եւ Սեքստոս Ռուփոս: — 4. Ժամանակակից Եւտրոպեայ էր երեւելին քան զամենայն պատմագիրս Հռոմայեցւոց յետ Տակիտեայ՝ Ամմիանոս Մարկեղինոս յայն յազգէ, ծնեալ յԱնտիոք յազնուական տանէ, մտեալ ի զինուորութիւն ի մանկութենէ եւ յետոյ ի պաշտամունս մերթ յարեւելս (350) եւ մերթ յարեւմուտս (354, ի Գաղիա՝ 355), առ Կոստանդեաւ, Յուլիանեաւ, Վաղենտինիանոսիւ եւ Վաղեսիւ. առ Թէոդոսիւ թուի առեալ սկիզբն գրելոյ ի Հռոմ զկնի ստուգապատում եւ զլի քննութեամբ պատմութիւնն յ31 գիրս (ցամ 378): Առաջին 13 գիրք այժմ չեն ի մէջի: Յայտ յիւրոց իսկ բանից է՝ թէ գոնեայ առաջին 26 կամ 28 գիրքն գրեալ են յառաջ քան զամ 391. մասն մասն սփռէր զգործն՝ որ եւ յամենեցունց գտանէր ընդունելութիւն մեծ, որպէս եւ ի Լիբանիոսէ ճարտարախօսէ. եւ չէ ինչ նա թշնամի քրիստոնէութեան, այլ զարմանայ մանաւանդ ընդ բարս լաւութեան նոցա. միայն թանձրադանդաղ իմն է ոճն: Բազում ինչ նպաստ ի Հայոց պատմութիւնս լինի:

Արեւելք քան զՀռոմայեցւոցն են Յունացն պատմագիրք որ ի վերջին ժամանակս կացին, թէպէտ եւ սոքա եւս ունին յիւրեանս զնիշ ժամանակին՝ զծառայամիտ ողոքանաց, զհռետորական եւ զսոփեստական անհամ զարդուց: — Ա. Պղուտարքոս ի Քերոնիայ Բիովտացւոց (50—120), առ Տրայիանու լեալ ի սպասու պաշտաման տէրութեան, եւ առ Ադրիանու՝ որ էր նորա բարեկամ եւ աշակերտ, կուսակալ Յունաց աշխարհին: Ի գործոց անտի նորա որ ոչ սակաւ են՝ կէսք Բարոյականք են եւ կէսք Պատմութիւնք վարուց արանց երեւելեաց համեմատութեամբ ընդ միմեանս: — Բ. Առիանոս որ գրեաց ի մատենի[2] զվարդապետութիւն վարդապետին իւրոյ Եպիկտետեայ ստոյիկեան փիլիսոփայի՝ մատենագրեաց եւ վասն իրաց պատերազմի, մանաւանդ՝ զգիրսն "Արշաւանին Աղեքսանդրի" որ է մի յընտիր մատենագրութեանց ժամանակին: — Գ. Դիոն Կասիոս գրեաց պատմութիւն ի Հռոմայ շինութենէ մինչեւ ցիւր իսկ հիւպատոսութիւնն յամի 229, յ80 գիրս՝ յորոց առաջին 36 գիրք ամենեւին կորուսեալ են, բազում ինչ մասն եւ ի մնացելոցն՝ որոց վերջին մասունքն են քաղուած ինչ միայն ի գրոց նորա առ Քսիփիլինեայ բիւզանդեան պատմագրի: Թէպէտ եւ հռետորական իմն ծիգն ցուցանեն

1 Epistolaris. 2 Ἐγχειρίδιον.

Digitized by Google

բանք նորա եւ չունի ինչ ազնուական մտածութիւնս, սակայն եւ այնպէս պատուական եւ պիտանի իմն է վասն պատմութեան կայսերական ժամանակին եւ կարեւոր ի մեծամեծ քննութիւնս ։ — Դ․ Ոչ նոյնպիսի ինչ պիտանութիւն ունի Հերովդիանու պատմութիւնն իւրական ժամանակին ի Մարկոսէ Աւրելիոսէ մինչեւ ցԳորդիանոս, որ է յօրինեալ հռետորական իմն օրինակաւ, ցուրտ եւ ոչ ճշգրիտ ։ — Ե․ Նմին հակառակ՝ կայսերական պատմութիւնն Զոսիմոսի ժամանակակցի Թէոդոսի Բ․, որ սկսեալ յԱւգոստեայ հասանէ ցամն 410, ընտիր է եւ ասացածովն եւ պատմութեամբն․ նիւթն մատենագիրն է թշնամի քրիստոնէութեան ։

Այն հին աշխարհագրութեան երեւելի եղեւ՝ Ա․ Ստրաբոն հռչակագոյն քան զամենայն հին աշխարհագիրս Յունաց ծնեալ յԱմասիա Պոնտացւոց յամի 60 նախ քան զՔր․ սա յետ շրջելոյ յԵգիպտոս, յԱսիա, ի Յոյնս եւ յԻտալիա եւ ընթեռնլոյ զմատեանս հռչակաւոր աշխարհագրաց եւ պատմագրաց (յանուանէ իսկ՝ Հեկատէոսի Միլետացւոյ, Արտեմիդորայ, Եւդոքսոսի, Նէարքեայ, մանաւանդ՝ Երատոսթենեայ) ապա եկն ի գրել զերեւելի աշխարհագրական մատեանն իւր յ17 դպրութիւնս, որ ոչ եթէ ցանկ ինչ անուանց է, այլ հոծ եւ խիտ պատմական յիշատակօք ազգի ազգի իրաց ։ Երկոքին առաջին դպրութիւնքն են իբրեւ դուռն իմն մատենին, իսկ այլքն նկարագիր անցնիւր աշխարհաց եւ տեղեաց, պայմանի առաջնորդութեան նոցա եւ բարուց եւ կրօնից ։ Եւթներորդ դպրութիւնն չէ ամբողջ․ իսկ մեծագին եւ պատուական քան զամենայն են դպրութիւնքն կարգաւ ի 11երորդէ մինչեւ ց16երորդ յորս ճառէ զԱսիոյ՝ խօսելով բազում ինչ եւ զՀայոց ։ — Բ․ Զէ անանշան եւ Պտղոմէոս աշխարհագիր եւ երկրաչափ († յամի իբրեւ 170) որ գտակն եղեւ պտղոմեան դրութեան ։ — Գ․ Պաւսանիաս ի գիրսն ճանապարհորդութեան ընդ աշխարհն Յունաց ամփոփէ զյիշատակարանս արուեստից եւ կրօնից հնոց ժամանակաց որ մնա ի կնքել էին ։

Հռչակաւորք ի մատենագրաց կայսերական ժամանակին են եւ Պլինիոս Սեկունդոս Երէցն որ ի բորբոքելն Վեսուվայ մօտ երթեալ նաւակաւ վասն քննութեան՝ հեղձաւ (79)․ սա գրեաց "Բնական պատմութիւն" (խառն ընդ աստեղագիտութեան, աշխարհագրութեան եւ պատմութեան արուեստից) որ է մատեան մեծ ժողովեալ ի մատենագրաց աւելի քան զ2000․ այլ ոչ յամենայն մասունս հաւաստի է ատուգութեամբ, եւ ոչ ողորկ լեզուն ։ Նորին եղբօրորդի եւ որդեգիր Պլինիոս Սեկունդոս Կրտսերն, աշակերտ Կուինտիլիանեայ եւ սիրելի Տրայիանու եւ յայն սակս ամբարձեալ ի պատիւ անթիպատութեան Բիւթանիայ՝ ըստ օրինակի Կիկերոնեայ ի ժամանակին պարապոյ յաճախէր գրել թուղթս առ Տրայիանոս ողորկ բանիւք․ որոյ կայ եւ ճառ գովութեան վասն Տրայիանու խօսեալ ի ծերակուտին ։

Այլ իսկ ժողովել սկսան եւ աղբիւրք իրաւանց, օրէնք եւ վճիռք դատաւորաց եւ դատաստանք եւ եդան կարգ ըստ կարգէ, մեկնեցան տեսիլք եւ սկզբունք իրաւանց, այլ առ կայսերօք երկրորդ եւ երրորդ դարու եհաս ի ծագ կատարելութեան հռոմէական իրաւագիտութիւնն ի ձեռն Գայիոսի, Պապինիանոսի, Ուլպիանոսի եւ Պաւղոսի ։

## 43

Փիլիսոփայութիւն ։ — Ի կայսերական ժամանակին զառաջինն տակաւին գլխաւոր փիլիսոփայական աղանդք էին Եպիկուրեանցն եւ Ստոյիկեանց

զվարս Ապողոնիասի Տիւանացւոյ ընդ սքանչելեօք ստութեան, զի զՔրիստոսի փառսն աղարտեսցէ։ Առաւել եւս Թշնամութեամբ քան զնա Պորփիւրիոս († 304) ասորի յազգէ՝ աշակերտ Պղոտինեայ, որ զուսումն վարդապետին իւրոյ տարածանէր ի Հռոմայ՝ յարեւմուտս, որպէս եւ միւս եւս աշակերտ Պղոտինեայ՝ Ամեղիոս՝ յարեւելս։ Թէպէտ եւ մեծ զոմն համարի Պորփիւր զՔրիստոս, բայց աշակերտք նորա, ասէ, մանաւանդ Յովհան, յաւելին առ նմա եւ աստուածութիւն, եւ յայն սակս կայ նախ հակառակ ճշմարտութեան նորոց կտակարանաց եւ համարի գտանել ի նոսա բանս հակառակս միմեանց՝ յառաջ բերելով զգժտութիւնն Պետրոսի եւ Պաւղոսի, ստգտանէ զմեկնութիւնսն քրիստոնէից, մանաւանդ զայլաբանական մեկնութիւնս Որոգինի, ծաղր առնէ զմարգարէութիւնսն վասն Մեսիային, մանաւանդ՝ զԴանիէլին, եւ ջանայ ցուցանել սուտ զպատմութիւնս ինչ ի պատմութեանցն որ վասն Քրիստոսի կան. ամենեւին անպատշաճ իմն համարի զանազան գալուստն նորա յերկիր, եւ այլ եւս նոյնպիսիս։ Բայց սակայն եւ բազում ինչ ի քրիստոնէութենէ ընկալեալ էր, որպէս է իսկ յայտ ի Թղթոյն առ կին իւր Մարկեղղա։ Գրեթէ զնոյն բանս գրէր եւ Հիերոկղէս առ Դիոկղետիանոս կուսակալ Բիւթանիայ եւ վերակացու յԱղեքսանդրիա։ Նոր պղատոնականութիւն եղ եւ յաթոռ հռոմէական պետութեան՝ ընդ Յուլիանոս կայսեր։

Յօրինաւորութիւն Նոր պղատոնական փիլիսոփայութեան է ամենեւին հակառակ Նիւթականութեան եւ Սկեպտիկեան աղանդոյ։ Զգայական տեսութիւնն չունի ինչ ճշմարտութիւն յինքեան, այլ այն միայն ճշմարիտ է՝ որ ի վեր քան զզգայութիւնս իմացութեամբ ճանաչի։ Իսկ իմացութիւնն ճանաչէ զանզգալին ոչ եթէ փորձով ինչ կամ տեսլեամբք եւ հաւաքմամբք, այլ ներքին իմն զգայարանաւ եւ իմացական իմն հայեցմամբ։ Քանզի աստուածեղէն իմացութիւնն լուսաւորէ զոգիսն՝ որ ժողովեն զինքեանս մտադիւրութեամբ, այնպէս զի ոգիքն բարձրանան եւ պարզին, յանձանց ի բաց ելանեն եւ ընդ այնմ՝ յոր հային, ի մի ձուլին։ Այսպիսի անհաս հայեցմամբ՝ զոր ոչ ուսուցանել մարթ է եւ ոչ հաղորդել (եւ յայն սակս ոչ ոք կարող է զԱստուածականն ումեք ծանուցանել, թէ ոչ որում սեպհական իսկ հայեցմամբ հաղորդեսցի այն)՝ ժամանէ իմացութիւնն ի վախճան անդր իւր՝ ի ծանօթութիւն անզգալւոյն, ի ծանօթութիւն աստուածեղէն էութեանն եւ գոյացութեան։ Իսկ յաստուածխօսութեան՝ դեգերէր իմն սոյն խորհրդական փիլիսոփայութիւն ընդ Ամենաստուածութիւնն եւ ընդ Աստուածականութիւն, այնպէս՝ զի ըստ տեսական մասին առաւել ի նա հարկանէր, իսկ ըստ գործականին՝ առաւել ի սա։ Ըստ այսմ փիլիսոփայութեան՝ ոգի մարդոյն է մի միայն եւ անցաւոր ինչ իմացութիւն՝ որ իւրով իսկ յանցանօք եւ չարաչարին վարելով իւրով ազատութեամբն՝ անկաւ ի նիւթ, եւ յետ մահու մարմնոյն՝ կամ ի շնչաւորաց, կամ ի մարդկեղէն մարմինս անցանէ, եւ կամ յաստեղս եւս կարէ ամբառնալ։ Բարոյական վարդապետութիւն Նորն պղատոնականաց անաշառ իմն էր։

Սոցին իմն հակառակ յամենեւին անհաւանութիւն դարձեալ էին Սկեպտիկեանքն որոց գլխաւոր պաշտպանիչ էր Սեքստոս ոմն Եմպիրիկոս։ Ի սոցանէ եղին այպանողք իմն եւ արհամարհօղք կրօնից մանաւանդ քրիստոնէութեան՝ Կեղսոս (150) եւ Ղուկիանոս Սամոսատացի (յամի իբրեւ 200)։ Զկեղսեայն բանս այժմ միայն ի գրոց Որոգինի զոր հակառակ նորա գրեաց՝ գիտեմք. իսկ Ղուկիանոսին կան ցայժմ մատեանքն։

Digitized by Google

Գ.

## ՆԵՐՔԻՆ ՀԱՆԳԱՄԱՆՔ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### Ա

### Աղանդք — եւ վարդապետութիւն եկեղեցւոյ։

### 44

Ի ՄԻՒՍՈՒՄ միանգամայն ի նմին ժամանակի էր եկեղեցւոյ գրեթէ եւս իմն վշտագին պատերազմ առաւել քան ընդ զօրութեան հռոմէական տէրութեանն՝ ընդդէմ աղանդոց ի պահպանութիւն վարդապետութեան իւրոյ։ Ի սմին կռուի ցուցանէր եկեղեցի եւ առաւել հաստատուն գործէր զներքին հանգամանս վարդապետութեանն։

Գնոստիկեան աղանդք կամ Գնոստք։ — Սոքա մատուցին յառաջ զսուտ աստուածխօսական եւ զփիլիսոփայական տեսութիւնս Սիմոնի Մոգի եւ զԿերինթեայ՝ կամելով իմն զպարզ հաւատսն քրիստոնէից հանել ի Գիտութիւն[1] ըստ սկզբանց փիլիսոփայութեանն Փիլոնի, Զրադաշտայ եւ առհասարակ իսկ արեւելեան կրօնից։ Ընդհանրական իմն տիպ[2] գնոստիկեան կամ գիտական վարդապետութեան է յաջորդս։ Սկիզբն առնէին վարդապետութեան իւրեանց ի խնդրոց՝ թէ զիարդ գոյացաւ աշխարհս, եւ թէ ուստի իցէ չարն։ Զշատացեալ լուծմամբն զոր տայր նոցա կաթուղիկէ եկեղեցի թէ յոչնչէ՝ Աստուծոյ ամենազօրն զօրութեամբ աշխարհս եղեւ, եւ թէ չարն առ սկիզբն ի չարաչար կամաց ազատութեամբ՝ խնդրէին լուծումն ի փիլիսոփայական սկզբանց տարածելոց ի ժամանակին յայնմիկ՝ ըստ արեւելեան սովորութեան բանաստեղծական իմն նմանութեամբք եւ այլասացիկ կամ այլաբանական բանիւք զվարդապետութիւնս իւրեանց ընծայեցուցանելով, եւ ոչ ըստ ցամաք եւ ճիշդ կանոնաց Խորհականին[3], որպէս սովորութիւն է արեւմտեանցն։ 1. Ոմանք կապեալ ի պղատոնական վարդապետութիւն Փիլոնի՝ որ զծածուկն եւ զբարձրագոյնն Աստուծոյ, որում չիցէ հնար առնել ինչ հաղորդութիւն անմիջնորդական՝ ընդ նիւթական չար աշխարհի, դնէին վարդապետութիւն ինչ տակաւ բղխման ի միմեանց[4], այնպէս՝ զի ի բարձրագունէ անտի Աստուծոյ որ բովանդակութիւնն է ամենայն կատարելութեանց եւ սկիզբն ամենայն կենաց՝ ելեալ իցէ մի ըստ միոջէ շար ինչ երկայնաձիգ՝ ոգւոց աստուածեղինաց (կամ Յաւիտեանց[5]) որ որչափ յետնագոյնք ի կարգին լինիցին՝ այնչափ թերակատարագոյնք իցեն։ Ի ձեռն միոյ ի սոցանէ, զոր Արարչապետ[6] իսկ կոչէին, ստեղծեալ իցէ աշխարհս եւ մարդիկ՝ հոգեւոր, շնչաւոր կամ նիւթական բնութեամբք[7]։ 2. Բայց քանզի ոմանց եւ յայնմ հեռաւոր աստիճանի անպատշաճ երեւեցաւ ածել զչարիսն ի բարձրագոյն եւ ի սուրբ Աստուծոյ անտի յառաջ, յայն սակս այլք ի Գիտոց յաւելին զԵրկուորականութիւնն[8] կամ զԵրկարմատեան վարդապետութիւնն՝ ընդունելով սկիզբն ինչ (կամ արմատ[9] կամ առաջս[10]) չար հակառակ բարձրագոյնն Աստուծոյ, ըստ Պարսկական վար-

1 Γνῶσις.
2 Type, typus.
3 Logique.
4 Emanation
5 Αἰωνὲς.
6 Δημιουργὸς.
7 Πνευματικοὶ, Ψυχικοὶ, Ὑλικοί.
8 Dualisme.
9 Ῥίζα.
10 Ἀρχὴ.

Digitized by Google

դապետութեանն զԱրհմենէն (զչարն աստուածոյ), որ զխաւար խառնեաց ընդ լուսոյն Որմզդի եւ խառնակեաց զբարին [1] ։ Վասն փրկելոյ զհոգեղէնն կամ զաստուածեղէնն ի չար նիւթոյ անտի կամ ի հիւղեայ՝ դնէին սահմանեալ Յաւիտեանս ինչ է Պղերոմայն կոչէ, վարելով ի դոյն իւիք իւիք տեսլեամբք զոր առնոյին ի քրիստոնէութենէ ։

Գնէտք ի հաստատութիւն վարդապետութեանն իւրեանց՝ յետ մերժելոյ կամ ամենեւին եւ կամ զմեծ մասն գրոց սրբոց եւ զկենդանի աւանդութիւն եկեղեցւոյ՝ կոչէին ի վկայութիւն զապոկրիֆա [2] ինչ աւետարանս եւ պատմութիւնս առաքելոց եւ զանծանօթ ինչ վարդապետութիւնս՝ զորս ոմանց ոմանց ասէին թէ աւանդեցին ի ծածուկ առաքեալքն իբրեւ կատարելագունաց, եւ որպէս թէ ինքեանք այժմ ի սոցունց ժառանգեալ՝ ուսուցանիցեն ։

Գնոստիկ աղանդ տարածեալ էր մանաւանդ յԱսորիս եւ յԵգիպտոս․ Որ յԵգիպտոսէ անտի են՝ նոցա վարդապետութիւն ի վերայ բղխման հաստատեալ կայ, եւ առաւելագոյն ունի պղատոնականութիւն եւ չարաչար իմն կարծիս զնիւթոյ կամ զհիւղեայ․ Նմին հակառակ առ այնոսիկ որ յԱսորւոց են՝ տիրէ Երկուորականութիւն առեալ ի դիւացի Պարսից անտի եւ յայլոց ազգաց Ասիոյ, եւ միանգամայն Դոկետականութիւնն [3] առաւել առ սոսա երեւի ։

Գլխաւոր կերպարանք կարծականութեանն Գնտաց էին 1․ Թէ Յաւիտեանն՝ այն Քրիստոս, որ փրկելոցն էր ի նիւթոյ անտի չարէ՝ առաջք եւեթ ունէր մարմին, եւ պատրանք իմն աչաց էին երեւելին․ 2․ Մարմին նորա էր յերկնաւոր եթերական ինչ գոյացութենէ, եւ կամ 3․ Ունէր զօրութիւն վարելոյ օտարին մարմնով, իբրեւ իւրով գործւով ։

Ոմանք ի Գնտացն չեն հակառակ հնոց կտակարանաց, եւ ոմանք ամենեւին հակառակ եւ կէսք դարձեալ՝ առաւելագոյն իմն քան զայլսն առեալ են փոխ ի քրիստոնէական վարդապետութենէ, եւ կէսք ոչ ։

Ա․ Աղեքսանդրեան կամ Եգիպտական Գէտք են 1․ Կարպոկրատէս աղեքսանդրացի որ էր ի ժամանակսն Ադրիանու, եւ սովորութիւն է համարել զնա ընդ Գէտսն, թէպէտ եւ պղատոնական ոք եւեթ է եւ հաշիւ ուրեմն թուի ունել աղանդ քրիստոնէական․ արար նա իւր բազմամբոխ աշակերտս յԵգիպտոս եւ ի Հռոմ ։ Նորին որդի Եպիփանէս զհօրն վարդապետութիւն սփռեաց ի կղզւոջն Կեփաղոնիա եւ ըստ վարդապետութեանն Պղատոնի՝ սահմանէր ունել զինչսն եւ զկանայս հասարակաց ։ — 2․ Բասիլիդէս (ոչ հակառակ հնոց կտակարանաց) եկն յԱսորւոց յԵգիպտոս (ըստ Ս․ Եպիփանեայ), եւ անդ յ2րորդ դարու ուսուցանէր․ եւ տարածանէր զվարդապետութիւն նորա, մանաւանդ որդի նորա Իսիդոր ։ Ցուցանէր իմն իբրեւ աղբեւր իւրոյ վարդապետութեանն զծածուկ ինչ աւանդութիւնս որ իցեն լեալ ի Քամայ ի Նոյի որդւոյ եւ պահեալ յաբեղեան իմաստնոց ի Բարկոփայ եւ Բարքորայ, եւ ի Քրիստոսէ հետէ ի ձեռն Կղաւդեայ թարգմանին Պետրոսի եւ ի ձեռն առաքելոյն Մատաթեայ հասեալ յինքն եւ յիւր որդին յԻսիդոր ։ Զառաջինն խիստ իմն էին բարք Բասիլիդեանցն, բայց յետոյ թուլացան ։ Ցիշին սոքա մինչեւ ց4րորդ դար ։ — 3․ Վաղենտինոս (ոչ հակառակ հնոց կտակարանաց) էր եգիպտացի եւ ժամանակակից Բասիլիդեայ, եւ եկն նա ի Հռոմ (յամի իբրեւ 140) եւ վախճանեցաւ ի Կիպրոս (յամի իբրեւ 160) ։ Վարդապետութիւն նորա, որ մերձաւոր է Բասիլիդեանցն, բայց առաւել

1 Տես Հատոր Ա․ էջ 160 ։ 2 Ἀπόκρυφα. 3 Docétisme.

Digitized by Google

զորդարեալ սատակութեամբ արեւելեան ցնորից, առաւել քան զամե-
նայն Գէտս յարեցոյց իւր աշակերտս։ Բայց յետոյ ազգի ազգի փոփոխ-
մունք եղեն վարդապետութեան նորա ի ձեռն աշակերտացն նորա Հե-
րակղէոնի, Պտղոմեայ, Սեկունդեայ, Կոլորբասեայ, մանաւանդ ի ձեռն
Մարկոսի։ — 4. Ոփիտք կամ Օձականք (հակառակ հրէութեան). որոց
վարդապետութիւն ունի բազում ազգակցութիւն ընդ Վաղենտինեայն,
եւ բազումք ի նոցանէ պաշտէին զօձ (որ զԵւայն պատրեաց). Թող
զԿայենեանսն, որք իբրեւ օրինակ նմանութեան իւրեանց մեծարէին
զԿայէն, զՔամ, զՍոդոմայեցիսն եւ զայլսն եւս նոյնպիսիս մինչեւ ցՅուդա
Իսկարիովտացի, ասելով թէ յայն սակս մատնեաց զՅիսուս զի գիտէր
նա թէ մահուամբն նորա քակի թագաւորութիւն Աստուծոյն Հրէից.
եւ յայն սակս իսկ իբրեւ հակառակք օրինաց այնր Աստուծոյ՝ ապրին
զանձինս ի զեղծ վարս։

Բ. Ասորական գէտք՝ 1. Սատուռնինոս կամ Սատուռնիղոս ժամանակա-
կից Բասիլիդեայ ուսուցանէր առ թագաւորութեամբն Հադրիանու յԱն-
տիոք։ Սատուռնինիանոսք վասն ապրելոյ ի չար սկզբանէն՝ ժուժկալէին
յամուսնութենէ եւ ի մսոյ, համարելով զերկոսին եւս ի սատանայէ։ —
2. Բարդեծան կամ Բարդեսանէս (ծն. յամի իբրեւ 154)[1] եւ կայր
յՈւռհայ քաղաքի (յամի իբրեւ 172) դարձաւ ի քրիստոնէութենէ յա-
ղանդ գնոստիկեան եւ ձգեաց զբազումս յինքն, մանաւանդ ի ձեռն երգոց
որդւոյ իւրոյ Հարմոնեայ. նա աւանիկ եւ Ս. Եփրեմ ասորի ի չորրորդ
դարու ստիպեցաւ փոխանակ երգոցն այնոցիկ՝ այլ երգս ըստ ուղղափառ
մտաց յօրինել եւ տալ ի բերան ժողովրդեանն։ — 3. Տատիանոս (հա-
կառակ հրէութեան) ժամանակակից Բարդեծանայ եւ աշակերտ Յուստի-
նեայ վկայի՝[2] յետ մահու վարդապետին յօրինեաց աղանդ գնոստիկեան
յԱնտիոք՝ մերձաւոր աղանդոյն Վաղենտինեայ։ Զհին եւ զնոր կտակա-
րանս հակառակ միմեանց համարէր. պահանջէր ժուժկալութիւն ի մսոյ
եւ ի գինւոյ եւ յամուսնութենէ՝ զոր պղծութիւն իսկ համարէր։ Աշա-
կերտեալքն նորա անուանեցան Ժուժկալք[3] կամ Ջրամատոյցք[4], այսու
զի ի խորհրդեան հաղորդութեան չարկանէին գինի ի կիր, այլ լոկ ջուր,
որպէս առնէր եւ մեծ մասն Գիտաց։ — 4. Մարկիոն (հակառակ հրէ-
ութեան) էր որդի եպիսկոպոսին Սինոպայ Պոնտացւոց, եւ մերժեալ յե-
կեղեցւոյն՝ եկն ի Հռոմ խնդրել ընդունելութիւն (յամի իբրեւ 150)
եւ չգտեալ՝ յարեցաւ ի Կերդոն գէտ ասորի, եւ միաբան ընդ նմա յօ-
րինէր զաղանդն իւր, որ այսու իմն մանաւանդ այլակերպ է յայլոց՝ զի
երիս սկզբունս կամ արմատս եդ, զԱստուածն բարի, զԱրարիչն (կամ
զԱրարչապետն) արդար, եւ զՀիւղ։ Ի հաւատացելոցն իւրոց, յորոց
կարգ յետ երկայնժամանակեան եւ խիստ երախայութեան ոք մտանէր,
պահանջէր մեծամեծ ժուժկալութիւնս, որպիսի ինչ հրաժարել յամուս-
նութենէ, ի զբօսանաց եւ ի կերակրոց որ ոչ կարի ինչ կարեւոր իցեն։
Զվարդապետութիւնս զայնոսիկ հանէր նա ի կրճատեալ աւետարանէն
Ղուկայ եւ ի 10 թղթոց Պաւղոսի նոյնպէս կրճատելոց։ Պատմի թէ
մերձ ի մահ լեալ՝ խնդրեաց Մարկիոն դառնալ ի ծոց կաթուղիկէ եկե-
ղեցւոյ, բայց չեհաս այնմ։ Երեւելիք յաշակերտաց նորա եղեն Մարկոս
եւ Ապեղէս։ Եւ քանզի Մարկիոնեանքն եկեղեցական իմն կարգաւորու-
թիւն ունէին՝ տեւեալ բաւեցին մինչեւ ց6երորդ դար։

1 Տես ի խոնարհ Մատենագր.։
2 Տես ի խոնարհ Մատենագր.։
3 Ἐγκρατῆται.
4 Ὑδροπαραστάται.

## 45

*Նոյն իմն մերձաւոր Գիտական աղանդոյ էր միւս եւս աղանդ՝ Մանիքէականութիւնն: Առաջնորդ նորա Մանի պարսիկ (որ եւ Մանէս կամ Մանիքէոս) էր: Ըստ յունական պատմութեանց՝ էր սա գերի եւ ստացաւ զգիրս Սկիւթիանոսի ուրումն տաճիկ (արաբացի) վաճառականի ի ձեռն այրւոյ ուրուք կնոջ Տերեբինթոսի ուրումն՝ որում եւ Բուդդա անուն կոչէր, եւ բազում ճանապարհորդութեամբք տեղեակ լեալ էր Սկիւթիանոս՝ արեւելեան եւ յունական փիլիսոփայութեանց միանգամայն: Ի գրոց անտի եւ ի տեղեկութեանց աստի յօրինեաց Մանի զկրօնն ի կէս 3րորդ դարու: Բայց զի չթուեցաւ այն հաճոյ թագաւորին Պարսից թէ նոր ինչ կրօնս ուսուցանիցէ, եւ զի զորդի եւս թագաւորին չկարաց Մանի բժշկել ըստ խոստմանն, ելեալ երթայր փախստեայ յԱրաբիոն դղեակ ամուր՝ ուր վիճեցաւ ընդ նմա Արքեղայոս եպիսկոպոս Քաշկար քաղաքի եւ պարտեաց առաջի դատաւորաց: Յետուստ ուրեմն անկաւ ի ձեռս զինուորաց թագաւորին եւ հանաւ մորթ նորա [1]:*

*Իսկ ըստ արեւելեան պատմութեանց՝ էր Մանի յազնիւ տոհմէ մոգուց, քաջ ի գիտութիւնս Պարսից եւ ճարտար նկարչութեամբ, լեալ քրիստոնեայ եւ երէց եւս, բայց մերժեալ յեկեղեցւոյ վասն օտար վարդապետութեան: Թէպէտ եւ եգիտ նա ընդունելութիւն յարքունիս Շապհոյ Ա. արքայի (240—271), այլ գժտեալ ընդ մոգուցն՝ ստիպէր փախչել ի գաւառս ուրեք, եւ անդ յօրինէր զաւետարանն իւր նկարուք բազմօք: Առ Որմզդիւ Ա. արքայիւ (271—272) կոչեցաւ յետս, եւ ետ նմա թագաւորն դղեակ ամուր զգուշութեան. այլ Վռամ կամ Վահրամ Ա. (272—275) թշնամութեամբ լիեալ ընդ նմա՝ ետ ածել զնա անտի նենգաւ եւ սպանաւ տանջանօք առ Վռամաւ Բ. (277): Հիմն վարդապետութեան նորա է դնել երկուս մշտնջենակից էութիւնս՝ զլոյս եւ զխաւար: Երկոքին եւս ծնընդեամբք բազմացեալ լինին թագաւորութիւնք երկու՝ ընդ երկոքումբք թագաւորօք, որք եւ ունին սահմանս եւ գոռան համակ ընդ միմեանս: Աստուածն բարի վասն զդէմ ունելոյ խաւարին զօրութեանն՝ յօրինեաց յիւրմէ էութենէն զմարդն նախաւոր, զշունչն ամենայնի, զմայրն կենաց. երեւեցաւ սա զինեալ հնգեքումբք տարերբք՝ հողմով, լուսով, ջրով, հրով եւ հողով, բայց սակայն եւ այնպէս ի պատերազմի անդ զոր տայր նա ընդ խաւարին՝ կորզեցին ի նմանէ դիւական զօրութիւնքն զմասն մի ի լուսոյ նորա, նա եւ ամենեւին իսկ յաղթէին նմա՝ եթէ չէր Աստուծոյն բարւոյ բղխեալ յիւրմէ նոր ինչ զօրութիւն եւ առաքեալ յօգնականութիւն նորա, այս ինքն՝ զՀոգին կենդանի՝ որ եկն եւ խառնեաց զյափշտակեալ տարր լուսոյն ընդ նիւթոյն եւ այնպէս յօրինեաց զերեւելի աշխարհս, յորում իւրաքանչիւր ինչ ըստ այլ եւ այլ աստիճանի խառնմանն՝ կազմէ կարգ ինչ բարձրագոյն կամ խոնարհագոյն. քանզի զազնուագոյն մասունս յափշտակելոյ ի նախաւոր մարդոյ անտի՝ եդ ի վերին երկինսն՝ իբրեւ արեգակն եւ լուսին, իսկ զմարմինս դիւացն որ ի յափշտակեալ մասանց լուսոյ յօրինեալ էին՝ եդ ի հաստատութեան՝ իբրեւ զաստեղս ի լուսաւորութիւն, իսկ զայն մասունս լուսոյն որ առաւել քան զամենեսին նիւթոյն զանգեալ էին՝ յօրինեաց ի հողեղէն իրս: Եւ այսպէս յարարածս մինչեւ ցբոյսս եւ ցքարինս անգամ տարածեալ սփռեցաւ կենդանացուցիչ տարր լուսոյ՝ զոր անուանեալ կոչէին Յիսուս չարչարելի:*

1 Տես Պեւրեղ Կոչ. ընծայ. էջ 108—115:

Բայց իշխանն խաւարին կասկածեալ թէ Շունչն այն աշխարհի տակաւ զերծցի ի նիւթոյ՝ հաւանեցոյց զգեւան թողուլ նմա զմասունս լուսոյն զոր իւրաքանչիւր էր յափշտակեալ, զի ի նոցունց յօրինեսցէ զոք ըստ պատկերի նախաւոր մարդոյն այնորիկ առաջնոյ կամ Շնչոյն աշխարհի, եւ այնպէս ծնաւ նա ի կնոջէ իւրմէ ի Նեբրոդայ զմարդն առաջին զԱդամ։ Ապա ծնաւ եւ զԵւա, զի տուեալ հրապուրեալ զԱդամ՝ ածցէ ի ծնունդս բազումս՝ զի եւ Շունչն աշխարհի այնպէս տակաւ բաշխեալ բաժանեսցի եւ տկարասցի, իբրեւ յանհամար բանտս եւ ի կապանս կաշկանդեալ։ Ուստի եւ մարդն զերկուց զօրութեանց էութիւն ունի, եւ իբրեւ երկուս իմն ոգիս։ Բայց փրկութիւն Շնչոյն աշխարհի լինի ի ձեռն Քրիստոսի՝ որ կայ յարեգական. ինքնին եկն նա վասն փրկելոյ յերկիր, այլ առաչօք ինչ մարմնով, եւ չարչարանք իսկ նորա առաչօք էին. խոստացաւ նա Մխիթարիչ զոք, եւ սա ինքն է Մանի կատարիչ եւ ցուցիչ կրօնից նորա։ Կատարեալքն նորա որք ի կապանաց նիւթոյն զերծուցին զանձինս՝ գան յամենեւին կատարելութիւն ի բնակութեան արեգական եւ ի լուսնի, եւ ապա յետ այնորիկ անցանեն յամենեւին ի յատակ թագաւորութիւնն լուսոյ. իսկ այլքն շրջին ի մարմնոյ ի մարմինս, ի տունկս եւ յանասունս։ Յորժամ կատարեսցի ամենեցուն մաքրութիւն՝ ամենայն արարածք երեւելիք հրով սպառեսցին։

Զհին կտակարանն իբրեւ ի դիւէ՝ մերժէին Մանիքեցիք, նոյնպէս եւ զմեծ մասն նորոցն կտակարանաց, նա աւանիկ եւ ոչ զամենայն թուղթսն Պաւղոսի ազատ համարէին ի հրէական մտաց. ուր նոցին հակառակ մեծարոյ յոյժ էին գիրք Մանեայ եւ այլ եւս ինչ ծածուկ գիրք։ — Ունէին Երրորդութիւն իմն Մանիքեցիք ըստ իւրեանց վարդապետութեան, այս ինքն է Աստուածն բարի եւ երկու բղխմունքն նորա՝ Քրիստոսն նոցա, եւ Հոգին կենդանի։ Փաւստոս Մանիքեցի (առ Աւգոստինեաւ) Սաբելեան իմն մտօք իմանայր զԵրրորդութիւնն զայն։

Աշակերտք աղանդոյն Մանիքեցւոց յերիս իմն կարգս բաժանէին ըստ իւրաքանչիւր պարտուց։ Խոնարհագոյն քան զամենայն այնոցիկ էր՝ որ զկնիքն բերանոյ[1] ունէին, այս ինքն՝ պարտս չհայհոյելոյ, ժուժկալելոյ ի մսոյ, ի ձուոյ, ի կաթանէ եւ ի ձկանց, այլ շատանալ հացիւ եւ բերովք անդոյ եւ ծառոց, չըմպել գինի, չննջել յանկողինս փափուկս, այլ ի յարդի վերայ, ագանել գծուծս, սակաւ պահել։ Յերկրորդ կարգի էին, որոց կնիք ձեռաց[2] էր, այս ինքն՝ չստանալ ինչս, չգործել, այլ ի մտածութիւնս պարապել, չքաղել պտուղս ի ծառոյ կամ յերկրէ, չգործել զերկիր, չսպանանել շնչաւորս։ Երրորդ կնիքն ծոցոյ[3] հրամայէ ժուժկալութիւն յամուսնութենէ։ Որ յերրորդ կարգի աստ էին՝ կոչէին Ընտրեալք կամ Կատարեալք. իսկ որ յերկուս յառաջին կարգսն էին՝ Ունկնդիրք, որք եւ դիւրաւ գտանէին թողութիւն վասն մեղաց աշխատութեան որով աշխատէին կերակրել զԸնտրեալսն, քանզի ապաշխարութիւնն կատարէր ամաչելով եւեթ, այնու զի չարն ոչ եթէ գործ ոգւոյն էր, այլ այլոյ ինչ իրիք էութեան։ Եկեղեցական կարգաւորութիւն նոցա կազմեալ կայր յ12 վարդապետաց հանդերձ գլխաւորաւ ոմամբ, յ72 եպիսկոպոսաց, յերիցանց եւ ի սարկաւագաց որ յԸնտրելոց անտի էին։ Ի միաշաբաթւոջ պահէին պահս. տօն մեծ էր օր մահուան Մանեայ եւ կոչէր՝ տօն բեմի։

Սփռեալ էր աղանդն Մանիքեցւոց ի ձեռն աշակերտացն Մանեայ հալածելոց ի Հնդիկս, ի Չինաստան, ի Փոքր Ասիա, յԵգիպտոս, ի

1 Signaculum oris. 2 Signaculum manuum. 3 Signaculum sinus.



Digitized by Google

թէ Աստուած իցէ, եւ պնդէր թէ զառաջինն առ Զեփիւրինեաւ քահանայապետիւ Հռոմայ սկիզբն լեալ իցէ յեկեղեցւոջ համարելոյ զՔրիստոս Աստուած, (ուր զի յառաջ քան զԶեփիւրին՝ Վիկտոր մերժեալ էր զԹէոդոտոս վասն նորին մոլորութեան)։ Ի նմին աղանդէ էր եւ Թէոդոտոս Կրտսերն կամ Սեղանաւորն։ — 3. Պաւղոս Սամոսատացի եպիսկոպոս Անտիոքայ (յամէ 260) այր վարժ յուսմանս, այլ աշխարհասէր եւ փառասէր, որ խափանեալ զերգսն Քրիստոսի՝ տայր ընդ այնր նուագել յեկեղեցւոջ զերգս գովութեան իւրոյ յաւուր սուրբ զատկին ի բերանոյ աղջկանց, եւ առաւել պատուական համարէր զաշխարհական պաշտօն վերակացութեան հարկաց[1] քան զպատիւ եպիսկոպոսութեան իւրոյ։ Սա ուսուցանէր թէ Յիսուս ընկալաւ զԲանն՝ այս ինքն զզօրութիւնն Աստուծոյ (որ բնակեաց ի նմա, սկիզբն արարեալ ի յղութենէ մինչեւ ցչարչարանսն), միանգամայն առաքինութեամբն իւրով երեւելի գտեալ քան զայլս ի մարդկանէ՝ եղեւ հաղորդ աստուածութեան, ուստի եւ որ ինչ էրն՝ էր նա “ի ներքուստ ստորի„, այս ինքն իբրեւ մարդ. աստուածութիւնն յոր եհաս՝ միայն բարոյական ինչ պատիւ էր, եւ ոչ եթէ բնութեամբ սեպհական ինչ նորա. քանզի Բանն եւ Հայր “մի անձն„ եւեթ են, ասէր. եւ այնու իսկ պատրէր Պաւղոս ընդ երկար զեպիսկոպոսունսն որ զնոյն քննէին՝ զի ասէր թէ Հայր եւ Որդի ի միասին էական[2] են, սակայն միշտ իսկ Հօր եւեթ տայր բնական աստուածութիւն, իսկ Որդւոյ բարոյական եւեթ։ Նմին իրի եւ զձեւ մկրտութեանն յանուն Երրորդութեան՝ ոչ պահէր։ Երեք ժողովք եղեն եպիսկոպոսաց գումարելոց յԱնտիոք՝ մինչեւ անուանս ի ի Պոնտոսէ իսկ. յերկուս առաջին ժողովսն որ (յամի 264) եղեն առաջնորդութեամբ Փիրմիղիանոսի եպիսկոպոսի Կեսարու Կապադովկացւոց՝ պատրեաց զհարսն պատ ի պատ բանիւք եւ սուտ զղջմամբ, այլ յերրորդումն (269) որում առաջնորդէր Հեղինոս եպիսկոպոս Տարսոնի (քանզի Փիրմիղիանոս ի ճանապարհի՝ ի Տարսոն Կիլիկեցւոց վախճանեցաւ), Մաղքիոն ոմն երէց եկեղեցւոյն Անտիոքայ հան զպատրուակն յերեսաց նորա. ընկեցաւ Պաւղոս յաթոռոյն, եւ հարքն սինհոդոսական թղթով (որ կայ առ Եւսեբեայ) ծանուցին զանցսն՝ համօրէն կաթուղիկէ եկեղեցւոյ։ Բայց Պաւղոս չկայր ի բաց յաթոռոյն պաշտպանութեամբ Զենոբիայ դշխոյի Պաղմիրացւոց, որում սիրելի իսկ էր. այլ իբրեւ ըմբռնեցաւ դշխոյն յԱւրելիանեայ (272), հրաման ետ կայսր թողուլ զամենայն տեղիսն՝ այնմ եպիսկոպոսի որ միաբան իցէ ընդ եպիսկոպոսին Հռոմայ. եւ գնաց Պաւղոս փախստեայ, բայց կաց մնաց աղանդն Պաւղինեանց կամ Սամոսատեանց ցկատարած չորրորդ դարու։

Բ. Երկրորդ իսկ կարգ այնոցիկ է՝ որք զվարդապետութիւն աստուածութեանն Քրիստոսի կալեալ հաստատուն՝ բայց բարձին ի միջոյ զխտիր երից աստուածեղէն անձանց յէութեանն Աստուծոյ, եւ ասէին թէ Աստուած բովանդակ երեւեցաւ ի Քրիստոս, մարդ եղեւ եւ չարչարեցաւ, որք եւ Հայրչարչարք իսկ կոչեցան։ 1. Առաջին ի սոցանէ Պրաքսէաս ի Փոքր Ասիայ, որ առ Մարկոսն Աւրեղիոսիւ խոստովանող լեալ եւ յամի իբրեւ 200 եկեալ ի Հռոմ իմացոյց զպատրանս Մոնտանեանցն. բայց անդէն ի քաղաքի անդ՝ եւ յետոյ յԱփրիկէ ուսուցանէր թէ յաստուածեղէն էութեանն մի միայն անձն[3] կայ, այս անձն յինքենէ եկն յառաջ (նմին իրի անուանեցաւ Որդի) եւ էջ ի կոյսն Մարիամ եւ ծնաւ ի նմանէ եւ չարչարեցաւ։ Ցեա բազում վիճմանց՝

1 Ducenarius. 2 Ὁμοούσιοι. 3 Ὑπόστασις.

Digitized by Google

ապա ի բաց եկաց Պրաքսէաս ի մոլորութենէն, եւ որպէս աւանդեանն նորա սասանի՝ Տերտուղիանոս յիշէ, ետ ձեռնագիր ընդունելութեան հնոյն հաւատոյ, թէպէտ եւ թուի շրջեալ անդրէն յառաջին կարծիսն: — 2. Զնոյն մոլորութիւն յետ սակաւ ինչ միոյ (յամի իբրեւ 230) ուսուցանէր Նոյետոս Զմիւռնացի յառաջ բերելով չարաչար զՅովհաննու[1] թէ "Ես եւ Հայր մի եմք,, . եւ զասելն Քրիստոսի թէ "Այդչափ ժամանակս ընդ ձեզ եմ եւ ոչ ծանեար զիս Փիլիպպէ,,: իբրեւ պատասխանի խնդրոյն Փիլիպպեայ զի ասաց "Ցոյց մեզ զՀայր[2],,: — 3. Նոյնպէս եւ Բերիլղոս եպիսկոպոս Բոստրայ Արաբացւոց զնոյն ուսուցանէր ասելով՝ թէ Բանն յառաջ քան զմարդն լինել չէր իբրեւ անձն, այլ էր միայն յԱստուած իբրեւ խորհուրդ ինչ լոկ՝ համեմատութեամբ առ հանդերձեալ մարմնաւորութիւնն Աստուծոյ: Բազում սինհոդսք որ վասն նորա եղեն՝ չկարացին ածել զնա ի հաւան, մինչեւ կոչեցաւ Որոգինէս անդր եւ խելամուտ արար զնա ի սինհոդոսի եպիսկոպոսաց (244): — 4. Զսոցայն մոլորութիւն ած ի կատար Սաբել երէց ի Պտղոմայիս Պենտապոլեայ (250 — 260), որ ուսուցանէրն թէ Հայր եւ Որդի եւ Հոգի սուրբ չեն ներքին յատկանական խտիրք ի միում աստուածեղէն գոյացութեան առանց աղերսի առ աշխարհս, այլ լոկ արտաքին ժամանակեան աղերսք (յարաբերութիւնք) աստուածեղէն միութեան կամ այլ եւ այլ յայտնութիւնք եւ ազդեցութիւնք առ աշխարհս. այնպէս զի միութիւնն[3]՝ ի տարածանելն զանձն[4] յաշխարհ արարչութեամբ՝ լինի Հայր, յորժամ միաւորի նոյն միութիւն ընդ Քրիստոսի ի գործ փրկութեան՝ կոչի Որդի, յորժամ միաւորի ընդ մարդկան եւ լինի զհաւատացեալսն կամ զեկեղեցի՝ է Հոգի սուրբ: Յետ տարածելոյ կամ ձգտելոյ յայս երիս ընթացս՝ Հօր, Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ՝ ապա յինքն ամփոփի[5] աստուածութիւնն եւ փակի ինքն յինքեան, որպէս էրն յառաջագոյն: Զայս ամենաստուածեան վարդապետութիւն մեկնէր Սաբել օրինակաւ արեգական որ մի միայն գոյացութիւն[6] է, բայց երիս զօրութիւնս[7] ունի՝ զլուսաւորելոյ, զջեռուցանելոյ եւ կլորակութեան: — Ոմանք յեպիսկոպոսաց հաւանեցան ընդ նմա եւ այսպէս վտանգ մեծ ի վերայ կայր. Նմին իրի մետրապոլիտն նոցա այրն երեւելի Դիոնիսիոս եպիսկոպոս Աղեքսանդրացւոց եկաց ի կռիւ բանիւ եւ գրով, եւ ծանոյց զիրսն ի Հռոմ՝ առաքեալ զգիրս երկուց կողմանցն առ քահանայապետն Հռոմայ Քսեստոս Բ: Այլ քանզի Դիոնիսիոս ի հաստատելն զներքին յատկանական ընտրութիւն կամ խտիր անձանց աստուածութեանն չվարեցաւ կարի ինչ որիշ եւ մեկին բանիւք, ամբաստան եղեն զնմանէ ոմանք յեպիսկոպոսացն Եգիպտացւոց առ քահանայապետն Հռոմայ Դիոնիսիոս, թէ դնէ չհաւասարութիւն էութեան Հօր եւ Որդւոյ, եւ թէ զՈրդի կարգէ ընդ արարածս[8]: Իսկ իբրեւ կոչեաց զնա քահանայապետն Հռոմայ ի դատ՝ գրեաց Դիոնիսիոս առ իւր անուանակից քահանայապետ՝ Պատասխանատուութիւն ի 4 գիրս՝ արդարացուցանել զանձն ցուցանելով զՈրդի ի միասին էական կամ էակից[9] ընդ Հօր: Խառնեցան յետոյ Սաբելեանցիք ընդ Արիանոսսն, թէպէտ եւ մասն մի նոցա կայր տակաւին ի վախճան կցյս չորրորդ դարու:

1 ՅԺ. 29:
2 ՅԴ. 8:
3 Μόνας.
4 Ἐκτείνεσθαι.
5 Συστέλλεσθαι.
6 Μία ὑπόστασις.
7 Ἐνέργεια.
8 Անուանելով՝ Ποίημα որ մարթի նշանակել եւ ծնունդ:
9 Ὁμοούσιος.

Digitized by Google

## 48

Մարդասիրութիւն։ — Ի պատմանս աղանդոցս ամփոփեցաւ եկեղեցի ոչ ինչ զմիւրական նկարքն էութիւն, այս ինքն՝ շնչեղէն մարմնոյ իւրոյ քան ժամանակի եւ քան տեղւոյ՝ տակաւ յաջողագոյն եւ լուսաւորագոյն ասուցանել։ Զայս սկիզբն միութեան կամ ամենողութեան զոր նշանակէր եկեղեցի "կաթողիկէ" անուանն (որ զառաջինն գտանի առ Ս. Իգնատիոսի 1) յառաջ մատուցանէին Հարք եկեղեցւոյ ընդդէմ հերետիկոսացն՝ իբրեւ ընդհանրական անխախտ կանոն հաւատոց։ Իրենէոս եւ Տերտուղիանոս կատարելագոյնս քան զայլսն խօսէին վասն որոյն այսպէս։

1. Պարզ եւ պատշաճ է զամենայն ինչ քան ծագման եւ սկզբանն իւրում գտանել. Նմին իրի եւ զճշմարիտ վարդապետութիւնն Քրիստոսի ի քարոզութենէ անտի արանց ընտրելոց ի Քրիստոսէ, այս ինքն՝ առաքելոցն արժան է որոշել. որք եւեթ ծանեան զամենայն ճշմարտութիւն եւ յեկեղեցիսն զոր հաստատեցին՝ աւանդեցին զի բովանդակ իբրեւ ի գանձարանս մեծութեան 2։

2. Մեկնեալ եւ չէր շնորհեալ առաքելոցն կալ մնալ միշտ, տակայն ուսուցանեն եւ կենդանի են նոքա ի յաջորդսն իւրեանց յեպիսկոպոսունս, որք զառաքելական աւանդութիւնն՝ որպէս զգիրսն սուրբս իբրեւ մեծագին աւանդ պահեն, եւ մարթի յառաքելական եկեղեցիս անդ զյաջորդս առաքելոցն անընդհատ ինձ կարգաւ մինչեւ ցայժմ ցուցանել 3։

3. Այս ամենայն եկեղեցիք հաստատեալք յառաքելոցն ի Փոքրն Ասիա, ի Յունաց աշխարհին եւ յԻտալիա, այնպէս միաբան ընդ միմեանս են ի վարդապետութեան՝ իբրեւ թէ ի միում սան ազգանիցեն, մի սիրտ եւ մի ոգի ունիցին, եւ ապացոյց յայտ է թէ հաստատուն կան նոքա յառաքելական ճշմարտութեանն, քանզի դժուար ի խառնակելն իւրեանց ի մոլորութիւն՝ կարէր կալ այն միութիւն ի մէջ այլ եւ այլ ազգաց եւ յայլ եւ այլ տեղիս։ Զայս միութիւն ցուցանէ եւ հաղորդութիւնն խաղաղութեան եւ եղբայրութեան որով կապեալ են ընդ միմեանս ամենայն առաքելական եկեղեցիք 4։

4. Այն սակս յորժամ յառնիցէ ինչ առարկայս վասն վարդապետութեան իրիք՝ պարտ է յառաքելական մայր եկեղեցիսն դիմել, մանաւանդ ի գլխաւորագոյն եկեղեցին Հռոմայ, ընդ որում հարկ է զի ամենայն եկեղեցիք միաբանեսցին 5։ Այնպէս եւ զյետնագոյն եկեղեցիսն որ առանց առաքելական ծագման իցեն՝ պարտ է առ առաքելականս ունել այնու՝ զի ի նմին առաքելական հաւատոն միաբան են իբրեւ արիւնակիցք 6։

5. Այսպէս համօրէն եկեղեցին ունի եւ այլ ինչ բարձրագոյն երաշխաւորութիւն կամ գրաւական վասն յստակութեան առաքելական աւանդութեանն յայնմիկ՝ զի միշտ առաջնորդի ի Հոգւոյն սրբոյ, որ է Հոգի ճշմարտութեան, եւ է եկեղեցի յաւիտեանս նոր պարարած որ ոչ ծերանայ, իբրեւ սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան ընդդէմ կամայական մարդկեղէն գիւտից եւ յողդողդ կարծեաց. եւ հաղորդութիւնն ընդ նմա է անհրաժեշտ ինձ կարեւոր եթէ կամիցի ոք ընդունել զփրկութիւնն որ ի քրիստոնէութենէ յուսացի 7։ Զայս կի-

1 Ի թղթին առ Զմիւռն. Ը։ Կայ նոյն եւ ի թղթի եկեղեցւոյն Զմիւռնիոյ վասն վկայութեան Պողիկարպոսի։
2 Տերտուղ. վասն կանխադր. Ի. եւ ԻԱ։ Իրեն. ընդդ. հերետ. Գ. 4։
3 Իրեն. անդ. Գ. 3։ Տերտուղ. անդ. ԼԲ։
4 Իրեն. անդ. Ա. 10։ Տերտուղ. անդ. Ի. ի վերջ կայս եւ ԻԸ։
5 Իրեն. անդ. Գ. 4 եւ Գ. 3։
6 Տերտուղ. անդ. ԼԲ։
7 Իրեն. անդ. ԻԴ։ Տերտուղ. անդ. ԺԲ։

Digitized by Google

մարդիկ հաշտեցան ընդ Աստուծոյ, եւ թէ նորա արժանիք լինին թողութիւն մեղաց հաւատացելոցն[1]: Թող զայնոսիկ որ յայտնի իսկ կոչեն զնա Աստուած կատարեալ համեմատ գրոց սրբոց: Սակայն ի մեկնել սմանց յեկեղեցական մատենագրաց զայս հաւատս եկեղեցւոյ՝ անյաջող իմն բանս արկին ի կիր զհետ երթեալ պղատոնական փիլիսոփայութեանն[2]:

Նոյն յաստուածութենէ՝ այլ Քրիստոսի կաթուղիկէ եկեղեցի եւ մարմին մարդկեղէն եւ ոգի բանաւոր, այս ինքն՝ կատարեալ մարդկեղէն բնութիւն, հակառակ ազգի ազգի մոլորութեանց կարծականացն, այսպէս թէ ոչ չմարթէր լինել Քրիստոս՝ օրինակ մարդկան եւ փրկիչ[3]. սակայն միշտ իսկ նշանակեալ լինէր՝ զի թէպէտ երկու բնութեամբք է Քրիստոս, սակայն չեն բաժանեալ բնութիւնքն այլ անձնաւորապէս միաւորեալ ընդ միմեանս[4]:

Նոյնին լուսաւորութեամբ, որով զմիութենէ Աստուծոյ՝ խօսէին մատենագիրք եկեղեցւոյ եւ զերեքանձնականութենէն Հօր, Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ: Աթենագորաս ի բաց մերժէ ի քրիստոնէից զամբաստանութիւն անաստուածութեանն՝ ցուցանելով թէ պաշտեն զՀայր եւ զՈրդի եւ զՀոգին սուրբ զերեսին եւս իբրեւ Աստուած, ասելով "զզօրութիւն նոցա ի միութեան" եւ "զբաժանումն նոցա ի կարգի": Թէոփիլոս Անտիոքացի զառաջինն արկանէ ի կիր առ Յոյնս զանունն Երրորդութիւն[5], որպէս եւ առ Հռոմայեցիս՝ որպէս հաւանութեամբ թուի զառաջինն Տերտուղիանոս[6]: Ի մէջ հանգանակացն անուանեալն Առաքելական հանգանակ հզօրագոյնս իմն ցուցանէ զԱստուածութիւն Հոգւոյն յասելն թէ "Հաւատամ ի Հոգին սուրբ," որպէս ասէ հաւատալ ի Հայր եւ յՈրդի, եւ զնոյն կրկնէին ամենայն հարք թէպէտ չեւ եւս էր գրգռեալ ինչ դժուարութիւն զՀոգւոյն սրբոյ ի մէջ հերետիկոսաց եւ ուղղափառաց:

## Բ.

### Նուիրապետութիւն, խորհուրդք եւ կարգք եկեղեցւոյ:

## 49

Եպիսկոպոսունք, քահանայք եւ սարկաւագունք: — Ազգի ազգի հերետիկոսութիւնք եւ այնմ եղեն նպաստ՝ զի որոշեալ իմն օրինակաւ ի մէջ եկեալ երեւեսցի բարձրութիւն եպիսկոպոսական աստուածադիր իշխանութեանն, քանզի ստէպ լինէր թելադրութիւն հաւատացելոցն վասն ապրելոյ ի թունից հերետիկոսացն՝ յարել սերտիւ յօրինաւոր յաջորդս առաքելոցն՝ յեպիսկոպոսունսն[7]: Որպէս առ Ս. Իգնատիոսի նոյնպէս առ Տերտուղիանեայ եւ Իրենեայ ի մէջ գայ եպիսկոպոսն իբրեւ այն՝ որ ունիցի զլրումն եկեղեցական վարդապետութեան եւ իշխանութեան ի վերոյ քան զերիցունսն: Ըստ օրինակի առաքելոցն[8] տակաւին եպիսկոպոսքն ստէպ կոչէին Երիցունք կամ քահանայք[9], բայց առաւելութիւն իշխանու-

1 Կղեմ. Հռոմ. Թղթ. Ա. առ Կորնթ.: Յուստին. մկ. խօսք ընդ Տրիփ. ՂԵ: Իրեն. ընդդ. հերձ. Ե. 1, 17: Տերտուղ. վասն փախստ. ԺԲ. ընդդ. Հրէ. Ժ. եւ ԺԳ. (Տերտուղ. զառաջինն արկանէ ի կիր զբառն հատուցման, satisfactio): Որոգ. Մեկն. Թու. ճառ ԻԴ. 1. Ղեւտ. Ճ. Գ. 8:

2 Տես ի խոնարհ ի պատմ. Արիանոսաց:

3 Իգնատ. առ Զմիւռն. Իրեն. Որոգ. եւ այլք:

4 Որոգ. ընդդ. Կեղսեայ Գ. 41. Զ. 47. δύο τῇ ἑαυτῶν φύσει τυγχάνοντα, εἰς ἓν ἀλλήλοις εἶναι λελογισμένα καὶ ὄντα.

5 Τρίας.

6 Trinitas.

7 Իգնատ. Թղթ. առ Զմիւռն: Կիպր. Թղթ. 55:

8 Տես էջ 33:

9 Առ Իրենեայ եւ Կիպրիանու:

թեան նոցա նշանակեալ լինէր մերձաւոր ինչ անուամբ, (որպիսի ինչ՝ Գլխաւոր երիցանցն, մերձագոյն կամ մեծ քահանայ, հայր օրհնեալ)։ Միայն եպիսկոպոսունք տային օրհնութիւն կամ ձեռնադրութիւն այլոց կղերականաց, մատակարարէին զխորհուրդս սեպհական իշխանութեամբ (իսկ երիցունք եւ սարկաւագունք նոցա հրամանաւ եւ անուամբ), նստէին գահերէց ի խորհուրդս եւ սահմանէին վերջին որոշմամբ ընդունել կամ հանել զոք ի միջոյ հաւատացելոց. նոքա տային զանուանեալ նամակն ձեւաւոր ¹ եւ պահէին զզօդ հաղորդութեան բազմամբոխ ժողովրդեանն որ ընդ իւրեանց իշխանութեամբ էին։ Սակայն եւ երիցունքն էին խորհրդականք եպիսկոպոսին, եւ վարէր սա խորհրդեամբ նոցա յերեւելի ինչ գործս՝ յիշելով զմարդկեղէն տկարութիւնն ²։

2. Ըստ յաճախել թուոյ քրիստոնէիցն յաճախեցին եւ այլ եւ այլ գործք, յորս չկարէին լինել բաւական եպիսկոպոսունք եւ երիցունք՝ առանց զիւրեանց զկարեւորագոյն պաշտամունսն խափանելոյ։ Նմին իրի բազմացաւ նախ սարկաւագացն թիւ, որք բաց ի քարոզելոյն եւ ի մկրտելոյ եւ զհիւանդս դարմանելոյ՝ սպասաւորէին եւ հաղորդութեանն խորհրդեան, ընթեռնուին աւետարան, մատակարարէին հաւատացելոցն հաղորդութիւն կամ տանէին հիւանդացն ի տուն, եւ ընդունէին զընծայս ժողովրդեանն առ եկեղեցին ³։ Զսարկաւագունսն՝ որ եւ Սպասաւորք եւ Ղեւտացիք կոչէին, յանդիմանէ ժողովն Արեղատոյ (314) վասն ճոխանալոյ նոցա քան զերիցունս ⁴. մի ոմն ի նոցանէ, զոր յառանձինն ինչ գործս ի կիր արկանէր եպիսկոպոսն՝ կոչեցաւ յետոյ Սարկաւագապետ կամ արքիդիակոն ⁵։

Սակայն իբրեւ եւ ոչ այնպէս պիտոյքն վճարէին, անդէն ի սկզբան երրորդ դարու կամ վաղագոյն եւս նշմարին այլ եւ այլ խոնարհագոյն կարգք կղերականաց, այս ինքն՝ Կէս սարկաւագք կամ Հիւպոդեակոնք ⁶, Ընթերցիչք կամ Անագնոստք ⁷, Արբանեակք ⁸, Դռնապանք ⁹ եւ Երդմնեցուցիչք ¹⁰։ Այս ամենայն պաշտամունք յիշին իբրեւ վաղ իսկ լեալ յարեւմուտս ի թղթին Կոռնելեայ քահանայապետի առ Փաբիանոս եպիսկոպոս Անտիոքայ (յամի իբրեւ 250) ¹¹, յորում յայտ առնէ թէ ունէր յայնժամ եկեղեցին Հռոմայ՝ երիցունս 44, սարկաւագունս 7, կէս սարկաւագունս 7, արբանեակս 42, եւ միանգամայն 52 երդմնեցուցիչս, ընթերցիչս եւ դռնապանս. այս իսկ էր եւ կարգ աստիճանացս յարեւմուտս, իսկ յարեւելս՝ այլ եւ այլ ըստ տեղեաց։ Այն խոնարհագոյն աստիճանք՝ էին դարձեալ աստիճանք պատրաստութեան եւ փորձութեան վասն բարձրագոյն կարգաց կղերականութեան, եւ լինէին տուեալ՝ ոչ հանգոյն բարձրագոյն կղերականաց՝ յերիցարանի անդ, եւ ոչ ձեռնադրութեամբ, այլ միայն աղօթիւք։ Նաւանիկ եւ կէս սարկաւագունք իսկ՝ զորոց նախ Կիպրիանոս յիշէ եւ որովք վարեցաւ իսկ նա ի տեղւոջէ աքսորանաց իւրոց ի հաղորդութիւն կցորդութեան ընդ եկեղեցւոյ իւրոյ, իսկ յարեւելս ի չորրորդ

1 Litterae formatae, որոց տեսակք էին՝ Թուղթք ընծայութեան (commendatoriae), Թուղթք հաղորդութեան կամ խաղաղութեան (communicatoriae vel pacificae) եւ արձակման (dimissoriae).

2 Իգնատ. Թղթ. առ Եփես. Բ. Առ Մագնես. Բ։ Կիպրիան. Թուղթ. 5։

3 Յուստին. Վկյ. Պաշտպան. 65։ Կիպրիան. Վասն անկելոց։

4 Կանոն 15. Տես եւ զկան. 18։

5 Սովորութիւն եւս երիցուհեաց եւ սարկաւագուհեաց՝ թէպէտ եւ բազում անգամ արգելաւ կանոնօք, սակայն եւ այնպէս տեւեաց յարեւմուտս ցՀինգերորդ դար. իսկ յարեւելս տեւել եւս յերկարագոյն։ Տես ժողով Լաւոդիկեայ (364), կանոն 11։

6 Hypodiaconi, ὑπηρέται.

7 Ἀναγνῶσται.

8 Acoluthae.

9 Ostiarii.

10 Exorcistae.

11 Առ Եւսեբ. Զ. 43։

գորու ուրեմն երեւին, զառաջինն չունէին պաշտօն ինչ ի խորհուրդս եկեղեցւոյ, այլ առնէին տեսչութիւն ի մասս անդ եկեղեցւոյ ի ժամու առատութեանցն պաշտամանցն [1]։ Ընթերցողք՝ որ տպաքէն քան զայլ խոնարհագոյն կարգսն (քան զկէս սարկաւագացն եւս) երիցագոյնք են սկզբամբ [2], պահէին զգիրս սուրբս եւ ընթեռնուին հատուածս ինչ հրապարակաւ։ Արբանեակն էին սպասաւորք ուղեկիցք եպիսկոպոսաց եւ երիցանց, եւ յարեւմուտս եկեղեցւոջ միայն գտանէին։ Ի կարգ երդմնեցուցչաց, որոց յանձն էր դարման դիւահարացն, յորոց վերայ եւ ձեռս եւս դնէին՝ զի ազատեսցին յայսոց պղծոց, ընտրէին այր զօրաւորք հաւատովք։ Իսկ դռնապանին փոյթ ի վերայ ունէին դրանց եկեղեցւոյ, մանաւանդ՝ զի մի ոք անարժան ի ներքս մտանիցէ։

Եկեղեցիք շինից կամ գեղից շուրջ զքաղաքօք յարէին ի վիճակ [3] անդր եպիսկոպոսի քաղաքին [4]։ Իսկ ի հեռաւոր շէնսն լինէր կացուցեալ յեպիսկոպոսէն առաջնորդ երէց եւ սարկաւագ եւս, կամ առ ժամանակ մի եւ կամ միշտ [5]։ Երկրորդ կէս դարուն երրորդի ժողովն Անտիոքայ (269) եպիսկոպոսս եւս յիշէ լեալ ի սահմանակից շէնսն կամ գեղսն [6], եւ ժողովն Անկիւրայ (314) կարգէ կանոնս վասն չափոյ իշխանութեան քորեպիսկոպոսաց, (այս ինքն՝ չձեռնադրել երիցունս եւ սարկաւագունս)։ Այս եպիսկոպոսունք գիւղից կամ Քորեպիսկոպոսունք առաջնորդէին այլ եւ այլ ժողովրդոց ի տեղիս տեղիս գաւառաց, սակայն ընդ հպատակութեամբ եպիսկոպոսի քաղաքին, յորմէ կացուցեալն իսկ էին։ Թուի իմն հաւանութեան՝ թէ ոչ ամենեքին ի քորեպիսկոպոսաց երիցունք եւեթ էին եւ ոչ ամենեքին եպիսկոպոսունք։

Ընտրութիւն կղերականաց։ — Վասն ընտրութեան եպիսկոպոսաց եւ սարկաւագաց ժողովրդեան պատուէրեալ էր առաքելոցն եւ առանձինն իսկ Պաւղոսի՝ բազում զգուշութիւն եւ փոյթ ի վերայ ունել։ Այնք որ յերիս յաւագագոյն աստիճանս կղերականութեանն ամբառնալոց էին, լինէին ծանօթագոյնք կղերականաց եւ ժողովրդեանն՝ յորժամ անցանէինն նախ ընդ խոնարհագոյն աստիճանս կղերականութեան՝ զորոց ցայժմ ասացաւ։ Ժողովուրդն եւս ունէր մասն յընտրութեան ոչ միայն երիցանց եւ սարկաւագաց, այլ եւ խոնարհագոյն աստիճանաց, որպէս ինչ՝ ընթերցողաց [7]։ Իսկ ընտրութիւն եպիսկոպոսին՝ որպէս ի դէպ էր, առաւել իմն զգուշութեամբ կատարէր։ Սովորութիւն էր ընտրել ի նոյն պաշտօն զայս երեւելիս առաքինութեամբ եւ խոստովանողս, եւ յայսմ եւս ընտրութեան ունէր մասն ժողովուրդն [8], եւ կաց մնաց այս սովորութիւն ցորքան ժամանակս մեծ մասն եկեղեցւոյն յայնպիսեաց էր՝ որք ներքին իմն ճշմարիտ յօժարութեամբ դարձեալ էին ի քրիստոնէութիւն եւ զօգուտ եկեղեցւոյ եւեթ խնդրէին եւ ոչ զանձին ինչ շահ։ Սակայն սովին ոչ կախէր ամենեւին իշխանութիւն եպիսկոպոսին զկամաց ժողովրդեանն, այլ առաւել՝ վկայութիւն իմն էր այն վասն արժանաւորութեան ընտրելոյն, քան եթէ կատարեալ ինչ ընտրութիւն [9]։ Նմին իրի եւ չէր իսկ ժողովրդեանն իշխանութիւն ընկենուլ զնա, այլ պարտ էր հնազանդ լինել նմա՝ իբրեւ առաքելոյ ի Քրիստոսէ եւ կարգելոյ ի Հոգւոյն սրբոյ։ Երրորդ

1 Սահմանադր. Առաք. Ը. 11։
2 Տերտուղ. Վասն նախագր. Գլ. 41։ Յուստին. Ջատագով. Ա. 67։
3 Παροικία.
4 Յուստին. Ջատագով. Ա. 67։
5 Կիպր. Թղթ. 10։ Ժողով Իղլիբերիտեան (յամի 306) կանոն 77։
6 Ի Թղթի ժողովոյն Անտիոք. առ Եւսեբ. Պատմ. Է. Գլ. 30։
7 Կիպրիան. Թղթ. 34։
8 Կղեմ. Հռոմ. Թղթ. Ա. առ Կորնթ. 44. եւ Կիպրիան. Թղթ. 68։
9 Տես Կիպրիան. Թղթ. 34, 68. եւ Սահմանադր. Առաք. Ը. 4։

Digitized by Google

գոլոյ առաւելութիւն էր առ Հռոմայեցիս՝ զի յընտրութեան եպիսկոպոսին գացին մօտաւոր եպիսկոպոսունք նահանգին կամ մետրապոլիտն [1]։ Ի լինել երկպառակութեան՝ առնէր զորոշումն մետրապոլիտն, եւ ձեռնադրութիւնն լինէր երկուք կամ երիւք եպիսկոպոսօք [2]. ընտրութիւն կամ նստել եպիսկոպոսի ուրուք լինէր ծանուցեալ առ երեւելի եկեղեցիս թղթովք հաղորդութեան։

Հասակ կղերականաց։ — Վասն պահպանութեան կենաց կղերականաց յառաջին ժամանակսն ոչ ինչ գտի յայտնի. բազումք՝ ըստ օրինակի առաքելոյն Պաւղոսի ի ձեռացն վաստակոց կէին, սակայն բազում ա-րեք՝ այնպիսիկ որ ի հոգեւոր երախտիսն նոցա վայելէին, պահէին զնոսա պրովք իւրեանց ըստ չափոյ համեմատութեան աստիճանաց սահմանե-լոց առ քահանայս եւ ղեւտացիս հնոցն կտակարանաց եւ ըստ օրինակի վարդապետութեանն Քրիստոսի եւ առաքելոց [3]։ Մասն մի ընծայից ժո-ղովրդեան զոր ի միաշաբաթուջն եւ զոր ամսոյ ամսոյ տային, ծախէր ի սոյն պէտս մինչեւ չլինել պիտոյ թախանձեցուցիչ ինչ զգուշանալ՝ որ ուրեք ուրեք արգելեալ եւս էին [4]։

Ամուսնութիւն կղերականաց։ — Ցեսիլ իսկ եւ հանգամանք քահանայու-թեան պահանջէին ի քահանայից լինել չամուսնացեալ սրտիւ՝ այլ ամենայն մտօք եւ անձամբ լինել Քրիստոսի եւ գործել վասն եկեղեցւոյ նորա, զոր ապաքէն բազում իւիք արգելու ամուսնութիւն։ Նմին իրի եւ ա-ռաքեալ պատուիրէր Տիմոթեայ զերկամուսնոն (այս ինքն՝ զորս եր-կիցս ամուսնացեալ իցեն) ոչ միայն յեպիսկոպոսութիւն չմատու-ցանել, այլ եւ ոչ ի սարկաւագութիւն [5]։ Բայց ո՞ր կարիցէ ասել թէ ո՛ նախ զպատուէր անկնութեան կղերականացն եդ։ Այս ինչ միայն աւանդ տարակուսանաց է՝ թէ նախ քան զօրէնսդրութիւն անամու-սնութեանն՝ պահէր եկեղեցի զանամուսնութիւնն, եւ յայնժամ ուրեմն սկիզբն եղեւ զօրէնս անկնութեան կղերականաց ի քարտի գրելոյ՝ յոր-ժամ որ ի սրտին գրեալ էր այն ջնջել սկսաւ։ Աշտամնի Պաւղոս Սամո-սատացի (269) եւ նորին կղերականք՝ թէ ունին կանայս ի տունս (συνεί-σακτοι γυναῖκες)։ Եւ ըստ Որոգինեայ [6] եւ ըստ առաքելական կանոնացն՝ որք առանձինն զամուրութիւն երկրորդ եւ երրորդ դարուց նկարեն, պատուիրի իբրեւ պարտք բարձրագոյն կղերականաց (եպիսկոպոսաց, երիցանց եւ սարկաւագաց) անամուսնութիւն յետ ձեռնադրութեանն [7]. եւ ժողովն Եղւիբերիտեան (306) պահանջէ՝ զի որք յառաջ քան զձեռ-նադրութիւն ամուսնացեալ իցեն՝ ժուժկալեսցեն ի գործոց ամուսնու-թեան (յարեւմուտս), ապա թէ ոչ ընկեսցին [8]. եւ ժողովն Նէոկե-սարիոյ (314) (յարեւելս) ընկենու ի պատուոյն զերէցն որ յետ երիցութեանն ամուսնանայ [9], նոյնպէս եւ ժողովն Անկիւրիոյ (314) զսարկաւագն որ յետ խոստանալոյ ժուժկալութիւն ի ժամանակի ձեռ-նադրութեանն՝ յետոյ ամուսնանայ [10]։ Այլ իսկզբան չորրորդ դարու ասա անդ եղան խիստ հրամանք փոխանակ առաջին կամաւական ընդու-նելութեան կուսութեանն համեմատ սրբասէր ոգւոյ եկեղեցւոյ, որպէս յետոյն տեսցի։

1 Կիպրիանոս։

2 Կանոնք Առաք. կան. 1. ժողով Ա-րելատ. կան. 20։

3 Մատթ. Ժ. 10։ Ղուկ. Ժ. 7։ Ա. Տիմ. Ե. 17։ Ա. Կորնթ. Թ. 13. "Ո՞չ գիտէք եթէ որ ի տաճարին գործեն՝ ի տա-ճարէ անտի ուտեն, եւ որ սեղանոյն պաշ-տօնեայք են՝ ի սեղանոյ անտի վայելեն, նոյնպէս եւ Տէր հրաման ետ՝ որոց զաւետա-րանն աւետարանեն՝ յաւետարանէ անտի կեալ"։ Տես Կիպրիան. Թղթ. 66։

4 Կանոնք Առաք. կան. 6։

5 Ա. Տիմոթ. Գ. 2, 12. տես եւ Ե. 9։

6 Ճառ ԺԷ. ի Ղուկ.։

7 Կան. 5 եւ 25։

8 Կանոն Եղւի. 33։

9 Կանոն 1։

10 Կան. ժող. Անկիւր. 10։

Digitized by Google

## 50

Միութիւն եւ համերաշխութիւն։ — Յայտ իմն է եթէ առ առաքելովք առանձինն եկեղեցիք էին ստէպ հաղորդութեամբ ընդ միմեանս, եւ ինքեանք առաքեալքն էին կենդրոնք միութեան եւ կապք հաղորդութեան հաւատացելոց, կամ ինքնին իսկ շրջելով զնոքօք եւ կամ առաքելով զիւրեանց աշակերտս, սակայն յօրինեալ ինչ կարգ միաւորութեան առանձինն եկեղեցեաց ընդ միմեանս չգոյր ի միջի։ Աշակերտք առաքելոցն՝ Կղեմէս Հռոմայ, Իգնատիոս Անտիոքայ եւ Պողիկարպոս Զմիւռնայ եպիսկոպոսունք ի բազում դէպս թղթովք եւ ճանապարհորդութեամբք եղեն զօդք արտաքին հաղորդութեան եկեղեցեաց։ Հոգին սուրբ որով կեայ եւ կենդանութիւն կրէ եկեղեցի, որ եւ զպատշաճն հաւատացելոցն թելադրէ՝ պնդեաց միաւորեաց զնոսա տակաւ ի մի բոլոր մարմին, ոչ միայն յիւրաքանչիւր վիճակի ի ձեռն իւրաքանչիւր եպիսկոպոսի՝ այլ եւ արտաքոյ քան զսեպհական վիճակ ընդ այլոց վիճակաց։ Հաղորդութիւն միաւորութեան հեռաւոր եկեղեցեաց երթայր եւ լինէր սերտագոյն՝ մինչեւ առաւել քան զառաւել հաստատէին քրիստոնեայք համարել զմիմեանս անդամս միոյ միայնոյ մարմնոյ եւ զանցս ուրախութեան եւ տրտմութեան հաղորդէին իրերաց թղթով կամ հրեշտակութեամբ։

Իրենէոս եւ Տերտուղիանոս զնոյն միաւորութիւն ցուցանէին ընդդէմ հերետիկոսաց՝ իբրեւ անվրէպ կարեւոր առ ի ծանօթութիւն հասարակաց վարդապետութեան եկեղեցւոյ, եւ առաւել քան զնոսա Կիպրիանոս ի խորիմաց գիրսն որ Վասն միութեան եկեղեցւոյ ընդդէմ Նովատեանցն յասելն՝ թէ “Զոր օրինակ արեգական բազում ճառագայթք են, այլ լոյսն մի է եւ ծառոյ ոստք բազումք, այլ զօրութիւնն մի՝ որ յարմատին հաստատեալ կայ, նոյնպէս տէրունական եկեղեցի ընդ ամենայն համօրէն աշխարհ զճառագայթս լուսաւորութեանն կարկառէ, սակայն մի միայն է լոյսն որ ընդ համայն տարածանի եւ ընդ բնաւ սփռի եւ միութիւն մարմնոյն չքայքայի։ Զոր օրինակ ճառագայթն զանուէ արեգականն կախեալ կայ, եւ ոստն ըծառոյն եւեթ՝ այսպէս ճշմարիտ քրիստոնեայ զեկեղեցւոյ կախեալ կայ. որ ի հաղորդութեան անդ չէ՝ օտար է, պիղծ է, չունի մասն յեկեղեցւոջ Քրիստոսի, զի որ զեկեղեցի մայր չունի՝ նա եւ զԱստուած հայր չունի. եւ մարտիրոսութիւն իսկ այնպիսւոյն որ բաժանեալ յեկեղեցւոյ իցէ՝ անօգուտ է„։

Նոյն հաղորդութիւն կատարէր արդեամբք այսպէս։ Որպէս իւրաքանչիւր հաւատացեալք միոյ կամ բազում եկեղեցեաց յարեալ միանային յեպիսկոպոսն իւրեանց, այսպէս եւ այլեւայլ վիճակք որ մերձ առ միմեանս էին՝ միաւորէին ի մեծագոյն ինչ միաբանութիւն, ըստ յաճախ սովորութեան առնելով իւրեանց կենդրոն զգլխաւոր քաղաք նահանգին որ քաղաքային մայրաքաղաքն կոչէր [1]։ Մայրաքաղաքն անուն առեալ ի չորրորդ դարու վաղ անցեալ եւ յեկեղեցական սովորութիւն, եւ անուանել եպիսկոպոսի մայրաքաղաքին՝ մետրապոլիտ (որ թարգմանեալ կոչի՝ մայրաքաղաքացի)։ Զառաջին օրինակ այսպիսի մետրապոլտական միաւորութեան՝ յարեւելս ցուցանէ եկեղեցին քրիստոնէից դարձելոց ի հրէութենէ յԵրուսաղէմ, որք էին ի հաղորդութեան միաբանութեան ընդ եկեղեցեացն Գալիլեայ, Հրէաստանի եւ Սամարիայ [2]։ Յետ կործանմանն Երուսաղեմի առ Ադրիանու՝ այն իշխանու-

1 Տես Ժող. Անտիոք. կան. 9։ 2 Տես Եւսեբ. Գ. 38։

Digitized by Google

թիւն մետրապօլտական անց ի Կեսարիա Պաղեստինացւոց. երկրորդ մետրապօլտական եկեղեցի վասն Հրէական եւ Հեթանոսական քրիստոնէից էր Անտիոքայն, եւ յաւելաւ միւս եւս երրորդ մետրապօլտական եկեղեցի Աղեքսանդրիայն: Չորրորդն յարեւմուտս Հռոմ էր՝ ընդ որում միաւորեալ էին եկեղեցիք Միջին եւ Ստորին Իտալիոյ, կղզեացն Սարդինիոյ, Կորսիկոյ եւ Սիկիլիոյ [1]: Բաց յերից աստի ի մեծ մետրապօլտական քաղաքաց կամ եկեղեցական մայրաքաղաքաց Հռոմայ, Անտիոքիոյ եւ Աղեքսանդրիոյ՝ էին երեւելի եկեղեցիքն Կարքեդոնի, Եփեսոսի եւ Կեսարիոյ Գամրաց:

Այսպիսի միաւորութիւն այլ եւ այլ եկեղեցական վիճակաց ընդ միով մետրապօլտաւ՝ լինէր օգուտ մեծ յերեւելի իրս եկեղեցւոյ, որպիսի ինչ ընտրութիւն եպիսկոպոսաց, ի կանոնաւոր իմն հաղորդութիւն ի մէջ եկեղեցեաց՝ զգացուցանելով միմեանց զեկեղեցական ինչ դէպս, զընտրութիւն նորոց եպիսկոպոսաց (ի ձեռն թղթոց հաղորդութեան), զմերժումն կամ զնզովել ոմանց յեկեղեցւոյ. աստուստ էր եւ սովորութիւն թղթոց ընծայութեան կամ յանձնարարութեան, որովք արտաքին միութիւնն եկեղեցւոյ առաւել յայտնագոյն ի մէջ գայր:

Բայց առաւել քան զամենայն ի սոյն արտաքին միութիւն նպաստ լինէին գաւառական կամ նահանգական սինհոդոսքն: Առաջին սինհոդոսք եղեն ի Յունաց աշխարհին [2], ապա ի նահանգին Ասիոյ ընդդէմ Մոնտանեանց, եւ վասն պասքի տօնին զատկաց յերկրորդում կէս երկրորդ դարու. իսկ յԱփրիկէ յամի իբրեւ 200 գահերիցութեամբ Ագրիպինեայ եպիսկոպոսի՝ 70 եպիսկոպոսք: Յորժամ մետրապօլտական միաբանութիւնն հաստատուն իմն օրինակաւ յօրինեցաւ՝ յայնժամ ապա եւ սինհոդոսքս հաստատուն իմն կերպարանս առին եւ կանոնաւոր չափ ժամանակի, մանաւանդ ի Յունաց աշխարհին իսկզբան երրորդ դարու. քանզի արժան էր ամ յամէ միանգամ կամ երկիցս ժողովել ժողով գաւառական՝ յորում գահերիցութեամբ մետրապօլտին լինէր խորհուրդ վասն եկեղեցական իրաց [3]:

2. Որպէս եպիսկոպոսն էր կէտ միութեան եկեղեցւոյն իւրոյ եւ մետրապօլտին՝ եկեղեցական վիճակաց կամ եկեղեցեաց նահանգի իւրեք, առաւել եւս հարկ էր ըստ [illegible] կարգի եւ վասն մետրապօլտացն կամ վասն համօրէն եկեղեցւոյ մի կէտ միութեան կամ վէմ անկեան, յորոյ վերայ հանգչիցի շէնք կազմած համօրէն եկեղեցւոյ: Սոյն կէտ միութեան էին եպիսկոպոսունքն Հռոմայ: Քանզի Պետրոս՝ որում եւ վարդապետն զառաւելութիւն իշխանութեան քան զայլ աշակերտակիցսն (ըստ առաւելութեան սիրոյ նորա քան զայլոց աշակերտակցացն) ի սմին մայրաքաղաքի հեթանոսութեան հաստատեաց զաթոռ եպիսկոպոսութեան իւրոյ՝ ըստ վկայութեան Իգնատիոսի Աստուածազգեցի (†107), Դիոնիսեայ Կորընթացւոց եպիսկոպոսի (150), Իրենէոսի (†202) Տերտուղիանեայ եւ համօրէն իսկ հնութեան: Եւ այսպէս այն առաւելութիւն իշխանութեան կամ Գահերիցութիւնն՝ հարկ էր թէ ըստ Աստուծոյ իսկ վճռոյն անցանէր ի յաջորդսն նորա՝ յեպիսկոպոսունս Հռոմայ. քանզի ոչ եթէ առաւել ինչ կարօտ էին այլք յառաքելոց ունել իւրեանց զգլուխ, քան յաջորդքն նոցա (այս ինքն՝ եպիսկոպոսունքն): Կանխագոյն իսկ վաղվաղակի երեւեցաւ այս գլխաւորութիւն ի գործս Կղեմայ եպիսկոպոսի Հռոմայ (գործակցին Պաւղոսի-

1 Provinciae suburbicariae.
2 Եւսեբ. Ե. 16:
3 Տերտուղ. վասն պահոց. 13: Փիրմիղիան. Թուղթ առ Կիպր.: Կանոնք Առաքելոց, կան. 36:

Digitized by Google

կոչէին [1], որք աստիճան յաստիճանէ գային ի կարգ Հաւատացելոց [2] ։ Սկիզբն ընդունելութեան երախայութեանն՝ որ բազում անգամ յերկարէր ամս բազումս, լինէր ձեռն դնելով եւ առնելով խաչանշան ։ Անդէն իսկզբան չորրորդ դարու գտանեմք վաղ կարգեալ աստիճանս երախայից այսպէս. 1. Ունկնդիրք [3], այս ինքն՝ որոց համարձակ էր ի ժամու ատենադրէն պաշտամանն միայն զվարդապետութիւն եպիսկոպոսին եւ ընթերցուած գրոց սրբոց լսել. 2. Անկեալք ի ծունր [4] որք յետ վարդապետութեանն՝ կային ծնկին եւ ի ժամու աղօթիցն եւ ընդունէին ի գլուխ զօրհնութիւն եպիսկոպոսին՝ որ դնէր ձեռս ի վերայ նոցա. 3. Լուսաւորեալք [5] որք յետ կատարելոյ փորձութեանն՝ յառաջին մերձաւոր տօնական ժամանակի մկրտութեան՝ ընդունելոց էին կնիք. այժմ ուրեմն աւանդեալ լինէր նոցա հանգանակն, աղօթքն տէրունական (զոր միայն յետ մկրտութեան հրաման էր աղօթել), խորհուրդքն՝ Երրորդութեան, Մարմնաւորութեան եւ մեկնութիւն զօրութեան խորհրդոց եկեղեցւոյ ։ Յետ բազում քննութեանց եւ տալոյ լուսաւորելոցն կամ ընտրելոցն հրաժարումն [6] ի սատանայէ, ի գործոց նորա եւ ի հրեշտակաց նորա՝ կատարէր ի նոսա մկրտութիւնն երիցս ընկղմելով մարմնոյն ի ջուր (զոր օրհնէին եւս յառաջագոյն [7]), իսկ ի վերայ տկարաց սրսկելով կամ հեղլով միայն ի գլուխն՝ յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ ։ — Բայց տակայն ըստ հանգամանաց դիպաց կարճեալ լինէր եւ ժամանակ երախայութեանն, եւ շնորհեալ եւս էր մկրտութիւն մանկանց [8], նա աւանիկ եւ սիւնհոդոսն Կարքեդոնի (252) պատուիրէր զնոյն, հրամայելով չանցուցանել զօրն ութերորդ յետ ծննդեան նոցա առանց մկրտութեան. չզլանալ ումեք ի մարդկանէ ծնելոյ զայն ողորմութիւն եւ շնորհս Աստուծոյ [9]. բայց նմին հակառակ ի վերջ կոյս երրորդ դարու եւ սովորութիւն չարաչար՝ յապաղել զմկրտութիւն մինչեւ ցծերութիւնն, նա մինչեւ ցժամ իսկ մահուն ։ — Զմկրտութիւնն ըստ յաճախ սովորութեան միայն եպիսկոպոսն տայր. երիցունք եւ սարկաւագունք՝ նորա եւեթ յանձնարարութեամբ, բայց ի դէպս հարկի՝ իշխանութիւն էր եւ ժողովրդականաց մկրտել [10] ։ Երկրորդ դարու անդ յիշին եւ ընկալուչք կամ երաշխաւորք [11] (կնքահայրք կամ կնքամարք) իբրեւ երաշխաւորք հաւատոց մկրտելոյն եւ սկիզբն նոցա տարքէն ի ժամանակէ առաքելոցն է ։ — Մկրտեալքն ագանէին հանդերձ սպիտակ [12] զաւուրս ութ նշանակ աւետարանական անմեղութեան ։ Յառաջին ժամանակսն յամենայն աւուրս տային մկրտութիւն, բայց մանաւանդ ի միաշաբաթւոջ. այլ յետոյ սահմանեցան ժամանակք վասն հրապարակաւ մկրտելոյ՝ տօնն Զատկի եւ Պենտակոստէից, իսկ առ Յոյնս եւ առ արեւելեայս եւ տօնն եւս Յայտնութեան [13] ։

Մ՚կրտեալքն ընդունէին իսկ եւ իսկ եւ զլրումն Հոգւոյն սրբոյ ի ձեռն խորհրդեան Դրոշմի [14] ։ Տուեալ լինէր խորհուրդս օծմամբ իւղոյ

1 Κατηχούμενοι.
2 Πιστοί, ἀδελφοί.
3 Ἀκροώμενοι, audientes.
4 Γονυκλίνοντες, genuflectentes.
5 Φωτιζόμενοι, βαπτιζόμενοι, Competentes, electi, լուսաւորեալք. ընտրեալք ։
6 Ἀπόταξις.
7 Կիպրիան. Թուղթ 70 ։
8 Իրեն. ընդդ. հերես. Բ. 22. Ե. 15 ։
9 Թէպէտ եւ Տերտուղիանոս խրատ տայցէ՝ չյապաղել զմկրտութիւն մանկանց ։
10 Տերտուղ. Վասն Մկրտութեան. 18 ։
11 Ἀνάδοχοι, χειραγωγοί, susceptores, sponsores, fideijussores.
12 Pallium, կրկնոց. ուստի էր բանաւ զու հեթանոսացն զքրիստոնէից դարձելոց (a toga ad pallium, ի պատմուճանէ իշխանութեան՝ ի կրկնոցն) ։
13 Տերտուղ. Վասն Մկրտ. 19 ։
14 Σφραγίς, μύρον, βεβαίωσις τῆς ὁμο-

Digitized by Google

ինչ ընդդէմ Ստեփաննոսի, յորս Կիպրիանոս հակառակ անձին իւրում եւ առաջին վարդապետութեան իւրում զանձն ցուցանէ։ Առաւել եւս դառնութեամբ գրեաց Փիրմիղիանոս առ Կիպրիանոս զՍտեփաննոսէ, քանզի եւ նմա սպառնացեալ էր քահանայապետն սուրբ։ Սակայն հրաման քահանայապետին՝ ըստ պատմելոյ Ս. Դիոնիսեայ եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց (առ Եւսեբեայ)՝ դարձոյց զբաղում արեւելեան եկեղեցիս ի միութիւն աւանդութեան եկեղեցւոյն Հռոմայ։ Դադարեաց եւ վտանգ հերձուածոյ մարտիրոսութեամբ Ս. Կիպրիանոսի եւ նորին իսկ Ստեփաննոսի, եւ յաջորդք սորա ի քահանայապետութիւն՝ չժամանեցին լուծանել զվիճումն՝ զորմէ լռութիւն էր այնուհետեւ, մինչեւ յետոյ ի ժողովն Արեղատայ (314) որոշեցաւ աւանդութիւն եկեղեցւոյն Հռոմայ՝ թէ մկրտութիւն հերետիկոսաց վաւերական է եթէ յանուն Երրորդութեան լեալ իցէ [1], եւ ժողովն Նիկիայ (325) զնոյն հաստատեալ յաւել եւ զայս թէ մկրտութիւնն Պաւղիննեանց անզօր է [2]։

Խոստովանութիւն կամ Ապաշխարութիւն։ — Որ միանգամ յետ մկրտութեան անկանէին ի մեղս, եթէ մեծամեծ ինչ յանցուցեալ էին՝ որոշէին յեկեղեցական հաղորդութենէ, եւ կոչէր այն Նզովք, որ ըստ յանցանացն մեծ էր եւ փոքր [3]։ Սակայն ըստ իշխանութեանն կապելոյ եւ արձակելոյ որ էր աւանդեալ առաքելոցն ի Քրիստոսէ՝ կայր յեկեղեցւոջ եւ վասն այնպիսեացն եւս խորհուրդ ապաշխարութեան [4] իբրեւ "երկրորդ եւ վերջին յոյս"։ Այլ եթէ առաջին ընդունելութիւնն յեկեղեցի (մկրտութիւնն) ընդ խիստ փորձովք էր՝ առաւել եւս վերստին ընդունելութիւնն դժուարին (իբրեւ աշխատաւոր ինչ մկրտութիւն) [5]։ Ի սոյն ընդունելութիւն՝ մանաւանդ վասն ծանր մեղաց [6], չէր բաւական խոստովան լինել զմեղս առաջի Աստուծոյ եւ տրտմանալ եւ ուղղել զանձն, այլ պահանջէր եւ խոստովանութիւն ոչ միայն գործովք՝ այլ եւ խորհրդովքն գործելոց՝ առաջի քահանայից, ոչ միայն վասն սահմանադրութեանն Քրիստոսի՝ այլ եւ վասն ուսանելոյ եւ բժշկելոյ ի քահանայէն [7]։ Այլ բաղում անգամ՝ եթէ այնպէս պատշաճ թուէր, կամ սեպհական կամօք ապաշխարողին եւ կամ հրամանաւ քահանային լինէր առաջի քահանայից կամ ժողովրդեան հրապարակաւ ինչ խոստովանութիւն մեծամեծ ինչ մեղաց որ հրապարակածանօթ լեալ իցեն, եւ այս՝ իբրեւ պայման ընդունելոյ զնա ի հաղորդութիւն։ Բայց ի խոստովանութենէ աստի եւ այլ եւս եկեղեցական պատիժք ի վերայ դնէին, այնպէս՝ զի որպէս առաջին ընդունելութիւնն ի մկրտութեան՝ այսպէս եւ վերստին ընդունելութիւնն լինէր աստիճան յաստիճանէ [8]։ Թէպէտ եւ առ սակաւ սակաւ յօրինեցան հաւասար

1 Արեղատ. կան. 28։

2 Կան. 19. Տես ի Պատմութեան ժողովոց, Հ. Պօղ. Վ. Յովհաննէսեան, էջ 52։

3 Ἀφορισμός, καθαίρεσις.

4 Ἐξομολόγησις, exomologesis, խոստովանութիւն։

5 Laboriosus quidam baptismus. — Այս ընդունելութիւն կոչէր խաղաղութիւն, տալ խաղաղութիւն (pax, pacem dare), հաշտութիւն (reconciliatio), գալ ի հաղորդութիւն ձեռն դնելով եպիսկոպոսին եւ կղերականացն (venire ad communionem manu ab episcopo et clero imposita.

6 Ἁμαρτήματα θανατοφόρα, մեղք մահաբերք։

7 Տերտ. վասն ապաշ. Թ. Ժ. ԺԴ։ Կիպր. վասն անկելոց։ Որոգ. Մեկն. Ելից ճառ Ջ. 9. Մեկն. Ղեւտ. ճառ Բ. 4. Գ. 4. Մեկն. ԼԷ. Սաղմ. ճառ Բ. 6. Վասն աղօթ. 28։

8 Որ էին չորք՝ πρόκλαυσις, ἀκρόασις, ὑπόπτωσις, σύστασις; flentes, audientes, substrati, consistentes; այս ինքն՝ հեծեծութիւն, ունկնդրութիւն, գետնատարած կալ, կալ ի միասին (ընդ հաւատացելոց)։ Առաջին աստիճան յիշատակ այսոցիկ՝ նախ առ Ս. Բարսղի († 379) թուղթ 217։ Յայս հային եւ բանք քարոզին ի պատարագամատուցին մերում, յասելն՝ "մի ոք . . . յապաշխարողաց" այլովքն հանդերձ։

Digitized by Google

կարգք ապաշխարութեան ի համօրէն եկեղեցւոջ, սակայն վաղ ուրեմն գրեթէ ամենայն ուրեք միաբանութիւն էր, զի շնացողքն ծանօթք հրապարակաւ, նուիրական կուսանք անկեալք եւ այլ եւս նոյնպիսիք մինչեւ ցմահ ապաշխարեացեն. իսկ կռապաշտութիւն, պղծութիւն, շնութիւն որ կրկին եւ երեքկին լեալ իցեն՝ երբեմն եւ ոչ ի մահուն ընդունէին լուծումն յապաշխարութեան կարգէ, բայց այս ոչ ամենայն ուրեք դիպէր եւ ոչ առանց ստգտանաց անցեալ [1]:

Յառաջինն միայն եպիսկոպոսն առաջնորդէր կարգաց ապաշխարութեան եւ նա ընդունէր զմեղաւորսն, մանաւանդ յառաջնում չորեքշաբաթւոջ զատկական պահոց՝ աղօթիւք եւ ձեռն դնելով, եւ աստուստ թուի սովորութիւն ցանելոյ արեւմտեայց ի նմին աւուր մոխիր ի գլուխ հաւատացելոցն: Բայց առ սաստիկ հալածանօքն Դեկոսի՝ քանզի բազումք էին որ ի հաւատոց անկան, ստիպեցան եպիսկոպոսունքն կարգել առանձինն երէց ապաշխարութեան [2]: Եթէ եռանդն ապաշխարողացն ճշմարիտ եւ հանապազորդեան էր, եւ մանաւանդ եթէ ջանային նոքա ի դարձ հեթանոսաց՝ յայնժամ երբեմն լինէին կարճեալ եկեղեցական պատիժքն սահմանեալք [3]. սոյն դիպէր եւ վասն տկարութեան մարմնոյ եւ վտանգի մահու, բազում անգամ եւ վասն բարեխօսութեան մարտիրոսաց եւ խոստովանողաց:

Նոյնպիսի միջին իմն ճանապարհաւ զոր ընթանայր կաթուղիկէ եկեղեցի յիրս ապաշխարութեան իբրեւ ընդ մէջ խստութեան եւ թուլութեան՝ գրգռեցան հերձուածք նախ ի Կարքեդոն (ի ձեռն Նովատեայ), ապա ի Հռոմ (ի ձեռն Նովատիանեայ) եւ յետոյ յԵգիպտոս (ի ձեռն Մելետեայ):

Ի Կարքեդոն յորժամ առ Դեկեայ հալածանօք անկեալքն (մանաւանդ մուրհակականքն եւ որք խունկս արկեալ էին [4]) եկեալ բազմամբոխ անկանէին առ խոստովանողսն մերձ ի մարտիրոսութիւն, եւ ընդունէին ի նոցանէ գիր յանձնարարութեան զի իսկ եւ իսկ վաղվաղակի ընկալցին յեկեղեցական հաղորդութիւն [5], ի վերայ հասեալ կայր վտանգ պահպանութեան ապաշխարողական կարգաց եկեղեցւոյ. յայն սակս սկսաւ ընդդէմ դառնալ այնպիսի զեղծմանց Կիպրիանոս անդէն ի տեղւոջէ աքսորանացն, եւ յետոյ ժողովով: Այլ երիցունք հինգ որք վաղ ուրեմն ի ժամանակի ընտրութեան Կիպրիանոսի հակառակ էին նմա, սկսան ստգտանել զնա իբրեւ խիստ ոք եւ ամբարտաւան: Մի ոմն ի նոցանէ էր Նովատոս որ միաբանեալ ընդ Փեղիկիսսիմոսի սարկաւագի առն մեծատան՝ յարեցոյց զբազումս յանկելոցն յինքն, եւ կամէր ստանալ իւր կուսակիցս եւ ի Հռոմ:

Բայց աստ ուրեմն ի Հռոմ ամենեւին հակառակ դէպք ի հանդիսի անցանէին: Ոմանք ընդդէմ դառնային ընտրութեան Կոռնելեայ յեպիսկոպոսութիւն Հռոմայ, իբրեւ այն՝ թէ առ անկեալսն յոյժ թուլութեամբ վարի: Ընտրեցին սոքա իւրեանց եպիսկոպոս հակառակ եպիսկոպոսին՝ զՆովատիանոս (251) որ ամբարտաւանութեամբ յարեաւ ընդդէմ անկելոցն ի հալածանս եւ ասէր թէ չիք նոցա յոյս փրկութեան, նա եւ ոչ յայնժամ յորժամ զամենայն առնիցեն որ ինչ պիտոյ իցէ առ ի միամիտ դարձ եւ յանխարդախ խոստովանութիւն. քանզի որ

1 Կատարեալ գիրք կանոնաց ապաշխարութեան ժամանակաց այսոցիկ են՝ Կանոնք Առաքելոց, ժողովքն Իլլիբերեան (305), Անկիւրայ (314), Արեղատայ (314), Թուղթ զկանոնս ժողովոյն Կարքեդոնի վասն անկելոց առ Կիպրիանու:

2 Presbyter poenitentiarius.

3 Indulgentia, Ներողութիւն:

4 Libellatici, Thurificati.

5 Libelli pacis.



Digitized by Google

կռոցն զոհիցէ եւ կամ ի ծանր ինչ մեղս անկանիցի՝ չկարէ այնուհետեւ մտանել ի հաղորդութիւն եկեղեցւոյ, քանզի ճշմարիտ եկեղեցի միայն ի սրբոց կայ կազմեալ: Այլ Նովին հակառակ ուսուցանէր կաթուղիկէ եկեղեցի թէ իշխանութիւն արձակելոյ ձգի յամենայն իսկ մեղս: Բայց այն իսկ էին զարմանք զի եւ Նովատոս միաբանեցաւ ընդ Նովատիանոսի, եւ այսպէս յօրինեցաւ ի Հռոմ հերձուած անուանեալ եկեղեցի Սրբոց[1] իբրեւ ընտրելով իւր զանձինս ի կաթուղիկէ եկեղեցւոյ զոր անսուրբն եւ արատեալ համարէին. չհամարէին նոքա եւ զմկրտութիւնն տուեալ ի կաթուղիկէ եկեղեցւոջ վաւերական եւ կրկնէին իսկ:

Թէպէտ եւ Կիպրիանոս ժողովովք իւրով (251) եւ նզովելովք զթուլացեալսն հանդերձ եպիսկոպոսաւն նոցա Փորտունատաւ խափանեաց զհերձուածն Փեղիկիսիմեայ ի Կարքեդոն, սակայն խմբակն Նովատիանոսք ի Հռոմ առին հաստատութիւն եւ տեւեցին ժամանակս բազումս, մինչ զի մեծն Ամբրոսիոս եպիսկոպոս Միլանոյ եւ Պակիանոս եպիսկոպոս Բարկեղոնայ տակաւին կռուէին ընդ Նովատեանս:

Իսկ յԵգիպտոս Մելետիոս եպիսկոպոս Լիկոպոլեայ չառնոյր յանձն զանկեալսն ի հալածանս Դիոկղետիանոսի յառաջ քան զժամանակ խաղաղութեան եկեղեցւոյ ընդունել յապաշխարութիւն, այլ մերժապաղեան Նորա Պետրոս եպիսկոպոս Աղեքսանդրիոյ, այր գթած եւ հայր հասարակաց՝ ընդդէմ գտանիւր նմա զի մի ակաւ եղբարքն անկեալքն ի բաց կայցեն եւ մնասցեն առանց բժշկութեան. յայնժամ յարոյց Մելետոս հերձուած (306) եւ սկսաւ յեկեղեցիսն որ ի նմա յարեալ էին ի Վերինն Եգիպտոս՝ վարել մետրապոլիտական իշխանութեամբ:

Հաղորդութեան խորհուրդ:— Որպէս առ առաքելական ժամանակօքն, այսպէս եւ այժմ խորհուրդ հաղորդութեանն էր կենդրոն համօրէն պաշտամանց, եւ կատարէր այն յամենայն տօնական աւուրս: Ըստ յայտնի իսկ վկայութեանց Իգնատիոսի[2], Յուստինեայ, Տերտուղիանեայ[3], Իրենեայ[4] եւ Կղեմայ Աղեքսանդրացւոյ[5] հաւատայր համօրէն եկեղեցի թէ մարմին եւ արիւն Քրիստոսի է հաղորդութիւնն: Թէպէտ եւ Որոգինէս երբեմն դեդեւի իմն վասն առաւել սիրոյն զոր ունի նա միշտ յայլաբանական մեկնութիւն գրոց, սակայն Յուստինոս յառաջ իսկ քան զնա յայտնի ճառէ զգոյացական փոփոխութենէ[6] հացին ի մարմին եւ բաժակին յարիւն Քրիստոսի[7]: Նոյնպէս արձանագիր ինչ գրեալ յունարէն (որ գտաւ ի Գաղիա յամի 1839 յՈթէոն քաղաքի) եթէ կարի անագան՝ յերրորդ դարէ՝ ցուցանէ նոյնպէս զգոյացական փոփոխումն[8]: Զայս ցուցանէ եւ լռութիւնն որով պահէին քրիստոնեայքն զսովորութիւնս եւ զձեւս հաղորդութեանն ի հեթանոսաց, եւ զի զերախայսն ի բաց որոշէին ի կցոր-

1 Καθαροὶ, cathari.

2 Թուղթ. առ Զմիւռն. «Զերծեն ի Գոհութենէ (կամ ի խորհրդոյ հաղորդութեան) եւ ի պաղատանաց (Կարծականքն) այնու զի չդաւանին թէ Գոհութիւնն է մարմին Կենարարին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ կրեաց վասն մերոց մեղաց.» Է. առ Եփես. Ի. «Զմի հաց բեկանելով, որ է դեղ անմահութեան, անդեղեայ ընդդէմ մահու.» առ Փիլադելփ. Դ. «Փութացարուք միով Գոհութեամբ վարել. քանզի մի է մարմին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ մի բաժակ ի միութիւն արեան նորա:»

3 Վասն աղօթից. Թ. «Եւ այսպէս ի պատարագութենէ Տէրունական մարմնոյն կերակրի, այս ինքն ի Գոհութենէն»: Վասն յարութ. մարմ. Ը. «Մարմինն զմարմին եւ զարիւն Քրիստոսի ուտէ, որպէս զի եւ ոգին զմայլեալ լցի Աստուծով»: Վասն Մկրտ. ԺԶ:

4 Ընդդէմ հերձու. Ե. Բ. Հ. Բ. Յ. Դ. 18:

5 Դաստիարակ. Ա. 6. Բ. Բ:

6 Μεταβολὴ. Փոխարկութիւն:

7 Պատասխ. Ա. 66:

8 Զի կան ի նմա այսպիսի ինչ բանք «Պերակրեա զաղի քո, եղբայր: Ընկալ զկերակուր Փրկչին սրբոց, զքաղցրն իբրեւ զմեղր, կեր եւ արբ՝ կալեալ զձուկնն (այս ինքն՝ զՔրիստոս) յերկոսին ձեռս»: Քանզի յառաջին ժամանակն զմարմին Քրիստոսի տային հաւատացելոցն ի ձեռս:

Digitized by Google

գութենէ խորհրդոյն, եւ զի հեթանոսք եւս ամենայն լինէին դքրիս-տոնէից վասն մարդակերութեան[1] :

Պատարագ : — Վաղ իսկ Ս. Իգնատիոս զգործ խորհրդոյ հաղորդու-թեան անուանէ զոհ կամ պատարագ[2], առաւել յայտնագոյն Իրենէոս[3], կատարելագոյն քան զամենայն Կիպրիանոս[4] : Կատարումն պատարագի ՚ի ժամանակս Ս. Յուստինեայ միայն լինէր առաւօտին այսպիսի ինչ պարզ օրինակաւ : Յետ բազում աղօթից ընթերցեալ լինէին հատուածք ՚ի գրոց սրբոց, եւ ապա եպիսկոպոսն խօսէր ճառ ինչ : Յառնէին հաւա-տացեալքն միաբանգամ յաղօթս առ Աստուած, ապա տային միմեանց համբոյր սիրոյ եւ խաղաղութեան, եւ յետ այնորիկ մատուցեալ լինէր եպիսկոպոսին "հաց եւ բաժակ մի գինի՝ խառնեալ ջրով„ եւ նա բար-բառէր ՚ի վերայ նոցա զբանս օրհնութեանն զոր առաց Քրիստոս ՚ի վեր-ջին ընթրիսն ՚ի վերայ հացին եւ գինւոյ "Այս է„ այլովքն հանդերձ. եւ ժողովուրդն տայր պատասխանի՝ Ամէն : Ապա մարմինն եւ արիւնն Քրիս-տոսի լինէր տուեալ հաւատացելոցն ամենեցուն[5] : Հիւանդացն եւ որոց ՚ի բանտի էին առնէր սարկաւագն : Բազումք ՚ի քրիստոնէից որ հեռի ինչ ճանապարհ երթալոց էին՝ առնէին ընդ իւրեանս : Զմնացեալն ՚ի կատա-րած կոյս երրորդ դարու բազում իւիք զանազանեալք ՚ի կարգ եւ ՚ի յօրի-նուածութիւն եկեալ զդաշտոն պատարագին, որպէս երեւի ՚ի պատարա-գամատուցի անդ առաքելական սահմանադրութեանցն[6] յորում բազում գեղեցիկ աղօթք եւ ծէսք սահմանեալ կան, եւ էական մասունք կատարման պատարագի՝ զորս յետոյն տեսանեմք, բազում ուրեք բան առ բան գտանեմք : Զհաց եւ զգինի հաղորդութեանն բերեալ տային հաւատա-ցեալքն. մասն մի ՚ի սոցանէ որոշեալ լինէր վասն խորհրդոյ հաղորդու-թեան եւ միւս մասն վասն Ագապաց[7], որք յայնժամ ուրոյն եւ զատ ՚ի հաղորդութենէ յերեկոյն ժամու կատարէին : Զմնացեալսն յագապաց բաշխէր եպիսկոպոսն աղքատաց : Այլ ՚ի չորրորդ դարու վասն ազգի ազգի զեղծմանց ամենեւին արգելին զագապսն ժողովք : — Ընդ առ-աւօտեղէն պաշտամանն յաճախեալ էին եւ երգք :

## 52

Տօնք, Պահք : — Ըստ առաքելոյն վարդապետութեան բազումք ՚ի հարց՝ որպէս Կղեմէս եւ Որոգինէս զամենայն իսկ կեանս քրիստոնէից համա-րէին հանապազորդ իմն տօն, այս ինքն ուրախարար եւ գործօն իմն յի-շատակ փրկարար խորհրդոց քրիստոնէութեան : Սակայն առանձինն իմն տօնական աւուրք էին՝ նախ միաշաբաթին (որպէս եւ առ առաքելովքն) որ կոչէր առ հասարակ Կիւրակէ[8], այս ինքն՝ տէրունական (օր), յիշա-տակ յարութեան Քրիստոսի, եւ յայն սակս վասն ուրախութեանն չէր պարտ ՚ի նմին աւուր պահել եւ ոչ գործել գործ վաստակոց[9] : Չորեքշա-բաթին եւ ուրբաթն[10], մին սկիզբն եւ միւսն կատարած պատմութեան չարչարանացն Քրիստոսի՝ էին աւուրք աղօթից հասարակաց միաբանու-

1 Աթենագոր. Ջատագովութիւն վասն քրիստոնէից. Գ :
2 Առ Եփես. Գ. առ Փիլադելփ. Դ : Թուղթ առ Գիոգնետ. Բ :
3 Ընդդ. հերձուած. Դ. 17. եւ 18 :
4 Թուղթ. 63. տես եւ Տերտուղ. առ Սկապ. Բ. Սահմանադր. Առաք. Ը. 15 :
5 Պաշտպան. Ա. 66 :
6 Ը. 6—15 :
7 Տերտուղ. Պաշտպան. 39 :
8 Κυριακὴ, Dominica (dies).
9 Տերտուղ. "Միայն ՚ի տէրունական աւուր յարութեանն ոչ յայսմանէ (՚ի ծունր-դրութենէ) եւեթ այլ եւ յամենայն իսկ կերպարանաց եւ պաշտաւէ անձկութեան պարտ է մեզ, առէ, զգոյշ լինել, ՚ի բաց թողլով եւ զաւուրեանս (negotia) եւս զի մի տացուք տեղի սատանայի„ :
10 Dies stationum, Աւուրք պահ-նորդաց :

թեամբ եւ պահոց՝ որ անուանէին կէս պահք (այս ինքն մինչեւ ցերրորդ ժամ)։ — Իսկ եկեղեցին Հռոմայ վասն խափանելոյ զՀրէական պաշտօնութիւն շաբաթուն որ տակաւին տեւէր՝ յերկարեալ ձգեաց զպահսըն մինչեւ ցկիրակամուտն կամ ցօրն շաբաթու[1]։ Վաղ իսկ յերկրորդ դարու երեւին եւ այլ եւս որոշեալ ժամանակք պահոց մանաւանդ շաբաթուք ինչ յառաջ քան զԶատիկն։ Այս պահք առ սակաւ սակաւ յերկարեալ, եղեն քառասնորդական կամ քառասնորդաց պահք[2], յորս մինչեւ ցմուտս արեւու չառնոյր ոք ինչ կերակուր, սակայն օր միաշաբաթուցն էր ազատ. այլ ոմանք միայն ի միում կամ յերկուս աւուրս շաբաթուն պահէին կատարեալ պահս[3]։

Նոյն հին տարեկան տօնք էին Զատիկն եւ Պենտակոստէք. քանզի Քրիստոս ի խաչ ելեալ եւ փառաւորեալ՝ էր հիմն քրիստոնէութեան[4]։ Տօն Պասեքին կամ Զատկի ունէր ինքզինքն երկուս գլխաւոր մասունս, զտօն մահուն Քրիստոսի (պասեք խաչելութեան[5]) եւ զտօն յարութեանն (պասեք յարութեան[6])։ Իսկ ժամանակ այսր տօնի եւ պատճառս առաջնում երեւելի հակառակութեան ի մէջ եկեղեցւոյ։ Քանզի որպէս հաւանութեան թուի՝ ըստ յօժարութեան քրիստոնէից դարձելոց ի հրէութենէ կատարէին արեւելեան եկեղեցիք՝ մանաւանդ ի նահանգին Ասիոյ խառն ընդ Հրէից՝ ընթրիս Զատկի ի 14-երորդ աւուր Նիսան ամսոյ։ Իսկ քրիստոնեայք արեւմտից կատարէին զօր յիշատակի մահուանն Քրիստոսի յաւուր անդ ուրբաթու որ պատահէր յետ 14երորդ աւուր ամսոյն այնորիկ՝ իբրեւ օր Պասեքի[7], եւ անարժան ինչ թուէր նոցա ընդ մէջ հատանել զպահսն որ մանաւանդ յաւագ շաբաթուն[8] պահէր ճշդիւ. քանզի ինքեանք կամ ամենեւին ոչ ունէին զգառնն Զատկի եւ կամ ունէին յերեկոյի յառաջ քան զտօն յարութեանն զոր եւ միշտ ի միաշաբաթւոջ կատարէին, ուր արեւելեայքն ըստ բերելոյ տարւոյն յայլ եւ այլ աւուրս շաբաթու զնոյն կատարէին (այս ինքն երիւք աւուրբք յետոյ քան զ14ն Նիսան ամսոյ)։ Վասն զայս այլակերպութիւն ի միջոյ բառնալոյ՝ վաղ ուրեմն չոգաւ Պողիկարպոս եպիսկոպոս Զմիւռնայ ի Հռոմ (162) խօսել վասն սորին ընդ Անիկետեայ քահանայապետի Հռոմայ։ Թէպէտ եւ երկոքին սիրով եւ խաղաղութեամբ մեկնեցան ի միմեանց, բայց արդեամբք չտեսանեմք կատարեալ զիրսն։ Սակայն անդէն ի Փոքրն Ասիա յամի իբրեւ 170 յարեան բազում խնդիրք եւ եղեն յաճախ վիճմունք ընդ միմեանս. (Կղաւդիոս Ապողինարիս գրէր ընդդէմ սովորութեան Ասիացւոցն, իսկ Մելիտոյ եպիսկոպոս Սարդիացւոց լինէր նմին սովորութեանն ջատագով)։ Իսկ սինհոդոսքն որ ի վերջ կոյս երկրորդ դարու յարեւելս եւ յարեւմուտս եղեն[9], բարբառեցան առաւել յայտնագոյն ընդդէմ սովորութեան արեւելեայցն։ Պատշաճ իմն թուեցաւ այնուհետեւ Վիկտորի քահանայապետի Հռոմայ ածել զՅոյնս Ասիացիս ի միաբանութիւն սովորութեան արեւմտից սպառնալեօք նզովից։ Զչարեցան իմն եպիսկոպոսունքն արեւելից առաջնորդութեամբ Պողիկրատեայ եպիսկոպոսի Եփեսացւոց, որք պնդէին ունել զայն սովորութիւն յաւանդութենէ առաքելոցն Յովհաննու եւ Փիլիպպեայ։ Նմին հակառակ եկեղեցին Հռոմայ յառաջ բերէր

1 Որ եւ անուանէր յաւելուած պահոց, Superpositio jejunii. տես ժողով Իլլիբերեան, կան. 26։

2 Τεσσαρακοστή, quadragesima, Մատթ. Դ. 2։ Տես Որոգին. Մեկն Ղեւտ. Ժ. Հ. 2։

3 Իրեն. առ Եւսեբ. Եկ. պատմ. Ե. 24։

4 Ա. Կորընթ. ԺԵ. 3—4։ Հռոմ. Դ. 25։

5 Πάσχα σταυρώσιμον.

6 Πάσχα ἀναστάσιμον.

7 Dies Paschae.

8 Εὐδομὰς μεγάλη.

9 Ըստ Եւսեբեայ Ե. 23. Նախ ի Հռոմ, ապա ի Պոնտոս, ի Գաղլիա, յՕսրոյենատան, ի Կորընթոս եւ յայլ եւս տեղիս։

Digitized by Google

զաւանդութիւնն Պետրոսի եւ միաբան ընդ բազում արեւելեան եկեղեցեաց բերէր յառաջ եւ զաւանդութիւն Պաւղոսի ։ Արդեամբք իսկ յայտ արար Վիկտոր զամենայն դիմադարձսն նզովելս, սակայն զիջանէր աղաչանաց բազում եպիսկոպոսաց արեւելից որ միաբան էին ընդ նմա եւ մանաւանդ՝ սքանչելւոյն Իրենեայ եպիսկոպոսի Ղուգդունացւոց, որ արժանի ըստ անուանն [1] լեալ բարեխօս՝ հաւանեցուցանէր զքահանայապետն չխռովել զխաղաղութիւնն ցաւագին հերձուածով վասն այնպիսի ինչ իրիք՝ որ ոչ ի հրամանակարգ վարդապետութիւն հայէր ։ Սակայն յետոյ միաբան հաւանութեամբ հաստատեցաւ սովորութիւն եկեղեցւոյն Հռոմայ ի սինհոդոսին Արելատայ (314) եւ կատարելագոյն եւս ի տիեզերական ժողովին Նիկիայ (325) ։ Իսկ ոմանք ոմանք որ յամառեալ ընդդէմ դարձան՝ մերժեալ անջատեցան իբրեւ հերձուածողք (Չորեքտասաներորդականք [2]) ։ Ի սմին վիճման՝ յայն սակս այսպէս ստիպելով իմն գործէր Վիկտոր՝ զի ըստ սովորութեան արեւելեայցն գոյր ինչ վտանգ խառնելոյ քրիստոնէից եւ Հրէից ընդ միմեանս ։

Ի յիսուն աւուրսն յետ Զատկի՝ այս ինքն ի Պենտեկոստէսն որ էր յաջորդ իմն տօն յարութեան եւ փառաւորութեանն Քրիստոսի, լինէր հանապազօր ժողովել ի պաշտօն աստուածեղէն, եւ չգոյին պահք եւ կատարէին աղօթքն կանգուն յոտս առ յիշատակի յարութեանն. փառաւորագոյն քան զամենայն աւուրսն էր յիսներորդն՝ տօն յիշատակի իջման Հոգւոյն սրբոյ եւ յայտնումն առաջին ազդեցութեան փառաւորութեանն Քրիստոսի ։ Հաւանութեան իմն է թէ եւ ի նոյն եւս ժամանակս ընդ մէջ Զատկին եւ Պենտեկոստէից ի 40երորդում աւուրն կատարէր տօն վերանալոյն Քրիստոսի [3], գոնեայ յարեւմուտս, քանզի ասէ Աւգոստինոս թէ մի ի բուն կարի հնագոյն տօնից է ։ Այն առանց իրիք տարակուսանաց է թէ կայր տօն Յայտնութեան յարեւելեան եկեղեցւոջ (6 • Յունուարի) անդստին յերկրորդ դարէ ։ Ի սմին տօնի կատարէր յիշատակ Յայտնութեան կամ երեւելոյն [4] Քրիստոսի ի Մկրտութեանն եւ յայտնելոյ ամենեցուն իբրեւ վարդապետ յԱստուծոյ [5] ։ Անց այն տօն ի չորրորդ դարու փոփոխմամբ ինչ իւիք եւ յարեւմտեան եկեղեցի՝ իբրեւ յիշատակ յայտնութեան Մեսիայի առ հեթանոսսն՝ զորս յանդիման կացուցանէին երեքին մոգքն արեւելից. գտանին եւ նշմարանք տօնի ծննդեան Քրիստոսի անդստին ի ժամանակս յայսոսիկ ։ Յառաջէր քան զայս մեծամեծ տօնս իբրեւ պատրաստութիւն՝ գիշերական ինչ տօն հսկմամբ [6] ։ Տօն խմբէին քրիստոնեայք եւ զօր մահու մարտիրոսացն իբրեւ զօր յաղթութեան նոցա եւ փառաւոր ծննդեան նոցա վասն անմահ կենաց [7] անդէն ի վերայ գերեզմանաց նոցա, յորոց վերայ մատուռս կամ եկեղեցիս էին յօրինեալ. հին քան զամենայն տօն մարտիրոսացն թուի լեալ տօն անմեղ մանկանցն Բեթղահեմի (որ կոչէին Ծաղիկք մարտիրոսաց [8]) ։

Տաճարք, Նշանակք Քրիստոնէական իրաց ։ — Զառաջինն վայրք ժողովելոյ քրիստոնէիցն՝ էին յաճախ տունք հաւատացելոցն ։ Ի ժամանակս հալածանացն ժողովէին ի հեռաւոր ինչ տեղիս, յանապատս եւ ի խորափիտս. քանզի համօրէն իսկ աշխարհ, ասէին վարդապետք եկեղեցւոյ, է մի եւեթ տաճար Աստուծոյ, նա եւ ի բանտս եւս եւ ի գետնափոր

1 Εἰρήνη նշանակէ՝ խաղաղութիւն ։
2 Quartadecimani.
3 Ἑορτὴ τῆς ἀναλήψεως կամ ἐπισωζομένη.
4 Ἐπιφάνεια, Յայտնութիւն ։
5 Θεοφάνεια, Աստուածայայտնութիւն ։
6 Vigilia, Հսկումն ։
7 Natales, Natalitia.
8 Flores martyrum, festum innocentium.

ստորին գերեզմանաց[1] եւ ի շիրիմս մարտիրոսաց։ Զբանս պատասխանատուացն թէ քրիստոնեայք չունիցին տաճարս կամ սեղանս՝ է իմանալ թէ չունին նոքա ըստ հրէական կամ հեթանոսական ձեւոց, այս ինքն՝ զի չիք տաճար յորում փակեալ կայցէ կամ յորում միայն իցէ մատուոր Աստուած։ Ամենեւին աներկբայ իսկ վկայութեամբ յայտ է թէ էին քրիստոնէից բազում մատրունք եւ տաճարք յերրորդ դարու. եւ ըստ Եւսեբեայ յօրինեցան մեծամեծք ի ժամանակս խաղաղութեանն որ էր ի հալածմանցն Վաղերիանեայ մինչեւ ցհալածումն Դիոկղետիանու՝ բազում նոր եւ երեւելի եկեղեցիք ի քաղաքս. հոյակապն եւ մեծ քան զամենայն՝ էր ապաքէն եկեղեցին Նիկոմեդիայ։

Քանզի յառաջադիմութիւն պաշտական արուեստից լեալ էր ըստ այսմ հեթանոսութեանն եւ գրեթէ կարգեալ էր ի փառաւորութիւն տաճարացն հեթանոսաց՝ գարշէին իսկ եւ խորշէին ի նոցանէ քրիստոնեայք. յայն սակս յառաջին անպաճոյճ եկեղեցեաց զանազանեալ լոկ վայրս բաժանեալս վասն արանց եւ վասն կանանց. ի սոցունց անջատեալ կայր եւ տեղի ինչ ուր նուիրական գործքն կատարէին[2] յոր միայն կղերականքն մտանէին. անդ ուղղեալ կայր սեղան[3] անպաճոյճ հանդերձ կաթեդրօք կամ աթոռովք կղերականաց[4]։ Ցակաւ ուրեմն յօրինեցան եւ նշանակք ցուցիչք քրիստոնէական ինչ խորհրդոց, որպիսի ինչ՝ ի մատանիս կնքոյ, ի բաժակս եւ ի կանթեղս. որմունք սանց նկարէին պատկերաւ խաչի, հովուի որ զգառնն ի վերայ ուսոյն բարձեալ տանիցի, ձկնորսի եւ ձկան[5], նաւակի (որ էր նշանակ եկեղեցւոյ), խարսխի (նաւու), աղաւնւոյ, ոստոյ արմաւենւոյ, քնարի (որ էր նշանակ հոգւոյ քրիստոնէից), խոյի, աքաղաղի եւ այլոց նմանեաց։ Այսպիսիք զարդարէին եւ զգամբանս, երբեմն եւ զորմունս եւս եկեղեցեաց։

Մոնտանոսեան խորհուրդք։— Յայս առնէր եկեղեցի հակառակ բազում աղանդոց՝ զի թէպէտ եւ յարգեալ զովէ ինքն զկուսութիւն իբրեւ առանձինն պարգեւ ի վերոյ քան զբնութիւն, եւ ցուցանէր զայն հեթանոսաց իբրեւ նշանակ մեծի զօրութեան Աւետարանին[6], սակայն եւ ոչ զպատիւ ամուսնութեանն ուրանայր[7], եւ ուսուցանէր թէ շնորհին ի դոյն առանձինն շնորհք Հոգւոյն, քանզի է իսկ խորհուրդ մեծ. եւ ըստ վկայութեան Ս. Իգնատիոսի պարտ էր խօսելոցն կատարել զպաշտօն ամուսնութեանն առաջի եպիսկոպոսի[8]. նոյնպէս եւ Տերտուղիանոս[9] եւ Կղեմէս Աղեքսանդրացի յիշեն զօրհնութենէ եպիսկոպոսին։ Համարեալ էր եւ յայնժամ անբաժին ամուսնութիւնն յորժամ մի կողմն անհաւատարիմ գտանէր, այնպէս զի եւ կողմն իսկ անմեղ չկարէր առ կենդանութեամբ միւսոյն միւսանգամ ամուսնանալ[10]։ Քրիստոնէի ընդ հեթանոսի լինել լծակից էր անվայել[11], միայն ներեալ իսկ էր ամուսնութիւնն լեալ յառաջ քան զդարձ միոյ ի լծակցացն[12]։— Սակայն բազում անգամ սովոր էին քրիստոնեայք առանձնանալ ի լծակցէն յաւուրս բազումս՝ զի աղօթից պարապեսցին, մանաւանդ յաւուրս ապաշխարութեան եւ պահոց։ Իսկ որ ինչ ի ժուժկալութենէ եւ ի

1 Catacombi.
2 Բեմ, βῆμα, chorus.
3 Τράπεζα, mensa sacra, mystica.
4 Θρόνοι, καθέδραι, Եւսեբ. Ժ. 4։
5 Ἰχθύς, որ էր նշանակիչ Քրիստոսի, ընթերցեալ այսպէս Ἰησοῦς Χριστὸς Θεοῦ υἱὸς Σωτήρ. «Յիսուս Քրիստոս Աստուծոյ Որդի Կենարար»։
6 Իգնատ. առ Պողիկարպ. Ե։ Յուստին. Ջատագով. Ա. 15։
7 Սահմանք. Առաք. Ձ. 10 եւ 11։
8 Թուղթ. առ Պողիկարպ. Ե։
9 Առ կին Բ. 9։
10 Կղեմ. Աղեքս. Ստրոմ. Բ. 23։
11 Տերտուղ. վասն միանգամ ամուսն. Է. ԺԱ։ Կիպրիան. Վասն անկելոց։
12 Կորնթ. Է. 12. 16։

Digitized by Google

պահոց անուն խնայութիւնն լինէր՝ ասեալ լինէր աղքատաց։ Իսկ անձինք առ գոհութեան շնորհի քրիստոնէութեանն՝ գրեթէ ի մշտնջենաւոր պահս նուիրէին զանձինս, մեկնեալ յընկերական կենաց [1]. յորոց բազումք ամենեւին կուսութեան կեանս կեցին, որպէս ուխտիւ եւս [2]։

Ս. Եւղին օծումն։ — Ըստ խրատու առաքելոյն Յակոբայ [3], կոչեցեալ լինէին երիցունք առ հիւանդն մերձ ի մահ՝ առնել զխորհրդական օծումն մերոյին, զի առցէ զօրութիւն ոգին [4]. Իսկ մարմինն աննշխարեալ չլինէր այրեալ ի խարուկի ըստ սովորութեան հեթանոսացն [5], այլ տային զայն յետս հողոյ եկեղեցական պաշտամամբք երգով զատմամբ Հոգւոյն սրբոյ, հաստատուն յուսով՝ թէ յարուսցէ զնա Քրիստոս որպէս զ ի գերեզմանէ ի նորոգ կենդանութիւն։ Լինէր ամ ըստ ամէ յիշատակ պաշտամամբ վասն ննջեցելոցն։ Ամենեւին հաստատուն էին հաւատքն՝ թէ մահ է անցումն ի լաւագոյն կեանս, եւ մանաւանդ շահ եւս՝ զի փութանակի միաւորէ զմեզ ընդ Քրիստոսի [6]։

Գ.

Եկեղեցական մատենագրութիւն։

53

Աստուածաշունչ գիրք։ — Հին կտակարանք՝ որ ի ժողովս հաւատացելոց եւ յիւրաքանչիւր մատենագրաց յաճախ լինէին ընթերցեալ, ի կիր արկանէին ոչ ի բնագրի անդ, այլ թարգմանութեամբն Եւթանասնից կամ Աղեքսանդրեան, եւ զայս թարգմանութիւն Յուստինոս համարէր լեալ յայտնի ինչ սքանչելեօք [7]։ Յերկրորդ դարու յաւելան այլ եւս երեք թարգմանութիւնք, այս ինքն՝ Ակիւղայն, Թէոդոտիոնին եւ Սիւմաքոսին։ Ակիւղաս էր Հրեայ ծննդեամբ որպէս հաւանութեան է, կամ ըստ այլոց՝ հեթանոս ի Սինոպայ Պոնտացւոց եւ ապա քրիստոնեայ եւ յետոյ դարձեալ Հրեայ կամ Եբիոնեան՝ կացեալ առ Ադրիանու. սա յօրինեաց թարգմանութիւն ինչ հնոց կտակարանաց ամենեւին նոյնբանութեամբ։ Նոյնպէս եւ վասն Սիւմաքոսի եւ Թէոդոտիոնի չէ յայտ. զի նա կարծի յառաջն լեալ Սամարացի եւ սա Եբիոնացի կամ Հրեայ, եւ երկոքին առ Անտոնինեանիւք կացեալ։ Սիւմաքոս թարգմանեաց ազատագոյնս եւ ջանաց յարմարել ըստ յատկութեան յունական լեզուին։ Իսկ Թէոդոտիոն միջին իմն է ընդ մէջ երկոցունցն ոչ ազատ եւ ոչ նոյնաբան կարի։

Իսկ գիրք նորոցն կտակարանաց այնչափ յաճախագոյնս արկանէին ի կիր՝ որչափ տակաւ հեռանայր օք յառաքելական ժամանակաց. եւ էր

1 Ἀσκηταὶ, continentes, σπουδαῖοι, ἐκλεκτῶν ἐκλεκτότεροι.
2 Կղեմ. Աղեքս. Ստրոմ. Գ. 15։
3 Յակ. Ե. 14։
4 Որոգին. Մեկն. Ղեւտ. Ճառ. Բ։
5 Զարմանալի է բան Կիկերոնեայ Վասն օրին. Բ. 22. «Ինձ թուի (ասէ) թէ բուն առաջնոյն էր պայման թաղելոյ այն իցէ, որով Կիւրոսն թաղեցաւ ըստ Քսենոփոնեայ — քանզի հատուցանի հողոյ մարմինն եւ այնպէս իմն զետեղի՝ որպէս զի ծածկեալ լինի մօրն սքողիւ։»
6 Փիլիպպ. Ա. 21։
7 Զհետ երթեալ պատմութեան թղթոյն Արիստեայ ուրումն սպասաւորի յարքունիս Պտղոմեայ Փիղադելփեայ արքայի Եգիպտացւոց, զոր գրէ նա առ եղբայր իւր Փիղոկրատէս՝ պատմելով թէ որպիսի պատճառաւ այն թարգմանութիւն եղեւ. զայսմանէ տես մանր առ Ս. Կիւրղի Երուս. Կոչումն ընծայութեան՝ գրոշմեալ ի Վիեննա 1832, եր 68—69։ Այլ չէ ինչ վաւերական պատմութիւնն այն, եւ ոչ թարգմանութիւնն այն ունի ինչ նշանակ յաւելւ այնպիսի ազդեցութեան Աստուծոյ, որպէս քաջ եցոյց նախ Ս. Յերոնիմոս։ Տես եւ Հատ. Ա. եր 473։

Digitized by Google

խոկ պայակս ի դէպ, զի հարկ էր ժամանակ ինչ ի վերայ անցանել մինչեւ առաքելական փոփոխմանցն՝ ի միաբանեալ հաղորդութիւն գալոյն մատեանցն առ առ սրբաբար։ Այլ թէ նոր եւ յոյր ձեռն եւ կամ արջամի գրոցն առաջին հաւաքումն նոցա ի մի բովանդակութիւն եղեւ՝ այն չէ յայտ։

Հայրք առաքելականք։ — Աշակերտք առաքելոցն եւ քրիստոնեայք նոցին ժամանակակիցք սակաւ ինչ եւեթ թողին գրոց. քանզի քրիստոնէութիւն ոչ եթէ իբրեւ ծնունդ ինչ քննութեանց գիտութեան հաղորդեցաւ մարդկան, այլ մանաւանդ թէ իբրեւ աստուածեղէն ինչ յայտնութիւն, որոյ ճշմարտութեանն ցուցք՝ սքանչելիքն առաքինութեր կենցաղ. դարձեալ զի եւ զառաջինն ոչ առհասարակ ի մէջ մտանէին գիտնոց ինչ տարածեցաւ քրիստոնէութիւնն։ Յայն սակս եւ հայրքն առաքելականք (այս ինքն՝ որք աշակերտեալք առաքելոց էին) ըստ առաքելական օրինակին՝ դոյզն ինչ թուղթս եւեթ թողին յարմարեալս ըստ գիտելոց պիտոյիցն պատահելոց, եւ յորս ոչ ինչ նշմարանք գիտութեան երեւին, այլ քաղցր ինչ օծութիւն քրիստոնէական. եւ են սոքա՝

1. Բառնաբաս[1] († 73) որոյ կայ թուղթ մի վասն պղծոցին որ պահանջէին ի քրիստոնէիցն պահել եւ զմովսիսեան օրէնսն, գրեալ յետ կործանման Երուսաղեմի։ Թէպէտ եւ ի վաղ խոկ ժամանակաց Կղեմէս Աղեքսանդրացի, Որոգինէս, Եւսեբիոս ընդունին զայն թուղթ իբրեւ ճշմարիտ, այլ շատք այժմ արկանեն ընդ յերկուանօք։ — 2. Հերմաս, զորմէ չէ յայտ թէ նա իցէ զոր ողջունէ Առաքեալ[2], եթէ այլ ոք երէց եկեղեցւոյն Հռոմայ, եղբայր Պիոսի Ա. քահանայապետի (յամի իբր 150). կայ սորա գիր "Հովիւ" անուն. յԱ. դպրութեանն մատուցանէ 4 Տեսութիւնս կամ Տեսիլս վասն անցից եկեղեցւոյ եւ վարուց քրիստոնէից. յԲ. դպրութեանն կան 12 Պատուիրանք բարեպաշտութեան առանձնեալք ի հրեշտակէ նորա պահապանէ երեւելոյ նմա յհովուի ձեւ ի Հռոմ ի կերպարանս հովուի այծեակահանդերձ, մախաղ յուս իւր եւ ցուպ ի ձեռին. իսկ յԳ. դպրութեանն՝ 10 Նմանութիւնք ի յորդորումն վարուց բարեպաշտութեան։ — 3. Կղեմէս քահանայապետ Հռոմայ գործակից Պաւղոսի եւ յաջորդ Պետրոսի[3], որոյ կայ "Թուղթ Ա. առ Կորնթացիս" (59 գլուխք) վասն ցածուցանելոյ զխռովութիւն ինչ նոցա որով մերժեալ էին ի պաշտամանէն երիցունք անմեղ հաստատեալք յառաքելոց կամ յարանց առաքելականաց։ Երկու եւս "Թուղթք առ կուսանս" յանցեալ դարու գտան յասորի լեզուէ եւ թուին հարազատք, ուր թուղթն Բ. առ Կորնթացիս ընդ կասկածանօք է։ — 4. Իգնատիոս Աստուածազգեաց (բուն՝ Աստուածակիր[4]) որպէս հաւանութեան է՝ ասորի յազգէ, աշակերտ Պետրոսի եւ Յովհաննու, յետ Եւոդեայ յաջորդ Պետրոսի յԱնտիոք. սա յետ կալոյ յատենի առաջի Տրայիանու՝ առաքեցաւ ի նմանէ ի Հռոմ արկանել առաջի առիւծուց ի թէատրոնին († 107, 20 Դեկտ. կամ ըստ այլոց կարծեաց 116)։ Ի բազում թղթոց որ ի նորա անուն յածին՝ 7 միայն են հարազատք որ ի նմին ամի զճանապարհայն գրեցան ի նմանէ, այս ինքն ա. առ Եփեսացիս, բ. առ Մագնեսիացիս, գ. առ Տրալլիացիս, դ. առ Հռոմայեցիս (որք գրեցան ի Զմիւռնիայ), ե. առ Փիղադելփեացիս, զ. առ Զմիւռնացիս, եւ է. առ Պողիկարպոս (որք գրեցան ի Տրովադայ)։ Այսոցիկ երկու ինն ազգ օրինակաց է, մի՝ ընդարձակագոյն եւ

1 Տես վերագոյն էջ 26։
2 Հռոմ. ԺԶ. 14։
3 Տես վերագոյն էջ 34։
4 Θεόφορος.

Digitized by Google

մեւս՝ համառօտագոյն. վերջին եւեթ ազգ օրինակացն հարազատ է, իսկ առաջիննքն յարմարեալ ի 6երորդ դարու։ — 5. Ցանանուանէ ումեքէ կայ գեղեցիկ ինչ "Թուղթ առ Դիոգնետոս" (ոմն հեթանոս) որ յուղեալ իցէ նմա խնդիրս թէ ընդէր քրիստոնեայք զկրօնս հեթանոսաց եւ Հրէից միանգամայն մերժեալ՝ ամենեւին նոր ինչ վարդապետութիւն ի մէջ բերիցեն, եւ դարձեալ՝ եթէ այնչափ կարեւոր էին մարդկան կրօնք քրիստոնէութեան՝ ապա հիմ այսպէս անագան եկն ի մէջ։ — 6. Պապիաս (✝ 120) եպիսկոպոս Յերապոլեայ Փռիւգացւոց աշակերտ Յովհաննու աւետարանչի եւ ընտանի Պողիկարպեայ. սորա 7 հատուածոք եւեթ կան ի 5 գրոց "Մեկնութեան բանիցն Տեառն"։ — 7. Կուադրատոս (✝ 130) եպիսկոպոս Աթենացւոց աշակերտ առաքելոց, որ ետ գիր Պատասխանատուութեան Ադրիանու յորժամ եկն նա յԱթէնս տեսանել զեղեւսեան խորհուրդսն. սորա մանր ինչ հատուածոր միայն կայ։ — 8. Պողիկարպոս[1] (✝ 167) ի Յովհաննէ առաքելոյ կարգեալ յեպիսկոպոսութիւն Զմիւռնացւոց ընտանի Իգնատիոսի Աստուածազգեցի, որ երթեալ ի Հռոմ առ Անիկետոս քահանայապետ վասն խնդրոյ տօնին զատկաց դարձաւ ունայն, այլ կաց մնաց ի սէրն հաղորդութեան ընդ հռոմէական աթոռոյն. ի բազում գրոց նորա կայ մի միայն հարազատ "Թուղթ առ Փիլիպպեցիս" գրեալ յամի իբրեւ 107 կամ 108, որ ըստ Յերոնիմեայ ընթերցեալ լինէր յառաջին յեկեղեցիս։ Հատուածոք այլոց ինչ գրոց նորա ընդ կասկածանօք են։

Ընդ յերկուանօք իմն են կամ սուտ թեամբ ընծայեալ մատենագրացն յորոց անուն շրջին — 1. Թուղթ երիցանց եւ սարկաւագաց Աքայեայ վասն վկայութեան Անդրէի առաքելոյ։ 2. Վկայաբանութիւն Թեկղի եւ Պաւղոսի։ 3. Պրոքորոնի (միոյ ուրուք յեւթն սարկաւագաց ✝ 60)՝ վարք եւ սքանչելիք Յովհաննու առաքելոյ։ 4. Լինոսի (✝ 78) առաջնոյ յաջորդին Պետրոսի ի Հռոմ Գիրք Բ. չչարչարանաց Պետրոսի եւ Պաւղոսի։ 5. Աբդեայ Բաբելոնացւոյ (որ պատմի լեալ հրեայ յազգէ եւ առաջին եպիսկոպոս Բաբելոնի) Գիրք Ժ. վասն ճգանց առաքելոց։ 6. Կտակք երկոտասան նահապետաց գրեալ որպէս հաւանութեան է իսկզբան երկրորդ դարու։ 7. Սիբիղեան մատեանք յ8 գիրս որպէս ցայժմ կան եւ յորում բազում անգամ առաջին հարք (Յուստինոս, Աթենագորաս, Թէոփիլոս Անտիոքացի, Կղեմէս Աղեքսանդրացի եւ Ղակտանտիոս) առնուն հաստս ի հաւանութիւն հաւատոց մերոց ընդդէմ հեթանոսաց, թուին յօրինեալ վաղ յառաջ քան զկէս 2որդ դարուն ի քրիստոնէէ ումեքէ՝ ի հին պատգամս հեթանոսացն խառնելով ինչ ինչ ի հնոց եւ ի նորոց կտակարանաց, ընծայելով զամենայն Սիբիղեան կանանց ըղձից հռչակելոց ի մէջ հեթանոսացն, ոմն իբրեւ Պարսիկ կամ Բաբելացի եւ ոմն իբրեւ Դեղփեան կամ Կումացի կամ Տրովացի կամ Տիբուրացի Սիբիղայ։

## 54

Այս մատենագրութիւն աշակերտաց առաքելոցն ըստ նիւթոյն եւ ըստ կերպարանացն դուզնաքեայ իմն երեւի եւ միակերպ, նմին հակառակ յ3ում դարու աստ նշմարի իսկ եւ իսկ առատութիւն մատենագրութեանց յազգի ազգի ձեւս եւ ի կերպարանս։ Պատճառք իրացն յայտ ի հանգամանաց ժամանակին է, յորում ի ներքուստ եւ արտա-

1 Տես վերագոյն էջ 139—144։

Digitized by Google

քուստ յարձակմանն կրէր եկեղեցի. ի ներքուստ ազգի ազգի աղանդոք եւ արտաքուստ ի հեթանոսաց եւ ի Հրէից որք յաճախէին զրպարտութիւնս զվարդապետութենէն եւ զվարուց քրիստոնէիցն, գիտունք եւ փիլիսոփայք ելանէին ի կռիւ ընդ քրիստոնէութեան եւ իշխանութիւն տէրութեանն Հռոմայեցւոց օգնական էր ժողովրդեանն մոլեգնութեան ի հալածումն նորա։ Յայնժամ հան Աստուած միանգամայն առս երեւելիս ի ճշմարտութեանն պաշտպանութիւն՝ պատմական, պատասխանատուութեան, մեկնական եւ վիճական գրովք ի կերպարանս ոչ միայն թղթոց, այլ եւ խօսից երկուց ընդ միմեանս [1], ճառից եւ յիշատակաց [2]։

1. Ս. Յուստինոս Վկայ (✝ 166), որպէս ինքն իսկ պատմէ՝ որդի Պրիսկեայ ծնեալ ի Նէապօլիս այս ինքն ի Սիւքէմ, ի մանկութենէ առեալ էր ի դպրոց ի հրահանգս ուսմանց. նախ եւս նա զանձն ի ստոյիկեան փիլիսոփայութիւն եւ յետ դիմելոյ կարգաւ առ Պերիպատետիկեանս, Պիւթագորականս եւ Պղատոնականս, մինչդեռ ուրախ իմն լինէր ընդ գիւտ պղատոնական իմաստութեանն՝ յարդարեցաւ յառնէ ումեմնէ ծերունւոյ յընթերցուած գրոց սրբոց. նովին լուսաւորեալ եւ հաստատութեամբ քրիստոնէիցն ի տանջանս իւրեանց՝ ի միտ առեալ զանմեղական վարս նոցա՝ դարձաւ ի քրիստոնէութիւն յ30երորդ ամի հասակին (յամի իբրեւ 133) ոչ ինչ ամօթ համարեալ զթշնամանս խաչին Քրիստոսի, բայց եւ զաղաբողն փիլիսոփայութեանն չմերկացաւ, զի զքրիստոնէութիւն լոկ իմն իմաստութեանն համարէր, եւ կարգեալ դպրոց ուսուցանէր ի Հռոմ, մինչեւ առ Նախանձու մատնեալ ի Կրեսկեայ կիւնիկեան փիլիսոփայէ՝ վկայեաց ի Հռոմ գլխատեալ յետ գանից։ — Բաց ի գրոց անտի նորա կորուսելոց եւ յայնցանէ որ ընդ կասկածանօք են՝ կան 1. Գիր վասն միահեծան իշխանութեան (այս ինքն վասն միութեան Աստուծոյ)։ 2. Պատասխանատուութիւնք երկու, մի առ Անտոնիոս Պիոս, առ որդիս նորա եւ առ ծերակոյտն (գրեալ ի Հռոմ յամի իբրեւ 138) եւ միւս եւս կարճագոյն որպէս հաւանութեան է՝ առ Մարկոս Աւրելիոս։ 3. “Խօսք ընդ Տրիփոնեայ Հրէի„ վասն մարմնաւորութեան Բանին եւ կոչման հեթանոսաց, գրեալ յամի իբրեւ 140։ — 2. Տատիանոս (✝ 180) ասորի յազգէ ի Միջագետաց այլ շրջեալ ի բազում կողմանս եւ վարժեալ ի հրահանգս Յունացն, որ յետ խնդրելոյ եւ քննելոյ զամենայն կրօնսն՝ ի քրիստոնէութեան եգիտ զճշմարտութիւնն, եւ աշակերտեալ Յուստինեայ ի Հռոմ էր ընկեր եւ կցորդ վտանգից նորա, եւ յետ նորա մահուն առաջնորդէր դպրոցին նորա, այլ ապա մեկնեալ յիւր աշխարհն՝ անդ ամբարտաւանեալ ընդ ուսումն վարդապետութեան իւրոյ ի բաց եկաց յեկեղեցւոյ եւ յօրինէր ուրոյն աղանդ ըստ Ենկրատիտեանց կամ Ժուժկալաց (յամուսնութենէ, ի մսոյ եւ ի գինւոյ իբրեւ ի չարաց իրաց)։ Նորա կայ “Ճառ ընդդէմ հեթանոսաց„ թող զգիրսն բազումս որոց անուանք եւեթ կան։ — 3. Ս. Աթենագորաս (վկայեալ՝ 180) Աթենացի (ըստ վերնագրին որ դնի ի գլուխ գրոց նորա) փիլիսոփոս հեթանոս որ (ըստ Փիլիպպեայ Սիդեցւոյ) ի կամել իւրում դնել գիրս ընդդէմ քրիստոնէիցն՝ առեալ ընթեռնու զգիրս սուրբս զի տեղեակ իրացն լինիցի, այլ անդէն ըմբռնի ի հրապոյրս ճշմարտութեանն։ Նորա կայ գիր “Հրեշտակութեան (այս ինքն պատասխանատուութեան) վասն քրիստոնէից„, եւ միւս եւս գիր “Վասն յարութեան մեռելոց„։ — 4. Թէոփիլոս Անտիոքացի ըստ օրի-

1 Dialogue. 2 Commentarium.

Digitized by Google

նաեւ Յուստինեայ եւ Տատիանեայ եւ Աթենագորայ դարձեալ ի քրիստոնէական փիլիսոփայութիւն ընթերցուածովք գրոց սրբոց, եւ յետ Երոսեայ որ էր եւթներորդ ի Պետրոսէ՝ յաջորդէր զեպիսկոպոսութիւն եկեղեցւոյն Անտիոքացւոց (ըստ Մաւրինեանց՝ 176 — 186)։ Մնացեալ են ի գրոց նորա միայն "Երեք գիրք առ Աւտողիկոս" (բարեկամ իւր հեթանոս՝ այլ գիտուն եւ ցանկացող ճշմարտութեան)։ — 5. Հերմիաս՝ (ըստ վերնագրի գրոց նորա) փիլիսոփոս՝ որոյ ոչ վարք յայտ են եւ ոչ ժամանակ, եթող մեզ զգիրս "Ծաղրաբանութեան արտաքնոցն փիլիսոփայից"։ — 6. Անուանք եւեթ եւ կամ դոյզն ինչ նշխարանք գրոց ծանօթ են ա. Արիստիդէս փիլիսոփոս Աթենացի որ ետ Պատասխանատուութիւն Ադրիանու, բ. Ագրիպպաս Կաստոր որ գրեաց Յանդիմանութիւն ընդդէմ Բասիլիդեայ եւ կան դոյզն ինչ հատուածք, գ. Արիստոն Պեղղէացի որ էր Հրեայ յազգէ եւ դարձեալ ի քրիստոնէութիւն, եւ գրեաց խօսս յորում Յասոն եւ Պապիսկոս վիճին ընդ միմեանս վասն քրիստոնէութեան, դ. Ս. Մեղիտոյ Սարդիացւոց եպիսկոպոս († յամի իբրեւ 173) որոյ առաւել մատեանք թուեալ մի ըստ միոջէ առ Եւսեբեայ[1] չեն այժմ ի միջի՝ բաց ի հատուածոց ինչ, այս ինքն մասն ինչ ի Պատասխանատուութենէն առ Մարկոս Աւրելիոս (յամի 170), թուղթ մի առ Ոնեսիմոս ումն որում ընծայէ զգիրս իւր Քաղուածոց ի հնոց կտակարանաց. իսկ ցանկ գրոց հնոց կտակարանացն որ ի նմանէ յիշին՝ զամենայն յառաջաբանն գիրսն բովանդակէ բաց յԵսթերայ զոր թերեւս ընդ անուամբ Եզրի կարգէ, ե. Ս. Դիոնիսիոս Կորնթացւոց եպիսկոպոս († 180). ի սորա եւթն թղթոց (առ Ղակեդեմոնացիս, Աթենացիս, Նիկոմիդացիս, Գորտինացիս, առ եկեղեցին Ամաստրիացւոց եւ առ այլ եկեղեցիս Պոնտոսի, առ Գնոսացիս, առ Հռովմայեցիս) միայն ի թղթոյ անտի առ եկեղեցին Հռովմայեցւոց կան (առ Եւսեբեայ) երեք հատուածք։ Յառաջինումն գովեալ մեծապէս զկարգ եւ զսովորութիւն եկեղեցւոյն այնորիկ ասէ. "Այս իսկ ձեր սովորութիւն է, ասէ, անդստին իսկզբանէ անտի հաւատոց զի առ եղբարսն ազգի ազգի երախտեօք ցուցանիցէք բարերարութիւն եւ առ բազում եկեղեցիս . . . զկարեւոր կարեւոր դարմանս կենաց առաքիցէք . . . ։ Եւ զայս սովորութիւն երանելի եպիսկոպոսն ձեր Սովտէր ոչ պահեաց միայն՝ այլ եւ աճեցոյց եւս, երբեմն ընծայս վասն սրբոց առաքելութեամբ մատակարարելով եւ երբեմն զեղբարսն որ անդր ճանապարհ առնէին մխիթարելով իբրեւ հայր յանձնառու զիւր որդեկանս"։ Իսկ յերկրորդումն՝ ասէ թէ "Այսօր կատարեցաք զաւուր օրն տէրունական յորում զձեր թուղթն ընթերցաք, զոր եւ յայսմ հետէ միշտ ընթեռնլով ըստ օրինակի առաջին թղթոյն այնորիկ գրելոյ առ մեզ ի Կղեմայ (եպիսկոպոսէ Հռովմայ) լցցուք գեղեցիկ գեղեցիկ պատուիրանօք եւ վարդապետութեամբք"։ Յերրորդումն արանջէ զի սպասաւորքն սատանայի խանգարեն զթուղթս նորա ցանելով որոմն մոլորութեան։ զ. Ս. Ապողինար եպիսկոպոս Յերապոլեայ Փռիւգացւոց († 180) որ նահատակեցաւ բանիւ եւ գրով ընդդէմ Մոնտանեանց, որ առ նովաւ եղին, եւ ընդդէմ հեթանոսաց եւ Հրէից, բայց առ հասարակ չեն այժմ ի

1 Վասն զատկի Գիրք Բ. յորում ճառագով մատնէ արեւելեացն սովորութեան. Վասն բարուց վարուց եւ վասն մարգարէից. Վասն եկեղեցւոյ. Վասն տէրունական աւուրն. Վասն բնութեան մարդոյն. Վասն արարչութեան մարդոյն. Վասն հպատակութեան հաւատոց. Վասն ոգւոյ, մարմնոյ եւ մտաց. Վասն մկրտութեան. Վասն ճշմարտութեան. Վասն ծննդեանն Քրիստոսի. Վասն մարգարէութեան. Վասն հիւրընկալութեան. Տեառն եւս գիր Բանալի (գրոց սրբոց) անուն. Վասն սատանայի. Վասն յայտնութեանն Յովհաննու. Վասն Աստուծոյ մարմնաւորի (մարմնացելոյ)։

Digitized by Google

միջի մատեանք նորա, Ե. Ս. Ապողոնիոս որ էր սենեկլետիկոս Հռոմայեցի եւ վարժ գիտութեամբք, առ Կոմոդեաւ վկայեաց մատնեալ ի ծառայէն (յամի իբրեւ 186), Զ. Միղտիադէս որ ծաղկէր յամի իբրեւ 180—190, որ գրեաց գիրս ընդդէմ հեթանոսաց, Հրէից եւ Մոնտանեանց եւ Պատասխանատուութիւն առ կայսր, Է. Մոդեստոս, Մուսանոս, Սեքստոս եւ Արաբիանոս որք առ Մարկոսն Աւրելեաւ եւ Կոմոդեաւ թուին ծաղկեալ եւ չեն ինչ ծանօթ վարք նոցա. որպէս եւ առ նովին Կոմոդեաւ եւ Սեպտիմիոսն Սեւերոսիւ ծաղկեցան մեկնիչք գրոց սրբոց Հերակղիտոս (մեկնութեամբ Առաքելոյն, այս ինքն թղթոցն Պաւղոսի), Կանդիդիոս եւ Ապիոն (մեկնութեամբք վեցօրեայ արարչութեան), Յուդաս (մեկնութեամբ 70 եւթներորդացն Դանիէլի). Հռոդոն ասիացի ծնընդեամբ, աշակերտեցաւ Տատիանեայ ի Հռոմ. ի գրոց անտի սորա (յորս է դարձեալ մեկնութիւն մի վեցօրեայ արարչութեան) կայ (առ Եւսեբեայ) հատուածոր ինչ գրոցն ընդդէմ Մարկիոնի, եւ մեւս եւս հատուածոր ի գրոց Մաքառման զոր մաքառեցաւ ինքն Հռոդոն ընդ Ապեղեայ Մարկիոնացւոյ յորում ասէ թէ "Յորժամ պարտեցաւ ի նմանէ Ապեղէս յետ բաղում ինչ չարաչար բարբառելոյ՝ ապա ուրեմն սկսաւ ասել թէ չէ պարտ ամենեւին ի խոյզ արկեալ քննել զհաւատս, այլ պարտ եւ պատշաճ է իւրաքանչիւր ումեք կալ մնալ յայնմ զոր միանգամ ուսաւ ի սկզբանն. քանզի որ ի խաչեալն անդր հաստատեալ իցեն զյոյս իւրեանց՝ փրկելոց են, ասէ, միայն թէ գործս բարիս գործիցեն,,: Ապա չէր ինչ անծանօթ եւ հնոցն մոլորելոց՝ վերջին ապաւէնն յոր այժմ դիմեն ամենայն մոլորեալք մերոց ժամանակաց յետ յաղթահարելոյ ի ճշմարտութենէ զորոյ չկամին երթալ զհետ: Ժ. Ս. Մաքսիմոս 26երորդ եպիսկոպոս Երուսաղեմացւոց. ի սորա գրոց թէ "Ուստի չարն իցէ,, եւ թէ "ՅԱստուծոյ ստեղծաւ նիւթն,, կայ հատուածոր ինչ առ Որոգինի: ԺԱ. Պողիկրատէս 8երորդ եպիսկոպոս Եփեսացւոց († յամի իբրեւ 200) որ վասն խնդրոյ զատկին գրեաց սաստկութեամբ թուղթ առ Վիկտոր քահանայապետ Հռոմայ, որոյ կան երկու հատուածոքք առ Եւսեբեայ: ԺԲ. Պաղմասայ եպիսկոպոսի Ամաստրիս քաղաքի եւ Բաքիւղղայ եպիսկոպոսի Կորընթացւոց յաջորդին Դիոնիսեայ յիշին թուղթք վասն զատկին գրեալ ի Հռոմ, որպէս եւ նոցին ժամանակակցի Ս. Թէոփիղեայ եպիսկոպոսի Կեսարեայ Կապադովկացւոց թուղթ՝ յորմէ կայ հատուած առ Բեդայ, եւ մնանէ ջատագով սովորութեան արեւմտեան եկեղեցւոյ վասն ժամանակի զատկին:

7. Իրենէոս հայրենեօք ի Յոնիայ՝ որպէս թուի, աշակերտեալ Պողիկարպեայ ի Զմիւռնիա եւ ապա Պապիայ, լեալ ունկնդիր եւ այլոց աշակերտաց առաքելոցն, բայց կրթեալ ի մանկութենէ եւ ի բանաստեղծութիւն եւ ի փիլիսոփայութիւն արտաքնոցն: Այսպիսի կրթութեան խառնեալ ընդ եռանդման պաշտպանելոյ եկեղեցւոյ՝ դիւրագոյնս ընդմտանէր Իրենէոս ոգւոյ վարդապետութեան եկեղեցւոյ, տեսանէր թափանցանց զազգի ազգի գրութիւնս Գիտացն եւ այնպէս մեծ գործել մեծամեծս վասն եկեղեցւոյ Աստուծոյ: Յետ բաղում վաստակոց ի կողմանս Ասիացւոց՝ գտանեմք զնա ի Գաղիա առ Ս. Պոթինեայ եպիսկոպոսի Ղուգդունացւոց որ ձեռնադրեաց իսկ զնա յերիցութիւն, եւ յետ վկայական մահու նորա ընտրեցաւ Իրենէոս յեպիսկոպոսութիւն քաղաքին (178): Յետ առաքելոյ մարտիրոսացն որ ընդ Պոթինեաւ վկայեցին՝ արս թղթով առ Եղեւթերիոս քահանայապետ Հռոմայ վասն խնդրոցն յուզելոց ի Մոնտանեանց ի Գաղիա եւ առնլոյ զհաստատութիւն եպիս-

Digitized by Google

կորրուսութեանն՝ վառատէր երանելին ի հաստատութիւն եկեղեցեացն Գաղղիոյ, եւ ի գժտութեան անդ վասն զատկին տօնի՝ եղեւ միջնորդ հաշտութեան ընդ եպիսկոպոսունսն Ասիոյ եւ ընդ Վիկտոր՝ որ կամէր կտրել զհաղորդութիւն իւր ի նոցանէ. եւ ի կրկնել հալածանացն առ Սեպտիմիոսն Սեւերոսիւ վկայեաց յամի 202։ Ի գրոց անտի նորա կան մնան իբրեւ գեղեցիկ նշխարք եկեղեցական աւանդութեան հօյակապ "Գիրք Ե. ընդդէմ Աղանդոց„ կամ Հերձուածոց, որոյ բուն վերնագիր է "Յանդիմանութիւն եւ քակումն սուտանուն գիտութեան„ 1 (վարդապետութեան Գիտաց) որք են գրեալ ի մէջ ամացն 172—192, ի յոյն լեզու, բայց հռոմայեցի թարգմանութիւնն միայն կայ զօր եւ յՅորդ դարու տեսանեմք (ի Տերտուղիանեայ եւ ի Կիպրիանեայ) առկեալ ի կիր, եւ է ճշգրիտ որպէս ի համեմատութենէ ընդարձակ ինչ հատակոտորոց (առ Եւսեբեայ, Եպիփանեայ, Թէոդորեայ, Յովհաննու Դամասկացւոյ) երեւի, թէպէտ եւ մութ ինչ է՝ բազում ուրեք։ — Արապիոնի եպիսկոպոսի Անտիոքացւոց (յամի 190) մնացեալ է միայն հատակոտոր ինչ ի թղթոյն առ եկեղեցին Հռոսսացւոց ի Կիլիկիա (առ Եւսեբեայ Պատմ. եկ. Զ. 12)։

Մնացորդք մատենագրութեան երկրորդ դարու հայրապետաց։ — 1. Վկայաբանութիւն Ս. Իգնատիոսի Աստուածազգեցի 2 գրեալ ի սարկաւագաց նորա ի Փիղոնէ եւ յԱգաթոպոդեայ որ ընդ նմայն երթեալ էին ի Հռոմ։ — 2. Վկայաբանութիւն Ս. Սիւմփորոսայ եւ եւթն որդւոց նորա որ առ Ադրիանու վկայեցին սպրրելով քրմապետացն Հռոմայ, եւ առի դրեալ ի Յուղիոսէ Ափրիկանոսէ։ — 3. Վկայաբանութիւն Յակոբայ առաքելոյն եղբօր Տեառն եւ Շմաւոնի եպիսկոպոսաց Երուսաղեմի գրեալ ի Հեգեսիպպեայ[3]։ — 4. Ս. Փեղիկիտայ եւ որդւոց նորա [4]։ — 5. Գեղեցիկ թուղթ եկեղեցւոյն Զմիւռնացւոց վասն վկայութեան Պողիկարպոսի եւ որոց ընդ նմա [5]։ — 6. Թուղթ եկեղեցեացն Վիէննայ եւ Լուգդունայ վասն վկայութեան Պոթինեայ եւ այլոց [6]։

Ընդ կասկածանօք ինչ է վկայաբանութիւն Ս. Յուստինոսի փիլիսոփայի եւ ընկերացն, առաւել եւս վկայաբանութիւնն Ս. Սիւմփորիանոսի՝ որ յամի իբրեւ 180 յԱւգոստոդունոն (Ոթէոն) քաղաքի Գաղիացւոց գլխատեցաւ։

# 55

Նոյնպէս մատենագրութիւնն քրիստոնէական որ իսկզբան անդ աղքատ ինչ էր՝ յընթացս երկրորդ դարուն ծաղկեալ փթթեցաւ, մինչեւ զարմացուցանել իսկ՝ եթէ ի յաճախութիւնն ոք եւ ի պէսպէս այլակերպութիւնն եւ ի ժամանակին կարճութիւն եւ ի նեղութիւն առապանաց հանգամանացն նայիցի։

Դիւրեթէ նոյն հանգամանք կային մնային եւ յերրորդ դարու. դադարեն ի սմին պատասխանատուութիւնք առ իշխանս եւ ընդ այնր յաճախէ եղծումն մտաւոր պատճառաց՝ զորս սկսաւ յառաջ մատուցանել հեթանոսութիւն ի ձեռն փիլիսոփայիցն իւրոց եւ գիտնոց։ Նմին հակառակ՝ դուն ուրեք երեւի վիճումն ընդ Հրէից. զի սոքա ցրուեալք եւ քայքայեալք չորացան իբրեւ զթզենին զոր անէծ Տէրն, եւ չունէին ինչ

1 Ἐλέγχος καὶ ἀνατροπὴ ψευδωνύμου γνώσεως.
2 Տես վերագոյն էջ 133։
3 Տես վերագոյն էջ 30—133։
4 Տես վերագոյն էջ 147։
5 Տես վերագոյն էջ 139։
6 Տես վերագոյն էջ 144։

Digitized by Google

ունէին բայց քէն սաստիկ ընդ քրիստոնէից, այլ որպէս քաղաքացիքն՝ նոյնպէս եւ մտաւոր զօրութեամբ ակար եւ անզօր էին ելանել ի կռիւ ընդ քրիստոնէութեան: Նոյնպէս անցեալ իմն էր բուն ժամանակն ծաղկելոյ Գիտական աղանդոյն. յամենայն կողմանց մերժեցան մղեցան ի բաց ի սահմանաց եկեղեցւոյ յետս, եւ երթայր ծիւրէր այնուհետեւ. այլ զնորին հակառակն ի հին Եբիոնեան աղանդոյ եկն բուսան աղանդք Միութիւնականաց որ սաբելեան մտածութեանց եղեն սկիզբն, որք եւ ջանացին զերրորդութեան վարդապետութիւն՝ որ հիմն քրիստոնէութեանն է, ի հրէական անձին եւ անպտուղ միութիւնն դարձուցանել, որպէս Գիտական աղանդն ջանացեալ էր զնոյն ի հեթանոսական բազմաստուածութիւնն փոխել:

Ընդդէմ Մոնտանեանցն՝ որք չկարացին գալ այնչափ յառաջադէմ, բաւական էր եպիսկոպոսական տքնութիւն ի զգուշութիւն հօտին: Նովատեանցն հերձուած եւ դարձեալ խնդիր վաւերականութեան մկրտութեան հերետիկոսացն կամ որոց արտաքոյ եկեղեցւոյ իցեն՝ ած զամենեսեան ի քննութիւն ներքին էութեան եկեղեցւոյ:

Պաշտպանիչք եկեղեցւոյ ընդդէմ սոցա ամենեցունց ցայն վայր գրեթէ միշտ իսկ ի դպրոցս հեթանոսացն ուսեալ էին ուսումն, եւ մեծ մասն նոցա դառնալով ի հեթանոսութենէ ի քրիստոնէութիւն: Սակայն կարեւոր եւ պիտոյ էին այնուհետեւ հրահանգք ուսման ըստ քրիստոնէական իմն մտաց, նախ զի յայտնի իսկ երեւէր թէ առ ի չգոյէ դպրոցաց ուսման եւ կրթութեան ըստ քրիստոնէական մտաց՝ արգել իմն լինէր դարձի մարդկան որ ի բարձրագոյն կարգի քան զռամիկն էին. եւ երկրորդ անգամ՝ զի ծնողքն քրիստոնեայք չառնուին այնպէս դիւրայանձն զմանկունս իւրեանց տալ ի հրահանգս հասարակաց կայսերական կամ քաղաքական դպրոցաց. քանզի ընդ մեկնութեան յունական եւ հռոմէական դասական մատենագրութեանն՝ ծծէր մանկտին զհիւթ հեթանոսութեանն, մանաւանդ զի վարդապետք փիլիսոփայութեանն եւ գեղեցիկ ուսմանց դաժանագոյնք քան զամենայն թշնամիս քրիստոնէութեան էին:

Թէպէտ եւ ոմանք ոգիմք յօժարէին ի դրսավանս արտաքին ուսման եւ մանաւանդ փիլիսոփայութեան եւ չհամարէին զայն օրինաւոր ինչ եւ ոչ ի պէտս քրիստոնէից, եւ խլել իմն ջանային իբրեւ տունկ թունաւոր ծնեալ ի դիւացն սերմանէ ի դաշտավայրս հեթանոսութեանն, սակայն բազմաց ուղիղ ընդ իրսն հայելով՝ որչափ ինչ ժամանակացն հանգամանք ներէին, կարգեցան դպրոցք հանդերձ արտաքին հրահանգօք յերեւելի երեւելի եկեղեցիս: Ամենեցուն առաջնորդ եւ քան զբոլորեսին երեւելի էր Երախայական դպրոցն յԱղեքսանդրիա: Վաղ իսկ քաղաքն այն էր գլխաւոր կայան յունական ուսմանց եւ գիտութեան, կայր անդ Մուսայարան[1] զոր էր եդեալ Պտղոմեայ Ղագեան եւ ընդարձակեալ Տիբերեայ եւ առաջնորդէր կայսերական ծախուք, յորում աւանդէին գեղեցիկ գիտութիւնք եւ աշակերտքն միաբանեալք ի հացակից հաղորդութիւն՝ կային անդ կանխեալք յուսումն: Այսպէս էր Աղեքսանդրիա տեղի ժողովելոյ գիտնոց, ուր յամենայն մասանց հռոմէական պետութեան յորդեալ դիմէր ուսումնասէր մանկտին: Ընդ այն հայեցեալ եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց՝ զդպրոցն զայն որ վասն երախայից էր ընդարձակեալ՝ յաւել ոչ միայն գիտնարար հրահանգս քրիստոնէական ուսմանց, այլ եւ տակաւ մեծ առհասարակ հրահանգս արտաքին

1 Museum.

ւորդ՝ (կրճատ) դպրութիւն Ստրոմատացս (որ ճառէ զխորհրդական փի-
լիսոփայութենէ) ընդ կասկածանօք իմն է թէ արդարեւ նորին իցէ:
Բաց ի գրոց աստի եւ ի գրոցն թէ «Ո՞ր մեծատուն ի մեծատանց կա-
րիցէ փրկել», այլ գիրք նորա (Մեկնութեանցն[1], վասն Զատկաց, Համ-
բերութեան, Ցեռչութեան, Ժուժկալութեան, Հարսանեաց, Մխու-
թեան եկեղեցւոյ եւ այլոց յորոց զբազումս ինքնին իսկ յիշէ) չեն ի մէ-
ջի, այլ միայն հատակոտորք ինչ Մեկնութեանցն գրոց: Հատակո-
տոր մի ի հատակոտորոց առաւ առ Մոսքայ վանականի († 620) պատմէ
թէ միայն զՊետրոս մկրտեալ իցէ Քրիստոս անձամբ, սա զԱնդրէաս,
Անդրէաս զՅակոբոս եւ զՅովհաննէս եւ սոքա զայլս յառաքելոց: —
Երեւելիք յաշակերտաց նորա էին Ս. Աղեքսանդրոս († 251) եպիսկո-
պոս Փլաւիաս կամ Փլաւիապոլիս քաղաքի Կիլիկեցւոց, որ ապա փոխե-
ցաւ յեպիսկոպոսութիւն Երուսաղեմի (213), եւ Որոգինէս:

3. Որոգինէս մեծ քան զվարդապետ իւր ծնաւ յԱղեքսանդրիա (185).
Հայր նորա Ղեւոնիդէս ինքնին կայր պաշտօն մանկանն կրթութեան
վարժելով մանաւանդ յընթերցումն գրոց սրբոց, եւ անդէն ի մատաղ
հասակին առաքեալ ի դպրոց անդր եպիսկոպոսական առ Հոյակապն Կղեմէս:
Անդէն ի մանկութեանն այր կատարեալ էր Որոգինէս, լի եռանդեամբ
սիրոյն Քրիստոսի. ի հալածանս Սեւերեայ (202) հայրն հազ կարէր
արգելուլ մայր նորա պահելով զհանդերձս նորա՝ զի մի առ ծարաւոյն
մարտիրոսութեան երթեալ կացցէ առաջի դատաւորաց ի խոստովանու-
թիւն հաւատոցն: Յայն սակս անսեալ պատանեկին թէ արգելու՝ գրէր
թուղթ առ հայր իւր որ ի բանտի էր թէ Զգոյշ լեր, հայրիկ, մի մեր
վասն փոխեսցես զմիտս քո: Յետ հօրն մարտիրոսութեան, քանզի յար-
քունիս հասան ինչք նորա, կին ոմն մեծատուն առ զմանուկն 17ամեայ
առ իւր եւ նորա ծախուք կրթէր ի քերականութիւն, ի ճարտարխօսու-
թիւն եւ ի փիլիսոփայութիւն:

Վաղվաղակի ել հռչակ իմաստութեան նորա եւ բազումք ի հեթա-
նոսաց դառնային ի նորա ձեռն ի քրիստոնէութիւն, յայն սակս եւ Դե-
մետրիոս եպիսկոպոս Աղեքսանդրիայ կացոյց զնա 18ամեայ ի վերայ
դպրոցին երախայութեան (203): Այնուհետեւ վասն աւուրն պարենի
ոչ վաճառեաց Որոգինէս զմատենադարանն գրոց արտաքին իմաստու-
թեան՝ այսպէս սակ արկեալ զի ընդ այնր ընկալցի աւուր աւուր 4 խե-
բեւէշս (120 փող): Աղքատութիւն մնաց նորա եւ բանքն լի ոգւով,
զօրութեամբ, գեղեցկութեամբ եւ քաղցրութեամբ՝ կապէին զամենեսին
ընդ նմա: Որչափ քաղցր առ այլս էր՝ նոյնչափ խստագոյն առ ինքն.
ուտէր սակաւ, մի եւեթ պարեգօտիկ էր նորա, ոտս չագանէր ժամա-
նակս բազումս, զմեծ մասն գիշերոյն յաղօթս եւ ի մտածութիւնս հա-
նէր եւ զմնացեալ մասնն ննջէր գետնախշտի: Զբազումս յաշակերտաց
իւրոց որ արժանի մարտիրոսութեան եղեն՝ երթեալ քաջալերէր առա-
ջի ատենիցն: Իբրեւ յորդեալ յաճախէր թիւ աշակերտացն եւ բազումք
եւս ի կանանց դիմէին առ նա յուսումն վարդապետութեան կրօնից՝ առ
սիրոյ զգաստութեանն եւ իմանալով խոտորնակ զբանն Քրիստոսի առ
Մատթէի ԺԹ. 12՝ կրճատեաց զանձն. իմացաւ զիրսն Դեմետրիոս, յան-
դիմանեաց զնա՝ քաջալերեալ միանգամայն չհովանալ յեռանդեանն է:
Եւ զի հռչակ համբաւոյ նորա ած ժողովեաց առ նա արս կրթեալս յազգի
ազգի հրահանգս փիլիսոփայութեան կամ Գիտականութեան՝ եդ ի մտի
Որոգինէս միւսանգամ երթալ յուսումն (պղատոնական) փիլիսոփայու-

1 Ὑποτυπώσεων.

Digitized by Google

թեան առ Ամմոն Սակկաս վարդապետ փիլիսոփայութեան յԱղեքսանդրիա, զորմէ կարծեն գրել "Համաձայնութիւն չորից աւետարանչացն," որոյ յաւանդեալքն չեն ի միջի, այլ կայ թարգմանութիւնն ի Համմոնեցի (550) եւ միով գլխու կանոնագրյն՝ ի Հայ լեզու ընտիր գրութեամբ (յամի իբրեւ 450):

Յետ դառնալոյ ի Հռոմայ, ուր չոգաւ (211) տեսանել զմեծ եկեղեցին զայն եւ ճանաչել ներքուստ ի ներքս, չլեալ բաւական բազմութեան աշակերտացն՝ զխանձարհագոյն դասս աշակերտացն տանէր յանձն Հերակլեայ որ յառաջին աշակերտս էր նորա եւ ապա աշակերտեալ Ամմոնեայ, (որ եւ յետոյ եղեւ եպիսկոպոս Աղեքսանդրացւոց փոխանակ Դեմետրեայ) եւ ինքն զբարձրագոյն հրահանգացն ուսումն առնոյր յանձն, յաւելեալ գեղեցիկ գեղեցիկ գիտութիւնս յընթացս ուսմանն, մի՝ վասն զհեթանոս մանկունսն ձգելոյ առ կաւ ի քրիստոնէութիւն, եւ միւս՝ վասն զքրիստոնեայ մանկունսն յանկուցանելոյ ի փիլիսոփայութեան սէր: Կատարումն համօրէն ուսմանն էր քրիստոնէական գիտութիւն: Ի այն կարեւոր համարեցաւ Որոգինէս գիտել եւ զեբրայեցի լեզու, մանաւանդ վասն ընդ Հրէից վիճելոյ, եւ սկսաւ ուսանել 25ամեայ: Յետ այնորիկ սկիզբն արար Վեցօրինակացն՝ զորոց յետոյ մի քան միոջէ:

Պաղատանք հասանէին առ Դեմետրիոս յիշխանէ ումեմնէ Արաբացւոց՝ առաքել զՈրոգինէս զի ուսուսցէ զնա ի հաւատս. դարձաւ անտի Որոգինէս այսրէն յԱղեքսանդրիա, այլ վասն մոլեգնելոյ Կարակալլայ ի վերայ Աղեքսանդրացւոցն՝ մեկնեցաւ ի Պաղեստին (215) ուր ի Կեսարիա հրաման ետուն նմա եպիսկոպոսունք յեկեղեցւոջն հրապարակաւ մեկնել զգիրս: Դժկամակ եղեւ ընդ այն Դեմետրիոս՝ զի առն ժողովրդականի այնպիսի պաշտօն եղեւ յանձն, եւ կոչեաց զնա այսրէն ի վիճակ իւր: Այլ յետ սակաւ ինչ միոյ հրաւիրեցաւ (218) յԱնտիոք ի Մամմէայ մօրէ Աղեքսանդրի Սեւերեայ, որ լսել իմն կամէր զվարդապետութիւն քրիստոնէիցն, եւ առաւելին կարծի սէր եւ գութ կայսերն առ քրիստոնեայս: Յետ 10ամեայ մատենագրութեան՝ յոր լինէր նպաստ ծախուք[1] ումն ի հնոց աշակերտաց նորա Ամբրոսիոս անուն, զոր դարձոյց նա ի Վաղենտինեան աղանդոյ, թղթով ընծայութեան եպիսկոպոսին իւրոյ չոգաւ յԱքայիա վասն եկեղեցական ինչ գործոյ անցեալ ընդ Պաղեստին՝ ուր ձեռնադրեցին զնա երէց Թէոկտիստոս եպիսկոպոս Կեսարիոյ եւ Աղեքսանդրոս Երուսաղեմի, 43 ամաց (228):

Այնուհետեւ յայլ իմն կերպարանս շրջէին իրք Որոգինեայ. զայրացաւ Դեմետրիոս ընդ իրաւանց յափշտակութիւն ի ձեռն եպիսկոպոսացն այնոցիկ, եւ դնէր Որոգինեայ նախատինս յանցանօք մանկութեան նորա զոր ի վերոյն յիշեցաք, եւ իբրեւ դարձաւ նա յԱքայեայ՝ գումարեալ ժողով ի բաց հան զնա ի գործոց վարդապետութեան եւ մերժեաց յԱղեքսանդրիայ (231), (որպէս հաւանութեամբ թուի վասն մոլորութեանցն որ էին ի գիրսն նորա "Վասն սկզբանց"), եւ յետ մեկնելոյ Որոգինեայ ի Պաղեստին՝ թողեալ փոխանակ իւր զՀերակղաս, գումարեաց Դեմետրիոս միւս եւս ժողով եւ հան զնա ի հաղորդութենէ եկեղեցւոյ եւ ի քահանայական պաշտամանց, եւ առաքեաց զսինհոդոսական թուղթն առ ամենեսին, որում հաւանեցան իսկ ամենայն եպիսկոպոսունք՝ բաց յեպիսկոպոսացն Պաղեստինեայ, Աքայեայ, Փիւնիկեայ եւ Արաբիոյ:

1 Եւթն նօտարք արագագիրք զփոխանս եւս այլք ընդօրինակէին զնօտարացն նշափոխանակէին գրել զոր ասէր, եւ եւթն նախկալսն:

Նոյն սովին փոփոխեցաւ եւեթ առաջարկել գործոյն Որոգինեայ. քանզի անդէն ի Կեսարիա եդ դպրոց ուսման քրիստոնէութեան, մինչեւ վասն հալածանացն Մաքսիմինեայ (235) որ զվարդապետս քրիստոնէութեանն մանաւանդ հալածէր՝ մեկնեցաւ ի կողմն Փիրմիլիանեայ ի Կեսարիա Գամրաց, եւ պարապէր ուղղել զԱղեքսանդրացի կամ զեօթանասնից թարգմանութիւնն եւ յօրինեալ կարգէր զՎեցօրինակն, եւ յետ իբրեւ երկուց ամաց (238) շրջեալ ընդ Նիկոմիդիա՝ ուր գրեաց զհոյակապ թուղթն առ Յուլիոս Ափրիկանոս, հասանէր յԱթէնս եւ անդէն յամեալ հանէր ի գլուխ զմեկնութիւնսն Եզեկիելի, Յովհաննու եւ զառաջին 5 գիրսն մեկնութեան Երգոց երգոյն: Մեկնութիւնն Եսայեայ էր վաղ ի գլուխ եկեալ ի Կեսարիա: Այն ինչ հասեալ նորա այսրէն ի Պաղեստին, կոչեցին զնա եպիսկոպոսունք Արաբացւոց գալ դարձուցանել ի մոլորութենէ զԲերիլլոս զեպիսկոպոս Բոստրայ [1] որ չէր լեալ նոցա հնար պատճառօք հաւանեցուցանել զնա. վաղվաղակի ած զնա Որոգինէս ի հաւան՝ մինչեւ հրապարակաւ հրաժարել Բերիլլոյ ի մոլորութենէն եւ առս թղթովք եւս շնորհակալ լինել Որոգինեայ: Միւսանգամ կոչեցաւ անդր վասն այնպիսեաց՝ որ ասէին ոգւոյ ի միասին ընդ մարմնոյ մեռանել, եւ յետոյ ի յարութեան դառնալ ընդ նմին ի կենդանութիւն:

[illegible] հանէր Որոգինէս ի գլուխ զ60երորդ ամ հասակի իւրոյ. չէր ինչ արգել ծերութիւնն՝ անդադար վաստակոցն. զամենայն օր խօսէր ճառս ընդ ժողովրդեանն, երեւելիք ի դրոց նորա (ընդդէմ Կեղսոսի եւ մեկն. Մատթ. եւ փոքր մարգարէից) ի ժամանակի աստ գրեցան, եւ միանգամայն այլ եւ առնոյր թուղթս ի Փիլիպպեայ կայսերէ եւ ի նորին կնոջէ ի Սեւերայ: Բայց նզովքն որ ի վերայ նորա էին՝ չէր տակաւին առեալ յետս, յայն սակս եւ համարձակագոյնս յանդգնէին ի վերայ նորա թշնամիք նորա. վասն այնորիկ բազում անգամ ցաւովք յիշէ զայն ի ճառսն իւր, որպէս եւ ի թղթի ուրեք առ բարեկամ ոք յԱղեքսանդրիա արտնջէ զանիրաւ գործոց հակառակորդացն իւրոց եւ թէ աղաւաղեն եւ խանգարեն զգիրսն նորա մուծանելով բանս օտարս յանձանց, եւ ի միւսում եւս թղթի առ Փաբիանոս քահանայապետ Հռոմայ արդարացուցանէ զանձն յօտարոտի վարդապետութեանց՝ հանդերձ այլովք բազմօք եւ զայս ասելով՝ թէ բազում ինչ յօտարոտի վարդապետութեանց անտի սպրդեցաւ արտաքս հակառակ կամաց իմոց յԱմբրոսիոսէ յիմմէ բարեկամէ:

Նոր Դեկեան հալածմանքն (250)՝ յորում դարձեալ գլխաւորք քրիստոնէիցն ըմբռնէին, ըմբռնեցաւ եւ Որոգինէս, արկաւ ի բանտ եւ անհնարին տանջանօք լլկեցաւ. յետ հաստատուն խոստովանութեանն գրեաց նա ի բանտէ անտի առ եղբարսն թուղթս բազմաց լի մխիթարութեամբ եւ քաղցրութեամբ: Թէպէտ եւ անտի ազատեցաւ, բայց մեռաւ յետ սակաւ ինչ միոյ 69 ամաց ի Տիւրոս (254), որպէս հաւանութեան թուի ի լլկանաց անտի զոր կրեաց:

Թէպէտ եւ բազումք ի ժամանակակցաց նորա հեռացան ուծացան ի նմանէ վասն օտար ինչ բանից նորա, այլ մեծ մասն նոցա սիրեաց զնա եւ ունէր ի պատուի եւ փառաւորեցին զլուսաւոր միտսն, զյստակ ոգին եւ զտոկուն ջան վաստակոցն գեղեցիկ վերադիր անուամբ կոչելով զնա Ադամանդեան եւ Պղնձի [2]:

1 Տես վերագոյն եղ 213: այլ եւ այլ կարծեաց զՈրոգինեայ՝ տես ի
2 Ἀδαμάντιος, χαλκέντερος. — Վասն Գամ. Տեղ. Ժողովոյ, եղ 390—395:

Digitized by Google

թեամբ եւ հոյակապ քան զամենայն պաշտպանողականութիւնս ժամանակացն, այս ինքն «Գիրքն ընդդէմ Կելսոսի» (եպիկուրեան կամ ընտրական փիլիսոփայի)[1], յԸ գրքութիւնս (գրեալ յամի իբրեւ 249)։

Արժանի յիշատակի Որոգինէս սոյին՝ նմանապէս գործոյն գրոցն որ անուանեալ կոչի «Վասն սկզբանց»[2] ի Դ գրքութիւնս, յորում կան բազմանդամակեալ ամենայն իսկ մոլորութիւնք նորա. բայց էր նորա գրեալ զայն ի մանկութեան յԱղեքսանդրիա՝ այն ինչ ելեալ ի փիլիսոփայական հրահանգաց եւ ոչ կատարեալ լեալ միջամուխ յեկեղեցականսն։— Բաց ի սոցանէ կան եւ մանր ինչ գիրք վասն յարութեան, վասն յորդորանաց ի մարտիրոսութիւն, եւ Թուղթք ոչ սակաւ, յորոց մի է եւ առ Ափրիկանոս՝ վասն թէ վաւերական է պատմութիւնն Շուշանայ եւ վիշապին Դանիէլի։

Կ. Ս. Հիպպողիտոս եպիսկոպոս Պորտուացւոց որպէս հաւանութեան թուի՝ արաբացի յազգէ, աշակերտ Ս. Իրենեայ, որպէս ինքնին իսկ վկայէ, բայց այն չէ յայտ թէ արդեւք Պորտուայ խառնիցն առ բերանով Տիբերիս գետոյ, եթէ միւսոյ Պորտուայ (Ադէնայ) Արաբացւոց աշխարհին, զոր եւ Յերոնիմոս չկարէ որոշել։ Բայց սակայն այն իսկ ստոյգ է թէ եկն նա ի Հռոմ եւ անդէն զկեանսն կատարեաց մարտիրոսութեամբ առ Սեւերիաւ կամ առ Դեկիաւ եւ կամ յառաջնում ամի Մաքսիմինոսի Թրակացւոյ 235։ Հարազատ մատեանք նորա համարին Ա. Գիր վասն զատկաց որ բաժանէր յերկուս մասունս յորոց մի էր ժամանակագրութիւն իսկզբանէ աշխարհի մինչեւ ցառաջին ամ Աղեքսանդրի Սեւերեայ (զորմէ ակնարկէ եւ Մովս. Խորենացի Բ. Գլ. Ժ.), այս մասն գրոց նորա համարեցաւ յոմանց լեալ ժամանակագրութիւնն որ կայ ցայժմ թարգմանեալ ի յունէ ի հռոմայեցի լեզու. երկրորդ մասնն Շրջան կամ կանոն զատկական որ վաղ կորուսեալ էր, այլ յամի 1551 մօտ յեկեղեցի Ս. Ղաւրենտիոսի փորեալ գտաւ ի Վերոնեան անդի հին կճեայ պատկեր Հիպպողիտեայ նստեալ ի գահոյս, եւ աստի անտի գրեալ էր յունարէն կանոնն զատկական յաջմէ՝ ըստ համարոյ Չորեքտասաներորդեայցն եւ ընդ ձախմէ ըստ Կիւրակէիցն։ Բ. Գիր հակառակ Յունաց եւ Պղատոնի կամ վասն տիեզերաց, որպէս կայ նշանակեալ ի պատկերի անդ, եւ կան ցայժմ հատակոտորք մեծամեծք։ Գ. Ճառ ընդդէմ հերձուածոյն Նոյետայ։ Դ. Ընդդէմ Բերոնեայ եւ Հեղիկոնեայ հերետիկոսաց վասն Աստուածախօսութեան եւ Մարմնաւորութեան. այլ ընդ կասկածանօք իսկ է ստուգութիւն մատենին։ Ե. Ցոյցք հակառակ Հրէից։ Զ. Ցոյցք վասն Քրիստոսի եւ Նեռին։ Է. Առաքելական աւանդութիւն վասն շնորհաց կամ պարգեւաց։ Ը. Բանք մեկնութեան ի Շուշան։ Թ. Ճառ ի Յայտնութիւնն։

ՅՈրոգինի աշակերտութենէ ելին երեւելի երեւելի հարք ժամանակին։

5. Ս. Գրիգոր Սքանչելագործ ծնեալ ի Նէոկեսարիա Պոնտացւոց ի ծնողաց հեթանոսաց. յառաջն կոչէր Թէոդորոս եւ ընդ եղբօր իւրում Աթենոդորոյ էր ի հրահանգս ճարտարխօսութեան, եւ ապա պատահեալ նոցա Որոգինեայ ի Կեսարիա՝ ուստի կամէին անցանել յետոյ ի Բերիտոս յուսումն հռոմէական իրաւանց, ըմբռնեցան ի հրահանգս փիլիսոփայութեան Որոգինեայ (231 — 235)։ Աստիճան յաստիճանէ ած զնոսա Որոգինէս եւ արար միջամուխ աստուածեղէն իմաստութեան՝ մինչեւ յետ մկրտելոյ նոցա (338)՝ կարգեցաւ Գրիգորիոս ակամայ յեպիսկոպոսութիւն Նէոկեսարիոյ ի Փեդիմոսէ եպիսկոպոսէ Ամասիոյ ի

1 Տես վերագոյն էջ 204։

2 Περὶ ἀρχῶν.

Digitized by Google

մետրապոլիտէն Պոնտոսի (յամի իբրեւ 240) եւ բազմացոյց զթիւ հաւատացելոց սքանչելեաց յաջողութեամբ, եւ վախճանէր յամի իբրեւ 266, թողեալ ի քաղաքի անդ 17 միայն ոգւոց ի հեթանոսութեան, ուր 17 եւեթ քրիստոնեայք էին անդէն յառաջագոյն։ Կայ նորա Ճառ գովութեան յՈրոգինէս (գրեալ յամի 238 կամ 239) եւ Համառօտ հաւատոյ լի յստակ բանիւք զերրորդութենէ (ընկալեալ ի յայտնութենէ որպէս պատմի՝ յամի իբրեւ 240) եւ Մեկնութիւն Եկղեսիաստեայ եւ կանոնական Թուղթն վասն անկելոց 11 կանոնօք։

6. Միւս եւս աշակերտ Որոգինի եւ նորա թելադրութեամբ դարձեալ ի քրիստոնէութիւն էր Ս. Դիոնիսիոս Աղեքսանդրացի որ յաջորդեաց զՀերակղաս նախ ի վերակացութիւն դպրոցին երախայութեան եւ ապա յեպիսկոպոսութիւն Աղեքսանդրացւոց (247). Եցոյց նա զանձն ներող առ անկեալսն ի հալածանսն Դեկեայ եւ ի նոյն արգահատութիւն յորդորէր թղթով եւ զՓաբիոս եպիսկոպոս Անտիոքայ, զՆովատիանոս մեղմագոյն թղթով ջանայր ածել ի գոգ եկեղեցւոյ [1], ի գժտութեան անդ Ստեփանեայ ընդ Կիպրիանոս եւ ընդ ոմանց արեւելեաց վասն կրկին մկրտութեան՝ եկաց նա միջնորդ հաշտութեան ի միջի։ Բայց եւ ինքն ի կամել բերում ընդ մոլորութեանն Սաբելի անզգուշութեամբ խիստ բազում ինչ խօսեցաւ, եւ իբրեւ ամբաստանութիւն մատուցին զնմանէ ուղղափառք առ քահանայապետն Հռոմայ՝ արդարացոյց Դիոնիսիոս զանձն գրով (որոյ հատուածոք կան առ Աթանասայ) [2], մեկնեալ զբանսն ըստ ուղիղ մտաց։ Յետ երկեամ յաքսորսն կալոյ ի հալածանսն Վաղերիանոսի (259 — 261) եւ յետ այնորիկ քաջալերելոյ զեկեղեցին ի ժամանակի անհնարին սրածութեանն՝ վախճանէր յամի 265, վասն ծերութեանն հրաժարեալ երթալ ի ժողով Անտիոքայ ընդդէմ Պաւղոսի Սամոսատացւոյ։ — Կան պահին (մանաւանդ առ Եւսեբեայ) մեծամեծ հատուածք ի թղթոց նորա առ Փաբիոս, Նովատիանոս, Ստեփանոս քահանայապետ, Սիքստոս Բ. քահանայապետ եւ առ նորին երէց Փիլեմոն, առ Դիոնիսիոս երէց Հռոմայ, առ Բասիլիդէս Պենտապօղիտացի եւ Թուղթք վասն սրածութեանն։

7. Միւս եւս երրորդ աշակերտ Որոգինի՝ էր Փիրմիղիանոս եպիսկոպոս Կեսարեայ Կապադովկացւոց՝ (ըստ Ս. Գրիգ. Նիւսացւոյ) յազնուական տոհմէ եւ նշանաւոր բարեպաշտութեամբ եւ հմտութեամբ, որպէս եւ Մովսէս Խորենացի կոչէ զնա սքանչելի յուսումնասիրութեան եւ ասէ ի տղայութեանն առ Որոգինէս երթեալ վարժել [3], զոր եւ ընկալաւ ի Կեսարիա ի ժամանակի հալածանացն։ Էր նա միջամուխ յամենայն

1 «Դիոնիսիոս Նովատիանեայ եղբօր ողջոյն։ — Եթէ արդարեւ ակամայ, որպէս ասեսդ, եկիր ի դոյն (հերձուած), ցուցցես զայդ մեզ կամաւոր դառնալովդ։ Քանզի լաւ էր զամենայն ինչ կրել՝ զի մի հերձցի եկեղեցին Աստուծոյ։ Նա եւ զոյգ եւ հաւասար է եթէ վասն այդր իսկ լինէիր մարտիրոս՝ զի մի զեկեղեցին հերձցես, եւ կամ զի մի կռոց զոհիցես։ Մանաւանդ թէ ինձ այսպէս թուի՝ թէ եւս իմն այն լաւագոյն եւ պայծառագոյն էր։ Քանզի ի մարտիրոսանալ ուրուք վասն չզոհելոյ կռոց՝ վասն իւրոյ միայնոյ անձինն կրէ մարտիրոսութիւն, իսկ ի մարտիրոսն լինել առ ի զեկեղեցի չհերձանելոյ՝ վասն համօրէն եկեղեցւոյ զայն կրէ։ Բայց սակայն եւ այժմ եւս՝ եթէ հաւանեցուցես զեղբարսն եւ կամ ածիցես զնոսա դառնալ ի միաբանութիւն՝ առաւելագոյն վաստակք եւ արժանիք լինիցին, քան յանցանք։ Յանցանքդ չհամարեսցին քեզ, իսկ արժանիքդ յարգեսցին գովեսցին։ Ապա թէ զայս չկարիցես վճարել, վասն զի ընդդէմ դարձցին եղբարքն եւ չառնուցուն զայդ յանձն, դու զքո ոգիդ ապրեցուցեալ ապրեսցես։ Ըղձանամ քեզ որ խաղաղութեանն ուշ ունիս՝ ողջ լինել ի Տէր»։ Բանք սակաւք, այլ ընտիրք եւ արժանիք ամենն որոյ։ Առ Եւսեբ. Եկ. պատմ. գիր. Զ. Գլ. ԽԵ։ Տես զգործս Նովատիանեայ մերագոյն էջ 227 եւ 254։

2 Թուղթ վասն կարծեաց Դիոնիսեայ (զերրորդութենէ)։

3 Խոր. Բ. Գլ. ՀԵ։

Digitized by Google

խնդիրս ժամանակին իւրոյ․ չոգաւ նա յԱնտիոք առ ժողովոյն եպիսկոպոսունք վասն Հերձուածոյն Նովատիանոսի (252), եւ յամի 256 գումարեալ ժողով յԱփրիկէին հակառակէր ինքն Ստեփաննեայ քահանայապետի կոչեցեալ ջատագով կրկին մկրտելոյ զհերետիկոսն։ Յետ գնալոյ ի մեւս եւս ժողով յԱնտիոք (265) վասն Պաւղոսի Սամոսատացւոյ եւ քննելոյ նորին գլխաւոր՝ իբրեւ երրորդ անգամ ի ճանապարհ անկեալ երթայր ի նոյն քաղաք վասն նորին խնդրոյ՝ ի Տարսոն վախճանէր (269), եւ առաջնորդութիւն ժողովոյն մնայր ի ձեռս Հելենոսի եպիսկոպոսի Տարսոնի։ Թէպէտ եւ Ս․ Բարսեղ բազում դիրս առնէ ղնմանէ գրեալ եւ Մովսէս Խորենացի յիշէ պատմութիւն ինչ Հայաստանեաց հանդերձ գործովք Թագաւորաց (կայսերաց Հռոմայեցւոց եւ Թագաւորացն Պարսից), սակայն այժմ մի միայն Թուղթ կայ նորա առ Կիպրիանոս ի Հռոմայեցի լեզու՝ վասն կրկին մկրտութեան ընդդէմ Ստեփանեայ քահանայապետի, լի սիրով ճշմարտութեան, այլ վիճմանն ջերմութեամբ յափշտակեալ՝ անարժանս ինչ բազում ասէ քարոզս։

Ի վերջին ժողովի անդ Անտիոքայ (270) գտանի Եւսեբիոս եպիսկոպոս Լաւոդիկեայ, երբեմն սարկաւագ Աղեքսանդրացի օգնական Ս․ Դիոնիսեայ, եւ Մաղքիոն Հմուտ արտաքին գիտութեանց եւ վարդապետ ատենաբանական փիլիսոփայութեան յԱնտիոք եւ ապա կարգեալ յերիցութիւն, որ եւ յանդիմանեալ կշտամբեաց ի ժողովին անդ զՊաւղոս Սամոսատացի հանեալ զպատրուակ նորա՝ զի առակաւքն պատրել կամէր զեպիսկոպոսունսն պատ ի պատ բանիւք, եւ ապա (ըստ Ս․ Յերոնիմեայ) ի նորա ձեռն յօրինեցաւ այն գեղեցիկ Թուղթ սիւնհոդական գրեալ ի բերանոյ ժողովոյն առ Դիոնիսոս քահանայապետս Հռոմայ՝ ազդ նորին համար զգործոցն Պաւղոսի եւ զխարդախանաց իսկ արտաշխանքն, եւ կայ այն Թուղթ առ Եւսեբեայ։

8․ Չէին ինչ անյշան մատենագրութեամբ յերկրորդում կէս երրորդ դարու 1․ Մագնէս երէց Երուսաղեմացի եւ կամ ստուգագոյն եւս Մակարիոս Մագնեսիացւոց եպիսկոպոս որոյ կան հատուածոքք ի գրոց պատասխանեացն առ Թէոսթենէս ոմն անուն՝ որ բանս հակառակս միմեանց կարծէր յաւետարանսն գտանել, 2․ Արքեղաւոս եպիսկոպոս Քաշկար քաղաքի Միջագետաց որոյ վիճաբանութիւն ընդ Մանեայ (յամի իբրեւ 277) կայ գրեալ ի մատենի, 3․ Իսկ Պիերիոսի երիցու Աղեքսանդրացւոյ անուանելոյ ի Յերոնիմոսէ՝ փոքր Որոգինէս, եւ Թէոգնոստոյ Աղեքսանդրացւոյ ուսուցչի երախայից յաշակերտութենէ Որոգինէի՝ գրեթէ անուանք միայն մատենագրութեանցն կան ի միջի, իսկ 4․ Ս․ Թէոնայ եպիսկոպոսի Աղեքսանդրիայ կայ Թուղթ մի առ Լուկիանոս ոմն սենեկապան յարքունիս (որպէս Թուի) Դիոկղետիանոսի, գրեալ յառաջ քան զամն 303։

9․ Ս․ Պամփիլոս փիւնիկեցի յազգէ՝ էր յազնուական տոհմէ եւ վարժեալ փիլիսոփայութեամբ հայրենի քաղաքին իւրոյ ի Բերիտոս, սիրելի՝ եւ ըստ անուանն իսկ ամենեցուն բարեկամ․ յետ կրթելոյ յԱղեքսանդրիա առ Պիերեայ յուսումն գրոց սրբոց՝ դադարէր ի Կեսարիա առեալ ձեռնադրութիւն երիցութեան, եւ անդէն կարգէր մատենադարան երեւելի երեւելի եկեղեցական մատենից մանաւանդ մատենիցն Որոգինէի՝ զորս իւր իսկ ձեռամբ ընդօրինակէր, եւ իւրովք իսկ ծախուք յօրինեալ օրինակս բազումս գրոց սրբոց տայր կարօտելոցն, մինչեւ ի հալածանսն ըմբռնեալ ի տանջանս եւ արկեալ ի բանտի զերկեամ մի, ապա սպանաւ (309)։ Տարածեալ էին օրինակք Եւթաղեանակից ի նորա ձեռն ըստ ուղղութեան-

ցըն Որոգինի որ ի Վեցօրինակին, եւ որպէս յայտ իսկ հաւաստութեան է՝ նորա է եւ մեկնութիւն գլխոց գործոցն առաքելոց. իսկ ի 5 դպրութեանց անոր պատասխանատուութեան վասն Որոգինի զոր ի բանտի անդ գրեաց՝ առաջինն միայն կայ առայժմ, այլքն չեն ի միջի հանդերձ վեցերորդ դպրութեամբ՝ զոր յաւել Եւսեբիոս Կեսարացի բարեկամ նորա մեծարելի՝ որ եւ ևս իսկ զանուն նորա կոչելով զանձն Եւսեբիոս Պամփիւլեայ:

10. Նորին ժամանակակից են եւս երէց Ս. Ղուկիանոս Սամոսատացի յաշակերտական առհասարակ երեւելի արդիւնաւորութեամբ եւ գիտութեամբ գրոց սրբոց՝ եւ դպրոց յԱնտիոք (ուսուցիչ եղեն իսկ Եւսեբիոս Նիկոմիդացի, Մարիս Քաղկեդոնացի, Թէոգնիս Նիկէացի), յամի 311 ածաւ նա ի Նիկոմիդիա եւ յետ արկանելոյ ի բանտ՝ ապանեաւ յամի 311 Յունուար. 17: Ըստ Յերոնիմեայ՝ էր սորա ուղղեալ զԸնագիրն Եւթանասնից, եւ օրինակքն ըստ նորին ուղղութեանց կոչեցան Ղուկիանեանք, եւ նովին վարէին եկեղեցիքն Արեւելից:

11. Նշանաւորագոյնս իմն ունիմք ի գրոց անտի Ս. Մեթոդիոսի առն գիտնոյ եւ առաքինոյ բարեպաշտութեամբ, եւ որպէս թուի՝ էր նա նախ եպիսկոպոս Ողիմպոս քաղաքի Լիւկիացւոց եւ ապա Տիւրացւոց, եւ վկայեաց առ Դիոկղետիանոսիւ ի Քաղկիս Ասորւոց: Հատուածք ի գրոց նորա են Խրախտանք սուրբ կուսանաց. Խօսք վասն յարութեան. Ճառ վասն անձնիշխանութեան եւ թէ ուստի իցէ չարն. Վեց հատուածոյք գրոց իւրոց ընդդէմ Որոգինի. Գիրք հակառակ Պորփիւրոսի որ գրեթէ կորուսեալ է ի միջոյ, որպէս եւ այլ եւս ճառեանք նորա, եւ ոմանք ընդ կարծեաւ են:

12. Ընտիրք վկայաբանութիւնք երրորդ դարուն են՝ 1. Վկայաբանութիւն հօրն Որոգինի եւ աշակերտաց նորա Պղուտարքեայ (եղբօր Հերակլեայ Աղեքսանդրացւոց եպիսկոպոսի), Սերենոսի, Հերակղիդեայ, Հերոնեայ, միւս Սերենոսի եւ Հերայիդեայ կնոջ որ մի ըստ միոջէ գլխատեցան: — 2. Վկայաբանութիւն Պոտամիէնեայ, Մարկեղղեայ եւ Բասիլիդեայ[1]: — 3. Վկայաբանութիւն Աղեքսանդրի, Բաբիղեայ. Միտրայ, Կուփոսայ, Ապողոնիայ, Սերապիոնի, Յուլիանու, Քրոնիոնի, եւ այլոց: — 4. Վկայաբանութիւն Պրիսկոսի, Մողքայ, Աղեքսանդրի, Մարինոսի վկայից Կեսարացւոց ի Պաղեստին: — Զամենեցունց սոցա առաս անդ պատմէ Եւսեբիոս Կեսարացի ի վերջին գիրս եկեղեցական պատմութեանն եւ ի գիրսն վկայից պաղեստինացւոց:

## 56

Յետ նշմարելոյ մի ըստ միոջէ զառաջ երեւելի երեւելի մատենագրաց արեւելեան յունական եկեղեցւոյ՝ դարձցուք յետս հայել միւսանգամ իսկիզբն այսր երրորդ դարու դիտել առաւել զմատենագրութիւն արեւմտեան հռովմայեցի եկեղեցւոյ:

Աստ չիք ի փոքունց գալ առակս յառաջ ի մեծամեծսն, այլ իսկ եւ իսկ վաղվաղակի իսկզբանն ի մէջ գայ հռոմէական մատենագրութիւնն ընդ փառաւորութեամբ եւ զօրութեամբ: Իսկ նորքին ընդհանրական նկարագիր որով ընտրին ի միմեանց արեւելեան-յունական եւ արեւմտեան-հռոմէական եկեղեցական մատենագրութիւնքն, այն իսկ է՝ զի ուր արեւելեանք զանազան մասն քրիստոնէութեանն փիլիսո-

1 Տես վերագոյն էջ 148:

փայական իմն ճանապարհաւ հասարակէին, նմին հակառակ արեւմտեանք մեծաւ մասամբ զգործական կողմն աւանդութեան քրիստոնէութեանն գիտութեամբ լուսաւորէին. սոյն իսկ նկարագիր էր որով եւ յառաջին ընտրէր ի միմեանց յունական եւ հռոմէական փիլիսոփայութիւնն։

1. Այն երեւելի որ բուն նախ ած զհռոմէական եկեղեցական մատենագրութիւնն ի գոյութիւն՝ է Կուինտոս Սեպտիմիոս Փղորենս Տերտուղղիանոս, ծնեալ յամի իբրեւ 160 ի Կարքեդոն, որդի առն հարիւրապետի. հանճարեղ ի բնէ լեալ՝ կրթեցաւ ի մանկութենէ ի գիտութիւնս եւ ի լեզուս, մանաւանդ յառաջադէմ ի յոյն լեզուի էր, մինչեւ գիրս ի նոյն լեզու մատենագրել։ Նախ վասն զի ի պաշտամունս տէրութեան սահմանեալ էր մտանել՝ եւ զանձն յուսումն հռոմէական իրաւանց, եւ մեծ հմտութիւն իսկ իրաւանց ամենայն ուրեք ի գիրսն նորա նշմարի։ Որպէս ծնողք նորա՝ նոյնպէս եւ ինքն հեթանոս էր զառաջինն եւ յիմարութիւն իսկ եւ ծաղր զքրիստոնէութիւն համարէր, այլ ի չափ իմն հասեալ մտացն՝ ընկալաւ զքրիստոնէական հաւատս իբրեւ յ30 — 36 ամաց հասակի, զարթեալ ի զօրութենէ քրիստոնէիցն ի վերայ դիւաց եւ ի հաստատութենէ մարտիրոսացն։ Թէպէտ եւ աշխարհական էր, այլ հրաժարեալ եմուտ ի կարգ կղերականութեան եւ առ ձեռնադրութիւն երիցութեան՝ որպէս հաւանութեան թուի ի Կարքեդոն, եւ յամեաց իսկ ժամանակս ինչ յետոյ ի Հռոմ։

Տերտուղղիանոս յառաջնումն մեծաւ ջերմեռանդն նախանձու արկ գիրկս զհաւատովք եկեղեցւոյ. ի մասանց անտի նորա հաւէին մի բաւ միոյէ մատեանք ի յանդիմանութիւն Հրէից, հեթանոսաց, հերետիկոսաց՝ մանաւանդ Գիտաց, եւ ոչ լռութեամբ ինչ անցանէր եւ զպիտոյից եկեղեցւոյ ժամանակին իւրոյ։ Այլ մատենագրութեանն օրինակ առանձինն իմն ունի արտահականութիւն, որպէս ինքն իսկ մատենագիրն անօրինական իմն է անձամբն։ Եւն նորա ձիրք մեծամեծք զարմանալիք հանդերձ բազմապատիկ տեղեկութեամբք եւ սիրտ արիւնաշատ եւ զգայուն. այլ քանզի ոչ չափաւորութեամբ իմն կրթեալ էին երկոքին, յայն սակս եւ օգտակար կարող էին լինել եկեղեցւոյ եւ վնասակար։ Ի բնէ իսկ դառն եւ դժնեայ գտեալ եւ ոչ ի մեղմական լաւոյ քրիստոնէութեանն ուսաւ ղուարթութիւն, այլ էր միշտ եւ յոժար միշտ ի խստութիւնս։ Նմին իրի արտաքին ինչ միայն պատճառք պիտոյ էին մղելոյ հանելոյ զնա բաց սահմանսն՝ ի միաս անձին իւրոյ եւ եկեղեցւոյ։ Մոնտանեանցն սուտ յայտնութիւնք հանդերձ արտաքին խստադոյն կարգօքն եւ անչափ մեռուցմամբք մարմնոյ հրապուրեալ արկին զՏերտուղղիանոս յաղանդն, եւ եղեւ նա յայնմ հետէ հակառակ կաթուղիկէ եկեղեցւոյ (յամի իբր 200) [1]։ Յոմանց կարծեցաւ թէ նախ քան զմահն՝ որ եղեւ յամի իբրեւ 240, դարձեալ իցէ ի ծոց եկեղեցւոյ, բայց չմարթի պատմական հաստատութիւն իրացն տալ։

Ի մատենագրութեանն տէր է Տերտուղղիանոս ի վերայ լեզուին որով գրէ, բանն ի ներքոյ վարժ ձեռին նորա լինի սուր սայրասուր, եւ սուր ուրեք յենու նա ի խարիսխն եկեղեցւոյ՝ անպարտելի իմն օրինակաւ եւ անվրէպ հաւատացանէ ի ճշմարտութիւն անդր։ Սաստեցուցանէ իմն զընթերցանելիս անսովորական ասացուածովքն եւ յանկարծօրէն դարձուածովք. բազում անգամ առաւել հարկանէ քան հաւանեցուցանէ։ Իսկ յետ խոտորելոյ ի Մոնտանեան աղանդն՝ ամենեւին անհետ լինի եւ զայգն այն մեղմականն հանգարտութիւն, ի պաշտ-

1 Տես վերագոյն էջ 221։

պանծութեան անդ ճշմարտութեանն կամ սուտութեան՝ համակ ի հեգնութիւնս հատանի, անգոսնէ, աղմկէ առանց չափոյ: Իսկ ոճն նորա է միշտ ղակոնացի եւ վճռովք, անցումն յանկարծ եւ ոչ աշխարհմանաւ. յաճախ յաւելաբանութիւնս¹ գայ, թէպէտ ամբաստանել կամիցի՝ թէպէտ պաշտպանել, թէպէտ գովել՝ թէպէտ պարսաւել: Կերպարանք բանիցն միշտ սուր են եւ հանապազ հակիրճ, թէպէտ եւ լի նմանութեամբք եւ ծաղկալից, այլ իբրեւ զծաղկունս անապատի: Սակայն եւ այնմ իմն սպառ եւ պատշաճ է միտ դնել՝ թէ ի նմանէ առնույր նախ սկիզբն յօրինուած հռոմէական եկեղեցական լեզուի: Հաստատեցուցանէ նա զլատինական անուանսն, ամենեւին իսկ նոր անուանս հռոմէական ձուլէ եւ կամ զհինսն որպէս ինչ կամի փոփոխէ՝ խառնելով ոչ սակաւ յառանձինն սեպհականութենէ հռոմարէն լեզուի զոր Ափրիկեցիքն խօսէին: Ըստ նորա ափրիկեցի մատենագիրք եկեղեցւոյ² եւ առհասարակ ամենայն իսկ մատենագիրք արեւմտից ըստ նորա լեզուին ձեւել սկսան:

Ա. Որ ընդդէմ հեթանոսացն եւ Հրէից գրեաց՝ է 1. Գիրք պաշտպանութեան քրիստոնէական կրօնից կամ Համառօտ Պաշտպանութեան³ մի ի կարի երեւելի գրոց նորա գրեալ նախ քան զամ 202: — 2. Առ ազգս (հեթանոսս) յերկուս գիրս, նոյնպէս ի պաշտպանութիւն քրիստոնէից, գրեալ գրեթէ ի նմին ժամանակի: — 3. Վասն վկայութեան ոգւոյ, մատեան փոքր այլ մեծագին, գեղեցիկ եւ խորին, յորում կոչէ ի վկայութիւն միոյ աստուածութեան զոգի՝ ոչ որանց քրիստոնէից կամ զփիլիսոփայից, այլ զկատանաղանձ մարդկանն, եւ յայն սակս անուանէ զոգի մարդոյն բնութենամբ քրիստոնեայ: — 4. Առ Սկապուղա անթիպատոս եւ վերակացու Ափրիկեցւոց նահանգին, որ խստութեամբ ընդ քրիստոնեայսն գնայր, գրեալ որպէս հաւանութեան է՝ յամի իբրեւ 211: — 5. Ընդդէմ Հրէից ցուցանէ ի մարգարէից թէ Յիսուս Նազովրեցի է Մեսիայն, գրեալ ի նմին ժամանակի՝ յորում պաշտպանութիւնն էր գրեալ:

Բ. Որ ընդդէմ հերետիկոսացն գրեաց՝ է 1. Վասն կանխարգելութեան⁴ հերետիկոսաց կամ ընդդէմ հերետիկոսաց, կատարելագոյն եւ պատուականագոյն քան զամենայն մատեանս Տերտուղղիանոսի, յորում զսկիզբն անընդհատ աւանդութեան խնդրանէ՝ ի մէջ բերէ իբրեւ ընդհանրական ցոյց ճշմարտութեան վարդապետութեան եկեղեցւոյ հակառակ հերետիկոսաց, որպէս կանխագրութիւնն կամ բազմամեայ ժամանակ ինչ սահմանեալ ի հռոմէական օրինաց՝ անընդդիմակաց պատճառ էր արդար ստացման իրաց ինչ զորոց խնդիր ինչ յարուցեալ իցէ, այնպէս զի ամենայն բեռն ցուցմանն⁵ յառեխի դատաւորին անկանէր ի վերայ դատախազին: Այս մատեան մինչեւ ցգլուխն ԽԴ՝ է ի Տերտուղղիանեայ, անտի մինչեւ ցկատարած (ԽԵ—ԾԳ.) է յառաջ մատուցեալ յայլմէ ումեքէ ոչ հեռի ի նմին ոճոյ: — 2. Վասն մկրտութեան (ընդդէմ Գիայոյ) գրեալ յուղղափառութեանն ժամանակի, եւ պիտանի յոյժ ի վկայութիւն աւանդութեան խորհրդոց: — 3. Ընդդէմ Հերմոգենի Գիտի նկարչի ի Կարքեդոն: — 4. Ընդդէմ Վաղենտինեանց՝ գրեալ յետ անկմանն: — 5. Վասն ոգւոյ (գրեալ յետ անկմանն) ընդդէմ այլ եւ այլ կարծեաց փիլիսոփայիցն զոգւոյ մարդոյն զոր երբեմն անմահ կարծէին, երբեմն կրկին, երբեմն ասէին նմին յառաջգոյութիւն եւ փոփոխումն ի մարմնոց ի մարմինս. ի նմին ուսուցանէ եւ զսկզբնական մեղաց եւ վասն հանգստեանց ոգւոյն յետ մահու: — 6. Վասն մարմնոյն Քրիստոսի ընդդէմ կարծական Գիայոց: —

1 Hyperbole.

2 Պատմէ Ս. Յերոնիմոս ի Համարի Մատենագր. Գլ. 53. թէ Ս. Կիպրիանոս զամենայն օր ընթեռնոյր ինչ ի գրոցն Տերտուղղիանոսի, եւ թէ սովոր էր նա խնդրել ի սպասաւորէն իւրմէ զգիրսն նորա ասելով՝ Տուր զիմ վարդապետն:

3 Apologeticus (այս ինքն Liber).

4 Praescriptio.

5 Onus probandi.

Digitized by Google

7. Վասն յարութեան մարմնոյ՝ գեղեցիկ յոյժ։ — 8. Սկորպիակէ կամ Կարիճ՝ ընդդէմ Գնոստաց եւ մանաւանդ Վաղենտինեանց որք ի ժամանակս հալածմանցն "յորժամ հաւատք վառին եւ բորբոքեալ այրի եկեղեցի ըստ օրինակի մորենւոյն", սողոսկեալ գային կեղծաւորեալ՝ կարեկից զանձինս ցուցանել այնոցիկ որ յօժարեալ ի մարտիրոսութիւն իցեն՝ խօսելով հրապոյրս պղտորս՝ թէ չարաչար եւ ընդ վայր տան զանձինս ի մահ, չիմանան չարանուն ի մեռ եւ չգիտեն թէ չէ հնար զի Քրիստոս որ միանգամ վասն մեր մեռաւ՝ զարիւն մեր եւ փոխանակ ընդ այնր խնդրիցէ, եւ Աստուած որ ի հին կտակարանին արհամարհէր զարիւն պատարագացն՝ չէ մարթ թէ ծարաւի իցէ արեան քրիստոնէիցն, եւ այլ եւս նոյնպիսիս. (գրեալ է յետ անկմանն)։ — 9. Ընդդէմ Մարկիոնի ի 5 գիրս, որ է ընդարձակագոյն եւ պարարտագոյն քան զամենայն գրութիւնս Տերտուղիանոսի ընդդէմ հերետիկոսաց, գրեալ յետ անկմանն այս ինքն յամի իբրեւ 207 կամ 8։ — 10. Ընդդէմ Պրաքսէայ առն փռիւգացւոյ խառնադաւանողի[1], գրեալ յետ անկմանն։

Գ. Զոր վասն գործական կենաց իւրոց գրեաց Տերտուղիանոս՝ է, 1. Վասն ապաշխարութեան գիրն՝ զոր գրեաց նա ի ժամանակի ուղղափառութեանն եւ ըստ ուղղափառ մտաց ընդդէմ բախելով եւ մոնտանեան վարդապետութեանն։ — 2. Վասն համբերութեան (գրեալ նոյնպէս յառաջ քան զանկումն)։ — 3. Առ մարտիրոսն քաջալերութիւն՝ գրեալ գրեթէ ի նմին ժամանակի յորում Պատասխանատուութիւնն։ — 4. Վասն աղօթից որ է մի ի գրութեանց նորա առաջնոց ժամանակաց, եւ է փոքր այլ գեղեցիկ ինչ մեկնութիւն տէրունական աղօթից, եւ խրատ պատրաստութեան աղօթից։ — 5. Առ կին իւր յերկուս գիրս՝ թողեալ իբրեւ կտակ նմին, տալով խրատ զի կացցէ այրի յետ մահուան իւրոյ ըստ առաքելոյն խրատու, կամ գոնեայ մի լինիցի առն հեթանոսի, գրեալ յառաջ քան զանկումն եւ յայն սակս ըստ ուղղափառ մտաց վասն երկրորդ ամուսնութեան։ — 6. Վասն պսակաց. ի պատճառս ուրախութեանցն որ յետ կատարելոյ յաղթութեանցն Սեպտիմեայ Սեւերեայ (յամի 198) յԱփրիկէ լինէին եւ յաճախէին անդր ամենք ի քրիստոնէից, խրատէ զնոսա ի բաց կալ յանագորոյն կրկէսէն եւ ի լկտի թատերացն. "Զիարդ, ասէ, համարձակ իցէ լսել զայն՝ զոր ասել ոչ իշխեմք. որպէս զձեռս զոր առ Աստուած ամբարձեալ իցես յաղօթս՝ յետ այնորիկ վաստակաբեկ առնիցես ի գովութիւն գուսանին ծափս հարկանելով. կարիցէ՞ ոք յայնժամ զԱստուծոյ խորհել անդ կալով՝ ուր ոչ գոյ ինչ յԱստուծոյ"։ — 7. Վասն կռապաշտութեան. ընդդէմ այնոցիկ ի քրիստոնէից որ չհամարէին գործ կռապաշտութեան զյօրինելն եւ զվաճառել պատկերս դից եւ այլ եւս նոյնպիսի հեթանոսական պաշտամանն գործիս, գրեալ նոյնպէս յառաջ քան զանկումն։ — 8. Վասն պսակի. յորժամ առ Սեպտիմեաւ Սեւերեաւ բաշխէր պարգեւ զօրականին եւ մի մի ի նոցանէ մատչէր պսակ ի գլուխ առ հազարապետն, մի ոմն ի քրիստոնեայ զինուորաց խղճեալ՝ զպսակն ի ձեռին կալեալ եւ ոչ ի գլուխն՝ այնպէս մերձեցաւ առ հազարապետն անդր. հարցաւ քննեցաւ եւ արկաւ ի բանտ։ Իբրեւ ուղղափառք ստգտանէին իսկ զգործ զինուորին՝ իբրեւ գործ աւելորդ եւ տարաժամ, մանաւանդ զի եւ երկեւղ իսկ ի վերայ կայր թէ վասն նորին հալածումն ինչ առ հասարակ ի վերայ ամենեցուն գրգռիցի, անտանօր Տերտուղիանոս որ յայնժամ նորոգ ի մոնտանեան աղանդն խոտորեալ էր՝ մատչէր ի ջատագովութիւն զինուորին, յառաջ բերելով զամօրութիւնն իսկզբանէ[2]։ — 9. Վասն փախըստեան քրիստոնէից ի ժամանակի հալածանաց, զոր մեղս համարի Տերտուղիանոս ըստ մոնտանեան վարդապետութեան։ — 10. Վասն յորդորութեան զգաստութեան՝ իբրեւ յաւելուած գրոցն որ առ կին իւր։ — 11. Վասն միամուսնութեան՝ ըստ մոնտանեան իսկ մտաց։ — 12. Վասն քօ-

1 Տես վերագոյն էջ 212։

2 Տես Կղեմ. Աղեքսանդրացի Դաստիար. Բ. Գլ. 8, եւ Մունիկիոս Փելիքս՝ Ոկտաւ. Գլ. 12. 38. յորոց բանից երեւի թէ յայսպիսի դէպս չդնէին զայն ի գլուխ զինուորքն քրիստոնեայք։

Digitized by Google

զՀրեշտակն Նովատիանու ի Հաղորդութենէ իւրմէ, եւ զայլ եւս եպիսկոպոսունս Ափրիկեցւոց աշխարհին զգուշացոյց մերժել զնոսա։

Մինչ չեւ բովանդակ լուծեալ այսր շփոթութեան՝ կրկին աղէտք ի վերայ հասանէին, ախտն ժանտ, եւ հալածումն Գաղղոսի։ Յայն սակս փութացաւ Կիպրիանոս միւսանգամ ժողովով հաստատել զվճիռս առաջին ժողովոյն որ վասն անկելոցն ապաշխարութեան, զի այնպէս զօրասցին հաւատացեալքն ի ճգնութիւն պատերազմին՝ որ առաջի կայր․ եւ ինքն իսկ զանձն ի մահ պատրաստէր եւ ջանայր յորդորել զհօտ իւր բանիւն եւ օրինակաւ՝ լինել յանձն ի կամս Աստուծոյ ի կրկին վտանգի անդ մահու․ զի անհնարին իսկ մոլեգնէր ժանտն ի Կարքեդոն, աղմուկ եւ շփոթ շահեալ տիրէր ընդ բնաւ, ամենայն որ կարողն էր սրանայր փախստեայ ի բաց․ առ ահի ըմբռնելոյ ախտիւն՝ դադարեալ էր ամենայն դարման հիւանդաց եւ թաղումն գիականցն, զորս երբեմն կիսամեռս իսկ ի տանց անտի ի հրապարակս ընկենուին, եւ ապականէր իսկ օդն։ Կոչեաց Կիպրիանոս զժողովուրդ իւր, մեկնեաց նոցա զպատուէր սիրոյն որ ոչ ի վերայ հաւատակցացն միայն կայ, այլ եւ ի վերայ հալածչացն եւս պարտի ձգել։ Իսկ եւ իսկ բաժանեցաւ ժողովուրդն յիւրաքանչիւր գործ հասարակաց սիրոյն, կէսք բերէին կուտէին արծաթ, կէսք մատուցանէին զանձինս ի դարման հիւանդացն, եւ այլք յայլ ինչ գործ առանց խտիր ինչ քրիստոնէից եւ հեթանոսացն առնելոյ, մինչեւ ի գութ իսկ դարձաւ սիրտ հեթանոսացն ընդ այնպիսի մեծանձնութիւնն։ Այլ ոչ սահմանք վիճակի իշխանութեան իւրոյ դնէին եզր սիրոյն Կիպրիանու։ Իբրեւ հաս ի նմին ժամանակի զրոյց յեպիսկոպոսաց անտի Նումիդացւոց թէ հէն եկեալ տարաւ գերի բազում ի քրիստոնէից՝ վաղվաղակի ժողովէր Կիպրիանոս արծաթ ի հաւատացելոց եւ առաքէր սեստերտս 100,000 ի փրկանս գերւոյն։

Յորժամ միւսանգամ եղեւ խաղաղութիւն եկեղեցւոյ իսկզբան թագաւորութեանն Վաղերիանու՝ ժողովէր բազում անգամ սինհոդոս ի հաստատութիւն պահպանութեան եկեղեցական կարգաց (253—256), այլ անդէն անկաւ սերմն երկպառակութեանն վասն ձախող խնդրոյ հերետիկոսացն մկրտութեան՝ որ յարեւելից անց յԱփրիկէ [1]։ Այլ ապա յետ երրորդ ժողովոյն Կարքեդոնի որ վասն այնր խնդրոյ եղեւ՝ ի բաց եկաց Կիպրիանոս ի հակառակութենէ անտի առ երկիւղի քայքայելոյ միութեանն, եւ կասկածեալ թէ գուցէ կիրք ինչ ի ներքս խառնիցին՝ գրէր զգիրսն Վասն օգտի համբերութեան եւ Վասն նախանձաւորութեան եւ նախանձու, առ ի ցածուցանելոյ զերկպառակութեանն ոգի (255 կամ 256)։ Նա եւ չիջաւ իսկ հակառակութիւնն ի վախճանել Ստեփաննեայ մարտիրոսութեամբ՝ որպէս հաւանութեան է (257 Աւգ. 2)։

Նայսպէս ամս իբրեւ տասն լինէր Կիպրիանոս լուսատու յեկեղեցւոջ, եւ այնուհետեւ հասանէր մօտ ի կատարումն փառաւոր ընթացիցն՝ եւս եւս փառաւորագոյն վախճանաւն։ Իբրեւ ել հրովարտակ հալածմանն Վաղերիանու (257) կոչեաց զնա անթիպատոսն Ասպասիոս Պատեռնոս առաջի (30 Աւգ.), եւ զի չառ յանձն հնազանդել հրամանի կայսերն, աքսորեցաւ ի Կուրուբիս քաղաք ծովեզերեայ ի Զեւգիտանեան նահանգի։ Յաջորդ Պատեռնեայ՝ Գաղերիոս Մաքսիմոս հրաման ետ դառնալ նմա անտի յետս եւ կալ ի բուրաստանսն իւր։ Այլ սակաւաժամանակեան էր ուրախութիւն ժողովրդեանն ընդ տես եպիսկոպոսին իւրեանց, զոր սիրէին․ քանզի Մաքսիմոս յորժամ յՈւտիկա

1 Տես վերագոյն էջ 225—6։

էր, հրամայեաց բերել զնա անդր յատեան։ Այլ Կիպրիանոս ի մէջ եղեալ՝ անդ առաջի վկայութիւն արեանն, ուր կեցեալն եւ ուսուցեալ եւ գործեալ էր՝ թողեալ զանձն առ ժամանակ մի, մինչեւ դարձաւ անթիպատոսն այարէն ի Կարքեդոն, եւ յետ այնորիկ ածաւ նա ձերբակալ մեծ ի Կարքեդոն ի Սեքստոս՝ ուր նստէր անթիպատոսն։ Շարժեցաւ ամենայն քաղաքն կարքեդոնացւոց, քրիստոնեայքն երթային զհետ նորա գունդագունդ եւ զգիշերն ամենայն խճողեալ կային ի հրապարակի անդ շուրջ զտամբն յորում Կիպրիանոս կայր կալեալ, երկուցեալ գուցէ գիշերայն գործն վճարիցի անտես ի նոցանէ։ Ի վաղիւ անդր կացոյց զնա Մաքսիմոս յատեան առաջի իւր. համառօտիւ հարցմունքն եւ պատասխանիք վճարեցան, եւ ընթերցաւ ի տախտակէ անթիպատոսին վճիռն այսպէս «Զթասկիոս Կիպրիանոս հաճոյ թուի պատժել սրով», որում տայր պատասխանի սուրբն «Աստուծոյ գոհութիւն»[1]. իսկ եւ իսկ կատարելոց էր վճիռն. խուժեալ երթայր զհետ նորա բազմութիւնն ի սպանմանն տեղի. անդ միւսանգամ եկաց Կիպրիանոս յաղօթս ի գուճս եւ զվերարկուն[2] հանեալ տայր սարկաւագունսն, ինքն զիւր աչսն կապէր, իսկ զձեռսն կապէր իւր իսկ երէցն, եւ հրամայէր տալ յառաջագոյն դահճին 25 դահեկանս ոսկիս։ Տարածեցին հաւատացեալք շուրջ զնովաւ կտաւ ընդունել զարիւն եպիսկոպոսին սրբոյ, եւ անկաւ գլուխն պատուական զարդարեալ մարտիրոսութեանն պսակաւ (14 Սեպտ. 258)։

Բաց ի վաւերական վկայաբանութենէ Կիպրիանու զոր ցայժմ ունիմք՝ աւանդէ զվարս նորա՝ նորին սարկաւագ Պոնտիոս ի գեղեցիկ մատենին որ Վասն վարուց եւ չարչարանաց Կիպրիանոսի։ Երեւելիք ի հարց եկեղեցւոյ (Ս. Գրիգոր Նազիանզացի[3], Վինկենտիոս Լերինացի[4] եւ մանաւանդ Ս. Օգոստինոս) բարբառին ի գովեստս նորա։ Ասէ Օգոստինոս ցԴոնատիստս «Որչափ մեծն էր Կիպրիանոս՝ դոյնչափ խոնարհեցոյց յամենայնի զանձն, եպիսկոպոս էր նա կաթուղիկէական, մարտիրոս էր կաթուղիկէական»։ Բանիցս ճշմարտութիւն կայ արձանացեալ յեկեղեցւոջ ի գիրս իւր զորս եթող՝ լի ամենայն գեղեցկութեամբ եւ օծութեամբ։

Ի թղթոց նորա մնացելոց որ են ընդ ամենայն 81՝ գրեցան Ա—Գ. յամի 249 յառաջ քան զԴեկեան հալածումն, Ե—ԽԳ. յամի 250 ի տեղւոջէ թաքստեանն, իսկ յետ դարձին (առ Կոռնելիոս քահանայապետին) յամի 251՝ ԽԴ—ԾԴ. յամի 252՝ ԾԵ—Կ, եւ (առ Ղուկիոս եւ Ստեփանոս քահանայապետսն) յամի 253՝ ԿԱ—ԿԵ, յամի 254՝ ԿԶ—ԿԸ. յամի 255 (յորում եւ խնդիր մկրտութեանն)՝ ԿԹ—ՀԱ, յամի 256՝ ՀԲ—ՀԵ. ի յառնել հալածանացն Վաղերիանու յամի 257 (առ Սիքստոս քահանայապետին՝) ՀԶ—ՀԸ, յամի 258՝ Ձ—ՁԱ։— Իսկ ճառքն նորա 13՝ են գիր առ Դոնատոս կամ վասն շնորհաց (246), Վասն ընդունայնութեան կռոց (247), Վկայութիւնք ընդդէմ Հրէից առ Կուիրինոս իբրեւ յաւելուած նորին գրոյ, Վասն հանդերձից կուսանացն (248 կամ 249), Վասն միութեան Եկեղեցւոյ, որ է պտուղ համօրէն իսկ գրութեանց նորա (251), Վասն անկելոցն (251), Վասն տէրունական աղօթից (252), Վասն մարդամահու (253 կամ 254), Առ Դեմետրիանոս (պատասխանատուութիւն ինչ քրիստոնէութեան) (253), Վասն թելադրութեան մարտիրոսութեան առ Փորտունատոս (ընդ մէջ 252—253 ամաց կամ 257), Վասն գործոց (բարեաց) եւ ողորմածութեան ընդ մէջ 254—256 ամաց), Վասն օգտի համբերութեան (255 կամ 256), Վասն նախանձաւորութեան եւ նախանձու (256)։

1 Deo gratias.
2 Dalmatica.
3 Ճառ. ԻԴ։
4 Զգուշ. Գլ. Գ. 30։

Digitized by Google

Մնաց ի մատենագրաց առաջի մատուցանէ մեզ հռոմէական մատենագրութիւնն եւ մանր ինչ գրութիւնս ոմանց ոմանց, որպէս 1. Գայիոսի երիցու Հռոմայ որ եղեւ անուանի բանիւ եւ գրով (196—212), կան չորք հատուածք (առ Եւսեբեայ) ի գրոց անտի "Վիճման ընդ (մոնտանեանն) Պրոկղի", եւ մեւս եւս գեղեցիկ հատուած (առ Եւսեբեայ) ի գրոց անտի նորա՝ անուանեալ "Փոքր բաւիղ" (ընդդէմ Արտեմոնի եւ Թէոդոտայ խաղախորդի), 2. Անանուան ուրուք գիր ընդդէմ Նովատիանու, 3. Մեւս եւս ուրուք անանուան "Գիր վասն կրկին մկրտութեան", 4. Կոմմոդիանոսի պաւեալ (որ էր դարձեալ ի հեթանոսութենէ) "Հրահանգք ընդդէմ հեթանոսաց" (յամի 280), 5. Անանուանեայ պաւեալ "Երգ ընդդէմ հեթանոսաց", 6. Ս. Վիկտորինեայ եպիսկոպոսի Պետաւիոնացւոց (այժմու Պետաւ քաղաքի Ստիրիայ) որ վկայեաց առ Դիոկղետիանեաւ, "Յաղ վասն աշխարհարարութեան" եւ "Մեկնութիւն Յայտնութեան", 7. Թող զթուղթս Կոռնեղեայ քահանայապետի եւ զհատակոտորս թղթոց Դիոնիսեայ եւ Փեղիքսի քահանայապետաց Հռոմայ։ 8. Վաւերական վկայաբանութիւնք արեւմտեան եկեղեցւոյ են՝ ա. վկայաբանութիւն Սկիղղիտեան վկայից, բ. վկայաբանութիւն Պերպետուայ, Փեղիկիտայ եւ ընկերացն[1] գ. վկայաբանութիւն սրբոցն Փրուկտուոսայ (եպիսկոպոսի Տառակոնայ), Աւգուրեայ եւ Եւղոգեայ (սարկաւագաց † 259), Թող զվկայաբանութիւն Ս. Կիպրիանու։

1 Տես վերագոյն էջ 147—8։



Digitized by Google

# Բ

## Ի ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԷ ՄԻՆՉԵՒ ՑԿՈՐԾԱՆՈՒՄՆ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ (313—480, ԺԱՄԱՆԱԿ ԻԲՐԵՒ 170 ԱՄԱՑ)

## Ա

Կոստանդիանոս, նորա յաղթութիւն եկեղեցւոյն — Եկեղեց. ազատութիւն, Հերձուած Դոնատեանց, Արիոս, Ժողովն Նիկիոյ Ա. տիեզերական, Ս. Աթանաս (313—337)։

### 57

Յետ 18ամեայ պատերազմին միապետեաց Կոստանդիանոս Մեծն ի մի զտէրութիւնն Հռոմայեցւոց որ ի 6 մասունս բաժանեալ էր, եւ տիրեաց նա մեծաւ զօրութեամբ եւ պատուով մինչեւ ցվախճան իւր մահուան (324—337)։ Թէպէտ եւ կրթեալ էր նա ի հեթանոսութեան, սակայն ի մօրէն իւրմէ ի Հեղինեայ եւ ի հօրէն որ էին ի կողմն քրիստոնէից՝ ժառանգեալ իմն էր մեծապէս կարծիս զքրիստոնէութենէ, եւ յարքունիսն Դիոկղետիանոսի ի Նիկոմեդիա էր տեսեալ բազում անգամ զազնուականութիւն վարուց եւ զզարմանալի քաջասրտութիւն քրիստոնէից եւ զարմացեալ եւս էր ընդ նոսա. այս ամենայն վաղ ուրեմն երեւէր ի նմա յորժամ տիրէրն ի Գաղիա։ Իսկ յետ զարմանալի նշանին եւ յաղթութեանն ի վերայ Մաքսենտեայ՝ արդարեւ դարձաւ ի քրիստոնէութիւն, այլ տակաւին տկար իմն էր ի նմա զօրութիւն հաւատոցն. զի թէպէտ եւ ըստ հօրն օրինակի ած կացոյց զեւրեւ զքրիստոնեայսն, սակայն առանց եւ զհեթանոսս ամենեւին յիւրմէ հեռացուցանելոյ. եւ թէպէտ եւ հրաման ետ զեկեղեցիս քանդեալս ի ժամանակս հալածանացն միւսանգամ շինել՝ սակայն եւ զմեհեանս հեթանոսացն չտայր կործանել, նա աւանիկ լինէր հաղորդ զոհից նոցա։ Բայց ապա ի զօրանալ ի նմա ոգւոյն քրիստոնէութեան, մանաւանդ յետ բազմապատիկ յաղթութեանն ի վերայ Լիկինիոսի (323)՝ ամենեւին յաղթեաց նմա սէր քրիստոնէութեանն, քանզի պատերազմն այն յընթացսն դրեթէ պատերազմ իմն կրօնից եղեւ, այնու՝ զի Լիկինիոս յառաջ քան զճակատն զոհէր հրապարակաւ կռոց եւ դնէր ուխտ ջնջել զքրիստոնեայսն, ուր Կոստանդիանոս զխաչն Քրիստոսի առնէր դրօշ իւրոյ պատերազմին։

2. Բազմապատիկ օրէնք զորս մի ըստ միոջէ հանէր՝ վկայեն զսիրոյ եւ զմեծարանաց զոր առ քրիստոնէութիւնն ունէր, մանաւանդ այնուքիկ զոր յայնժամ եհան յորժամ եկաց միահեծան տէր տէրութեանն Հռոմայեցւոց (323)։ Բազմապատիկ շնորհմամբք յոր-

Digitized by Google

դորէր նա զնահանգան ընդունել զքրիստոնէութիւն. ի դնելն հարկս ի վերայ համօրէն տէրութեանն՝ առնէր ապահարկ զկղերն կաթուղիկէ եկեղեցւոյ, որ եւ ոչ մեհենից հեթանոսաց էր շնորհեալ[1]: Շնորհեաց նա կղերականաց իրաւունս առնլոյ ժառանգութիւն կտակաւ[2], (քանզի ըստ օրինաց Հռոմայեցւոց չէր համարձակ ամուրեացն ժառանգել). Հրաման տայր թէ հաստատուն է արձակուրդ գերեացն որ լինիցի առաջի եկեղեցւոյ յանդիման կղերականացն[3]. Նա աւանիկ սահմանէր եւս թէ յորժամ երկոքին կողմանք որ ոչ հաճեալ ընդ վճիռ աշխարհական դատաւորին իցեն՝ համարձակ իցէ նոցա երթալ առ եպիսկոպոսն՝ զի նա միանգամ որոշեսցէ[4]. Եբարձ եւ զկանխագրութիւն վասն մարդոյ յափշտակելոյ: Եբարձ եւ զմեւս եւս դաժան օրէնս. քանզի ըստ օրինաց Հռոմայեցւոցն գերիքն համարեալ էին իբրեւ իրք տերանց եւ ոչ իբրեւ անձինք, վասն որոյ եւ ոչ հաստատուն ամուսնութեան[5] իրաւունք էին նոցա, այլ բնակակցութեան[6] եւեթ ծառայի ընդ աղախնոյ, զի տէրն կարէր բաժանել զնոսա եւ զորդիս նոցա որպէս ինչ կամէր՝ վաճառելով կամ այլով ինչ օրինակաւ: Եբարձ եւ զվատանուանութիւն ամուրեաց (որ արք անայրք համարէին ի Հռոմայեցւոց իբրեւ պատճառք նուազութեան հռոմէական տէրութեան, եւ վասն զերծ բարս ունելոյ նոյնպիսեացն ի մէջ հեթանոսաց, մինչեւ սահմանեալ եւս էին վասն նոցա տոյժք տուգանաց) եւ ետ նոցա կայսրն եւ պատիւ եւս առաւելութեան ունելոյ իշխանութիւն առնելոյ կտակ յառաջ քան զօրինաւոր հասակն (զոր միայն վեստեան կուսանացն շնորհեալ էին Հռոմայեցիք՝ իբրեւ արդարեւ պատուական կուսանաց) (320): Զպատիժն խաչելոյ բառնայր ի միջոյ վասն մեծարանաց առ խաչն Քրիստոսի[7]. Նոյնպէս եւ զպատիժ խորտակելոյ ոսկերաց ի վերայ սալի արգել վասն մարդասիրութեան: Հրաման ետ զի դադարեսցեն եւ խաղք սուսերամարտկացն[8]. Եբարձ եւ զսովորութիւն խարանելոյ զճակատ այնոցիկ որ յերկաթահատս տուեալ լինէին, "զի մի, ասէ, արատեսցին դէմք՝ որ ըստ նմանութեան երկնաւոր գեղեցկութեանն ձեւեալ իցեն[9]": Հրամայեցաւ ունել փափուկ առ հասարակ միաշաբաթւոյ (321), սակայն ներեալ էին ի սմին աւուր գործք մշակութեան եւ դատաստանք արձակման գերեաց[10]:

Արգելոյր կուսակալացն հեթանոսաց կալ մօտ ի ժամ զոհիցն ըստ սովորութեանն՝ զի այնպէս տակաւ հովացի եռանդն եւ այլոց եւս հեթանոսաց. եւ յետ սակաւ ինչ միոյ ամենեւին իսկ արգել զզոհս կռոց որ առանձին լինիցին, կարծեաց զսովորութիւնս հա-

1 Մատեան Թէոդոսեան, Գիրք ԺԱ. Տիտղոս 1. Օրէնք 1:
2 Մատ. Թէոդ. ԺԶ. 2. 4:
3 Մատ. Թէոդ. Դ. 7. 1:
4 Եւսեբ. Վարք. Կոստանդ. Դ. 27:
5 Connubium.
6 Contubernium.
7 Սոզոմեն. Եկ. պատմ. Ա. 8:
8 Մատ. Թէոդ. ԺԵ. 11, 1:
9 Մատ. Թէոդ. Թ. 5. 1:
10 Մատ. Յուստին. Գ. տիտղոս 12, օր. 3, եւ Թէոդ. Բ. Տիտղ. 8. օր. 1:



Digitized by Google

ադիտաց եւ հմայութեանց (319), եւ յետոյ ուրեմն ետ փակել զտեղիս պատգամացն, քանդել մեհեանս բազումս ի Փիւնիկէ՝ յորս կատարէին յայտնապէս լկտի պաշտամունք ի պատիւ Աստղկան, եւ ի մեծագանձ մեհենաց Ասիայ եւ Յունաց աշխարհին հանեալ պատկերս ճարտարագործս զարդարէր զԿոստանդնուպօլիս, եւ յասկեղէն եւ յարծաթեղէն սպասուց նոցա հատանէր դահեկանս։

3. Որպէս մայր նորա դշխոյն Հեղինէ եկեղեցիս ի լերինն Ձիթենեաց եւ ի Բեթղահէմ՝ նոյնպէս եւ Կոստանդիանոս տայր կանգնել եկեղեցիս ի վերայ գերեզմանին սրբոյ յԵրուսաղէմ, ի Նիկոմեդիա, յԱնտիոք, ի Մամբրէ (յետ սրբելոյ զտեղիսն ի գարշելի պաշտամանց կռապաշտութեան, ըստ ազդ առնելոյ նմա Եւտրոպիայ այրւոյ կնոջն Մաքսիմիանոսի, մօր Փաւստայ), ի Հելիոպոլիս (յետ կործանելոյ զպղծալից մեհեան Աստղկանն) եւ բազում եկեղեցիս ի Կոստանդնուպոլիս (յորս նշանաւոր է մանաւանդ հոյակապ եկեղեցին Առաքելոց) եւ կարգէր նոցա հաս բազումս[1]։ Օչափն որով չափեալ լինէր յորդութիւն ջրոյն Նեղոսի զորմէ պտղաբերութիւն իսկ երկրին կախէր, հրամայեաց եա հանել ի պղծալից մեհենէն Սերապեայ Աղեքսանդրացւոց ուր պահէրն, եւ տանել դնել յեկեղեցւոջ ուրեք։ Հեթանոսք սպասէին սովոյ յերեսաց բարկութեանն Սերապեայ, այլ եւ գետն կամովին առնէր պտղաբեր յոյժ զամն։ Թէպէտ եւ պահեաց նա զյորջորջումն պատուոյ կայսերացն Քահանայապետ (Քրմապետ) մեծ[2] առ ի զգուշութիւն աշխարհական իրաւանց իւրոց, որպէս պահեցին յետ նորա եւ այլ կայսերք, տակայն յայտ առնէր թէ ի ներքին իրս եկեղեցւոյ չկամէր խառնել զանձն։ — Եւ արդարեւ յետ այսչափ ջանից եւ օրինաց՝ եղանէր արդեամբք ի գլուխ որում ցանկացեալն էր, զի գունդագունդ ի քաղաքս եւ ի գեղս լնուին զեկեղեցիս՝ դասալքանալով մեհենից հեթանոսացն։

Հանդէս հաստատութեան քրիստոնէական հաւատոց Կոստանդիանոսի երեւեցաւ քաջ ի հակառակութիւնսն որովք անդէն իսկզբանէ դարձին իւրոյ սկսաւ պղտորել եկեղեցի, այս ինքն՝ Դոնատեան հերձուածովն եւ Արիոսեան հերետիկոսութեամբ։

## 58

Հերձուած Դոնատեանցն առ սկիզբն յետ մահու Մենսուրիոսի եպիսկոպոսի Կարքեդոնացւոց, որ վախճանեցաւ յամի 311 ի դառնալն իւրում ի Հռոմայ, ուր երթեալն էր տալ պատասխանի կայսերն Մաքսենտիոսի վասն Փեղիքսի ուրումն սարկաւագի

1 Եւսեբ. վարք. Կոստ. Գ. 25—40. Գ. 43—45. եւ 58—60։
2 Pontifex maximus.

Digitized by Google

խորոյ՝ զորմէ անհաստատութիւնն լեալ էր թէ իցէ գրեալ ինչ նախատանօք հակառակ կայսեր։ Իբրեւ հասանէր լուր մահուն ի Կարքեդոն՝ ճեպեցուցին զընտրութիւն նորոյ եպիսկոպոսի երկոքին երիցունքն Բոտրոս եւ Կեղեստոս՝ զի թերեւս ինքեանք ընտրեսցին. բայց միաբան բարբառով[1] ժողովրդեանն ընտրեցաւ այրն զօրաւոր Կեկիլիանոս սարկաւագ եւ Փեղիքս դըրացի եպիսկոպոսն Ապտուն-գայ ձեռնադրեաց զԿեկիլիանոս։

Այլ յարեան հակառակ ընտրութեան նորա բաց յերիցանց անտի եւ երկու եւս ժողովրդականք, քանզի էառ ի նոցանէ Կեկիլիանոս յետս զգանձս եկեղեցւոյն զորս աւանդեալ էր նոցա Մէնսուրիոս վասն զգուշութեան յերթալ իւրում ի Հռոմ. եւ մեւս եւս երրորդ գրգռիչ գտաւ Լուկիղլա կին մեծատուն հռոմայեցի, որ կաշառաւ քեցէր զժողովուրդն յեպիսկոպոսէն վասն քինու զոր առ նա ունէր. քանզի Կեկիլիանոս ի սարկաւագութեանն կշտամբեալ էր զնա վասն նշխարս ինչ պատուելոյ՝ որ չէր քննեալ յեպիսկոպոսէն։ Յութանաւն եպիսկոպոսունք Նումիդիայ հանդերձ մետրապոլտաւն իւրեանց Սեկունդոսիւ Տիգիսիս քաղաքի (որք ի բնէ զայրացեալ էին ընդ չկոչել իւրեանց ի նոր ընտրութիւնն) եկին ի Կարքեդոն եւ մերժեալ ժողովով զԿեկիլիանոս՝ ընտրեցին հակառակ եպիսկոպոս զընթերցիչն Մայորինոս զտանակից Լուկիղլայ, ասելով թէ ձեռնադրութիւնն որ ի Փեղիքսայ մատնչէ զրոց սրբոց (որպէս համարէին)՝ անզօր է. եւ թէ Փեղիքս որպէս եւ Կեկիլիանոս չկարեն մնալ յեկեղեցւոջ Աստուծոյ՝ եթէ ոչ նախ ծանիցեն զյանցանսն եւ միամիտ ապաշխարութեամբ արտասուօք հաշտեսցին ընդ եկեղեցւոյ։

2. Անդէն ընդ նոյն ժամանակս հասանէր յԱփրիկէ Անուղինոս վերակացու Ափրիկեցւոց աշխարհին թղթով Կոստանդիանոսի յորում շնորհէր կայսրն "Կաթուղիկէ եկեղեցւոյ առաջնորդելոյ ի Կեկիղիանոսէ,, ազատութիւն եւ հրաման առնլոյ ի գործակալաց 3000 քսակ[2] արծաթոյ ի ծախս եկեղեցւոյ, եւ միանգամայն հրաման առ Կեկիղիանոս խնդրել ի դէպ ժամու յԱնուղինոսէ ի փոխանակէ բռնաւորի զօրութեամբ եւ բռնութեամբ նուաճել զանհանդարտ հակառակորդսն իւր որ զԿաթուղիկէ եկեղեցի կամիցին պղտորել։ Այլ իմքք գրգռեալ հակառակորդացն Կեկիղիանոսի եկին ամբոխիւ գրգռելով առ Անուղինոս տալ գիր առ կայսր այսպիսի ինչ վերնագրով "Ամբաստանութիւնք Կաթուղիկէ եկեղեցւոյ զգործոց չարութեան Կեկիղիանոսի,, խնդրելով ի կայսերէ դատաւորս իրաց հակառակութեանն իւրեանց ի Գաղղիայ (այս ինքն զեպիսկոպոսս Գաղղիայ)։ Զարմացաւ յոյժ կայսրն թէ զիարդ խնդրեցեն նոքա ի նմանէ՝ յառնէ աշխարհականէ՝ դատաստան եւ իրաւունս[3]. բայց վասն զխաղաղութեան նոցա հասանելոյ՝ երիս եպիսկո-

1 Per acclamationem. 2 Folles. 3 Օպտատ. Միլեւ. ի պատմ. հերձ.

*պատուէս ի Գաղղիայ ածեալ ի Հռոմ, յանձն առնէր զերան որպէս օրէն էր Մելքիադեայ քահանայապետի, ազատելով զնա դրով զի զոր ինչ ըստ օրինաց Աւետարանին եւ ըստ իրաւանց եւ արդարութեան գտանիցէ՝ արասցէ։ Նոյնեւ ժողով ի Լատերան (313 Հոկտ.) ի պաղատանն. անդ էր Կեկիլիանոս անձամբ, իսկ Մայորինոս տուաքեալ փոխանակ իւր զԴոնատոս Կասանիգրացի. անդ արդարացաւ Կեկիլիանոս վճռով ժողովոյն որ մանաւանդ ընծայի Մելքիադեայ քահանայապետի եւ հաստատեցաւ միաւանգամ յաթոռն։ Սակայն հակառակորդքն այլով իմն ամբաստանութեամբ (ասելով զՓելիքսայ Ապտունգացւոյ որ զԿեկիլիանոս ձեռնադրեաց, թէ մատնիչ գրոց սրբոց լեալ էր) եկին առաջի Կոստանդիանոսի. մերժեաց զնոսա իսկզբանն կայսրն, "Ով մոլեգնութեանն, ասէր, զի ըստ օրինակի հեթանոսացն գործեն ի հակառակութիւնն իւրեանց, իբրեւ այն թէ ի խոնարհագոյն ատենէ առ բարձրագոյն ատեան առ իս դիմեն". բայց յետոյ տայր կայսրն քննել ի Կարքեդոն ի ձեռն վերակացուի նահանգին, որ եւ զատենակալն ի ժամանակէ հալածանացն Դիոկղետիանոսի յԱպտունգա եւ զտեառուչս իւրաց կոչեցեալ առաջի՝ յետ բազում հարցափորձի ետ վճիռ թէ "Դորանելի եպիսկոպոսն Փելիքս ազատ է յամբաստանութենէն, քանզի ոչ ոք կարաց ցուցանել զնմանէ թէ զգիրս սուրբս մատնեալ կամ այրեալ իցէ"։ Բայց իբրեւ եւ առքիմբք չէր հաճեալ կողմն հակառակորդաց՝ գումարեցաւ ժողով մեծ յԱրելատ, յոր կոչեցան ամենայն եպիսկոպոսունք յամենայն նահանգաց արեւմտից որ յայնժամ ընդ իշխանութեամբ Կոստանդիանոսի էին՝ արքունական ծախուք եւ հոգաբարձութեամբ (314 Օգոստ.), որոշեցաւ եւ աստ նոյնպէս. յայտ արարաւ (Կանոն 13) թէ ձեռնադրութիւնն որ ի մատնչէ ումեքէ գրոց լինիցի՝ վաւերական է, եւ մերժեցաւ կրկին մկրտութիւնն զոր կատարէին Մայորինեանքն (Կանոն 8)։ Բաց յիրաց Դոնատեանցն եւ այլոց եւս եկեղեցական կարգաց կամ պիտոյից՝ յօրինեցան կանոնք 22 զորս առհասարակ առաքեցին ի հաստատութիւն առ քահանայապետն սիւնհոդոսական թղթով լի մեծարանօք առ նա՝ զոր եւ Հայր եւս կարդան*[1]*։ Բազումք ի հակառակորդաց որ անդ էին միաբանեցին ընդ ժողովոյն, բայց այլքն եւ ոչ առքիմբք հաճեալ՝ յեկեղեցական ատենէ աստի կարդացին բողոք առ կայսր, որ է առաջին օրինակ բողոքելոյ եպիսկոպոսի յատեան աշխարհական։ Լի եղեւ Կոստանդիանոս զայրացմամբ եւ տրտմութեամբ ընդ իրան. "Պարտ էր ձեզ, ասէ, զդատաստան եպիսկոպոսացն ժողովելոց իբրեւ զդատաստան Քրիստոսի ճանաչել, զոր եւ ես իբրեւ նոյնպիսի ճանաչեմ"։ Ընդէն ի նմին ժամանակի վախճանէր Մայորինոս (315) եւ պայազատէր զնա Դոնատոս որ ի Դոնատեանց Մեծն անուա-*

1 Religiosissime pater.

նեցաւ, որ հանդերձ բարեկամաւն իւրով Դոնատոսիւ եպիսկոպոսիւ Կասանիգրայ ետ անուն աղանդոյն Դոնատեանց. քանզի արդեամբք մանաւանդ վերջինս Դոնատոս եւ անդէն իսկ առ եպիսկոպոսութեամբն Մայորինեայ էր գլուխ եւ շունչ աղանդոյն։ Ակամայ իմն՝ սակայն յուսով խաղաղութեամբ զկիրս վճարելոյ՝ ընկալաւ Կոստանդիանոս զբողոքս նոցա եւ միւսանգամ եղեւ քննութիւն իրացն առաջի կայսերն ի Մեդիոլանոն (316). միւսանգամ արդարացաւ Կեկիլիանոս։ Իսկ իբրեւ Դոնատեանք արհամարհեալ անգոսնեցին եւ զվճիռ կայսերն տրտնջելով զնմանէ թէ թշնամութեամբ վարեցաւ ընդ նոսա, առ ի նոցանէ Կոստանդիանոս բազում եկեղեցիս եւ զկարի խռովիչսն աքսորեաց՝ առաքեալ զՈւրսակիոս կոմս յԱփրիկէ։ Սակայն մոլեգնեալ նոքիմբք Դոնատեանցն՝ առաւել իմն սկսան բազմանալ յարեցուցանելով յինքեանս ապստամբութեամբ ոչ միայն զայնոսիկ որ յեկեղեցական պատժոց ազատանալ կամէին՝ այլ եւ զպարտապանս եւ զծառայս փախստեայս։

Ապա ուրեմն մեղմացաւ իմն Կոստանդիանոս, զիջաւ խնդրուածոց նոցա դառնալոյ աքսորելոցն, եւ յամի 321 Մայ. 5 յայտ արար թողուլ զնոսա մոլեգնութեան իւրեանց եւ դատաստանացն Աստուծոյ, եւ գրեալ աղաչէր զեպիսկոպոսսն Ափրիկեցւոց զչարիսն հասուցեալս նոցա ի մոլեգին Դոնատեանց չհատուցանել չարեօք, այլ քրիստոնէական համբերութեամբ տանել ապիրատութեանց նոցա։

3. Բայց եւ այն հեզութիւն ոչինչ օգուտ եղեւ։ Ի վախճան կոյս թագաւորութեանն Կոստանդիանոսի ել ի հերձուածոյ անտի Դոնատեանց աղանդ ինչ մոլեգին՝ որ զանձինս Նահատակս կամ Քրիստոսի զինուորս անուանէին, բայց ի հակառակորդաց իւրեանց կոչէին Կիրկումկեղեանք[1] (շրջողք զխղեւք), վասն աւազակութեամբ ընդ ամենայն տունս եւ խուղս Նումիդիացւոց եւ Մաւրետանիացւոց շրջելոյ։ Սոքա համարէին զանձինս կոչեցեալս յԱստուծոյ՝ ջնջել զկաթուղիկէականսն, եւ յայն սակս լեալ գունդ՝ ոչ զնոսա միայն, այլ եւ զմեծատունս առ հասարակ եւ զմեծամեծս հալածէին։ Ի խաղալ իւրեանց գունդագունդ՝ ըմբռնեալ զպարտատեարսն ստիպէին թողուլ զպարտիս պարտապանացն, զտեարսն՝ տալ ազատութիւն ծառայիցն. ի հանդիպել նոցա մեծամեծաց՝ զի զծառայս առաջի արկեալ երթային կառօք, ձգէին հանէին զնոսա ի կառաց եւ զնոսա ի ներքս ստիպէին նստել. ուրեք ուրեք կալեալ արս երեւելիս՝ փոխանակ իշոցն տային վարել զանիւ աղօրւոյն։ Աւազակս լոկ պարտ էր համարել զնոսա, եթէ կրօնական իմն մոլեգնութիւն չցուցանէին՝ զանձնասպանութիւն մարտիրոսութիւն համարելով, եւ յայն սակս գահավէժ ի վախից

1 Circumcelliones կամ Circelliones.

զանձինս առնելով եւ կամ տալով զինս սպանչաց իւրեանց, եւ չարչարելով արս՝ զի ստիպեսցին նոքա սպանանել զնոսա։ Վաղվաղակի եղեն Կիրկումկեղղեանքն ահագինք՝ ոչ կաթուղիկէականաց միայն, այլ եւ ամենեցուն իսկ, մինչեւ եւ Դոնատեանցն եպիսկոպոսաց կոչել զոստիկանութիւն տէրութեանն ի թիկունս. սակայն եւ ոչ այնու ինչ 'եղեւ զարման իրացն։

Յետ մահուն Կոստանդիանոսի՝ Կոստաս կայսր արեւմտից ջանացաւ ի միաբանութիւն[1]։ Առաքեաց նա (348) արս երկուս պատգամաւորութեամբ զՊաւղոս եւ զՄակարիոս բազում տրօք յԱփրիկէ, զի շահեսցի զմիտս ժողովրդեանն եւ զեպիսկոպոսացն Դոնատեանց։ Այլ իբրեւ ի Բագայիս յարուցին եպիսկոպոսք նոցա, մանաւանդ Դոնատոս եպիսկոպոս Բագայացւոց, զխուժանն Կիրկումկեղղեանց ընդդէմ հրեշտակացն՝ փոխանակեաց խստութիւն զողոքանսն. յետ բախելոյ ընդ նոսա միանգամ եւ երկիցս՝ ստիպեցին զնոսա հրեշտակքն միաբանել ընդ կաթուղիկէականաց, առին ի նոցանէ զեկեղեցիսն եւ զեպիսկոպոսսն դիմադարձս մերժեցին վտարանդի, իսկ Դոնատոս սպանաւ՝ իբրեւ ասպատակ։ Ընդ կացին նոքա մինչեւ Յուլիանոս կայսր ըստ աղաչանաց նոցա դարձոյց զնոսա յետս (362), նստել յիւրաքանչիւր աթոռ. եւ այնպէս միւսանգամ սկիզբն լինէր բռնութեանցն եւ սպանութեանց ի ձեռն Դոնատեանց։ Բազմացան եպիսկոպոսունք նոցա ի ժամանակի ազատութեանն այնորիկ եւ առ Յովիանոսիւ եւ Վաղենտինիանոսիւ Ա. կայսերօք, էին իբրեւ 400 եպիսկոպոսք թէպէտ եւ արգելեալ եւս էր Վաղենտինիանոս չմկրտել կրկին՝ սպառնալեօք պատժոց եւ հանելոյ ի նոցանէ զեկեղեցիսն։ Առաւել եւս զօրութեամբ հրամայէր Գրատիանոս միւսանգամ (377 կամ 378) զամենայն եկեղեցիս հանել ի Դոնատեանց, այլ զուր։

Բայց սակայն բաժանեցան նոքա անդէն յիւրեանս, եւ իւրաքանչիւր կողմն որչափ եւ փոքր եւս էր, անուանէր զանձն՝ սուրբ կաթուղիկէ եկեղեցի, եւ զայլսն ամենեսին անգոսնէր եւ հալածէր[2]։ Տիւքոնիոս ոմն դոնատեան, հմուտ գիտութեանց ի Կարքեդոն՝ գրովք եւ բանիւք եցոյց թէ սուտ են եւ պատճառքն իսկ՝ վասն որոց բաժանեցան Դոնատեանք ի կաթուղիկէ եկեղեցւոյ, սակայն զմիաբանելն ընդ ճշմարիտ կաթուղիկէ եկեղեցւոյ չհամարէր ինչ կարեւոր[3], որում ընդդէմ բախէր գրով Պարմենիանոս եպիսկոպոս Կարքեդոնի յաջորդ Դոնատեայ յամէ 360։ Յաջորդն Պարմենիանեայ Պրիմիանոս (յամէ 392) գժտեալ ընդ Մաքսիմիանեայ իւրոյ սարկաւագի, ընկէց զնա ի կարգէն. բայց եպիսկոպոսունք որ ամենին թէկն ածէին, ժողովեալ՝ զՊրիմիանոս իսկ ընկեցին յաթոռոյն, եւ այնպէս բաժանեցան Դոնատեանք՝ ի Պրիմիանեանս (բազմագոյնս

1 Ամբողջութիւն պատմութեանն պահանջէր այսպէս զյետոյն ինչ դէպս կանխել եւ բերել այսր։

2 Ըստ Աւգոստին.։

3 Աւգոստ. ընդդէմ Պարմենիանեայ Ա. Թուղթ. 249.

Digitized by Google

թուղ) եւ ի Մաքսիմիանեանս (սակաւաւորս)։ Բայց եւ հակառակ գիրն Ոպտատոսի Միղեւեացւոյ վասն հերձուածոյ (ամ. 373) ընդդէմ այսր Պարմենիանեայ, յորում ցուցանէ զճշմարիտ պատմութիւն ծագման հերձուածոյն, սակաւաւորաց եւեթ եղեւ ալիթ դառնալոյ ի միաբանութիւն. քանզի մեծ մասն Դոնատեանցն ի բազում վիճմանց անտի զօր ընդ կաթուղիկէական եպիսկոպոսաց վիճէին՝ առաւել եւս գործեցին կատարեալ զյօրինաւորութիւն¹ վարդապետութեանն իւրեանց, որ էր այսպէս։ Եկեղեցին, ասեն, յընդունել իւրում ձեռնադրութիւն ի Փեղիքսէ եղեւ հաղորդ մեղաց նորա, եւ այն մեղք անցին յամենայն կուսակիցս նորա։ Եւ քանզի մերժէ Աստուած զպատարագս մեղաւորաց եւ Քրիստոս յօրինեաց իւր մի միայն եկեղեցի առանց արատոյ եւ անբիծ², ապա անդստին ի ժամանակէ ժողովոյն Արելատայ դադարեաց եկեղեցին կաթուղիկէ լինել եկեղեցի ճշմարիտ. եւ ակնարկելով ի բանն Աւգոստինոս թէ "միայն ի միում կաթուղիկէ եկեղեցւոջ գոն վաւերական խորհուրդք„, ասէին՝ թէ ինքեանք եւեթ ունիցին զայս վաւերական խորհուրդս եւ զեկեալսն ի կաթուղիկէականաց կրկին մկրտէին։

4. Ջանացին յանձն եպիսկոպոսունքն ուղղափառք կալել զաշխարհական իշխանութիւնն ընդդէմ հերձուածողացս ի թիկունս, նա մանաւանդ ժողովն Կարքեդոնի (13 Սեպտ. 401) սահմանեալ էր հեզութեամբ գնալ ընդ Դոնատեանսն, եւ գրեցին եւս հայրքն առ Անաստասիոս քահանայապետ եւ առ այլ եպիսկոպոսունս յայն կոյս ծովուն՝ թէ որպէս կարեւոր հարկ է զհերձուածող եպիսկոպոսունսն եւ զերիցունս՝ յորժամ ընդ եկեղեցւոյ հաշտիցին, պահել յիշխանութեան իւրեանց. Նոյնպէս եւ ժողովն Կարքեդոնի (Օգոստ. 403) սահմանեաց զի իւրաքանչիւր ի կաթուղիկէական եպիսկոպոսաց հրաւիրեսցէ զիւր մերձաւոր դոնատեան եպիսկոպոս եւ համանեցուսցէ խաղաղութեամբ։ Բայց նոքա չառին յանձն, քանզի ամենայն իսկ զօրութեամբ փախչէին խորշէին նոքա լինել միջամուխ ի վիճմունս ընդ կաթուղիկէականաց, մանաւանդ ընդ Ս. Օգոստինոսի՝ որ էր նոցա ահագին քան զամենայն գործակալս հռոմէական տէրութեանն, վասն առաւելութեան մտացն՝ որով յաղթահարէր զնոսա եւ զբազումս ի նոցանէ ածէր ի ծոց եկեղեցւոյ։ Այն սակս իսկ միւսանգամ բորբոքեցան զայրացք Կիրկումկելլեանցն։ Վասն որոյ ի նեղ անկեալ կաթուղիկէականացն եպիսկոպոսաց՝ սահմանեցին ի սիւնհոդոսին Կարքեդոնի (404) եւ գրեցին աղաչանս առ կայսր՝ պատիժս տուգանաց արկանել ի վերայ նոցա։ Այլ մինչ չեւ հասեալ հրեշտակացն՝ հանեալ էր կայսր Ոնորիոս հրովարտակ զկղերականս Դոնատեանց աքսորելոյ եւ զժողովրդականս պատժելոյ

1 Système.

2 Եփես. Ե. 27։

Digitized by Google

տուգանօք, եւ յետոյ (փետր. 405) առաւել խստացոյց զօրէնսն։ Թէպէտ եւ բազումք ի Դոնատեանց դառնային յամախութեամբ յեկեղեցի, որոց ամենեւին ներումն շնորհէր հրովարտակն երկրորդ (յամի 407), սակայն այլոցն մոլեգնութիւն առաւել սաստկանայր. Կիրկումկեղլեանք մտեալ ի տունս կղերականացն կաթուղիկէականաց՝ աւարէին եւ այրէին եւ զբազումս ի նոցանէ կուրացուցանէին՝ ծեփելով զաչս նոցա կրով խառնելով ընդ քացախոյ. եւ այս մանաւանդ յորժամ յամի 408 տարածեցաւ իմն համբաւ թէ մահուամբ Ստիղիքոնի խնամակալի կայսեր բարձան եւ օրէնքն ընդդէմ Դոնատեանց որ նորա թելադրութեամբ տուեալ էին։ Թէպէտ եւ Ողիմպիոս յաջորդ Ստիղիքոնի յայտ արար վաղվաղակի զհաստատութիւն օրինացն այնոցիկ՝ սակայն յետ նորա Յովիոս անձնապահապետ (որպէս թուի այր հեթանոս) արգելամբք բարձ զօրէնսն զայնոսիկ յամի 410։ Այլ յետուստ ուրեմն իբրեւ նա մերժեցաւ՝ ոչ միայն կոչեցաւ այն հրաման յետս, այլ եւ ըստ ցանկութեան կաթուղիկէական եպիսկոպոսացն եւ մանաւանդ Ս. Օգոստինոսի՝ հրամայեաց Ոնորիոս զի լիցի Բանակցութիւն կամ Վիճումն[1] յերկոցունց կողմանց։ Առաքեաց (411) վասն նորին գործոյ յԱփրիկէ զհազարապետն Փղաւիոս Մարկեղղինոս (զբարեկամ Ս. Օգոստինեայ, առ որ գրեալ իսկ է զգիրս քաղաքին Աստուծոյ)։ Զառաջինն չառին յանձն եպիսկոպոսքն դոնատեանք՝ ասելով ամբարտաւանութեամբ թէ "Չիք հաղորդութիւն որդւոց մարտիրոսաց ընդ ազգին մատնչաց գրոց սրբոց„։ Ապա եկին ժողովեցան ի Կարքեդոն 286 կաթուղիկէական եւ 279 դոնատեան եպիսկոպոսք. Նոքա մի մի եկին եւ ոչքա բազմութեամբ կարգ ըստ կարգէ անցանէին ընդ քաղաքն՝ մեծապանծ (18 Մայ.)։ Յիւրաքանչիւր կողմանց ետ ընտրել Մարկեղինոս եւթն եւթն խօսողս՝ նոյնչափ խորհրդականօք, եւ չորս չորս դպիրս որոց սկիցեն չորք չորք եպիսկոպոսք վասն ճշդութեան գրելոցն ընդ խօսելոց, եւ յետոյ իւրաքանչիւր ի խօսողացն արկանիցէ ձեռնագիր գրելոցն. յանձն առին Կաթուղիկէականք, զիջան Դոնատեանք։ Գլխաւորք ի խօսողաց Կաթուղիկէականացն՝ էին Օգոստինոս եւ Աւրեղիոս եպիսկոպոս Կարքեդոնի, էր ընդ նոսա եւ գրիչ վարուց Ս. Օգոստինոսի՝ Պոսիտիոս եպիսկոպոս Կաղամայ Նումիդացւոց. իսկ Դոնատեանցն՝ Պրիմիանոս եպիսկոպոս Կարքեդոնի, Պետիլիանոս եպիսկոպոս Կոստանդինեայ, Էմերիտոս եպիսկոպոս Կեսարեայ (30 Մայ.)։ Յամի 411 Յունի. 1 եղեւ առաջին նիստ վասն կարեւոր պատրաստութեանց, երկրորդն (3 Յունի.) եւ ի գլուխ մանր մանր ինչ իրօք. ապա ուրեմն (8 Յունի.) ածան Դոնատեանք բունի ի բուն խնդիրն՝ որ յերկուս իմն ամփոփեալ էր, 1. Թէ մարթ իցէ թողուլ յեկեղեցւոջ զյայտնի

1 Colloquium կամ Collatio.

մեղաւորս, որով եւ մնայցէ արդեւք եկեղեցին եկեղեցի. Ճշմարիտ՝ յորժամ իցեն ի հաղորդութեան նորա մեղաւորք ոչ միայն ծածուկք, այլ եւ յայտնիք հրապարակաւ. զայս Օգոստինոս անուանէր "Խնդիր զեկեղեցւոյ[1]"։ — 2. Թէ արդեւք ամբաստանութիւնք զԿեկիլիանոսէ ստոյգ իցեն. զայս անուանէր Օգոստինոս "Խնդիր վասն հերձուածոյ[2]"։ Միանգամայն խոստացան նոցա կաթուղիկէականքն թէ յորժամ դարձցին ի կաթուղիկէ եկեղեցի եպիսկոպոսունքն դոնատեանք՝ թողցի նոցա իւրաքանչիւր աթոռ եպիսկոպոսութեան. ի տեղիսն յորս երկու եպիսկոպոսունք լինել իցեն՝ մի կաթուղիկէական եւ միւս դոնատեան, երկոքին միաբանութեամբ եւ սիրով զպաշտօնն կատարեսցեն, այնպէս՝ զի պաշտօնն աստուածեղէն միանգամ ի միում եւ միւսանգամ ի միւսում եկեղեցւոջ կատարեսցի, մինչեւ մահուամբ միոյն ի նոցանէ պաշտօնն եպիսկոպոսական եւ պայազատութիւնն դարձցի ի միութիւն։ Այսպէս թէ ժողովուրդն չամոլորեալ ընդ երկուս եպիսկոպոսունս ընդ մի որ կամիցի՝ երկաքին եւս ի բաց կացցեն եւ այլ որ խաղաղութեամբ ընտրեսցի։ "Զի ձեռնադրեցաք, ասեն կաթուղիկէականքն, եպիսկոպոս՝ վասն օգտի ժողովրդեանն քրիստոնէից. եպիսկոպոսական պատիւն առաւել օգուտ եւ շահ մեծ բերիցէ եթէ հրաժարելով մեր յայնմանէ զցրուեալն ժողովիցեմք, քան եթէ պահելովն՝ միշտ պահիցեմք քայքայեալ։ Զիա՞րդ կարիցեմք դանդաղել մատուցանել Փրկչին մերում զայս պատարագ խոնարհութեան. նա էջ յերկնից ի մարդկեղէն անդամս՝ զի արասցէ զմեզ անդամս մարմնոյ իւրոյ, եւ մեք զիա՞րդ չառնուցումք յանձն իջանել յաթոռոց եպիսկոպոսութեան մերոյ՝ զի մի զանդամս նորա անագորոյն հերձուածով պատառեսցուք"։

Իբրեւ վասն առաջին խնդրոյն յերկուց կողմանց ժողովեալ տեսան զորով տեղիս գրոցն ի հաստատութիւն իւրաքանչիւր կարծեաց, եւ այնպէս թուէին թէ հակառակ միմեանց իցեն տեղիքն՝ անց ի մէջ յետոյ Ս. Օգոստինոս եւ յայտ արար թէ բանք գրոցն զոր երկոքին կողմանք յառաջ բերեն հանդիպադիրք են՝ քանզի ի նմին գիրս սուրբս կան. եւ դարձեալ միաբանեն ընդ միմեանս եթէ ընկալջիք (ոչ երկուս եկեղեցիս՝ այլ) երկուս վիճակս եկեղեցւոյ զայժմուն կամ զժամանակաւորն, եւ զհանդերձեալ կամ զյաւիտենականն. ի ժամանակաւորին ապաքէն կան չարք խառն, եւ զայսմ ժամանակաւոր վիճակէ խօսին կաթուղիկէականքն. նմին հակառակ տեղիք Դոնատեանցն ցուցանեն թէ ի յաւիտենական վիճակին եկեղեցւոյ չգոն մեղաւորք։ Մի եւ նոյն սուրբ եկեղեցի աստ տակաւին սրբէ՝ իսկ անդ անարատ եւ ամբիծ է, աստ մահկանացու՝ անդ անմահ. զոր օրինակ եւ Յիսուս Քրիստոս մին եւ նոյն՝ աստ մահկանացու էր եւ անդ

1 Quaestio de ecclesia.  2 Quaestio de schismate.

անմահ է։ — Յետ այնորիկ եկին ի քննութիւն երկրորդ խնդրոյն. Դոնատեանքն զամենայն հնարս հնարէին զի դատապարտ առնիցեն զԿեկիլիանոս, բայց չկարացին վճարել ինչ։ Նոյա արձակեաց Մարկեղինոս զեպիսկոպոսունսն, գրեաց զվճիռ որոշմանն, կոչեաց (Յունի. 23) զերկոսին կողմանսն միւսանգամ եւ ընթերցաւ առաջի նոցա զվճիռն՝ որ զկաթուղիկէականաց յայտ առնէր թէ յաղթեցին։ Հրաման հանէր Մարկեղինոս առ ամենայն ատենակալս եւ տէարս տանց ի քաղաքի եւ ի շէնս՝ մի տալ Դոնատեանց ամենեւին տեղի ժողովելոյ ի մի վայր, որոց եւ հրամայէր տալ զամենայն եկեղեցիսն ի բաց՝ պատուհասիւ նոցա զպատիժսն սահմանեալս վասն հերետիկոսաց, առաքէր եւ զդոնատեան եպիսկոպոսունսն յիւրաքանչիւր տեղիս, յայտ արարեալ՝ զի պատուհասեաւ տեղին կամ երկիրն ուր գունդ Կիրկումկեղղեանց կոխիցէ, այն յարքունիս գրաւեսցի։

Դոնատեանք արկանել արկին ձեռնագիր գործոց երրորդ աւուր բանակցութեանն՝ սակայն ընդ պայմանաւ բողոքման առ կայսր. քանզի ասէին եւս թէ Մարկեղինոս ոսկւով ի կաթուղիկէականաց կաշառեցաւ։ Այլ առ չարոյ նոցա էր այն բողոքումն. զի հան Ոնորիոս ի Ռաւեննայ օրէնս (412 Յունու. 30,) որով բարձան ամենայն առաջին հրամանք որ իւիք նպաստաւոր էին նոցա, եւ հաստատեցան վասն նոցա ամենայն օրէնք որ զհերետիկոսաց էին։ Այնուհետեւ յոյժ բազմաթիւ եպիսկոպոսունք եւ ժողովրդականք եկին ի միաբանութիւն կաթուղիկէ եկեղեցւոյ։ Որ յամառեցինն՝ ըստ հրովարտակին հրամանի դատապարտեցան ի տուգանս արծաթոյ եւ որ սովին չուղղեցան՝ կորուսին զինչս. ծառայք շինականք գանիւ ստիպեցան թողուլ զկողմն Դոնատեանց, եպիսկոպոսունք նոցա եւ կղերականք աքսորեցան յԱփրիկեայ։ Խաղումք ի Դոնատեանց փախեան եւ կամ սպանին զանձինս, մանաւանդ Կիրկումկեղղեանքն։ Բայց այսմ ամենայնի ընդդէմ բողոքէին եպիսկոպոսունք կաթուղիկէ եկեղեցւոյ մանաւանդ Ս. Օգոստինոս՝ ըստ հեզութեան հոգւոյն եկեղեցւոյ. սակայն եւ աշխարհական իշխանութիւնն ոչ այնչափ իբրեւ հերձուածողս հալածէր զնոսա, այլ իբրեւ միաբանութիւն արանց ապստամբաց, աւազակաց եւ յուզկահարաց։ Սակայն միշտ կացին մնացին ի նոցանէ ոչ սակաւք որք միւսանգամ ամբարձին զգլուխս իւրեանց առ տէրութեամբն Վանդալաց, եւ երեւէին ոչ գոյզն մնացորդք նոցա եւ ի վախճան վեցերորդ դարու՝ մինչեւ անհետ եղեն առ Սարակինոսօք յեւթներորդ դարու։

Digitized by Google

# 59

Սակաւիկ ինչ յետոյ քան զաղանդ Դոնատեանցն յառնէր մեւս եւս հակառակութիւն մեծ եւ վնասակար քան զնա անդէն յարեւելեան մասին նորին Ափրիկեայ՝ յԵգիպտոս, այս ինքն Արիանոսութիւն: Ի սմին աղանդէ սկիզբն լինի յաջորդելոյ զմիմեանս մոլորութեանց ինչ որ էութեամբ ունին ընդ միմեանս կցորդութիւն իբրեւ մի ինչ շղթայ (այս ինքն՝ Արիանոսութիւն ընդ Մակեդոնականութեան, Նեստորականութիւն, Եւտիքիանոսութիւն ընդ Միաբնականութեան եւ Միակամականութեան):

Սաղ իսկ հաստատուն էր յեկեղեցւոջ երկու ինչ զԲանէն Աստուծոյ, այս ինքն՝ թէ է ճշմարիտ Աստուած, եւ թէ է անձամբ ուրոյն ի Հօրէ: Սակայն այս անփոփոխ հաւատք եկեղեցւոյ յառաջ քան զնիկիական որոշմունսն՝ չէր ընդ հաստատուն ինչ ձեւով բանից անկեալ: Քանզի ուր կէսք ի հարցն ի կացուցանել իւրեանց յանդիման զհաւատոն եկեղեցւոյ՝ առանց նիկիական ձեւոց անվրէպ զնիկիական իմաստն յառաջ բերէին, այլք ի նոցանէ այնպիսի իմն բանս արկանէին ի կիր՝ որ ոչ այնպէս յարմարագոյն էին, նա աւանիկ յայտնի իսկ մոլար եւ ըստ հետեւութեանցն առաջնորդէին ի հերետիկոսութիւն: Մանաւանդ թէ մի եւ նոյն հայր՝ յայլ եւ այլ տեղիս, երբեմն ուղիղ եւ երբեմն ոչ ուղիղ բանս բերէր ի մէջ: Որպէս Իրենէոս, Կղեմէս Աղեքսանդրացի, Գրիգոր Նէոկեսարեայ եւ Մեթոդիոս. գրեթէ նոյնպէս եւ Յուստինոս, Աթենագորաս եւ Թէոփիղոս որ ըստ հետեւութեանցն ուրեք ուրեք յեկեղեցական կանոնէն հեռանան: Առաւելագոյն իմն՝ մատենագիրք որ զպատասխանատուութիւնսն գրեցին, ջանացին դիւրահաս զբանն գործել՝ մերձեցուցեալ զեկեղեցական վարդապետութիւնն ի փիլիսոփայութիւն պղատոնական. յուղղափառագունացն են Աթենագորաս եւ Թէոփիղոս, եւ յայլափառագունաց՝ Տատիանոս, Տերտուղղիանոս եւ մանաւանդ Որոգինէս:

Ի վերջ կոյս երրորդ դարու տեսանեմք յԵգիպտոս, զի ոմանք առաւել կամեցեալ զճշմարիտ աստուածութիւն Բանին ցուցանել՝ ի Սաբեղականութիւն կործանեցան, եւ նմին հակառակ ոմանք զխտիր անձանցն ջանացան յայտնագոյնս զատանել՝ եւ այնպէս թուեցան եւ կամ արդեամբք իսկ կամեցան զՈրդի ի խոնարհագոյն կարգի քան զՀայր դնել: Յոյժ իսկ հաւանութեան է թէ կաց մնաց այս խնդիր եւ յետ Դիոնիսեայ եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց, թէպէտ եւ իսկ եւ իսկ յետ սորա Թէոգնեստոս (որ ծաղկէր յամսն իբրեւ 270—280) վերակացու երախայական դպրոցին եւ յետ նորա Պիերիոս քահանայ եւ ապա Պետրոս եպիսկոպոս Աղեքսանդրացւոց յատակագոյնս կային ջատագով

ճշմարիտն աստուածութեան Որդւոյ, (որպէս յայտ է ի հատակտորոց նոցա առ Աթանասի եւ փոտայ)։

Ի միւսում եւս մայրաքաղաքի քրիստոնէութեան նոյնպիսի ինչ ջան պահելոյ զմիութիւնն Աստուծոյ ած ի մոլորութիւն զՊաւղոս Սամոսատացի։ Նորին քաղաքակից Լուկիանոս երէց յԱնտիոք՝ հաղորդ լեալ էր երբեմն մնաց նորա, եւ ըստ Աղեքսանդրի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց՝ յետոյ եւս չէր հեռի յայնցանէ որ ի չգոյէ համարէին լեալ զՈրդի, նա առաւել եւ ինքն Արիոս զսա ցուցանէր իւր վարդապետ եւ զԵւսեբիոս ողջունէր իբրեւ աշակերտակից վարդապետութեան Լուկիանեայ [1], այլ այն չէ յայտ թէ անձամբ իսկ յԱնտիոք աշակերտեցաւ առ նմա՝ եթէ ի գրոց նորա ուսաւ։

2. Յայսպիսում պատրաստութեան իրաց՝ անց ի մէջ Արիոս որպէս հաւանութեան թուի Լիբէացի, որոյ էր աջողակութիւն վիճողական ճարտարխօսութեան եւ բարք անարատք՝ որպէս թուէր, այլ անհանդարտ միտք եւ ամբարտաւան սիրտ։ Պետրոս եպիսկոպոս Աղեքսանդրիայ († 311) որ ընկալեալ էր զնա ի կարգ խոնարհագոյն կղերականաց, մերժեաց ի հաղորդութենէ վասն յարելոյ նորա ի Մելետիոս. թէպէտ եւ առ զնա յետ սակաւ ինչ միջոյ եւ օրհնեաց սարկաւագ, բայց միւս եւս նուագ մերժեալ նզովեցաւ վասն թէկն ածելոյ Մելետեայ։ Այլ առ Աքիղղեաւ նորին յաջորդաւ († 313) եգիտ դարձեալ ընդունելութիւն, եւ ձեռնադրեալ երէց՝ ապա յանձն եւս եղեւ նմա վերակացութիւն առանձինն իրիք եկեղեցւոյ յԱղեքսանդրիա (313)։ Բայց անդէն ընդ Աղեքսանդրի յաջորդին Աքիղղեայ որ (ըստ Թէոդորետեայ) նախամեծար եղեւ քան զնա ի պատիւ եպիսկոպոսութեան, եմուտ ի գժտութիւն վասն Բանին աստուածութեան։ Այսր սկիզբն ըստ Սոկրատայ անտի եղեւ՝ զի Աղեքսանդրոս առաջի կղերականացն իւրոց ուսուցանէր զՈրդւոյ լինել մշտնջենակից եւ էակից, եւ Արիոս առ անտուստ պատճառս սաստկութեամբ ընդդէմ բախելոյ՝ իբրեւ ընդդէմ առն սաբեղացւոյ, եւ կամ ըստ Սոզոմենեայ՝ ինքն Արիոս ինքնակամ ել հակառակ վարդապետութեան կաթուղիկէ եկեղեցւոյ։

Ըստ վարդապետութեան պղատոնական եւ աղեքսանդրիական աստուածխօսութեանն այնպէս իմն բարձրագոյն եւ մի միայն զԱստուած համարէր Արիոս՝ զի չկարիցէ կամ չիցէ վայել առանց իրիք միջնորդի անձամբ ածել զաշխարհ ի մէջ. եւ դարձեալ թէ եւ արարածք չկարիցեն առանց միջնորդի ընդունել զազդեցութիւն Աստուծոյ։ Նմին իրի ի կամել Աստուծոյ առնել զաշխարհ [2] հարկ էր նմա միջնորդ ինչ կամ միջին ինչ էութիւն [3] ի կիր արկանել իբրեւ գործի յարարչութիւն իրաց, եւ սա է ըստ Արիոսի Բանն կամ Որդին, եւ յայն սակս իսկ էութիւն սորա չէ հաւասար Հօրն էութեան, ապա թէ ոչ չգայր աշխարհս

1 Συλλουκιανιστής. 2 Τὴν γενετὴν φύσιν. 3 Μέσος γενόμενος.

Digitized by Google

յառաջ ի ձեռն Նորա։ Ցայսմ իմն յառաջադրութեան իբրեւ ի սերման կայ բովանդակեալ վարդապետութիւն նորա։ Քանզի Որդի ըստ Նմա՝ չէ յէութենէ Աստուծոյ, եւ զի արտաքոյ քան զԱստուած չիք յառաջ քան զՈրդի նիւթ ինչ ուստի ստեղծցէ, ապա ի չգոյէ եղեւ Որդի[1]. դարձեալ քանզի ոչ ի յաւիտենական էութենէ Հօրն է Որդի, ապա չիք Նորա արձակ յաւիտենականութիւն, այլ միայն՝ գոյութիւն յառաջ քան զաշխարհ, եւ յայն սակս չէ Նա համաժամանակից Հօր, այլ էր երբեմն յորժամ ոչ էր։ Այսպէս խլուցեալ զՈրդի ի կարգ արարածոց իբրեւ մի ի Նոցանէ[2], միայն այսու ընտրելով զի յառաջ քան զայլ ամենայն արարածս իցէ[3], վասն այնորիկ եւ բարութիւն Նորա չէ էական, այլ ընկալեալ եւ փոփոխելի. միայն ազատութեամբ անձնիշխանութեանն կաց մնաց Նա ի բարութեան, այլ եթէ կամի կարող է իբրեւ զմեզ դառնալ ի չար անդր. բայց քանզի յառաջագոյն գիտաց Աստուած թէ արդեամբք բարի է լինելոց՝ կանխեաց եւս Նմա զպատիւն անուանելոյ Բան եւ Որդի, որում եւ յետոյ Որդին առկաւ արժանի կացոյց զանձն գործովքն եւ ամբարձ զնա Հայր՝ ի վերոյ քան զամենայն արարածս[4]։ Զայսպիսի ամպարիշտ վարդապետութիւն հաստատէր անծինն[5] անուամբ. միայն Հայր, ասէր, անծին է, եւ ունի յինքենէ զէութիւնն. եւ քանզի այս նշանակ աստուածեղէն էութեան է եւ կարեւոր ի միութիւն Աստուծոյ, ապա չմարթի Որդւոյ լինել անծին, եւ յայն սակս սա զհանգամանս գոյութեան իւրոյ եւ էութեան արտաքոյ քան զինքն ունի։ Հաստատէր ի գրոց սրբոց վկայութեամբ՝ Առակ. Ը. 22. (Արար զիս ի սկիզբն գործոց իւրոց.) Ղուկ. Բ. 40 եւ 50. Մատթ. ԻԶ. 32, եւ ԻԷ. 46. Յովհ. ԺԴ. 28. Փիլիպ. Բ. 6—11 (Վասն որոյ եւ Աստուած զնա առաւել բարձրացոյց). դարձեալ եւ Յովհան Ա. 32. Ե. 22. Ժ. 36. Մատթ. ԺԲ. 28. Յովհ. ԺԷ. 3 համեմատելով ընդ Ա. Կորընթ. ԺԵ. 28։ — Հանդերձ սոքիմբք, որպէս ի դէպ էր, ընդ Միապետականացն[6] եբարձ ի մէջոյ զխտիր անձանց, եւ ընդ Սաբեղեայ յայսմ իմն միաբանէր՝ զի ասէր թէ չէ Աստուած յաւիտենից Հայր, այլ ի ժամանակի եղեւ Հայր յորժամ ի ձեռն Որդւոյ արար զաշխարհ. եւ որպէս դիւրին է առնուլ ի միտ՝ հանգոյն Պեղագեանց եւ զփրկագործութիւնն Քրիստոսի՝ դնէր ի վարդապետութեան նորա եւեթ եւ յօրինակի բարեաց գործոց զոր եցոյց մեզ։

Զուր խրատէր եւ յորդորէր զնա հեզն Աղեքսանդրոս Թղթովք (յամի 320) ի բաց կալ ի վարդապետութենէ աստի. ընդ վայր փորձ փորձէր ճոխութեամբ մեծաւ երիցանցն Աղեքսանդրիայ եւ Մարէոտեայ ածել զնա յարժանն։ Քանզի Նա ի կղերականաց եւս յաւեցոյց յինքն եւ նոքօք շրջէր տանէ ի տուն, մոլորեցուցանէր քաղցրաբան խօսողութեամբն, մանաւանդ զտկարամիտ ազգ կանանց՝ հարցանելով ցնոսա թէ էր քո որդի՝ մինչ չեւ ծնեալ. որպէս դուք չունէիր՝ նոյնպէս եւ ոչ Աստուած ունէր մինչ չեւ ծնեալ. եւ ցերիտասարդս՝ թէ "Որ էն զէրն թէ զչէրն ծնաւ. զեղա՞լն ծնաւ թէ զչեղալն. մի՞ եւեթ անծին գոյ թէ

1 Ἐξ οὐκ ὄντων ὑπέστη.
2 Κτίσμα, ποίημα.
3 Μονογενής, Միածին։
4 Ἐξειλέχθαι αὐτὸν ἀπὸ πάντων μετοχῇ χάριτος.
5 Ἀγέννητος.
6 Monarchistae, այս ինքն՝ որ մի եւեթ անձն գիտեն յԱստուած։

Digitized by Google

երկու„[1]: Ապա ուրեմն (321) առնէր Աղեքսանդրոս սիւնհոդոս իբրեւ 100 եպիսկոպոսաց համօրէն մետրապօղտական իշխանութեան իւրոյ. չփոփոխեցաւ ի կարծեացն Արիոս, այլ խօսէր համարձակ զհայհոյութիւնս առաջի նոցա. վասն որոյ եւ դատապարտեալ իսկ հատաւ ի հաղորդութենէ եւ մերժեցաւ յԱղեքսանդրիայ հանդերձ կուսակցօքն, յորս էին եւ Սեկունդոս եպիսկոպոս Պտղոմայիսայ, Թէոնաս եպիսկոպոս Մարմարիկայ եւ 12 կղերականք աղեքսանդրացիք: Բանզի Արիոս եւ կուսակիցք նորա ջանացան ամենայն հնարիւք արկանել զեպիսկոպոսունս այլոց աշխարհաց յիւրեանս՝ հանէր Աղեքսանդրոս թուղթ առ եպիսկոպոսակիցսն յԱրեւելս, յորում յայտ արարեալ զնոր մոլորութիւնն եւ զիւր միաբանութիւն հաւատոց ընդ վարդապետութեան եկեղեցւոյ վասն հաւասարապատիւ աստուածութեան Որդւոյ ընդ Հօր (բերելով յառաջ բանս ի գրոց Յովհ. Ա. 18, 1 — 5. Եսայ. ԾԳ. 8. Մատթ. ԺԱ. 27. Կողոս. Ա. 15 — 17. Իմաստ. Է. Եբր. Ա. 3. Յովհ. Ժ. 30. ԺԴ. 9), ապա տրտնջէ իմն թէ եպիսկոպոսունք երեք յԱսորիս պաշտպան եւ ջատագով Արիոսի վարդապետութեանն լինին, առանց զանուանսն նշանակելոյ (որք թուին լինել Եւսեբիոս Կեսարիայ, Պաւղինոս Տիւրոսի, Պատրոփիղոս Սկիւթոպօղեայ եպիսկոպոսունք), եւ յետոյ յայտ առնէ նոցա թէ որպէս նզովեալ մերժեալ է Արիոս ի հաղորդութենէ համեմատ բանից Առաքելոյ[2]:

3. Այլ վաղ գտեալ էր Արիոսի ապաւէն հզօր՝ զԵւսեբիոս՝ որ էր նախ եպիսկոպոս Բերիտոսի, այլ փառասիրութիւն Նիկոմեդիայ ուր Դիոկղետիանէսն նստէր եւ բարեկամութիւն կնոջ նորա բարենշանն Կոստանդիայ քեռն Կոստանդիանոսի՝ ած զնա այսր (որպէս եւ յետոյ փառք արքունեացն Կոստանդիանոսի ի Կոստանդինուպօղիս): Մինչդեռ տակաւին թղթովք բազմօք ջանայր Եւսեբիոս հաւանեցուցանել զԱղեքսանդրոս ընդունել զմերժեալսն, անտուստ Արիոս իւրովք կուսակցօք անցեալ ի Պաղեստին եւ յԱնտիոք, յորում վաղ իսկ ունէր բարեկամս ի ժամանակէ ուսմանն, զբազումս յեպիսկոպոսաց (յորոց մի էր եւ Եւսեբիոս Կեսարացի) յարեցուցանէր յինքն՝ բարեքելով իմն զվարդապետութիւն իւր: Անտի գրէր եւ առ Եւսեբիոս Նիկոմեդիայ, եդեալ առաջի նորա զիւր վարդապետութիւնն յայտնապէս, ասելով թէ ամենայն եպիսկոպոսունք արեւելից ի նորա կողմն են բաց ի Փիղոգոնիոսէ Անտիոքայ, ի Մեղղանիկոսէ Տրիպօղեայ Փիւնիկեցւոց եւ ի Մակարիոսէ Երուսաղեմի եպիսկոպոսաց՝ զորս հերետիկոսս իսկ անուանէր:

Սիրով ընկալաւ Եւսեբիոս զայն թուղթ, եւ որպէս թուի՝ ի նմանէ իսկ հրաւիրեալ եկն Արիոս ի Նիկոմեդիա առ Եւսեբիոս՝

1 Ս. Աթան.:

2 Գաղա. Ա. 8—9:

Digitized by Google

շունչ եւ ոգի ամենայն նենգութեանց։ Սա եւ զՄակեդոնիոս ած ի բարեկամութիւն ընդ Արիոսի, որպէս եւ զբազումս Թղթովք ի դոյն յորդորեալ արկանէր։ Այսպէս զգլխաւորս կողմանն՝ զԵւսեբիոս Կեսարացի, զՊաւղինոս Տիւրացի, զԱթանասիոս Անարզաբայ եւ զՊատրոփիղոս Սկիւթոպօղեայ կոչեցեալ առ իւր ի Բիւթինիա ի գլխաւոր քաղաք Բիւթանացւոց՝ գումարէր սիւնհոդոս իբրեւ հակառակ սիւնհոդոսին Աղեքսանդրիոյ. անդ արդարացեալ Արիոս հաստատէր ունել միաբանեալ զիշխանութիւն վերակացութեան եկեղեցւոյն իւրոյ յԱղեքսանդրիա, միանգամայն սաստիկ աղաչելով զԱղեքսանդրոս ընդունել զինքն եւ զիւրսն միաբանեալ (323)։ Այսպէս յիրաւի Արիանոսքն կոչեցան եւ Եւսեբեանք։

Ընդէն ի Նիկոմիդիա գրէր Արիոս զգիրսն Թաղիա [1], որպէս հաւանութեան է՝ չափով բանիւք, մեղկագոյն ոճով ըստ օրինակի Սոտադեայ ոտանաւի [2], զի այնպէս գտանիցէ մուտ վարդապետութիւնն մոլար որ ի նմին էր հիւսեալ. որպէս եւ յառաջ քան զայն բազում երգս՝ վասն ի բերան ջաղացաց, նաւաստեաց եւ ճանապարհորդաց տայր։

## 60

Մինչդեռ այսպէս պղտորեալ էին Եգիպտոս, Ասորիք, եւ Փոքրն Ասիա՝ անտուստ Կոստանդիանոս յետ յաղթութեանն առ Բիւզանդիոնիւ ի վերայ Լիկիանեայ հասանէր ի Նիկոմեդիա (323), լսէր անդ զառաջինն՝ մեծաւ տրտմութեամբ զանցս գժտութեանն յԵգիպտոս, որպէս ի դէպ է՝ յԵւսեբեայ Նիկոմեդացւոյ։ Անտուստ առաքէր Կոստանդիանոս զծերունին պատուական զ70-ամեայն Ոսիոս զհռչակեալն բարեպաշտութեամբ եւ իմաստութեամբ ընդ ամենայն եկեղեցիս, խաղաղութեամբ եւ միաբանութեամբ առնել լուծումն իրացն։ Ապաքէն չէր առեալ կայսրն տակաւին ի միտ զիրացն ծանրութիւն, զի նախ յԱրիանոսաց անտի լուաւ, եւ համարէր նա գժտութիւն յոչինչ պէտս, եւ յայն սակս արտաքին ինչ իրօք խորհէր խափանել. գրէր Թուղթ ուղղեալ առ Աղեքսանդրոս եւ Արիոս միանգամայն, երկոցունց կողմանց հրամայէր լուռ լինել՝ իւրաքանչիւր զիւր կարծիս կալեալ, եւ երկոցունց եւս կողմանց եւ Աղեքսանդրի եւ Արիոսի միանգամայն լինէր մեղադիր. ամա՝ զի զանլուծանելի կամ զառանց

1 Տեսցես Թաղիայ առ Ս. Աթան. ճառ Ա. ընդդ. Ար. Ե. «Ըստ հաւատոցն ընտրելոց Աստուծոյ իմաստնոցն Աստուծոյ, որդւոցն սրբոց, ուղղափառութեան՝ որ առին զՀոգին սուրբ, զայսոսիկ ուսայ ես, յայնցանէ որ յիմաստութեանն վայելեցին, ի հանճարեղացն, յաստուածուսուցացն եւ ըստ ամենայնի իմաստնոցն։ Ընդ հետս նոցա գնացի ես՝ վարուքն ընդ նոսա ճեմելով ես երեւելիս եւ հռչակեալ, որ բազում ինչ կրեցի վասն Աստուծոյ փառացն, զի յԱստուծոյ ուսեալ՝ եղեւ ինձ իմաստութիւն եւ գիտութիւն»։

2 Որ էր ի Մարոնեայ Թրակացւոց, կացեալ յԱղեքսանդրիա, որ վասն յօրինելոյ բանս զկծեցուցիչս առաջադրելով զամուսնութիւն Պտղոմեայ Փիղադելփեայ (քորասէրի) ընդ քեռն իւրում Արսինոյեայ, ըմբռնեալ ի փախստեան արկաւ ի ծով կախեալ կապար զնմանէ։

իբրեւ զմարտիրոս, սուր միտս եւ աջողակութիւն վեհման իբրեւ փիլիսոփոս, եւ հաւանեցուցիչ զօրութիւն իբրեւ ճարտարախօս կատարեալ: Նշանաւորք էին սրբութեամբ՝ Գրիգորիոս Կեսարիոյ Գամրաց, Սպիւրիդիոն Տրիմիթոս քաղաքի Կիպրացւոց, Յակոբ Մծբնայ եւ Արիստակէս Հայոց Մեծաց: Իսկ արիանոս եպիսկոպոսացն որոց թիւ 22 էր՝ էին գլխաւորք Եւսեբիոս Նիկոմեդիայ, Մարիս Քաղկեդոնի, Թէոգնիս Նիկիայ, Պատրոփիղոս Սկիւթոպոլեայ, Սեկունդոս Պտղոմայիդայ, Թէոնաս Մարմարիկայ, Պաւղինոս Տիւրոսի, Եւսեբիոս Կեսարիայ. Թէպէտ եւ զվերջինս չմարթի հաւաստ օրինակաւ կարգել ընդ սոսա:

Յառաջ քան զբուն ժողովն ի բանակցութեան ուրեք (որպէս հաւանութեան թուի ի 14 Յունի.) առանձինն եպիսկոպոսունք ընդ երիցանց ժողովեալ յերկուց կողմանց՝ արկին բանս ի մէջ. զբանսն Արիոսի հեզութեամբ եւ մեղմականութեամբ հայցեալ լսէին հարքն. ապա զիւրաքանչիւր եկեղեցեաց դաւանութիւն ի մէջ բերեալ ընթեռնուին: Ի սահմանեալ աւուրն (որպէս հաւանութեան թուի յ19 Յունի.) սկիզբն առնոյր բուն նիստ ժողովոյն: Ընդէն երեւէր Կոստանդիանոս, եւ յետ կատարածի ողջունացոյց ճառին զոր խօսեցաւ Եւսեբիոս Կեսարացի (ըստ Սոկրատայ), կամ Եւստաթիոս Անտիոքայ (ըստ Թէոդորետեայ, որպէս առաւել հաւանութեան է)՝ յայտ առնէր կայսրն զուրախութիւն իւր ընդ այնչափ եպիսկոպոսաց տեսութիւն եւ զցաւսն ընդ չմիաբանութիւնն, եւ միանգամայն զցանկութիւնն՝ զի եպիսկոպոսունք իբրեւ քարոզք խաղաղութեան միաբանութեամբ զխնդիրն սահմանեսցեն: Եւ արդեամբք կատարեցան իղձն. հրաման եղեւ Արիոսի խօսել միւսանգամ, բայց եպիսկոպոսունքն բարեպաշտօնք խցին զականջս ընդ հայհոյութիւնսն: Նա եւ ոչ որ պաշտպանք վարդապետութեան նորա էին Եւսեբեանքն՝ կարէին զդէմ ունել միաբանութեան եպիսկոպոսացն, քանզի եւ ոչ ինքեանք ամենայնիւ միաբանք ընդ միմեանս էին: Դաւանութիւն ինչ որ ի նոցանէ տուաւ ժողովոյն՝ հերձաւ պատառ պատառ: Հաստատակաց հաւանութեամբ մերժեաց ժողովն զվարդապետութիւնն նոր. եւ ի վերայ հիման հանգանակին առաքելոց՝ կամէր հանգանակաւ ընդդէմ բախել մոլորութեանն. հակառակ այնմ զի ասէր Արիոս թէ ի չգոյէ եղեւ Որդի՝ եդին հարքն զառաջինն թէ "է նա յԱստուծոյ". Եւսեբեանքն չկացին ընդդէմ, այսպէս իմն իմանալով ի մէջ իւրեանց զբանն՝ թէ ամենայն ինչ ապաքէն յԱստուծոյ է (ըստ Ա. Կորնթ. Ը. 16: Բ. Կորնթ. Ե. 17): Յայնժամ ի մէջ բերին հարքն զէութիւնն անուն, եւ փոխանակ ասելոյ՝ թէ "Որդի է յԱստուծոյ" եդին թէ "է յէութենէ Հօր": Դարձեալ կամեցան կարգել հարքն այսպէս. թէ "Բանն է ճշմարիտ զօրութիւն Աստուծոյ, պատկեր Հօր, նման ամենեւին Հօրն, անփոփոխ, յաւիտենական".



Digitized by Google

բայց Արիանոսք խորհեցան ընդ միմեանս՝ թէ մարթ է նոցա ընդունել զայս ամենայն առանց զՈրդի ի կարգէ արարածոց հանելոյ, զի ըստ Ա. Կորնթ. ԺԱ. 7. մարդն է պատկեր եւ փառք Աստուծոյ. մարթ է կոչել Որդւոյ՝ յաւիտենական, զի "յաւիտեան կամքս" ըստ Բ. Կորնթ. Գ. 11. դարձեալ՝ յԱստուածութեան է եւ Որդի, քանզի եւ մարդիկ ի նմա են ըստ Գործ. ԺԷ. 28. նա եւ անփոփոխ է Որդի, զի ասէ գիր՝ թէ չիք ինչ որ անջատեսցէ զմեզ ի սիրոյն Աստուծոյ. իսկ զօրութիւն Աստուծոյ՝ կոչէ առաքեալն ի գիրս եւ մարախն: Իմացան զկեղծաւորութիւն նոցա հարքն եւ եդին յայտնագոյն այսպէս. "Որդի է ի միասին էական (համագոյ) ընդ Հօր", այս ինքն՝ զի ոչ նման եւեթ է, այլ եւ նոյն էութիւն: Բայց ի համագամակէ՝ յօրինեցին եւ նզովս մի ըստ միոջէ հակառակ բանից Արիոսի, թէ՝ "Որք ասենն՝ եթէ էր երբեմն յորժամ չէր Որդի եւ թէ մինչ չեւ լեալ՝ չէր իսկ, եւ թէ ի չգոյէ իսկ եղեւ, կամ թէ յայլմէ անձնաւորութենէ (այս ինքն՝ գոյացութենէ) կամ էութենէ ասեն լեալ, կամ արարած, փոփոխելի եւ կամ այլայլելի զՈրդին Աստուծոյ՝ զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ եկեղեցի": Իբրեւ այսմ համագամակի չառնոյր յանձն հաւանել Արիոս՝ ընկեցաւ մերժեցաւ ի հաղորդութենէ եկեղեցւոյ. տրգել կայսրն չերթալ նմա յԱղեքսանդրիա, այլ ի Իլլիրիկէ յաքսորս, եւ հրաման տայր զամենայն գիրսն նորա հրով վառել:

Այլ ի կուսակցաց նորա տակաւին ընդդէմ դատանային բանից համագամակին, Եւսեբիոս Նիկոմեդացի, Մարիս, Թէոգնիս, Թէոնաս, Սեկունդոս (ըստ Սոկրատեայ) եւ կամ (ըստ Սոզոմենեայ) միայն Թէոնաս եւ Սեկունդոս, եւ այն միայն վասն ի միասին էականն անուան, զի ասէին թէ այն անուն բաժանմամբ ինչ կամ հատմամբ ակնարկէ գալ Որդւոյ յառաջ ի Հօրէ: Սակայն ոչ միայն երկուքին սոքա՝ որք ոչ համագամակին եւ ոչ նզովիցն արկին ձեռնագիր՝ այլ եւ Եւսեբիոս Նիկոմեդացի եւ Թէոգնիս ընկեցան յեպիսկոպոսութենէ եւ աքսորեցան ի կայսերէ ի Գաղղիա, քանզի չառնուին նոքա յանձն արկանել ձեռնագիր նզովիցն. առաքեաց հրաման կայսր ի Նիկոմեդիա եւ ի Նիկիա՝ ընտրել ուղղափառ եպիսկոպոսունս. իսկ Եւսեբիոս Կեսարացի որ խիզախնէ իսկ կեղծաւորութեամբ ինչ վարէր՝ առաջ ուրեմն հաւանեցաւ արկանել ամենայնի ձեռնագիր յետ խնդրելոյ պարապ՝ քննելոյ զուղղութիւն ի միասին էականն անուան. իսկ նզովիցն չարկ ձեռնագիր ասելով՝ թէ խառագոյն ինչ մտիւ բերին հարքն զԱրիոսէ՝ զորոյ ինքն ուղղեկարգոյն զմիտսն ճանաչէ: Գրէր նա թուղթ եւ ի վիճակին իւր ի Կեսարիա նենգութեամբ ինչ մտօք զամենայն ներքին գործս ժողովոյն տալով ի բերան կայսերն, եւ զնա ամենայն ուրեք ածեալ ի մէջ իբրեւ մեկնիչ դժուարութեանց:

Digitized by Google

Միաբանակամ հանն ի գլուխ ժողովն եւ զխնդիր տօնի Զատկին, սահմանեալ՝ զի ամենայն ուրեք տօնեսցի յառաջնում միաշաբաթւոջ որ զայցէ զհետ լման լուսնոյ որ զկնի գարնանային հաւասարութեան գիշերոյ եւ տուընջեան, եւ խորհեցան բառնալ զհերձուած Մելետիոսի խաղաղական վճռով թէ կալցի Մելետիոս զիւր աթոռ եպիսկոպոսութեան բայց առանց առնելոյ այլ եւս ձեռնադրութիւն. այսպէս շնորհեցան ներողութիւն եւ եպիսկոպոսաց, երիցանց եւ սարկաւագաց ձեռնադրելոց ի նմանէ, զի ի դատարկացեալ ինչ տեղիս կարգեսցին ի պաշտօն, եթէ գտցին արժանի. եւ այլ եւս (20) կանոնք վասն եկեղեցական կարգաւորութեան եղան[1]։

Այս ամենայն նիստք ժողովոյն լինէին յեկեղեցւոջ Նիկիոյ, այլ վերջինն (հայեցեալ ի բանսն Եւսեբեայ) եղեւ ի պաղատան կայսեր, որ պատրաստեալ էր մեծաշուք վասն գալստեան նորա (Օգոստ. 25) նմին իրի եւ չէր այն եկեղեցական ինչ նիստ. այլ Եւսեբիոս խառնէ զսա ընդ առաջին նիստսն՝ ոչ առանց խորհրդոյ։

Ի բուն հայրենիս Արիանոսացն եւ Մելետիանոսաց գրէր թուղթ սիւնհոդոսն, նոյնպէս եւ կայսրն՝ մեծաւ քաղցրութեամբ "ծառայակից նոցա" զանձն կոչելով, եւ յուշ սպառնալով նոցա թէ "որ ինչ ի սուրբ ժողովս եպիսկոպոսացն լինիցի՝ այն Աստուծոյ իսկ կամք եւ սահմանք են"։ Ոչ միայն տայր կայսր այրել զգիրս Արիոսի այլ եւ սպառնայր մահ այնոցիկ որոց պահեսցեն, եւ հրամանս տայր զԱրիանոսսն այնուհետեւ կոչել Պորփիւրիանոս (ըստ անուան Պորփիւրիոսի հեթանոս փիլիսոփայի անհնարին թշնամւոյն քրիստոնէութեան)։

Այսպէս թուէր ամենայն ինչ հարթեալ խաղաղեալ։

## 61

Դրեթէ վճարեալ իսկ էր բուն գործ ժողովոյն՝ յորժամ կատարէր Կոստանդիանոս տօն զքսանամեակն թագաւորութեան իւրոյ անդէն յամի 325 (Յուլ. 25), եւ առնէր հացկերոյթ մեծ եպիսկոպոսաց ժողովոյն եւ մեծապարգեւ մեծարէր զնոսա։ Ի միւսում ամին դառնայր ի Հռոմ։ Մեծ էին փառք Կոստանդիանոսի ի ժամանակին. արեւելք եւ արեւմուտք միանգամայն հպատակեալ էին նմա, համօրէն իսկ տէրութիւնն յետ երկայնժամանակեան խռովութեանց եւ յուզելոյ՝ վայելէր ի խոր իսկ խաղաղութեան, սահմանակիցք երկնչէին ի զօրութենէ եւ ի քաջութենէ նորա, հնազանդեալքն ընդ իմաստուն եւ ընդ հզօր առաջնորդութեամբն ուրախ լինէին, եւ տունն կայսերական յաճախեալ

1 Զորս տես մի ըստ միոջէ ի Պատմ. տիեզ. ժող. Հ. Պօղ. Վ. Յովհաննէսեան, էջ 48—56.

բազմամեայ չորեքումբք որդւովքն: Երիցագոյնն ի նոցանէ՝ զոր ի Մինեռուինայ ծնաւ Կրիսպոս՝ կեալ էր յայնժամ ամաց իբրեւ 27, ընտիր ձիրիւք, ուսեալ եւ կրթեալ քաջ ի հոյակապն Ղակտանտիոսէ, ստացեալ փառս զօրավարութեան ի պատերազմունս ընդ Փրանկաց եւ ի հրամանատարութեան նաւատորմիղ նաւաց, սիրելի ի ժողովրդեան եւ ի զօրս եւ գրաւական յուսոյ հանապազորդութեան հասարակաց բարութեանն: Իսկ կրտսերագոյնքն երեքին որ ի Փաւստայ ծնան, Կոստանդիանոս, Կոստանդիոս եւ Կոստաս էին տակաւին 10, 9 եւ 6 ամաց:

Այլ անդէն ի Հռոմ սկսաւ դատաստան ահագին ի մէջ կայսերական տանն: Փաւստա՝ որ ընդ ակամբ իմն հայէր ընդ Կրիսպոս Կեսար, ամբաստան եղեւ առ այր իւր զուրջուէն՝ թէ կամեցաւ նա գործել ընդ նմա անարժանս, եւ թէ ինքնակալութեան եւս ակն եդեալ է: Դիւրահաւանն Կոստանդիանոս առաքեաց զնա ի Պօղա Իստրիացւոց, եւ յետ այնորիկ ետ սպանանել սրով (ըստ այլոց՝ դեղով): Դրեթէ ընդ նոյն ժամանակս տայր սպանանել եւ զկրսերն Ղիկինիոս զորդի քեռն իւրոյ սիրելւոյ՝ որ տակաւին ի կեանս էր. զպատճառն ոչ գիտեմք, թերեւս եւ այն ի թելադրութենէ Փաւստայ եղեւ՝ որ ապաքէն նախանձորդ իշխանութեան որդւոցն զնա համարէր:

Իսկ տիկինն մեծարոյ 79ամեայ Հեղինէ, մայր ինքնակալին, յանդիմանեաց զորդի իւր վասն անագորոյն սպանութեան երկուց թոռանց իւրոց: Յայնժամ ապա արար Կոստանդիանոս քննութիւն իրացն, ա՛ռ ի միտ եւ հան վրէժ սաստիկ ի կնոջէն զրպարտչէ եւ ետ հեղձուցանել զնա ի ջերմ բաղանիս. նոյնպէս բազումք յարքունականաց սպանան՝ ապաքէն վասն սուտ ինչ վկայութեամբ գործակից բամբշանն լինելոյ (326): Մահն Կրիսպոսի եւ Ղիկինեայ ոչ եթէ աջողութիւն ինչ եբեր, այլ յայտնի անէծս արկ ի վերայ երեցունց որդւոց եւ նոցին զաւակաց՝ սկսեալ ի մօրէն, այնպէս զի յետ 37 ամաց մահուանն Կրիսպեայ՝ ոչ ոք մնաց ի բազմաւոր տոհմէ անտի: Զուր ջանայ Եւագրիոս լռութեամբն Եւսեբեայ սուտ հանել զպատմութիւնս (զոր պատմեն Զոսիմոս, Եւտրոպիոս, Աւրելիոս Վիկտոր երէցն եւ Ամմիանոս Մարկեղինոս), ուր ինքն իսկ Եւսեբիոս զնոյն հաստատէ, այնու՝ զի ի կատարած կոյս եկեղեցական պատմութեանն (զոր յառաջ քան զանցս դայսուիկ գրեաց) գովէ յոյժ զԿրիսպոս, իսկ ի վարսն Կոստանդիանու, ուր դրեթէ բան առ բան ընդօրինակէ զվերջին հատածս գրոց պատմութեան իւրոյ՝ ամենեւին լռէ զԿրիսպոսէ: Բազմացաւ քրթմնջիւն զկայսերէ ի Հռոմ, եւ այնպէս հարկ համարեցաւ ելանել ի բաց ի քաղաքէն: Յառաջ իսկ քան զնա՝ եւ Հեղինէ ի պաղատանէն արեամբ սրսկելոյ՝ գնալ ի Պաղեստին. անդ հանդերձ Մակարիաւ Երուսաղեմացւոց եպիսկոպոսաւ բուռն

հար զառնել արքել զանդղեան անօրինականս` որ պղծեալ եւ ծածկեալ էին հեթանոսական պաշտամամբքն։ Գտին զգերեզմանն սուրբ, յորոյ վերայ եւս շինել Կոստանդիանոս եկեղեցի հոյակապ. գտին եւ զերիս խաչսն, յորոց բժշկութեամբ կնոջ միոյ խօթացելոյ` ընտրեցաւ խաչն Քրիստոսի։ Յետ դարմանելոյ զաղքատս եւ կուսանաց ինքնին սպասաւոր կալոյ` դարձաւ Հեղինէ առ որդի իւր ի Նիկոմիդիա` ուր եւ մեռաւ իսկ (327 կամ 328) խրատելով զորդին եւ խնդրելով յԱստուծոյ շնորհս վասն նորա։ Պատուէին զյիշատակ նորա եկեղեցիք արեւմտից եւ արեւելից առ հասարակ։

2. Սոյն իսկ հանեալ էր Կոստանդիանոս ի գլուխ խորհրդակութեամբն զխորհուրդ բազմաց առաջնոցն ինքնակալաց (զԿեսարեայ եւ զԱւգոստեայ) այս ինքն` հեռանալ ի Յունական քաղաքէն (Հռոմայ), յաթոռոյ տէրութեանն։ Այնուհետեւ եւ Կոստանդիանոս եդ ի մտի ընտրել նոր ինչ միջավայր տէրութեանն, սուրբ ի հեթանոսական պաշտամանց` զի լիցի քրիստոնէական արքունիք, եւ զի միանգամայն աջող իցէ ի պահպանութիւն սահմանաց տէրութեանն։ Զառաջինն ընտրեաց զԻլիոն` զխանձարուրս տէրութեան Հռոմայեցւոց, եւ առանձինն զվայրն` ուր դիւցազունքն Հոմերայ նահատակեցան։ Սակայն սկսեալ էր շինութիւնն` յորժամ յանկարծ շրջեաց զմիտս կայսրն ընտրել զԲիւզանդիոն, որ գրեթէ ամենեւին քաղաք քրիստոնէից էր ի միջոց վայրի Ասիոյ եւ Եւրոպայ, եւ պատեհ դիտելոյ զՊարսիկս եւ զԳութս, եւ միանգամայն դիւրին առ վաճառաշահ ամենայն աշխարհաց[1]։ Յայնսակս մեծացոյց զքաղաքն առեալ եւթն բլուր ի ներքս ըստ թուոյ բլրոցն Հռոմայ, զարդարեաց ապարանիւք` որոց նիւթ բերաւ ի յաղթ ծառոց անտառացն առ Սեաւ ծովուն եւ ի մարմարահատաց մերձաւոր Պրոկոննեսոս կղզւոյ. զհրապարակ վաճառացն պատեաց սեամբք կարգաւ. շինեցան եւ ձիընթացք կամ տեղի արշաւանի կառաց. ի գեղեցիկ սրահի շքեղ կայսերական պալատանն կանգնեցաւ խաչ ոսկի ընդելուզեալ ակամբք պատուականօք։ Գեղեցկագոյն քան զամենայն եկեղեցիսն` եկեղեցի Առաքելոցն էր։

Բնակչացն ետ իրաւունս եւ ազատութիւնս հաւասար քաղաքացեաց հնոյն Հռոմայ. բաժանէր ժողովրդեանն եւս ցորեան, ձէթ եւ միս. այնուհետեւ ցորեանն Եգիպտացւոց գայր այսր, եւ հարկ էր հնոյ Հռոմայ շատանալ ցորենովն Ափրիկեցւոց։ Յայսր ամենայնի վերայ` ոչ ումեք համարձակ էր ժառանգել ա-

1 Զբիւզանդիոն շինեաց, ասեն հինք, Բիւզաս ոմն առաջն Աթենացի կամ Արգիացի թագաւորական, որ հարցեալ զպատգամս Ապողոնեայ թէ ուր շինիցէ, ընկալաւ պատասխանի` թէ հանդէպ տեղ կուրաց է զծոյ յանդիման կուրաց. կոյրս զՔաղկեդոնականս Մեգարացւոցն անուանէր Պիւթիա, որք 17 ամօք յառաջ քան զայն զՔաղկեդոն Բիւթանացւոց շինեցին` զանց արարեալ զանեղեալ Բիւզանդիոնի, յոր նաւքն եկեն — Հինք զանդրոյթ նաւահանգիստն նորա` Եղջիւր ոսկի կոչէին. քանզի ի կար խորշ իւր առնոյր եւ հանէր զզանձս Եւրոպայ եւ Ասիոյ։

րալս ի Նահանգին Ասիացւոց եւ Պոնտացւոց՝ որոյ տուն ի Կոստանդնուպոլիս չէր։ Նորին նաւակատիք շինութեանն (Մայ. 11, յամի 330 կամ 334), հրամայեցաւ կոչել Նոր Հռոմ, սակայն եւ այնպէս անուանեցաւ Կոստանդնուպօլիս։

3. Ի փոփոխել տեղւոյ աթոռոյն եւ օրինակ վարչութեանն փոփոխեցաւ։ Տէրութիւնն ի չորս Վերակացութիւնս[1] բաժանեցաւ եւ ապա դարձեալ յ13 Վիճակս[2]. եւ ապա միւսանգամ ի 116 Նահանգս կամ Գաւառս[3]։

Վերակացութիւնքն չորք հանդերձ մանրագոյն բաժանմանցն իւրեանց են՝

Ա. Վերակացութիւնն Արեւելից որ ունէր հինգ Վիճակս՝ 1. Արեւելից (15 նահանգօք), 2. Եգիպտոսի (6 նահանգօք), 3. Ասիոյ (10 նահանգօք), 4. Պոնտոսի (11 նահանգօք) եւ 5. Թրակիոյ (6 նահանգօք)։ Վերակացուն նստէր ի Կոստանդնուպօլիս։

Բ. Վերակացութիւնն Իլիւրիկեայ ունէր երկու Վիճակս՝ 1. Մակեդոնիոյ (6 նահանգօք) եւ 2. Դակիոյ (5 նահանգօք)։ Վերակացուն նստէր ի Սիրմիոն։

Գ. Վերակացութիւնն Իտալիոյ ունէր երիս Վիճակս՝ 1. Իտալիոյ (17 նահանգօք), 2. (արեւմտեան) Իլիւրիկեայ (6 նահանգօք) եւ 3. Ափրիկեայ (6 նահանգօք)։ Վերակացուն նստէր ի Հռոմ կամ ի Մեդիոլանոն։

Դ. Վերակացութիւնն Գաղղիոյ ունէր երիս Վիճակս՝ 1. Գաղղիոյ հանդերձ Հելուետիա (17 նահանգօք), 2. Սպանիոյ հանդերձ Բալէարեանք (7 նահանգօք) եւ 3. Բրիտանիոյ (5 նահանգօք)։ Վերակացուն նստէր ի Տրեւիրս։

Ընդ իւրաքանչիւր Վերակացուաւ կամ Անձնապահապետաւ[4] որ առաջնորդէր քաղաքային իրաց (եւ ոչ զինուորականաց) կային յիւրաքանչիւր Վիճակս Անթիպատականք կամ Տեղապահք[5], եւ յանձնիւր նահանգս Առաջնորդք նահանգաց[6] այլ եւ այլ անուամբք՝ Հիւպատականք, Գահերէցք, Ուղղիչք[7]։ Հռոմ եւ Կոստանդնուպօլիս չէին ընդ վերակացութեամբքս, այլ էին ընդ առանձինն Վերակացուաւ քաղաքի[8]։

Իսկ ի գլուխ համօրէն զօրացն կայր մի ոմն սպարապետ կամ Մագիստրոս[9] եւ ըստ նմանէ կային Մագիստրոսքն կամ Մագիստրիանոսք զօրականաց[10] երկու, մի հեծելազօրուն եւ միւս հետեւակաց[11]. այս բաժանումն զոր Կոստանդիանոս եդ՝ թուի կացեալ հաստատուն յարեւմտեան տէրութեան, այլ յարեւելս եդան յետոյ հինգ Մագիստրոսք։ Իսկ այլոց մանրագոյն բաժան-

1 Praefectura.
2 Dioecesis.
3 Provincia.
4 Praefectus praetorio.
5 Proconsulares, vicarii.
6 Rectores provinciarum.
7 Consulares, praesides, correctores.
8 Praefectus urbi.
9 Magister utriusque militiae.
10 Magistri militum.
11 Magistri equitum, peditum.

Digitized by Google

մանց զօրականին յիւրաքանչիւր մեծամեծ եւ նահանգս կային հրա-մանատարք՝ կոմսքն[1] եւ դուքսք[2] որոց գործ էր պահպանութիւն սահմանաց։ Բայց առանձին զօրականաց կային ուրոյն կոմսք, յո-րոց մին կոչէր կոմս առանձին հեծելոց եւ միւսն՝ կոմս առանձին հե-տեւակաց։ Բարբարոսքն եւս զինուորէին վարձկանութեամբ։

Սպասաւորութիւն տէրութեանն կատարէր ի ձեռն բարձրա-գոյն իմն խորհրդականութեան[3] որ էր յօրինեալ յայլ եւ այլ պաշտօնէից տէրութեան, յորոց երեւելիք էին սոքա, 1. Սենե-կապանն[4] ընդ որոյ ձեռամբ կայր ա. Գլխաւոր սպասաւորն սենե-կին[5] հանդերձ Տասնակաւորքն իւրովք[6], բ. Կոմսն բանակի[7] հան-դերձ գլխաւոր սպասաւորաւ սեղանոյ[8], գլխաւորաւ Մառանա-պետաց[9], Դաստիարակաց[10], եւ Ջահաւորաց[11], գ. Կոմսն հան-դերձից[12], դ. Խղթապահք[13], եւ ե. Լռարարք (այսինքն՝ պահողք կարգի եւ հանդարտութեան)[14]։ — 2. Մագիստրոս պաշտօնէից[15], այսինքն պաշտօնեայ ներքին իրաց, — 3. Կոմսն պարգեւաց՝[16] պաշ-տօնեայ գանձուն տէրութեան, — 4. Քննիչ[17] հոգաբարձու օ-րէնսդրութեան եւ արդարութեան, — 5. Կոմս սեպհական գան-ձու կայսեր[18], թող զայլ նուազագոյն աստիճանսն, որպիսի ինչ՝ զԳլուխ նօտարաց[19]։ Սենեկքին սոքա ունէին ընդ իւրեանց ձե-ռամբ այլ եւս բազմաթիւ խոնարհագոյն պաշտօնեայս։

Իւրաքանչիւր աստիճանացս առանձին վերադիր անուանք պա-տուոյ էին, որպիսի ինչ՝ Ազնուագոյնք[20] կոչէին իշխանք տոհմիկք, Լուսաւորք կամ Փառաւորք՝[21] հիւպատոսքն, անձնապահապետքն, մագիստրիանոսքն զօրաց եւ ամենայն բարձրագոյն պաշտօնեայք արքունեացն եւ տէրութեանն, Ակնածելիք[22] կոչէին անթիպատքն, կոմսն բանակի, գլուխն նօտարաց, եւ տեղապահքն եւ կոմսք եւ դուքսք, անուանէին Պայծառագոյնք[23] Հիւպատականք, ուղղիչքն եւ դահերէցք, իսկ խոնարհագոյնքն քան զսոսա՝ յորջորջէին Կա-տարելագոյնք[24] կամ Ընտիրք[25]։

Ըստ այսց նորոց յօրինուածոց պիտոյ եւ կարեւոր էին եւ նոր ինչ տուրք եւ հարկք, կամ փոփոխումն իմն առաջնոցն։ — 1. Ինդիկտիոնն էր հարկ երկրի կամ բերոց կալուածոց ուրուք. այս հարկ ամ ըստ ամէ սահմանեալ լինէր (indicebatur) ի կայսերէ երկուք ամսօք յառաջ քան զ1. Սեպտեմբեր ամսոյ ըստ չափոյ

1 Comites.
2 Duces.
3 Consistorium principis.
4 Praepositus sacri cubiculi.
5 Primicerius s. cubiculi.
6 Decani.
7 Comes castrensis.
8 Primicerius mensarum.
9 Primic. cellariorum.
10 Paedagogiorum.
11 Lampadiorum.
12 Comes s. vestis.
13 Chartularii.
14 Silentiarii.
15 Magister officiorum.
16 Comes s. largitionum.
17 Quaestor.
18 Comes rei privatae principis.
19 Primicerius notariorum.
20 Nobilissimi.
21 Illustres.
22 Spectabiles.
23 Clarissimi.
24 Perfectissimi.
25 Egregii.

Digitized by Google

աշխատոյից արքունեացն յառաջակայ ամին, եւ ըստ չափոյն այնմիկ սահմանելոյ՝ առաջնորդք նահանգացն բաժանէին ի վերայ իւրաքանչիւր քաղաքաց եւ հասարակութեանց, Դեկուրիոնք (խորհրդականք քաղաքաց) բաժանէին ի վերայ միոյ միոյ՝ որոյ կալուած գոյր։ Ամենայն իսկ կալուածք չափեալ էին եւ ըստ նմին սահմանեալ չափ տուրոյն, եւ վասն իւրաքանչիւր նահանգի որոշեալ եդեալ կայր անփոփոխական թիւ թիւ կամ գլուխ[1] (բերոց թիւ անդէոց եւ գերեաց) եւ ըստ այնմ թուոյ կամ գլխոց այն բաժանմունք լինէին։ Բայց զի չէր մարթ չափոյ բերոց կամ ստացուածոցն նոյնպէս կալ միշտ, յայն սակս լինէր այցելութիւն եւ հանդէս ի 15 ամէ ի 15 ամ, եւ տասնամսն եղ (15ամեայ) Շրջանն Ինդիկտիոնաց[2], որոյ սկիզբն է յամէ հասարակաց թուականութեան 312, Սեպտ. 1։ Իսկ հարկքն տուեալք՝ կամ էին բերք թիւ եւ կամ արծաթ, եւ վասն ժողովման տոցա եւ փոխելոյ ընդունէին ի տեղի՝ կային սահմանեալ բազմամբոխ խոնարհագոյն սպասաւորք արքունի։ — 2. Չորեքամեան հանդամանք կամ չորեքամեան ոսկի[3], որ էր հարկ թիւ վաճառականաց, եւ պարտ էր ամենայն վաճառականաց (բաց յարուեստաւորաց եւ յայնցանէ որ ի ձեռացն վաստակոց կէին[4]) հատուցանել ի չորրորդ չորրորդ ամի կամ իւրաքանչիւր հինգերորդ ամին։ — 3. Պսակական ոսկին[5] էր հարկ թիւ որ պահանջէր յերեւելի երեւելի քաղաքաց, իբրեւ փոխանակ ամբողջութեանն՝ որով պսակ ոսկի մատուցանէին քաղաքք երեւելիք յառաջն զօրավարացն Հռոմայեցւոց յետ յաղթութեան իւիք եւ յետոյ կայսերաց՝ ի նստել նոցա յաթոռն։

Պրետորացն որ ի Հռոմ եւ ի Կոստանդնուպոլիս էին՝ պարտ էր յիւրեանց ընչից տալ զծախս զբօսանաց խաղուց վասն ժողովրդեանն. իսկ հրապարակական թիւ հիմնարկութեանցն ծախք՝ ի գանձուէ ընչից քաղաքին լինէին, եւ եթէ սոքա չբաւէին՝ յայնժամ առեալ լինէին ի Դեկուրիոնաց կամ ի խորհրդականաց քաղաքին, եւ զայս պատիւ խորհրդականութեան սոփաղէին իսկ առնուլ այսանց մեծատանց։ Իսկ գանձն տէրութեան[6] որ մի միայն էր այնուհետեւ՝ էր ի ձեռս Կոմսին պարգեւաց զոր վերագոյն յիշեցաք, եւ համօրէն առաջնորդութիւն գանձուն այնորիկ ի 10 դպրոցս[7] էր բաժանեալ, եւ ամենայն նահանգի էր առանձինն արկղ նահանգական զորոյ զմուտս յանձնանձէր մի ոմն Վերակացու գանձու[8] եւ զելսն՝ Կոմս մի։

1 Capita.
2 Cyclus indictionum, sive indictionarius.
3 Lustralis collatio, vel aurum lustrale, sive Chrysargyrum.
4 Qui manu victum rimentur.
5 Aurum coronarium.
6 Arca largitionum.
7 Scrinia.
8 Praefectus thesaurensium.

Digitized by Google

## 62

Արդ մոռացաւ Կոստանդիանոս զխոստովանութիւն հաւատոյ Արիանոսացն: Քոյր նորա Կոստանդիա ունէր առ իւր երէց մի որ էր ի կողմն Արիոսի եւ ած զտիկինն ի գութ ի վերայ աքսորանաց նորա: Բայց Կոստանդիա չիշխէր ժամանակս բազումս լինել բարեխօս վասն Արիոսի, այլ իբրեւ անկեալ դնէր մերձ ի մահ՝ յանձն արար նա եղբօրն զերէցն զայն իբրեւ զայր ճշմարտահաւատ, եւ յաւելոյր թէ ի հոգս է վասն տէրութեանն զուցէ վտանգ ինչ հասանիցէ վասն աքսորանաց արանցն անմեղաց: Արդ նուհետեւ յայտ արար Կոստանդիանոս՝ զի եթէ հնազանդիցէ Արիոս սահմանաց Նիկիական ժողովոյն, համարձակ իցէ նմա գալ առ նա, եւ ի յապաղել նորա՝ գրեաց առ նա առանձինն գիր հրաւիրելով առ ինքն: Եկն Արիոս ի տեղւոջէ աքսորանաց՝ հանդերձ Եւզոյիւ սարկաւագաւ զոր կարեալ էր ընդ նմա ի հաղորդութենէ Աղեքսանդրոս: Պատուեցաւ կայսրն ի դաւանութենէ նորա, թէպէտ եւ չգոյր ի նմա ի միասին էական բան: Ուրախ եղեւ կայսրն եւ սկսաւ լինել բարեխօս եպիսկոպոսացն՝ ընդունել զնա ի հաղորդութիւն (328): Զնոյն սորջանս անդէն ի տեղւոջէ աքսորանացն ցուցանէին զդարձ եւ Եւսեբիոս Նիկոմեդացի եւ Թէոգնիս Նիկիացի, որք եւ կոչեցան յետս եւ կացին յիւրաքանչիւր աթոռս՝ ի բաց կալով եպիսկոպոսացն որ յառաջագոյն կարգեալ էին փոխանակ նոցա (329):

Այդր սկիզբն առնէին վաղվաղակի վրէժխնդրութեանն՝ մերժել հանել յեկեղեցեաց զայնոսիկ որ մեծաւ նախանձու եւ ուղղութեամբ լեալ էին դիմադարձ վարդապետութեանն Արիոսի: Նախ առնէին սկիզբն յԵւստաթիոսէ յեպիսկոպոսէ Անտիոքայ, որ երեւելի էր իմաստութեամբ եւ սրբութեամբ եւ գեղեցկութեամբ ճարտասանութեան, որով բազում գիրս ընդդէմ Արիանոսացն էր եդեալ. մանաւանդ ընդդէմ իմն էր նա Եւսեբեայ Կեսարացւոյ: Յանկարծ պատճառանօք տեսանելոյ զշինութիւն եկեղեցւոյն Յարութեան յԵրուսաղէմ եկն Եւսեբիոս Նիկոմեդացի յԱնտիոք (330), եւ ժողովով եպիսկոպոսաց կողման իւրոյ, յորոց մի էր եւ Եւսեբիոս Կեսարացի՝ արկ զնա յաթոռոյ, ամբաստանութիւն մատուցեալ զնմանէ վասն սաբելականութեան եւ ժանտագործութեան՝ դատախազութեամբ կնոջ միոյ կաշառելոյ ասել թէ նա իցէ հայր մանկանն զոր ի գիրկսն ունէր, եւ դարձեալ ասէին՝ թէ թշնամանս արարեալ իցէ մօր կայսերն: Ընդ Եւստաթեայ նզովեալ մերժեցան յաքսորս եւ բազում երիցունք եւ սարկաւագունք: Խռովութիւնն որ վասն մերժելոյ եպիսկոպոսին յուզեցաւ ի քաղաքին՝ հազիւ խաղաղէր զինուորական զօրութեամբ. յայն սակս եւ Եւսեբիոս Կեսարացի որում

մատուցեալ լինէր եպիսկոպոսութիւն երեւելի քաղաքին այնորիկ՝ չառ յանձն ընդունել։ Այսպէս ի սակաւ ժամանակի մի ըստ միոջէ ընկենուին յաթոռոց եպիսկոպոսունս բազումս ուղղափառս՝ զԵւստաթիոս Անտիոքացւոյ, զԵւփրատիոն Բաղանէայ, զԱսկղեպաս Գազայ, զԴոմնիոն Սիրմիոնի եւ զԵլլանիկոս Տրիպոլեայ, զկէսս զուպարտութեամբ սաբելեականութեան՝ այս ինքն վասն զի միաւորին էական պինդ ունելոյ եւ զկէսսն այլով յանցանօք, զամենս ժողովով եւ զոմանս առանձինն կայսերական հրամանաւ. քանզի ամենայն իմիք բաւական էին Արիանոսք կամ Եւսեբեանք յաղթունս։ Փոխանակ եպիսկոպոսացն անկելոց կացին Արիանոսք կամ որք չէին հակառակ Արիանոսաց։ Բայց գործ էր նոցա մանաւանդ զԱթանասիոս բառնալ ի միջոյ որ առաւել ի մէջ գոյր իբրեւ ժայռ յոր բախեալ խորտակելոց էր Արիանոսութիւն։

2. Աթանասիոս (ծնեալ ոչ յառաջ քան զամն 296 եւ ոչ յետոյ քան զամն 298 մօտ ուրեմն ի քաղաքն Աղեքսանդրիա) էր կրթեալ ի գեղեցիկ դպրոցի կրթական կենաց՝ յորում առաջնորդ եւ վարդապետ էր նորա Ս. Անտոնիոս ճգնաւոր, եւ միանգամայն վարժեալ ուսմանց, մանաւանդ ի գիրս Որոգինի եւ կիրթ մեծաղական արուեստին՝ որով լինէր տապար նուրբ բանիցն Արիանոսաց։ Էր նա սարկաւագ (յամէ 319) յորժամ ի Նիկիա (325) առնէր սկիզբն պատերազմին որ էր նմա ցկեանս։ Իբրեւ մերձ ի մահ էր Աղեքսանդրոս, խնդրեալ Աթանասայ զմիտս նորա թէ կամի սահմանել զնա իւր յաջորդ, եւ զնաց փախստեայ։ Աղեքսանդրոս մերձ ի շունչ վախճանին (326) կոչեաց զանուն նորա, բայց կայր անդ մեւս եւս Աթանաս որ տայր նմա պատասխանի, այլ բուռն եւեթ լինէր Աղեքսանդրոս, եւ յետ սակաւ ինչ միոյ յաւելոյր «Թէ փախչել համարիս, Աթանասիէ, սակայն ոչ փախիցես»։ Աղերսանքն իւրն կատարեցան. դարձաւ Աթանաս յԱղեքսանդրիա. Հաստատեաց ժողովուրդն զընտրութիւն եպիսկոպոսին մեծաւ թախանձութեամբ. եւ եպիսկոպոսունքն ժողովեալք ետուն ձեռնադրութիւն։

Ի գիրսն իւր յորս համակ ընդ Արիանոսացն ոգորէր՝ այսպէս յանդիման կացուցանէր Աթանաս զգլխաւոր մոլորութիւն Արիանոսացն։ Փոխանակ, ասէ, հարցանելոյ թէ ընդէ՞ր Քրիստոս որ Աստուածն էր՝ եղեւ մարդ, նոքա հարցանեն թէ ընդէ՞ր որ մարդն էր՝ Աստուած եղեւ, հանգոյն փարիսեցւոցն որք զամենեւին խոկ յայտնի նշանս աստուածեղէն առաքման կենարարին տեսեալ՝ կամակորութեամբ ի մէջ մատուցեալ հարցանէին թէ ընդէ՞ր որ մարդդ ես զանձն Աստուած առնես։ Ցուցանէր նոցա թէ առանց ճշմարիտ հաւատոյ յԱստուածութիւն կենարարին՝ չէ մարթ թէ կայցէ հաստատուն մասն ինչ վարդապետութեան քրիստոնէութեան, քանզի այլ եւս ամենայն բանք հրամանակարգք[1] ընդ այնմ վարդապետութեան իբրեւ ընդ կեդրոնի քրիստո-

[1] Dogmes.

նէական վարդապետութեան սորտիւ կան կապեալ։ Իսկ ի մասնաւոր վիճման ի վերայ բանից գրոց՝ յանդիման կացուցանէ Աթանաս զկիմար եւ զսուտ մեկնութիւն նոցա, եւ դնէ ընդդէմ զգլխաւոր տեղիս գրոց սրբոց վասն աստուածութեանն Քրիստոսի, հզօր մեկնութեամբ։ Իսկ ի վիճելն ընդ նոսա տեսական պատճառօք՝ ջանայր մանաւանդ կործանել զհիմն մոլորութեան նոցա, այս ինքն՝ զայն խոտոր տեսութիւն Արիանոսացն՝ թէ արարած էութիւն չմարթի ընդունել զանմիջնորդական ազդեցութիւն Աստուծոյ, եւ թէ այնպիսի գործ անարժան է Աստուծոյ, եւ յայն սակս դնէին զՔրիստոս խոնարհագոյն ինչ Աստուած, միանգամայն եւ բարձրագոյն ինչ արարած՝ յորոյ ձեռն այլ արարածք ստեղծան։ Ցայտ վայրի ցուցանէ թէ ինքեանք հակառակ անձանց խօսին, այնու՝ զի զգործ արարչութեանն իբրեւ անմիջնորդական գործ արձակ Աստուածութեան յայն սակս ուրանան՝ քանզի Աստուած ընդ արարածոց ամենեւին չկարէ գալ ի հաղորդութիւն, սակայն անդէն ինքեանք նմին Աստուածութեան տան ստեղծանել արարած ինչ թէպէտ եւ առաջին որ եւ զանմիջնորդական ազդեցութիւն Աստուծոյ յինքն ընդունի (այս ինքն զԲանն՝ ըստ նոցա)։ Արդ զիա՞րդ չիցէ հնար եւ համօրէն իսկ բովանդակութեան արարածոց նովին օրինակաւ զնոյն ազդեցութիւն Աստուծոյ ընդունել։ Այլ եթէ վասն արարչութեան աշխարհի միջնորդ ինչ էութիւն իբրեւ միջնորդ պիտոյ էր, ապա եւ վասն առաջնոյ արարածոյ իբրեւ արարածոյ հարկ էր թէ իցէ նմանապէս ինչ միջնորդ, եւ եթէ ընդ այս երկրորդ միջնորդ որ արարած եւեթ է եւ ընդ Աստուած գոյ ընտրութիւն եւ անջրպետութիւն՝ ապա պիտոյ է միւս եւս երրորդ միջնորդ եւ այսպէս մարթի խաղալ յառաջ յանբաւս, մինչ զի հարկ իցէ հրաժարել ամենեւին ի խորհրդոյ արարչութեան։ Արդ այլ եւ այլ դարձուածովք ցուցանէ Աթանաս թէ ըստ Արիանոսացն կարծեաց զոր ունին զՔրիստոսէ իբրեւ զարարածոյ՝ չէ հնարաւոր փրկութիւն ի մեղաց եւ վերստին հաշտութիւն ընդ Աստուծոյ. քանզի ոչ ոք յարարածոց կարող է միաւորել ընդ Աստուծոյ քանզի եւ վասն իւր պիտոյ է միջնորդ։ "Այսպիսի ոք պիտոյ է մեզ փրկիչ որ անդստին յիւրմէ բնութենէ իցէ մեր Տէր, զի մի փրկութեամբն միւսանգամ լինիցիմք գերի այնր որ ոչ Աստուած իցէ"։

Զարմանք իմն են թէ զկնի՞րդ բուռն առաջնորդ մոլորութեանն Արիոս կամէր զի ընկալցի զնա Աթանաս յեկեղեցի անդր Աղեքսանդրացւոց՝ օգնականութիւն ի կայսերէ գտեալ։ Այլ իբրեւ մերժեցաւ նա՝ Եւսեբիոս Նիկոմիդացի առաքէր թուղթ առ Աթանաս գմին լոյ եւ ստիպէր զնա սպառնալեօք զոր դնէր ի բերան թղթաբերին։ Արդ տեսեալ զհաստատութիւն մտաց նորա՝ մտանէին առ հասարակ Եւսեբեանքն ի դաշն ընդ Մելետիանոսաց Եգիպտոսի, որոց գլուխ էր յայնժամ Յովհաննէս Արկափ յետ մահուան Մելետեայ, որք ի բնէ հակառակ կացեալ ժողովոյն Նիկիայ՝ ի հանապազորդ հակառակութեան էին ընդ կաթուղիկեայն Աղեքսանդրացւոց, թէպէտ եւ հաւատովք միաբան էին ընդ ուղղափառացն, բայց առ սակաւ սակաւ հաղորդեցան նոցա մոլորութեան Արիանոսացն եւ այնպէս Մելետեանք կոչեցին յԵգիպտոս Արիանոսքն։ Այսպէս միաբանութեամբ հաստուցանէին

Digitized by Google

ղորդէին ի գործոյն։ Բայց Իսքիրաս յետ ապաքինութեան յարեցաւ ի Մելետիանոսն եւ նոքա եդին ի բերան նորա զզրպարտութիւնն։ Միւս եւս ամբաստանութիւն էր թէ զԱրսենիոս Մելետիանոս եպիսկոպոսն Հիփսեղայ սպանեալ է եւ զձեռն նորա արկեալ ի կիր ի գործ կախարդութեան, եւ շրջեցուցեալ ցուցանէին զմի ի բազկաց նորա։ Երկոքեան ամբաստանութիւնքն ածան առաջի կայսեր հանդերձ արկեղաւ յորում եդեալ կայր բազուկն զմռսեալ։ Եւ հրաման ի կայսերէ առ եղբայր իւր Դալմատիոս որ նստէր յԱնտիոք իբրեւ կեսար քննել զիրսն՝ գործակցութեամբ Եւսեբի Նիկոմիդացւոյ եւ Թէոգնեայ Նիկիոյ եպիսկոպոսի։ Բայց անդէն զայնու ժամանակաւ ի զղջումն դարձաւ Իսքիրաս եւ գրով հաստատելով ձեռնագրաւ բազում երիցանց՝ տայր վկայութիւն թէ բռնութեամբ եւ գանիւք ածաւ յայն զրպարտութիւն։ Իսկ Արսենիոս որ ի ժամանակի ինչ հեռաց փախուցեալ անհետ լեալ էր վասն յանցանաց ինչ իրիք եւ ապա արծաթով հաւանեցուցեալ ի Մելետիանոսաց թաքուցանել զանձն՝ գտաւ ի վանս ուրեք Մելետեանց ի Թեբայիս ի ձեռն սարկաւագի ուրուք զոր առաքեալ էր ի դոյն Աթանաս։ Եւ դեռ հարցափորձ ի քննչաց անտի եւ զամենայն գիրս հարցափորձին առեալ առաքէր Աթանաս առ կայսր, չհաւանեալ երեւել առաջի ատենին Դալմատիոսի եւ թշնամեացն իւրոց՝ Եւսեբի Նիկոմիդացւոյ եւ Թէոգնեայ որ ընդ նմա էին դատելոց։ Յայնժամ բարձ ի միջոյ Կոստանդիանոս զատեան քննութեանն եւ առաքէր թուղթ առ Աթանաս հրամայեալ՝ հրապարակաւ ընթեռնուլ, եւ կատարէր զբանս թղթոյն սպառնալով խռովարարացն այնուհետեւ քաղաքային օրինօք՝ իւր առաջի դատել եւ մատնել ի պատիժս։ Եւ Արսենիոս եւս դարձաւ ի կողմն Աթանասայ եւ խոստացաւ հնազանդել եկեղեցական կարգաց, այսպէս եւ Յովհաննէս Արկափ, բայց սա ոչ ընդերկար (333)։

## 63

Այլ յետոյ ուրեմն ի միւսանգամ զրգռել Մելետեանց զրպարտութեամբք ընդդէմ Աթանասի՝ հաւանեցոյց Եւսեբիոս Նիկոմիդացի զկայսր՝ զի դատեսցի Աթանաս ի սիւնհոդոսի ուրեք որ ի Տիւրոս լինիցի (335). եկին անդր Եւսեբիոս Կեսարացի եւ Նիկոմիդացին, Թէոգնիս, Մարիս, Պատրոփիղոս, Թէոդորոս Հերակղեայ, Մակեդոնիոս Մոփսուեստիայ, Գրիգոր Լաւոդիկեայ, Ուրսակիոս Սինգեդոնի եւ Վաղէս Մուրսայ հանդերձ այլովք եւս երեւելի Արիանոսօք։ Երկոքեան վերջինքն էին աշակերտք Արիոսի եւ եկին ի հեռաստան վայրաց եպիսկոպոսութեան իւրեանց՝ ի Միւսիայ եւ ի Պաննոնիայ։ Էր եւ կայսերական գոր-

Digitized by Google

ծակալ Դիոնիսիոս հիւպատոսական առաքեալ ի պահպանութիւն կարգաց։ Մակարիոս վասն յանցանաց բաժակին ածաւ ի Տիւրոս ի շղթայս։ Աթանաս չառ յանձն երեւել առաջի ժողովոյն յորում Մեղետիանոսքն դատախազ եւ Արիանոսքն դատաւոր էին լինելոց, բայց մերժեալ զբանս նորա կայսեր՝ ստիպէր գնա երթալ։

Նախ ածաւ ի մէջ ամբաստանութիւն զԱթանասէ, որպէս երբեմն զԵւստաթեայ վասն անառակ վարուց. այլ հանճարեղ հնարիւք եղեւ այն ընդունայն. զի իբրեւ ածաւ ի ներքս կինն լկտի, լուռ կաց Աթանաս եւ երէցն նորա Տիմոթէոս՝ յառաջեաց եհարց իսկ եւ իսկ ցկինն թէ խօսեցա՞յ ես ընդ քեզ կամ եղէ երբեք ի տա՞ն քում. Այո, ասէ, կինն, դու, դու Աթանաս, դու եղեր ի տան իմում։ Զամօթի հարան Արիանոսքն, եւ հանեալ կինն գաղտախօս արտաքս. բայց զուր բողոքէր Աթանաս զառաջնորդս զըպարտութեանն զատանել եւ դատել։ Ապա ի լինել ամբաստանութեան վասն Արսենեայ՝ անդէն տայր բերել Աթանաս ի ժողով անդր զԱրսենիոս զոր յառաջագոյն թաքուցեալ ունէր, ողջ երկոքումբք ձեռամբք զորս մի ըստ միոջէ եցոյց ասելով՝ թէ երկուս ձեռս եւեթ ետ Աստուած մարդոյն եւ ոչ աւելի։ Յովհաննէս Արկափ որ վաղ դարձեալ էր յառաջին հերձուածն՝ առ ամօթոյն տագնապի եւ փախեաւ ի բաց։ Նոյնպէս եւ վասն բանի ընտրութեան Աթանասայ հակառակ կանոնաց ժողովրդեան եւ մեծի մասին եպիսկոպոսացն Եգիպտացւոց՝ եառուն պատասխանի անդէն եպիսկոպոսունքն զոր ածեալ էր Աթանաս բազմամբոխ ընդ իւր։ Իսկ վասն խնդրոյն Իսքիրայ դիւրին էր Արիանոսացն պղտորել զընթացս քննութեանն. առաքեցան գործակալք ի Մարէոտիս՝ համանկ յարանց հակառակորդացն Աթանասի ոչինչ միտ եդեալ բողոքոյ եպիսկոպոսացն Եգիպտացւոց, եւ ի ծածուկ առաքեցաւ հրաման առ Փիղագրիոս այր ուրացող վերակացու աշխարհին Եգիպտացւոց՝ զամենայն ըստ մտաց գործակալացն յարդարել։ Զգտեն գործակալքն հետս ինչ վկայութեան ի տեղիսն. հազիւ հազ բռնութեամբն Փիղագրեայ կարացին լսել ինչ վկայութիւն սուտ եւ չմիաբան ի բերանոյ երախայից, նա եւ հեթանոսաց իսկ եւ Հրէից, մինչեւ հարկ համարել առնել գործակալացն թէ հեռացուցեալ բարձեալ է ի միջոյ Աթանաս զամենեսեան որ բաւական էին տալ վկայութիւն հաստատուն վասն իւրացն։ Այլ իբրեւ դարձան պատգամաւորքն ի Տիւրոս՝ ոչ գտին անդէն զԱթանաս։ Քանզի սա իբրեւ ետես՝ թէ եւ զժողովուրդն զրգռեն ընդդէմ նորա, եմուտ գաղտ ի նաւ անկանել դէպ ուղիղ ի Կոստանդնուպոլիս։ Զփախուստ նորա խոստովանութիւն յանցաւորութեան համարեցաւ սիւնհոդոսն, եւ այնպէս ընկեցաւ վճռով Աթանաս եւ արգելաւ նմա դառնալ յԱղեքսանդրիա. Յով-

հանդերձ մետրապօլիտաւ Մելետիանոսաց եւ ամենայն կուսակիցք նորա արտաքսեցան եւ եղեն ընկալեալ յեկեղեցական հաղորդութիւն: Ալեքսիոս որ դարձեալ էր միւսանգամ յառաջին գնացսն, կարգեցաւ յեպիսկոպոսութիւն գեղջին իւրոյ, եւ այս տուաւ հրաման եւս՝ զի շինեսցի եկեղեցի, քանզի չունէր իսկ: Սփռեցաւ թուղթ սինհոդոսական առ ամենայն եպիսկոպոսունս հաստատել զհաղորդութիւնսն ընդ Աթանասի եւ չառաքել թուղթս եւ ոչ ընդունել: Սակայն ոչ միայն եպիսկոպոսունք Եգիպտոսի, այլ յայլոց եւս եպիսկոպոսաց բազումք չհաւանեցան ընդ անցսն:

Բայց էր եւ այլ իմն գործ յանձն սինհոդոսին. ժամ էր նոցա երթալ ի նաւակատիս եկեղեցւոյն Յարութեան շինելոյ ի Կոստանդիանոսէ յԵրուսաղէմ: Յետ անամօթութեանցն այնոցիկ մատեան Եւսեբեանք ի գերեզմանն Տեառն: Իբրեւ կատարեցաւ օրհնութիւն նաւակատեացն (Սեպտ. 14) անդ ընկալան զԱրիոս ի հաղորդութիւն եկեղեցւոյ, եւ առաքեցաւ թուղթ սինհոդոսական առ եկեղեցին Աղեքսանդրացւոց՝ թէ արդար դաւանէ Արիոս եւ ուղիղ դաւանութեամբ, եւ չամաչէին իսկ ասել թէ յորդորեալք ի բանից կայսեր (որ տակաւին երախայն էր) ընկալան զԱրիոս, եւ զուղղութիւն դաւանութեան նորա յընդունելութենէ կայսերն ցուցանէին:

Սակայն անդէն հասանէր ի սինհոդոս անդր հրաման կայսերն որ ստգտանելով իմն զնոսա վասն խառնակութեան գործոց նոցա ի Տիւրոս՝ կոչէր զամենեսին անյապաղ ի Կոստանդնուպօլիս: Վասն զի վաղ իսկ նաւարկեալ եհաս անդր Աթանաս, եւ ընդ առաջ կայսերն ի ճանապարհի յորժամ գայրն ուստեք ի քաղաք անդր. զայրացեալ ընդ չտեսս իմն ասնէր զնա կայսրն, մինչեւ սա իբաւունս համարեցաւ զինչ անել յորժամ լսաւ թէ կամի զի իւր իսկ առաջի դատաստանն կատարեսցի: Բայց Եւսեբեանք չհամարեցան պատշաճ ամենայն եպիսկոպոսաց երթալ առ կայսր, այլ միայն Եւսեբիոս Կեսարացի եւ Նիկոմեդացին, Թէոգնիս, Պատրոփիլոս, Ուրսակիոս եւ Վաղէս եկին ի ճանապարհ. փոխանակ բաժակին եւ սպանութեանն՝ այլ իմն էր այժմ ամբաստանութիւնն. Աթանաս, ասեն, սպառնացեալ է զմթերս ցորենոյն որ երթայ յԱղեքսանդրիայ ի Կոստանդնուպօլիս արգելուլ: Ի ցասումն եղեւ թագաւորն, որոյ մեծ էր սիրելութիւնն ընդ քաղաք իւր նորաշէն՝ որ միայն յԵգիպտոսէ կերակրէր: Զուր ընդդէմ դնէր Աթանաս զիւր անկարութիւն ի դոյն եւ զաղքատութիւնն. Եւսեբիոս Նիկոմեդացի՝ որոյ կանգնումն եւ անկումն ի յաջողութենէ եւ ի չաջողութենէ այնր զրպարտութեան կայր կախեալ, զամենայն ճիգն արկ ի կիր, պնդէր, քննէր երդմամբ՝ թէ կարող եւ հզօր է Աթանաս: Բերան ի մէջ եւ առաջին ամբաստանութիւնքն զբաժակէն եւ զԱրսենիոսէ: Կոստանդիանոս թմբրեալ մանաւանդ



Digitized by Google

*քան հաւանեալ՝ աքսորեաց զԱթանաս ի Տրեւիրս Գաղղիացւոց (336, փետր.)։ Սիրով ընկալաւ զնա անդ որդի կայսերն Կոստանդիանոս որ ի վերայ լեգէոնացն կայր, եւ եգիտ Աթանաս մխիթարիչ իւր արժանաւոր՝ զեպիսկոպոսակիցն ի քաղաքի անդ զսուրբն Մաքսիմոս։*

*Փութացուցանէին այնուհետեւ Եւսեբեանքն զԹագաւորն՝ զի հրաման տացէ կարգելոյ զայլ ոք փոխանակ Աթանասի յեպիսկոպոսութիւն Աղեքսանդրիայ, բայց չառ նա յանձն. նա աւանիկ ապառնալեօք իսկ մերժեաց զնոսա յորժամ առիպէինն։ Այս իսկ բաւական է ցուցանել թէ ճշմարիտ էր զոր գրեացն յետոյ Կոստանդիանոս Բ. նորին որդի՝ թէ յայն սակս աքսորեաց հայր նորա զԱթանաս զի ի մոլեգին հալածանաց Արիանոսացն ապրեցուսցէ. Նա աւանիկ եւ ինքն Աթանաս զնոյն նոյնպէս համարի[1]։ Ապաքէն քաղաքային իմն չափով կշռէր Թագաւորն՝ զի կարծէր հաստատել ցանկութեանն, այս ինքն միաբանութեան եկեղեցւոյ՝ եթէ մի ոք բազմաց շնորհեսցի, քան բազումքն՝ միոյն։*

*Վաղվաղակի յետ Աթանասի աքսորեցաւ եւ Մարկեղոս Անկիւրացի՝ դատապարտեալ ի սիւնհոդոսի զոր գումարեցին Եւսեբեանք անդէն ի տիեզերական քաղաքին հակառակ կամաց Աղեքսանդրի եպիսկոպոսի տեղւոյն, եւ եդաւ փոխանակ Մարկեղայ՝ յեպիսկոպոսութիւն Անկիւրայ Բասիղիոս արիանոս սատանիկ։ Վասնզի խիզախնէ իսկ զօրութեամբ զդէմ ունէր Արիանոսացն Մարկեղոս, չէր առեալ յանձն արկանել ձեռնագիր սահմանելոցն ի Տիւրոս, եւ զայրացեալ չհամարեցաւ արժանի երթալ ընդ նոսա յԵրուսաղէմ, եւ գրեալ էր ընդդէմ Աստերիոսի ուրումն արիանոսի առն սոփեստի. բայց վարդապետութիւն գրոցն ամենեւին սաբեղական համարեցաւ, այս ինքն հակառակ Արիանոսաց. Եւսեբիոս Կեսարացի եդ գիրս 5 ընդդէմ նորա[2]։ Սակայն եւ յետ այնչափ խափանչաց ի մէջ բառնալոյ՝ չեղեւ հնար Արիոսի մտանել ի հաղորդութիւն եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց, զի էր անդ տակաւին ոգի Աթանասի. յուղեցաւ քաղաքն ամենայն, հարկ համարեցաւ կայսրն կոչել զԱրիոս յետս։ Այնուհետեւ կամէին անդէն ի Կոստանդինուպօլիս մուծանել շքով մեծաւ եւ ամբոխիւ յեկեղեցի, որպէս մուծինն յԵրուսաղէմ։ Աղեքսանդրոս եպիսկոպոս քաղաքին ընդդէմ դառնայր ամենայն զօրութեամբ իւրով, այլ ընդ վայր։ Վասնզի տակաւ սովորելով իմն մոռացաւ կայսր զառաջին սկզբունսն զորս ի Դոնատեանց գժտութեանն բազում անգամ էր ասացեալ, եւ թախանձանք Եւսեբեանցն տակաւ առին ածին զնա աստիճան յաստիճանէ լինել ձեռներէց եւ յընտրութիւն ուղղութեան վարդապետութեանն. կոչեաց նա*

1 Պատմ. Արիան. առ Վանակ. 50։ Վասն եկեղեցական Աստուածաբանութեան՝

2 Ընդդէմ Մարկեղեայ՝ գիրք երկու, եւ գիրք երեք.

Digitized by Google

առաջի զԱրիոս, հարց թէ ընդունիցի՞ զկանոն հաւատոյն Նիկիոյ. այո՛ ասէր Արիոս եւ տայր գիր դաւանութեան՝ յորում ընդ մէջ միայութեանցն շեղջակուռելոց ի գրոց սրբոց բանայր իւր դրանս փախստի. եւ երդնուլ նմա կայսրն՝ յիշեցուցանելով թէ ահագին վրէժխնդիր է Աստուած ստերդմնութեան: Այնուհետեւ արժան համարէր կայսր ընդունել զԱրիոս ի հաղորդութիւն: Ընդարձ հրաման կայսերն, սպառնալիք Եւսեբեայ եւ բաժանումն ժողովրդեանն խուճապեցուցանէին զծերունին: Յայնժամ ապա փոխանակ մարդկեղէն պատճառացն յաղօթս ապաստան լինէր ըստ թելադրութեան եւ գործակցութեան Ս. Յակոբայ Մծբընացւոց եպիսկոպոսի՝ որ յայնժամ ի քաղաքին դիպեցաւ:

Ի սահմանեալ աւուրն (ի միաշաբաթւոջ) ընդ փողոցս քաղաքին հրապարակաւ առեալ բերէին զԱրիոս. անդէն յանկարծօրէն զունատէր առաջի բազմութեանն, ստիպէին զնա ախտոյքն, եւ լինէր ի կողմն. իբրեւ յամէր ի գալ՝ խնդրեալ գտաւ անշունչ՝ թափեալ ընդերացն արիւնալից:

Ահն եւ սոսկումն արար վախճան գժտութեան Եւսեբեանցն ցորչափ կենդանի էր Կոստանդիանոս. քանզի եւ ինքն կայսր ևս ի մէտ թէ ձեռն Աստուծոյ էր այն (336):

## 64

Ի վախճան կոյս 336 ամին կատարէր Կոստանդիանոս զերեսնամեակն իւր մեծաւ շքեղութեամբ ի նոր մայրաքաղաքին. ոչ ոք ի կայսերաց՝ բաց յՕգոստեայ զայսչափ ամս էր կացեալ յիշխանութեան: Փառաւորեաց նա զայն օր տալով իշխանութիւն առաջնորդութեան եղբարցն իւրոց եւ որդւոց եւ եղբօրորդւոց: Յերից կրտսերագոյն եղբարց նորա Դալմատիոս առեալ էր զպատուական անուն Համարակալութեան (կամ Քննչութեան) այլ ոչ յերկարեաց ի կեանս, Յուլիոս Կոստանդիոս (հայր կայսերն Յուլիանոսի) ընկալաւ ի նմին ամի զՊատրիկն անուն, Հաննիբաղիանոս (որպէս եւ Յուլիոսն Կոստանդիոս) զԱզնուականագոյնն[1] անուն եւ հրաման ագանելոյ ծիրանիս ոսկենկարս: Իսկ փոխանակ Դալմատեայ վախճանելոյ՝ զորդիս նորա՝ զԴալմատիոս կրսեր զոր կեսարն անուանեաց եւ զՀաննիբաղիանոս կացոյց յառաջնորդութիւն նահանգաց. նմա տուեալ զԹրակիա, զՄակեդոնիա եւ զԱքայիա. եւ սմա զՓոքր Հայս հանդերձ Պոնտոսիւ եւ Կապադովկիաւ, անուանելով զնա Թագաւոր: Երկոցունց սոցա ետ եւ իրաւունս պայազատութեան: Սակայն բուն երեցունց որդւոցն բաժանեաց զտէրութիւնն, զորս վաղ ի մանկութեանն անուանեալ էր կեսարս: Կոստանդիանոս (այս ինքն՝ որդին) ևս զԳաղղիա, զՍպա-

1 Nobilissimus.



Digitized by Google

թանաս կոչել յետս (ըստ Թէոդորեայ)։ Ապա վախճանեցաւ յաւուր Պենտեկոստէից՝ զմիջաւուրբ, (22 Մայ. 337) 64 ամաց։ Թաղեցաւ ի կայսերական շիրմին ի գաւիթ անդ եկեղեցւոյ առաքելոցն, ուր կայ, ասէ Ոսկեբերան, կայսրն իբրեւ դռնապան ձկնորսացն այնոցիկ՝ յորոց անուն շինեաց զեկեղեցին։

Այս են կեանք առաջնոյ քրիստոնեայ կայսեր։ Զօսիմոս հեթանոս նախանձայոյզ՝ յոյժ պարսաւէ զնա, Եւսեբիոս Կեսարացի՝ զոր մարթ է եպիսկոպոս արքունական անուանել, յոյժ գովէ զնա. գործք նորա ցուցանեն զչափ բանից երկոցունց։ Զչարաչար իմն սովորութեան ժամանակին զհետ չոգաւ՝ յապաղեալ ցժամ մահուն զմկրտութիւնն՝ զի ընդ մեղացն եւ զժամանակեան պատիժսն ջնջեսցէ, եւ ոչ ի Յորդանան ժամանեաց մկրտել, որպէս ցանկացեալն էր։ Չէ ինչ այն՝ զի յԵւսեբեայ ընկալաւ մկրտութիւն, զի սա դեռ եւս ի հաղորդութեան եկեղեցւոյ էր, զնիկիական հաւատոն կեղծաւորէր, զայն զոր ցվերջին շունչն պահեաց Կոստանդիանոս՝ ոչ միայն ըստ Ամբրոսիոսի, Աւգոստինոսի եւ Ոսկեբերանի, այլ եւ ըստ Աթանասի իսկ, որք եւ յիշեն զնա առէպ իբրեւ զայր որոյ յիշատակ մեծարոյ իցէ յեկեղեցւոջ։ Տօնէ զնա իբրեւ սուրբ՝ եկեղեցին արեւելեան, եւ յիրաւի իսկ. զի ո՞ ոք համարձակիցի ասել թէ չեղեւ արժանի ողորմութեանց Աստուծոյ՝ այն որ ի հասակի արութեանն, ի փառաւորութեան տէրութեան իւրոյ եւ պարծանացն եւ յաղթութեան՝ զկեանս, զտէրութիւն, զպարծանսն եւ զպտուղս յաղթութեանն՝ արկ ընդ վտանգաւ, եւ առաջի ծերակուտին, ժողովրդեանն եւ իմաստնոց զայն դաւանեցաւ որ ասացն՝ թէ "Որ խոստովանեսցի զիս առաջի մարդկան, խոստովանեցայց եւ ես զնմանէ առաջի Հօր իմոյ"։

Կոստանդիոս վաղվաղակի յետ հօրն մահու յառաջ իսկ քան զայլ եղբարսն եկն ի Նիկոմեդիա եւ ետ թաղել զհայրն մեծաւ փառաւորութեամբ։ Զօրն (որպէս եւ ծերակոյտն) որ յայտ արար թէ միայն որդիքն Կոստանդիանոսի մտանիցեն ի պայազատութիւն, արարեալ ամբոխ՝ սպանին զԴաղմատիոս կեսար, զԱննիբաղիանոս թագաւոր, եւ զՅուլիոս Կոստանդիոս զհօրեղբայր եւ զաներ Կոստանդեայ, հանդերձ երիցագոյն որդւովն. խնայեցաւ ի կրսերագոյն որդիս Յուլիայ Կոստանդեայ՝ ի Գաղղոս 12ամենի որ յօրհասական հիւանդութիւն անկեալ կայր եւ ի Յուլիանոս 6ամենի։ Ընդ վեցեսին եղբօրորդիս Կոստանդիանու (որոց անուանք չեն ի միջի) կոտորեցան եւ Ոպտանդոս (որպէս թուի) այր Անաստասիայ քեռն Կոստանդիանոսի եւ Աբղաբիոս անձնապահապետ։ Այս սպանութիւնք, ըստ Եւտրոպեայ եւ Սոկրատայ՝ առաւել հաւանելով Կոստանդեայ եղեն քան եթէ հրամայելով, այլ ըստ Զոսիմեայ՝ որպէս եւ ըստ Աթանասի եւ Յերոնիմեայ եւ Յուլիանու՝ նորա հրամանաւ ամենայն կատարեցաւ։

Digitized by Google

## ԻԱ.

Կոստանդիանոս Բ., Կոստաս, Կոստանդիոս, Յուլիանոս Ուրացեալ (337—363) — Յովիանոս, Վաղէս, Աթանաս, Հիլարիոս — Աղեքսանդրիա, ժողով Սարդիկեայ (347), ժողովք Մեդիոլանոյ (355) եւ Արիմինեայ (359):

## 65

ԵՂԲԱՐՔ երեք նմանագոյնք անուամբքն եւ թերութեամբք, բաժանեցան զտէրութիւնն ի Սիրմիոն: Կոստանդիանոս Բ. (337—340) առ զՎերակացութիւնն Գաղիայ, Կոստանդիոս Բ. (357—361) զՎերակացութիւնն Արեւելից, եւ Կոստաս (337—350) զՎերակացութիւնն Իտալիայ եւ Ափրիկեայ (338): Բայց սակայն չէր ինչ ընդ այն հաճեալ Կոստանդիանու Բ. զի զբաժինն Աննիբաղիանոսի (զՓոքր Հայս, զՊոնտոս եւ զԳամիրս) հանդերձ Թրակիաւ առ Կոստանդիոս, եւ զբաժինն Դաղմատեայ (զԻլիւրիկէ, զՄակեդոնիա եւ զԱքայիա) առ Կոստաս, եւ նմա չառաւ ինչ մասն: Կոստանդիանոս չհամարեալ բաւական զիւր բաժինն՝ կամէր եւ զԻտալիա եւ զԱփրիկէ: Յորժամ անց նա ընդ Ալպս՝ առաքեաց Կոստաս զօրս ի վերայ նորա ի Գաղիայ՝ մինչ դեռ ի զեղծի էր Կոստանդիանոս. դարան գործեալ նմա՝ հրապուրեցին տարան փախստեան կերպարանօք, ապա ի վերայ անկեալ՝ զզօրսն կոտորեցին, եւ ինքն Կոստանդիանոս անկեալ ի վիրաւոր երիվարէն՝ հարաւ բազում հարուածովք մօտ յԱկուիղէա եւ դիակն ընկեցաւ յԱլսա գետ, այլ ապա հանաւ անտի՝ թաղել ի Կոստանդինուպօլիս: Տիրէր Կոստաս ամենայն արեւմտեան կողմանց եւ Կոստանդիոս առ ժամն բաւական համարէր զարեւելսն (340): Ցուցին զմիաբանութիւնն եղբարքն երկոքին՝ տալով ի նմին ամի օրէնս հակառակ պաշտաման դիցն մեծաւ պատժով, բայց չգոյր ինչ հալածումն անձանց հեթանոսացն: Նմին հակառակ եւ անձանց եւս ուղղափառացն չառնէր խնայ Կոստանդոս:

Յառաջագոյն իսկ կայսերքն երեքին, ըստ վերջին կամաց հօրն իւրեանց՝ կոչեցին զեպիսկոպոսունս յետս յիւրաքանչիւր աթոռ, եւ արդեամբք իսկ դարձան Ասկղեպաս Գազայ, Մարկեղղոս Անկիրայ եւ Պաւղոս Կոստանդինուպօլսեայ (յաջորդ Աղեքսանդրի † 336), նոյնպէս եւ Աթանաս առաքեցաւ յաթոռն յետ 2 ամաց եւ 4 ամսոց աքսորանացն հանդերձ հրովարտակաւ Կրսերն Կոստանդիանոսի առ եկեղեցին Աղեքսանդրացւոց (17 Յունի, 338), յորում ասէ կայսր թէ Աթանաս «մարգարէ օրինացն Աստուծոյ» առաքեցաւ ի հօրէն իւրմէ ի Գաղիա կալ ընդ պաշտպանութեամբ նորա՝ զի ապրեսցի յարիւնռուշտ թշնամեաց իւրոց, եւ

այժմ կատարէ ինքն զկամս մեծանուն հօրն՝ զոր նա մահուամբն արգելեալ կատարել: Որպէս Թուի՝ եկեալ Աթանասայ ընդ կայսերն ի Միրմիոն, անտի անցեալ ընդ Կոստանդինուպոլիս եւ ընդ Ասորիս՝ հասանէր յԵգիպտոս: Մեծ էր ցնծութիւն եկեղեցւոյն Աղեքսանդրիայ, որպէս եւ այլոցն եկեղեցեաց, այլ ոչ ընդ երկար:

Մակեդոս չեղեւ ձեռնհաս վարել խաղաղութեամբ զպաշտօնն, զի բռնացեալ էր անդէն Եւսեբիոս եպիսկոպոս արիանոս հանդերձ կուսակցօքն, եւ հարկեցաւ փախչել ի Հռոմ: Եւսեբիոս Նիկոմեդացի արար ժողով ի Կոստանդինուպօլիս՝ յորում Պաւղոս մերժեցաւ յաթոռոյ եւ ընտրեցաւ ինքն ի նոյն աթոռ (339): Վաղ սկիզբն արարին Արիանոսք մատուցանել ամբաստանութիւն զԱթանասէ առ երեսին ինքնակալն (338)՝ թէ յարուցանէ ապստամբութիւն, գործէ սպանութիւն, զցորեանն սահմանեալ հաւատաւոր կուսանաց՝ խորէ, եւ անհրաման դարձեալ նստեալ է յաթոռ իւր հակառակ մեծի ժողովոյն Տիւրոսի: Կոստանդիանոս Բ. եւ Կոստաս մերժեցին վաղվաղակի զզրպարտիչսն, այլ ոչ Կոստանդիոս՝ որ վաղ իսկ շահեալ իմն էր ի նոցանէ, մանաւանդ ի ձեռն Եւսեբեայ ներքինւոյ՝ որ եւ զկին կայսերն ած ի կողմն Արիանոսացն:

Դատապարտեցին Արիանոսք զԱթանաս ի սինհոդոսի ուրեք յԱնտիոք (339) եւ կարգեցին յեպիսկոպոսութիւն Աղեքսանդրիայ զԳրիգոր ոմն երէց Մարէոտեայ, որ ընդ Արիոսի էր մերժեալ ի Ս. Աղեքսանդրէ եպիսկոպոսէ Աղեքսանդրացւոց: Բայց եպիսկոպոսունքն Եգիպտացւոց (թուով իբրեւ 100) ոչ միայն զնա չընկալան՝ այլ եւ սինհոդոսական թղթով իմացուցին ամենայն եպիսկոպոսացն արեւելից մի ըստ միոջէ զստութիւն ամբաստանութեան որ զմետրապօլտէն իւրեանց էր: Նոյնպէս եւ եպիսկոպոսունք աւելի քան զ60 ի նահանգէն Ասիայ, ի Փռիւգիայ եւ յԻսաւրիայ գրեցին հրապարակաւ ի պաշտպանութիւն Աթանասի: Սակայն Արիանոսք վաղ արձակեալ էին հրեշտակութեամբ զՄակարիոս երէց հանդերձ Մարտիրիոսիւ եւ Հեսիւքիոսիւ սարկաւագօք առ քահանայապետն Հռոմայ Յուղիոս՝ զի ընկալցի զԳրիգոր եւ հաստատեսցէ զմերժումն Աթանասայ: Բայց յառաջ քան զնոսա հասեալ էին հրեշտակքն Աթանասայ՝ զորս առաքեալ էր նորա ցուցանել զիրաւունս իւր առաջի առաքելական աթոռոյն: Յամօթ եղեն Եւսեբեանքն, Մակարիոս հիւանդագին գիշերախառն փախչէր ի Հռոմայ, եւ սարկաւագքն երկոքին ի նեղ անկեալ խնդրեցին՝ զի սահմանեսցի սինհոդոս յորում առաջի Յուղեայ քահանայապետի վարեսցեն դատ կողմանքն երկոքին, եւ յայնժամ ցուցցեն զոր այժմն չկարեն ցուցանել (340):

Այլ չէր մարթ Եւսեբեանց յուսալ ինչ յաջողութիւն ի սինհոդոսէ որ ի Հռոմ լինիցի, նմին իրի այնպէս իմն յորդորե-

Digitized by Google

ցին զի բազմութիւն եպիսկոպոսացն որ ժողովեցան (341) վասն նաւակատեաց օրհնութեան եկեղեցւոյ իւրք շինելոյ ի Կոստանդիանոսէ յԱնտիոք եւ վասն զի հնգամեակ էր ինքնակալութեանն Կոստանդեայ, լինէր միաբանական եւ ի ժողով ինչ ընդհանրական։ Բայց ի չորից հանգամանաց անտի հաւատոյ (զորոց յետոյ)՝ յօրինեցան եւ բազմաւոր կանոնք գեղեցիկք, յորս խառնեցին Եւսեբեանք եւ կանոնս ինչ խորամանկութեամբ[1], զի այնպէս յետոյ նզովիւքն մերժեսցեն զԱթանաս, եւ մերժեցին իսկ միւսանգամ յաթոռոյ, բայց զՊիստոս եւս չկամեցան, վասն զի չէր երեւելի ոք։ Եւսեբիոս Եմեսացի ուսեալ ի դպրոցի Եւսեբեայ Կեսարացւոյ՝ խորագիտութեամբ չառ յանձն զեպիսկոպոսութիւն Աղեքսանդրացւոց, մինչեւ Գրիգոր ոմն կապադովկեցի ժպրհէր առնուլ յանձն, զոր եւ ձեռնադրեցին իսկ եպիսկոպոս անդէն յԱնտիոք։

Զօրօք եւ օգնականութեամբ Արշակայ ներքինւոյ սենեկապանի եւ Բաղակաւ դքսիւ հասանէր եպիսկոպոսն նոր յԱղեքսանդրիա մեծ ի տօն զատկին, յորժամ լի էին եկեղեցիք ի բազմութենէ ժողովրդեանն, հեթանոսական ամբոխս բռնութեամբ մտանէր յեկեղեցի Ս. Կուիրինեայ, կուսանք մերկացեալ գանակոծ եղեն, ժուժկալք չարչարեցան, զմարմինն տէրունական առին արկին հեթանոսք ընդ գետին եւ ի վերայ սեղանոյն թռչունք եւ ոստք զալարք դիցն նուիրեցան հանդերձ երգօք, գիրք սուրբք այրեցան եւ աւազան մկրտութեանն աղտեղեալ պղծեցաւ։ Իբրեւ թող նոցա Գրիգոր յաւար զեկեղեցին՝ արբին եւ արբեցան ի գինւոյն, զձէթն, զկանթեղսն եւ զճրագունսն առին տարան լուցանել առաջի դիցն պատկերաց, եւ զդրունսն եւ զվանդակապատս քակեցին տարան ի բաց։ Աթանաս որ յայլում եկեղեցւոջ ի պաշտաման էր՝ ել մեկնեցաւ ի բաց զի մի նոյն անցք եւ անդէն անցանիցեն։ Հրաման ելանէր ի Փիլագրեայ հրամանատարէ զօրացն առ ժողովուրդն եւ առ եպիսկոպոսունսն հաղորդել ընդ նոր մետրապօլտին եւ ընդ Արիանոսաց. բարձան յուղղափառաց եկեղեցիք, պատիժք կացին ի վերայ որոց ի տունսն առանձինն կատարէին պաշտամունս կամ մատուցանէին աղօթս։ Ինքն Գրիգոր Փիլագրեաւ եւ Բաղակաւ հանդերձ ելանէր յայցելութիւն վիճակացն, եպիսկոպոսունքն դիմադարձք ընդունէին չարաչար տանջանս, յորոց եւ ոմանք ի վէրացն վախճանեցան, նաւաստիք՝ որ զթուղթս հաղորդութեանն Գրիգորի առ այլ եպիսկոպոսունս չառին յանձն տանել, լլկեցան եւ եղեն բանտարգել (342)։

Իսկ Աթանաս՝ յետ յանձն առնելոյ թղթով՝ եպիսկոպոսաց ամենայն աշխարհաց՝ փութալ դարման ինչ վասն իւրոյ վիճակին տանել, ինքն ել ի նաւ երկոքումբք երեւելի վանականօք Իսիդորաւ եւ Ամմոնաւ երթեալ ի Հռոմ՝ ուր կոչեցեալ էր ի քահա-

1 Կանոն 4.

նպաստաւորէին Յուլիոսէ վասն ժողովոյն զոր Եւսեբեանքն խնդրեցին։ Ի դէպ ժամու այն դիպեցաւ, զի այն ինչ հանեալ էր Եւսեբեանց հրաման ի կայսերէ առ Փիլագրիոս՝ ունել գլխատել զԱթանաս հանդերձ երիցամբք ոմամբք։ Վաղ իսկ քան զնա հասեալ էին անդր ոչ միայն Մարկեղոս Անկիւրայ այլ եւ Ասկղեպաս Գազայ, Լուկիոս Ադրիանուպօլեայ, Պաւղոս Կոստանդինուպօլսեայ եւ այլ եւս բազում եպիսկոպոսունք ի Թրակիայ, յԱսորւոց, ի Փիւնիկեայ եւ ի Պաղեստինեայ, "զի ցուցցեն Յուլիոսի եպիսկոպոսի զհակառակութիւն իւրացն քուրեանց, որ եւ ըստ առաւել իշխանութեան եկեղեցւոյն Հռոմայ համարձակախօս թղթովք պաշտպանէր նոցա"[1]։ "Քանզի վասն պատուոյ իշխանութեան աթոռոյն իւրոյ՝ նմա անկ էր հոգ վասն ամենեցուն"[2]։

Սակայն Եւսեբեանք չառնուին յանձն գալ ի Հռոմ, քանզի ի Հռոմ ի սահմանս տէրութեանն Կոստասայ՝ ոչ դուքս ոք եւ ոչ կոմս զօրականօք լռութիւն կարէր պատուիրել կամ բռնի տալ ընդունել ինչ վճիռ, նմին իրի եւ զհրեշտակութիւնն Յուլիոսի ի ձեռն երկուց երիցանց Եղպիդեայ եւ Փիլոքսենեայ յետ բազում ժամանակս յԱնտիոք խափանելոյ, ապա ուրեմն արձակէին զնոսա առ քահանայապետն ծռամաբան թղթով՝ յորում զկարճութիւն պայմանելոյ ժամանակին եւ զպարսկային պատերազմն ցուցանեն իբրեւ պատճառս չգալոյն. Թէպէտ եւ կոչեն զեկեղեցին Հռոմայ "առաքելոց դպրոց"[3] եւ իսկզբանէ "մայրաքաղաք ուղղափառութեան", սակայն ստգտանեն իմն զքահանայապետն զի առնէ հաղորդութիւն ընդ Աթանասայ եւ ընդ այլոց զորս ինքեանք ժողովով մերժեցին։

Ապա ժողովէր քահանայապետն եպիսկոպոսօքն հասելովք առ նա յայլեւայլոց եւ յարեւմտից սինհոդոս ի Հռոմ (343) յորում ճշդիւ քննութիւնք եղեն ի վերայ եպիսկոպոսացն աքսորելոց, խնդրեցաւ դաւանութիւն նոցա եւ գտան անմեղ եւ ուղիղ հաւատովք. իբրեւ պատասխանի թղթոյն Եւսեբեանց՝ զդատաստան ժողովոյն գրեալ առաքէր առ նոսա քահանայապետն ի սքանչելի թղթին՝ որ է օրինակ հովուական համարձակութեան ի կշտամբութիւն, հանդերձ առաքելական հեզութեամբ եւ իմաստութեամբ։ Բաց ի յանդիմանելոյ վասն նենգութեանց եւ չարեացն գործելոց յԱղեքսանդրիա եւ արդարացուցանելոյ զԱթանաս՝ կշտամբէ զնոսա վասն խառնակելոյ նոցա զեկեղեցական իշխանութիւն ընդ աշխարհական իշխանութեան։ "Եղբարք իմ սիրելիք, դատաստանք եկեղեցւոյ ոչ ըստ աւետարանին հատանին այլ աքսորանօք եւ մահուամբ։ . . . Ընդէր ոչ ցուցանէք, ասէ, մեզ գրով զամենայն, մանաւանդ զերս եկեղեցւոյն Աղեքսանդրիայ։ Չգիտէք զի

1 Սոկրատ. Եկեղ. պատմ. Բ. 15։
2 Սոզոմէն. Եկեղ. պատմ. Գ. 8։
3 Ἀποστόλων φροντιστήριον.

Digitized by Google

ամբաստանեալք Հասեալ կային զնոցանէ. եպիսկոպոսունքն ուղղա-փառք որ դարձեալ յաքսորանաց էին՝ զվէրսն եւ զխարազանսն յան-դիման ցուցանէին, եւ որոց տակաւին յաքսորսն էին՝ ազգականք եւ ծանօթք առաքեալ էին ամբաստանութիւն ի ժողով անդր. որոց կային անդէն վկայ իւրաքանչիւր եպիսկոպոսաց շղթայքն եւ օղիքն. Նոյնպէս եւ Հրեշտակք Հասեալ էին ի քաղաքն Եկեղե-ցեաց յայտ առնել զզինուցն բռնութիւնս, զխուժանին յառ-նել, զսպառնալիս դատաւորացն եւ զյօրինել սուտ թղթոց:

Այն սակս գային Եւսեբեանք ի ժողով անդր յԷրակլի գոր-ծակալօք արքունի, Մուսոնիանոսիւ եւ Հեսիքիոսիւ: Այնժամ Հայրք սուրբ Սինհոդոսին յայտ արարին թէ չէն ինչ կարօտ քննու-թեան նիկիական հաւատք, եւ կամէին գալ ի քննութիւն եպիս-կոպոսացն մերժելոց. սակայն չառին յանձն Եւսեբեանք միւսան-գամ քննել զմիանգամ մերժեալսն վճռօք սինհոդոսաց, զոր Ջանայր ժողովն, մանաւանդ ծերունին Ոսիոս որ Հայրն անուանէր եպիսկոպոսաց, ածել զնոսա ի հաւան՝ զի արկցեն առաջի ժողո-վոյն զամբաստանութիւնսն, ասելով՝ եթէ յանցաւոր գտցի Աթանաս՝ մերժեսցի ի Հաղորդութենէ, եւ եթէ արդար եւս գտցի՝ յայնժամ առից տարայց զնա ընդ իս ի Սպանիա. քանզի եւ այնմ Հաւանեալ էր Աթանաս առ սէր խաղաղութեանն: Ե-լին մեկնեցան նոքա նախ ի պաղատն արքունի անդէն ի Սարդիկէ եւ ապա ի Փիլիպպուպոլիս, պատճառելով թէ կոչէին ի տօն յաղ-թութեան Կոստանդեայ կայսեր վասն յաղթութեանն ի վերայ Պարսից:

Իսկ Հայրքն անդէն քննեալ միւսանգամ զամենայն ճշդիւ ըստ քննութեանց ժողովոյն Հռոմայ՝ արդարացուցին զեպիսկոպոսունսն մերժեալս, Աթանաս ցուցաւ անմեղ, Մարկեղոս՝ ուղղափառ, եւ նզովեցին զգլխաւորս Արիանոսացն զԹէոդորոս Հերակղեայ, զՆարկիսոս Ներոնիադայ կամ Իրենուպոլեայ, զԱկակիոս Կեսա-րիայ, զՍտեփանոս Անտիոքայ, զՈւրսակիոս Սինգիդոնի եւ զՎա-ղէս Մուրսայ, զՄենոփանտէս Եփեսոսի եւ զԳէորգիոս Լաւո-դիկեայ:

Ապա եդեալ կանոնս (21) վասն եկեղեցական կարգաց, մա-նաւանդ վասն Հաստատութեան իրաւանց դահերիցութեան քա-հանայապետին Հռոմայ[1] (քանզի ի սմին մանաւանդ յանցանէին Արիանոսք), ինքեանք մեկնեցան յիւրաքանչիւր տեղիս, որք էին ընդ ամենայն իբրեւ 340, յետ գրելոյ թուղթ սինհոդոսական եւ գիր աղաչանաց առ Յուլիոս քահանայապետ ի Հաստատու-թիւն գործելոցն՝ ասելով թէ "Պատշաճ այսպէս է՝ զի յամենայն նահանգաց եպիսկոպոսունք ազդ առնիցեն առ գլուխն, այս ինքն առ աթոռ առաքելոյն Պետրոսի,,: Առ կայսերսն գրեալ աղա-

1 Զերս տես ի Գաւառ. եկեղ. ժողովոց, եր 89 — 91.

չէին՝ պաշտպանել եպիսկոպոսաց յերեսաց մոլեգնութեան Եւ-սեբեանց, մի այսուհետեւ յեկեղեցական իրս զկայսրանաց, զդահ-ճաց եւ զատենից բանս ի մէջ բերել, եւ ընաւ իսկ աշխարհական իշխանութեան չլինել միջամուխ յեկեղեցական գործս:

Այլ Արիանոսք որ ի Սարդիկեայ չոգան ի Փիլիպպուպոլիս՝ յօրինեցին այլ թուղթ սուտհռչակական իբրեւ ի բերանոյ ժողովոյն Սարդիկեայ՝ թէ մերժեցան Աթանաս, Մարկեղոս "ժանտն եւ դաժանագոյն քան զամենայն հերետիկոսս", Պաւղոս Կոստանդի-նուպօլսեցւոյ "զարշելին գործովք", Դաւկաս Ադրիանուպոլսեցւոյ "որ զմարմինն տեառն արկեալ է առաջի շանց": Նզովեալ են եւ Յուլիոս՝ զի զԱթանաս ընկալաւ, Ոսիոս որ եղեւ "բարեկամ Պաւղինեայ ուրումն եպիսկոպոսի առն կախարդի եւ չքմեղոյ", Մաքսիմոս Տրեւիրայ, Պրոտոգենէս Սարդիկեայ, Գաւդենտիոս Նայիսայ եւ այլք. նմին իրի չէ պարտ ումեք ունել այսուհետեւ եւ ընդ սոսա հաղորդութիւն: Ստորեցաւ փութանակի թուղթս ընդ ամենայն կողմանս. առաքեցաւ նոյն թուղթ եւ յԱփրիկէ, ոչ առ եպիսկոպոսունս ուղղափառաց, այլ առ Դոնատոս զլխաւոր եպիսկոպոս Դոնատեանց ի Կարքեդոն, քանզի եւ զնոսա փորձէին արկանել յիւրեանս, որպէս զՄելետիանոսն արկին: Քահանայք կամ ժողովքականք 10 յԱդրիանուպոլիս սպանան պոլ հրա-մանաւ Կոստանդեայ ի ձեռն Փիլագրիոսի կոմսի վասն զի չկամէին հաղորդութիւն ընդ Արիանոսաց: Այն ինչ եկեալ էր հրաման ի Կոստանդեայ զգուշանալ նաւահանգստաց զի մի եպիսկոպո-սունքն արձակեալք յաքսորանաց դարձցին յիւրաքանչիւր աթոռս, հասանէր առ նա յԱնտիոք հրեշտակութիւն (ի ձեռն ծերու-նեացն Եւփրատասայ Կողոնեայ եւ Վինկենտեայ Կապուայ եպիս-կոպոսաց) առաքեալ ի ժողովոյն վասն դարձի եպիսկոպոսացն եւ չլինելոյ միջամուխ քաղաքային դատաւորաց յիրս եկեղեցւոյ:

Թէպէտ եւ ընդունայն եղեւ հրեշտակութիւնն՝ վասն զի դաւով հանին Արիանոսք անուն լկտութեան զհրեշտակացն, մուծանելով գիշերայն կին մարդ ի սենեակ ծերունւոյն Եւփրատասայ, սակայն իբրեւ եկն յայտ խարէութիւնն ի ձեռն դատաւորաց քաղաքին Անտիոքացւոց եւ երեւեցաւ զաւակ ամենայն չարեացն Ստեփանոս արիանոս եպիսկոպոս Անտիոքայ, եւ հասին եւս սպանմունք ին-քնակալին Կոստասայ, յայնժամ ապա հաւանեցաւ Կոստանդիոս ընդ դարձ եպիսկոպոսացն, մանաւանդ զի չէր ինչ յաջողութեամբ եւ պատերազմն ընդ Պարսից (348):

Իսկ այնուհետեւ Աթանաս յԱկուիլեայ եւ երթեալ խըն-դրեաց ի Հռոմ հրաժեշտ ի Յուլեայ քահանայապետէ. ընդ եղեւ ուրախութեամբ եկեղեցին Հռոմայ, եւ նմա Յուլիոս թուղթ մխիթարութեան առ Աղեքսանդրացիսն: Յետ որոյ թղթովք հրաւիրելոյ զնա Կոստանդեայ առ ինքն, ապա փութահասցաւ Ա-

թանաս եղանել ի ճանապարհ. ընկալաւ իսկ զնա կայսր մեծաւ սիրով յԱնտիոք եւ զարմացաւ ընդ նա. խնդրեաց ի նմանէ տալ զմի յեկեղեցեացն Աղեքսանդրացւոց՝ Արիանոսացն. յանձն առ հայրապետն, միայն՝ զի եւ մի յեկեղեցեացն Անտիոքայ տացէ ուղղափառացն: Այսպէս իբրեւ փառօք յաղթութեան անցեալ ընդ եկեղեցիսն Ասիայ եւ հաստատեալ զհաղորդութիւն նոցա ընդ իւր՝ հասանէր յԱղեքսանդրիա թղթով կայսերն, որ հրաման տայր առնելոյն յԵգիպտոս ջնջել ի դիւանաց զամենայն որ ինչ հակառակ Աթանասայ գրեալ կայ եւ միաբանգամ ապահարկ առնել զկղերն նորա (349): Ընդ նոյն ամս վախճանեալ էր Գրի-գոր եպիսկոպոսն աթոռոյ: Այսպէս դարձան եւ Պաւղոս, Մար-կեղոս եւ Ասկղեպաս յիւրաքանչիւր աթոռ:

Իսկ այն եւս էին զարմանք զի Ուրսակիոս եւ Վաղէս յետ մահուն Եւսեբեայ Նիկոմեդացւոյ ատենակալոյք քան զամենայն թշնամիս Աթանասայ՝ չոգան ի Հռոմ առ Լիբերիոս քահանայա-պետ որ յաջորդեալ էր զՅուլիոս († 12 Ապր. 352), եւ գրով ետուն զզղջումն իւրեանց յայս ապարեալ թէ սուտ էր ամենայն որ ինչ ընդդէմ Աթանասայ բերաւ յառաջ. եւ գրեալ եւս առ Աթանաս խնդրէին ընդունել զնոսա ի հաղորդութիւն:

Սուղ յառաջ քան զժողովն Սարդիկեայ վախճանեալ էր Եւսեբիոս Նիկոմեդացի յէ ամօք եւ չարեօք (ի վախճան կոյս 341 ամին). յուղղափառաց ընտրեցաւ միաբանգամ Պաւղոս յաթոռն Կոստանդնուպոլսեայ, իսկ յԱրիանոսաց՝ Մակեդոնիոս սարկա-ւագ եկեղեցւոյն. առաքեաց Կոստանդիոս հրաման առ Հերմոգե-նէս զօրագլուխ երթալ հանել զՊաւղոս ի բաց, այլ իբրեւ տեսան զայս ժողովուրդն՝ եկն ինքն Կոստանդիոս պատուհասել զքաղաքն, սակայն գթեալ պաղատանաց քաղաքացեացն՝ միայն զկէս բաշխից եգիպտացի ցորենոյն հատ ի նոցանէ: Բայց Մա-կեդոնիոս մնաց յաթոռն:

Յառաջագոյն քան զԵւսեբիոս Նիկոմեդացի վախճանեցաւ եւ Եւսեբիոս Կեսարացի երեւելի քան զամենայն ժամանակակիցս իւր ուսմամբ եւ տեղեկութեամբ: Զա թէպէտ եւ հաւատար ընդ այ-լոց Արիանոսաց չէմարթի դնել, մանաւանդ զի ի գիրսն իւր ընդ-դէմ Մարկեղեայ զոր ի վախճան կոյս կենացն գրեաց՝ յայտնա-գոյնս իմն եւ հզօրագոյնս խօսի զաստուածութենէն Քրիստոսի, սակայն գործակցութիւն նորա ընդ Արիանոսաց ի ժողովսն Տիւրոսի եւ Կոստանդնուպոլսեայ եդին արատ մեծ յիշատակի նորա, որ ոչ ջնջի մեծամեծ վաստակովքն նորա զորոց չէմարթի յուրաստ կալ: Նմին յաջորդէր ի Կեսարիա աշակերտ նորա Ակակ ժառանգ մա-տենադարանին նորա եւ հմտութեանցն իւր (338):

Այսպէս յամի իբրեւ 349 դադարեաց մրրիկն՝ զի միաբանգամ յուզեցի ատենակալոյս:

## 67

Մինչ դեռ Կոստանդիոս յարեւելս էր անդադար պատերազմաւ ընդ Շապհոյ Բ. Պարսից արքայի (338—361), որպէս յիրում տեղւոջ պատմեցաւք, արեւմուտք էին ի խաղաղութեան ընդ առաջնորդութեամբ եղբօրն։ Բայց քանզի եւ սա չէր ինչ մեծարոյ եւ սիրելի ժողովրդեան իւրում, եւ Մագնենտիոս ոմն անուն յազնուական տոհմէ խնքէ Գերմանացւոց, որդի Մագնոսի ուրումն ածելոյ ի Կոստանդիանոսէ Ա. իբրեւ պատանդ ի Գաղիա, բարենշան, ճարտարախօս եւ սիրող գիտութեանց, նախ ընկալեալ ի Կոստասայ ի Թիւ անձնապահացն. եւ ապա կարգեալ կոմս ի սահմանակողմանս Գաղիայ իբրեւ հրամանատար Արամազդեան եւ Հերակլեան (այսինքն՝ Դիոկղետիանեան եւ Մաքսիմիանեան) լեգէոնացն։ Խստութեամբ պահպանութեան զինուորական կարգաց անկաւ երբեմն ի վտանգ լինելոյ սուսերահար ի զօրացն, բայց ապրեցոյց զնա Կոստաս ծածկեալ զնա ընդ ծիրանւոյն իւրով։ Բայց Մագնենտիոս՝ որպէս զայլ ազնուական խորհուրդս, նոյնպէս եւ ոչ շնորհակալու միտս ունէր, միաբանեցաւ նա ընդ Մարկեղինեայ գանձապետի, եւ ի խնճոյս ուրեք յԱւգուստոդունոն՝ յորժամ ընդ գինիս մտեալ էին բազմականքն՝ եմուտ ծիրանաւոր եւ կապեալ թագ ի գլուխ. յետ ողջունելոյ ի բազմականէն կալաւ զպաղատն կայսերական եւ զգանձսն, հնազանդեցին նմա քաղաքացիքն եւ լեգէոնքն։

Ազդ եղեն իրքն Կոստասայ՝ որ յորս էր ի հեռաւոր կողմանս. ելանէր փախստեայ անկանել ի Սպանիա, բայց զունդն առաքեալ ի Մագնենտեայ առաջնորդութեամբ Գայիսայ հասեալ առ ոտամբ Պիւրենեան լերանց սպան զնա ի Հեղղա կամ Հեղենա՝ 30ամեայ, յետ 13 ամաց առաջնորդութեանն (350)։ Արդարեւ բաց ի պաշտպանութենէն զոր ուղղափառացն եցոյց՝ սակաւ ինչ երեւի ի նմա արժանի գովութեան, սակայն եւ ոչ այնպէս լի է յոռութեամբք որպէս ոմանք ի վերջին մատենագրաց նկարեցին։ Թուի թէ Եւտրոպիոս ուղղագոյն քան զամենեսին եբեր վճիռ՝ զի ասէ թէ „Ժամանակս ինչ առաջնորդութիւն Կոստասայ ժիր էր եւ արդար. այլ յետ սակաւ ինչ միոյ՝ յորժամ առողջութիւնն վատթարեցաւ եւ չարաց բարեկամաց ետ նա զանձն, անկաւ նա ի գժնդակս, եղեւ ծանր բնակչաց նահանգացն եւ զօրացն յաչաց ել„։

Ընկալան զՄագնենտիոս Գաղիա, Բրիտանիա, Իտալիա եւ Ափրիկէ, եւ եղբարք նորա Դեսիդերիոս եւ Դեկենտիոս անուանեցան ի նմանէ կեսարք։ Սակայն զՀռոմ կալաւ Նեպոտիանոս ուստր Եւտրոպիայ քեռն Կոստանդիանոսի Մեծի, եւ զԻլիւրիկէ Վետրանիոյ ծերունի հրամանատար լեգէոնացն Պաննոնիայ, որ ա-

Digitized by Google

նուաճեցաւ ի զօրացն՝ աւգոստոս, եւ ոչ յանձն Վետրանիոյ՝ առաւել վասն զաշխարհն ի բռնաւորէն պահելոյ (որպէս ինքն Յուլիանոս ասէ)։ Որպէս սա, նոյնպէս եւ Մագնենտիոս յեռանդն գործ ի ձեռն Մարկեղինեայ՝ յղէր պատգամաւորս առ Կոստանդիոս, յորս էին եւ եպիսկոպոսունք երկու որք անցին ընդ Աղեքսանդրիա երթալ յԱնտիոք. այլ Կոստանդիոս որ առ սակաւ մի ոգի առեալ էր ի պարսկական պատերազմէն վասն գրաւելոյ Շապհոյ Բ. յարեւելից կուսէ տէրութեան իւրոյ, եւ պատրաստեալ գունդ յԱնտիոք եւ նաւատորմիղ մեծ, մերժեաց զերկոցունց եւս առաջարկութիւնս, նոյնպէս միւս եւս միաբան հրեշտակութիւն առաքեալ ի Հերակղէա Թրակացւոց ի Վետրանիոյ եւ ի Մագնենտեայ դաշնաւորելոց, չկարաց վճարել ինչ, թէպէտ եւ ընդունէին երկոքին՝ լինել Կոստանդեայ աւգոստոս գլխաւոր, եւ լինել Մագնենտեայ քեռայր կամ փեսայ Կոստանդեայ։

Ճանապարհեաց եհաս Կոստանդիոս ի Սարդիկէ, այլ իբրեւ ետես թէ պատահեաց ընդ առաջ նորա ծերունին Վետրանիոյ հզօրագոյն բանակաւ՝ չհամարձակեալ անկաւ ի պատգամս, ընկալաւ զնա յաւգոստոս, եդ ընդ նմա դաշինս ընդդէմ Մագնենտեայ։ Բայց իբրեւ խառնեցան զօրքն ընդ միմեանս եւ երկոքին եկին ի բեմն խօսել ընդ նոսա, այնպէս ի բանից անտի Կոստանդեայ բորբոքեցաւ զօրն՝ զի միայն զորդիս երախտաւորին Կոստանդիանոսի համարեցաւ արժանի աթոռոյ եւ յամենեցունց Կոստանդիոս ողջունեցաւ՝ աւգոստոս։ Խոնարհեցաւ Վետրանիոյ, անկեալ յոտս՝ տայր զծիրանին եւ զթագն իւրում նախանձորդին՝ որ եւ արկ գիրկս ընկալաւ, հայր կարդաց, ձեռն ետ նմա իջանել ի բեմէն յողդողդն քայլիւք (25 Դեկտ. 350), եւ առաքեաց ի Պրուսա Բիւթանացւոց կեալ թագաւորաբար. բայց կեայր անդ Վետրանիոյ ամս 6 քրիստոնէաբար՝ յաճախելով ստէպ յեկեղեցի եւ պատուելով զպաշտօնեայս Աստուծոյ եւ խնամակալ աղքատաց լինելով, մինչեւ հրաւիրել եւս նմա երբեմն զկայսր թողլով ընտրել զնոյն կեանս հանդարտութեան։

Ընդ Իլիւրիկեայ ստացաւ Կոստանդիոս հեծելազօր բազում եւ հզօր, եւ կամէր ածել զթշնամին ի դաշտավայրսն Պաննոնիայ ի կռիւ. ի պատերազմին առ Միւրսիաւ (Միւսէքաւ) ճնշեցաւ զօրն Կոստանդեայ, այլ ի ճակատուն առ Մուրսաւ (28 Սեպտ. 351) պարտեցաւ Մագնենտիոս եւ ել փախստեայ յԱկուիլեա. յաղթութիւն Կոստանդեայ ի ձեռն զրահաւոր հեծելոցն եւ քաջաց զօրավարաց եղեւ, մինչ դեռ ինքն կայսր կայր յեկեղեցւոջ ուրեք եւ քաջալերէր ի Վաղենտէ յարիանոս եպիսկոպոսէ քաղաքին որ եւ նախ ետ նմա զաւետիս յաղթութեանն (իբրեւ ի հրեշտակէ Աստուծոյ խնդրեալ)։ Բայց վասն սաստիկ կոտորածի զօրացն՝ չառ յանձն Կոստանդիոս հալածել զՄագնենտիոս իսկոյն.

Digitized by Google

ի ժողովն կղերականացն Հռոմայ եւ մերժեցաւ։ Սակայն զմտաւ ածեալ քահանայապետին՝ թէ դիւրագոյն է ընդդէմ կալ կամաց կայսեր ժողովով եպիսկոպոսաց՝ գրեաց առ կայսր զի գումարեսցի սիւնհոդոս յԱկուիլէա։ Հաւանեցաւ կայսր զի լինիցի ժողովն՝ այլ յԱրելատ, ուր անցեալ էր զձմեռն տարւոյն (353)․ առաքեաց անդր փոխանակ իւր քահանայապետն զՎինկենտիոս եպիսկոպոս Կապուայ՝ տուեալ զվերջին թուղթ Արիանոսացն եւ զնորոգ ինչ ջատագովութիւն եպիսկոպոսացն Եգիպտացւոց զի (որ իբրեւ յերիցութեան ժամանակի եկն ի ժողովն Նիկիայ իբրեւ հրեշտակ Հռոմայ) պաշտպանեսցէ Աթանասայ։ Մեծաւ սաստիկ երկիւղիւ ահաբեկ լեալ ի սպառնալեաց կայսերն՝ յետ ուսուրեմն արկին ամենայն եպիսկոպոսունքն ձեռնագիր դատապարտութեան Աթանասայ, Մարկեղայ եւ Փոտինեայ Սերմիացւոյ, եւ Վինկենտիոս եւս․ միայն Պաւղինոս եպիսկոպոս Տրեւիրայ ընդդէմ դարձաւ մինչեւ ցվախճան, բայց աքսորեալ ի Փռիւգիա ի մէջ Մոնտանեանցն յետ ամաց իբրեւ 5 առ սրտմտութեանն եւ քաղցու ի կենաց վախճանէր։

Տրտմեցաւ տխրեցաւ յոյժ քահանայապետն ընդ անկումն Վինկենտեայ, եւ որպէս ի դէպ էր՝ յայտ արար առ հասարակ եպիսկոպոսաց՝ թէ ոչ ըստ իւրում յանձնարարութեան գործեաց նա։ Թէպէտ եւ ողբմամբ յաչաց ել կայսերն քահանայապետն՝ մանաւանդ զի ամբաստանութիւն եւս գնմանէ էր՝ թէ զգիրս ինչ յանցաւորութեան Աթանասի բարձեալ ջնջեալ իցէ ի միջոյ, սակայն եւ այնպէս առաքեալ միւսանգամ հրեշտակութեամբ զԼուկիփեր եպիսկոպոս Կաղարիայ, զայր համարձակախօս եւ զառաքինի, եւ զԵւսեբիոս Վերկեղեայ Պիեմոնտացւոց, զայր հանդարտ եւ իմաստուն՝ խնդրէր զի լիցի միւսանգամ ժողով ի Միդիոլանն (355)։

Դիւրաւ հաւանեցաւ Կոստանդիոս, զի ուսաւ միանգամ զհնարս ածելոյ զեպիսկոպոսունս ի հաւանութիւն։ Ընդ էին յարեւելից սակաւ եւեթ եպիսկոպոսունք, ամենեքին ի կողմանէն Արիանոսաց, իսկ յարեւմտից իբրեւ 300 (ըստ Սոկրատայ եւ Սոզոմենայ)։ Յառաջագոյն Արիանոսք յօրինեալ եւ պատրաստեալ զամենայն պահանջեցին ի սիւնհոդոսէ դատապարտել զԱթանաս, ուր ուղղափառ եպիսկոպոսունքն առաջնորդութեամբ Եւսեբեայ Վերկեղացւոյ, խնդրէին՝ զի նախ արկցի ամենեցուն ձեռնագիր Նիկէական դաւանութեանն, եւ հանեալ իսկ էր Դիոնեսիոս եպիսկոպոս Միդիոլանու քարտէս՝ սկիզբն առնել իւրացն, այլ Վաղէս հան զնա բռնի ի ձեռացն։ Յոր եղեն իրքն ի քաղաքին․ խռովեցաւ ժողովուրդն՝ իմացեալ թէ վտանգ ի վերայ կայ ուղղութեան հաւատոցն։ Յայնժամ հանեալ յեկեղեցւոյ փոխեցաւ ժողովն ի պալատն արքունի․ եւ կայսրն յետոյ վարագուրի

սրահին նստեալ լսէր ի ժամ վճռմանցն։ Ընդէն ի մէջ բերա-հրովարտակ ինչ կայսեր՝ յի բանիւք վարդապետութեան Արիանո-սաց, զորոյ զճշմարտութիւն անդէն հաստատէր կայսրն ասելով թէ յանուրջս յԱստուծոյ յայտնեցաւ այն նմա, եւ զի ի վերայ ամենայն թշնամեացն ինքն յաղթող գտաւ, որով յայտ է թէ հաճեալ է ընդ նա Աստուած։ Այսմ հրովարտակի ստիպէին արկանել ձեռնագիր գործակալք թագաւորին։ Համարձակեցաւ Լուկիփեր բարբառել թէ միայն Նիկիական հաւատք ուղղափառ են, եւ թէ ամենայն զօրութիւն զինուց թագաւորին չկարէ տալ արկանել ձեռնագիր հրովարտակին որ լի է հայհոյութեամբ։ Յայնժամ եւ թագաւորն ի վարագուրէն ի ժողով անդր եւ ստիպէր մեծաւ տագնապաւ դատապարտել զԱթանաս։ Զուր բողոքէին եպիսկոպոսունքն թէ չարժէ վկայութիւն Վաղեսի եւ Ուրսակիոսի, եւ թէ Աթանաս չէ աստ, ախնհողոսն չէ աշխարհական ատեան Հռովմայական տէրութեան. իսկ թագաւորն զիւրոյ իսկ անձին վկայութիւն ցուցանէր, եւ թէ իւր կամքն՝ օրէնք եկեղեցւոյ են, քանզի եւ արեւելեայք, ասէ, չդառնան ինձ ընդդէմ՝ յարժամ ասեմ ինչ նոցա հրամանս։ Ապշեցան վարանեցան եպիսկոպոսունք, զձեռս յերկինս համբարձեալ յուշ առնէին թագաւորին՝ թէ չէ ստացուած նորա սեփհական՝ թագաւորութիւնն, այլ Աստուծոյ իսկ տուեալ է, որ եւ կարող է առնուլ ի բաց. ցուցանէին զօր դատաստանի, աղաչէին չխանգարել զեկեղեցին եւ մի զՀռովմայական տէրութիւնն եւ զեկեղեցի խառնակել ընդ միմեանս։ Ամբարձ զսուր իւր թագաւորն եւ հրամայէր լուռ լինել։ Պատուէր ետ զոմանս ի նոցանէ սպանանել, բայց ապա դարձոյց յետս զհրամանն. մեծ մասն եպիսկոպոսացն ետ տեղի սպառնալեաց թագաւորին։ Հրեշտակն քահանայապետին Հիղարիոս սարկաւագ՝ ի Վաղեսէ եւ յՈւրսակեայ եւ ի ներքինեաց գանակոծ եղեւ, եւ ընդ պաշտօնակցին իւրում ընդ Պանկրատեայ երիցու աքսորեցաւ. նոյնպէս աքսորեցաւ եւ Լուկիփեր ի Գերմանիկիա ի բանտ խաւարչտին, Եւսեբիոս Վերկեղեայ ի Սկիւթուպոլիս, Դիոնիսիոս Մեդիոլանու ի Գամիրս՝ ուր եւ մեռաւ իսկ, եւ փոխանակ նորա եդաւ Աւքսենտիոս Կապադովկացի ձեռնադրեալ ի Գրիգորէ որ եպիսկոպոսն եկաց Աղէքսանդրիայ, որ (ըստ Ս. Աթանասի) եւ ոչ զՀռովմայեցի լեզու իմանայր։

Այլ քան զամենայն ինչ՝ մեծ համարէր յարքունիս Կոստանդեայ հաւանութիւն եպիսկոպոսին Հռովմայ։ Այն ինչ գրեալ էր Լիբերեայ թուղթ միաբանութեան առ եպիսկոպոսունս աքսորեալս՝ ցաւելով ընդ բաժանումն նոցա եւ ուրախ լինելով թէ եւ նմա ի մօտոյ հասանիցէ նոյն վիճակ. ցանկայր, ասէ, փոխանակ ամենեցունց զանձն տալ եւ լինել ձեզ օրինակ բարեաց, որպէս ի դէպ իսկ էր ցանկալ եւ բարբառել գլխոյն եկեղեցւոյ. անդէն ըստ մե-

Digitized by Google

ծուլթեան իւրացն՝ ոչ դոյզն ինչ, այլ ինքն իսկ Եւսեբիոս ներքինապետ առաքեցաւ ի Հռոմ շրջել զմիտս նորա․ զի արկցէ ձեռնագիր մերժմանն Աթանասի, բայց ընդունայն ելեալ մեկնէր ապառնալեօք, թողեալ զպարգեւսն որով կաշառելն եկեալ էր՝ ի վերայ դերեզմանի սրբոյն Պետրոսի, զոր արհամարհեալ քահանայապետին եւս դարձուցանել առ նա։ Ապա հասանէր հրամանն առ վերակացու քաղաքին Հռոմայ առնել գաղտ ձերբակալ զԼիբերիոս․ ահ մեծ անկանէր ընդ քաղաքն ամենայն, կանայք մեծամեծացն մեկնեցան ի գեղս, բազմաց տուաւ եւ արծաթ՝ մատուցանել ամբաստանութիւն զԼիբերեայ․ ապա առաւ ածաւ նա յարքունիս Կոստանդեայ[1], որ յետ խօսելոյ ընդ նմա բազում ինչ, զի փոփոխեսցէ զմիտս իւր, իբրեւ գտաւ հաստատուն՝ աքսորեցաւ ի Բերիա Թրակիացւոց, առանց ընդունելոյ զարծաթն՝ զոր տայր նմա կայսրն եւ կին նորա (Եւսեբիա) եւ ներքինապետն, ասելով՝ թէ Պիտոյ է այն վասն պատերազմին ընդ Պարսից։ Ընդ նմա աքսորեցաւ եւ Մաքսիմոս եպիսկոպոս Նէապոլեայ, որոյ փոխանակ եկաց Զոսիմոս, որպէս փոխանակ Լիբերեայ Փեղիքս սարկաւագ եկեղեցւոյն Հռոմայ, զոր ձեռնադրեցին ի կայսերական պալատանն ի Հռոմ Եւպիկտետոս արիանոս եպիսկոպոս Կենտում-Կեղեաց եւ Ակակ Կեսարիայ։

## 69

Իսկ եւ իսկ յետ ժողովոյն Մեդիոլանեա հան հրաման թագաւորն՝ զի ցրուեսցեն սահմանեալ վասն աղքատաց եկեղեցւոյն կողմանն Աթանասեայ՝ տացի Արիանոսաց, եւ ետ պատուէր առ այս կարգեալս ի պաշտամունս տէրութեան՝ հաղորդել ընդ սոսա, եւ հրաման ի քաղաքս՝ ստիպել իւրաքանչիւր քաղաքի զիւր եպիսկոպոս՝ հաւանել վճռոյ սինհոդոսին եւ ի բաց կալ յԱթանասէ, ապա թէ ոչ աքսորել զնոսա, ի բանտ արկանել եւ առնուլ զինչս յարքունիս։ Երկոցունք Վաղեսի եւ Ուրսակեայ շրջէին ընդ գործակալացն արքունի։ Այսպէս ցանցն տարեալ ի հեռաստանէ տակաւ ամփոփեալ մերձենայր յԱթանաս։ Եկեալ Սիւրիանոս զօրավար զօրաց յԵգիպտոս 5000 զօրօք՝ տայր հրաման հայրապետին մեկնել յԱղեքսանդրիայ․ իբրեւ պահանջէր նա գրով ցուցանել զհրաման կայսերն, եւ ժողովուրդն եւ կղերն եւ մեծամեծք քաղաքին աղաչէին ի դոյն զզօրավարն եւ ակն ունէին հրեշտակութեամբ ածել յողոք զկայսրն, յանկարծ յետ 20 աւուրց յարձակէր զօրավարն վառելովք ի մէջ գիշերի յեկեղե-

1 Հռչակաւոր պատմագիր ժամանակին Ամմիանոս Մարկեղինոս (Գիրք ԺԵ․ Գլ․ Է․) այր հեթանոս արժանի յիշատակի համարի զիրան թէ "Հրամանաւ կայսեր վերակացուն կամ յառաջակացն կրօնից քրիստոնէութեան (Christianae legis antistes) առաքեցաւ ի Հռոմայ յարքունիս կայսեր, վասն զի հրամանի կայսերն եւ վճռոյ մեծի մասին ի պաշտօնակցացն՝ ընդդէմ դարձաւ։



Digitized by Google

ցի Ս. Թէոդոնայ ուր Աթանաս հանգերձ բազմութեամբ ժողովր-
դեան զհսկումն յաջորդ աւուր տօնին կատարէր. իբրեւ զգանչե-
լեօք իմն փախուցին զհայրապետն կղերականք նորա՝ մինչդեռ նա
կամէր եղանել ընդ առաջ խնդրելեացն (8 փետր. 356)։ Սպա-
նութիւն, բրածեծ գան, բանդք, աքսորք՝ զմիմեանս փոխանակէին
ի ժողովրդեանն. բայց որ քան զամենայն դաժանագոյն էր՝ պա-
հանջէր ի նոցանէ զօրավարն տալ գրով վկայութիւն առ կայսր
թէ առանց խռովութեան ամենայն կատարեցաւ։ Հաճոյ թու-
եցաւ կայսեր, առաքեցաւ Հերակղիոս կոմս խնդրել գտանել եւ
զԱթանաս, բերեալ հրաման եւ առ ծերակոյտն եւ ժողովուրդն Ա-
ղեքսանդրացւոցն՝ ուղղափառաց տալ միաբանգամ զեկեղեցիսն ի
բաց եւ զեպիսկոպոսն նոցա մերժել. իբրեւ ընդդէմ դարձան
ուղղափառք՝ հանեալ ի վերայ նոցա գունդ հեթանոս որ եմուտ ի
նորաշէն եկեղեցին անուանեալ Կեսարիոն, զկանայսն եւ զկուսանս
որ տակաւին յաղօթսն էին չարչարեաց եւ Արիանոսք կային հայ-
հոյելով ծաղու եւ ուրախութեամբ։ Անդէն հասանէր նոր մետրապո-
լիտ Գէորգ Կապադովկացի որդի թափչի, այն ինչ ձեռնադրեալ
յԱնտիոք, որ ըստ վկայութեան հեթանոս իսկ պատմագրին (Ամիա-
նեայ) դառնացոյց զկայսր ի վերայ Աղեքսանդրացւոցն, գրգռեաց զնո-
սա արկանելով ծանր հարկս ի վերայ տանց նոցա, ասելով՝ թէ եր-
բեմն Աղեքսանդրոս մեծ իւրով ծախուք շինեաց զքաղաքն. իւր ա-
մենավաճառութեամբ զբորակն, զաղ եղտիւրացն եւ զբոյսն
պապիրուսի։

Բայց Աթանաս թագուցեալ կայր ժամանակս ինչ յԱղեք-
սանդրիա կամ մօտ ուրեք անդր, այլ ապա մեկնեցաւ յանապատ
ի մէջ վանականացն, ուր եւ զգիրս պաշտպանութեանն
յօրինէր, եւ զմեւս եւս գիր վասն արդարացուցանելոյ զփա-
խուստն իւր, զի վատութեան գործ համարէին զայն Արիանոսք։
Խուզեաց որոնեաց զնա Կոստանդիոս եւ յանապատի անդ (ի տան
Արտեմիոսի ուրեմն), նա աւանիկ եւ առ թագաւորն Եթովպ-
ացւոց գրէր՝ զի եպիսկոպոսն նոցա Ս. Փրումենտիոս (աշակերտն
Աթանասայ եւ ձեռնադրեալն ի նմանէ) առաքեսցի յԱղեքսանդրիա
եւ քննեսցին ի Գէորգայ հաւատք նորա, զի եթէ ունիցի "զհա-
ւատոն որ այժմ շահեալ տիրէ"[1] դարձցի զանձուք զխոտութեան
եւ շինեալ ի Գէորգայ յետս, ապա թէ ոչ՝ իբրեւ հաղորդակից
ժանտին Աթանասայ մերժեսցի յաթոռոյն։ Սակայն յայսր ամե-
նայնի վերայ՝ ոչ միայն զԵգիպտոս, այլ եւ զԱղեքսանդրիա իսկ
չկարացին շահել Արիանոսք։

Ըստ նմին օրինակի եւ ի Գաղղիա Սատուռնինոս եպիսկոպոս
Արելատայ կացուցեալ անդէն փոխանակ Պաւղինեայ, էր լեալ
մի ի գլխաւորաց Արիանոսաց ի Մեդիոլանոն, այլ չկարաց

1 Τῇ νῦν κρατούσῃ πίστει.

Digitized by Google

վճարել ինչ ընդդէմ ուղղափառացն։ Վասնզի ընդ այն իսկ ժամանակս սկսեալ էր աստղ նոր՝ ծագել լոյս ուրախարար ի խաւարին մրրկի ժամանակացն այնոցիկ՝ Ս. Հիղարիոս Պիկտաւիացի, Աթանասն արեւմտից։ Նա նա յերեւելի տանէ հնոցն Գաղղիացւոց կրթեալ ի հեթանոսութեան, ուսեալ զիտութիւնս, երեւելի եւ համբաւաւոր փիլիսոփայութեամբ եւ ճարտարխօսութեամբ. չյագեալ այլ եւ այլ վարդապետութեամբք փիլիսոփայութեանն՝ ի խնդիր էր միոյ միայնոյ ճշմարտութեանն՝ զոր եգիտ նա ի գիրս սուրբս մեծաւ զարմացմամբ, եւ ընկալաւ հաւատովք յեկեղեցւոջ՝ որ զաստուածութիւնն Քրիստոսի դաւանէր։ Այն ինչ լեալ նորա եպիսկոպոս Պիկտաւիոն (Poitiers) քաղաքի՝ սկսաւ երեւել գլուխ եպիսկոպոսացն Գաղղիայ, բերան նոցա եւ տեղապահ յամենայնի։ Արար նա ընդունայն զջանն Սատուռնինոսի որ ջանայր ի ժողովին Բիտերրեայ (Béziers) տալ ընդունել Գաղղիացւոց զմճիռս ժողովոյն Արեղատայ եւ Մեդիոլանու։ Բայց եւ զքուն առաջնորդ չարեացն զԿոստանդիոս փորձէր Հիղարիոս դարձուցանել համարձակ բանիւքն, յորժամ ուղղափառ եպիսկոպոսացն Գաղղիայ յանձն առնելով՝ գրէր առ նա թուղթ հանդարտեցուցիչ, անդէն ի ժամանակի՝ զի Գերմանք անցեալ էին ընդ Հռենոս եւ համբաւ էր՝ թէ եւ Գաղղիացիք ապստամբեցին[1]։ Այլ առաւել զօրեցին ամբաստանութիւնք հակառակորդաց նորա առ Յուլիանոս կեսար եւ առ Կոստանդիոս,

1 Աղաչեմք եւ փութալի առնեմք ոչ բանիւք եւեթ այլ եւ արտասուօք, զի մի այսուհետեւ որպէս ցայժմ թշնամութիւն ընդ կաթուղիկէ եկեղեցիս լինիցի, մի ի հալածանս սաստիկս եւ յապիրատութիւնս մատնեսցին, եւ այն՝ որ առաւել զարմանալին է՝ ի ձեռն եղբարց։ Ցուցանես իսկ ուսուցին՝ զի չէ պատշաճ զհաւատացեալսն բռնի արկանել ընդ իշխանութեամբ այնոցիկ որ չդադարեն զանիրաւ սուտ վարդապետութեանն ցանել։ Զայս պահանջէ կաշառն ձեր, յայտ առնել իսկ առաջնորդէք տէրութեանն՝ զի ամենայն հնազանդեալք ի քաղցր ազատութեան վայելիցեն։ Չէ մարթ այլում ինչ օրինակաւ չփոթութեանցն լինել լուծումն, պառակտութեանն փականել՝ բայց յորժամ խորտակէիցէք որ առանց անաղարտի ինչ քաղաքացութեան վայելիցէ զկատարեալ ազատութիւն կենաց։ Աղաղակէն հարկ է քեզ անսալ բարբառոյ այնոցիկ որ բուռն բարձեալ գոչեն. Ես կաթուղիկեական եմ, չկամիմ հերետիկոս լինել, ես քրիստոնեայ եմ եւ ոչ արիանոս. կամիմ մանաւանդ կրել մահ մարմնոյ, քան բանադատութեամբ զպարկեշտ կուսութիւն ճշմարտութեանն ապականել։ Պարտ եւ պատշաճ է իրաւացի իսկ երեւել քում տէրութեանդ՝ զի որ յԱստուծոյ եւ յաստուածեղէն դատաստանացն երկնչեն՝ չկամիցին զխիղճս մտացն ապականել, այլ կամիցին ունել ազատութիւն ընթալ զհետ եպիսկոպոսացն որ զկապ սիրոյն պահեն եւ ընդ մշտնջենաւոր եւ անխախտ հաղորդութիւն կամին։ Չէ մարթ չէ հնար ինչ իրք՝ զի երկու ինչ հակառակք միմեանց միաբան գոցեն, ընդդէմքն միացին, ճշմարտութիւն եւ սուտ թիւն ի դաշն մտանիցէ, տիւ եւ գիշեր, լոյս եւ խաւար առնիցեն ընդ միմեանս հաղորդութիւն։ Ուստի Աստուած զիւր ծանօթութիւն, այլ ոչ բանադատեալ ընդունել. զարմանալեաց գործոց իւրոց ծանուցեալ բարձրացոյց զվարդապետութիւն իւր, բայց բանադատութիւն առ ընդունելութիւն վարդապետութեանն անարժան համարեցաւ։ Եթէ վասն ճշմարիտ հաւատոց այսպիսի բանադրութիւն լինէր արկեալ ի կիր՝ յառն կային եպիսկոպոսունք եւ առէին. Տէր է Աստուած տիեզերաց, չէ նա կարօտ բանադրողի հնազանդութեան կամ բանադատ խոստովանութեան։ Չէ պարտ կամել խաբել զնա, այլ արժանի լեալ նմա լինել։ Մեր վասն մանաւանդ եւ ոչ եթէ նորա ինչ վասն պաշտելի եւ պատուելի է։ Ոչ զոք կարեմք ընդունել յեկեղեցի՝ բայց որ կամի, նմա միայն զկշտանկեմք՝ որ աղաչէ, զնա միայն միաւորեմք՝ որ դաւանի։ Միամտութեամբ արդեւ պարտ է խնդրել զնա, խոստովանութեամբ՝ ուսանել, սիրով՝ զիրկս արկանել, երկիւղիւ՝ մեծարել, բարեկամութեամբ պինդ ունել զնմանէ։ Սակայն զի՞նչ այն կամեցի՝ զի եպիսկոպոսունք չքթայիւք եւ կապանօք բռնադատեալ երկնչել յԱստուծոյ։

Digitized by Google

որպէս թէ ճոխութեամբն իւրով յուզէ խառնակութիւնս, եւ այնպէս աքսորեցաւ Հիղարիոս ի Փռիւգիա (356)։ Անդ գրէր զգարմանալի գիրսն «Զերրորդութենէ» առ Կոստանդիոս յ12 դպրութիւնս եւ «Զսիւնհոդոսաց» առ Արիանոսսն, եւ զթուղթն երկրորդ առ Կոստանդիոս։

Ի Սպանիա եպիսկոպոսունք չկալան հաղորդութիւն ընդ Արիանոսաց եւ չառին յանձն արկանել ձեռնագիր դատապարտութեանն Աթանասի, առաջնորդութեամբ 100ամեայ ծերունւոյն Ոսիոսի, որ եւ համարձակեցաւ գրել առ Կոստանդիոս դադարել ի խառնելոյ զանձն յիրս եկեղեցւոյ[1]։ Սակայն Պատամիոս եպիսկոպոս Ողիսիպպոյ (որ թուի լեալ այժմու Լիսաբոն քաղաք) Լուսիտանացւոց՝ կաշառեալ ի պարգեւացն առաքելոց ի Կոստանդեայ՝ անց ի կողմն Արիանոսաց։ Սորա իսկ թելադրութեամբ կոչեցաւ Ոսիոս յարքունիս. սաստիկ տագնապէր անդ կայսր զծերունին մեծաւ չարչարանօք, զայն՝ զոր այնպէս պատուեալ էր մեծարանօք հայրն. տկարացաւ Ոսիոս, արկ ձեռնագիր երկրորդ սիրմեան հանգանակին յօրինելոյ ի Սիրմիոն յամի 357, դարձաւ յաթոռ իւր ի Կորդուբա եւ առ իսկ եւ իսկ յետս զձեռնագիրն։

## 70

Ի Հռոմ չկնէին ինչ յառաջադէմ Արիանոսք, զի ուղղափառք ժողովրդականք եւ կղերականք երդուեալ առ հասարակ փոխանակ Լիբերեայ աքսորելոյ՝ զայլ ոք եպիսկոպոս ոչ ընդունել։ Յայսպիսում հաստատութեան էին՝ յորժամ եկն Կոստանդիոս ընդ կնոջ իւրում Եւսեբիայ եւ ընդ քեռն իւրում Հեղինեայ կնոջ Յուլիանու (30 Ապր. 357) տեսանել զառաջինն զՀռոմ, եւ անդէն կատարել զհանդէս յաղթութեանն ի վերայ Մագնենտիոսի եւ զքսանամեակն իշխանութեան իւրոյ։ Եմուտ նա ի քաղաքն յաւիտենական՝ մեծաւ փառաւորութեամբ նստեալ միայն յոսկեպատ եւ յականակապ կառս, զըահաւոր հետեւակօք

1 Զի՞նչ ինչ նման սոցին առ Կոստանդեայ եղեւ։ Ո՞ր եպիսկոպոս մերժեցաւ, մինչ խառնեաց նա զանձն յեկեղեցական դատաստանս։ Ո՞ր գործակալ տէրութեան ստիպեալ ստորնագրեր արկանել ձեռնագիրս, զինչ ինչ համայն սոցին կարէցէ Վաղէս յառաջ բերել։ Դադարեա, հանդիր, աղաչեմ, յիշեա՛ զի մարդ մահկանացու ես։ Երկեր յօրէ դատաստանին, կալ զքեզ անարատ առ այն օր։ Մի խառներ զանձն յիրս եկեղեցւոյ, մի տար մեզ վասն սոցին հրամանս. այլ մանաւանդ ի մէնջ ուսիր վասն սոցին իրաց։ Քեզ զտէրութիւնն ետ Աստուած ի ձեռս՝ իսկ մեզ զեկեղեցի։ Զոր օրինակ որ զքո տէրութիւնդ հանէ ի քէն՝ Աստուծոյ հրամանին ընդդէմ դառնայ, այսպէս երկեր՝ զի մի առաւել պարտապան զանձն կացուցանիցես՝ յորժամ եւ դու զեկեղեցական իշխանութիւնն ի քեզ կորզես։ Կայ գրեալ՝ թէ «տուք զկայսերն կայսեր եւ զԱստուծոյն Աստուծոյ»։ Մեր ի քաղաքայսն իրս չէ ինչ իշխանութիւն, եւ ոչ դու, կայսր, ունիս իշխանութիւն, եւ խնկուցս մատուցանելոյ պատարագ։ Զայս գրեմ՝ զի հոգ եւ փոյթ է ինձ զքումէ փրկութենէդ։ . . . Ո՞ հաւանեցոյց զքեզ յետ այսչափ ժամանակաց՝ զխոստումն քո եւ զթուղթս մոռանալ։ Դադարեա, մի զհետ բանից չարացելոցն։ Եթէ առա զհետ երթաս դու նոցա, այլ ի դատաստանի միայն միայնակ տալոց ես վասն անձինդ պատասխանի։ . . . Լուր աղաչեմ, ով Կոստանդիոս, եւ եկ զհետ բանից իմոց։ Ինձ անկ է գրել զայս ամենայն եւ քեզ՝ չարհամարհել»։

եւ հեծելովք հանդերձ, եւ շուրջ զկառօքն ծփայքն ի վերայ ոսկեաց նիզակաց վիշապք ծիրանիք մետաքսեայք՝ որ ի շնչելն հողմոյն սուլէին։ Իսկ ընդ առաջ նորա ծերակոյտն, եւ ողջոյն նմա ժողովրդն ուրախութեան բարբառով, եմուտ նա ի պալատն Օգոստեայ, խօսեցաւ ճառ ի ծերակուտին եւ ապա առաջի ժողովրդեանն՝ ի բեմէն անուանելոյ Ցռուկս՝ յորմէ որոտայր երբեմն Կիկերոն։ Կամեցաւ թողուլ զյիշատակ իւր Հռոմայ՝ հրաման տուեալ ածել կոթող մի յԱրեգ քաղաքէ Եգիպտացւոց, զոր ապա Սիքստոս Ե. քահանայապետ կանգնեաց առաջի Լատերանեան եկեղեցւոյ։ Ի Հռոմ ամենեւին ներող զանձն եցոյց կայսր. որ յառաջ քան զամ մի մահու պատժով արգել զպաշտօն կռոց՝ նոյն եթող Վեստեան կուսանաց զմեծամեծ իրաւունսն, եւ մեհենից՝ զհասսն, եւ եւս քրմացն պաշտամունս քրմութեան, ընդ ծերակուտին շրջեցաւ ընդ փողոցսն՝ տեսանել զմեհեանսն, ընթեռնուլ զարձանագիրսն որ ի պատիւ դիցն գրեալ էին, լաւա-զպատմութիւն շինութեան այլ եւ այլ մեհենից եւ զշինողսն գովեաց։

Ընդ սինկղիտիկոս եւ ընդ մեծամեծս քաղաքին էին բազումք քրիստոնեայք՝ որոց կանայք թախանձէին զնոսա աղաչել զկայսր վասն դարձի Լիբերեայ քահանայապետի։ Նոքա չկարացեալ ի դոյն համարձակել՝ նոցին իսկ կանանց եմուտ խորատ երթալ առ կայսր։ Ժողովեցան տիկնայքն բարեպաշտօնք մեծափութով, եւ զարդարեալ մեծաւ զարդու եկին առ կայսր եւ աղաչէին արգահատել քաղաքին Հռոմայ եւ տալ զհայր իւրեանց եւ զեպիսկոպոս։ Ունիք, ասէ կայսր, եպիսկոպոս՝ որ կարող է առաջնորդել ձեզ ընդ ուղիղ ճանապարհ։ Ոչ եք, ասեն տիկնայքն, երթայ յեկեղեցի ուր Փեղիքսն է, զի նա թէպէտ եւ ուղիղ հաւատս ունի, բայց ընդ այնոսիկ որ զհաւատսն պղծօրեն՝ ի հաղորդութեան է։ Չկարաց կայսր զլանալ զաղաչանս նոցա, եւ յօրինել հրաման դառնալոյ Լիբերեայ եւ առաջնորդելոյ եկեղեցւոյն միաբան ընդ Փեղիքսի։ Ընթերցաւ հրամանն ի կրկէսն. նախ այպանել սկսաւ ժողովուրդն ասելով՝ թէ Կատակ է, ըստ երկուց կուսակցութեանց հանդիսատեսաց կրկիսին՝ նոյնպէս եւ կուսակցութիւնք եկեղեցւոյ ունիցին մէն մի եպիսկոպոս. ապա զայրագին գոչել սկսան՝ թէ «Մի Աստուած, մի Քրիստոս, մի եպիսկոպոս»։ Լիբերիոս՝ ընդ որոյ միայն հաստատութիւն զարմացեալ էր, ասէ Ս. Աթանաս, ամենայն երկիր, պատմի թէ յետ երկուց ամաց աքսորանացն առ վշտին արկեալ իւր ձեռնագիր առաջնոյ սիրմեան (անմօրար) հանգանակին, զոր եդ առաջի նորա Դեմոփիլոս կէս արիանոս եպիսկոպոս Բերիայ, եւ այնպէս դարձեալ իցէ ի Հռոմ։ Սակայն ասել հաւանութեան է թէ սուտ են թուղթքն որ յանուն Լիբերեայ յածին ի գործս Ս.

Digitized by Google

## 67

Մինչ դեռ Կոստանդիանոս յարեւելս էր անդադար պատերազմաւ ընդ Շապհոյ Բ. Պարսից արքայի (338—361), որպէս յիւրում տեղւոջ պատմեցաք, արեւմուտք էին ի խաղաղութեան ընդ առաջնորդութեամբ եղբօրն: Բայց քանզի եւ սա չէր ինչ մեծարոյ եւ սիրելի ժողովրդեան իւրում, եւ Մագնենտիոս ոմն անուն յազնուական տոհմէ իմնքէ Գերմանացւոց, որդի Մագնոսի ուրումն ածելոյ ի Կոստանդիանոսէ Ա. իբրեւ պատանդ ի Գաղիա, բարեձեւ, ճարտարախօս եւ սիրող գիտութեանց, նախ ընկալեալ ի Կոստասայ ի թիւ անձնապահացն· եւ ապա կարգեալ կոմս ի սահմանակողմանս Գաղիոյ իբրեւ հրամանատար Արամազդեան եւ Հերակլեան (այսինքն՝ Դիոկղետիանեան եւ Մաքսիմիանեան) լեգէոնացն: Խստութեամբ պահպանութեան զինուորական կարգաց անկաւ երբեմն ի վտանգ լինելոյ սուսերահար ի զօրացն, բայց ապրեցոյց զնա Կոստաս ծածկեալ զնա ընդ ծիրանւոյն իւրով: Բայց Մագնենտիոս՝ որպէս զայլ ազնուական խորհուրդս, նոյնպէս եւ ոչ շնորհակալու միտս ունէր, միաբանեցաւ նա ընդ Մարկեղինեայ գանձապետի, եւ ի խնճոյս ուրեք յՕգոստոդունոն՝ յորժամ ընդ գինիս մտեալ էին բազմականքն՝ եմուտ ծիրանաւոր եւ կապեալ թագ ի գլուխ. յետ ողջունելոյ ի բազմականէն կալաւ զպալատն կայսերական եւ զգանձն, հնազանդեցին նմա քաղաքացիքն եւ լեգէոնքն:

Այդ եղեն իրքն Կոստասայ՝ որ յորս էր ի հեռաւոր կողմանս. ջանայր փախստեայ անկանել ի Սպանիա, բայց գունդն առաքեալ ի Մագնենտեայ առաջնորդութեամբ Գայիսոյ հասեալ առ ոտամբ Պիւրենեան լերանց սպան զնա ի Հեղղա կամ Հեղենա՝ 30ամեայ, յետ 13 ամաց առաջնորդութեանն (350): Արդարեւ բաց ի պաշտպանութենէն զոր ուղղափառացն եցոյց՝ սակաւ ինչ երեւի ի նմա արժանի գովութեան, սակայն եւ ոչ այնպէս լի է յոռութեամբք որպէս ոմանք ի վերջին մատենագրաց նկարեցին: Թուի թէ Եւտրոպիոս ուղղագոյն քան զամենեսին եբեր վճիռ՝ զի ասէ թէ „Ժամանակս ինչ առաջնորդութիւն Կոստասայ ժիր էր եւ արդար. այլ յետ սակաւ ինչ միջոյ՝ յորժամ առողջութիւնն վատթարեցաւ եւ չարաց բարեկամաց ետ նա զանձն, անկաւ նա ի գժնդակս, եղեւ ծանր բնակչաց նահանգացն եւ զօրացն յաչաց ել„:

Ընկալան զՄագնենտիոս Գաղիա, Բրիտանիա, Իտալիա եւ Ափրիկէ, եւ եղբարք նորա Դեսիդերիոս եւ Դեկենտիոս անուանեցան ի նմանէ կեսարք: Սակայն զՀռոմ կալաւ Նեպոտիանոս ուստր Եւտրոպիայ քեռն Կոստանդիանոսի Մեծի, եւ զԻլլիրիկէ Վետրանիոյ ծերունի հրամանատար լեգէոնացն Պաննոնիայ, որ ա-

Digitized by Google

նուաճեցաւ ի զօրացն՝ աւգոստոս, եւ առ յանձն Վետրանիոյ՝ առնուլ փառս զաշխարհն ի բռնաւորէն պահելոյ (որպէս ինքն Յուլիանոս ասէ)։ Որպէս սա, նոյնպէս եւ Մագնենտիոս յետ առնլոյ զգահն ի ձեռն Մարկելլինեայ՝ յղէր պատգամաւորս առ Կոստանդիոս, յորս էին եւ եպիսկոպոսունք երկու որք անցին ընդ Աղեքսանդրիա երթալ յԱնտիոք. այլ Կոստանդիոս որ առ սակաւ մի ոգի առեալ էր ի պարսկական պատերազմէն վասն զրաւելոյ Շապհոյ Բ. յարեւելից կուսէ տէրութեան իւրոյ, եւ պատրաստեալ գունդ յԱնտիոք եւ նաւատորմիղ մեծ, մերժեաց զերկոցունց եւս առաջարկութիւնսն, նոյնպէս մեւս եւս միաբան հրեշտակութիւն առաքեալ ի Հերակղեա Թրակացւոց ի Վետրանիոյ եւ ի Մագնենտեայ դաշնաւորելոյ, չկարաց մերժել ինչ, թէպէտ եւ ընդունէին երկոքին՝ լինել Կոստանդեայ աւգոստոս գլխաւոր, եւ լինել Մագնենտեայ քեռայր կամ փեսայ Կոստանդեայ։

Ճանապարհեաց եհաս Կոստանդիոս ի Սարդիկէ, այլ իբրեւ ետես թէ պատահեաց ընդ առաջ նորա ծերունին Վետրանիոյ հզօրագոյն բանակաւ՝ չհամարձակեալ անկաւ ի պատգամս, ընկալաւ զնա յաւգոստոս, եդ ընդ նմա դաշինս ընդդէմ Մագնենտեայ։ Բայց իբրեւ խառնեցան զօրքն ընդ միմեանս եւ երկոքին ելին ի բեմն խօսել ընդ նոսա, այնպէս ի բանից անտի Կոստանդեայ բորբոքեցաւ զօրն՝ զի միայն զորդիս երախտաւորին Կոստանդիանոսի համարեցաւ արժանի աթոռոյ եւ յամենեցունց Կոստանդիոս ողջունեցաւ՝ աւգոստոս։ Խոնարհեցաւ Վետրանիոյ, անկեալ յոտս՝ տայր զծիրանին եւ զթագն իւրում նախանձորդին՝ որ եւ արկ զիրկս զնովաւ, հայր կարդաց, ձեռն ետ նմա իջանել ի բեմէն յողորմն քայլիւք (25 Դեկտ. 350), եւ առաքեաց ի Պրուսա Բիւթանացւոց կեալ թագաւորաբար. բայց կեայր անդ Վետրանիոյ ամս 6 քրիստոնէաբար՝ յաճախելով սաէպ յեկեղեցի եւ պատուելով զպաշտօնեայս Աստուծոյ եւ խնամակալ աղքատաց լինելով, մինչեւ հրաւիրել եւս նմա երբեմն զկայսր թղթով՝ ընտրել զնոյն կեանս հանդարտութեան։

Ընդ Գեւրիկեայ ստացաւ Կոստանդիոս հեծելազօր բազում եւ հզօր, եւ կամէր ածել զթշնամին ի դաշտավայրսն Պանոնիոյ ի կռիւ. ի պատերազմին առ Միւրսիա (Միւսէքաւ) վանեցաւ զօրն Կոստանդեայ, այլ ի ճակատուն առ Մուրսաւ (28 Սեպտ. 351) պարտեցաւ Մագնենտիոս եւ ել փախստեայ յԱկուիլէա. յաղթութիւն Կոստանդեայ ի ձեռն զրահաւոր հեծելոցն եւ քաջաց զօրավարաց եղեւ, մինչ դեռ ինքն կայսր կայր յեկեղեցւոջ ուրեք եւ քաջալերէր ի Վաղենէ յարիանոս եպիսկոպոսէ քաղաքին որ եւ նախ ետ նմա զաւետիս յաղթութեանն (իբրեւ ի հրեշտակէ Աստուծոյ խմացեալ)։ Բայց վասն սաստիկ կոտորածի զօրացն՝ չառ յանձն Կոստանդիոս հալածել զՄագնենտիոս իսպառ.

Դաղմատիա վաղ անց ի ձեռս նորա, գարնայնի (352) անց ընդ Ալպս, ի Հռոմ կանգնեցին զդրօշս նորա ի վերայ պարսպին, տորմիղ նաւացն առաքեալ ի Սիկիլիա, յԱփրիկէ եւ ի Սպանիա դարձոյց զամենեսին առ Կոստանդիոս. փախեաւ Մագնենտիոս յետ ճակատու իրիք առ Պաւիա ի Գաղղիա. հալածեալ ի Տրեւիրացիսն՝ որ փակեցին զդրունս իւրեանց առաջի Դեկենտեայ՝ զնոյն եւ այլ քաղաքք Գաղղիացւոց արարին, մինչեւ հարկ համարեցաւ Մագնենտիոս անկանել աշնայնի ի լերինս ուրեք Գաղղիայ, եւ ի միւսում ամին ամառայնի (353) հարաւ նա ի Կոստանդեայ առ Սեղեւկոս լերամբ, եւ ապրեալ ի Լուգդունոն՝ առ յուսահատութեան սպան ապա զմայրն եւ զեղբայրն զԴեսիդերիոս, եւ ինքն եղ ընդ իւր սուրն՝ ամաց իբրեւ 50 (11 Օգ. 353), նոյնպէս Դեկենտիոս արկ խեղդ ընդ անձն. գլուխ Մագնենտեայ ածաւ ի նահանգս շուրջանակի ի ծաղր նիզակի։

## 68

Իսկ եւ իսկ յետ վախճանի կայսերն Կոստանդեայ ձեռն արկին թշնամիք Աթանասեայ զրգռել զԿոստանդիոս, մանաւանդ յորժամ յետ յաղթութեանն ի վերայ Մագնենտեայ եկաց նա միահեծան տէր պետութեանն, եւ իբրեւ այն թէ չլինէր բաւական բառնալ տանել զիւր մեծութիւն։ Թուի իմն թէ դիմադարձութիւն ուղղափառ եպիսկոպոսացն՝ որ չտային նմա տեղի միաբանելոյ յառաջնորդութիւն եկեղեցական իրաց, առ սակաւ սակաւ հեռացոյց եւ ուծացոյց զԿոստանդիոս ի դաւանութենէ նոցա. քանզի Արիանոսք յօժարութեամբ ընդունէին զկայսր իբրեւ վարիչ եւ առաջնորդ եկեղեցւոյ։ Սոքա ինչ ինչ ի հին զրպարտութեանցն միւսանգամ ի մէջ բերէին եւ նորագոյնս եւս ի վերայ հնարէին, որպէս թէ ընդ Մագնենտիոսի ապստամբի ի բանի լեալ իցէ Աթանաս, ուր նմին հակառակ յանցանել պատգամաւորացն Մագնենտեայ ընդ Աղեքսանդրիա եւ ի կամել ապստամբեցուցանել զկողմանս Եգիպտացւոցն, հաստատեաց Աթանաս զժողովուրդն ի հպատակութեան Կոստանդեայ յորդորեալ զնոսա հրապարակաւ կալ յաղօթս վասն կայսեր, եւ գոչեաց ժողովուրդն համօրէն "Յիսուս Քրիստոս օգնական լեր կայսեր Կոստանդեայ," եւ դարձեալ թէ յեկեղեցւոջ ուրեք Աղեքսանդրիայ որ ոչ տակաւին օրհնեալ էր՝ ժողովեալ իցէ պատարագ, եւ այլ եւս նոյնպիսիք։ Վաղէս եւ Ուրսակիոս ասէին զնմանէ իւրեանց յետոյ՝ պատճառանելով թէ բռնի յայն եկին։

Հաւաքեցին Արիանոսք դարձեալ թուղթ ամբաստանութեան զԱթանասէ առ Յուլիոս քահանայապետ Հռոմայ, այլ զայն թուղթ ընկալաւ յաջորդ նորա Լիբերիոս. ընթերցաւ թուղթն

ի ժողովն կղերականացն Հռոմայ եւ մերժեցաւ։ Սակայն զմտաւ ածեալ քահանայապետին՝ թէ դիւրագոյն է ընդդէմ կալ կամաց կայսեր ժողովեալ եպիսկոպոսաց՝ գրեաց առ կայսր զի գումարեսցի սիւնհոդոս յԱքուիլէա։ Հաւանեցաւ կայսր զի լինիցի ժողովն՝ այլ յԱրելատ, ուր անցոյց իսկ զձմեռն տարւոյն (353). առաքեաց անդր փոխանակ իւր քահանայապետն զՎինկենտիոս եպիսկոպոս Կապուայ՝ տուեալ զվերջին թուղթ Արիանոսացն եւ վճարոց ինչ ջատագովութիւն եպիսկոպոսացն Եգիպտացւոց զի (որ իբրեւ յերիցութեան ժամանակի եկն ի ժողովն Նիկիոյ իբրեւ հրեշտակ Հռոմայ) պաշտպանեաց է Աթանասայ։ Մեծաւ սաստիկ երկիւղիւ ահաբեկ լեալ ի սպառնալեաց կայսերն՝ յետուստ ուրեմն արկին ամենայն եպիսկոպոսունքն ձեռնագիր դատապարտութեան Աթանասայ, Մարկեղայ եւ Փոտինեայ Սիրմիացւոյ, եւ Վինկենտիոս եւս. միայն Պաւղինոս եպիսկոպոս Տրեւիրայ ընդդէմ դարձաւ մինչեւ ցվախճան, բայց աքսորեալ ի Փռիւգիա ի մէջ Մոնտանեանցն յետ ամաց իբրեւ 5 առ տրտմութեանն եւ քաղցուն ի կենաց վախճանէր։

Տրամեցաւ տխրեցաւ յոյժ քահանայապետն ընդ անկումն Վինկենտեայ, եւ որպէս ի դէպ էր՝ յայտ արար առ հասարակ եպիսկոպոսաց՝ թէ ոչ ըստ իւրում յանձնարարութեան գործեաց նա։ Թէպէտ եւ ողոքմամբ յաչաց ել կայսերն քահանայապետն՝ մանաւանդ զի ամբաստանութիւն եւս զնմանէ էր՝ թէ զգիրս ինչ յանցաւորութեան Աթանասի բարձեալ ջնջեալ իցէ ի միջոյ, սակայն եւ այնպէս առաքեալ միւսանգամ հրեշտակութեամբ զԼուկիփեր եպիսկոպոս Կաղարիոյ, զայր համարձակախօս եւ զառաքինի, եւ զԵւսեբիոս Վերկեղեայ Լիգուրացւոց, զայր հանդարտ եւ իմաստուն՝ խնդրէր զի լիցի միւսանգամ ժողով ի Մեդիոլանոն (355)։

Դժուարաւ հաւանեցաւ Կոստանդիոս, զի ուսաւ միանգամ զհնարս ածելոյ զեպիսկոպոսունս ի հաւանութիւն։ Անդ էին յարեւելից սակաւ եւեթ եպիսկոպոսունք, ամենեքին ի կողմանէն Արիանոսաց, իսկ յարեւմտից իբրեւ 300 (ըստ Սոկրատայ եւ Սոզոմենայ)։ Յառաջագոյն Արիանոսք յօրինեալ եւ պատրաստեալ զամենայն պահանջեցին ի սիւնհոդոսէ դատապարտել զԱթանաս, ուր ուղղափառ եպիսկոպոսունքն առաջնորդութեամբ Եւսեբեայ Վերկեղացւոյ, խնդրէին՝ զի նախ արկցի ամենեցուն ձեռնագիր Նիկէական դաւանութեանն, եւ հանեալ իսկ էր Դիոնեսիոս եպիսկոպոս Մեդիոլանու քարտէս՝ սկիզբն առնել իւրացն, այլ Վաղէս հան զնա բռնի ի ձեռացն։ Իսկ եղեն խռովք ի քաղաքին. խռնեցաւ ժողովուրդն՝ իմացեալ թէ վտանգ ի վերայ կայ աւանդութեան հաւատոյն։ Յայնժամ հանեալ յեկեղեցւոյ փոխեցաւ ժողովն ի պալատն արքունի. եւ կայսրն յետոյ վարագուրի

սրահին նստեալ լինէր ի ժամ վճռմանցն: Ընդէն ի մէջ բերաւ հրովարտակ ինչ կայսեր՝ եւ բանիւք վարդապետութեան Արիանոսաց, զորոյ զճշմարտութիւն անդէն հաստատէր կայսրն ասելով թէ յանուրջս յԱստուծոյ յայտնեցաւ այն նմա, եւ զի ի վերայ ամենայն թշնամեացն իւրոց յաղթող գտաւ, որով յայտ է թէ հաճեալ է ընդ նա Աստուած: Այսմ հրովարտակի ստիպէին արկանել ձեռնագիր գործակալք թագաւորին: Համարձակեցաւ Ղուկիփեր բարբառել թէ միայն նիկիական հաւատք ուղղափառ են, եւ թէ ամենայն զօրութիւն զինուց թագաւորին չկարէ տալ արկանել ձեռնագիր հրովարտակին որ լի է հայհոյութեամբ: Յայնժամ ել թագաւորն ի վարագուրէն ի ժողով անդր եւ ստիպէր մեծաւ տագնապաւ դատապարտել զԱթանաս: Զուր բողոքէին եպիսկոպոսունքն թէ չարժէ վկայութիւն Վաղէսի եւ Ուրսակիոսի, եւ թէ Աթանաս չէ աստ, սինհոդոսն չէ աշխարհական ատեան Հռոմայական տէրութեան. իսկ թագաւորն զիւրոյ իսկ անձին վկայութիւն ցուցանէր, եւ թէ իւր կամք՝ օրէնք եկեղեցւոյ են, քանզի եւ արեւելեայք, ասէ, չդառնան ինձ ընդդէմ՝ յորժամ տամ ինչ նոցա հրաման: Ապշեցան վարանեցան եպիսկոպոսունք, զձեռս յերկինս համբարձեալ յուշ առնէին թագաւորին՝ թէ չէ ստացեալ նորա սեպհական՝ թագաւորութիւնն, այլ Աստուծոյ իսկ տուեալ է, որ եւ կարող է առնուլ ի բաց. ցուցանէին զօր դատաստանի, աղաչէին չխանգարել զեկեղեցին եւ մի զՀռոմայական տէրութիւնն եւ զեկեղեցի խառնակել ընդ միմեանս: Ամբարձ զսուր իւր թագաւորն եւ հրամայէր լուռ լինել: Պատուէր ետ զոմանս ի նոցանէ սպանանել, բայց ապա դարձոյց յետս զհրամանն. մեծ մասն եպիսկոպոսացն ետ տեղի սպառնալեաց թագաւորին: Հրեշտակն քահանայապետին Հիղարիոս սարկաւագ՝ ի Վաղեսէ եւ յՈւրսակեայ եւ ի ներքինեաց գանակոծ եղեւ, եւ ընդ պաշտօնակցին իւրում ընդ Պանկրատեայ երիցու աքսորեցաւ. նոյնպէս աքսորեցաւ եւ Ղուկիփեր ի Գերմանիկիա ի բանտս խաւարչտին, Եւսեբիոս Վերկեղեայ ի Սկիւթուպօղիս, Դիոնեսիոս Մեդիոլանու ի Գամիրս՝ ուր եւ մեռաւ իսկ, եւ փոխանակ նորա եղաւ Աւքսենտիոս Կապադովկացի ձեռնադրեալ ի Գրիգորէ որ եպիսկոպոսն եկաց Աղեքսանդրիայ, որ (ըստ Ս. Աթանասի) եւ ոչ զհռոմայեցի լեզու գիտէր:

Այլ քան զամենայն ինչ՝ մեծ համարէր յարքունիս Կոստանդեայ հաւանութիւն եպիսկոպոսին Հռոմայ: Այն ինչ գրեալ էր Լիբերեայ թուղթ միաբանութեան առ եպիսկոպոսունս աքսորեալս՝ ցաւելով ընդ բաժանումն նոցա եւ ուրախ լինելով թէ եւ նմա ի մօտոյ հասանիցէ նոյն վիճակ. ցանկայի, ասէ, փոխանակ ամենեցունց զանձն տալ եւ լինել ձեզ օրինակ բարեաց, որպէս ի դէպ իսկ էր ցանկալ եւ բարբառել գլխոյն եկեղեցւոյ. անդէն ըստ մե-

Digitized by Google

ծուլութեան իւրացն՝ ոչ դոյզն ինչ, այլ ինքն իսկ Եւսեբիոս ներքինապետ առաքեցաւ ի Հռոմ շրջել զմիտս նորա. զի արկցէ ձեռնադիր մերժմանն Աթանասի, բայց ընդունայն եղեալ մեկնէր ապառնալեօք, թողեալ զպարգեւսն որով կաշառելն եկեալ էր՝ ի վերայ գերեզմանի սրբոյն Պետրոսի, զոր արհամարհեալ քահանայապետին եւ դարձուցանել առ նա: Ապա հասանէր հրաման առ վերակացու քաղաքին Հռոմայ առնել գաղտ ձերբակալ զԼիբերիոս. աւհ մեծ անկանէր ընդ քաղաքն ամենայն, կանայք մեծամեծացն մեկնեցան ի գեղս, բազմաց տուեալ եւ արծաթ՝ մատուցանել անբաւականութիւն զԼիբերեայ. ապա առեալ ածան յարքունիս Կոստանդեայ[1], որ յետ խօսելոյ ընդ նմա բազում ինչ, զի փոփոխեսցէ զմիտս իւր, իբրեւ զտես հաստատուն՝ աքսորեցաւ ի Բերիա Թրակացւոց, առանց ընդունելոյ զարծաթն՝ զոր տայր նմա կայսրն եւ կին նորա (Եւսեբիա) եւ ներքինապետն, ասելով՝ թէ Պիտոյ է այն վասն պատերազմին ընդ Պարսից: Ընդ նմա աքսորեցաւ եւ Մաքսիմոս եպիսկոպոս Նէապոլեայ, որոյ փոխանակ եկաց Զոսիմոս, որպէս փոխանակ Լիբերեայ Փեղիքս սարկաւագ եկեղեցւոյն Հռոմայ, զոր ձեռնադրեցին ի կայսերական պալատանն ի Հռոմ Եպիկտետոս արիանոս եպիսկոպոս Կենտում-Կեղեաց եւ Ակակ Կեսարիայ:

## 69

Իսկ եւ իսկ յետ ժողովոյն Միդիոլանու հան հրաման Թագաւորն՝ զի ցորեանն սահմանեալ վասն աղքատաց եկեղեցւոյն կողմանն Աթանասայ՝ տացի Արիանոսաց, եւ ետ պատուէր առ այս կարգեալս ի պաշտամունս տէրութեան՝ հաղորդել ընդ նոսա, եւ հրաման ի քաղաքս՝ ստիպել իւրաքանչիւր քաղաքի զիւր եպիսկոպոս՝ հաւանել վճռոյ սինհոդոսին եւ ի բաց կալ յԱթանասէ, ապա թէ ոչ աքսորել զնոսա, ի բանտ արկանել եւ տանել զինչս յարքունիս: Երիցունք Վաղենսի եւ Ուրսակեայ շրջէին ընդ գործակալացն արքունի: Այսպէս ցանցն արկեալ ի հետաստանէ տակաւ ամփոփեալ մերձենայր յԱթանաս: Եկեալ Սիւրիանոս զօրավար զօրաց Եգիպտոս 5000 զօրօք՝ տայր հրաման հայրապետին մեկնել յԱղեքսանդրիայ. իբրեւ պահանջէր նա գրով ցուցանել զհրաման կայսերն, եւ ժողովուրդն եւ կղերն եւ մեծամեծք քաղաքին աղաչէին ի դոյն զզօրավարն եւ ածին ունէին հրեշտակութեամբ ածել յողոք զկայսրն, յանկարծ յետ 20 աւուրց յարձակէր զօրավարն վառելովք ի մէջ գիշերի յեկեղե-

1 Հռչակեալ պատմագիր ժամանակին Ամմիանոս Մարկելլինոս (Գիրք ԺԵ. Գլ. Է.) ասէ Հեթանոս արժանի յիշատակի համարի զերան թէ «Հրամանաւ կայսեր վերակացուն կամ յառաջնակացն կրօնից քրիստոնէութեան (Christianae legis antistes) տարաքեցաւ ի Հռոմայ յարքունիս կայսեր, վասն զի հրամանի կայսերն եւ վճռոյ մեծի մասին ի պաշտօնակցացն՝ ընդդէմ դարձաւ:



Digitized by Google

ցի Ս. Թէոփիլոս ուր Աթանաս հանդերձ բազմութեամբ ժողովրդեան զհսկումն յաջորդ աւուր տօնին կատարէր. իբրեւ զքանչելեօք իմն փախուցին զհայրապետն կղերականք նորա՝ մինչդեռ նա կամէր եղանել ընդ առաջ խնդրելեացն (8 փետր. 356)։ Ապանութիւն, բրածեծ գան, բանդք, աքսորք՝ զմիմեանս փոխանակէին ի ժողովրդեանն. բայց որ քան զամենայն դաժանագոյն էր՝ պահանջէր ի նոցանէ զօրավարն տալ գրով վկայութիւն առ կայսր թէ առանց խռովութեան ամենայն կատարեցաւ։ Հաճոյ թուեցաւ կայսեր, առաքեցաւ Հերակղէոս կոմս խնդրել գտանել եւ զԱթանաս, բերեալ հրաման եւ առ ծերակոյտն եւ ժողովուրդն Աղեքսանդրացւոցն՝ ուղղափառաց տալ միւսանգամ զեկեղեցիսն ի բաց եւ զեպիսկոպոսն նոցա մերժել. իբրեւ ընդդէմ դարձան ուղղափառքն՝ հանաւ ի վերայ նոցա գունդ հեթանոս որ եմուտ ի նորաշէն եկեղեցին անուանեալ Կեսարիոն, զկանայսն եւ զկուսանս որ տակաւին յաղօթս էին չարչարեաց եւ Արիանոսք կային հայէին լի ծաղու եւ ուրախութեամբ։ Անդէն հասանէր նոր մետրապոլիտ Գէորգ Կապադովկացի որդի թափչի, այն ինչ ձեռնադրեալ յԱնտիոք, որ ըստ վկայութեան հեթանոս իսկ պատմագրին (Ամիանեայ) դառնացոյց զկայսր ի վերայ Աղեքսանդրացւոցն, գրգռեաց զնոսա արկանելով ծանր հարկս ի վերայ տանց նոցա, ասելով՝ թէ երբեմն Աղեքսանդրոս մեծ իւրով ծախուք շինեաց զքաղաքն. իւր անմենավաճառութեամբ զբորակն, զաղ եղտիւրացն եւ զբոյսն պապիւրոսի։

Բայց Աթանաս թագուցեալ կայր ժամանակս ինչ յԱղեքսանդրիա կամ մօտ ուրեք անդր, այլ ապա մեկնեցաւ յանապատ ի մէջ վանականացն, ուր եւ զգիրս պատասխանատուութեանն յօրինէր, եւ զմիւս եւս գիր վասն արդարացուցանելոյ զփախուստն իւր, զի վատութեան գործ համարէին զայն Արիանոսք։ Խուզեաց որոնեաց զնա Կոստանդիոս եւ յանապատի անդ (ի տան Արտեմիոսի ուրեմն), նա աւանիկ եւ առ թագաւորն Եթովպացւոց գրէր՝ զի եպիսկոպոսն նոցա Ս. Փրումենտիոս (աշակերտն Աթանասայ եւ ձեռնադրեալն ի նմանէ) առաքեսցի յԱղեքսանդրիա եւ քննեսցին ի Գէորգայ հաւատք նորա, զի եթէ ունիցի "զհաւատսն որ այժմն շահեալ տիրէ,,[1] դարձցի զանձուք գիտութեան եւ շինեալ ի Գէորգայ յետս, ապա թէ ոչ՝ իբրեւ հաղորդակից ժանտին Աթանասայ մերժեսցի յաթոռոյն։ Սակայն յայսր ամենայնի վերայ՝ ոչ միայն զԵգիպտոս, այլ եւ զԱղեքսանդրիա իսկ չկարացին շահել Արիանոսք։

Ըստ նմին օրինակի եւ ի Գաղիա Սատուռնինոս եպիսկոպոս Արելատայ կացուցեալ անդէն փոխանակ Պաւղինեայ, էր լեալ մի ի գլխաւորաց Արիանոսացն ի Միդիոլանոն, այլ չկարաց

1 Τῇ νῦν κρατούσῃ πίστει.

Digitized by Google

վճարել ինչ ընդդէմ ուղղափառացն։ Վասնզի ընդ այն իսկ ժամանակս սկսեալ էր աստղ նոր՝ ծագել լոյս ուրախարար ի խաւարին մրրկի ժամանակացն այնոցիկ՝ Ս. Հիղարիոս Պիկտաւիացի, Աթանասն արեւմտից։ Էր նա յերեւելի տանէ հնոյն Գաղղիացւոց կրթեալ ի հեթանոսութեան, ունեալ գիտութիւնս, երեւելի եւ համբաւաւոր փիլիսոփայութեամբ եւ ճարտարխօսութեամբ. չյագեալ այլ եւ այլ վարդապետութեամբք փիլիսոփայութեանն՝ ի խնդիր էր միոյ միայնոյ ճշմարտութեանն՝ զոր եգիտ նա ի գիրս սուրբս մեծաւ զարմացմամբ, եւ ընկալաւ հաւատովք յեկեղեցւոջ՝ որ զաստուածութիւնն Քրիստոսի դաւանէր։ Այն ինչ լեալ նորա եպիսկոպոս Պիկտաւիոն (Poitiers) քաղաքի՝ սկսաւ երեւել գլուխ եպիսկոպոսացն Գաղղիայ, բերան նոցա եւ տեղապահ յամենայնի։ Արար նա ընդունայն զջանն Սատուռնինոսի որ ջանայր ի ժողովին Բիտերրեայ (Béziers) տալ ընդունել Գաղղիացւոց զվճիռս ժողովոյն Արեղատայ եւ Մեդիոլանու։ Բայց եւ զբուն առաջնորդ չարեացն զԿոստանդիոս փորձէր Հիղարիոս դարձուցանել համարձակ բանիւքն, յորժամ ուղղափառ եպիսկոպոսացն Գաղղիայ յանձն առնելով՝ գրէր առ նա թուղթ հանդարտեցուցիչ անդէն ի ժամանակի՝ զի Գերմանք անցեալ էին ընդ Հռենոս եւ համբաւ էր՝ թէ եւ Գաղղիացիք ապըստամբիցեն [1]։ Այլ առաւել զօրեցին ամբաստանութիւնք հակառակորդաց նորա առ Յուղիանոս կեսար եւ առ Կոստանդիոս,

1 Աղաչեմք եւ փարելի առնեմք ոչ բանիւք եւեթ այլ եւ արտասուօք, զի մի այսուհետեւ որպէս ցայժմ թշնամութիւն ընդ կաթուղիկէ եկեղեցւոյ լինիցի, մի ի հալածանս տառապիցս եւ յարքունութիւնս մատնեսցին, եւ այն՝ որ առաւել գաժանագոյն է՝ ի ձեռն եղբարց։ Ցեառնեա իսկ աւուրին՝ զի չէ պատշաճ զհաւատացեալան բանի արկանել ընդ իշխանութեամբ այնոցիկ որ չղաջորեն զանրամ տուա վարդապետութեանն ցանել։ Ձայս պահանջէ կաչուածն ձեր, յայս սակս իսկ աշխորդէք տէրութեանն՝ զի ամենայն հնազանդեալքդ ի քաղցր ազատութեան վայելիցեն։ Չէ մարթ այլով ինչ օրինակաւ չփոթութեանցն լինել լուծումն, պատակտութեանն փարատել՝ բայց յորժամ իւրաքանչիւր որ առանց անազատիկ ինչ բանադատութեան վայելիցէ զկատարեալ ազատութիւն կենաց։ Ապաքէն հարկ է քեզ անսալ բարբառոյ այնոցիկ որ բողոք բարձեալ գոչեն. եւ կաթողիկեական եմ, չկամիմ հերետիկոս լինել, եւ քրիստոնեայ եմ եւ ոչ արիանոս. կամիմ մանաւանդ կրել մահ մարմնոյ, քան բանադատութեամբ զպարկեշտ կուսութիւն ճշմարտութեանն արատել։ Պարտ եւ պատշաճ է իրաւացի իսկ երեւել քում տէրութեանդ՝ զի որ յԱստուծոյ եւ յաստուածեղէն գաղտնաւանացն երկնչին՝ չկամեցին զինքեանս մնացն արատել, այլ կամեցին ունել ազատութիւն ընթեալ զհետ եպիսկոպոսացն որ զկապ տերոյն պահեն եւ ընդ մշտնջենաւոր եւ աննենգ հաղորդութիւն կամին։ Չէ մարթ չէ հնար իւիք իրօք՝ զի երկու ինչ հակառակք միմեանց միաբան գտցին, ընդդէմքն միասցին, ճշմարտութիւն եւ սուտ թիւն ի դաշն մտանիցեն, տիւ եւ գիշեր, լոյս եւ խաւար առնիցեն ընդ միմեանս հաղորդութիւն։ Աւասիկ Աստուած զեւր ծանօթութիւն, այլ ոչ բանադատելով ընդունել. զարմանալիք գործոց իւրոց մեծացուցեալ բարձրացոյց զվարդապետութիւն իւր, բայց բանադատութիւն առ ընդունելութիւն վարդապետութեանն անարժան համարեցաւ։ Եթէ վասն ճշմարիտ հաւատոց այսպիսի բանադրութիւն լինէր արկեալ ի կիր՝ յառն կային եպիսկոպոսունք եւ ասէին. Տէր է Աստուած տիեզերաց, չէ նա կարօտ բանադրօսիկ հնազանդութեան կամ բանադատ խոստովանութեան։ Չէ պարտ կամել խաբել զնա, այլ արժանի ըստ նմա լինել։ Մեր վասն մանաւանդ եւ ոչ եթէ նորա ինչ վասն պաշտեսցի եւ պատուեսցի է։ Ոչ զոք կարեմք ընդունել յեկեղեցի՝ բայց որ կամի, ոչ լսել միայն զխոնարհեալ՝ որ աղաչէ, զնա միայն մկրտեմք՝ որ դաւանէ։ Միամտութեամբ սրտի պարտ է խնդրել զնա, խոստովանութեամբ՝ ուսանել, սիրով՝ գիրկս արկանել, երկիւղիւ՝ մեծարել, բարեպաշտութեամբ պինդ ունել զնմանէ։ Սակայն զի՞նչ այն կամիցի՝ զի եպիսկոպոսունք չզթայիւք եւ կապանօք բըռնադատին երկնչել յԱստուծոյ։

Digitized by Google

որպէս թէ ճոխութեամբն իւրով յուզէ խռովութիւնս, եւ այնպէս աքսորեցաւ Հիղարիոս ի Փռիւգիա (356)։ Ընդ գրէր զզարմանալի գիրսն “Զ Երրորդութենէ„ առ Կոստանդիոս յ12 դպրութիւնս եւ “Զ Սինհոդոսաց„ առ Արիանոսսն, եւ զթուղթն երկրորդ առ Կոստանդիոս։

Ի Սպանիա եպիսկոպոսունք չկալան հաղորդութիւն ընդ Արիանոսաց եւ չառին յանձն արկանել ձեռնագիր դատապարտութեանն Աթանասի, առաջնորդութեամբ 100ամեայ ծերունւոյն Ոսիոսի, որ եւ համարձակեցաւ գրել առ Կոստանդիոս դադարել ի խառնելոյ զանձն յիրս եկեղեցւոյ[1]։ Սակայն Պոտամիոս եպիսկոպոս Ողիսիպպոյ (որ թուի լեալ այժմու Լիսաբոն քաղաք) Լուսիտանացւոց՝ կաշառեալ ի պարգեւացն առաքելոց ի Կոստանդեայ՝ անց ի կողմն Արիանոսաց։ Սորա իսկ թելադրութեամբ կոչեցաւ Ոսիոս յարքունիս. ստիպէր տագնապէր անդ կայսր զծերունին մեծաւ չարչարանօք, զայն՝ զոր այնպէս պատուեալ էր մեծարանօք հայրն. տկարացաւ Ոսիոս, արկ ձեռնագիր երկրորդ սիրմեան հանգանակին յօրինելոյ ի Սիրմիոն յամի 357, դարձաւ յաթոռ իւր ի Կորդուբա եւ առ իսկ եւ իսկ յետս զձեռնագիրն։

## 70

Ի Հռոմ չկնէին ինչ յառաջադէմ Արիանոսք, զի ուղղափառք ժողովրդականք եւ կղերականք երդուեալ առ հասարակ փոխանակ Լիբերեայ աքսորելոյ՝ զայլ ոք եպիսկոպոս ոչ ընդունել։ Յայսպիսում հաստատութեան էին՝ յորժամ եւ եկն Կոստանդիոս ընդ կնոջ իւրում Եւսեբիայ եւ ընդ քեռն իւրում Հեղինեայ կնոջ Յուլիանու (30 Ապր. 357) տեսանել զառաջինն զՀռոմ, եւ անդէն կատարել զձաղանս յաղթութեանն ի վերայ Մագնենտիոսի եւ զքսանամեակն իշխանութեան իւրոյ։ Եմուտ նա ի քաղաքն յաւիտենական՝ մեծաւ փառաւորութեամբ նստեալ միայն յոսկիապատ եւ յականակապ կառս, զորահաւոր հետեւակօք

1 Զի՞նչ ինչ նման սոցին առ Կոստանդեայ եղեւ։ Ո՞ր եպիսկոպոս մերժեցաւ, երբ խառնեցաւ նա զանձն յեկեղեցական դատաստանս։ Ո՞ր գործակալ տէրութեան ստիպեալ տագնապէր արկանել ձեռնագիր, զի՞նչ ինչ հանգոյն սոցին կարիցէ Վաղէս յառաջ բերել։ Դադարեա, հանգիր, աղաչեմ, յիշեա զի մարդ մահկանացու ես։ Երկիր յօրէ դատաստանին, կալ զքեզ անարատ առ այն օր։ Մի խառներ զանձն յիրս եկեղեցւոյ, մի տար մեզ վասն սոցին հրամանս. այլ մանաւանդ ի մէնջ ուսիր վասն սոցին իրաց։ Քեզ զթագաւորութիւնն ետ Աստուած ի ձեռս՝ իսկ մեզ զեկեղեցի։ Զոր օրինակ որ զքո տէրութիւնդ հանէ ի քէն՝ Աստուծոյ հրամանին ընդդէմ դառնայ, այսպէս երկիր՝ զի մի առաւել զգատաստան զանձն կացուցանիցես՝ յորժամ եւ դու զեկեղեցական իշխանութիւնն ի քեզ կորզես։ Կայ գրեալ՝ թէ “տուք զկայսերն կայսեր եւ զԱստուծոյն Աստուծոյ„։ Մեք ի քաղաքային իրս չէ ինչ իշխանութիւն, եւ ոչ դու, կայսր, ունիս իշխանութիւն, եւ իրաւունս մատուցանելոյ պատարագ։ Զայս գրեմ՝ զի հոգ եւ փոյթ է ինձ զքոյդ փրկութենէդ։ . . . Ո՞հ հաւանեցայց զքեզ յետ այսչափ ժամանակաց՝ զխոստումն քո եւ զթուղթս մոռանալ։ Դադարեսցես, մի գնար զհետ բանից չարացելոցն։ Եթէ սոսա զհետ երթաս դու նոցա, այլ ի դատաստանի միայնակ տալոց ես վասն անձինդ պատասխանի։ . . . Լուր աղաչեմ, ով Կոստանդիոս, եւ եկ զհետ բանից իմոց։ Ինձ անկ է գրել զայս ամենայն եւ քեզ՝ չարհամարհել„։

*եւ հեծելովք հանդերձ, եւ շուրջ զպատօքն ծփային ի վերայ ոս-կեաց նիզակաց վիշապք ծիրանիք մետաքսեայք՝ որ ի շնչիւն հող-մոյն սուլէին: Եւ ինքն առաջ նորա ծերակոյտն, եւ ողջոյն նմա ժողովուրդն ուրախութեան բարբառով, եմուտ նա ի պալատն Աւգոստեայ, խօսեցաւ ճառ ի ծերակուտին եւ ապա առաջի ժո-ղովրդեանն՝ ի բեմէն անուանելոյ Յռոստրս՝ յորմէ որոտային երբեմն Կիկերոն: Կամեցաւ թողուլ զյիշատակ իւր Հռոմայ՝ հրաման տուեալ անել կոթող մի յՈւրեգ քաղաքէ Եգիպտացւոց, զոր ապա Սիքստոս Ե. քահանայապետ կանգնեաց առաջի Լատ-րանեան եկեղեցւոյ: Ի Հռոմ ամենեւին ներող զանձն եցոյց կայսր. որ յառաջ քան զամ մի մահու պատժով արգել զպաշտօն կռոց՝ նոյն եթող Վեստեան կուսանաց զմեծամեծ իրաւունսն, եւ մեհենից՝ զհասոյն, եւ եւս քրմացն պաշտամունս քրմութեան, ընդ ծերակուտին շրջեցաւ ընդ փողոցսն՝ տեսանել զմեհեանսն, ընթեռնուլ զարձանագիրսն որ ի պատիւ դիցն գրեալ էին, լսա-զպատմութիւն շինութեան այլ եւ այլ մեհենից եւ զշինողսն գովեաց:*

*Ընդ սինկղիտիկոսս եւ ընդ մեծամեծս քաղաքին էին բա-զումք քրիստոնեայք՝ որոց կանայք թախանձէին զնոսա աղաչել զկայսր վասն դարձի Լիբերեայ քահանայապետի: Նոքա չկարա-ցեալ ի դոյն համարձակել՝ նոցին իսկ կանանց ետուն խրատ եր-թալ առ կայսր: Ժողովեցան տիկնայքն բարեպաշտօնք մեծա-փութով, եւ զարդարեալ մեծաւ զարդու եկին առ կայսր եւ աղա-չէին արգահատել քաղաքին Հռոմայ եւ տալ զհայր իւրեանց եւ զեպիսկոպոս: Ունիք, ասէ կայսր, եպիսկոպոս՝ որ կարող է առաջնորդել ձեզ ընդ ուղիղ ճանապարհ: Ոչ ոք, ասեն տիկ-նայքն, երթայ յեկեղեցի ուր Փելիքսն է, զի նա թէպէտ եւ ու-ղիղ հաւատս ունի, բայց ընդ այնոսիկ որ զհաւատսն պղծեցին՝ ի հաղորդութեան է: Չկարաց կայսր զլանալ զաղաչանս նոցա, եւ յօրինել հրաման դառնալոյ Լիբերեայ եւ առաջնորդելոյ եկե-ղեցւոյն միաբան ընդ Փելիքսի: Ընթերցաւ հրամանն ի կրկէսին. նախ այպանել սկսաւ ժողովուրդն ասելով՝ թէ Պա՞չ է, ըստ երկուց կուսակցութեանց հանդիսատեսաց կրկէսին՝ նոյնպէս եւ կուսակցութիւնք եկեղեցւոյ ունիցին մէն մի եպիսկոպոս. ապա զայրագին գոչել սկսան՝ թէ «Մի Աստուած, մի Քրիստոս, մի եպիսկոպոս»: Լիբերիոս՝ ընդ որոյ մտացն հաստատութիւն զարմա-ցեալ էր, ասէ Ս. Աթանաս, ամենայն երկիր, պատմի թէ յետ երկուց ամաց աքսորանացն առ վշտին արկեալ իցէ ձեռնագիր ա-ռաջնոյ սիրմեան (անմօրալ) հանգանակին, զոր եդ առաջի նորա Դեմոփիղոս կէս արիանոս եպիսկոպոս Բերիոյ, եւ այնպէս դար-ձեալ իցէ ի Հռոմ: Սակայն առաւել հաւանութեան է թէ սուտ են թուղթքն որ յանուն Լիբերեայ յածին ի գործս Ս.*

Digitized by Google

Հիղարեայ, ուր Սոկրատ, Թէոդորետոս, եւ Սուղպիկիոս Սեւերոս ոչ ինչ ամենեւին յիշեն զայնմանէ. նմին իրի թուի՝ թէ ի պաղատանաց կանանց մեծատանցն Հռոմայ զիջաւ Կոստանդիոս դարձուցանել զնա, յայն սակս եւ մեծաւ ուրախութեամբ ընկալաւ զնա եկեղեցին Հռոմայ իբրեւ յաղթութեան իմն շքով, որ ապաքէն անհնարին էր՝ եթէ ստոյգ էր այն առաջին պատմութիւն։ Ուր՝ զի եւ Փեղիքս իսկ եւ իսկ մերժեցաւ ի քաղաքէն, թէպէտ եւ փորձ փորձեաց գալ միւսանգամ, բայց դարձեալ մերժեցաւ, եւ այնուհետեւ առանց առաջնորդութեան իրիք կաց նա մինչ մնացեալ ամս իբրեւ ութ ի գեղջ ուրեք առ Տիբերիս գետով։

## 71

Յետ ժողովոյն Մեդիոլանու եւ աքսորելոյ եպիսկոպոսացն ուղղափառաց՝ թուէր թէ լցան կատարեցան կամք կարծեաց կայսերն եւ գործակցաց նորա, այլ զուր. զի ոչ եթէ սովին կորեաւ սպառեցաւ կաթուղիկէ եկեղեցի. արտաքին իմն յաղթութիւն էր այն, բուն ժողովուրդն հաստատեալ կայր ի հաւատս աստուածութեանն Քրիստոսի, եպիսկոպոսունք ի տեղւոջ աքսորանացն, արեւելեայքն յարեւմուտս, արեւմտեանքն յարեւելս՝ կատարէին զպաշտամունս իւրեանց եւ բանիւ եւ գրով, ուր եպիսկոպոսունքն արիանոսք կաղ եւ գայթ ի գայթ վարդապետութեամբն իւրեանց չէին իմանալի ժողովրդեանն որ զբանն նոցա յօրինեալս նենգութեամբ յուղիղ միտս առնոյր, քանզի “սրբագոյն էին ժողովրդեանն լսելիք քան զսիրտս եպիսկոպոսացն„ (Ս. Հիղար. Պիկտաւ.)։ Բայց մանաւանդ երկպառակութիւնք վարդապետութեան Արիանոսացն, որք իբրեւ ցեց ի մոլորութենէ ծնանէին, անդէն ի կատարեալ բարձրութեան զօրութեանն իւրեանց՝ տկարացուցին զնոսա։

Վաղ իսկ իսկզբանն ի միջոյ անտի հակառակորդաց նիկիական հանգանակին երկոքին Եւսեբիոսքն ունէին այլ եւ այլ կարծիս ի միմեանց։ Կեսարացին դնէր մեղմագոյն իմն կարգ հպատակութեան Որդւոյ առ Հայր, եւ կամէր փոխանակ ի միասին էականին՝ նման էական (ὁμοιούσιος), իսկ Նիկոմեդացին մերժէր զամենայն նմանութիւն էութեան (ἑτεροούσιος)։ Սակայն երկոքին եւս զիւրեանց զսեպհական կարծիս թագուցեալ՝ յօրինէին ստէպ հանգանակս երբեմն ըստ ուղղափառ՝ եւ երբեմն ըստ կատարեալ արիանոսական մտաց։ Վաղ ուրեմն յԱնտիոք (341) յօրինեցան 4 հանգանակք (որք կան առ Աթան. Վասն սինհ.) եւ յետ այնորիկ (345) միւս եւս 5երորդ երկայնագոյն (μακρόστιχος) յաւելաւ, յորում Որդին Աստուծոյ կոչի կատարեալ եւ ճշմարիտ Աստուած եւ ամենայնիւ նման Հօր։

Digitized by Google

Այլ իբրեւ ի ժողովին Մեդիոլանու յաղթող ամենայնիւ երեւեցան Արիանոսք, յայնժամ ուրեմն ամբարձին զգլուխս իւրեանց բուն Արիանոսքն։ Աետիոս Կապադովկացի նախ դարբին պղնձոյ (կամ ոսկերիչ), ապա բժիշկ, յետոյ սարկաւագ յԱնտիոք (350) առ Ղեւոնդեաւ արիանոս եպիսկոպոսաւ, եւ ապա մերժեալ յԱղեքսանդրիա (+ 370), եւ Եւնոմիոս նորին աշակերտ եւ հայրենակից, եպիսկոպոս Կիւզիկոսի (+ 392), որ զգիրս սուրբս եւեթ ընդունէր իբրեւ ճոխութիւն հաւատոց՝ հակառակեալ աւանդութեան եկեղեցւոյ, եւ կարծեցուցանէր թէ մարդկան կատարեալ ծանօթութիւն զԱստուծոյ էութենէն՝ հասուցին առ ամենեւին ի ծայր եւ ի ծագ զաղանդ արիանոսութեանն, աւելով՝ թէ ընդ արարիչն եւ ընդ արարածն անբաւ իմն անջրպետութիւն ի միջի կայ, քանզի ծնողութիւնն՝ ոչ անձնական սեպհականութիւն Հօր, այլ էութենական սեպհականութիւն Աստուծոյ եղեալ՝ ծնելութիւնն Որդւոյ էական այլակերպութիւն ի Հօրէ համարէր եւ վասն այնորիկ զՔրիստոս թէպէտ եւ քան զարարածս վերագոյն է, ասէ, սակայն ամենեւին աննման է Հօրն ըստ էութեան (ἀνόμοιος κατ᾽ οὐσίαν καὶ κατὰ πάντα), եւ աստուստին կողմն նոցա կոչէր այնուհետեւ Անոմեանք կամ Օտարէականք կամ Չգոյէականք (ἀνόμοιοι, ἑτεροουσιάνοι, ἐξουκόντιοι), նմին հակառակ մեղմագոյնքն անուանէին Կէս արիանոսք եւ Նմանէականք (ὁμοιουσιανοί)։

Իսկ եւ իսկ գրաւեցան երկոքին կողմանքն ի մեծամեծ գժտութիւնս։ Անոմեանքն կամ Աննմանականք արարին ժողով ի Սիրմիոն Պաննոնիացւոց (357), եւ յօրինեցաւ մեւս եւս նոր աննմանական հանգանակ, երկրորդ հանգանակն Սիրմիոնի ի ժողովն ընդդէմ Փոտինոսի, (առաջինն էր յօրինեալ յամի 351 ըստ ուղղափառ մտաց, այլ առանց ի միասին էականին, հանդերձ 27 նզովիւք ընդդէմ Սաբելականութեան), զոր եւ սուտութեամբ համբաւէին յօրինեալ յՈսիոսէ որ յաքսորան էր յայնժամ. ի սմին մերժի ի միասին էականն եւ նմանէականն միանգամայն, վասն զի չգոն ի գիրս սուրբս եւ յայն սակս չիցէ պարտ արկանել ի կիր. եւ թէպէտ եւ անդէն հաստատի թէ քննութիւն էութեանն Որդւոյն Աստուծոյ անցանէ ըստ միտս, սակայն եւ այնպէս սահմանէ հանգանակն այն՝ թէ Հայր պատուով, իշխանութեամբ, որպէս եւ անուամբն իսկ վերագոյն է քան զՈրդի՝ որ յամենայնի հպատակ է նմա։

## 72

Վաղվաղակի գրգռեցաւ հակառակութիւն բուն Արիանոսացն եւ Կէս արիանոսաց ընդ միմեանս։ Եւդոքսիոս եպիսկոպոս Գեր-

Digitized by Google

մանիկեայ Ասորւոց իւրովի առանց կայսերն հրամանի եկն կալաւ զաթոռն Անտիոքայ եւ դարձաւ եկն առ նա յԱղեքսանդրիոյ մտերիմն նորա Աէթիոս, ածեալ ընդ իւր եւ զԵւնոմիոս: Սոքա երեքին մտին ի դաշն ընդ Ակակայ Կեսարիոյ եպիսկոպոսի եւ ընդ այլոց բուն Արիանոսաց եւ մերժեցին յիւրեանց եկեղեցեաց ոչ միայն զուղղափառսն այլ եւ զԿէս արիանոսսն:

Մերժեալք ի Կէս արիանոսացն դիմեցին առ Բասիլէոս եպիսկոպոս Անկիւրայ: Ժողովէր Բասիլէոս սինհոդոս յԱնկիւրա գործակցութեամբ Գէորգայ Լաւոդիկեայ Ասորւոց, Կեկրոպայ Նիկոմեդիոյ, Մակեդոնի Կոստանդնուպոլսեայ եւ Եւգինիոսի Նիկիոյ եպիսկոպոսաց (358), եւ եդան 12 նզովք ընդդէմ վարդապետութեան Անոմեանցն (որք ըստ գլխաւորացն իւրեանց կոչէին եւ Եւդոքսեանք, Եւնոմեանք, Աէտեանք): Գլխաւորք Կէս արիանոսացն՝ Բասիլէոս, Եւստաթիոս Սեբաստիոյ եւ Եղեւսիոս (եպիսկոպոս Կիւզիկոսի՝ փոխանակ Եւնոմեայ մերժելոյ նենգութեամբ ի Կէս արիանոսաց) առեալ զվճիռ ժողովոյն չոգան առ կայսր ի Սիրմիոն եւ աղաչէին զնա տալ պահել հաստատուն զվճիռ ժողովոյն իւրեանց վասն նմանէականութեան Որդւոյ ընդ Հօր, եւ գտին իսկ ունկնդրութիւն: Հարկ համարեցան այնուհետեւ եւ Ուրսակիոս եւ Վաղէս զերկրորդ Սիրմեան հանգանակն (զբուն հանգանակն Անոմեանց) մերժել՝ եւ յարել ի սինհոդսն Անկիւրայ, եւ թելադրութեամբ Բասիլեայ Անկիւրացւոյ՝ որ երթայր եւ զօրանայր առաջի կայսեր, աքսորեցան Եւդոքսիոս (ի հայրենիս իւր ի Փոքր Հայս) եւ Աէտիոս (ի Փռիւգիա)՝ իբրեւ գործակիցք չարեաց գործոց Գաղոսի (զորմէ յետոյ պատմեսցի), նոյնպէս եւ Եւնոմիոսքն եւ այլ եւս 70 Անոմեանք:

Այլ թէպէտ եւ կայսր Կոստանդիոս իսկզբանէ իսկ խորհէր մեղմագոյնս եւ էր ի կողմն Կէս արիանոսաց, սակայն արք արքունեաց նորա, մանաւանդ Եւսեբիոս ներքինապետ էր ի կողմն բուն Արիանոսաց: Նմին իրի դիւրաւ ածին Անոմեանք ի հաւան զկայսր՝ առնել մեւս եւս ժողով տիեզերական, իբրեւ այն թէ նովին լինիցի զրաւ գժտութեանց ամենայնի: Ընտրեցաւ Նիկոմեդիա տեղի ժողովելոյ, եւ եպիսկոպոսունք գաւառաց գաւառաց անկեալ էին վաղ ի ճանապարհ՝ յորժամ հասանէր գոյժ թէ կործանեցաւ քաղաքն ի սասանութենէ (24 Օգ.): Յայնժամ խորհեցաւ կայսր ըստ խրատուն Բասիլեայ գումարել ի Նիկիա: Բայց իբրեւ տակաւին անմիաբանութիւն էր յարքունիսն վասն տեղւոյ ժողովոյն՝ զօրացան միւսանգամ Ուրսակիոս եւ Վաղէս, եւ հաւանեցուցին զկայսր բաժանել զժողովն եւ առնել յերկուս վայրս ուրոյն ի միմեանց, քանզի երկնչէին իմն Անոմեանք՝ թէ մի գուցէ յորժամ ամենայն եպիսկոպոսունք ի մի վայր գումարիցին, բազմութիւն Կէս արիանոսացն յաղթիցէ, եւ կամ զի դիւրագոյն համարէին

Digitized by Google

տալու համբաւաւ զերկոցունց ժողովոց՝ զերկուսին ժողովն խափել: Հաճոյ թուեցաւ խորհուրդն յաջողման իւր եւ սահմանեցաւ Սելեւկիա Իսաւրացւոց եւ Արիմինիոն Ամիլիացւոց յԻտալիա: Ընդէն ի Սիրմիոն՝ ուր այս սահմանեցաւ, յօրինեցաւ միւս եւս հանգանակ (երրորդ) Սիրմեան՝ որ իբրեւ թէ մօտեցեալ իմն Կէս արիանոսաց ասէր թէ "Որդի նման է ամենայնիւ[1] Հօր ըստ գրոց", եւ հաւանեցոյց Վաղէս զկայսր՝ թէ քանզի պատճառք ամենայն գժտութեանցն է էութիւնն բան, յայն սակս ոչ այլ ինչ պարտ է ի ժողովն ընդունել՝ բայց այն վերջին հանգանակ եւ նմին առկանել ձեռնագիր:

Ընդէն յամի 359 յառաջ քան զարեւելեայն ժողովեցան յԱրիմինիոն եպիսկոպոսունք իբրեւ 400 թուով, յորոց 80 յԱրիանոսաց եւ ի Կէս արիանոսաց էին: Տաւրոս վերակացու Իտալիայ ընկալաւ պատուէր՝ չարձակել զնոսա ի բաց՝ եթէ ոչ նախ քննիցի միաբանութիւն դաւանութեան ի մէջի նոցա: Խոստացաւ նաեւ հիւպատոսութիւն՝ եթէ ըստ ցանկութեանն իւրեանց վճարեսցին: Նախքան մտին ի ժողովն Ուրսակիոս եւ Վաղէս ունելով ի ձեռին զհանգանակին վերջին՝ յորոյ ի գլուխն կայր գրեալ հակառակ սովորութեան հանգանակաց այսպէս. "Հաւատք ուղղափառութեան, դաւանեալ առաջի բարեպաշտի եւ յաղթող կայսեր Կոստանդեայ, յաւիտենականն Օգոստեայ, ի բդեշխութեան արանցն լուսաւորաց եւ փառաւորաց՝ Փղաւեայ, Եւսեբեայ եւ Հիպատեայ (երկուքին յետինք էին եղբարք Եւսեբիայ կնոջ կայսերն) ի Սիրմիոն ի մետասաներորդում աւուր Կաղանդացն Յունեայ" (22 Մայ.): Ընդ այս հանգանակ, ասեն, հաւանեալ է կայսր, պարտ եւ պատշաճ է զճշմարտութիւն հաւատոցն պարզ եւ անպաճոյճ բանիւք յայտ առնել. իսկ զամենայն բան որ դժուարիմաց եւ ոչ ըստ գրոց է՝ զայն պարտ է ի բաց մերժել: Իսկ եպիսկոպոսունքն ուղղափառք ասեն՝ թէ Մեր հաւատք չեն հաւատք այսր կամ երեկի աւուր, ոչ թէ վասն այնր իսկ եկաք այսր զի ուսանիցեմք թէ զինչ ինչ մեզ հաւատալ արժան իցէ, այլ զի հակառակ կայցեմք նորանձեւ վարդապետութեանց, եւ մեզ շատ այն է զոր սահմանեցին հարքն մեր ի Նիկիա: Նզովս իսկ ընթերցան հանգանակք Արիանոսացն եւ մերժեցան մի ըստ միոջէ, ընթերցաւ եւ հանգանակն Նիկիոյ եւ հաստատեցաւ միւսանգամ: Իբրեւ Ուրսակիոսն եւ Վաղէսն եւ այլ եւս գլխաւորք Արիանոսաց ոչ ածին հանգանակի առին յանձն արկանել ձեռնագիր եւ ոչ զԱրիոս նզովել՝ կարգեցան ի հաղորդութենէ եկեղեցւոյ: Վճարեալ իմն էր արդ ժողովն, եթէ չէր ասեալ Տաւրոսի հրաման չարձակել զհարան մինչ չեւ միաբանեալ նոցա ընդ միմեանս: Ուրեմն սաստկեցին հարքն հրեշտակութիւն 20 արանց յեպիսկոպոսապետունաց, յայտ առնել

1 Ὅμοιος κατὰ πάντα.

կայսեր զվճիռն, եւ աղաչէին զնա ի Թղթին՝ զի արձակեսցէ զնոսա առաջնորդել վիճակաց իւրեանց եւ առնել աղօթս վասն տէրու-թեան եւ կայսեր։ Բայց Ուրսակիոս եւ Վաղէս հանդերձ այլովք զատապարտելովք որ ծերագոյնք եւ քաջ փորձք իրաց արքունեաց էին՝ անձապարեցին վաղագոյն եւ յանկուցին զկայսրն յիւրեանս։ Ոչ եթող կայսր զհրեշտակս ժողովոյն ելանել զառաջեաւ իւրով, այլ բացէ ի բաց՝ պատճառեալ երթալ ի պատերազմն Գոթաց՝ գրէր առ ժողովն թէ հրաման եւս հրեշտակացն մնալ ինձ յԱդրիա-նուպոլիս։ Զոր աղաչէին հարքն միաբանգամ՝ զի մինչ չեւ հա-սեալ ձմերայնւոյն մեկնեսցի իւրաքանչիւր ի տեղի իւր։ Նա առա-նիկ պատգամաւորքն յետ արգելեալ մնալոյ ժամանակս բազում յԱդրիանուպոլիս՝ յետ ուստ ի մօտել ձմերայնւոյն հաւանէին ար-կանել ձեռնագիր հանգանակի միոյ յօրինելոյ ի Նիկէ քաղաքի Թրակացւոց, որ էր ամենեւին նման երրորդ սիրմեան հանգանակի, յորում մերժեալ լինէր արկանել ի կիր ոչ միայն զէութեանն (οὐσία) բառ, այլ եւ ոչ զգոյացութեան (ὑπόστασις), թէպէտ եւ վերջինս գտանի առ Առաքելոյ ի Թղթին Եբրայեցւոց։ Երկին հրեշտակքն ձեռնագիր եւ գրոյ իմիք՝ յորում յայտ առնէին հա-ղորդել ընդ Ուրսակիոսի եւ Վաղէսի եւ այլոց (10 Հոկտ. 359), եւ ապա արձակեցան գնալ։

Արքա տխուր տրտում, իսկ Ուրսակիոս եւ Վաղէս մեծա-պարծանօք եւ ուրախութեամբ հասանէին յԱրիմինիոն, եւ ի կայ-սերէ եկեալ էր հրովարտակ առ Տաւրոս չարձակել զժողովն՝ մինչ չեւ արկեալ ձեռնագիր նորոյ հանգանակին, հրաման տուեալ՝ զի զյամառագոյնսն՝ որոց թիւ ոչ աւելի քան 15 իցէ, աքսորեսցէ։

Զառաջինն կայր մնայր հաստատուն ժողովն եւ զեւր իսկ պատգամաւորան չընդունէր ի հաղորդութիւն. ապա մի զմիոյ կնի դեղեւել սկսան ի տաժապ լսելոյ զբողոք հակառակորդաց իւրեանց՝ որ ասէին թէ արեւելեայք ոչ երբեք արկանիցեն ձեռնագիր ի միասին էականին, եւ թէ նիկեանք արեւմտեայք լինին անդադար պատճառ խռովութեանց, եւ հարցանէին խորամանկութեամբ՝ թէ հաւատք նոցա Քրիստո՞ս իցէ եթէ ի միասին էականն բան։ Սպառ-նալիք եւ վտարանդութիւնք եւ մօտել ձմերայնոյն կատարեալ զհաւանութիւնն գործէին։

Յայնչափ բազմութենէ՝ 20 եւեթ եպիսկոպոսունք մնացին յառաջին մտաց հաստատութեան։ Սակայն եւ սոքա մեղմացան թուլացան յաղաչանաց անտի Տաւրոսի, բայց մանաւանդ այնու՝ զի շնորհեցաւ նոցա առնել յաւելուածս ի հանգանակ անդր, եւ բաւական համարեցան ըստ խորամանկ թելադրութեանն Վաղէսի առնել զայս յաւելուած թէ “Որդին չէ արարած որ իբրեւ զայլ արարածս„. զի ուղղափառքն կարծեցին թէ ասեն հակառակորդք

Digitized by Google

նոցա դաւանին՝ թէ "Որդին չէ արարած,,: — Պէրերիոս քահանայապետ չունէր ինչ մասն ի ժողովն սոսա:

73

Իսկ ժողովն Սելեւկիայ որ իբրեւ կէս իմն մասն միայնոյ տիեզերական ժողովոյ համարեալ էր, ժողովեցաւ ի 22 Սեպտ. 359, եւ էին ի նմա ընդ ամենայն եպիսկոպոսունք իբրեւ 160, յորոց 105 ի Կէս արիանոսաց էին եւ իբրեւ 40 ի բուն Արիանոսաց: Ռանի ածաւ անդր եւ Ս. Հիղարիոս ի տեղւոջէ աքսորանացն: Նոյն եւս կարգեալ էին գործակալք ի կայսերէ, Պեւոնաս՝ վասն առաջնորդելոյ խօսիցն եւ Պաւրիկիոս, որում յառաջին գործ յանձն էր ընդդէմ գնդից աւազակացն Իսաւրացւոց՝ հրաման առ տալ Պեւոնայ ձեռս յորժամ պիտոյն լինիցի: Կէս արիանոսք միայն զբանն ի միասին էական կամէին հանել ի բաց ի հանգանակէն Նիկիոյ եւ զայլն ամենայն ընդունել: Նմին հակառակ Անոմեանք, ընդ որոց միաբանեցին Ակակեանքն, այս ինքն կուսակիցք Ակակիոսի Կեսարիոյ եպիսկոպոսի՝ որ ի ժողովն անդ եւ ի կողմն Անոմեանց, զի դիւրաւ յաղթիցէ ամբաստանութեանն զոր մատուցանէր զնմանէ Ս. Կիւրեղ եպիսկոպոս Երուսաղեմի՝ վասն մերժելոյ նորա զնա յաթոռոյ պատճառանօք՝ թէ զմեծագին հանդերձ ինչ եկեղեցւոյն վաճառեաց վարձակի: Ակակեանք՝ որ ասէին թէ "Որդին ոչ հաւասար եւ ոչ նման է Աստուծոյ, այլ արարած ինչ լեալ յոչընչէ, կործանեցան ի բանս հայհոյութեան, ընդ որ զայրացան իսկ ամենեքին: Յետոյ եւս մեկնեցան Անոմեանք եւ Ակակեանք՝ յորժամ սահմանեցաւ ընդունել զառաջին հանգանակն Անտիոքայ: Իսկ Կէս արիանոսք յետ կատարելոյ զերկրորդ նիստն դրովք փակելովք յեկեղեցւոջն՝ ընկալան զԱկակեանսն յերրորդ նիստն՝ յորում մերժելով սոցա զՄիասին էականն՝ ընկալան լինել Որդւոյ նման Հօր, այլ ի չորրորդում նիստն յայտ եղեւ, թէ նմանութիւնն այն է միայն նմանութիւն կամաց, եւ զայրացան միաձայնունքն, մինչեւ ի հինգերորդումն ոչ միայն Պեւոնաս վասն անվախճան դժուարութեանն չառ յանձն այնուհետեւ նստել ի ժողովին, այլ եւ ոչ Ակակեանք եկին անդր: Նմին իրի եւ ժողովն ընկէց ի պաշտամանց իւրաքանչիւր զԱկակ Կեսարիոյ, զԳէորգ Աղեքսանդրիոյ զԵւդոքսիոս Անտիոքայ եւ զխառոմիչն եւ զծերացեալն յարիանոսութեան զՊատրոփիղոս Սկիւթոպոլեւոյ: Ս. Կիւրեղ միւսանգամ նստուցաւ յաթոռն Երուսաղեմի: Առաքեցան 10 պատգամաւորք թղթով ժողովոյն առ կայսր ի Կոստանդինուպոլիս, սակայն եւ սոսա կանխեցին հակառակորդքն եւ դառնացուցին զկայսր. զոր ջանային հաւանեցուցանել զկայսր մեծ մասն Կէս արիանոսացն՝ որք նոյնպէս եկին եկին զհետ հրեշտակաց իւրեանց, քանզի եւ

Ուրսակիոս եւ Վաղէս որ ընդ նոյն ժամանակս հաւատով էին՝ եղեն ի կողմն Ակակեանց, եւ այնպէս ստիպեցան ի կայսերէ եւ պատգամաւորք եպիսկոպոսացն Սելեւկիայ ի վերջնում աւուր 359 ամին արկանել ձեռնադիր հանգանակին՝ զոր ընկալաւ ժողովն Արիմինեայ։

Իբրեւ լուաւ եւ կատարած ամենայնի՝ եղեւ մեւս եւս ժողով ի միւսում ամի անդէն ի Կոստանդնուպոլիս, յորում հաստատեցաւ հանգանակն Արիմինեայ, դատապարտեցան ամենայն հանգանակք որ յառաջ քան զնա յօրինեալ էին եւ որ յետ այնորիկ երբեք յօրինեսցին։ Նզովեցաւ Աէտիոս եւ արկաւ ի պաշտամանէ սարկաւագութեան, թէպէտ եւ ծանր էր այն Ակակեանց եւ այլոց Անոմեանց։ Յետ այնորիկ ընկեցան գլխաւորք կէս արիանոսացն՝ Մակեդոնիոս Կոստանդնուպոլսեայ եւ Բասիլիոս Անկիւրայ՝ զոր այնպէս մեծարոյ համարեալ էր երբեմն կայսր։ Ընդ սոսա ընկեցաւ եւ Ս. Կիւրեղ Երուսաղեմի։ Ընց կոց փոխանակ Մակեդոնիոսի՝ Եւդոքսիոս երբեմն եպիսկոպոս Անտիոքայ։ Առաջին գործ եպիսկոպոսութեան նորա (14 փետր. 360) եղեն նաւակատիք (եպիսկոպոսական) եկեղեցւոյն Սոփիայ՝ շինելոյ ի Կոստանդեայ, որ ապա ի վեցերորդ դարու այրեալ ի հրդեհէ նորոգ շինեցաւ ի Յուստինիանեայ խառնեալ ընդ մեծաշուք եկեղեցւոյն խաղաղութեան։

Եւնոմիոս առ զաթոռն Կիզիկեայ, բայց քանզի չկարաց ըստ խրատուն Եւդոքսեայ պահել զբերան իւր ի չխօսելոյ ըստ բուն անոմեան կարծեաց, կրեաց ամբաստանութիւն առաջի կայսեր եւ ստիպեցաւ ելանել փախստեայ յաթոռոյ իւրմէ[1]։ Սակայն եւ Ս. Հիլարիոս, որ ընդ պատգամաւորաց ժողովոյն Սելեւկիայ եկեալ էր առ կայսր եւ ի ժողովին Կոստանդնուպոլսեայ կացեալ ջատագով նիկիական հաւատոց՝ ընկալաւ հրաման ի կայսերէ դառնալ յաթոռ իւր։ Ի խաղալ կայսեր ի վերջնում նուագի (361) ի մարտ պատերազմի ի վերայ Պարսից՝ կոչեաց Կոստանդիոս զիւր վերջին ժողով յԱնտիոք վասն նոցին խնդրոց որք ի Կոստանդնուպոլիս կատարեցան, յորում ընտրեցաւ յեպիսկոպոսութիւն դատարկացեալ աթոռոյն Անտիոքայ Մելետիոս Սեբաստացի ի Փոքր Հայոց, այր հեզ, յազնուական եւ ի մեծատուն տանէ, որ յետ ընտրելոյ յԱրիանոսաց յեպիսկոպոսութիւն Սեբաստիայ փոխանակ Եւստաթեայ մերժելոյ անտի՝ հրաժարեալ մեկնեալ էր ի Բերիա Ասորւոց։ Բայց իբրեւ տեսին Արիանոսք թէ պնդեալ է Մելետիոս դաւանել զհանգանակն Նիկիոյ՝ մատուցին ամբաստանութիւն առ կայսր թէ սաբելեան է։ Մերժե-

1 Եկաց Եւնոմիոս գլուխ ստամբկին իրեք աղանդոյ Արիանոսաց, որոյ վարդապետութիւն յայտ է ի ձեւոյ մկրտութեան նոցա՝ այսպէս. "Յանուն Հօր արարչի, յանուն Որդւոյ արարածոյ եւ յանուն Հոգւոյն որդւոյ՝ որ արարաւ յՈրդւոյ անուն արարածոյ,,։

ցաւ Մեղետիոս ի քաղաք ծննդեան իւրոյ ի Մեղիտինէ, եւ փոխանակ նորա ընտրեցաւ Եւզոյիոս երբեմն ընկեր Արիոսի, մերժեալ յԱղեքսանդրէ եպիսկոպոսէ Աղեքսանդրացւոց: Թէպէտ եւ հաստատեցաւ ի ժողովին հանգանակն Արիմինեան առ ահի կայսերն՝ որ ի կողմն Կէս արիանոսացն էր, սակայն յօրինեցաւ յԱնտիոքանց անտի 18երորդ եւ վերջին հանգանակն արիանոսութեան՝ թէ "Չէ Որդի յաւիտենական, այլ ի չգոյէ եղեալ":

Գրեթէ վասն այսց ժամանակաց ասէ Ս. Յերոնիմոս թէ "Սքանչացաւ համօրէն երկիր տեսեալ զինքն արիանոս": Սակայն բովանդակ իսկ արուեստագործ շինուած արիանոսութեանն, որ համակ նենգութեամբքն եւ բռնութեամբ կցեալ յօրինեցաւ՝ խախտեցաւ անկաւ կործան մօտալուտ մահուամբ կայսերն:

## 74

Ի Յուլեայ Կոստանդեայ յեղբօրէ Մեծին Կոստանդիանոսի՝ ծնեալ էր որդի Գաղղոս ի Գաղղայ կնոջէ (325), եւ Յուլիանոս՝ յերկրորդ կնոջէ ի Բասիլինայ ի դստերէ Յուլիանու ուրումն վերակացուի (331), որք ապրեցան ի կոտորածէ անտի 337 ամին ի բարեխօսելոյ քեռն նոցա՝ առաջնոյ կնոջն Կոստանդեայ, մանաւանդ զի Գաղղոս հիւանդ էր յայնժամ առ ի մահ, եւ զՅուլիանոս եւս պահեաց յառաջնում մոլեգնութեան անդ Մարկոս եպիսկոպոս Արեթուսայ Ասորւոց: Կոստանդիոս՝ որ զղջացեալ իմն էր ընդ այն կոտորած (ըստ Յուլիանու իսկ ասելոյ), ետ նոցա ուսուցիչս ազգի ազգի ուսմանց եւ վարդապետս հաւատոյ յԵւսեբեանց անտի: Յետ առաքելոյ զնոսա կայսեր ի Բիւթանացւոց աշխարհին ի քաղաքէ ի քաղաք՝ առաքեցան նոքա ի Մակեղոն դղեկի հնոց թագաւորացն Գամրաց, գրեթէ բանդարգել իմն ի մէջ ներքինեաց եւ ամբաւ սպասաւորաց (345), ուր եւ երկոքեան ընկալեալ զաստիճան ընթերցողութեան՝ բազում անգամ սպասաւորէին ի մօտաւոր եկեղեցւոջն:

Աստանօր իսկ հան յանկարծ Կոստանդիոս զԳաղղոս յամի 351 ի ժամանակի արշաւանացն իւրոց ի վերայ Մագնենտիոսի, ետ նմա կնութեան զիւր քոյր զԿոստանդինա, զայրի կին Աննիբաղիանոսի թագաւորի Փոքրն Հայոց եւ Պոնտոսի, որ եւ ի հօրէն իւրմէ ի Կոստանդիանոսէ Մեծէ անուանեալ էր Օգոստա. անուանեաց զԳաղղոս (որ այնուհետեւ Կոստանդիոս Գաղղոսն կոչեցաւ) կեսար, եւ ի միւսում ամի բդեաշխ, եւ առաքեցաւ յԱնտիոք առաջնորդել կողմանցն: Դարձոյց Գաղղոս զՊարսիկս յետս, եւ ցածոյց զապստամբութիւն Հրէիցն ի Դիոկեսարիա (352), խլեաց ջնջեաց զանտառն անտառակ եւ զտեղի պատգամին Ապողոնեայ ի Դափնէ Անտիոքացւոց եւ ետ տանել անդր զսու-

կերս Ս. Բարսեղայ։ Սակայն առաջնորդութիւն նորա լի էր խռո-վութեամբ եւ անագորունութեամբ՝ յոր դրդէր զնա մանաւանդ կինն իւր անագորոյն։ Լի եղեն քաղաքք եւ տունք լրտեսօք, միւսանգամ տուեալ խաղքն սուսերամարտկաց որ արգելեալ էին ի Կոստանդիանոսէ, եւ ինքն իսկ Գաղղոս կայր նոցին հանդիսա-տես։ Զգաց կայսր զիրսն ի ձեռն Թաղասիոսի վերակացուին Ա-րեւելից. յղեցաւ Դոմիտիանոս յաջորդ Թաղասեայ առաքել զԳաղ-ղոս մեղմով առ կայսր։ Բայց Գաղղոս արար զնա ձերբակալ վասն հեստութեանն, եւ զՄոնտիոս գանձապետ՝ զի նմին ջատագով եկաց, ետ քարշել եւ արկանել յՈրոնտէս գետ։ Ուրսիկինեայ զօրավարի հեծելազօրուն արեւելից յանձն եղեւ քննել զիրսն. կատարած քննութեանն լինէր հաստատութիւն գործոց անագո-րունութեանն Գաղղոսի։ Յետ բազում անգամ հրաւիրելոյ կայ-սեր զԳաղղոս եւ զԿոստանդինա գալ առ ինքն յարեւմուտս, ապա ուրեմն ել Կոստանդինա յառաջագոյն՝ զի թերեւս ցա-ծուսցէ զսիրտ եղբօրն, բայց ի Բիւթանիա ջերմամբ վախճանե-ցաւ։ Ընկաւ Գաղղոս ի ճանապարհ բազմամբոխ տպաւորօք, ի Կոստանդինուպօլիս եմուտ զխաղս կրկէսին եւ իւր իսկ ձեռամբ պսակեաց զմի ի կառավարացն. այլ անդէն յԱդրիանուպօլիս հասին պատգամաւորք ի կայսերէ հրաման տալ նմա՝ արձակել զօրս ընդ իւրն են. ի Պետովիոն (Փեթթաւ ի Շթայերմարք) հան ի նմանէ զնշանս պատուոյ իշխանութեանն, եւ անտի ածաւ մօտ ի Պոլա Իստրիացւոց՝ ուր սպանն իսկ երբեմն Կոստանդիանոս զիւր որդի զԿրիսպոս։ Ըստ խոստովան եղեւ Գաղղոս զգործս ա-նագորունութեան իւրոյ՝ առաջի Եւսեբեայ ներքինապետի թըշ-նամւոյ իւրոյ, եւ սպանաւ իբրեւ զայր չարագործ ձեռօք կապե-լովք՝ կեսար Կոստանդիոս Գաղղոս, հօրեղբօրորդի եւ քեռայր կայսեր եւ եղբօրորդի Մեծին Կոստանդիանոսի (354)։ Բազումք ի մեծամեծաց ածան շղթայակապ յԱնտիոքայ յԱկուիլէա եւ դա-տեալ յԵւսեբեայ՝ կէսք սպանան եւ կէսք աքսորեցան։

Այլ իսկ Յուլիանոս՝ որոյ մայրն վախճանեալ էր տարաժամ, ընդ առաջնորդութեամբ մայրենի գերւոյն դաստիարակին իւրոյ Մարդոնիոսի՝ ուսաւ սիրել զՀոմերոս, եւ ապա Նիկոկլէս այր ի ծածուկ հեթանոս մեկնեաց նմա զպոետն այլաբանութեամբք։ Թէպէտ եւ փոյթ ի վերայ կալաւ Կոստանդիոս ուսուցանել նմա զքրիստոնէութիւն, բայց այն չէր քրիստոնէութիւնն ճշմարիտ, այլ վիճող վարդապետութիւն արիանոսութեանն՝ որ չմատուցա-նէր ինչ յագուրդ եռանդուն մտաց եւ ջերմ ցնորից պատանեկին, եւ յայն սակս զօրագոյն գտան հրապոյրք յունական մատենագրու-թեանն, եւ անդէն ի Մակեղոնի յորժամ առ ի հրահանգս վիճ-մունքն լինէին ի պաշտպանութիւն քրիստոնէութեան կամ հեթա-նոսութեան՝ ինքն զպաշտպանութիւն հեթանոսութեանն առնուր,

Digitized by Google

իբրեւ զտկարագոյն կողմանն, թողեալ եղբօրն զպաշտպանութիւն քրիստոնէութեան։ Յորժամ սա ամբարձաւ ի պատիւ եւ առաքեցաւ կալ կուսակալ յարեւելս, եղեւ եւ Յուլիանու հրաման գալ ի Կոստանդինուպոլիս։ Անդ մեծաւ փութով եւ յօժարութեամբ յաճախէր ի դպրոցս արանց նշանաւորաց (բաց ի դպրոցէն Լիբանեայ), եւ չափաւորն եւ անստգիւտ գնացիւք եղեւ զարմանալի քաղաքացեացն, մինչեւ բազմաց համարել կամ ցանկալ տեսանել զնա պայազատ անզաւակին Կոստանդեայ։ Իբրեւ զգայր զայն Կոստանդիոս, տայր նմա հրաման երթալ ի Նիկոմեդիա, յորժամ ինքն խաղալոց էր ի վերայ Մագնենտեայ։

Մինչ չեւ եկեալ անդր Յուլիանու՝ տուեալ էր խոստումն երդմամբ՝ չերթալ յունկնդրութիւն նոր պղատոնականն Լիբանիոսի ուսուցչի ճարտարխօսութեան թշնամւոյն քրիստոնէութեան՝ որ ի Նիկոմեդիա էր յայնժամ։ Ոչ չոգաւ առ նա Յուլիանոս, բայց զճառսն նորա ընթեռնոյր ի գրի առաւելագոյն փութով։ Անդ եղեւ յօժարութիւն մնաց պատանեկին՝ գլխաւորաց Նորոն Պղատոնականաց՝ որք ջանային գրաւել զմիտս Յուլիանու զոր իբրեւ յաջորդ Կոստանդեայ համարէին։ Եւ եկն անդր Մաքսիմոս յԵփեսոսէ հաւանեցուցանել նմա ըստ մարգարէութեան մոգական գիտութեան իւրոյ՝ թէ սահմանեալ է նմա ի դիցն պայազատութիւն աթոռոյն եւ զկրօնս հեթանոսութեանն՝ որ ի քրիստոնէութենէ կործանեցաւ, միւսանգամ նորոգել։ Յորդորեալ ի Մաքսիմեայ՝ եւ Յուլիանոս տեսանել զերեւելին քան զամենայն նոր Պղատոնականս ժամանակին զԱյդեսիոս ի Պերգամոն, որ վասն յոյժ ծերութեանն չառ յանձն ուսուցանել զնա ինքնին, այլ առաքեաց առ աշակերտսն, յորոց Եւսեբիոս անուն ի նմին քաղաքի առաւել քան զայլսն հաճոյ թուէր Յուլիանու վասն բանիցն յստակութեան եւ գեղեցկութեան. սակայն եւ այնպէս հարկ համարեցաւ երթալ եւ առ Մաքսիմոս յԵփեսոս՝ լսել զմոլեգին մեհենաւէր ճառսն, եւ առ ի նմանէ խրատ ընկնել միջամուխ եւ ի խորհուրդսն Եղեւսեայ ի Յունաց աշխարհին։ Կատարեցաւ եւ ի գլուխ ուրացութիւնն Յուլիանու ի ծածուկ. սակայն հասեալ էր համբաւ յաճախելոյ նորա առ Նոր Պղատոնականս յԱթենք, եւ յայն սակս գրեաց առ նա Գաղղոս զգուշացուցանելով յուրացութենէ. քանզի տային եւ առնոյին թուղթս ի միմեանց մինչեւ անկաւ Գաղղոս յիշխանութենէն։

Փոքր մեւս եւս եւ ընդ Յուլիանոսի անցք եղբօրն անցանէին թելադրութեամբ ներքինեաց պալատանն. ածաւ նա ի կողմանց Փոքրն Ասիոյ յարքունիս ի Մեդիոլանոն, բայց Եւսեբիա երկրորդ կին կայսեր (յամէ իբրեւ 353, դուստր բարենշան եւ իմաստուն՝ առն հիւպատոսականի, ածեալ ի Թեսաղոնիկեայ,) ապրեցոյց զնա. եւ յետ կալոյ ամիսս 7 ընդ զգուշութեամբ՝ մերթ ի

Կոմոն (Կոմոյ) եւ մերթ յայլ տեղիս մօտ ի Մեդիոլանոն, շնորհեցաւ նմա բարեխօսութեամբ դշխոյին՝ երթալ յԱթէնս ի կատարումն ուսմանն (Մայ. 355): Մինչ դեռ աստ ծծէր անյագ զթոյն հեթանոսութեանն՝ մերթ միջամուխ յԱթենական խորհուրդսն լինելով եւ մերթ կենակից պարու փիլիսոփայիցն, մինչեւ յարտաքին իսկ կերպարանացն գուշակելով գոչէր Ս. Գրիգոր Նազիանզացի ցընկերսն "Որպիսի չարիս սնուցանէ հռոմէական պետութիւնն,,, անդէն յետ վեց ամսոց կոչեցաւ միւսանգամ ի Մեդիոլանոն: Իսկ անդր Յուլիանոս տրտմութեամբ հրաժարեալ ի քաղաքէն Աթենացւոց եւ յետ խնդրելոյ զօգնութիւն Աթենայ՝ ամբառնալով զձեռն իւր ի դրեակ անդր Աստուածոյն: Կարեալ զերկայն մօրուսն եւ ի բաց եդեալ զաղաբողն փիլիսոփայութեանն՝ ագաւ զծիրանին զոր արկ զնովաւ Կոստանդիոս ի բեմի յանդիման բազմութեան զօրաց (6 Նոյ. 355)՝ լինել Կեսար ի նահանգսն Գաղիոյ, Սպանիոյ եւ Բրիտանիոյ. ընկալաւ կնութեան զՀեղինէ († Նոյ. 360) դուստր կայսերն, եւ տուաւ նմա պարգեւ յԵւսեբիայ մատենադարան մի գեղեցիկ Յունացն փիլիսոփայից, պատմագրաց, ճարտարախօսաց եւ դպրաց, "որով եղեւ ինձ, ասէ Յուլիանոս, Գաղիա եւ Գերմանիա՝ մատենադարան,,:

75

Իսկ եւ իսկ ըստ ստիպելոյ իրացն ել Յուլիանոս ի ճանապարհ (1 Դեկտ. 355) զօրականօք, յուղարկեալ ի կայսերէ ընդ բազում տեղիս, եւ լուեալ զառաջինն յԱւգոստա Տաւրինացւոց՝ թէ Գերմանք զԿողոնիա առեալ քանդեալ են, չար բղձութիւն զիւրն համարեցաւ եւ արձակէր բանս ինչ տրտնջանաց՝ որպէս թէ առ ատել իսկ եդ զնա կայսր ի վերակացութիւն յայնկոյս Ալպեաց: Սակայն մխիթարեցաւ առ սակաւ մի՝ յորժամ մեծաւ պատուով եւ ուրախութեան աղաղակաւ ընկալաւ զնա ժողովուրդն ի Վիեննա Գաղիացւոց, եւ սկսաւ պատրաստել ի մարտ պատերազմի մինչեւ ցգարուն միւսոյ ամին (356):

Անծանօթ դժուարութիւնք պատեալ պաշարեալ ունէին զպատանեակն 25ամեայ. ի մանկութենէ անցուցեալ զաւուրս իւր կամ ի գեղս եւ կամ ի պրահս եւ ի ծառաստանս փիլիսոփայիցն, հեռի յաղմկոյ զինուց եւ սպառազինաց, ոչ ետեսեալ երբեք ուրեք թշնամի առաջի կամ ունեալ պատուէր պատերազմի, յանկարծ ի գրոց ի զէն կոչեցաւ՝ պաշտպանել նահանգաց զորովք պատ առեալ կային մոլեգին թշնամիք: Այլ ինքն կայսր Կոստանդիոս՝ կամ առ ատելն եւ կամ առ կասկածոտ մտացն՝ առաւել եւս ծանրացոյց զիւրն գործեաց. պաշարեալ էր Յուլիանոս ի լրտեսաց ազքունեացն, զոր ետ նմա կայսր ի միասին՝

Digitized by Google

իբրեւ թէ ի պատիւ մեծարանաց նորա. եւ զօրավարքն որ ի կայսերէ առաքեցան մի ըստ միոջէ ունէին ի ծածուկ թելադրութիւն՝ դիտել զնա, չթողուլ վստահ ի նա եւ չհնազանդել նմա իբրեւ սպարապետի: Ներքինիք կայսերն՝ որք գիտէին թէ ատեայ զնոսա Յուլիանոս, առաւել եւս պարարէին զկասկած մտացն Կոստանդեայ, մանաւանդ յետ Եւսեբիայ ի ծաղկի տիոցն վախճանելոյ (360), որ միշտն պաշտպանէր Յուլիանու: (Առաւ երրորդ կին Կոստանդեայ՝ Մաքսիմա Փաւստինա յամի 361):

Սակայն եւ այնպէս գտաւ նա ժիր եւ գործօն. գիտաց նա զգին ժամանակին, որուն առհմանեալ էր գործոց պատերազմի եւ խաղաղութեան, եւ սակաւիկ ինչ մասն գիշերոյն՝ քնոյ, իսկ զմնացեալ մասն գիշերոյն հանէր յընթերցուած հնոցն մատենագրաց: Փիլիսոփայական եւ մոգական յիմարութիւնք նորա կային միայն անծանօթ ի մարդկանէ, զի ի ծածուկ գործէր: Նմին հակառակ անարգիւտ իմն էին բարք նորա հրապարակաւ: Վաղվաղակի եղեւ նա սիրելի Գաղղիացւոցն՝ արդար դատաստանօքն, թեթեւութեամբ հարկացն եւ բարձմամբ լրտեսացն կարգելոց ի տէրութենէ՝ դիտել զաւանին անցս. նոյնպէս եւ զօրաց եղեւ սիրելի անհնարին՝ տանելով զնոսա ի յաղթութենէ ի յաղթութիւն:

Ընդէն իսկզբան առաջնոյն (356) հակառակ խրատու արքունականացն՝ որ խափանել կամէին ջնջել, եւ ըղձէնօքն խնդրել զթշնամին, անց ընդ Աւգուստոդունոն (Օթէօն ի Բուրգոնեա), ընդ Տրիկասս (Տրուա), ընդ Սենոն (Սէն ի Շամփանեա), ընդ Գեսկեւիացս (Տիէօզ՝ ի Լոթարինգիա) անդադար կռուելով յաղթակումն ի թշնամեաց, մինչեւ յետ յաղթութեանն մտա ի Բրոկոմագոս (Բրումաթ յԱլզաս, ժամուք ինչ հեռի ի Ստրասպուրկայ) բացաւ առաջի նորա ճանապարհ ազատ ի Կողոնիա՝ զոր եւ միւսանգամ ամրացոյց: Յետ դաշինս դադարման պատերազմի ընդ իշխանաց ոմանց կնքելոյ՝ դարձաւ ի Սենոն (Սան ի Շամփանեա) ձմերել: Զգացին Գերմանք զսակաւութիւն պահապան զօրուն եւ պաշարեալ զքաղաքն արկին ի նեղ մեծ զՅուլիանոս՝ որ զուր գրէր առ Մարկեղղոս զօրավար՝ գալ ի թիկունս. սակայն յետ ամսօրեայ պաշարմանն ձանձրացեալ մեկնեցաւ հէնն: Կոչեաց Կոստանդիոս զՄարկեղղոս յետոյ՝ կամ զի զայրացաւ ընդ գործ նորա եւ կամ զի կամէր երեւել թէ զայրացաւ: Զհետ նորա առաքէր Յուլիանոս ի Մեդիոլանոն զԵւթերիոս զիւր սենեկապան հայ յազգէ՝ որ եւս մեծաւ զօրութեամբ պատասխանի զրպարտութեանցն Մարկեղղեայ զՅուլիանոսէ առաջի կայսեր, մինչեւ գտաւ Մարկեղղոս յանցաւոր եւ անկաւ ի զօրավարութեանն պատուոյ (357): Փոխանակ Մարկեղղեայ առաքեցաւ Սեւերոս զօրավար հեծելազօրու՝ հանդերձ Բարբատիոնաւ զօրավարաւ հետեւակաց, զի օգնա ի հարաւոյ եւ Յուլիանոս ի հիւ-



Digitized by Google

սիրոյ տակաւ առ միմեանս հաւատալ փակեսցեն ի մէջ զԳերմանսն։

Այլ հայեցեալ Գերմանաց ընդ չմիաբանութիւն զօրավարացս այսոցիկ ընդ Յուլիանու, պատրաստեցան յարձակել ի վերայ սակաւաւոր գնդին Յուլիանու, զօրավարութեամբ իշխանին իւրեանց Քնոդոմարայ։ Ընդայտ իմն էր յաղթութիւնն ընդ երկար՝ ի դաշտավայրսն Արգենտորատի (Ստրասպուրկայ), եւ վաղ աճապարէր ի փախուստ այրուձին հռոմայեցի. վազեաց Յուլիան առաջի նոցա եւ դարձոյց միւսանգամ առաջի թշնամեաց. պատերազմական արուեստին յաղթէր ճակատուն եւ առաքէր զՔնոդոմար ձերբակալ ի Հռոմ առ Կոստանդիոս՝ որ իւր սեպհականեալ զպարծանս յաղթութեանն գրէր ի հրովարտակին առ ծերակոյտն ի Կոստանդինուպոլիս "Կարգեցաք յարդարեցաք մեք զզօրն եւ ինքնին ընթացաք առաջի նոցա... եւ տուաւ մեզ Քնոդոմար ձերբակալ„ (357)։ Այնուհետեւ անցանէր Յուլիանոս ամ ըստ ամէ ընդ Հռենոս (357—359) եւ հարկանելով զՓրանկս եւ զԱղղեմանս՝ խաղաղացուցանէր զԳաղիա եւ զարծուենշանն պսակազարդս հաստուցանէր մինչեւ ի սիրտ Գերմանացւոց աշխարհին. զձմեռնն հանէր յաճախ ի Լուտետիա Պարիսացւոց՝ զոր իւր սիրելի Լուտետիայն անուանէր, յորում էր պալատն մի, ջերմուկք եւ ամփիթէատրոն. փոքր իմն քաղաքիկ էր այն, այլ էր Պարիս փոքրիկ։

Արքունականքն որ շուրջ զԿոստանդեաւ էին, զչարէին ընդ յաղթութիւնսն եւ յաւելուին զրգռել զկասկած մտաց կայսերն։ "Ողանրանայ, տաէրն, այծն յաղթութեամբքն. այսպէս կոչէին զնա վասն մօրուացն, եւ անուանէին զնա դարձեալ՝ խլուրդ շատախօս, կապիկ ծիրանաւոր եւ մատենագիտիկ յոյն[1]։ Յետոյ ուրեմն առաքէր կայսր զԳեկենտիոս դպրապետ ի Գաղիա՝ ընտրել զընտիր ընտիր զօրացն Յուլիանու եւ ածել յարեւելս ի մարտ պատերազմի ընդ Պարսից։ Ի նեղ մեծ անկաւ Յուլիանոս, զի մեծ ինչ մասն զօրացն զօրավարութեամբ Լուպիկինեայ (զոր ընդ Փղորենտեայ յղեալ էր կայսր փոխանակ Սեւերեայ վախճանելոյ) առաքեալ էր ի Լոնդինոն ընդդէմ Պիկտաց եւ Սկովտացւոց արշաւելոց ի Բրիտանիա (360)։ Այլ իբրեւ ընտրեալ Գեկենտեայ զայր ընտիր ի լեգէոնացն Գաղիայ՝ հակառակ խրատուն Յուլիանու անցուցանէր ընդ Լուտետիա Պարիսացւոց, եւ ընդ առաջ նոցա Յուլիանոս, գովեաց զմի մի ի հրամանատարացն ի բեմէ անտի եւ յիշեաց զքաջութիւնս զօրականին եւ խրատ ետ երթալ ուրախութեամբ առ կայսր՝ որ կարող է ըստ գործոցն տալ նոցա հատուցումն։ Ճիչ բարձեալ աղաչէր ժողովուրդ

1 Loquacem talpam et purpuratam simiam et litterionem graecum. Ամմ. Մարկ. ԺԷ. 11։

Digitized by Google

Պարսիստացւոցն զզօրականն՝ չթողուլ զերկիրն զոր այնպէս քաջու-
թեամբ պահեցին, եւ ցուցանէր իսկ զօրականն թէ չկամի երթալ։
Բայց Յուլիանոս ամբարձ միւսանգամ զձայն իւր եւ ասէ. Յոր-
ժամ կայսր հրաման տայ՝ չէ արժան երկմտեալ դեգերել։ Առ-
ժամն լուռ եղեւ զօրն, այլ ընդ երեկս յետ դառնալոյ զօրավա-
րացն ի տեղանոյ Յուլիանու, եկն կուտեցաւ զպաղատամբն եւ
մեծաւ աղաղակաւ կարդայր զՅուլիանոս՝ Աւգոստոս։ Յուլիանոս
(ըստ Ամիանու Մարկեղեայ) մերթ բարկութեամբ եւ մերթ աղ-
աչանօք խնդրէր առ նոսա ի բաց կալ ի խորհրդոյն. եւ մի ան-
արժան գործով զպարծանս յաղթութեանց իւրեանց արատել։
Այլ նոքա ածին ամբարձին զնա ի վերայ վահանի եւ կացուցին
զգլխով նորա գումարտակ ինչ պարանոցի իբրեւ պսակ, եւ յայն-
ժամ ուրեմն եկն ի բաց ի պաղատանէն՝ յորժամ տեսին զՅու-
լիանոս արկեալ զիւրեւ զամենայն պատիւ աւգոստական իշխա-
նութեանն։ Ի վաղիւ անդր ի մեծի հրապարակի խօսեցաւ ընդ
զօրացն ի բեմէ եւ (որպէս գրէ ինքն առ Աթենացիս) ընկալաւ խոս-
տումն ի նոցանէ չառնել ինչ ընդդէմ Կոստանդեայ, եթէ թողցէ
զնոսա ի Գաղիա եւ հաւանեսցի ընդ ամենայն որ ի նոցանէ գոր-
ծեցաւ (Մարտ. 360)։ Իսկ եւ իսկ առաքէր Յուլիանոս հրեշ-
տակս թղթով հանդերձ առ Կոստանդիոս, ցուցանել զանցս ի-
րացն, խնդրել զհաստատութիւնն մասին իրիք իշխանութեանն
եւ խոստանայր հնազանդութիւն հրամանաց նորա։

Գտին պատգամաւորքն Յուլիանու զԿոստանդիոս ի Կեսարիա
Գամրաց. լի եղեւ սրամտութեամբ կայսր, չեդ ունկն բանից նոցա
եւ հրամայեաց ելանել արտաքս, եւ ընդ երկար կայր տարակու-
սեալ եթէ խաղասցէ յառաջ ի վերայ Պարսից, թէ իսկ եւ իսկ
դարձուսցէ զզօրսն ի վերայ Յուլիանու։ Բայց ըստ խորհրդակա-
նացն բանի՝ ընտրէր զարշաւանն պարսկական եւ առ Յուլիանոս
առաքէր թղթով զԼեւոնաս զանձապետ յայտ առնել թէ չէ
հաւանեալ ընդ լեալսն։ Պատուով եւ սիրով ընկալաւ Յուլիա-
նոս զառաքեալն. ի վաղիւ անդր ժողովեալ զզօրսն եւ զժողո-
վուրդն ընթեռնոյր զթուղթն կայսերական. իբրեւ լուան զբանս
կայսերն՝ թէ բռնական համարեսցի Յուլիանոս զկեսարութեանն
պատիւ, ողջունեցին զՅուլիանոս միւսանգամ՝ Աւգոստոս։ Գար-
ձաւ Լեւոնաս դատարկ յետս, եւ Յուլիանոս յետ կատարելոյ
զհնգամեակ կեսարութեանն (Նոյ. 360) եւ վճարելոյ յաղթու-
թիւնս ի վերայ Փրանկաց (360) եւ Աղեմանաց (361), իբրեւ
ետես թէ տայ Կոստանդիոս պատրաստել մթերս յԻտալիա եւ
զրգռէ զԳերմանս յարձակել ի Գաղիա, մատոյց զոհս (թերեւս՝
մարդազէն) աստուածոյն Բեղղոնայ, ժողովեաց փողով զզօրա-
կանն՝ զոր "մեծ նիզակակիցսն,, անուանէր, որ եւ մեծաւ ուրախու-
թեան աղաղակաւ եւ ի շաչիւն զինուց տային նշան հաւանութեան

եւ կալեալ խրախճանէր զաւուր իւր առ պատրանօք խրոխտ երդնոյր եւ նզովէր զանձն՝ լինել նմա հաւատարիմ: Իջեալ Յուլիանոս ի կողմանց Գաղղիայ անց ընդ Սեւանտառն առու, եգիտ առ Գանուբեան տորմիղ թեթեւ նաւաց՝ որովք ընդ մէտն ինչ գետոյն նաւարկէր. անդ անձապարեալ փախոյց յառաջագոյն զՏաւրոս վերակացու Իտալիայ եւ զՓղորենտիոս վերակացու Իլիւրիկեայ, որք եւ հիւպատք իսկ էին տարւոյն, եւ այնպէս ի մետասաներորդում աւուր արշաւանին եհաս ի Սիրմիոն եւ անտի ի Նայիսոս՝ ուստի գրէր հրովարտակս առ հոյակապ քաղաքսն Յունաց՝ յԱթէնս, ի Լակեդմոն եւ ի Կորնթոս, ամենեւին հեթանոսութեան միտօք, որպէս գրեաց նախ քան զայս առ ծերակոյտն Հռոմայ. եւ ուր ուրեք տիրէր՝ տայր բանալ զմեհեանս դիցն:

Ընդոստ Կոստանդիոս ազդեալ ի պատերազմէն Պարսից՝ որ յանկարծ դարձաւ յետս, անձապարէր ի կողմանց Եդեսացւոց յԱնտիոք, եւ առաքեալ առաջի իւր զԱրբետիոն եւ զԳոմոարիոս զի գրաւեսցէ այսրէն յետս զերեւելի անցսն Սուկկեաց (ի մէջ Հեմոս լերանց), զոր վաղն գրաւեալ էր Յուլիանոս, եւ եւ ինքն յԱնտիոքայ ի ճանապարհ յանդգան ժամանակս աշնայնւոյն. այլ անդէն ի Տարսոն Կիլիկեցւոց կալաւ զնա տենդ ինչ թեթեւագոյն, եւ յառաջեալ սակաւ ինչ՝ ի Մոփսուկրենէ առ ստորոտ Տաւրոսի ի նմին տենդէ վախճանէր՝ առեալ կնիք յԵւզոյեայ յարիանոս հայրապետէն Անտիոքայ, ի 45 ամաց հասակի եւ ի 25 ամի կայսերութեանն (3 Նոյ. 361):

Իսկ եւ իսկ ի գլխաւորաց զօրուն առաքեցան Թէոդոլայիփոս եւ Աղիգիլդոս կոմսք ի Նայիսոս առ Յուլիանոս՝ տալ զլուր: Եւ փութափութակի Յուլիանոս, անց ընդ Սուկկս եւ ընդ Փիլիպպուպոլիս. իբրեւ լու եղեւ ի Կոստանդինուպոլիս՝ թէ ի Պերինթոս է կայսրն նոր, դիմեաց ժողովուրդն խուռնընթաց առաջի նորա, եւ այնպէս առ ած զնա ծերակոյտն ի մայրաքաղաքն (11 Դեկտ.): Յետ աւուրց ինչ եհաս անդր մարմինն Կոստանդեայ, ինքնին Յուլիանոս լսկով պատերազմական հանդերձիւ, առանց ծիրանւոյ եւ պսակի եղ ընդ առաջ նորա, բուռն հար զդագաղացն եւ արտասուեաց, թերեւս յիշելով զարտասուսն Աղեքսանդրի՝ ի վերայ Դարեհի, եւ Կեսարու՝ ի վերայ Պոմպէի. ընթացաւ հետի առաջի՝ մինչեւ ածաւ յեկեղեցի առաքելոցն եւ եդաւ ի շիրիմս կայսերական առ մարմնոյն Կոստանդիանու:

Ըստ Ս. Գրիգորի Նազիանզացւոյ եւ Թէոդորետեայ զղջացաւ Կոստանդիոս ընդ խոտորութիւնն՝ զոր յարոյց յեկեղեցւոջ, եւ արտասուօք հառաչէր՝ զի ընդ ուղղափառ դաւանութեան ոգորեցաւ: Այլ Ս. Աթանաս եւ Ս. Յերոնիմոս ոչ բարի ինչ զվախճանէ նորա վկայեն: Վաղ ասէ զծանանէ Ամիանոս Մարկեղինոս այր հեթանոս թէ «Ըմբռնեաց Կոստանդիոս սխալս քրիստո-

նէից, որ այնչափ պարզն եւ անպաճոյճ էր. փոխանակ մեծարանաց եւ ըստ արժանաւորութեանն առաջնորդելոյ կրօնիցն այնոցիկ, արկ զանձն քննասիրութեամբ ի խոյզ եւ ի խնդիր նորա. յարոյց բաժանմունս բազումս եւ եդ հաստատութիւն բաժանմանցն՝ բանիւք հակառակութեամբ : . . . Տայր եպիսկոպոսացն այսր եւ անդր ճանապարհ առնել անդադար՝ վասն ժողովս գումարելոյ, յորս ինքն իբրու ընտիր աստուածեղէն պաշտամանն եւ վարդապետութեան կամէր լինել,,:

## 76

Փլաւիոս Յուլիանոս որ անուանեցաւ Ուրացեալ, առ միահեծան զօրութիւնն ի 29 ամաց հասակի առանց թաթաւելոյ զձեռն իւր յարիւն ազգականին իւրոյ: Ժամանակ երկամեայ իշխանութեան նորա (361—363) էր ընդերկուամն իմն ժամանակաց յետս կոյս իբրեւ զկէտ դարու:

Ընդէն ի սկզբան 361 ամին՝ յետ տօնելոյ զտօն յայտնութեանն ընդ հաւատացելոց ի Գաղիա (6 Յունուար), հրապարակաւ յայտ արար զօրացն՝ թէ ապաստանեալ է յօգնականութիւն դիցն անմահից: Իբրեւ առ միահեծան զառաջնորդութիւնն ի ձեռս, զայս ինչ յառաջ քան զամենայն կէտ առաջի ունէր՝ ամբառնալ միւսանգամ ի վեր զհին կրօնսն, եւ պատուականագոյն է ինձ, ասէր, զի մեծ քրմապետս եմ քան Օգոստոս, եւ ըստ երկոցունցս իսկ բաժանեալ էր նորա զժամանակ իւր ի պաշտօն տէրութեանն եւ ատեանց: Սակայն չհամարեցաւ Յուլիանոս բաւական զառաջին հեթանոսութիւնն միւսանգամ կանգնել, այլ եւ նորոգել զնա կամէր եւ պատուաստել զբունն նորա զօրացեալ՝ դալար շառաւիղք քրիստոնէութեանն: Եդ կարգաւորութիւն համօրէն պաշտօնէից հեթանոսութեանն. ինքն ըստ նախնական իշխանութեանն իբրեւ քրմապետ մեծ[1] ունէր ընդ իւրեւ քրմապետս ընդ սահմանս պետութեանն ըստ գաւառաց գաւառաց. ուսուցանէր զնոսա Յուլիանոս գրով՝ թէ որպէս պարտ իցէ նոցա զառաքինութիւնսն պահել եւ զխիղճ մաքրել, որպիսի ինչ կեանս վարել՝ զի փառաւոր լիցի վարդապետութիւն եւ պաշտօն նոցա, զմտաւ ածել զպատիւ իւրեանց իբրեւ զաստուածոցն սպասաւորաց, թէ վերագոյնք քան զպաշտօնեայս տէրութեանն են եւ յայն սակս արժան է նոցա զատանել պատիւ ի պաշտօնէից տէրութեանն. "իշխան գաւառական վաղվաղակի իբրեւ կոխիցէ զսեամս մեհենին՝ է նա այնուհետեւ իբրեւ դոյզն ոք ի մարդկանէ,,: Յօրինէր նկարագիր ինչ կենաց նոցա ասելով թէ պարտ եւ պատշաճ է նոցա լինել "մարդասէր, հիւրասէր, բարերար, ազնուապաշտօն,,. լինել

1 Pontifex maximus.

աղքատասէրս, "քանզի անաստուածքն Գաղիլեացիք[1] բաց յիւրեանց աղքատացն եւ զմերոյն կերակրեն„. ի բաց կալ ի թատերաց, ոչ ըմպել յաշխարհաւանդս. նա խնդրէր ի նոցանէ եւ զգաստութիւն եւ ի վերայ ամենայնի խոնարհութիւն եւս՝ որոյ եւ անուն իսկ պակասէ ի հեթանոսական լեզուսն: Չէ պարտ նոցա, ասէ, ընթեռնուլ զԱրքեղղքոս եւ զՀիպպոնաքս (զքանաստեղծսն հենգնիչս) կամ զկտրի կատակերգութիւնսն, ոչ զգիրս Էպիկուրեայ (որ զհեշտականութիւն դնէր գլխաւորական բարի) եւ ոչ զՊիւռոնայն (որ զընաւ ուսուցանէր տարակուսել), այլ զՊիւթագորայն, զՊղատոնին եւ զայլոց նոյնպիսեաց, եւ ոչ թէ անխտիր զոր եւ պէտ վարդապետութիւն ընդունել, այլ զայնպիսին եւեթ որ զգոյութիւն աստուածոցն ցուցանիցէ եւ զտեսչութիւն նոցա: Խրատէր զերգս դիցն ուսանել ի բերան, ոչ հրապարակաւ միայն այլ եւ առանձինն մատուցանել աղօթս, գոնեայ երիցս յաւուրն, չանցուցանել քրմաց զօրն առանց զոհի: Փախարէն առաքինութեանցս խոստանայ հատուցումն հանդերձելոց կենաց: Սակայն ընդ այն տրտնջէր Յուլիանոս (ի թղթին առ քրմապետն Գաղատիոյ) թէ անաստուածքն Գաղիլեացիք ցուցանիցեն մեծամեծ օրինակս սիրոյ եւ բարերարութեան, հոգաբարձութեան ի թաղումն վախճանելոցն եւ սրբութեան վարուց, յորոց հեռի յոյժ են հեթանոսքն. Թէպէտ եւ զառաքինութիւնս քրիստոնէիցն կեղծաւորութիւն կամէր կարծեցուցանել: Իսկ ինքն կայսր, քանզի չգտանէր պարապ օր ըստ օրէ ելանել ի մեհեանս, զիւր իսկ բուրաստան ի Կոստանդնուպօլիս յամենայնից իմն մեհեան փոխեաց՝ պատկերս խիտ առ խիտ կանգնեալ, եւ ի պալատանն ունէր տեղի պաշտաման առանձինն աստուածութեան արեգականն՝ որում զոհէր յելսն եւ ի մուտս, որպէս եւ ի գիշերի՝ գիշերական աստուածոցն. մեծաւ եռանդմամբ իբրեւ քուրմ զանազանս զոհիցն ինքնին փողոտէր, հատատեալ զաչսն դիտել զնշանս հանդերձելոցն՝ ձեռօքն խառնէր զփորոտիսն ջերմաջերմս, զուարթադէմ ձգէր տանէր զփայտն, լուցանէր զկրակն եւ կայր փչէր ի նա: Թէպէտ եւ ինքն զգաստ էր վարուքն, սակայն ի տօնս լկտուոյն Աստղկան երեւէր նա յԱնտիոք քաղաքի "իբրեւ զկապիկ մի, կարճ հասակաւ, ուսովք ցցելովք ի վեր„ զի գնայր զայր շուրջ պատեալ ի կանանցն շքեթելոց՝ զորոց զհետ անկեալ զայլն մանկտի անառակք լի ծաղու:

Չխնայէր ի ծախս առ ի փառաւորելոյ զպաշտօն դիւցապաշտութեանն. բազմացոյց զպատկերս՝ որոց միայն յիշեցուցիչ ինչ տեսիլ համարէր ունել եւ ոչ ինչ աւելի. անհնարին էր կոտորած զոհիցն՝ որոց ոչ միայն հեղումն արեանն, բոցն ցոլացեալ եւ շոգին ծառացեալ փառաւոր զպաշտօնն գործէր, այլ եւ կե-

1 Այսպէս իսկ եւ ի հրովարտակս հրամայէր կոչել զքրիստոնեայսն.

Digitized by Google

բանակուրն նոցա խաղծ իմն էր լեգէոնացն (մանաւանդ բերան Գաղղիացւոց) գտանել ի հեթանոսութիւն: Զայնմախութիւն կատարածի անասնոցն հենգներով՝ ոչ քուրմ զոհագործ այլ այր զըհավանառ զկայսր կոչէին: Ի գլխաւոր դրօշուէ զօրուն հան զգիր անուանն Քրիստոսի, զոր Կոստանդիանոս եդեալ էր, եւ դարձոյց յառաջին կերպարանն. իսկ զայլսն ի դրօշուց զարդարէր դիցն նա եւ իւր իսկ պատկերօք, որպէս թէ չկարիցեն զօրքն ի լինել հանդիսի ցուցանել մեծարանս կայսերն՝ առանց եւ զդիսն պատուելոյ. եւ դարձեալ հարկ էր միում միում ի զօրացն անցանել զառաջեաւ կայսերն եւ ընդունել պարգեւ ի ձեռաց նորա՝ յետ արկանելոյ սակաւ ինչ խունկ ի խարոյկն որ բորբոքէր ի վերայ բագնին: Նոր իմն օրինակ անարիւն հալածման քրիստոնէութեան հնարեցաւ, այս ինքն ի ծաղր եւ յանարգութիւն զքրիստոնէութիւնն իջուցանել: — Մեհեան մեծաշուք տայր շինել ծախիւք քրիստոնէից՝ ուր մեհեան ինչ աւերեալ էր նոցա ի քրիստոնէիցն. զամենայն առաւելութիւնս եկեղեցականացն զոր Կոստանդիանոս շնորհեալ էր՝ առ յետս, "զի դիւրագոյն գործիցէ Գալիլեացւոցն զաւետարանական աղքատութեանն վարդապետութիւն եւ հորդեացէ նոցա ճանապարհ յերկինս,,: Յամենայն պաշտամանց տէրութեան ի բաց հան զքրիստոնեայսն, զի արգելու նոցա, ասէ, աւետարանն առնուլ սուր: Զամենայն իրաւունս եբարձ ի նոցանէ եւ զպաշտպանութիւն իսկ անձանց առաջի դատաւորաց, քանզի հաւատք քրիստոնէից զհակառակութիւնս եւ զգժտութիւնս, ասէ, արգելու: Յորժամ վասն տէպ հալածանաց տրտնջէին՝ ասէր թէ աւետարանն ուսուցանէ նոցա համբերութեամբ տանել: Նա աւանիկ արգել նոցա լինել ուսուցիչս "ճարտարխօսութեան եւ գիտութեանց որ ի դիցն տուան պարգեւ,,. եւ հենգնէր իմն թէ պարտ է քրիստոնէից կուրութեամբ հաւատալ եւ մի ճարտարել: Եփիանոս իսկ զայս վերջին արգելս անողորմ կոչէ եւ արժանի մշտնջենական մոռացութեան:

Մեւս եւս նոր հնարս խորամանգութեան խորհեցաւ Յուղիան. եդ ի միտ շինել զտաճարն Երուսաղէմի եւ նորոգել զհրապարակաւ պաշտօն հրէութեանն եւ այնպէս դատարկացուցանել զմարգարէութիւնս հնոցն եւ նորոցն կտակարանաց. մանաւանդ զի թուէր ունել եւ սէր ընդ արիւնարբու պատապագս նոցա եւ զխնհոմա համարէր առատուած մեծ տոհմայինն Հրէիցն, եւ զի կամէր առնել անուն մեծութեան շինելով տաճար ի վերայ բլրոյն Մորիայ, առ ի նսեմացուցանելոյ զշքեղ եկեղեցին որ ի Կոստանդիանոսէ շինեցաւ ի վերայ Գերեզմանին սրբոյ: Ոչ միայն Հրէիցն հրաման ետ եւ յորդորեաց իսկ հրավարտակաւ, այլ եւ ժողովեաց նա զքանչս ի ճարտարապետաց եւ ետ ի գոյն արծաթ բազում: Դիմեցին Հրեայք յամենայն կողմանց՝ համարելով զկայսր մեւս եւս Կիւրոս,

կանայք տային զզարդս իւրեանց, յորոց բազումք կրէին ձեռօք իւրեանց քարինս եւ զհողն պեղեալ ընդունէին ի գոգ հանդերձից իւրեանց, նա եւ հեթանոսք իսկ ձեռն տային ի գործ։ Հանդարտութեամբ հայէր ի գործն Կիւրղոս եպիսկոպոս Երուսաղեմի († 386) ասելով՝ թէ չյաջողէ գործդ եւ կատարելոց են ի վերայ նորա մարգարէութիւնքն Դանիէլի եւ Որդւոյն Աստուծոյ։ Իբրեւ զհին նշխարս աւերակացն ի բաց առին, եւ ի վաղիւ անդր սկիզբն շինուածոյն էր քննելոց, գիշերի եղ մրրիկ, եւ ցրուեաց զհողն որ բերեալ կուտեալ էր։ Ի վաղիւն իբրեւ ամենեքեան միաբանեալ ի գործն, եղեւ սասանութիւն սաստիկ՝ մինչ զի ի հիմանցն ի վեր պուղելոց եւ այլոցն թօթափելոց՝ սատակեցան բազումք ի գործաւորացն եւ ի տեսողաց։ Իբրեւ միւսանգամ փորձէին, ասէ Ամբրոսիոս վկայ հաւատարիմ եւ ժամանակակից, ստիպելով Աղիպիոսի՝ զոր կարգեալ էր կայսեր ի վերայ իրացն, ահեղ ահեղ ահագին գունդք հրոյ ի ներքուստ ի վեր պուղէին եւ տեղին լինէր անմատոյց. իբրեւ հուրն չդադարէր՝ գործն դադարեցաւ (363)։ Այսմ ոչ միայն ի քրիստոնէից ժամանակակիցք (Գրիգոր Նազիանզացի, Ոսկեբերան, Ամբրոսիոս) վկայեն, այլ եւ ինքն իսկ Յուլիանոս խոստի զնմանէ պատմիչս ։ Վասն վկայութեանն Ամմիանու ասէ Ճիպպըն անգղիացի անհաւատ՝ թէ «հիացուցանէ զմիտս անհաւատ»։

## 77

Յուլիանոս, քանզի ծաղու իմն զհաւատս քրիստոնէից կամէր ցուցանել՝ եդ ինքնին գիրս հակառակ աւետարանին, եւ ժողովէր եւս երբեմն եպիսկոպոսունս յայլ եւ այլ կարծեաց հանդերձ բազում ժողովրդականօք՝ յիւրում պալատանն, զի վիճիցեն. եւ ի սաստկանալ դժուարութեանն «Լուարուք, ասէր, անսացէք ինձ, Աղեմանք եւ Փրանկք անսացին ինձ»։ Զայս առնէր, ասէ Ամմիանոս, վասն առաւել մեծամեծս զհակառակութիւնս բորբոքելոյ։ Դարձն իւր իսկ տայր ազատութիւն դառնալոյ եւ եպիսկոպոսացն աքսորելոց (362)։ Սակայն այն ազատութիւն անհնարին իմն վնաս էր մանաւանդ արիանոսութեան որ անգէն յանձին իւրում քայքայեալ՝ միայն արտաքին օգնականութեամբ քաղաքային իշխանութեան կայր ցայն վայր ի հաստի, եւ նմին հակառակ օգուտ մեծ ուղղափառն եկեղեցւոյ։ Քանզի իսկ եւ իսկ սկիզբն լինէր յերկուց կողմանց ջանալոյ ի միաբանութիւն՝ յոր մանաւանդ յօժարեալ էր մեծ մասն Կէս արիանոսաց։

Աթանասիոս որ յայնժամ դարձեալ էր յաթոռ իւր յԱղեքսանդրիա՝ ուր վաղ բարձեալ էր ի միջոյ Գրիգոր սպանեալ ի հեթանոս խուժանէ վասն բռնութեանցն (362), գումարէր իսկ

եւ իսկ սիւնհոդոս՝ 1. վասն ընդունելութեան եպիսկոպոսացն որք առ Կոստանդեաւ աքսորութեամբ խոնարհեցան ի կամս նորա. վասն որոյ սահմանեցաւ մի ինչ աւելի պահանջել, բայց ընդունել զժողովն Նիկիայ եւ արկանել նզովս ձեռնադրողաց, ուր ըստ կանոնաց՝ պարտ էր նոցա անկանել յաթոռոց իւրեանց եւ անցանել ի կարգ ժողովրդականն[1]։ Այս խնամոտն զիջուածս հաստատեցաւ եւ ի Հռոմ եւ սոքին միաբանեցան ընդ եկեղեցւոյ կամ ընդ ժողովոյն Նիկիայ ամենայն եպիսկոպոսունք արեւելից բաց ի նախահաւացն որ մնա ի Կոստանդնուպօլիս էին, ուր առաւելին Անոմեանքն եւ Կէս արիանոսք՝ որ յայսմ հետէ Մակեդոնեանքն անուանին, զօրացեալ էին։ Նոյնպէս սահմանեցաւ յետոյ եւ ի ժողովս ի Յունաց աշխարհին, ի Սպանիա եւ ի Գաղղիա։ 2. Վասն հերձուածոյ եկեղեցւոյն Անտիոքայ։ Քանզի սա ի ժամանակէ անտի մերժմանն Ս. Եւստաթեայ (331) էր բաժանեալ ժողովուրդն ուղղափառ յերկուս մասունս. ոմանք առաջնորդութեամբ երկուց արանց ժողովրդականաց Փղաւիանեայ եւ Դիոդորի միաբանեալ էին ի հաղորդութիւն խորհրդոյ ընդ արիանոս եպիսկոպոսացն որ յաջորդեալ ծածուկ ունէին զմոլորութիւն իւրեանց, եւ ոմանք սակաւաւորք թուով՝ խորշեալ ի հաղորդութենէ նոցա, ժողովէին յեկեղեցւոջ ուրեք՝ անջատեալք յայլոց ուղղափառաց անուանելով զանձինս՝ Եւստաթեանս, ունելով գլխաւոր զերէց ոմն Պաւղինոս անուն։ Խնդիրս եւ ի կատարած կոյս կենացն Կոստանդեայ (360) կարգեցաւ Մելետիոս յեպիսկոպոսութիւն Անտիոքայ որ եւ իսկ եւ իսկ յայտ արար զանձնէ յառաջին ճառին թէ ուղղափառ է, ուստի եւ այնպէս չառին յանձն Եւստաթեանքն միաբանել ընդ մայր եկեղեցւոյն, նա եւ ոչ յայնժամ՝ յորժամ դարձան յաքսորանացն ի Մելետինեայ Հայոց։ Այդ կամք էին Աթանասայ եւ ժողովոյն Աղեքսանդրիայ՝ միաբանել զՄելետեանսն եւ զԵւստաթեանսն ընդ միմեանս եւ ի դոյն իսկ առաքեցաւ յԱնտիոք ի ժողովոյ անտի սիւնհոդոսական թղթով Աստերիոս Պետրացի եւ Եւսեբիոս Վերկելացի՝ որ ի դառնալն իւրում ի Թեբայիդայ՝ ուր աքսորեալ էր ի Կոստանդեայ, գնաց ի ժողովն անդ։

Սակայն վաղ հաստատեալ էր հերձուածն. քանզի Լուկիփեր եպիսկոպոս Կաղարիտացւոց ընկեր աքսորանացն Եւսեբեայ այր խիստ եւ անդողդ՝ որ վաղ աճապարեալ էր յԱնտիոք առաքեալ փոխանակ իւր յԱղեքսանդրիա զերկուս սարկաւագունս՝ ընդունել զոր ինչ ժողովն սահմանիցէ, ոչ միայն արհամարհեալ անգոսնեաց զզիջուածս ժողովոյն Աղեքսանդրիայ վասն եպիսկոպոսացն անկելոց, այլ եւ ինքն ձեռնադրեաց նա զՊաւղինոս յեպիսկոպոսութիւն Եւստաթեանց եւ այնպէս ետ հաստատութիւն հերձուածոյն։ Քանզի Մելետեանքն չկամելով ի բաց կալ ի մերոյ եպիսկոպո-

1 Ad stationem laicalem.

սէն իւրեանց ի Մելետեայ՝ զՊաւղինոս ոչ ընկալան, եւ հանապազորդէին ժողովել ի Հին (Պաղէա) եկեղեցւոջն առաջի քաղաքին։ Ըստ սմին բաժանման բաժանեցան եւ եպիսկոպոսունք որ ընդ իշխանութեամբ հայրապետութեան Անտիոքայ էին։ Իսկ Աթանաս էր յեկեղեցական հաղորդութեան ընդ Պաւղինեայ. նոյնպէս Հռոմ ընդ արեւմտից, որպէս եւ Կիպրոս կղզի զՄելետիոս ոչ ճանաչէր. այլ եւս համօրէն կողմանք արեւելից էին ընդ Մելետեայ։ Թէպէտ եւ Պաւղինոս եւ Մելետիոս չունէին եկեղեցական հաղորդութիւն ընդ միմեանս, այլ կուսակիցք նոցա էին ի հաղորդութեան։

Լուկիփեր եւս յօրինէր միւս եւս հերձուած յարեւմուտս ի Սարդինիա. պնդելով թէ պարտ է ի բաց ընկենուլ զամենայն եպիսկոպոսունս որ տկարացան յԱրիմինոն, եւ Հիղարիոս սարկաւագ նոյնպէս սարդինիացի, այն որ առաքեալ էր երբեմն ի Հռոմայ հրեշտակութեամբ առ Կոստանդոս եւ կրեալ բազում վիշտս, յայն վայր հասանէր՝ մինչեւ ասել թէ զեպիսկոպոսունս զայնոսիկ եւ զԱրիանոսսն որ դառնային յուղղափառութիւն՝ պարտ իցէ միւսանգամ մկրտել. սակայն փոքր ինչ էր հերձուածն այն Լուկիփերեանց եւ չքջաւ ի հինգերորդում դարու։

3. Երրորդ ինչ խնդիր էր վասն գժտութեան Անձն[1] անուան որ ի բնէ երկդիմի ինչ էր. մեծ մասն Կէս արիանոսացն որ յօժարեալ էին ի միաբանութիւն ընդ եկեղեցւոյ, ասէին երիս անձինս (այս ինքն երիս դէմս) հակառակ Փոտինեանց, ուր այլք առաւել յօժարէին ասել մի անձն (այս ինքն՝ մի էութիւն)։ Աթանաս որ վաղ ըստ երկոցունց եւս մտաց արկանէր զանձն բան ի կիր՝ քննեալ զմիտս երկուց կողմանցն ի սիւնհոդոսին՝ եգիտ միաբանս միմեանց, որք եւ հաւանեցան թէ լաւագոյն այն է՝ զի վարեսցեն զայն անուն ըստ մտաց Գոյացութեան, որպէս վարի իսկ ի մեծի ժողովոյն Նիկիայ։ Սակայն եւ այնպէս չեղեւ արդեամբք այն միաբանութիւն. Մելետեանք պինդ ունէին ասել՝ երիս անձինս, եւ Եւստաթեանք՝ մի անձն։ Բաց ի սոցանէ՝ եղեն բանք եւ զաստուածութենէ Հոգւոյն ի ժողովի աստ հակառակ Մակեդոնեանցն կամ Մարաթոնեանց։ Հաւանութեամբ ժողովոց՝ որ ի նահանգս նահանգս արեւելից եւ արեւմտից եղեն, եւ առանձինն հաւանութեամբ քահանայապետին Հռոմայ՝ ընկալաւ ժողովն Աղեքսանդրիայ զօրութիւն գրեթէ տիեզերական ժողովոյ։

Վասնզի իբրեւ դադարեաց արտաքին բռնութիւնն ի վախճանել Կոստանդեայ՝ այնուհետեւ հրապարակաւ դաւանեցաւ ճշմարիտ առաքելական վարդապետութիւնն նիկիական ի համօրէն արեւմուտս, յԵգիպտոս, ի Լիբիա, ի Դաղմատիա, ի Դարդանիա, ի Մակեդոնիա, յԷպիրոս, ի Յունաց աշխարհին, ի Կրետէ, ի Սի-

1 Ὑπόστασις.

Digitized by Google

կղզիս, ի Կիպրոս, յԻտալիա, ի Պամփիւղիա եւ ի Լիւկիա։ Թրէպէս եւ յարեւմուտս դեռ եւս բռնացեալ կալեալ էին զաթոռ իւրեանց Վաղէս, Ուրսակիոս եւ Աւքսենտիոս, որպէս եւ Եւզոյիոս յԱնտիոք, այլ անզօր իմն էին։ Միայն ի Թրակիա որ ընդ իշխանութեամբ Եւդոքսեայ եպիսկոպոսի Կոստանդնուպօլսոյ էր՝ հզօրագոյն էր արիանոսութիւն, որպէս եւ ի մեծի մասին Բիւթանիայ եւ Գաղատիայ։

Այսպէս ոչ որպէս կամէր՝ յաջողեցաւ խորհուրդն Յուղիանեայ, զի անհամեմատ իմն էր յառաջադիմութիւնն եւ հաստատութիւն ուղղափառ եկեղեցւոյ։ Նմին իրի իսկ զայրացաւ յոյժ կայսր ընդ շունչ եւ ոգի գործոցն՝ ընդ Աթանաս, մանաւանդ զի եւ քուրմքն աղաչեցին զնա բառնալ զայն եպիսկոպոս ի միջոյ՝ ապա թէ ոչ չմնայ, ասեն, ոք յԱղեքսանդրիա որ դիցն պաշտօն հարկանիցէ։ Նախ գրեաց կայսր առ Աղեքսանդրացիսն՝ աքսորել զնա ի քաղաքէն՝ վասն զի չէ համոյ ձեզ, ասէ, դարձ նորա. եւ ապա գրէր ի բաց հանել ի համօրէն իսկ Եգիպտացւոց աշխարհէն. քանզի ի սմա իսկ միայնում, ասէ, ժողովեալ է ամենայն չարութիւն քրիստոնէական ուսմանն, եւ առ վերակացու աշխարհին գրեալ փութացուցանէր հանել զնա ի կողմանց անտի. «Դէ եմ, ասէ, տրտմութեամբ եւ սրտմտութեամբ զի արուեստիւք նորա արհամարհեալ անգոսնեցան դիքն. չէր ինչ ինձ այնպէս ուրախութեան՝ բայց լսել թէ ել Աթանաս ի համօրէն Եգիպտացւոց աշխարհէն, քանզի յանդգնեցաւ ժանտն յաւուրս թագաւորութեան իմոյ հաւանեցուցանել կանայս հելլենականս՝ առնուլ կնիքս»։ Այն ինչ մտեալ Աթանասայ ի նաւ՝ երթայր զգետն ի վեր ի Թեբայիս, գայր զհետ միւս եւս նաւ արամբք փառելովք զոր առաքեաց զհետ վերակացու աշխարհին ըմբռնել զԱթանաս, զի բարձցէ զնա ի կենաց՝ որպէս հաւանութեան է. հրամայեաց Աթանաս նաւավարին դառնալ այսրէն զգետն խոնարհ. հասին առ միմեանս նաւքն, եհարց հրամանատար փառելոցն՝ զԱթանաս տեսէ՞ք. տուաւ պատասխանի ի նաւէն Աթանասայ՝ թէ չէ նա կարի հեռի աստի ի ձէնջ։ Նոքա անձապարեցին ի վեր կոյս եւ Աթանաս դարձաւ թաքեաւ յԱղեքսանդրիա եւ ապա անկաւ յԱրաբիոյ։ Այլ ի մեկնել իւրում այսպէս տայր Աթանաս հրաժեշտ ժողովրդեանն որ լայր. «Այդ փոքրիկ ինչ ամպ է՝ զի անցցէ փութանակի»։ Բանիցն եւ արդիւնքն կատարեցան։

## 78

Պատրաստեցաւ Յուղիանոս տալ մեծ ինչ մարտ պատերազմի ընդ Պարսից ընդ ժառանգական թշնամեաց տէրութեանն։ Գլխաւոր ի պատրաստութեանց անտի նորա էր հարցանել

Digitized by Google

զպատգամս դիցն եւ քննել զնշանակս ընդերաց զոհիցն. այն ինչ եկեալ յԱնտիոք՝ չոգաւ այց առնել մեհենի իմիք առ Որոնդ-գետով՝ ուր հասին նմա աւետիք թէ գտաւ Ապիս ցուլ յԵգիպտոս. դարձաւ անտի կայսր մեծաւ ուրախութեամբ յԱնտիոք եւ իբրեւ եգիտ անդ դատարկ զմեհեանն Ապողոնեայ, կշտամբեալ յանդիմանեաց զծերակոյտ քաղաքին վասն ամպարշտութեանն, եւ յանտառին Դափնեայ նորոգեաց միւանգամ զմեհենի պաշտօն Ապողոնեայ եւ զպատգամախօսութիւնն, եւ զոսկորոտին Ս. Բաբեղայ զոր քուրմքն խափանիչս պատգամացն ցուցին, ետ բառնալ քրիստոնէից ի բաց. այլ ընդ այն զայրացաւ կայսր՝ զի բարձին օրհնութեամբք երգոց, եւ իբրեւ ի գիշերի անդ այրեցաւ եւս յանկարծ մեհեանն, քրիստոնեայքն համարեցան պատճառք խակագործութեանն, որպէս եւ ցամաքելոյ աղբերացն եւ նուազութեան ցորենոյն. յայն սակս հալածեաց զնոսա Յուլիանոս, եւ փակել զմայր եկեղեցին Անտիոքայ եւ հան զգիրսն իւր հակառակ քրիստոնէութեան։ Յուլիանոս կոմս արեւելից եւ քեռի կայսերն որում յանձն էր քննութիւն յանցաւորացն այնոցիկ անց ըստ չափ կամաց կայսերն՝ բայց յետ սակաւ ինչ միոյ վախճանեցաւ որդնալից։ Ինքն Յուլիանոս զոհիւք եւ բղձութեամբք դիմէր հասանել յաղթութեամբ ի Տիզբոն։ Ընդ հրձիգ առնէր զնաւակամուրջն զոր արկ ի վերայ Տիգրիս գետոյ, ընդ որ քրթմնջել սկսան զօրքն։ Նա եւ պատգամք եւս դիցն չցուցանէին յաջողութիւն, սակայն եւ այնպէս քինէին առնել ճակատս, եւ ի միում նուագի ընթացաւ ինքն կայսրն առանց զրահից ի ճակատ անդր ի մշտագինեալ պատերազմին եւ ամբարձեալ զձեռսն ի վեր՝ ի ձայն բարձր տայր քաջալերս զօրացն։ Բայց անդուստ եկն նետ ի կողմն եւ եգեւ ընդդահար. առին տարան զնա շալակաւ ի վրանն։ Ընդ խօսեցաւ յերկար ընդ բարեկամաց իւրոց եւ ընդ փիլիսոփայից զագուոյն ազնուութենէ. բացաւ միւանգամ բերան վիրին, խնդրեաց ջուր ցուրտ, արբ եւ փչեաց հան զոգին զհասարակ գիշերաւ 32 ամաց հասակի, թագաւորեալ ամիսս 20 (26 Յունիս. 363). թաղեցաւ ի Տարսոն Կիլիկեցւոց։ Այսպէս պատմէ Ամմիանոս վկայ ականատես եւ հաւատարիմ մատենագիր. սակայն եւ բազում ինչ խառնակութեամբ պատմի վասն մահու նորա մանաւանդ ի համբաւուց քրիստոնէիցն, որպէս թէ (ըստ Թէոդորետայ) իսկ եւ իսկ յետ զվէրսն առնլոյ՝ ցանեաց Յուլիանոս զարիւնն ի վեր յերկինս՝ ասելով “Յաղթեցեր Գալիլեացի”. եւ կամ (ըստ Փիլոստորգեայ) ցանեալ յարեգակն կոյս ասելով “Ա՛ռ շիջո զծարաւ քո”. եւ կամ դարձեալ (ըստ Գրիգորի Նազիանզացւոյ) վաղվաղակի յետ վիրացն ցանկայր արկանել զանձն ի յորձանս ինչ ջուրց՝ զի լինիցի անհետ իբրեւ միւս եւս Ռոմուղոս եւ իբրեւ ընկալեալ ի դից՝ այնպէս պատիւ դասեսցի։ Այսպէս անց գնաց

վախճանակի Յուլիանոս, երիտասարդ ի ծաղկի հասակին, փիլի-սոփայն, պատկառելի համբաւովք յաղթութեանց ի մարտս պատե-րազմաց, ընդ արտաքին գիտութեամբք եւ անարատ բարս բարուցն, որ տպաւորեալ ի քրիստոնէութենէ լեալ էր զանձն պաշտամանց հե-թանոսութեանն մեծաւ եռանդմամբ, եւ պանծայր թէ իցէ սահ-մանեալ անտուստ յերկնից ի վերուստ՝ զպաշտօն դիւացն յառաջին՝ մանաւանդ թէ յառաւելագոյն փառաւորութիւն անդր դարձու-ցանել՝ ազնուազուցանելով զնա փիլիսոփայութեամբ իւրոցն ժա-մանակաց, եւ բարձրագոյն մտածութեամբք զոր ի «Նաւաբեկու-թենէ հաւատոցն» ի հեթանոսութիւն անդր տանել ցանկայր։ — Սպանեալ ի Յուլիանոս առ հՏե Կոստանդեայ Պարքայ։

Գ․

Յովիանոս, Վաղենտինիանոս Ա. եւ Վաղէս, Գրատիանոս, Վաղենտինիա-նոս Բ. Թէոդոս Ա. Մեծն (363—395) — Դամասոս, Բարսեղ, Ամբրոսիոս — Երկրորդ տիեզերական ժողով (381) — վախճան Արիա-նոսութեան եւ ապիկանոսութեան։

79

Իսկ եւ իսկ ընտրեցաւ ի զօրաց անտի անձնապահապետն Փղաւիոս Յովիանոս (363—364)։ Սորա հարկեցեալ ընդ վերջս ժամանակին՝ հարկ համարեցաւ կռել դաշինս խաղաղութեան ընդ Պարսից, տալով նոցա յետս զսահմանս զրաւեալս անդստին յա-մի 297, այս ինքն՝ զհինգ նահանգսն անուանեալս «յայն կոյս Տի-գրիս գետոյ», եւ զմասն մի Միջագետաց հանդերձ Մծբին քա-ղաքաւ։

Հասեալ յԱնտիոք՝ առաքեաց նա հրաման առ կուսակալս նահանգացն թողուլ զքրիստոնեայսն ազատ ի կրօնս իւրեանց, այ-րեաց եւ կուսանաց տուեալ միւսանգամ առաւելութիւնսն զոր հան ի նոցանէ Յուլիան, արգել պատժով մահու չածել կին զկու-սանս նուիրեալս, քանզի բազումք յայնժամ բռնութեամբ կամ հաւանեցուցանելով յանգգնեալ էին ի դոյն։ Գրեաց առ Աթա-նաս՝ գալ ունել միւսանգամ զաթոռն եւ ապա հրաւիրեաց զնա յԱնտիոք խօսել ընդ նմա։ Զուր ջանային Ակես արիանոսք, որպէս եւ յետոյ Արիանոսք աղեքսանդրացիք շահել զնա մերժել յա-թոռոյ զհակառակորդս իւրեանց. «Ոչ ունիմ», ասէր, «կամիմ բռնանալ վասն հաւատոց. բայց այնմ՝ որում վասն միաբա-նութեան փոյթ իցէ, նմա տաց ձեռն»։ Մելետիոս դարձեալ յաքսորանացն ընկալաւ հրամանաւ կայսեր զմի ի նոր եկեղեցեաց քաղաքին։

Չեւ հանգչել զօրուն Յովիանոս յԱնտիոք, որչափ ինչ պէ-

տոյն էր. զի Թէպէտ եւ ուրախ եղեն անտիոքացիք ընդ մահ Յուլիանու զառաջինն խմբելով տօն ցնծութեան ոչ միայն ի Թատերսն, այլ եւ ի տաճարսն Աստուծոյ կենդանւոյ եւ ի վերայ գերեզմանաց մարտիրոսացն խայտալով եւ զքրիստոնէական օրհնութիւնս չքրիստոնէաբար երգելով, սակայն իսկ եւ իսկ սկսան դժկամակել եւ տրտնջել ընդ Թշնամանս դաշանցն կռելոց ի Յովիանեայ։ Նմին իրի եւ անտի կայսր ձմերայնի զօրօքն երթայ ի Կոստանդինուպօլիս. այլ անդ ուրեմն ի Դադաստենա՝ ի վերայ սահմանացն Գաղատիայ եւ Բիւթանիայ գտաւ Յովիանոս մեռեալ յանկողնի իւրում (17 փետր. 364), ամաց իբրեւ 33։ Ոմանք համարին ի շատ ուտելոյ, այլք ի սունկսն ուտելոյ լեալ. կէսք դարձեալ ի սենեկէ նորոգ բռելոյ եւ կամ դարձեալ՝ յածխոյ վառելոյ. Թերեւս յիմեքէ իմեքէ ի նոցունց կամ յամենեցունց իսկ իրքն դիպեցան։ Ամիանոս Թուի կասկածել՝ Թէ դաւ ինչ եղեւ։ Որպէս կարի յոյժ քան զչափն պարսաւի Յուլիան, նոյնպէս կարի յոյժ քան զչափն դրուատի Յովիան. այլ արդեամբք՝ այնչափ ինչ սակաւ է ժամանակ իշխանութեան Յովիանու, զի չէ դիւրին սահմանել զկարգ նորա ըստ ճշմարիտն վաստակոց։

Վաղվաղակի իբրեւ զմեռեալ առաքեցաւ մարմինն ի Կոստանդինուպօլիս՝ խաղաց զօրն ի Նիկիա՝ ուր ի դաշտի ուրեք առաջի քաղաքին ընտրեցաւ Փղաւիոս Վաղենտիանոս Ա. Օգոստոս (26 փետր.)։ Էր սա (43 ամաց) որդի Գրատիանու ուրումն պաննոնիացւոյ երբեմն կոմսի յԱփրիկէ, ի զօրավարութեանն ի Գաղղիա ցուցեալ քաջութիւն ընդ իշխանութեամբ Յուլիանու, եւ սակս վասն համարձակ զքրիստոնէութիւնն դաւանելոյ՝ ընկեցաւ առ Յուլիանու ի հազարապետութենէ Յովիական (Ասպանագրեան) գնդին։ Իբրեւ կամէր իմն զօրն Թէ ընտրեսցէ իւր կայսր՝ աԹոռակից զոք, համարձակութեամբ եւս նոցա պատասխանի՝ Թէ ընտրել զիս՝ ի ձեր ասպարան է, բայց սահմանել Թէ որդանակ առաջնորդիցեմ, այն իմ է։ Սակայն հայեցեալ ի պէտս իրացն՝ անդէն ի Նիկոմեդիա արար նա զեղբայր իւր զՎաղէս՝ ախոռապետ, ապա (28 Մարտ.) ի դաստակերտի ուրեք մօտ ի Կոստանդինուպօլիս առաջի բազմամբոխ բազմութեան՝ արար Օգոստոս, զարդարեալ ծիրանեաւ եւ պսակաւ եւ ի միում դեսպակի դարձան ի քաղաքն կայսերական։ Էր Վաղէս սա Յուլիանու տասնապետ յանձնապահաց գնդին եւ հանդոյն Յովիանու եւ Վաղենտիանու՝ յանձն առեալ Թողուլ զզինուորութիւնն քան զքրիստոնէութիւնն, եւ քաջութեանն վասն՝ Թողեալ ազատ ի կայսերէ։ Եւթն ամօք կրտսերագոյն էր Վաղէս քան զՎաղենտիանոս. սա էր բարձրանձն, բարեձեւ, հզօր եւ առկուն, ականաղեք կապուտակ՝ դաժանագոյն նայեցածովք։ Վաղէս՝ միջին հասակաւ, սեւահեր, բիծ ի միում ականն, զօրաւոր անդամովք, կոր

Digitized by Google

որունիւք եւ փոր նորա սակաւ ինչ ի դուրս։ Երկոքին եղբարք չգիտէին յունարէն, գեղեցիկ գիտութեանց անտեղեակ էին. սակայն Վաղենտինիանոս ունէր ճարտարխօսութիւն բնածին եւ սիրէր զարուեստս եւ նորոց եւս զինուց եղեւ հնարագիւտ։ Որպէս երկոցունցն հասարակաց են սովորանք անագորոյնութեան եւ խըստութեան, նոյնպէս եւ դրուատիք զգաստասէր կենաց եւ միաբանութեան ընդ միմեանս. ճանաչէր եւ յարգէր միշտ կրսերն զառաւելութիւն տիոց երիցուն։

## 80

Գարնայնի խաղացեալ կայսերքն երկոքին ընդ Թրակիա ի Մեդիանա դաստակերտս Դակիացւոց աշխարհին. անդ բաժանեցան զպետութիւնն. առ Վաղենտինիան զԻլլիրիկէ, զԻտալիա, զԳաղղիա, զԲրիտանիա, զՍպանիա եւ զԱփրիկէ, այս ինքն՝ զարեւմուտս. թողլով Վաղեսի արեւելքն, այս ինքն՝ ամենայն հռոմէական նահանգքն Ասիոյ, Եգիպտոս եւ Թրակիա։ Ըստ նմին բաժանեցան եւ զօրավարք եւ զօրականքն։ Ի Սիրմիոն բաժանեցան ի միմեանց եղբարքն երկոքին եւ չտեսին այնուհետեւ երբեք ուրեք զմիմեանս. չոգաւ Վաղենտինիան ի Մեդիոլանոն՝ զոր ընտրեաց նա փոխանակ Հռոմայ եւ Վաղէս ի Կոստանդնուպոլիս։ Յետ երից ամաց ետ Վաղենտինիանոս՝ ծիրանի եւ թագ որդւոյ իւրում 8ամենի՝ Գրատիանեայ ի Ամիենս, հանդուրելով զնա առաջի զօրացն եւ յորդորելով՝ արժանի հօրն եւ հօրեղբօր զանձն ցուցանել՝ ուրախութեամբ ընթացեալ ընդ Հռենոս եւ ընդ Դանուբ պաղեալ (24 Օգ. 367)։

Դարձեալ եդ միւսանգամ զնշանագիրս անուանն Քրիստոսի ի վերայ դրօշուն, նորոգեաց զպատուէր պահպանութեան տէրունական աւուրն ըստ հրամանին Կոստանդիանոսի, կացոյց ազատս զդստերս կանանց խաղալկաց յուսանելոյ զարուեստ մօրցն իւրեանց, հան հրաման զեկեղեցականսն վասն եկեղեցական իրաց յեկեղեցականաց միայն դատել եւ ի նոցունց յաշխարհականս չբողոքել. նոյնպէս զայլ եւս եկեղեցական ազատութիւնսն՝ զոր Յուլիանոս հանեալ էր, դարձեալ այսրէն. սակայն զպարգեւսն՝ որ ի կուսանաց առ կղերականս եւ վանականս տային՝ զայն սահմանեաց առնուլ ի գանձ արքունի, վասն զեղծման ոմանց ի կղերականաց, եւ յայն սակս արդար իսկ զօրէնսն հաւանէին Ամբրոսիոս եւ Յերոնիմոս. Նմին հակառակ՝ սահմանեալ օրէնք Վաղենտինիանոսայ՝ զի բարձ ի կղերականաց զազատութիւն ի հարկաց հասարակաց։ Եդ զհնգամեայ պաշտօն Պաշտպանչաց[1] քաղաքացն, որք ընտրէին յերեւելի արանց քաղաքին՝ լինել պաշտպան զրկելոց ի

1 Defensores.

Գրեթէ զամենայն ժամանակս թագաւորութեան իւրոյ (365—375) էր Վաղենտիանոս հանապազ պատերազմաւ ընդ ազգաց ազգաց արեւմտից՝ որ միանգամ զօրացեալ էին յետ հարուածոցն զոր եհար զնոսա Յուլիանոս. նախ առ Հռենոսիւ՝ ընդ Աղղեմանեաց, Փռանկաց եւ Սաքսոնաց, եւ շինեաց ամրութիւնս առ նոյն գետով (ի Բազիլէայ ցՄոգունտիա) եւ առ Նեկկար գետով. ապա կռուէր նա առ Դանուբաւ՝ ընդ Կուադաց եւ Սարմատաց. կամ ինքնին իսկ նահատակելով ի պատերազմունս եւ կամ ի ձեռն զօրավարացն՝ Քարիէտոյ, Սեւերիանու, Դագաղայիփայ, Յովինոսի եւ Սեւերոսի, որպէս եւ այլ եւս զօրավարք տային ճակատ ի Գաղղիա եւ յԱփրիկէ ընդ բնակ ազգացն: Թէոդոս հայր Թէոդոսի կայսեր մերժեաց ի Բրիտանիա զյարձակումն Պիկտաց եւ Կաղեդոնացւոց՝ զրաւելով զերկիրն մինչեւ ցխրամն Անտոնինեայ եւ երկիրն նորոգ զրաւեալ կոչեցաւ Վաղենտիա նահանգ:

Յետ վերջնոյ ճակատուն եւ յաղթութեան ի Գաղղիա՝ յորժամ ի ձմերոցս էր Վաղենտիանոս ի Բրեգիտիոյ (որպէս հաւանութիւն է՝ ի Սզոն) եկին առ նա պատգամաւորք Կուադացն խնդրել խաղաղութիւն՝ ասելով թէ գլխաւորք ազգին չունին ինչ մասն յապստամբութիւնսն որ ի սահմանս Հռոմայեցւոց եղեն, այլ զայն ռամիկն արար՝ դրդեալ ի շինուածոյ անտի բերդից յերկրին իւրեանց: Ընդ բան բերդիցն զկծեցաւ սէգ հռոմայեցին իբրեւ ընդ կշտամբանս, եւ սկսաւ յանդիմանել զնոսա մեծաւ սրտմտութեամբ. ուժգնութիւն սաստկութեան խօսիցն տապու հանգարտեցաւ, եւ արիւն սաստիկ ի գլուխն, ծածկեաց քիրտն մահու զդէմս երեսացն, ձայնն սպառեցաւ. իբրեւ մերձ յանկանել էր՝ ի վեր կալան զնա սպասաւորքն եւ տարան ի սենեակն. անդադան եհաս բժիշկն՝ որ իբրեւ հատ երակ, չել արիւն. զհօտակացան ճանաչէր, բայց խօսել ինչ ոչ կարէր. յետ դժուարին ճըգնութեան՝ հան զոգին (17 Նյմ. 375), ամաց 55, թագաւորեալ ամս 11 եւ ամիսս իբրեւ 9: Զմռսեցաւ մարմինն եւ եդաւ ի Կոստանդնուպօլիս, մինչեւ կայսր Թէոդոս Մեծն թաղեաց զնա փառաւորութեամբ (382. փետր.):

Էր Վաղենտիանոս անպաճոյճ ի պիտոյս կենացն, սեղան նորա վայելուչ առանց բարեկեցութեան, որպէս ինչ վայելէր պատերազմասէր թագաւորի: Խստութիւն՝ էր տիրող նկարագիր բարուց նորա, նմին իրի եւ բարեկարգութեան զօրացն կարի էր վրէժխնդիր, բայց էր միանգամայն տկար ի ներքոյ հրամանատարացն՝ զորոց զյանցանսն թողոյր անպատիժ: Սակայն եւ այնպէս էր նա իշխան արթուն, զօրական քաջ եւ զօրավար մեծ: Խնայութիւն նորա անցանէր իսկ ի սահման ագահութեան, սակայն արար նա դիւրութիւն նահանգաց՝ յորոց վերայ հարկքն ծանրացեալ էին: Զմեծ



Digitized by Google

մասն պաշտամանց տայր արանց ընտրանեաւ, եւ առ նովաւ առաջնորդութիւնք չէին գնոց։ Խստութիւն նորա ի խորհրդոյ եւ ի կամակար յօժարութենէ էր եւ ոչ յանկարծադէպ ինչ, եւ բազում անգամ արժանի՝ անագորոյնութիւն զնոյն կոչելոյ։ Թէպէտ եւ զայնպիսիսն ի պաշտօն դատաւորութեան կացուցանէր՝ զորս իբրաւ-ւաւէրսն գիտէր, այլ եթէ սխալեալ ինչ յընտրութեանն էր՝ այնմ չկարէր ի վերայ հասանել, եւ թուէին նորա նմա Լիկուրգոսք՝ թէ միայն խիստ իցեն։ Հանդերձ աղքիմքք եւ ինքն ոչ մեղմացոյց երբեք ուրեք զխիստ դատաստանի իրիք, այլ խստացոյց բազում անգամ։ Նա ի վերայ ամենայնի՝ փոքրոգութեամբ խանտայր ընդ վաստակս այլոցն, զայն չածելով զմտաւ՝ թէ առն իշխանի ելանէ միշտ մասն ի վաստակոց անտի՝ զոր պատուելն եւ յարգել գիտիցէ։ Այս առանց մեծի ստգտանաց է եւ այն՝ զի թող նա եղբօրն համարձակ հալածել զուղղափառսն, զի ունէր իսկ ծոխութիւն ի վերայ նորա։ Կարի զօրաւոր էր երկեւղ առ ի կարծելոյ զնա յանագորունութենէ․ Եւպրաքսիոս վերակացու դատաստանաց՝ տեսեալ զնա թէ մերձ է հասանել յանագորունութիւն, խօսեցաւ զխլրտելոյ ազգաց ազգաց․ իսկ եւ իսկ զիջաւ սրտմտութիւնն եւ երեւէր լուրջ իբրեւ զԱնտոնինոս Պիոս[1]։

Յառաջնմէ կնոջէն ի Սեւերայ՝ զոր մերժեաց նա վասն պատճառի իրիք անծանօթի, եթող զԳրատիանոս իբրեւ 17ամեայ, յերկրորդ կնոջէն ի Յուստինայ զչորեքամեայն Վաղենտինիանոս եւ դստերս երիս՝ զՅուստա, զԳրատա եւ զԳաղղա․ առաջինքն մնացին անամուսին, Գաղղա եղեւ Թէոդոսի կայսեր։ Իսկ եւ իսկ ընտրեցաւ Վաղենտինիանոս ի զօրականացն՝ աւգոստոս (22 Նոյ.)․ չդարձաւ ընդդէմ Վաղէս, եւ ոչ ազնիւն Գրատիանոս՝ որ այնուհետեւ առաջնորդէր արեւմտից մեծաւ իմաստութեամբ (375—383)․ դարձոյց զմայր իւր զՍեւերա յաքսորանացն, հան օրէնս ի պատիւ ծերակուտին, թող զմնացուածս հարկացն՝ զորս տակաւին պարտէին նահանգքն, արար հոգ վասն ուսման հասարակաց, արգել մի քակել զհին շինուածս ի Հռոմ վասն զնորսն ի մեհենաց անտի խլելոց շինելոյ, եւ կացոյց ազատ զեկեղեցականս ի քաղաքական պարտուց եւ տուրց (377)։

Մատենագիրք քրիստոնեայք եւ հեթանոսք միաբանեն ի գովութիւն Գրատիանու․ ոգի գեղեցիկ ի բարենշան մարմնի․ գնացք նորա, դէմք երեսացն եւ շարժմունք ունէին զնկարագիր ընտանեկան խոնարհութեան եւ ներքին ազնուականութեան։ Էր նա խնամով կրթեալ ի գիտութիւնս, ունէր գեղեցիկ ձիր ճարտարխօսու-

1 Պատանեակն որ ի ժամ որսոյն առաժամ արձակեաց զշարակն՝ որ [illegible] թագաւորին, այնպէս գանակոծ եղեւ՝ զի մեռաւ ի վաղիւ անդր։ Դարբինն որ վասն ճարտարագործ ինչ զրահից շինելոյ յուսայր ընդունել պարգեւ՝ ընկալաւ պատիժ մահու, քանզի տակաւ ինչ պակաս էր ի կշռոյն հրամայելոյ։ Էին կայսեր արջք երկուք (Mica aurea եւ Innocentia) որ մօտ առ սենեկին իւրում սնանէին մարմնովք մահապարտաց․ եւ այլ եւս նմանօրինակք։

Digitized by Google

թեան եւ բանաստեղծութեան զոր եւ սիրէրն իսկ. զի վարդապետ էր նորա Աւսոնիոս գաղիացի կարգեալ ի Վաղենտինիանեայ։ Ի կրթութիւնս մարմնոյ հզօր էր եւ աջողակ. ննջէր սակաւ, էր սակաւապէտ յուտել եւ յըմպել եւ անստգիւտ զգաստաւորութեամբն։ Զգօնութեամբն եւ առատութեամբն եւ ազնուականութեամբն եւ չափաւորն ընկերականութեամբ եղեւ արդոյ եւ սիրելի ամենեցուն. բազում անգամ կանխէր յառաջ քան զխնդրուածս՝ տալ բարիս. էր ուրախակից ուրախութեան եւ կարեկից վշտաց այլոցն, այց առնէր հիւանդաց, նա եւ դոյզն իսկ զօրականի։ Այսր ամենայնի սրբութիւն եւ ամրութիւն՝ էր ճշմարիտն երկեւղ Աստուծոյ։

Սակայն չէ ինչ արժան զայնմանէ իմն լռել թէ երբեմն խաբէր յարանց արքունեացն յանդէպսն. կարի իմն զակատեալ էր զհետ որոց. խօսել խօսէր ի ծերակուտին զիրաց իւրաց իմաստութեանց, քանզի բնածին հանճարին զատեղի կարեւոր տեղեկութեանցն ըոյր, սակայն չսիրէր իմն ի բնէ զայնպիսի զնիւթական տեղեկութիւնս, զի ցամաք իմն նման երեւէին. Ներեսցուք մանկութեան նորա. ո՞ արդեւք յանդիմանեսցէ զծառ գեղեցկածաղիկ՝ թէ ընդէր պտուղս խայծեալս չունիս. գարնայնի կենացն հատաւ անկաւ Գրատիանոս։

Այսպէս յարեւմուտս։

## 81

Յարեւելս իշխէր եղբայր Վաղենտինիանեայ, հօրեղբայր Գրատիանեայ՝ Վաղէս (364—378) ի բերանոյ անտի գետոյն Դանուբայ մինչեւ յայնկոյս Եփրատայ։ Ընդէն յառաջին ամս թագաւորութեան նորա յարեաւ Պրոկոպիոս յազգականութենէ Յուլիանոսի որ կալեալ թագ ի Կոստանդնուպոլիս (28 Սեպտ. 365) եւ շահեցաւ իսկ զբազումս՝ շրջեցուցանելով ընդ իւր զՓաւստինա զայրի կին Կոստանդեայ հանդերձ դստերաւ նորա Փղաւիաւ Մաքսիմաւ Կոստանդիաւ քառամեաւ. արկեալ զարս նշանաւորս ի բանդ եւ շահեալ զուամբքն խոստմամբ աւարի։ Լեգէոնք երկու՝ զոր առաքէր կայսր ի Կեսարիայ Գամրաց՝ անցին ի կողմն ապստամբին ի ժամ ճակատուն առ Սանգարիոս գետով. Քաղկեդոն ապստամբեալ ինքնին իսկ ի կայսերէ՝ դիմակալ եղեւ. (ծաղր առար զնա՝ կոչելով գարեջրըմպու, այս ինքն՝ պանոնիացի. զի սովորական էր կակաջուր ի Պանոնիա.) Համօրէն Բիւթանիա անց ի ձեռս Պրոկոպեայ։ Հարկ համարեցաւ այնուհետեւ Վաղէս կոչել զԱրբետիոյ զզօրավար ծերունի՝ զթշնամին Պրոկոպեայ ի գործ պատերազմի. տուաւ ճակատ մեծ մօտ ի սահմանս Գաղատիայ. Գոմոյար եւ Ագիղոյ գլխաւոր զօրավարք Պրոկոպեայ անցին ի

Digitized by Google

կողմն կայսեր, եւ այնպէս վճարեցաւ յաղթութիւնն. երկուք ի հազարապետաց Պրոկոպեայ՝ ձերբակալ արարին զնա յարժամ յանտառին եւ ի խոխոմն փախուցեալ էր, եւ բերին կալան առաջի կայսերն. գլխատեցաւ Պրոկոպիոս ընդ երկոցունց հազարապետացն, եւ առաքեցաւ գլուխ նորա առ Վաղենտիանոս կայսր արեւմտից (27 Մայ. 366): Բազումք յետ այնորիկ սպանան ի Վաղեսէ յանխնայ առ լոկոյ կասկածանաց դաւակցութեանն:

Գոթք էին ի բանի ընդ Պրոկոպեայ, իբրեւ ընդ ազգականի կոստանդեան տանն, եւ յայն սակս առաքէր Թագաւոր նոցա Աթանարիկ 3000 այր ի թիկունս օգնականութեան, որք իբրեւ առին զլուր մահուն Պրոկոպեայ՝ սկսան ասպատակաւ աւերել զԹրակիա՝ մինչեւ զունդք առաքեալք ի Վաղեսէ արարին զնոսա զինաթափ եւ ցրուեցին ի քաղաքս Թրակացւոց. իբրեւ պահանջէր Աթանարիկ զարսն յետս՝ չառ յանձն տալ զնոսա Վաղէս եւ պատրաստեցաւ ի մարտ պատերազմի (367): Յետ երկուց արշաւանաց (367 եւ 368) յորս չվճարեցաւ ինչ մեծ՝ յաղթեաց կայսր Գոթաց (369 գարնայնի), եւ խնդրէր այնուհետեւ Աթանարիկ խաղաղութիւն: Սպասէր իմն սէգ հռոմայեցին թէ գայցէ Աթանարիկ ի Մարկիանուպոլիս ի բանակ հռոմայեցւոց, այլ զուր. զի պատճառէր Աթանարիկ թէ երդմնի լեալ է հօրն՝ չմտանել յերկիր սահմանացն հռոմայեցւոց (ապաքէն՝ իբրեւ բարեկամ), նմին իրի ի մէջոց վայրի գետոյն եկին նաւուք առ միմեանս եւ այնպէս դաշինքն կռեցան:

## 82

Յետ պարտութեանն Պրոկոպեայ եւ մանաւանդ յետ դաշանցն ընդ Աթանարիկայ՝ ժամ առ այնուհետեւ Վաղէս հալածելոյ ոչ միայն զուղղափառսն այլ եւ զԿէս արիանոսն, զՄակեդոնեանս, զԵւդոքսիանոս, համառօտ իսկ՝ զամենայն քրիստոնեայս՝ բաց ի բուն Արիանոսաց, այս ինքն՝ յԱնոմեանցն: Քանզի էր նա տուեալ զանձն վարդապետութեան Անոմեանցն, որպէս թուի՝ մանաւանդ թելադրութեամբ կնոջ իւրոյ Աղբիայ Դոմինիկայ՝ որ ջերմն էր յարիանոսութիւն, եւ յառաջ իսկ քան զարշաւելն ի Գոթս՝ առ Վաղէս կնիք յեւնոմեանն Եւդոքսեայ յեպիսկոպոսէ Կոստանդինուպոլսեայ:

Այլ իսկ յամի 365 (նախ քան զպարտութիւնն Պրոկոպեայ) յետ ընդունելոյ հրաման ի կայսերէ՝ եղեւ ժողով Կէս արիանոսաց եւ Մակեդոնեանց ի Լամփսակոս. յետ երկամսեայ խորհրդոց՝ մերժեցաւ վարդապետութիւն Եւդոքսեայ եւ Արիմինեան ժողովոյն եւ եղեւ ընդունելի գայթիգայթ դաւանութիւն ժողովոյն Անտիոքայ (որ յամի 341), եւ սահմանեցաւ ընդունել զԵւդոքսիոս եւ զմիաբանեալսն ընդ նմա՝ թէ ի բաց կացցեն ի վարդապետ-

ութենէն։ Իբրեւ լուաւ Վաղէս զսահմանեալսն ի պատգամաւորաց անտի ժողովոյն՝ սաստեաց զսոսա հաղորդել ընդ Եւդոքսեայ. իբրեւ չառին յանձն, հրաման տայր աքսորել զնոսա եւ եւդոքսեանս փոխանակ նոցա կացուցանել (365)։ Ի միւսում ամի (յետ պարտութեանն Պրոկոպեայ) յորժամ եկն նա երթալ յԱնտիոք առաջին Պարսից, ինքեան կամէր զհրամանն փութալ. անդէն ի Նիկոմիդիա կոչեցան մի բանս միաբանս Եղեւսիոս եպիսկոպոս Կիւզիկոսի եւ Եւստաթէոս Սեբաստիոյ Փոքուն Հայոց (երկոքին եւս Կէս արիանոսք) ընդունել զհաղորդութիւն Եւդոքսեայ, երկոքին եւս սոսկացեալ ընդունել եւ ապա ապաշխարեալ յետս կացին (366)։

Իբրեւ այսպէս նեղէին Կէս արիանոսքն եւ Մակեդոնեանք ի կայսերէ ընդունել զաղանդ Անոմեանցն՝ միաբանեցին դիմել առ կայսրն արեւմտից եւ առ Լիբերիոս քահանայապետ. առաքեցան պատգամաւորք՝ Եւստաթէոս Սեբաստիոյ, Սիլուանոս Տարսոնի եւ Թէոփիլոս Կաստաբաղայ Կիլիկեայ։ Չգտեալ անդ զՎաղենտիանոս ի Մեդիոլանոն, (քանզի ի Գաղիա էր յայնժամ), յանդիման եղեն Լիբերեայ ի Հռոմ՝ տալ թուղթ մի ձեռնագրով 64 եպիսկոպոսաց եւ աղաչել ընդունել զնոսա ի հաղորդութիւն իւր եւ եպիսկոպոսացն արեւմտից։ Զառաջինն չառ յանձն քահանայապետն, զի չընդունիք, ասէ, զսահման Նիկիական ժողովոյն. իբրեւ յայտ արարին պատգամաւորքն թէ ի բաց կացին նոքա ի մոլորութենէն եւ ունին եւս խոստովանութիւն Նիկիական հաւատոյ հանդերձ ի միասին էական բանիւ, ընկալաւ զնոսա այնուհետեւ քահանայապետն, ետ գիր ուղղափառութեան առ վաթսուն եւ չորս եպիսկոպոսունսն։ Ըստ մտաց այսց եպիսկոպոսաց գրեցին առ Լիբերիոս եւ ի Զմիւռնիայ, ի Պամփիւղիայ, յԻսաւրիայ եւ ի Լիւկիայ եւ առանց երկմտութեան է՝ թէ ընկալան եւ սոքա նոյնպիսի պատասխանի։ Սակայն ինչ եւեթ ժամանակք ի վերայ անցին ուղղափառութեան ընդունելոյ արեւելեան եպիսկոպոսացն ի հաղորդութիւն արեւմտեայցն՝ անդէն վախճանէր բազմավաստակն Լիբերիոս (24 Սեպտ. 366)։ Պայազատէր յաթոռն Պետրոսի՝ Դամասոս, այլ ոչ առանց հակառակութեան։ (Քանզի Ուրսինոս կամ Ուրսիկինոս սարկաւագ ետ ընտրել զանձն յեպիսկոպոսութիւն, յարեաւ հերձուած, եղեւ արիւնհեղութիւն բախելով երկուց կողմանց ընդ միմեանս։ Աքսորեցաւ Ուրսինոս, այլ յետ տարեւոր ժամանակի առ համարձակութիւն դառնալոյ ի Հռոմ. իբրեւ միւսանգամ խռովել կամէր՝ մերժեցաւ երկրորդ անգամ։ Կողմն նորա ի Հռոմ չհաղորդէր ընդ Դամասոսի, զառաջինն ժողովէր ի պաշտօն ի գերեզմանս մարտիրոսացն, ապա յեկեղեցւոջ ուրեք առանձին քաղաքին. ուստի դարձեալ եղեւ արիւնհեղութիւն. տակաւին յամի 380 կամէր իմն Ուրսինոս զբաւել զաթոռն Պետրոսի, այլ ի Գրատիանեայ կարճեցաւ։)

Պատգամաւորքն երեքին ընկալեալ թուղթս հաղորդութեան եւ յեպիսկոպոսաց ժողովելոց ի Սիկիլիա եւ յայլ նահանգս արեւմտեան պետութեանն, եկին բերին ընդ հանդերձ թղթովք քահանայապետին առ եպիսկոպոսունս արեւելից՝ որ ժողովեալ էին ի Տիանա քաղաքի Կապադովկիացւոց։ Գլխաւորք յեպիսկոպոսաց ժողովոյս էին Եւսեբիոս Կեսարիոյ Կապադովկիացւոց, Գրիգոր Նազիանզու՝ հայրն, Աթանաս Անկիւրայ, Պաւղոս Եմեսեայ եւ այլք որ վաղ առ Յովիանեաւ (363) արկեալ էին յԱնտիոք ձեռնագիր Նիկիական հաւատոյ։ Ուրախ եղեն հարք սուրբ Տիանայ ընդ դարձ նոցա յուղղութիւն եւ յետ ընդունելոյ զնոսա ի հաղորդութիւն՝ գրեցին թուղթ սինոդական առ եպիսկոպոսունս արեւելից՝ զի գումարեսցին զարնայնի ի Տարսոն Կիլիկեցւոց առ ի խառնելոյ զամենեսին ի հաղորդութիւն ընդ արեւմտեանսն (367)։ Այլ անդէն իսկ եւ իսկ ել հրաման սաստիկ ի կայսերէ՝ չառնել զայն ժողով Տարսոնի եւ այնպէս խափանեցաւ գործն. սակայն թուի ինձ թէ եւ յայսմ ժողովի ոչ ըստ ակնկալութեան իւրեանց կատարելոց էին. քանզի ի սինոդոսի ուրեք յԱնտիոք Կարիացւոց՝ կամեալ կամէին 34 եպիսկոպոսք միաբանել ընդ կաթուղիկէ եկեղեցւոյ, բայց չէին յօժարեալ ընդ բանն է միասին էական։

## 83

Սակայն մեծն Բասիլիոս՝ որ անդստին յամէ 370 ունէր զաթոռ եպիսկոպոսապետութեան Կեսարիոյ Գամրաց, յուսայր ածել ի կատարեալ միաբանութիւն զնոսա՝ որք ապաքէն դարձեալ էին սրտիւ ի մոլորութենէն, այլ անվստահ իմն էին ընդ կարի անաչառան յորթոդոքսաց, եւ մանաւանդ ջանայր ածել զՄելետիոս յընդունելութիւն արեւմտեայցն։

Բասիլիոս էր ծնեալ (330) ի մեծատուն տոհմէ, կրթեալ աստուածպաշտութեամբ, խոնարհութեամբ եւ զգաստութեամբ ի մօրէ իւրմէ յԵմմելիայ եւ ի Մակրինայ ի հանւոյ իւրմէ՝ զորոց զբանսն եւ զվարս յիշէր նա միշտ։ Նախ լեալ ի հրահանգս ի Նէոկեսարիա Պոնտացւոց ուր հռետոր լեալ էր հայր նորա եւ ուսեալ զուսումն վարժոցաց քաղաքի ծննդեան իւրոյ Կեսարիոյ՝ երթայր ի բարձրագոյն հրահանգսն, նախ ի Կոստանդնուպօլիս (առ Լիբանիոս՝ որ բազում գովութեամբ խօսէր զնմանէ) եւ ապա յԱթէնս։

Անդ ուրեմն եգիտ նա զԳրիգոր Նազիանզու զոր յառաջագոյն ճանաչէր ի Կեսարիա, եւ մտին իմն ընդ միմեանս ի դաշն ինչ գեղեցիկ յոր խառնեցաւ յետոյ եւ Գրիգոր Նիւսեայ եղբայր Բարսղի, երեքին եւս կապադովկացիք։ Բասիլիոս եւ Գրիգոր Նազիանզու երկու եւեթ ճանապարհս գիտէին յԱթէնս, մին հանէր յեկեղեցին եւ միւսն ի դպրոց գիտութեանցն։ Դարձան երկոքին ի հայրենի աշխարհն լի մթերօք գիտութեանց (355 կամ 356)։ Բասիլիոս յետ մկրտելոյ ի Դիանիոսէ արքեպիսկոպոսէ Կեսարացւոց, իբրեւ յերեսներորդ ամաց հասակի բռնադատեալ կայր ուսուցիչ հրապարակաւ ի Կեսարիա եւ ի Նէոկեսարիա,

Digitized by Google

այլ առա առ անձուկ քրիստոնէական փիլիսոփայութեանն՝ եւ զանձն ի վարս կրօնաւորութեան՝ յորոյ ուսումն երթեալ անսեալ զվանականս Ասորւոց, Պաղեստինեայ եւ Եգիպտոսի, ի դառնալ խուռն բաշխեաց զինչսն աղքատաց եւ միայնացաւ ի Պոնտոս մօտ ի գեղն Անեսի՝ ուր մայր իւր Եմմելիա եւ քոյրն Մակրինա կէին ի կուսաստանի ուրեք (— 364)։ Կոչեցեալ զնա յայնժամ Եւսեբեայ արքեպիսկոպոսի Կեսարացւոց՝ որ զԴիանիոս յաջորդեաց ըստ խնդրոյ ժողովրդեանն, ձեռնադրէր զնա յերիցութիւն, որպէս ամօք ինչ յառաջ ձեռնադրեցաւ Գրիգոր ակամայ ի Նազիանզ ի հօրէ իւրմէ որ անդ եպիսկոպոսն էր՝ յորժամ յանկարծ սա ած ժողովուրդն զԳրիգոր առաջի սեղանոյն զի ձեռնադրեսցէ զնա։ Այլ յետ սակաւ ինչ միոյ կամակար մեկնէր Բասիղիոս ի նոյն միայնութիւն, որպէս հաւանութեան թուի՝ առ խանդանաց եպիսկոպոսին իւրոյ, զի զսէր ժողովրդեանն յինքն արկանէր Բասիղիոս առաւել գիտութեամբն եւ առաքինութեամբ։

Նոյն իբրեւ եւ հալածումն Վաղեսի՝ հաշտեցաւ Եւսեբիոս ընդ Բասիղի առ սէր եկեղեցւոյ. կոչեցաւ միւսանգամ Բասիղիոս ի պաշտօն եւ էր նա յամենայնի օգնական եւ ձեռնտու եպիսկոպոսին, մերժէր նա զյարձակումն Արիանոսացն եւ առնէր զխնամս պատուար ամուր հաւատոց եկեղեցւոյ։ Յետ Ըամեայ (362—370) առաջնորդութեանն վախճանեալ Եւսեբեայ՝ գործակցութեամբ Գրիգորի Նազիանզու եւ ծերունւոյն Եւսեբեայ Սամոսատացւոյ ընտրեցաւ Բասիղիոս հակառակ կամաց մեծատանց ոմանց կեսարացւոց առնուլ զաթոռ արքեպիսկոպոսութեանն այնորիկ իբրեւ մետրապոլիտ մայրաքաղաքին Գամրաց եւ եքսարք մեծի վիճակին Պոնտոսի (370)։ Թէպէտ եւ ոմանք յեպիսկոպոսաց վիճակի նորա եւ մանաւանդ ազգակիցք նորա ի մայրենի կուսէ՝ հակառակորդ էին նորա, սակայն իմաստութեամբն եւ հեզութեամբ շահեցաւ զնոսա սակաւ Բասիղիոս։

Առաքէր Բասիղիոս հրեշտակութեամբ զԴորոթէոս առ Աթանաս վասն երկուց իրաց, նախ զի առաքեսցէ հայրապետն՝ առ զի հաւանեցուսցէն զեպիսկոպոսունս արեւմտից՝ ջանալ ի կատարումն միաբանութեան եպիսկոպոսացն արեւելից, եւ երկրորդ անգամ՝ զի ոչ միայն ինքն Աթանաս ընկալցի ի հաղորդութիւն զՄելետիոս, այլ եւ հաւանեցուսցէ ի նոյն եւ զԴամասոս Հռոմայ հայրապետ։ Խորհէր եւ նմա Աթանաս թէ դժուարին է եւ գործ երկար՝ հաւանեցուցանել զեպիսկոպոսունս արեւմտից առաքել պատգամաւորս յարեւելս յանուն ժողովոյ իւրք անդէն գումարելոյ. ուստի լաւագոյն է, ասէ, գրել առ Դամասոս քահանայապետ, զի սա իբրեւ գլուխ համօրէն եկեղեցւոյ առաքեսցէ առս իշխանութեամբ հանդերձ որ զմիաբանութիւնն կատարեսցեն։ Յայնժամ ըստ խորհրդոյն Աթանասայ՝ առաքէր Բասիղիոս զԴորոթէոս ի Հռոմ առանձինն թղթով, յորում աղաչէր նա զքահանայապետն՝ առս ոմանս հեզս եւ իմաստունս առաքել այսր, որք բերիցեն ընդ իւրեանս զգործս Արիմինեան ժողովոյն, եւ ըստ պատշաճի հրապարակաւ ցուցցի անզօր ամենայն՝ որ բռնաբար ի նմա գործեցաւ, եւ արասցեն միաբանութիւն եկեղեցեաց, մանաւանդ եկեղեցւոյն Անտիոքայ։ Դարձաւ Դորոթէոս յետ ձմե-

Digitized by Google

բայնւոյն ի Հռոմայ թղթովք սիրոյ արեւմտեանցն, այլ գործ ինչ ի միջի չերեւէր. տակաւին յուսայր իմն Բարսեղիոս թէ Սաբինոս սարկաւագ որ ընդ Դորոթեայ եկն յարեւմտից՝ ճշմարտագոյնս ինչ իմացուցէ զհրացն արեւելից՝ յորժամ դարձցի այդրէն յետս (370 եւ 371)։ Այլ զուր եւ ընդ վայր ամենայն. ոչ միայն չեւ ի գլուխ այն միաբանութիւն, այլ եւ ոչ Մելետիոս եղեւ ընդունելի համօրէն արեւմտեայցն, քանզի ձախող իմն կարծիս զնմանէ ունէին ի Պաւղինեանց եւ ի Լուկիփերեանց խաբեալ, նաւանիկ եւ ոչ Աթանաս եմուտ ընդ նմա ի հաղորդութիւն, որպէս եւ ոչ նորին յաջորդ Պետրոս։

Այսպէս կատարումն միաբանութեան եպիսկոպոսացն արեւելեայց ընդ արեւմտեայց՝ մնայր ժողովոյն Կոստանդնուպօլսոյ՝ զորմէ ի ժամու իւրում։

Վաղէս որ ընդ այն ժամանակս եւ այս երրորդ անգամ՝ երթալ յԱնտիոք եւ զճանապարհայն (371—373) մոլեգնէր հանգոյն հեթանոսացն, մերթ ցրուելով զօրօք զժողովուրդն ժողովեալ ի պաշտօն Աստուծոյ եւ մերթ թանալով եւս արեամբ զսեղանս, հանելով զեկեղեցիս ի ձեռաց ուղղափառացն՝ որ այնուհետեւ ի բացի ժողովէին ի պաշտօն։ Դժայր հասանէր կարգաւ ի Կեսարիա ի գլուխ քաղաքացն Կապադովկացւոց (372)։ Առաքէր կայսր զՄոդեստոս վերակացու անձնապահաց առաջի իւր՝ հաւանեցուցանել զԲարսեղիոս ի կամս իւր՝ սպառնալեօք կորստեան ընչից, աքսորանաց, տանջանաց եւ մահու, որում տայր Բարսեղիոս պատասխանի թէ ունիցի՞ս արդեւք այլ ինչ քան զսոսա, քանզի ոչ մի ինչ ի սոցանէ կարէ սասանել ինձ. որոյ ոչինչ գոյ՝ զնորա չմարթի ոք յափշտակել. աքսորս ոչ ճանաչեմ՝ զի ամենայն ուրեք յերկրին Աստուծոյ եմ. տանջանք չլինին ինձ զամանգեա, զի չիք իմ մարմին. իսկ մահ՝ հաճոյական եւս է ինձ, զի փութանակի ածէ զիս առ Աստուած. այսպէս մերժեցաւ ի նմանէ եւ երկրորդ հրեշտակն կայսեր Դեմոսթենէս կոմս։ Եկեալ զարմանալեօք կայսրն՝ ինքնին արքունականօքն ի տօնի աստուածայայտնութեանն գայր յեկեղեցին՝ ուր Բարսեղիոսն մատուցանէր պատարագ եւ խօսէր ճառս, եւ մատոյց թագաւորն հանդերձ հաւատացելովքն զընծայսն ի սեղանանդր, որ էր նշանակ եկեղեցական հաղորդութեան. երիցունքն եւ սարկաւագունք տարակուսեալ թէ ընդունիցի՞ արդեւք եպիսկոպոսն զընծայս նորա՝ ոչ ոք մերձեցաւ առնուլ ի ձեռաց կայսերն եւ արքունականացն։ Տկարեալ կայսրն սկսաւ դողալ եւ դեդեւել եւ տապալէր իսկ ի գետին՝ եթէ չունէին զնա ի վեր կղերականքն. անդ զիջեալ խոնարհութեամբ՝ ընկալաւ Բարսեղիոս զընծայս նորա։ Այսկայն եւ այնպէս գրգռեցին ստիպեցին Արիանոսք զկայսր՝ մերժել զԲարսեղիոս. այլ ի գիշերին յորում երթալոց էր Բարսեղիոս յաքսոր՝ յանկարծակի յախտ անկեալ գնէր մերձ ի մահ որդի

էր նա առաջնորդ գործոցն Բարսղի Կեսարիոյ Կապադովկացւոց, Գրիգորի Նազիանզու եւ Գրիգորի Նիւսացւոյ, եւ յետ մահու նորա կենդանի էր ոգի նորա ի սոսա՝ տանել յառաջ զգործ միաբանութեանն եւ զպատերազմն ընդդէմ Հոգեմարտն Մակեդոնեանց եւ Ապողինարեանց որոց հակառակ սկսեալ էր գրել Աթանաս ի վերջին ամսն իւր:

Անդէն ի ժամու մահուանն յանձն արարեալ էր Աթանասոյ՝ ընտրել զՊետրոս եղբայր, որ էր լեալ միշտ ընկեր նեղութեան նորա. ընտրեցաւ նա միաբան հաւանութեամբ եպիսկոպոսացն եգիպտացւոց եւ այլոց կղերականաց եւ ժողովրդեանն: Սակայն ի կայսերէ՝ այլ ոք սահմանեալ էր վասն աթոռոյ Ս. Մարկոսի: Առաքեցաւ հրաման առ Պալլադիոս (հեթանոս) վերակացու աշխարհին նստուցանել զԼուկիոս զերէց արիանոս, եթէ հարկ իցէ՝ եւ զօրութեամբ զինուց. զունդ ժողովեալ ի հեթանոսաց եւ ի Հրէից եմուտ կալաւ զեկեղեցի Ս. Թէոնասայ, նուագեցան ի նմա երգք հեթանոսականք եւ ցուցք պղծութեան, կաքաւեաց ի վերայ սեղանոյն երիտասարդ կանանցահանդերձ եւ միւս ոմն մերկանդամ խօսեցաւ յամբիոնէ թելադրութիւն գործոց պղծութեան, ուստի բերան Աթանասի խօսեալ էր սոյնչափ բանս փրկութեան առ ժողովուրդն: Մագնոս գանձապետ արս բազումս երէց եւ սարկաւագ եւ ծեր տայր ածել ընդ քարշ ի քաղաքս հեթանոսացն ի Հեղիոպոլիս՝ յետ գանալից չարագանն առնելոյ. նա սպանման եւս ոչ սակաւք: Ինքն Լուկիոս զունդ կազմեալ հասանէր ի վերայ վանականաց անապատին՝ աքսորել զնոսա ի կղզի մի հեթանոսական՝ ուստի յետ սակաւ ինչ միոյ աճապարէր դարձուցանել զնոսա յետս, քանզի դարձուցին նոքա զբնակիչս կղզւոյն ի կռապաշտութենէն: Նա եւ ինքն իսկ կայսր՝ որ յետ վախճանելոյ եղբօր իւրոյ Վաղենտինիանեայ առաւել համարձակագոյն էր ի հալածումն ուղղափառացն, հրաման տայր զբազմամբոխ վանականս եւ զանապատականս Եգիպտացւոց աշխարհին բռնաբար ածել ի զինուորութիւն ի մարտ պատերազմի ընդ Գոթաց. իբրեւ ընդդէմ դարձան, չարչարեցան բազմապատիկ, տուան ի քրէական մտրակս, աքսորեցան եւ սպանան եւս բազումք: Նոյնպիսի իմն անցք եւ ընդ վանականս Ասորւոց աշխարհին անցին:

Յետոյ ուրեմն ի վերջին ամսն մեղմացաւ իմն Վաղէս, եւ եղեւ համարձակութիւն վանականաց եւ անապատականաց եւ խոստովանողացն աքսորելոց դառնալ յիւրաքանչիւր տեղիս, նա եւ ամենիկ եւ յԵգիպտոս այնպէս իմն իրքն փոփոխեցան՝ մինչեւ հայրապետն Պետրոս՝ որ դիմեալ ապաւինեալ էր ի Հռոմ առ Դամասոս քահանայապետ, դարձաւ յետ հնգից ամաց յաթոռ իւր՝ բերելով ընդ իւր թուղթ հաստատութեան ի քահանայապետէն [1], եւ

1 Սոկր. Եկեղ. պատմ. Դ. 37: Սոզոմէն. Եկեղ. պատմ. Զ. 39:

Digitized by Google

Գուկիոս՝ որ եկն փախստեայ առ կայսր ի Կոստանդնուպօլիս, չե-գիտ ինչ օգնականութիւն ի նմանէ (378)։

Այսպիսի իմն հանգամանք էին կրօնիցն իւրոց՝ յորժամ յան-կարծ կոչեցաւ Վաղէս յարեւելից՝ գալ պաշտպանել հիւսիսային կողմանց տէրութեան իւրոյ։

# 85

ՅԵւքսինոս ծովէ եւ ի Տանայիս գետոյ մինչեւ ցԲաղտիկ ծով տարածեալ էր մեծ տէրութիւն արեւելեանն Գոթաց. որոց տիրէր յայնժամ Հերմանրիկ որ եւ էր հիմնարկու տէրութեանն նոցա։ Ընդ նորա իշխանութեամբ էին եւ արեւմտեան Գութք բաժանեալ ի նոցանէ Դնեստր գետով մինչեւ ի վեր ցԴանուբ եւ ցԹայս։ Նոցա թագաւոր էր դաշնաւոր Հռոմայեցւոց (յամէ 367)։ Հոնք՝ ազգ մոնղոլեան սերեալ յՈւրալ եւ յԱլտա լերինս յետ յարձակելոյ ի վերայ Ալանաց բնակելոց մինչեւ ցՏանայիս, անցին սաքօք հանդերձ ընդ Տանայիս խաղալ ասպատակաւ ի վերայ արեւելեան Գոթաց։ Ընկաւ ի պատերազմին վիրաւոր Հեր-մանրիկ՝ որ էր յայնժամ 110 (°) ամաց եւ սպան զանձն։ Յայն-ժամ ազնուական ցեղք արեւելեան Գոթաց առաջնորդութեամբ Աղաթէոսի եւ Սափրաքսայ խնդրեցին թիկունս օգնականու-թեան յարեւմտեան Գոթաց. բայց ի մէջ սոցա երկպառակութիւն էր վասն քրիստոնէութեան որ մտեալ էր ի նոսա անդստին ի 100 ամաց ի ձեռն գերեաց՝ յորոց ոմանք կղերականք եւս էին, եւ ի ժողովին իսկ Նիկիոյ գտաւ եպիսկոպոս ոք ի նոցանէ Թէոփիլոս անուն։ Աթանարիկ թագաւոր նոցա եւ մասն մի հնազանդելոց նորա հաստատուն էր ի հեթանոսութեան եւ հալածէր զքրիս-տոնեայսն։ Այլ իբրեւ նեղէին զնոսա Հոնք՝ չկարաց Աթանարիկ զդէմ ունել նոցա՝ փախեաւ ի Կարպաթս լերով հեթանոսական ամբոխիւն։ Բայց հակառակորդքն նորա քրիստոնեայք՝ այլ իմն ազդ խորհեցան։

Վասնզի մեծ մասն արեւմտեան Գոթացն առաջնորդու-թեամբն Փրիդիգերայ իշխանի իւրեանց աղաչեցին զՎաղէս ըն-դունել զնոսա ի կողմանս Թրակիոյ. պատգամաւոր նոցա էր եպիսկոպոսն Ուլփիլաս որոյ ջանիւք ի Գոթաց դարձուցեալ էր ի քրիստոնէութիւն, զչորս աւետարանսն ի նոցա լեզու թարգ-մանեալ, որոց հատակտորք կան ցայժմ, եւ կարծի գտող գո-թացի նշանագրաց։ Յանձն առ կայսր այսպիսի ինչ պայմանաւ՝ զի ամենայն Գութք դարձցին յարիանոսութիւն, եւ նախ ման-կունք անցցին յայսկոյս գետոյն Դանուբայ եւ ցրուեսցին յԱսիա. իսկ հասակաւորքն տացեն նախ ի բաց զզէնս իւրեանց։ Այն վեր-ջին պայման չկատարեցաւ, քանզի կաշառաբեկ եղեն պաշտպանք

Digitized by Google

սահմանաց Հռոմայեցւոցն: Այսպէս 200,000 այր պատերազմող ի Գոթաց անց ընդ Դանուբ, իսկ ընդ ամենայն էին իբրեւ 1,000,000 (376): Ի բնէ դժուարին էր զայնչափ բազմութիւն ունել ի հնազանդութեան եւ ի կարգի, բայց եւ ագահութիւնք Հռոմայեցւոց նեղելովն զնոսա հանին ի յուսահատութիւն, եւ իբրեւ երկեւղ էր թէ ապստամբիցեն՝ տարան զնոսա պահապանօք ի Միւսիա: Այլ ընդ նոյն ժամանակս եւ յարեւելեան եւս Գոթաց՝ ցեղն Գրեւթունգացւոց կամեցաւ գալ նոյնպէս ի սահմանս Հռոմայեցւոց, եւ իբրեւ չառաւ հրաման, ինքնակամ անցին ընդ գետն՝ որոյ չգոյր պահապան եւ յարեցան յեղբարսն իւրեանց: Անիրաւութեամբ եւ նենգութեամբ հրամանատարացն Հռոմայեցւոց միանգամ գրգռեալ Գոթացն՝ միաբանեալ դնէին ասպատակ ի Թրակիա եւ ի մերձաւոր կողմանսն: Առաքեաց կայսրն զօրավարս եւ կոտորեցան. քանզի Գոթք ստուարացեալ զօրանային յայլոց եւս եկաց յարելոց եւ ի Հոնաց եւ յԱղանաց իսկ: Թէպէտ եւ կոչեցաւ Գրատիանոս եւ գայր մերձենայր զօրօքն արեւմտից, եւ գրէր իսկ առ հօրեղբայր իւր՝ չտալ ճակատ մինչ չեւ նորա հասեալ, սակայն այլ իմն ազդ ի խորհրդեան պատերազմին սահմանեցաւ. Սեբաստիանոս զօրավար՝ որ դժկամակութեամբ էր ընդ կայսերն արեւմտից, առիթէր իսկ եւ իսկ տալ ճակատ. ոչ այսպէս Վիկտոր: Յաղթեաց խորհուրդն Սեբաստիանոսի. քանզի եւ ինքն Վաղէս խանդալով իմն՝ առանձինն զպարծանս յաղթութեանն խորհէր առնուլ:

Այգուն (9 Օգոստ.) ժողովեցաւ զօրն հռոմայեցի, խաղաց ժամս երիս հասանել առ Գութսն, հնչեաց աղաղակ պատերազմի ի գնդէն Գոթաց, փութանակի կարգեցան ճակատեցան Հռոմայեցիք նօթեալք, ծարաւեալք եւ լքեալք ի տօթոյ: Յամեցուցանէր իմն Փրիտիգեր եւ այլ եւս ժամս՝ զի յուսայր թէ գայ գունդ օգնական յարեւելեան Գոթաց: Իբրեւ եկն այն գունդ առաջնորդութեամբ Աղաթէոսի եւ Սափրաքսայ՝ ահիւքն լնէր պատերազմին առ Ադրիանուպօլիւ. զօրն հռոմայեցի վաստակաբեկ եւ կուրացեալ ի փոշւոյն դիզելոյ՝ ի պարտութիւն մատնեցաւ. Նախ հեծելազօրն փախստեայ լեալ՝ եւ զհետ նորա եւ հետեւակն:

Վաղէս՝ որ թողեալ լքեալ յանձնապահպանացն՝ կռուէր սակաւքին ի մէջ դիականցն անկելոց հանդերձ սակաւուք մնացելովքն, եղեւ չեք յայտ՝ յետ ցուցանելոյ թէ քաջ զինուոր է, բայց անտեղեակ զօրավար: Դամն իւր սոյզ ինչ վասն մահուան նորա չիք. ոմանք ասեն թէ նետահար լեալ փչեաց զոգին եւ այլք թէ ածաւ նա վիրաւոր ի խուց մի՝ զոր հրձիգ արարին Գութք յանդգնս եւ անդէն այրեցաւ: Յերկրորդին եւս պատմին յԱմմիանեայ. մերջինն եղեւ առ հասարակ հաւատալի, որպէս նշանակեսցի ի վկայութենէ Պրոտերն Աւրելեայ Վիկտորի, Սոկրատեսի, Յերոնի-

## 86

Գրատիանոս էր առ սահմանօք Թրակացւոց աշխարհին՝ յորժամ ընդ առաջ եղեւ նմա Վիկտոր զօրավար հեծելազօրու արեւելեան պետութեանն՝ բերեալ զգոյժ պարտութեան արեւելեան զօրուն: Չոգաւ յայնժամ յետս կայսրն ի Սիրմիոն՝ բաղձացուցանել զբանակն ընդդէմ յաղթող Թշնամւոյն, աստ խաղաց նոքօք դէպ ուղիղ ի Կոստանդնուպոլիս՝ անցեալ ընդ բազում վտանգս յերեսաց Թշնամեացն շուրջանակի պատելոց: Ոչ յահագին պարտութենէն վհատեցաւ եւ ոչ ի չքեղութենէ աթոռոյն արեւելից շլացաւ կայսրն իննեւտասնամեան: Ի մտի եղեալ նորա կալուլ ի վերայ տէրութեանն ընդ անթիւ Թշնամեացն արբելոց յաղթութեամբ՝ տեսանէր թէ չէր ի մէջ այնուհետեւ ոչ զօրաւոր բանակ եւ ոչ քաջ եւ փորձ զօրավարք: Մեծ եւ մի միայն այն արատ էր վարուցն Գրատիանեայ՝ զի անդէն ի սկզբան Թագաւորութեանն հաւատացեալ բանսարկութեան արքունականացն ետ սպանանել զԹէոդոս կոմս որ առ հարբն նորա վճարեաց բազում արութիւն քաջութեան ի Բրիտանիա եւ ցածոյց յԱփրիկէ եւ ի Մաւրետանիա զապստամբութիւն Փիրմեայ ուրումն իշխանի մաւրետանացւոյ: Բազումք ի Թագաւորացն մանկագունից նոյնպիսիս յանցեան, այլ Գրատիանոս միայն է՝ որ զԹէոդոս զորդի սպանելոյն Թէոդոսի կոչեաց բաժանել ընդ նմա զիշխանութիւն իւր՝ ազնուականութեամբ հատուցեալ որդւոյն զզրկանս հօրն եւ խնամութեամբ հոգացեալ վասն փրկութեան համօրէն տէրութեանն:

Թէոդոս որդի Թէոդոսեայ սպանիացւոյ եւ Թերմանտեայ կնոջ ազնուականի սպանիացւոյ, երբեմն դուքս Միւսիոյ, որ յետ մղելոյ պատերազմունս ընդդէմ Սարմատաց՝ էր մեկուսացեալ ի Սպանիա պարապեալ ի դարման անդաց՝ կոչեցաւ յանկարծ ի Սիրմիոն, ուր դարձեալ էր յայնժամ Գրատիանոս, առնուլ ակամայ զծիրանին կայսերութեան ամաց իբրեւ 32 (19 Յունու. 379—395): Ետ նմա Գրատիանոս զհամօրէն պետութիւնն արեւելից, յաւելեալ ի նոյն զմեծ մասն Իլլիւրիկեայ՝ որ յետ այնորիկ արեւելեան Իլլիւրիկէն անուանեցաւ, այս ինքն է՝ Դակիա, Միւսիա, Դարդանիա, Մակեդոնիա, Եպիրոս, համօրէն Յոյնք, Կրետէ եւ այլ եւս կղզիք Յունաց, եւ գլուխ քաղաքաց այսր Իլլիւրիկեայ էր Թեսաղոնիկէ: Արեւմտեանն Իլլիւրիկէ որ էր ընդ վերակացութեամբ Իտալիոյ՝ ունէր զՊաննոնիա, զՆորիկոն եւ զԴալմատիա:

Չեւ էր տէրութեանն այնպէս մերձ ի կործանումն երեւեալ՝ որպէս յայնժամ. աստի՝ սահմանք Հռենոսի եւ Դանուբայ կրէին յարձակումն ի գերման ազգաց՝ յԱղեմանաց, ի Փրանկաց եւ ի Սուեւաց. համօրէն Իլլիւրիկէ եւ Թրակիա էր աւերեալ ի

Գոթաց, ի Հոնաց եւ յԱղանաց. անտի՝ սահմանք Տիգրիս, նա աւանիկ՝ Եփրատ գետոյ էին ի կառկածի յերեսաց Պարսից, Վրաց եւ Հայոց։ Յայն սակս Գրատիանոս աճապարէր ի Գաղիա եւ Թէոդոս գումարէր զեւրեւ զզօրականն ցրուեալ ի Թեսաղոնիկէ, հրահանգէր զնոսա, քաջալերէր եւ սրտապնդէր. անդր գային առ նա հրեշտակութիւնք քաղաքաց քաղաքաց՝ ցուցանել նմա հպատակութիւն։ Մղէր այնուհետեւ Թէոդոս բազում ճակատս ընդ Գոթաց. յաղթեաց նա նոցա առանց սատակիչ ինչ պատերազմ ընդ նոսա տալոյ՝ իմաստունն յապաղութեամբ, դրիւն, պատնիշօքն, արագութեամբն, զխալանս թշնամեացն արկանելով քաջ յիւր օգուտ ի կիր. քանզի էր իսկ չմիաբանութիւն ի մէջ նոցա յետ մահուն Փրիտիգերայ։ Արեւելեան Գութք մեկնեցան ի Պաննոնիա։ Եւ թէպէտեւ մեծ մասն արեւմտեան Գոթաց ընկալեալ էր զԱթանարիկ, այլ քանզի բազումք ընդդէմ դառնային իշխանութեան նորա, սա խաղաղասէր եղեալ եւ ի բաց իւրովքն հաւատարմօք ապաստանել յերկիր սահմանացն Հռոմայեցւոց՝ հակառակ երդմանն իւրում։ Եւ ընդ առաջ նորա Թէոդոս, ած ի քաղաքն կայսերական՝ որ զարմացոյց յոյժ զԹագաւորն բարբարոս, եւ ի վախճանել նորա յետ 14 աւուրց (25 Յունու. 381)՝ ինքն կայսր երթայր յուղարկաւոր առաջի դագաղացն։ Բաժանեցան այնուհետեւ Գութք ի փոքր փոքր մասունս եւ տարին դաշինս ընդ կայսեր, եւ ընկալան բնակութիւն ի Թրակիա եւ ի Միւսիա ընդ հպատակութեամբ նորա, բայց պահելով զազատութիւնս իւրեանց, եւ կոչեցան՝ Դաշնաւորք։ Ընտրեցան ի նոցանէ 40,000 այր ի գործ պատերազմի տէրութեանն (382)։ Յայնմ հետէ ազդեցութիւն մեծ էր Գոթաց յիրս տէրութեանն Հռոմայեցւոց։

## 87

Որպէս ի Թեսաղոնիկէ՝ նոյնպէս եւ ի Կոստանդնուպոլիս առաջին քան զամենայն հոգս էր Թէոդոսեայ՝ կարգել զիրս կրօնիցն։ Վաղ իսկ Գրատիանոս վաղվաղակի իբրեւ լուաւ զբօթ մահուան հօրեղբօրն՝ անդէն ի Սիրմիոն ըստ խորհրդոյ Ս. Ամբրոսիոսի (եպիսկոպոսի Մեդիոլանու յամէ 374) հան հրաման դառնալ ամենայն եպիսկոպոսաց աքսորելոց առ Վաղեսիւ եւ ունել իւրաքանչիւր զիւր աթոռ, եւ ընդ ամենայն պետութեան թողուլ ազատութիւն իւրաքանչիւր կրօնից՝ բաց ի Մանիքեցւոց, Փոտինեանոսաց եւ յԵւնոմեանց (378), այլ ի միւսում ամի առնու յետս ի Մեդիոլանոն զայն ազատութիւն կրօնից՝ արգելեալ չարափառացն ժողովել ի պաշտօն կամ քարոզել զիւրեանց վարդապետութիւն, մանաւանդ՝ որոց կրկինն մկրտէին՝ որպէս զԴոնատեանսն



Digitized by Google

յամենայն տուրեւառէ շնչոյ տատանեցի, զոր ի հանգստեան խցկանէ առեալ՝ կամիցին ածել ի հրապարակ՝ իբրեւ ջահ բոցաճաճանչ, անցուցանելով ընդ անձրեւ եւ ընդ մրրիկ», (379)։ Աստ ի տան ուրեք կատարէր զպաշտամունս իբրեւ ի մատրան (ուր ապա շինեցաւ եկեղեցի անուանեալ՝ Անաստասիա). արծարծեցան հաւատք ուղղափառութեան. դիմէին ի բանս աստուածխօսութեան նորա խուռներնթաց հաւատացեալք, որպէս եւ Անոմեանք իսկ հիացեալ սխրացեալ էին ընդ ճարտարխօսութիւն եւ ընդ բարձրութիւն աստուածխօսական ճառից նորա. Թէպէտ եւ սաստիկ եւս էր թշնամութիւն նոցա, մինչեւ բազում անգամ յարուցանել նոցա աղմուկ ի տեղւոջն, խափանել զպաշտամունս, եւ զճանապարհայն քարկոծ առնել եւ նախատել զեպիսկոպոսն սուրբ։

Նա աւանիկ՝ եւ յուղղափառաց անտի կրեաց Գրիգոր նեղութիւն։ Մաքսիմոս ոմն եգիպտացի քրիստոնեայ հաւատովք եւ փիլիսոփոս շնական՝ կարծեօք եւ բարուք, կեղծաւորեցաւ առաջի Գրիգորի իբրեւ խոստովանող բարեպաշտօն, ընկալաւ սա զնա ի տուն իւր, վստահ եղեւ ի նա եւ գովեաց զնա ի միում ի ճառիցն։ Բայց արդեամբք ջանայր Մաքսիմոս ըմբռնել զաթոռ եպիսկոպոսութեան կայսերական քաղաքին։ Եւ առանց հաւանութեան Պետրոսի եպիսկոպոսի Աղեքսանդրացւոց՝ եկին անդր եպիսկոպոսունք երկու եգիպտացիք՝ որք ձեռնադրեցին զՄաքսիմոս գաղտագողի գիշերայն դրօք փակելովք. յայտ եկին իրքն, համբաւեցան առաջին զեղծ կեանք շնականին եւ մերժեցաւ ի քաղաքէն։ Ուր երթեալ բողոքէր Մաքսիմոս առ կայսր ի Թեսաղոնիկէ. ոչ միայն Թէոդոս, այլ եւ Դամասոս քահանայապետ մերժեաց զնա՝ լուեալ զանցս իրացն յԱքողեայ եպիսկոպոսէն Թեսաղոնիկեցւոց։

Նոյնպէս իմն էին հանգամանք կայսերական քաղաքին՝ յորժամ եկն անդր Թէոդոս՝ զոր հաստատեաց հայրապետն հեզ ի հաւատս ուղղափառութեան՝ զօրութեամբ բանից իւրոց եւ պաշտպանութեամբ նիկէական հաւատոց, այնպէս զի ակամայ իսկ առ մոյծ զնա կայսրն յեկեղեցի անդր Առաքելոց։ Եւ արիանոս եպիսկոպոսին Դեմոփիլեայ յընտիր առնէր կայսր կամ ընդունել զնիկէական հաւատսն եւ կամ ի բաց գնալ ի քաղաքէն. մեկնեցաւ Դեմոփիլոս եւ արտաքոյ առաջի դրանց քաղաքին կատարէր զպաշտամունս։

88

Ըստ խորհրդեան եպիսկոպոսաց բազմաց՝ մանաւանդ Գրիգորի Նազիանզացւոյ հան Թէոդոս հրաման լինել ժողովոյ եպիսկոպոսացն արեւելից ի Կոստանդինուպօլիս յամսեանն Մայիսի

381 ամին: Ժողովեցան 150 եպիսկոպոսունք արեւելից. եպիսկոպոսունք Եգիպտացւոց եւ Մակեդոնացւոց կոչեցան անագան: Արք երեւելիք ի նմա էին Գրիգոր Նազիանզացի, Գրիգոր Նիւսեայ եւ Նորին եղբայր Պետրոս եպիսկոպոս Երուսաղեմի, Ամփիղոքիոս Իկոնիոնի եւ Դիոդորոս Տարսոնի:

Առաջին նիւթ քննութեան ժողովոյն էր կարգել զոք յեպիսկոպոսութիւն Կոստանդնուպոլսոյ. եպիսկոպոսութիւն Մաքսիմեայ սահմանեցաւ լինել անզօր եւ ընտրեցաւ Գրիգոր Նազիանզացի ի նոյն. արտասուօք ստիպեցաւ խոնարհել վճռոյ ժողովոյն: Մելետիոս գահերէց ժողովոյն որ ած նստոյց զնա յաթոռն, վախճանէր իսկ եւ իսկ[1]. մեծ մասն եպիսկոպոսաց ժողովոյն կամէր ընտրել փոխանակ Մելետեայ զայլ ոք յեպիսկոպոսութիւն Անտիոքայ. ընդդէմ բողոքէր Գրիգոր Նազիանզացի (այնուհետեւ գահերէց ժողովոյն) թէ ըստ միաբան խոստման եղելոյ յերկուց կողմանց՝ Պաւղինոս կացցէ եպիսկոպոս ի վերայ ամենեցուն, զոր ահա, ասէ, եւ արեւմտեանք ընդունին, եւ այսպէս լինիցի միաբանութիւն ոչ միայն ի մէջ Անտիոքացւոցն այլ եւ ընդ մէջ արեւելեայցս եւ արեւմտեանց: Այլ զուր էր ամենայն. ընտրեցաւ փոխանակ Մելետեայ՝ Փղաւիանոս երէց Անտիոքացի այր ընտիր եւ վաստակաւոր:

Մինչ դեռ Գրիգոր տրտմեալ ընդ իրսն՝ չյաճախէր այնչափ ի ժողովն, հասանէին եպիսկոպոսունքն Եգիպտացիք (որոց գլխաւոր Տիմոթէոս հայրապետ Աղեքսանդրեայ եղբայր եւ յաջորդ նորոգ վախճանելոյն Պետրոսի) եւ եպիսկոպոսունք Մակեդոնացիք (որոց գլխաւոր՝ Ասքողիոս եպիսկոպոս Թեսաղոնիկեայ): Սոքա ամենեքին չհաւանեցան ընդ ընտրութիւն Գրիգորի յեպիսկոպոսութիւն Կոստանդնուպոլսոյ. սիրով հրաժարեցաւ Գրիգոր առաջի ժողովոյն ասելով „Քանզի ընտրութիւն իմ պատճառ երկպառակութեան է, եղէց Յովնան, առէք ընկեցէք զիս ի ծովն„. ակամայ հաւանեցաւ կայսր: Եւ Գրիգոր ի բաց՝ խօսելով ճառ՝ յորում հրաժարի յեկեղեցւոյն Սոփիայ, ի ցանկալի եկեղեցւոյն իւրմէ յԱնաստասիայ, ի կղերէն, ի ժողովրդենէն, ի կայսերէն, յարքունեաց եւ ի համօրէն քաղաքէն: Կայր նա այնուհետեւ միայնացեալ մօտ ի Նազիանզ (✝ 389): Ընտրեցաւ փոխանակ նորա Նեկտարիոս տարսոնացի երբեմն պրետոր, երախայ, որում տուաւ նախ կնիք, ապա ձեռնադրութիւն, ապա գահերիցութիւն ժողովոյն: Առաքեաց Թէոդոս հրեշտակութիւն յեպիսկոպոսաց եւ յարանց արքունեաց իւրոց առ Դամասոս քահանայապետ՝ խնդրել զի

1 Այս են գովութեանք Մելետեայ գիրք հարցն սրբոց, Բարսղի, Գրիգորի Նազիանզացւոյ, Գրիգորի Նիւսացւոյ եւ Ոսկեբերանի. նա սուրբ եւ Եպիփան որ ընդ Պաւղինեայ միայն ի հաղորդութեան էր, խօսի մեծարանօք զառաքինութենէ նորա: Հռոմ եւ ընդ նմա համօրէն արեւմուտք դարձան ի խոտոր կարծեաց՝ զոր ունէին սնոտին եւ տանէին զյիշատակ նորա միաբան ընդ արեւելեան եկեղեցւոյ:

թղթով իւրք գրելով առ Նեկտարիոս հաստատեաց քահանայապետն զՆեկտարիոս յաթոռ իւրում[1]:

Վարդապետական նիւթ ժողովոյն՝ էր քննել զաղանդ Մակեդոնեանց, Փոտինեանց եւ Ապողինարեանց:

Բազում ժամանակս լռութիւն իմն էր վասն Հոգւոյն սրբոյ ի հակառակութիւնս ընդ Արիանոսացն, թէպէտ եւ ամենայն իսկ Արիանոսք չընդունէին զաստուածութիւն Նորա: Բայց ապա յորժամ Աթանասիոս եւ Հիղարիոս Պիկտաւիացի եւ Բասիղիոս Մեծն առանձինն արկին բանս ի մէջ վասն Նորա եւ ցուցին զկապն աստուածութեան Բանին ընդ աստուածութեան Հոգւոյն սրբոյ, սկիզբն լինէր այնուհետեւ պահանջելոյ յԱրիանոսացն որ այարէն դառնալ յեկեղեցի կամէին՝ դաւանել եթէ եւ Հոգին սուրբ չէ արարած, քանզի եւ արդեամբք իսկ այսպէս համարէին զնա մասն մի Կէս արիանոսաց, որք եւ կոչեցան Հոգեմարտք, եւ յորմէ հետէ մի ոմն ի գլխաւորաց անտի Կէս արիանոսաց, Մակեդոնիոս եպիսկոպոս Կոստանդինուպօլսոյ (341—360) եկաց սոցա գլուխ՝ ի Նմանէ անուանեցան եւ Մակեդոնեանք: Իսկ միւս մասն Կէս արիանոսաց խոտորեցաւ իմն ի վարդապետութենէ աստի քակէին ի Նոցանէ եւ մօտէին ի Նիկեական հաւատս եւ դատապարտեցաւ այն վարդապետութիւն ի տիեզերական ժողովն աստ (381) հրապարակաւ, եւ մեծաւ յայտյանդիմանութեամբ քարոզէր այնուհետեւ Մի Աստուած, եւ երեք անձինք ի Նմա, Հայր, Որդի եւ Հոգի սուրբ: Զուր յիշեցուցանէին Մակեդոնեանց՝ հարք ժողովոյն եւ ինքն կայսր Թէոդոս թէ ինքեանք իսկ Մակեդոնեանքն առաքեցին հրեշտակութիւն առ Լիբեր քահանայապետ յառաջ քան զհնգետասան ամ եւ ընկալան զդաւանութիւնն Նիկիական: Այնուհետեւ ամենեւին իսկ բաժանեցան Մակեդոնեանք յուղղափառացն:

Երկրորդ գլխաւոր նիւթ ժողովոյն՝ էր քննութիւն վասն Փոտինեանցն (սաբելական) վարդապետութեան: Մարկեղղոս եպիսկոպոս Անկիւրայ մի ի հզօրագոյն ջատագովաց Նիկիական հաւատոց, կրեաց բազում ամբաստանութիւն վասն մութ ինչ բանից՝ որպէս թէ սաբելական ուսումն ունիցի եւ յայն սակս իսկ մերժեցաւ յաթոռոյն՝ որպէս վաղն պատմեցաւ: Բայց յետ Նորա աշակերտ Նորա Փոտինոս, որ էր սարկաւագ յԱնկիւրա, եւ ապա եկաց եպիսկոպոս Սիրմիոնի, հան արդեամբք մոլորութիւն (341)՝ ասելով եթէ Բանն չէ անձն ինչ, այլ զօրութիւն ինչ եւեթ աստուածեղէն, որ յայտնեցաւ ի Յիսուս որ եւ էր մարդ լոկ, բայց վասն առանձինն առաւելութեանց Նորա ընկալաւ զնա Աստուած յորդւութիւն (որդեգրական), բայց ապա յորժամ դարձուցէ Նա միւսանգամ զիշխանութիւնն առ Հայր, մեկնելոց է ի Նմանէ միւ-

1 Տես զթուղթ Բոնիփակեայ առ եպիս. Գլիւրիկ. (յաւել 423.)

անգամ Բանն։ Ջանայր նա հաստատել զբանսն իւր ի բանից Ա. Տիմոթ. Բ. 5, Ա. Կորընթ. ԺԱ. 47, Յովհ. Ա. 1, Ծնն. Ա. 26, Դան. Է. 13։ Դատապարտեցին զնա Կէս արեւմտեանքն յԱնտիոք (345) եւ ուղղափառքն ի Մեդիողանոն (347 կամ 349) եւ յետ այնորիկ յառաջնում սիւնհոդոսի անդ Սիրմիոնի (351) մերժեցին զնա Եւսեբեանքն եւ յաթոռոյ։ Այլ եւս բազում սիւնհոդոսք զդատապարտութիւնն կրկնեցին եւ երեքկնեցին, բայց առաւել սաստկագոյնս այս ժողովն կոստանդինուպոլսեան (381). Թէպէտ եւ հան միւսանգամ գրեթէ նոյնպիսի ինչ կարծիս մոլորութեան եւ Բոնոսոս եպիսկոպոս Սարդիկեայ (391)։

Միւս եւս երրորդ նիւթ ժողովոյս Կոստանդինուպոլսեայ, էր վասն աղանդոյն Ապողինարեայ։ Կրտսերն Ապողինարիս, որդի Ապողինարեայ եպիսկոպոսի Լաւոդիկեայ՝ էր նախ երէց ի Լաւոդիկէ Ասորւոց եւ ապա եկաց անդէն եպիսկոպոս յամի (362)։ Առաւել քան զհայրն էր դպրութեամբ, երեւելի ի ճարտարխօսութեան, ի բանաստեղծութեան եւ ի փիլիսոփայութեան, ունէր նա հաղորդութիւն բարեկամութեան եւ ընդ հեթանոսացն իմաստնոց՝ որպիսի որ Լիբանիոս ճարտարախօսն էր եւ Եպիփան սոփեստ. եւ այնու իմն լինէր նա օգտակար ի կրթութիւն մանկանց քրիստոնէիցն, զի ի ժամանակի՝ յորժամ արգել Յուլիանոս քրիստոնէից՝ չուսանել ուսումն ըստ Յունական դասական դպրութեան, ածէր նա զնիւթս ինչ ի գրոց սրբոց ի ձեւ եւ ի կերպարանս դասական մատենագրութեան։ Խօսէր նա հակառակ Յուլիանոսի ի գիրսն "Վասն ճշմարտութեան„, եւ ի բազում այլ եւս մատեանս ընդդէմ Մանիքեցւոց եւ Պորփիւրիոսի եւ Մարկեղոսի եւ մանաւանդ ընդդէմ Արիանոսացն եւ արար իսկ հաղորդութիւն բարեկամութեան ընդ Աթանասոյ յորժամ անցանէր սա ընդ Լաւոդիկէ՝ յամի 349։ Նա աւանիկ թուի թէ ի կարին հակառակելոյ ընդ Արիանոսաց աղանդոյն՝ եկն նա յայլ ինչ մոլորութիւն՝ որ ի նորա անուն կոչի։ Ուր վարդապետութիւն Արիոսի էր մանաւանդ զԵրրորդութենէ եւ զԲանէն եւ զհամեմատութենէ նորա առ Հայր, նմին հակառակ Ապողինար լինէր մանաւանդ ձեռնամուխ ի մարմնաւորութիւն Բանին։ Երթեալ սորա զհետ պղատոնական կարծեացն որ երիս իմն մասունս ի մարդն դնէր, այս ինքն՝ մարմին, շունչ[1], եւ ոգի[2] կամ միտս[3], ասէր թէ թէպէտ ունել ունէր Քրիստոս Մարմին մարդկեղէն եւ շունչ մարդկեղէն, բայց փոխանակ մարդկեղէն ոգւոյն՝ եղեւ ի նմա Բանն, եւ այսպէս բովանդակ Քրիստոս էր "մի բնութիւն„։ Քանզի եթէ հակառակ ինչ սմին ասիցէ ոք, ասէ, յայնժամ կամ երկուս Որդիս Աստուծոյ եւ երկուս անձինս ընդունիցի այնպիսին, քանզի չէ հնար, ասէր, երկուց ինչ իրաց կատարելոց միանալ ընդ մի-

1 Ψυχή. 2 Πνεῦμα. 3 Νοῦς.

Digitized by Google

մեանս, եւ կամ մարդ լոկ համարիցի զՔրիստոս՝ առաջնորդեալ եւեթ ի Բանէն։

Նա դարձեալ չէր մարթ, ասէ, առանց մեղաց լինել Քրիստոսի՝ եթէ էր նորա լեալ ոգի բանաւոր, այնու՝ զի անքակ իմն է ի նմանէ ազատութիւնն, ընդ որում կից է եւ մեղանչականութիւն անհրաժեշտ։ Եթէ Քրիստոսի իբրեւ կատարեալ մարդոյ եւ կատարեալ Աստուծոյ արժան իցէ երկիր պագանել, ապա ոչ Երրորդութիւն միայն, այլ եւ չորրորդութիւն եւս արժան է յԱստուածութեանն իմանալ։ Այլ թէ արդեւք եւ զմարմինն յերկնից համարէր առեալ Քրիստոսի, եթէ ի Մարիամայ Կուսէ ընկալեալ՝ այն չէ ստոյգ ցուցեալ։

Կառուցան ընդդէմ վարդապետութեանն Ապողինարեայ Աթանասիոս եւ այլք, սակայն զգուշանային կարի չաղարտել զանուն նորա, եւ ի ժողովն անդ Աղեքսանդրիոյ (362) դատապարտեցաւ վարդապետութիւնն, սակայն ոչ յիշեցաւ անուն առաջնորդի նորա։ Ծն նա այնուհետեւ զերէցն Վիտաղիս յեպիսկոպոսութիւն ի վերայ կուսակցաց իւրոց յԱնտիոք, եւ նովին իմն յուղեաց առնել եւ զայրացոյց ի քաղաքին զխռովութիւն եկեղեցւոյ։ Թիւ համարոյ կուսակցացն նորա երթայր եւ յաճախէր, մեծ մասն ի նոցանէ որ ընթեռնուին զգիրս նորա՝ գնացին զհետ նորա, եւ կէսք եւս սկսան երկմտել ի վերայ մարմնաւորութեան Որդւոյն Աստուծոյ։ Յայնժամ առաքեցին Դամասոս եւ այլք յեպիսկոպոսաց անտի երիցունս երկուս ի Հռոմ, աղաչել զի դատապարտեսցի վաղվաղակի Ապողինարիս հանդերձ կուսակցօքն իւրովք։ Եւ լինէր իսկ այն ի սինհոդոսի ի Հռոմ որ յամի 378 առ Դամասիւ։ Առաքեցան վճիռք ժողովոյն Հռոմայ յԱնտիոք՝ ուր ընկալաւ զնոսա ժողովն Անտիոքայ (379) զահերիցութեամբ Պաւղինեայ։ Հուսկ ուրեմն մերժեաց զդոյն մոլորութիւն այս ժողովն կոստանդնուպոլսեան (381)։ Մերժեցան եպիսկոպոսունք նոցա յիշխանութենէ, սակայն եւ այնպէս կացին մնացին կուսակիցք այսր աղանդոյ ոչ սակաւ բազմութեամբ յԱսորիս եւ ի Փոքրն Ասիա։ Նմին իրի արգել Թէոդոսիոս Ապողինարեանց՝ օրինօք (388) մի խմբել յառանձինն ժողովս, եւ չունել նոցա քահանայս կամ եպիսկոպոսունս եւ ի քաղաքամիջի մի բնակել։ Այսպէս ինքն իսկ Ապողինարիս յաւուրս ծերութեանն ետես զքակումն եւ զքայքայումն կողման իւրոյ։ Իսկ որ մնացեալքն էին յաղանդոյ անտի աղաչեցին յետոյ զԹէոդոտոս զեպիսկոպոս Անտիոքայ (յամի 416) զի ընկալցի զնոսա յեկեղեցի եւ շնորհեցաւ իսկ նոցա։ Սակայն թուի այնպէս թէ մնացեալ իցէ ի նոսա խմոր յառաջին կարծեաց անտի իւրեանց եւ զայլս նովին զանգեալ եւ այնպէս լեալ սկիզբն Եւտիքեան աղանդոյն։

Հակառակ աղանդոցս այսոցիկ կրկնէր ժողովն զհանգանակն

Digitized by Google

Նիկիական ուխտ ուխտ յաւելուածովք[1], զայն ինչ հաստատեալ ընդդէմ Մակեդոնեանց, Փոտինեանց եւ Ապողինարեանց, զոր վաղ Դամասոս քահանայապետ ի ժողովին Հռոմայ (378) կարգեալ էր վասն Նոցա[2]:

Ամին իրի վասն մերոց վարդապետութեան յօրինելոց ի ժո-

1 Տես ի Գաամ. Տիեզ. ժողովոց Հ. Գօղոս Վ. Յովհան. էջ (130—131):

2 Կանոնք կամ նզովք ժողովոյն Հռոմայ առ Դամասոսիւ՝ են 1. «Քանզի յետ Նիկիական ժողովոյն եւ այնպիսի ինչ մոլորութիւն գի ոմանք յանդգնեցան լրբել ասել թէ Հոգին սուրբ ի ձեռն Որդւոյ եղեւ, նզովեմք զամենեսին՝ որ ոչն քարոզեն համարձակ՝ թէ Հոգւոյն սրբոյ է նոյն էութիւն եւ զօրութիւն ընդ Հօր եւ ընդ Որդւոյ: 2. Նոյնպէս նաեւ զնոսա նզովեմք որոց Սաբելեայ մոլորութեանն ջատագով կան, որ ասենն՝ թէ Հայր եւ Որդի մի ոք է: 3. Դարձեալ գտատապարտեմք նզովիւք զԱրիոս եւ զԵւնոմիոս՝ որ թեպէտ եւ բանիւ այլագունակ այլ զայդ եւ հաւասար ամբարշտութեամբ եւ զՈրդի եւ զՀոգին սուրբ արարած ասեն լեալ: 4. Եւ Մակեդոնեանք եւս անկցին ընդ պատժովք նզովից, որք յարմատոյ Արիանոսաց ի վեր բուսեալ՝ ոչ եթէ զամպարշտութիւնն ինչ՝ այլ զանուն եւեթ փոխեցին: 5. Նա եւ ի վերայ Փոտինեայ անկցի պատուհաս նզովից, որ զԵբիոնեայ հերձուած նորոգեալ ասելով զՏէր մեր Յիսուս Քրիստոս ի Մարիամայ եւեթ ծնեալ: 6. Ընկալցին նզովս եւ որք երկուս Որդիս ասեն լինել՝ զմին յառաջ քան զյաւիտեանս եւ զմիւս՝ յետ մարմնին ի Մարիամայ առնլոյ: 7. Հարկ համարեցաք եւ զնոսա նզովել՝ որ ասենն թէ Աստուծոյ Բանն ի մարմնի էր փոխանակ բանականն ոգւոյ: Քանզի ինքն Աստուծոյ Բանն ոչ եթէ զբանաւոր եւ զմտաւոր ոգւոյ ինչ զտեղին ունէր ի մարմնի անդ զոր էառ, այլ զմեր իսկ զոգի, այս ինքն՝ զբանաւորն եւ զմտաւոր, բայց զառանց մեղացն էառ եւ փրկեաց»:

Յետ այսորիկ մի ըստ միոջէ նզովքին վարդապետութիւնքն որ ցայս վայր համառօտիւ մերժեցան:

«Եթէ ոք ոչ ասէ թէ Հայր էր միշտ, Որդի էր միշտ եւ Հոգի սուրբ էր միշտ, եղիցի նզովեալ: Եթէ ոք ասէ՝ եթէ չէ Որդի ծնեալ ի Հօրէ, այս ինքն՝ յաստուածեղէն էութենէ անտի նորա, ե. ն: Եթէ ոք ասէ՝ եթէ Աստուծոյ Որդին չէ այնպէս ճշմարիտ Աստուած, որպէս Հայր է ճշմարիտ Աստուած, եւ թէ չէ ամենայնի կարող, ամենայնի գիտակ եւ Հօրն հաւասար, ե. ն: Եթէ ոք ասիցէ՝ թէ Աստուծոյ Որդին՝ յորժամ ի մարմնին կեայր եւ յերկրի շրջէր՝ չէր նա եւ յերկինս ընդ Հօրն, ե. ն: Եթէ ոք ասէ՝ թէ յորժամ Աստուծոյ Որդին ի խաչին չարչարեցաւ, ոչ ի մարմնի միայն եւ ի բանաւոր ոգւովն՝ զոր էառ ի կերպարանս ծառայի՝ որպէս ի Գիրսն սուրբս կայ, այլ եւ յիւրում աստուածութեանն կրեաց ցաւս, ե. ն: Եթէ ուրանայ ոք՝ եթէ Աստուծոյ Որդին չարչարեցաւ մարմնովն, խաչեցաւ մարմնովն, զմահ ճաշակեաց մարմնովն եւ եղեւ անդրանիկ ի մեռելոց, քանզի է կեանք եւ Աստուած իշխան կենաց, ե. ն: Եթէ յաւրաստ է ոք՝ թէ նա մարմնովն զոր էառ՝ նստի ընդ աջմէ Հօր, որով եւ գալոց է առնել դատաստան կենդանեաց եւ մեռելոց, ե. ն: Եթէ ժխտէ ոք՝ թէ Հոգին սուրբ չէ ճշմարտութեամբ եւ սեպհականութեամբ ի Հօրէ, որպէս Որդի յաստուածեղէն էութենէ եւ Աստուած՝ Աստուծոյ Որդի, ե. ն: Եթէ ոք ասիցէ՝ թէ Հոգին սուրբ չէ այնպէս ամենազօր, ամենագէտ եւ ամենայն ուրեք՝ որպէս զՀայր եւ զՈրդի, ե. ն: Եթէ ոք ասիցէ՝ թէ Հոգին սուրբ արարած է եւ Որդւով եղեալ, ե. ն: Եթէ ոք զայն ուրանայցէ՝ թէ զամենայն ինչ արար Հայր Որդւովն մարմնացելով եւ Հոգւովն սրբով, այս ինքն՝ զերեւելիսն եւ զաներեւոյթս, ե. ն: Եթէ ուրասցի ոք զՀօր եւ զՈրդւոյ եւ զՀոգւոյն սրբոյ զմի աստուածութիւն, ճոխութիւն, զօրութիւն, զփառաւորութիւն մի, զտէրութիւն մի, զմի թագաւորութիւն, կամս եւ ճշմարտութիւն, ե. ն: Եթէ ոք ասէ չլինել երից ճշմարիտ անձանց Հօր, Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, եւ չլինել կենդանի միշտ, եւ պահել զամենայն՝ զերեւելիսն եւ զաներեւոյթս, չլինել ամենայնի բաւական, չդատել զամենայն, ամենեցուն չառնել կեանս, չյօրինել զամենայն, չպահել զամենայն, ե. ն: Եթէ ոք չաւանու յանձն թէ Հոգւոյն սրբոյ այնպէս պարտի երկրպագութիւն յամենայն արարածոց, որպէս Հօր եւ Որդւոյ, ե. ն: Եթէ ուղիղ ոք զՀօրէ եւ զՈրդւոյ խորհիցի, բայց զՀոգւոյն սրբոյ՝ ոչ, հերետիկոս է. իսկ ամենայն հերետիկոսք որ չարաչար խորհին զՈրդւոյն Աստուծոյ եւ զՀոգւոյն սրբոյ՝ գտանին ի Հրէից եւ ի հեթանոսաց անհաւատութեանն: Եթէ զաստուածութիւնն ոք բաժանիցէ եւ ասիցէ զՀայր՝ Աստուած, զՈրդի՝ Աստուած եւ զՀոգին սուրբ Աստուած՝ ուրոյն ուրոյն, եւ ասիցէ թէ մարթ է եւ Աստուածս զնոսա ասել եւ ոչ Աստուած՝ վասն միոյ աստուածութեանն եւ զօրութեան զոր հաւատամք եւ ընդունիմք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, զի է մի Աստուած յերիս անձինս. եւ կամ այնպէս ի բաց առցէ զՈրդի եւ զՀոգի սուրբ՝ զի համարիցի զՀօրէ միայն ասել Աստուած եւ զնոյն հաւատալ՝ մի Աստուած, ե. ն: Քանզի Աստուծոց անուն պարգեւեալ է յԱստուծոյ եւ հրեշտակաց եւ ամենայն սրբոց: Իսկ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգի սուրբ վասն միոյ հաւասարին աստուածութեան ոչ անուանք Աստուծոց այլ անուն Աստուծոյ ընծայի եւ նշանակի, զի հաւատացաք՝ թէ ի Հայր, յՈրդի եւ ի Հոգի սուրբ մկրտեցաք եւ ոչ յանուն հրեշտակապետաց կամ հրեշտակաց, որպէս հերետիկոսք, Հրեայք եւ հեթանոսք գանդաչեն»:

Digitized by Google

ղովոյս ընդդէմ հերձուածողացն՝ չէր մարթ հակառակութեան իրիք արեւելեայց ընդ արեւմտեայց լինելոյ, եւ հաստատեցաւ իսկ ժողովն ի Դամասոսէ[1] եւ եղեւ ընդունելի արեւմտեայց, որով՝ որ յառաջին մասնաւոր ինչ ժողով էր՝ եղեւ սիւնհոդոս տիեզերական, առաջին Կոստանդինուպոլսեայ: Սակայն ոչ այնպէս դիւրաւ եւ վաղվաղակի եղեն ընդունելի կարգաւորութիւնք ինչ որ ի ժողովս անտի սահմանեցան:

Քանզի իբրեւ ի նմին ամի գումարեցաւ ժողովն Ակուիլեայ յեպիսկոպոսաց վերնակողմանն Իտալիոյ, Գաղիոյ, Պաննոնիայ եւ Ափրիկեայ՝ զաւհերիցութեամբ Վաղերիանոսի եպիսկոպոսի Ակուիլեայ եւ առաջնորդութեամբ Ամբրոսիոսի եպիսկոպոսի Մեդիոլանու վասն քննութեան երկուց վերջին արեւմտեան արիանոս եպիսկոպոսացն՝ Պալլադեայ եւ Սեկունդիանեայ, յորոց մին եպիսկոպոս էր ի Դակիա եւ միւսն՝ ի Միւսիա. յետ զնոսա մերժելոյ յաթոռոց՝ գրէ ժողովն ոչ միայն առ Գրատիանոս եւ Վաղենտիանոս Բ. վասն ի գործ մատուցանելոյ զվճիռ ժողովոյն վասն երկուց եպիսկոպոսացն եւ վասն կարծելոյ զխռովայոյզն Ուրսինոս զհակառակ քահանայապետին, այլ եւ գրեալ եւս առ Թէոդոս՝ ամբաստանէ իմն զգործ ժողովոյն Կոստանդինուպոլսեայ՝ որ ոչ երբեք զհերձուածն Անտիոքայ եւ խրատ տայ կայսեր ժողովել վասն սորին իրաց ժողով յԵգիպտոս. քանզի ունէին առաւել իմն վստահութիւն յԵգիպտացիսն, համարելով թէ յետ մահուն Աթանասի տակաւին կենդանի է ոգի նորա ի նոսա: Յետ սակաւ ինչ միոյ՝ ժողով ինչ Հռոմայ գրէր առ նոյն կայսր եւ հրաւիրէր զեպիսկոպոսունս արեւելից գալ ի Հռոմ եւ միաբան խորհել վասն ընտրութեանն Փղաւիանեայ եւ Նեկտարեայ. քանզի եւ Մաքսիմոս յայնժամ կեղծաւորութեամբ պատրեալ էր ի Մեդիոլանոն եւ ի Հռոմ զեպիսկոպոսունսն արեւմտից, ցուցանելով մանաւանդ թուղթս եկեղեցական հաղորդութեան ընկալեալս ի Պետրոսէ եպիսկոպոսէ Աղեքսանդրացւոց (482):

Յայնժամ կոչեաց Թէոդոս զեպիսկոպոսունսն արեւելից ի Կոստանդինուպոլիս, ցուցեալ նոցա եւ զհրաւէր ժողովոյն Հռոմայ: Հարք այսր երկրորդի Կոստանդինուպոլսեան ժողովոյ էին գրեթէ նոքին որ յառաջնումն գտան, ուստի եւ զնոյն միտս կալեալ վասն ընտրութեան Փղաւիանեայ՝ փոխանակ Մելետեայ եւ վասն Նեկտարեայ՝ փոխանակ Մաքսիմոսի. եւ առաքեցին հրեշտակութեամբ երիս յեպիսկոպոսակցաց իւրեանց ի ժողովն անդր ի Հռոմ. յայտ արարեալ թղթով թէ անհնարին է նոցա յայսմ խառնակութեան ժամանակի հեռանալ յաթոռոց իւրեանց (482): Սակայն չեղեւ գոհ ընդ այն պատասխանի ժողովն Հռոմայ. դարձեալ

1 Ինքն իսկ փոս զԴամասոսէ ի Գիրս վասն սինոդ. ասէ. Τὰ αὐτὰ κρατήσων ἐγνωρίζετο σύμφωνος. — "Ծանուցաւ (Դամասոս) միաբան՝ ասելով նոցին զօրութիւն (կամ հաստատութիւն)":

կացին մնացին արեւմտեանքն հաստատուն ի նոյն միտս, քանզի եւ եպիսկոպոսունքն արեւելեայք որ անդէն գային, էին վաղ ի կողմն Պաւղինեայ եւ Մաքսիմեայ. այս ինքն՝ ինքն Պաւղինոս Անտիոքայ, Տիմոթէոս Աղեքսանդրիայ եւ Եպիփան Սաղամեայ Կիպրացւոց: Գրել գրեաց ժողովն միաբանեալ առ Թէոդոս վասն նոցա, առաջարկելով թէ ցայժմ դիւրագոյն եղեւ լռեցուցանել զհերձուածս՝ քան եթէ միաբանել զուղղափառս. բայց արեւմտեանք՝ չվճարեցաւ ինչ. Նա առանձին յետ վախճանին Պաւղինեայ (389)՝ անց կալան զաթոռն Եւագր երէց, երբեմն սարկաւագ Բարսղի:

Սիրիկիոս քահանայապետ Հռոմայ (յամի 385) եւ Ամբրոսիոս կոչէին զՓղաւիանոս ի Հռոմ վասն նորա, այլ անդէն համանէր վախճան Եւագրի. եւ ոչ ոք ընտրեցաւ փոխանակ նորա՝ մնացին Եւստաթեանքն առանց եպիսկոպոսի, քանզի ընդ Փղաւիանոս չկամէին հաղորդել (392): Ապա ուրեմն յետ 6 ամաց հաւանեցոյց Ոսկեբերան զԹէոփիլոս Աղեքսանդրիոյ հայրապետ (որում յանձն եւս պարտեալ էին զերան արեւմտեանք յառաջ քան զեւթն ամ)՝ առաքել հրեշտակութիւն ի Հռոմ եւ միաբանել զամենայն: Ցղեցան ի Թէոփիլեայ կողմանէ՝ Ակակիոս Բերիոյ Ասորւոց եւ Իսիդոր հոգաբարձու աղքատաց եկեղեցւոյն Աղեքսանդրացւոց, եւ ի Փղաւիանեայ կուսէ՝ եպիսկոպոսունք ոմանք եւ երիցունք եւ սարկաւագունք: Ընկալաւ քահանայապետն եւ ամենայն եկեղեցիք արեւմտից զՓղաւիանոս ի հաղորդութիւն (398): Մեծ մասն յԵւստաթեանց միաբանեցին իսկ եւ իսկ. զբաղումս ի յամառելոցն յետ վեշտասան ամաց հաշտեցոյց քաղցրութեամբ Աղեքսանդրոս հայրապետ Անտիոքայ (414). միաւորեցան մնացեալքն առ Կալանդիոնիւ հայրապետաւ, յորժամ ածան նշխարք Եւստաթեայ յԱնտիոք (482) յետ իբրեւ 150 ամաց տեւանելոյ հերձուածոյն:

Սակայն միաբանութիւն Դամասոսի ընդ արեւելեայց՝ ի բանի վարդապետութեան՝ առանց հակառակութեան յայտ է ի թղթոյ քահանայապետին գրելոյ ի նմին ամի առ նոյն եպիսկոպոսունս արեւելից, իբրեւ պատասխանի թղթոյ նոցա[1]:

Ի միւսում եւս ամի ժողովէր Թէոդոս միւս եւս ժողով յարանց գլխոց յամենայն աղանդոց ի Կոստանդինուպօլիս, զի մերձեալ միաբանեսցին ընդ միմեանս (383 Յունիս.): Բազմաց իսկ յԱրիանոսաց, յԵւնոմեանց եւ ի Մակեդոնեանց բացան աչք. այս վասն մնացելոցն հերետիկոսաց թելադրութեամբ Ամփիլոքիոսի եպիսկոպոսի Իկոնիացւոց հան օրէնս արգելուլ զամենայն աղանդս բաց ի Նովատիանոսաց որք զմիասին էականութիւնն դաւանէին, եւ այսպէս տակաւ եղծաւ արիանոսութիւն յարեւելս:

1 Կայ թուղթս առ Թէոդորիտեայ Եկ. տես գնէ առաքելական աթոռոյն, ձեզ պատմ. Ե. 10. որոյ սկիզբն է այսպէս. իսկ պատուի ընծայէ՝ որդեակք իմ սիրելիք... "Այն՝ զի սիրելութիւն ձեր զպատշաճ պա-

# 89

Իսկ յարեւմուտս՝ ուր ջնջեալ ապականեալ էր արիանոսութիւն, ճգնէր վաստակէր կայսր Գրատիանոս՝ եղծանել ապառապուռ զպաշտօն կռապաշտութեանն առանց զանձինս բռնաբարելոյ։ Հանեալ էր Կոստանդիանու ի ժողովարանէ անտի ծերակուտին զպատկեր դիցն Յաղթութեան եւ Յուլիանու միւսանգամ կանգնեալ. Վաղենտինիանոս Ա. թող զնա այնպէս. առաջի այսր բագնի երդմնի լինէին սինկղիտիկոսքն հեթանոսք եւ մատուցանէին զոհս։ Հրաման տայր Գրատիան զայն պատկեր ի բաց քակել, առ ի զանձ հասարակաց զհասոյն որ վասն զոհից եւ քրմացն էին, բարձ ի Վեստեան կուսանաց զազատութիւնսն եւ զառաւելութիւնս, պատուէր տայր անուլ յարքունիս զամենայն կալուածս գետնոյ՝ որք թողցին կտակաւ՝ մեհենաց, քրմաց եւ Վեստեանցն։ Զուր առաքեցին հեթանոսք ի սինկղիտիկոսացն հրեշտակութիւն առ կայսր ի Մեդիոլանոն։ Առաջին ի կայսերաց Գրատիանոս՝ եդ ի բաց զպատիւ եւ զանուն քրմապետութեան որ կից ընդ կայսերական պատուոյն էր անդստին յՕգոստեայ։ Զայրացան ընդ այս ամենայն հեթանոսք եւ ասեն. Քանզի Գրատիանոս չկամի լինել Քրմապետ (pontifex Maximus), մեք արասցուք զՄաքսիմոս՝ Քրմապետ։

Քանզի ընդ նոյն աւուրս ապստամբէր յանկարծ զօրավար զօրացն ի Բրիտանիա՝ Մագնոս Կղեմէս Մաքսիմոս սպանիացի (383). անճապարեաց Գրատիան ի կողմանց Գերմանացւոց ընդ առաջ նորա ի Տրեւիրս կոյս, ուր բազումք ի զօրաց նորա անցին ի կողմն ապստամբին, եւ ճակատ առ Պարիսս քաղաքաւ, թօթափեցան ի նմանէ ամենեքեան, մինչ կայսր 300 հեծելովք եւ փախստեայ հասանել յԱլպս. զճանապարհայն ամենայն քաղաքք փակեցին առաջի նորա զդրունս. միայն Լուգդունոն բացաւ նմա. անդ սպանաւ նա յետ ընթրեաց՝ ի ձեռն ուրումն սուտ բարեկամի ամաց 24 եւ ամսոց երից կամ չորից (25 Օգ. 383)։ Որդիք նորա լեալ էին վաղամեռիկ. յետ վախճանի Կոստանդիայ կնոջ իւրոյ առաջնոյ դստեր Կոստանդեայ կայսեր՝ ամուսնացեալ էր ընդ Լետայ ումեմն. սմա եւ մօր սորա Պիսսամենայ կարգեաց Թէոդոս հաս առատութեամբ։

Անյուհետեւ Բրիտանիա, Գաղիա եւ Սպանիա միամտեցան ընդ Մաքսիմոսի՝ որ նստէր ի կայսերական քաղաքին ի Տրեւիրս։ Զարհուրեցոյց իբրեւ զձայն փայլատականց գոյժ մահուան Գրատիանու զեղբայր նորա զերեքտասանամեայ զՎաղենտինիանոս Բ. եւ զնորին մայր զՅուստինա, զքաղաքն Մեդիոլանացւոց, նա աւանիկ զհամօրէն իսկ զԻտալիա՝ որ առանց զօրաց էր առաջի Մաքսիմոսի։ Յայսմ նեղութեան ժամանակի ապաստան եղեւ

դշխոյն Յուստինա առ Ամբրոսիոս եպիսկոպոս Մեդիոլանու, յանձն առար նմա զորդեակ իւր զՎաղենտինիանոս Բ. (383—392)։ Գրեթէ արկեալ փարեցաւ Ամբրոսիոս գորովով զմանկամբն եւ յանձն առ երթալ հրեշտակութեամբ առ ապստամբն չանցուցանել զզօրն ընդ Ալպս այսր. մեծարեցաւ նա ի Մաքսիմոսէ, կռեցան դաշինք ընդ Վաղենտինիանու եւ ընդ Թէոդոսի առ որս առաքեալ էր Մաքսիմեայ ուրոյն հրեշտակութիւն. քանզի եւ երկոքին եւս կողմանք ունէին պէտս խաղաղութեան ի ժամուն։

Մաքսիմոս (383—388)՝ որ համակ ապաստէր դիպող ժամու յարձակելոյ յԻտալիա, ցուցանէր զինքն այնուհետեւ նախանձաւոր յոյժ ուղղափառ հաւատոյ։ Պրիսկիղիանոս ոմն ի Սպանիա տարածանէր եղծագործ մոլորութիւնս նման Մանիքեցւոցն մոլորութեանց, այլ դատապարտեցաւ նա իւրովքն հանդերձ ի ժողովի՝ ի Կեսարիա Աւգոստայ (Սարակոսայ) եւ մերժեցաւ ի Սպանիայ։

Մաքսիմոս տայր քննել զնորս Պրիսկիղիանոսի ի ժողովին Բուրդեգաղիայ (Պորտոյ) ըստ թելադրութեան եպիսկոպոսացն սպանիացւոց Իդակիոսի եւ Իթակիոսի։ Այլ Պրիսկիղիանոս կամեցաւ զի Մաքսիմոս ինքնին դատեսցի զնա. եղեւ որպէս կամէրն եւ Մաքսիմոս դատապարտեաց զնա ի մահ հանդերձ վեցեքումբք աշակերտելովքն։ Դժկամակ եղեն ընդ այն արք ուղղափառք, մանաւանդ՝ Մարտինոս եպիսկոպոս Տուրոնացւոց († յամի իբրեւ 400) եւ Ամբրոսիոս որք յայնժամ ի Տրեւիրս դիպեցան եւ ջանացան զկատարումն վճռոյն արգելուլ, այլ զուր (385)։ Այսպիսի իմն նախանձաւորութեամբ շահել իմն կամէր Մաքսիմոս զսիրտ բնակչացն Իտալիայ, ուր դշխոյն Յուստինա որ իշխէր յանուն որդւոյն, դժտելով ընդ Ամբրոսիոսի հեռացուցանէր իմն յիւրմէ զսիրտ ժողովրդեանն։

# 90

Ամբրոսիոս՝ որ եղեւ խրատատու ութից կայսերաց ժամանակին իւրոյ (Վաղենտինիանոսի Ա., Գրատիանեայ, Մաքսիմեայ, Յուստինեայ, Վաղենտինիանեայ Բ., Թէոդոսի Ա. Եւգինեայ եւ Ոնորեայ) ծնաւ յամի 340 յազնուական ի հռոմայեցի տոհմէ յանուանակից հօրէ որ էր լինեալ վերակացու յաշխարհին Գաղիացւոց, ի Տրեւիրս՝ ուստի գաղթեաց նա ի Հռոմ յետ հօրն վախճանի, ուր նուիրեաց մայր նորա զանձն յայրիութիւն եւ քոյր նորա Մարկեղղինա ի կուսութիւն։ Իսկ ինքն ի Մեդիոլանոն էր խօսելի յատենի դատաւորաց, մինչեւ աստիճան յաստիճանէ եհաս կարգեցաւ ի Վաղենտինեայ Ա. կուսակալ ի Լիգուրիա եւ յԷմիլիա (374)։ Անդէն ի նմին ամի վախճանեալ Աւքսենտիոս արիանոս եպիսկոպոս Մեդիոլանու, լինէր ժողով բազմութեան ընտրել եպիսկոպոս. եւ Ամբրոսիոս ի տեղին իբրեւ գործակալ արքունի վասն զգուշութեան. իսկ եւ իսկ աղաղակեաց միաբան ամբոխն. Ամբրոսիոս լիցի

Digitized by Google

*մեր եպիսկոպոս, Ամբրոսիոս եպիսկոպոս: Ընդդէմ դարձաւ Ամբրոսիոս, այլ առեալ զպնդութիւն ժողովրդեանն եւ ի բեմն դատաւորութեան իւրոյ եւ եւս առնել զոմանս ձերբակալ իբրեւ սատահակս, այլ զուր. իջեալ մեկնէր ի տուն իւր յայտ արարեալ ժողովրդեանն թէ ի մտի եղեալ է միայնանալ եւ պարապել իմաստութեան: Բայց եւ այնու չվճարեցաւ ինչ. ելեալ երթայր անդէն ի գիշերին փախստեայ ի Պաւիա, զամենայն գիշերն ընթացեալ տեղ՝ առաւօտուն կայր նա առաջի դրանց Մեդիոլանու: Աստուծոյ կամօ զերծն համարեցաւ այնուհետեւ Ամբրոսիոս. ուրախութեամբ հաւանեցաւ Վաղենտիանոս Ա. ընդ ընտրութիւնն. յետ մկրտութեանն (30. Նոյ.) առեալ ձեռնադրութիւն (7. Դեկտ.) իսկ եւ իսկ պարգեւէր եկեղեցւոյ զամենայն մեծագին ինչսն եւ զկալուածսն եւ՝ զորոց բերսն սահմանէր քեռն իւրում Մարկեղզինայ: Յառաջ քան զճակատն առ Ադրիանուպաղեաւ՝ գերի բազում առեալ էին Գութք ի Հռոմայեցւոց. իբրեւ չգտյր այնչափ ինչ բաւական լինել փրկանաց զոր պահանջէին՝ տայր Ամբրոսիոս զսպաս եւ զծանրագին իրս եկեղեցւոյն որ ոչ տակաւին արկեալ էին ի կիր, նախ խորտակեալ զնոսա: Ընդ այն իմն տեղ ուսանէր զի չեղեւ նմա ժամանակ յետ աշխարհական հոգոցն՝ նախ իբրեւ աշակերտ ուսանել մինչեւ հարկ լեալ իբրեւ վարդապետ զայլս ուսուցանելոյ: Սակայն տեղ փութով եղեւ յառաջադէմ ի ծանօթութիւն գրոց սրբոց, եւ սիրելի էին նմա մանաւանդ մատեանք Ս. Բարսղի. քարոզէր զբանն յամենայն միաշաբաթւոջ, պարզն եւ անպաճոյճ բանիւք այլ ի զօրութեամբ մինչեւ զԱւգոստինոս իսկ հրապուրել յունկնդրութիւն:*

*Յուստինա քանզի ջերմ էր յարիանոսութիւն՝ հակառակութեամբ էր ընդ եպիսկոպոսին, այնու՝ զի առնէր սա վախճան արիանոսութեան ի Մեդիոլանոն որ էր աթոռ աղանդոյն այնորիկ յարեւմուտս. ամենայն եկեղեցիք քաղաքին ի նորա հաղորդութեան էին. այլ առ կենդանութեամբ Վաղենտինեայ Ա. եւ Գրատիանեայ չկարաց վճարել ինչ դշխոյն:*

*Սակայն իբրեւ զերծաւ ի նոցանէ՝ ըստ արիանոսական աղանդոյ կրթէր զմանուկն Վաղենտիանոս Բ. զհաւատակիցսն ժողովէր յարքունիսն. թէպէտ եւ նմին հակառակ զհեթանոսսն ողոքէր վասն քաղաքային շահու: Մօտ յաւուրս զատկաց (385) ջանայր դշխոյն երկիցս առնուլ զմի յեկեղեցեաց (Պորտիանէ՝ անուն) բռնի վասն արիանոսական պաշտաման. այլ խռովեցաւ քաղաքն ամենայն եւ յարեաւ խուժանն, մինչեւ հարկ համարեցաւ յայտ առնել յանուն Վաղենտիանու Բ. թէ չպահանջէ այսուհետեւ, եւ ուրախ եղեւ ժողովուրդն: — Սակայն անդէն ի յաջորդ ամին այլով իմն օրինակաւ ի նոյն ջանային արքունիքն: Հանգանակն Արիմինեան սահմանեցաւ վասն Իտալիոյ՝ իբրեւ հասարակաց հանգանակ հաւատոյ: Լի էին ամենեքին զայրացմամբ. այլ մօտ ի տօն զատկին առաւել յուզեալ խռովեցաւ քաղաքն՝ յորժամ միւսանգամ պահանջեցաւ եկեղեցին. դարձեալ ընդդէմ դարձաւ Ամբրոսիոս եւ ասէր՝ թէ «Եթէ զիմ ինչս կամիցի կայսր, տամ զամենայն իսկ եւ իսկ, թէպէտ եւ որպէս ամենայն այր քաղաքացի,*

Digitized by Google

Նոյնպէս եւ ես կարող եմ պահանջել զպաշտպանութիւն կայսերն վասն իմոց սեպհականն ընչից: Այլ եկեղեցիք եւ ինչք եկեղեցւոյ՝ չեն իմ ստացուածք, այլ Աստուծոյ իրք՝ որովք չկարեմ ըստ կամս վարել. այս համատարմութիւն պաշտամանս օգուտ է կայսեր, զի զմի օրինակ մնասակար է՝ ինձ տալ եւ նմա առնուլ զոր խնդրէն„: Վասն այսպիսի մեղմական համարձակութեան սահմանեցին արքունիք աքսորումն եւ որոշեցաւ փոխանակ նորա արիանոս եպիսկոպոս Մերկուրինոս սկիւթացի որ Աւքսենտիոս զանձն անուանեաց վասն յիշատակի առաջնոյն Աւքսենտեայ. եւ առաքեցաւ առ Ամբրոսիոս հրաման ի բաց ելանել վաղվաղակի ի քաղաքէն. բայց չէ ինձ, ասէ հօտապետն, համարձակ մեկնել ի հօտէս. սակայն բռնութեան չկարեմ ունել զդէմ: Առաքեցաւ գունդ մի զօրականաց ի Գոթաց, այլ ընդ վայր. ժողովուրդն խուռներնթաց ժողովեալ յեկեղեցւոջն ի բազում աւուրս զցայգ եւ զցերեկ պահէին զեպիսկոպոսն իւրեանց եւ զհայր հասարակաց համապազորդեալք յերգս սաղմոսաց եւ յօրհնութիւնս. մինչեւ ի բաց եղաւ այն խորհուրդ աքսորանաց (386):

## 91

Ընդուստ ուրեմն հասանէին սպառնալիք ի Մաքսիմոսէ, որ պատճառանօք պաշտպանելոյ ուղղափառաց կամէր յարձակել զրաւել զԻտալիա: Աղաչեցեալ ի Յուստինեայ յանձն առ Ամբրոսիոս երթալ քննել զմիտս նորա թէ հաստատուն իցէ ի խաղաղութիւն. թէպէտ եւ խաղաղասէր կեղծաւորեցաւ Մաքսիմոս, բայց ի միտ առ Ամբրոսիոս զխաբէութիւնն եւ զգուշացոյց զարքունիսն: Արքունիքն Մեդիոլանու թերահաւատ լեալ ի բանից եպիսկոպոսին՝ առաքեցին զոմն ի մեծամեծաց զԴոմնինոս անուն. մեծապատիւ մեծապարգեւ ընկալաւ զնա Մաքսիմոս եւ նշանակ բարեկամութեանն՝ առաքէր ընդ Դոմնինեայ գունդս զօրաց իբրեւ յօգնութիւն կայսերն՝ որ ի Պաննոնիա ունէր մարտ պատերազմի: Վաղ տուեալ էր Դոմնինեայ բանալ առաջի գնդին զկապան Ալպեան լերանց՝ յորժամ ինքն Մաքսիմոս առեալ զիւր լեգէոնսն զհետ հասանէր, գտանէր բաց զՍեգուսիոն (զՍուզա՝ ի Փիէմոնդ) զդուռնն Իտալիոյ եւ միաւորեցաւ ընդ գնդին որ Դոմնինեայն տուեալ էր, հաս ի Մեդիոլանոն. քաղաքք Իտալիոյ մի ըստ միոջէ բանային նմա զդրունս, պաշարեցաւ Ակուիլէա, ուրանօր լինէին հեթանոսք ի Հռոմ, Էմոնա (Լուպիանա) միայն զինակալ լեալ կարծեաց զարշաւան բռնաւորին. հազիւ հազ ապրեցաւ Վաղենտիանոս ընդ մօրն փախուցեալ նախ յԱկուիլէա, եւ անտի ի Թեսաղոնիկէ (387):

Անդր եկն Թէոդոս եւ անդէն եղեւ խորհուրդ վասն պատե-

բաղմին. զաշխատութիւն երկոցունց կայսերացն զօրացաւ ախոյեան զբռնաւորն, զի անհնարացաւ Թէոդոս ընդ Գալլայ քեռն Վաղենտիանեայ Բ., դստերն Վաղենտիանոսի Ա. եւ Յուստինեայ: Թէոդոս որ էր Թերեւս առաջին զօրավարաց ժամանակին իւրոյ՝ ինքն զօրավարէր, ընդ նովաւ էին Պրոմոտոս զօրավար հեծելազօրուն, Տիմասիոս զօրավար հետեւակաց, Թող զՌիքոմեր եւ զԱրբոգաստ: Հզօրագոյն էր քան զնա հեծելովք եւ հետեւակօք Մաքսիմոս՝ որ կացեալ էր յԱկուիլէա. բախեցաւ Թէոդոս ընդ առաջին գնդին՝ որում Անդրագաթիոսն առաջնորդէր մօտ ի Սիսկիա Պաննոնիացւոց (Սիսակ) առ Սաւոս գետով. խորտակեցաւ գունդն ապստամբ եւ բազումք եղեն գետամոյն. հարաւ նոյնպէս յաւուրն երրորդի գունդն երկրորդ՝ որում առաջնորդէր Մարկեղղինոս եղբայր Մաքսիմեայ առ Պետովիոնաւ (Փեթաւ առ Տրաւ գետով): Մեծ մասն զօրուն խորտակելոյ խոնարհեցուցեալ զդրօշսն խնդրէր ներումն ի գութս: Արիութեամբ ընդ առաջ եղեն Իտալացիքն. մինչդեռ մօտ էին յԱկուիլէա երիւք ժամուք՝ յառաջեաց Արբոգաստ զօրօք ի քաղաքն, եւ եհան զՄաքսիմոս՝ զի անզէն իրացն զիպելոյ նստեալ ի բարձու ուրեք տայր վարձս մատնութեանցն զօրականին. հանաւ Թագն ի գլխոյն եւ ածաւ ձերբակալ առաջի Թէոդոսի: Իբրեւ խանդաղատէր ինքն ընդ նա Թէոդոս, նա տարաւ զնա զօրականն ի բաց՝ երկուցեալ թէ զկեանս շնորհիցէ եւ անդէն գլխատեցաւ (388): Վիկտոր որդի Մաքսիմեայ զոր Թողեալ էր հօրն փոխանակ իւր ի Տրեւիրս, սպանաւ հրամանաւ Արբոգաստայ, Մարկեղղինոս անկաւ ի ճակատուն, կինն Մաքսիմեայ եւ դստերացն կարգեցան հասք ի Թէոդոսէ:

Անդ մնաց Թէոդոս ամս երիս յԻտալիա (388—391) կարգել յօրինել զամենայն՝ խաղաղութեամբ: Այլ ինքնին տիրէր Վաղենտինիանոս Բ. քանզի վախճանեալ էր Յուստինիա ի նմին ամի յաղթութեանն: Արբոգաստ զօրավար Թէոդոսի մնաց ի ծառայութեան Վաղենտիանեայ:

## 92

Միով ամաւ յառաջ եւ միով ամաւ յետոյ քան զամն յաղթութեան դէպք երկու յարեւելս դիպեցան, որք Թէպէտ եւ նմանք իրերաց էին, այլ ոչ զմի եւ զնոյն օրինակ գործ եցոյց Թէոդոս:

«Քանզի զանձք հատեալ էին վասն ատէպ պատերազմացն եւ զի պարգեւք եւս բաշխելոց էին զօրականին ի մօտաւոր ամի տասնամենեկի կայսերն եւ հնգամենեկի Արկադեայ որդւոյ, կարգեցան առաւելագոյն հարկք ի վերայ քաղաքաց: Ծանր թուեցաւ այն Անտիոքացւոցն. տրտնջել սկսան ամբոխն, դիմեաց մեծաւ

աղմկաւ ի վանս վերակացուի աշխարհին եւ ընդ դրունս եւ ընդ երդս ի ներքս խուժէին: Անտի մերժեալ՝ զզայրացան ընդ կայսերական պատկերսն հանէին. զպատկեր Փղակիղղայ վախճանելոյ կնոջ կայսերն, որդւոյ կայսերն եւ զպղնձի ձիաւոր պատկեր հօր նորա Թէոդոսի կոմսի՝ յետ տիղմ եւ քարինս ի վերայ ընկենլոյ՝ ապա ծայրատեալ առեալ տանէին ընդ քարշ ի հրապարակս քաղաքին, մինչ զի հազիւ հազ կարացին զօրականօքն ցրուել զնոսա յիւրաքանչիւր տեղիս: Զմոլեգնութիւնն փոխանակէր այնուհետեւ անհնարին ահ եւ երկիւղ մօտալուտ պատժոցն. լռեալ կայր քաղաքն՝ յորոյ հրապարակն անպակաս էր ժխոր եւ աղմուկ: Միայն եկեղեցին (Պաղէա) լի էր առաւել իմն քան զսովորականն: Բազումք փախեան յայրս եւ ի լերինս կանամբ եւ որդւովք եւ կահիւ իւրեանց: Անդուստ հասանէին գործակալք կայսերն բերեալ հրաման թէ Անտիոք եղիցի գեւղ քաղաքին Լաւոդիկեցւոց, թատրն, կրկէսն եւ բաղանիք փակեցին, եւ հաց որ ըստ օրէ յաղքատանոցս մի բաժանեցի: Հասին զհետ նոցա դատաւորք (Հեղլեբրիկ եւ Կեսարիոս) եւ արկան բազումք ի բանտ: Այլ յառաջեալ էր քան զնոսա Փղաւիանոս եպիսկոպոս քաղաքին հիւանդագին յարքունիսն ի Կոստանդինուպօլիս. զինչս թագաւորն արտասուաց եւ աղաչանաց հայրապետին, յորժամ յիշեցոյց նմա զոր ասացեալ էր երբեմն կայսրն յարձակել զկալանաւորսն ի զատկին տօնի, թէ "Կամէի եւ զմեռեալսն յարուցանել": Արք անապատականք յայրից եւ ի տաղաւարաց իւրեանց հասեալ յԱնտիոք առաքեցին պատգամ առ կայսր ասել "Եթէ այսպէս ցաւէ նմա վասն զրկանաց որ անշունչ եւ անմռունչ պատկերացն եղեն, ապա պարտ է նմա խորշել ընդդէմ մարդկան մոլեգնելոյ՝ որ կենդանի պատկերք աստուածութեանն են: Արժան ի՞նչ իցէ վասն պղնձոյ վրէժն առնլոյ՝ զմարդիկ կոտորել: Դիւրաւ եւ անջան մարթի նմա զպատկերսն միւանգամ կանգնել. սակայն ինքն Թէպէտ եւ կայսր եւս իցէ՝ չէ ձեռնհաս զմազ մի նորոգել զայնոցիկ՝ զորս թերեւս տացէ ապանանել": Խոռովեցաւ սիրտ թագաւորին "Երթ, աւէ, հայր, մխիթարել զժողովուրդ քո եւ տուր նոցա զաւետիս թողութեանն իմոյ. Քրիստոս տէրն տէրանց ներեաց ի՛ւրոց խաչահանուացն եւ յաղօթս եւս եկաց վասն նոցա, ես դանդաղիցե՞մ ներել իմոցն թշնամանողաց որ մահկանացուս եմ եւ նոցա ծառայակից":

Այսպէս թուղթ թողութեան կայսերն սուրհանդակաւ, եւ ծանոյց զաւետիսն ժողովրդեանն Ոսկեբերան՝ որ յայնժամ երէցն էր յԱնտիոք եւ մխիթարէր զժողովուրդն ի վշտացն ժամանակի (20 ճառիւքն վասն պատկերաց): Այլ ժողովուրդն ընդառաջ Փղաւիանեայ, ծաղկօք զարդարեցաւ ճանապարհն ընդ որ անցանելոց էր եւ ցանեցաւ ջուր անուշահոտ. զարմացան հեթանոսք

Digitized by Google

ընդ զօրութիւն քրիստոնէութեանն, որ իշխէրն ի վերայ այնոցիկ որոց չէր ոք աէր վերագոյն ի վերայ երկրի (387)։

Այլ աւաղ՝ զի ոչ ըստ նմին օրինակի գտաւ Թէոդոս մեծանձն եւ ի միւսում եւս նուագի։

Զաղաքն Թեսաղոնիկեցւոց մեծատուն եւ բարեկեցիկ հարեալ էր ի սէր հանդիսական խաղալեաց. թատրն առաւել մեծարոյ էր քան զեկեղեցի եւ արուեստագէտ այր քան զայր երախտաւոր ազգութեան եւ եկեղեցւոյ։ Դէպ եղեւ կառավարի ումեք կառաց որ առհասարակ սիրելի էր նոցա, վասն անարժան իրիք գործոյ լինել բանտարգել հրամանաւ Բութերիկեայ հրամանատարի լեգէոնացն (390)։ Յարեաւ ժողովուրդն եւ խնդրէր թողուլ ազատ զկառավարն. իբրեւ չառ յանձն Բութերիկ, եւ խուժանն մեծաւ մոլեգնութեամբ եւ սպան զնա՝ հանդերձ այլովք եւս սպայիւք երեւելեօք։ Ահա համբաւ հրացն ի Մեդիոլանոն առ Թէոդոս, բարկացաւ կայսրն անհնարին ցասմամբ ըստ սաստիկ բարուցն, այլ Ամբրոսիոս եւ այլ եւս եպիսկոպոսունք դարձուցին զնա ի հեզութիւն եւ խոստացաւ նոցա առնել հաշտափորձ քըննութեան եւ ապա արկանել պատիժս ի վերայ։ Այլ մտերիմ նորա եւ անձնեայցն Ռուփինոս գրգռեաց միւսանգամ զկայսրն, եւ նա առաքէր անդէն դեսպան՝ տալ հրաման կոտորածի Թեսաղոնիկեցւոցն. Թէպէտ եւ յետ սակաւ ինչ միոյ եկն նա ի մտաց եւ առաքեաց զհետ՝ առնուլ յետս զհրամանն, այլ անօգուտ։ Զանուք վաղ հրաւիրեալ էին գործակալք կայսերն զժողովուրդն խաղալեաց ի կրկէս անդր, պատճառանօք՝ եթէ երեւելի կառավարորդին խաղք իցեն լինելոց, եւ անդէն կոտորեցան ի դենուարայն անսուր 7000 այր առանց ընտրութեան բնակաց կամ օտարաց, արդարոց կամ յանցաւորաց։ Ընդ գոյժ հրացն զժղմեցան ի Մեդիոլանոն. մանաւանդ լի եղեւ տրտմութեամբ Ամբրոսիոս. գրեաց նա վաղվաղակի թուղթ առ կայսր իբրեւ պատուաւոր հայրապետ, իբրեւ եպիսկոպոս համարձակախօս եւ իբրեւ բարեկամ սիրելի. «Դէթէ աստ ինձ, ասէ, համարձակութիւն, ով Օգոստոս, ասեմ. Թէ ունիս դու նախանձ վասն հաւատոց, զայն չկարեմ ժխտել. Թէ ունիս զերկեւղ Աստուծոյ, առնում յանձն. բայց է քո բնութիւն սաստիկ՝ զոր եթէ ոք ցածուցանէ՝ դիւրաւ փոխի յարգահատութիւն, եթէ ոք գրգռէ, այնպէս բորբոքի մինչեւ եւ քեզ իսկ չկարելոյ սանձել զնա։ Եթէ չիք ոք որ չափ նմին դնէ՝ երանի թէ չիցէ եւ ոք որ վառեսցէ զնա. բաւ համարիմ քեզ թողուլ զքեզ։ Թուի, ասէ, թէ իշխանութիւն քո խափան լինի խնամոյն զմեղս քո եւ նսեմացուցանէ զմիտս քո. խոնարհեցո զհոյեցուածս քո ի հող երկրի ի մէջ հաւատարմոց, ուստի ելեալ եմք եւ յոր դառնալոցն եմք. մի շլացուսցէ զքեզ փայլուն ծիրանայոյդ չտեսանել զտկարութիւն մարմնոյն՝ զոր նոյն ծածկէ։ Աղօթ-

աչօք կամիս դու զտաճարն Տեառն տեսանել. զիա՞րդ կոխեցես ոտիւքդ զնուիրական տեղին, որպէս զարիւնաթաթախ ձեռօք տարածանիցես ընդունել զնուիրական մարմին Տեառն": Ապա հրամայէր զնա հաշտել ընդ Աստուծոյ՝ կրելով ապաշխարանս հրապարակաւ: Յարուցեալ գայր ընդ նոյն աւուրս Թագաւորն յեկեղեցի. եւ ընդառաջ նորա Ամբրոսիոս արգելուլ զնա ի մտից: Իբրեւ արդարացուցանելն կամեցաւ զանձն Թագաւորն ասելով թէ եւ Դաւիթ մեղաւ. ետ պատասխանի եպիսկոպոսապետն թէ "Որպէս նմանեցեր Դաւթի մեղօք քովք, նոյնպէս լեր նմին նմանող՝ ապաշխարութեամբ": Ի միտ առ Թագաւորն զյանցանացն ծանրութիւն եւ զհարկ ապաշխարութեանն. խոնարհութեամբ արկ զանձն ընդ պատժովք եկեղեցւոյ (Ապր.): Կաց մնաց նա ամիսս 8՝ արգելեալ ի մտանելոյ յեկեղեցի՝ յորում մատուցանէր աղօթս վասն նորա ժողովուրդն: Յառաւօտու տօնի ծննդեանն Քրիստոսի արտասուէր կայսր՝ թէ այսպէս զրկեալ կայ ի միաբանն օրհնելոյ զԱստուած ի տան նորա. եւ նա թելադրութեամբ Ռուփինեայ երթալ միւսանգամ յեկեղեցի յանձն առեալ զնախատինսն դառնալոյ յետս կորակոր ընդ քաղաքամէջն՝ եթէ չտայցէ ներումն Ամբրոսիոս: Յանձն առ եպիսկոպոսապետն կարճել զսահմանեալ ժամանակ ապաշխարութեանն, այլ պահանջէր զի հանցէ կայսր օրէնս թէ այսուհետեւ ամենայն վճիռք սպանութեան եւ առնլոյ ընչից յայլքունիս՝ յետ 30 աւուրց ածցին ի կատարումն, յորժամ հաստատեսցին երկրորդ անգամ: Յանձն առ, արկ անդէն իսկ եւ իսկ ձեռնագիր օրինացս եւ յետ այնորիկ ընկալաւ արձակումն հրապարակաւ: Մտեալ յեկեղեցին եւ անկեալ ի վերայ երեսաց իւրոց բարբառէր զսաղմոսերգուին թէ "Մերձեցաւ անձն իմ ի հող, Տէր, կեցո զիս": Ոչինչ ամենեւին նուաստութիւն եղեւ այն պատուոյ եւ մեծարանաց նորա եւ կայսերական իշխանութեանն, նա մանաւանդ սիրելի եւ պատուական եղեւ նա նմին՝ ժողովրդեան իւրում, եւ այնպէս գտաւ իսկ արժանաւոր Մեծն անուան, զի արար բուռն անձին իւրում եւ արկ զանձն ընդ հնազանդութեամբ եկեղեցւոյ:

Յառաջագոյն, ասէ Աւրելիոս Վիկտոր կրսերն (այլ հեթանոս), էր իշխան ընտիր, յետ յաղթութեանն ի վերայ Մաքսիմեայ անցոյց զանցոյց զիւրով իսկ անձամբ՝ իմաստունն առաջնորդութեամբ, հոգաբարձութեամբ հասարակացն պիտոյից եւ սրտին ազնուականութեամբ: Առատացոյց Թէոդոս զբաշխումն ցորենոյ ի Կոստանդինուպօլիս՝ յաւելեալ ի չափն Կոստանդիանու՝ 120 գրիւ (393), կործանեաց զօրութիւնն թողլոյ կտակագրաց ժառանգութիւն կայսեր կամ ազգականաց կայսերն՝ վնասու բուն ժառանգաւորացն (389), արգել դատաւորաց երթալ ի թատր. կամ ի կրկէս, զի մի զնովիմբ դեգերեալ ան-

Digitized by Google

փոյթ կարեւոր պաշտամանն առնիցեն (386)։ Հրաման ետ չածել կանայս քնարահարս կամ երգեցիկս կամ կաքաւիչս ի ժամ ընթրեաց (385) եւ արգելաւ կանանց խաղալկաց ի թատերս կրել մարգարիտ կամ այլ ինչ զարդ մեծագին (393)։ Վասն հակառակ կայսերական իշխանութեանն յանցուցելոց՝ ետ օրէնս ինչ զարմանալիս՝ այսպէս. "Եթէ ժպրհութեամբ ոք չարակամ զանուն կայսերացն աղարտէ, եւ կամ զհրապարակական ինչ դիպաց խօսիցի ստգտանելով զառաջնորդութիւն տէրութեանն, չէ պարտ զայնպիսին ի դատ ձգել կամ վնասել ինչ։ Եթէ ի թեթեւամտութենէ իցէ, արհամարհութեան արժանի է. եթէ ի շամշութենէ, արգահատել մանաւանդ պարտ է յայսպիսեացն վերայ. ապա՝ եթէ ի չար կամաց, ներել պարտ է,,։ Սակայն յաւելու իսկ եւ իսկ. "Յառաջ քան զամենայն դատաստան, ասէ, մեզ պարտ է ազդ առնել վասն այնպիսւոյն, զի մեք մեզէն իսկ ընտրեսցուք՝ թէ մարթի անպատիժ զիրսն թողուլ, կամ թէ հարկ է առնել հարցափորձ քննութեան,, (393)։

## 93

Վաղենտիանոս Բ. չվայելէր ընդ երկար ի տէրութեանն՝ զոր դարձոյց նմա Թէոդոս։ Զօրավար զօրաց նորա Արբոգաստ՝ որ համակ կռուէր ընդ Փրանկաց, ճոխանալ սկսաւ ի վերայ կայսերն։ Մինչ դեռ հնարիւք զերծանել ի նմանէ կամէր՝ սպանաւ նա ի Վիէննա Գաղիացւոց. լուաւ զբօթ մահուն Ամբրոսիոս յորժամ անցանէր ընդ Ալպս՝ կոչեցեալ ի կայսերէ՝ գալ տալ նմա կնիք։ Զոսիմոս յԱրբոգաստայ ասէ սպանեալ, Օգոստինոս տարակուսէ. այն առանց տարակուսանաց է՝ թէ բռնաբար մեռաւ (21 ամսոյ, 15 Մայ. 392)։

Թաղեցաւ առ եղբօր իւրում ի Միղիոլանոն. խօսեցաւ ճառ յուղարկաւորութեան Ամբրոսիոս եւ մխիթարեաց զքորսն Վաղենտիանեայ զՅուստա եւ զԳրատա՝ որք ի հոգս էին վասն փրկութեան եղբօրն իւրեանց՝ զի անկնիք մեռաւ. ցանկութիւն մկրտութեանն, ասէ, լիցի ի տեղի մկրտութեանն։

Յայտնագոյն ի մէջ եկին լաւութիւնք Վաղենտիանեայ Բ. յորժամ զերծաւ նա ի մօրն ճոխութենէ. զնախանձաւորութիւնն զոր վասն մոլար վարդապետութեան ծծեալ ունէր ի մօրէն՝ զայն դարձոյց յուղղափառ վարդապետութիւն։ Օրինակն Թէոդոսի ուսոյց նմա թէ որպէս պարտ իցէ կայսր լինել, օրինակ եւ վարդապետութիւնն Ամբրոսիոսի ուսոյց թէ որպէս պարտ իցէ քրիստոնեայ լինել։ Նոյնէն ի մանուկ հասակին ետ նա օրինակ ազնուական առ յապա եկելոցն աթոռակալաց։ Սիրէր անչափ զկառամարտիկ խաղսն, այլ հրաժարեցաւ յայնմանէ. տալաժամ տայր դնել կերա-

24 *

Digitized by Google

կուր, ոչ միայն ի բաց եկաց ի սովորութենէն՝ այլ եւ պահոց եւս պատկառ կայր։ Նա կոտորել զգազանսն վայրենիս՝ զորս տայր բուծանել վասն գազանամարտիկն խաղուց զոր սիրէր։ Չունէր բնաւ գիւտ ինչ զգաստասիրութիւն նորա։ Ի մէջ խորհրդականաց ատբութեանն չէր նա ունկնդիր համր, այլ բերնին առաջնորդէր խորհրդեանն։

Արբոգաստ՝ զոր սիրէր իսկ զօրականն, առաւել կամէր՝ նստուցանել կայսր, քան լինել կայսր. ետ նա զթագն Եւգենիոսի ումեմն ատենադպրի Վաղենտինիանեայ, իւրում բարեկամի (392—394) որ քրիստոնեայն էր անուամբ եւ ոչ սրտիւ։ Տայր նա հրաման զոհելոյ հեթանոսացն՝ զի շահեսցի զնոսա. կանգնեցաւ պատկեր Յաղթութեանն միւսանգամ, շոգի զոհիցն եւ ամպք խնկոցն ի վեր ծառանային, եւ անտուստ առ կայսր Թէոդոս առաքէր հրեշտակութիւն՝ զի ընկալցի զնա։

Պարտք կրօնից, պատիւ եւ քաղաքականութիւն ածին զԹէոդոս՝ առնուլ միւսանգամ զէն ի ձեռն։ Յետ զոհից եւ դիւթութեանց՝ որք խոստանային Եւգենեայ յաղթութիւն, Փղաւիանոս վերակացու Իտալիոյ եւ միանգամայն քրմապետ ունէր զանցս Յուղեան Ալպից՝ կանգնելով առ անդ պատկերս Արամազդայ ոսկւովք փայլատակամբք ի ձեռին եւ կապելով իւր հմայիւք զանցսն (393)։ Կոչեաց Թէոդոս զզօրս համօրէն արեւելեան պետութեանն եւ յԱփրիկեայ եւս. եկին դաշնաւորք ի Հայոց, ի Վրաց եւ յԱրաբացւոց եւ Գութք, որոց զօրավար էին Գայինաս գութ, Աղարիկ եւ Բաւկուր իշխան վրացի. գլխաւոր զօրավարք Թէոդոսի էին Տիմասիոս եւ Ստիղիքոն՝ որում տուեալ էր կայսր կնութեան զՍերենա զդուստր եղբօր իւրոյ վախճանելոյ Ոնորեայ։ Ողջոք ել Թէոդոս ի Կոստանդնուպօլսեայ ի վախճան հոյս Մայիսի ամսոյ, անց նա ընդ անցսն Աղպից անջան պատերազմաւ՝ յորում անկաւ Փղաւիանոս։ Անկայն չէր ինչ այն մեծ. զի ոչ միայն բազմագոյն էր զօր ապստամբին, այլ եւ կիրթ եւս էր զօրականն արեւմտեան որ համակ ի պատերազմունսն էր, եւ դարձեալ դաշին յարէին ի նոսա գունդք գունդք օգնականաց վասն վայրագն մտաւորութեան, ուր Թէոդոս երթայր եւ հեռանայր ի բուն երկրէ անտի իւրմէ։ Բայց ի գնդից անտի Թէոդոսեայ փայլէր դրօշն խաչանշան, ուր ի դրօշն Եւգենեայ ծփայր պատկեր Հերակլի։ Բախեցաւ Թէոդոս առ Փրիգիդոս գետով (Վիփաւա ի Գորիցիա) ընդ բուն գնդին՝ որում առաջնորդէին Արբոգաստն եւ Եւգենիոս. խորտակեցաւ առաջին Արբոգաստայ օգնական զօրն արեւելեան առաջնորդեալ ի Գայինասայ. ժողովել ժողովեաց զփախստականսն Բաւկուր եւ բախեցաւ միւսանգամ, այլ գտաւ միւսանգամ յաղթող Արբոգաստ, անկաւ Բաւկուր եւ 10,000 ի Գոթաց ընդ նմա եւ ի Վրաց եւս բազումք։ Զօրավարք Թէոդոսի խրատ տային նմա ի նմին իսկ

Digitized by Google

գիշերի ըներեայն ի բաց գնալ, նոր զօրութիւն գումարել եւ գարնայնի ի գալ ամին միւսոյ դարձեալ ելանել ի ճակատ: Բայց ի բաց մերժէր Թէոդոս զխորհուրդ խորհրդականացն. «Չէ արժան, ասէ, խաչին առաջի Հերակղեայ պատկերին փախչել»: Այսպէս զխորհրդականսն արձակեալ՝ ինքն մեկնեցաւ ի մատուռն ինչ ի վերայ բլրի՝ կալ յաղօթս մինչ ցժամ առաւօտուն: Յանկարծ այգունն արեւին Թէոդոսեանքն հասեալ ի Թիկանց զօրաց զԱրբիտիոյ՝ զոր Արբոգաստայ առաքեալ էր պաշարել զկայսերականսն ի Թիկանց, բայց Արբիտիոյ եկեալ խառնեցաւ ի զօրսն Թէոդոսի: Իբրեւ սկսաւ պատերազմն՝ ել յանկարծ մրրիկ հակառակ արեւմտեան զօրուն՝ զփոշին յաչսն տանելով եւ արգել ընելով վազելոյ զնետսն. ուր նմին հակառակ առանէր յառաջ զօրն Թէոդոսեան եւ կռուէր ընդ Թշնամեացն կուրացելոց: Այսպէս պատմեն ժամանակակիցքն՝ Ամբրոսիոս, Ռուփինոս, Օգոստինոս. այսպէս Որոսիոս՝ որ վկայս կենդանիս ականատեսս յառաջ բերէ. այսպէս պոէտն Կղաւդիանոս այր հեթանոս ժամանակակից: Զուր ջանայր այնուհետեւ քաջալերել զզօրս իւր Արբոգաստ. մասն մի ի նոցանէ ել փախստեայ, մնացեալքն զզէնսն ի բաց ընկեցեալ խնդրէին շնորհս: Ներել ներէր նոցա Թէոդոս, բայց հրաման տայր երթալ ածել առ ինքն զԵւգենիոս՝ որ ի ժամ ճակատուն ելեալ ի բլուր մի կամէր տեսանել զյաղթութիւն իւրոցն՝ զորմէ չունէր ինչ ամենեւին կասկած: Իբրեւ ետես բռնաւորն զամենայն յիւրոց անտի զի ելանեն ի վեր առ նա, համարեալ Թէ զաւետիս յաղթութեանն բերիցեն, աղաղակէր Թէ չբերէք զԹէոդոս ձերբակալ. բայց նոցա զնա իսկ կալեալ ածին ձերբակալ առաջի Թէոդոսի: Անկաւ Եւգենիոս յոտս յաղթողին եւ յետ տալոյ Թէոդոսի զվճիռ մահու նորա, իսկ եւ իսկ սպանաւ նա յիւրոց զօրաց անտի սուսերահար (6 Սեպտ. 394): Քաջն Արբոգաստ ել ընդ իւր սուրն՝ յետ աւուրս երկուս Թափառական ի լերինս շրջելոյ:

Պսակեաց Թէոդոս գթութեամբ զյաղթութիւն իւր՝ տալով Թողութիւն Թշնամեաց իւրոց: Որդւոցն Եւգենեայ եւ Արբոգաստայ որք ի մի յեկեղեցեաց ապաստանեալ էին, ոչ միայն զկեանս շնորհեաց, այլ եւ զինչսն եւս ետ, պայման եդեալ՝ կրթել նոցա ի քրիստոնէութեան. զնոյն եւ ընդ որդիսն Փղաւիանեայ արար: Մի միայն էր Եւգենիոս՝ որ հրամանաւ Թէոդոսի սպանաւ կամ պատժեցաւ: Գրեաց Թէոդոս առ Ամբրոսիոս մատուցանել Աստուծոյ օրհնութիւն եւ գոհութիւն վասն յաջողութեանն: Քանզի մերժեալ էր Ամբրոսիոս զպարգեւսն զոր տայր Եւգենիոս եկեղեցւոյն Միլիանոյ եւ զԵւգենիոս իսկ զկոմսն մերժեալ ի հաղորդութենէ հասարակաց աղօթից, վասն այնորիկ սպառնացեալ էին նմա եւ Եւգենիոս եւ Արբոգաստ յետ դառնալոյ յաղթութեամբ ի պատերազմէն՝ առնել զեկեղեցին ասպաստան, եւ

զկղերականսն՝ զօրական։ Մնաց Ամբրոսիոս պատարագ գոհութեան հանդիսիւ՝ դնելով զթուղթ բարեպաշտին Թէոդոսի ի վերայ սեղանոյն։

Այսպէս միաւորեցաւ տէրութիւնն Հռոմայեցւոց ընդ իշխանութեամբ մեծին Թէոդոսի՝ զայս վերջին նուագ. այլ աւաղ՝ զի ոչ ընդ երկար ինչ ժամանակ։ Էր նա ի Միդիոլանոն ծնգեալ ջրգողութեամբ, սակայն եւ այնպէս խորհէր երթալ ի Կոստանդինուպոլիս. այլ յանկարծ ծանրացեալ ախտին՝ անդէն վախճանէր ի 50 ամաց հասակի ի 16 ամի թագաւորութեանն (17 Յունու. 395)։ Առաջին կին նորա բարեպաշտօնն Փղակիղղա էր վախճանեալ (385), այսպէս եւ դուստրն նորա Պուղքերիա ի նմին ամի. մեռաւ եւ երկրորդ կին՝ Գաղղա յերկունս (394)։ Էր լեալ որդւոց նորա՝ Արկադեայ վաղ աւգոստոս՝ վեցամենի (19 Յունու. 383) եւ Ոնորեայ՝ ինամենի (20 Նոյ. 393)։ Բաժանեաց նոցա Թէոդոս զհամօրէն տէրութիւնն կտակաւ՝ տուեալ Արկադեայ զարեւելս եւ Ոնորեայ զարեւմուտս։ Ամբրոսիոս՝ որում յանձն արարեալ էր հայրն զՈնորիոս, խօսեցաւ ճառ յուղարկաւորութեան առաջի նորա եւ զօրացն։ Ածաւ մարմին Թէոդոսի զմռեալ ի Կոստանդինուպոլիս դնել ի կճեայ գերեզմանի առընթեր մարմնոյն Կոստանդիանոսի։

Ամենայն մատենագիրք թէպէտ ի քրիստոնէից թէպէտ ի հեթանոսաց միաբան են ի գովութիւն Թէոդոսի, բայց միայն ի Զոսիմեայ՝ ում ատելի էն առհասարակ քրիստոնեայք։ Անըստգիւտ էր նա յառտնին կեանսն՝ իբրեւ որդի, իբրեւ հայր, իբրեւ այր։ Հպատակ հաւատարիմ՝ իբրեւ զհայր իւր, մեծ քան զամենայն զօրավարս ժամանակին իւրոյ՝ իբրեւ զհայր իւր։ Չէր փառասէր, պատիւք զնա խնդրէին. փառք ուղեկից էին նորա ի տան, ի պատերազմի եւ յառաջնորդութեան։ Անարատ էր բարուք, առատ՝ առանց վատնութեան, գիտէր յարգել զվաստակս վաստակաւորացն, նա եւ զհեթանոսացն։ Անկեղծաւոր, ազնուական եւ լի քաղցրութեամբ։ Չկասկածէր նա երբեք, որով յիրաւի իսկ անկաւ ընդ ստգտանօք՝ զի խալառ վստահ էր ի Ռուփինոս եւ ի Ստիղիքոն։ Ճշմարտութիւն էր ի շրթունս նորա, մեծանձնութիւն եւ սէր ի սրտի նորա։ Էր վաղացասումն, յառնէր ի նմա յանկարծ մրրիկ ահագին սրտմտմամբք եւ փայլատակմամբք, այլ այն փութանակի փոխէր յանձրեւ մեղմական։ Էր նա աստուածապաշտ ճշմարիտ եւ խոնարհ զուարթ։

Առ Թէոդոսիւ Ա. գրեթէ մերձ ի ջնջումն եղեւ հեթանոսութիւն յարեւելս։ Զառաջինն թոյլ ետ նուիրման ըմպելեաց [1] եւ հրամայեաց իսկ մեհեանս ինչ բանալ, այլ իսկ եւ իսկ յետոյ արգել զդառնալն ի քրիստոնէութենէ ի հեթանոսութիւն, նոյն-

1 Libatio.

պէս զզոհսն՝ յորս յընդերաց անասնոցն զհանդերձեալսն կամէին գուշակել։ Զուր խօսէր Լիբանիոս պատասխանատուութիւն ի պաշտպանութիւն մեհենից, քանզի հրաման եւս ել որ սրբելոյր ամենեւին չերթալ ի մեհեանս (392)։ Նախ իբր համարձակութեամբ իսկ կործանէին ի քրիստոնէից մեհեանքն յԱպամէա Ասորւոց, ի Պետրիս եւ յԱրէթուսա Արաբացւոց. մեհեանքն ի Գազա, ի Հելիոպօլիս Փիւնիկեցւոց եւ ի Դամասկոս փոխեցան յեկեղեցիս։ Մինչ հեթանոսքն աղեքսանդրացիք եղեն դիմադարձ յոյժ։ Քանզի իբրեւ փոխեաց Թէոփիլոս հայրապետ Աղեքսանդրիոյ յաջորդ Տիմոթեայ (385) զմեհեանն Դիոնիսեայ յեկեղեցի, եւ հան նա ի լոյս զպատկերս լկտիս եւ կերպարանս իրաց անառակաց՝ զոր ի գետնափորս մեհենին ծածկեալ թաքուցեալ էր հեթանոսացն՝ պատկառեալ ի քրիստոնէիցն, զկծեցոյց բարկացոյց ամօթ զհեթանոսսն, զրգռեցաւ պատերազմ քաղաքացեաց յԱղեքսանդրիա։ Ապաստանեցան հեթանոսք ի Սերապիոն (մեհեան Սերապեայ արեգակնային դից Եգիպտացւոց), որ կայր առաջի քաղաքին ի բլրի վերայ, երեւելի եւ հոյակապ քան զամենայն մեհեանս յետ կապիտողեան մեհենին. էր անդ սկայագործ պատկեր դիցն Սերապեայ՝ որոյ մի ձեռն զմի որմն եւ միւս ձեռնն զմիւս որմն տաճարին շօշափէր. այսպէս կարծէին վասն պատկերին՝ թէ որ հուպն լինի մնասել նմա, անկանին երկինք ի վերայ նորա եւ երկիր կլանէ զնա։ Մինչ դեռ օր ըստ օրէ հեղոյր արիւն յերկուց կողմանց եւ զգերելոցն քրիստոնէից՝ որ չառնուին յանձն մատուցանել զոհս Սերապեայ, խորտակեալ զոսկերսն ընկենոյին ի կոյանոցն, մինչեն հասանէր հրովարտակ կայսերն որ հրամայէր հարթյատակ առնել զՍերապիոն։ Ի բաց ելին հեթանոսք ի մեհենէն, համարձակեցաւ մի ոմն ի զինուորացն քրիստոնէից ելանել ի վեր եւ հարկանել մրճով զմի յայտից Սերապեայ. ճիչ բարձին հեթանոսք եւ քրիստոնեայքն թերահաւատք. բայց սակայն ոչ աստուածն այն բաց զբերան իւր ի խօսել եւ ոչ երկիր՝ ի կլանել. միւս եւս հարուած մրճոյն փշրեաց զգոտոտակեր փայտեղէն ծունգ աստուածոյն մեծի. արկին զկոտորսն ի խարոյկ, այրեցան իբրեւ զդդմն ինչ փայտ. կրկնեցան հարուածքն եւ խորտակեցաւ ամենայն պատկերն. թիկունք նորա այրեցան յԱմփիթէատրոնի (389)։ Ի տեղւոջն ուր Սերապիոնն էր՝ կանգնեցաւ եկեղեցի Յովհաննու Մկրտչի։ Յամենայն կռոցն պատկերաց՝ զմին միայն եթող Թէոփիլոս՝ կալ, զԱպիկ աստուածն։ Բուրմ Նորա Ամմոնիոս որ չոգաւ այնուհետեւ ի Կոստանդնուպօլիս, աշխարէր թէ այն պատկեր միայն մնաց ընդ հենգն հեթանոսութեան։

Նա եւ յարեւմուտս՝ յորժամ յետ պարտութեանն Եւգենեայ եւ Արբոգաստայ՝ հատեալ զվերջին յոյս հեթանոսացն արեւմտեայց՝ եմուտ Թէոդոս ի Հռոմ, խօսեցաւ ի ժողովս ծերա-

Digitized by Google

*կուռքին սաստիկ ինչ ճառ՝ յորդորել զհեթանոսսն ի բաց կալ ի կռոցն պաշտամանէ եւ դառնալ ի կրօնս յորում միայն գոյ մեղաց թողութիւն։*

*Արկադիոս նորին որդի եւ Թէոդոս Բ. թոռն* (395—450) *տային ճշգիւ պահել յարեւելս զօրէնսն Թէոդոսի վասն հեթանոսութեան. Արկադ. սպառնայր պատիժ մահու պաշտօնէից՝ որ յուլագոյնք ի կատարումն օրինացն լինիցին. վանականք նախանձախնդիրք քանդեցին մեհեանս բազումս՝ զվերջին նշխարս կռապաշտութեան. փիլիսոփայքն հեթանոսք չկարէին համարձակ խօսել հակառակ քրիստոնէութեան. յայն սակս համարձակէր իմն ասել Թէոդոս Բ. ի միում յօրինացն՝ աւելադրանութեամբ իմն թէ չմնացին այսուհետեւ հեթանոսք յարեւելս* (424)։

*Դժուարագոյն իմն էր ջնջումն հեթանոսութեան յարեւմուտս քան յարեւելս. եւ դարձեալ՝ Անորիոս եւ Վաղենտինիանոս Գ.* (395—455) *մեղմագոյնս իմն վարեցան։ Զի թէպէտ եւ ետ Անորիոս հրաման քանդել զմեհեանսն մնացեալս ի գեղս, բայց ի քաղաքս հրաման տայր պահել զնոսա անարատ հանդերձ մեծագին հանդերձանօքն՝ իբրեւ գործս արուեստագործս. զորս յետոյ եւ Գրիգոր Մեծն խրատէր պահել վասն արուեստիցն։ Վաղենտինիանոս՝ միայն օրէնս հակառակ կռապաշտութեան տայր, բայց զքանդումն մեհենիցն արգել. քանզի պատճառս վշտաց ազգացն արշաւանաց՝ զարհամարհումն աստուածոցն հռոմայ կարծէր ժողովրդն. յայն սակս ասա անդ, մանաւանդ ի Սարդինիա եւ ի Կորսիկա կային տակաւին հետք հեթանոսութեան մինչեւ ցեւթներորդ դար, թէպէտ եւ Լեւոն եւ Անթեմիոս կայսերք պատժէին զպաշտօն հեթանոսութեան զրաւելով զինչս յաղքունիս, կորստեամբ պաշտաման եւ պատուոյ* (467—472), *Յուստինիանոս Ա.* (527—565) *արգել զնոյն պատժով մահու, բարձ զդպրոց նոր պղատոնական փիլիսոփայիցն Աթէնս եւ արանց նշանաւորաց ի հեթանոսաց տայր ուսուցանել զքրիստոնէութիւն։*

*Չեւ ինչ Թէոդոս օրէնս հակառակ Հրէից, նա աւանիկ եդ պատիժս որոց արգելուցուն զՀրեայսն յերթալոյ ի ժողովրդանոցս եւ կամ մտեալ ի ներքս շփոթիցեն զպաշտօն նոցա* (393)։ *Սակայն արգել նոցա զբազմակնութիւնն* (393)։

Digitized by Google

Արկադիոս եւ Ոնորիոս, Թէոդոս Բ. Վաղենտինիանոս Գ. (395—450) — Ոսկեբերան, Եպիփան, Յերոնիմոս, Թէոփիլոս — առաջին որոգինեան գժտութիւն — Օգոստինոս, Կիւրեղ Աղեքսանդրացի — Պելագեան եւ Նեստորական աղանդ — Երրորդ ժողով տիեզերական (431)։

## 94

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ հռոմէական պետութեանն անց գնաց ընդ Թէոդոսի մեծի։ Ի բաժանել սորա զայն տէրութիւն՝ երկոցունց որդւոցն, որպէս առաջին աթոռակալաց նորա՝ նոյնպէս եւ ոչ նորա այն կայր ի մտի՝ բառնալ նովին ամենեւին զմիութիւն տէրութեանն ի միջոյ։ Այլ զոր չկամէրն՝ արդեամբք այն կատարեցաւ. քանզի չմիաւորեցաւ այնուհետեւ երբեք պետութիւնն ընդ միով գլխով։ Նա եւ ոչ բաժանմանն պատճառ, այս ինքն՝ քաջ պաշտպանութիւն սահմանաց պետութեանն, եղ ի գլուխ։ Նուաճել եւս համարձակագոյնս այնուհետեւ յորդեաց հեղեղ ազգացն արշաւանաց՝ որք յետ իբրեւ 80 ամաց արարին վախճան տէրութեանն Հռոմայեցւոց յարեւմուտս։

Արկադիոս (395—408) ութեւտասնամեայ՝ առ զսահմանս վերակացութեանն արեւելից եւ արեւելեանն Իլիւրիկեայ, այս ինքն՝ զարեւելեան տէրութիւնն Հռոմայեցւոց, յոր յաւելաւ յետոյ եւ արեւմտեանն Իլիւրիկէ, այս ինքն՝ Պաննոնիա, Դալմատիա եւ Նորիկոն ի մասնէ արեւելեան տէրութեանն։ Ոնորիոս (395—423) մետասանամեայ առ զսահմանս վերակացութեան Իտալիայ եւ Գաղիայ։

Երկոքին իսկ չեկին երբեք ի չափ եւ յասութիւն մտաց, այլ տիրէին նոցա մի ըստ միոջէ պաշտօնեայք նոցա եւ սիրելիք։ Արկադիոս էր ընդ խնամակալութեամբ Ռուփինեայ գաղղիացւոյ անձնապահապետի իւրոյ, սպարապետի եւ սենեկապանի հօրն, եւ Ոնորիոս ընդ խնամակալութեամբ Ստիղիքոնի զօրավարի՝ որ էր Վանդալ յազգէ եւ խնամութեամբ կապեալ ընդ կայսերական տանն։

Մեղմեխն եւ խորամանկն Ռուփինոս՝ որ ատելի իսկ ամենեցուն էր վասն ագահութեանն եւ անիրաւութեան, երկնչէր իմն հանապազ ի Ստիղիքոնէ, քանզի մեծաւ զօրութեամբ եւ իմաստութեամբ առաջնորդէր սա արեւմտեան տէրութեանն, բայց անձն եդեալ էր միանգամայն լինել խնամակալ եւ արեւելեան մասին տէրութեանն։ Ռուփինոս՝ իբրեւ արգել իմն կամէր լինել խորհրդոց նորա եւ ցուցանել զանձն առաջի Արկադեայ կարեւոր ի գործ տէրութեանն՝ առաւել եւս գրգռէր զազգն զԳոթս եւ զդաշնաւորս նոցա, որ վաղն իսկ խլրտէին։

Digitized by Google

Գութքն արեւմտեայք որք ի սահմանս արեւելեան տէրութեանն գաղթեալ նստեալ էին բազմամբոխ եւ չընդունէին կրել զսակ հարկին ըստ դաշանցն եղելոց ընդ Թէոդոսի, առին վաղվաղակի ի միտ զտկարութիւն կայսերացն երկոցունց: Զօրավար նոցա Աղարիկոս, Բաղթն (այս ինքն՝ Քաջն կամ Յանդուգն) որ վաղ իսկ ցասմամբ էր՝ զի չտուաւ նմա պատիւ սպարապետութեան ի կայսերէ, կացուցաւ ի նոցանէ թագաւոր. յարեաւ ազգն առ հասարակ յապստամբութիւն եւ ստուարացան եւ այլովք եւս եկօք որ ի հիւսիսային ափանց Դանուբայ եկին յարեցան ի նոսա: Խաղայր այնուհետեւ յառաջ Աղարիկ մեծաւ ասպատակաւ (395), անցեալ ընդ Միւսիա եւ ընդ Թրակիա որ վաղ իսկ աւեր եւ անապատ լեալ էին, զանց առնէր զԿոստանդինուպօլսեաւ՝ հասանել ընդ Մակեդոնիա եւ ընդ Թեսաղիա ի Յունաց աշխարհ. Աթէնք, Արգոս, Լակեդմոն, Մեգարա եւ Կորընթոս առան. աւերէին գերփէին զամենայն Գութք. մատնեցան ամենայն նահանգք ի ձեռս նոցա առանց պատերազմի: Թէպէտ եւ ճեպեաց Ստիղիքոն յօգնականութիւն ի կոչն Արկադեայ եւ հասեալ փոքր նաւատորմաւ ի Պողեպոնեսոս՝ արկ իսկ ճարտարութեամբ ի նեղ մեծ զԳութս ի լերինս Արկադիա նահանգի Պեղոպոնեսացւոց, մինչեւ կամ մեռանել անդէն եւ կամ տալ ձեռս. այլ անդուստ նախանձոտն Ռուփինոս գաղտ անկանէր ի պատգամս ընդ Աղարիկեայ, եւ յայն վայր զիրսն ածէր՝ զի առաքեցաւ հրաման առ Ստիղիքոն ի բաց ելանել ի սահմանաց արեւելեան տէրութեանն, եւ Աղարիկեայ տուաւ թոյլ՝ երթալ ազատօրէն ի բաց: Դարձաւ Աղարիկ նախ յԷպիրոս (396), ապա զետեղ առեալ նստաւ յարեւելեանն Իլիւրիկէ:

Տակաւին չէր առաքեալ առ Արկադ՝ մասն զօրուն սահմանեալն ի Թէոդոսէ վասն արեւելեան պետութեան: Գայինաս՝ որ մտերմութեամբ էր ընդ Ստիղիքոնի նա տարաւ զայն զօր հանդերձ կիսով մեծագին իրաց կայսերական տանն ի Կոստանդինուպօլիս: Ել Արկադ ըստ սովորութեան ընդ առաջ զօրուն՝ հանդերձ Ռուփինեաւ. ետ նշան Գայինաս եւ անդէն սպանաւ Ռուփինոս ի զօրաց անտի սուսերահար յանդիման կայսերն:

Եթէ արդարեւ խրատու Ստիղիքոնի իրքն եղեն, չչահեցաւ ինչ այնու Ստիղիքոն: Քանզի դշխոյն Եւդոքսիա կին Արկադեայ հան փոխանակ Ռուփինեայ ի պատիւ սենեկապետութեանն զԵւտրոպիոս հայ յազգէ որ վատթարագոյն քան զՌուփինոս էր եւ ըստ ոմանց՝ բուն պատճառ սպանմանն: Իսկ Գայինաս եկաց սպարապետ արեւելեան պետութեանն:

Համարեալ իմն էր այնուհետեւ Ստիղիքոն գլխաւոր թշնամի արեւելեան պետութեանն: Տայր Եւտրոպիոս յայտ առնել զնա թշնամի պետութեանն, յետ սակաւ ինչ միոյ հանէր հրա-

Digitized by Google

վարտակ կայսերական՝ կարգել զԱղարիկ սպարապետ կամ վերա-կացու արեւելեան Իլիւրիկեայ եւ ապա տուան իսկ նմա այն սահ-մանք օրինօք (398)։ Իսկ Աղարիկոս վարեալ իշխանութեամբ պա-տուոյն որ նմայն տուաւ, վառեաց զԳութս ի զէն եւ ի զարդ ի զինու տանց Հռոմայեցւոց, խօսէր պատգամաւորութեամբ ընդ երկոսին եւս պետութիւնսն, այլ յետոյ ուրեմն հակեալ ի կողմն Եւտրոպեայ՝ եւ յարձակել անկանել ի վերայ արեւմտեան սահ-մանաց։ Մինչ դեռ Ստիղիկոն զպատերազմաւ ուրեմն էր ի Գա-ղիա ընդ Փրանկաց եւ ընդ այլոց Գերմանաց՝ անդուստ Աղարիկ անցեալ ընդ Պաննոնիա, Նորիկոն եւ Հռետիա՝ եմուտ ընդ Յու-լեան Ալպեան լեռնաղիս. անդ հեղան զեղան սփռեցան Գոթք ընդ դաշտավայրս Պադոս գետոյ եւ ոչ ոք էր որ դառնայր ընդ-դէմ։ Ինքնին իսկ Ոնորիոս թողեալ զանպարիսպն Մեդիոլանոն՝ սրտաբեկ վհատեալ ամրանայր ի Ռաւեննա՝ որ այնուհետեւ էր նիստ կայսերացն Հռոմայեցւոց արեւմտեայց (402)։ Ապա ուրեմն հնարէր կազմէր Ստիղիկոն բանակ, եւ առ Պողղենտիաւ (Փոլլէն-ցա՝ ի Փիէմոնթ) անկանէր ի վերայ Գոթաց, եւ յետ բազում արեան եւ կոտորածի զրաւէր ունէր զճակատուն տեղի, եւ թա-փէր յինքն զաւար նոցա եւ զկապուտ եւ ազատէր զգերուոյն բազ-մութիւն (403)։ Թէպէտ եւ նուաղեալ էր այնուհետեւ զօրն Ստիղիկոնի եւ չիշխէր տալ միւսանգամ ճակատ, զի արգելցէ զթագաւորն Գոթաց՝ որ դիմել իմն ի վերայ Հռոմայ կամէր, սակայն խորագիտութեամբքն եւ պատգամաւորութեամբք եւ խոստմամբք յայն իմն ած՝ զի մեկնեցաւ գնաց Աղարիկ այսրէն ի Իլիւրիկէ։

Բայց իսկ եւ իսկ այլ իմն ամբոխ գերմանական ցեղից իբրեւ 200,000 (°) արանց պատերազմողաց, կանամբք եւ մանկտւովք թե-թեւս ի ծովեզերաց Պաղտիկ ծովուն անցեալ ընդ Դանուբ, զե-ղան յայսկոյս Ալպեաց առաջնորդութեամբ վայրենաբարոյն Ռա-դագայիսայ առն հեթանոսի, եւ աւերեալ զգեղեցիկ գեղեցիկ քաղաքս հովտին Պադոսի՝ ընդ Էտրուրիա դիմէին ի վերայ Հռո-մայ։ Դողային քրիստոնեայք, ցնծային հեթանոսք, ակն կալեալ թէ Ռադագայիս նորոգէ զպաշտօն կռոցն (405)։ Ստիղիկոն՝ որ յոյժ տկարագոյն էր քան զնա, արկ զնոսա ի նեղ առ Փլորեն-տեաւ, փակեաց զնոսա ի քարուտս Փեսուղեաց յԱպեննինեան լե-րինսն եւ տկարացոյց առաւել սովու քան մարտիւ, մինչեւ մասն մի նոցա հազիւ պրծաւ, այլքն ի բուռն անկան եւ գրեցան ի գունդն Ստիղիկոնի. ըմբռնեցաւ Ռադագայիս եւ կառափնա-տեցաւ (405)։

Այն իմն ըստ բախտի դիպաւ՝ զի ի ժամանակին յայնմիկ կայր Աղարիկոս հանդարտիկ ի Իլիւրիկէ. քանզի Ստիղիկոն խառնէր ընդ նմա բարեկամութիւն, զի նորա օգնականութեամբ զարեւմտեան

Գլխովին հանգէ յարեւելեան տէրութենէ։ Ալարիկ խնդրէր ար-ծաթ բազում ի վարձս եւ Ստիլիքոն հաւանեցուց զկայսր՝ զի տա-ցի այն նմա։ Յայնժամ գտին պատճառս թշնամիք Ստիլիքոնեայ, որոց գլուխ Ողիմպիոս էր, որ եւ զպատիւ նորա կամէր ընկալնուլ․ ամբաստանեցաւ Ստիլիքոն՝ թէ թշնամի է հայրենեաց եւ թէ թագաւորութեան ակն եդեալ է․ նախ բարեկամք նորա, ապա անձնապահք նորա հոնք յազգէ՝ կոտորեցան․ Ստիլիքոն ապաս-տան եղեւ յեկեղեցի ինչ, այլ ի զուր․ զի գլխատեցաւ առանց լսելոյ։ Նորին եւս որդի Եւքերիոս եւ այլք բազումք նոյնպէս գլխատեցան (408)։

Յետոյ Ալարիկ ընդ գործ Ողիմպիոսի՝ որ անարգել տիրէր յայնժամ, եւ այնու գոնեայ արժանի գովութեան էր զի պաշտ-պանէր ուղղափառ եկեղեցւոյ․ սկսաւ Ալարիկոս խաղալ միւսան-գամ յԻտալիա, 30,000 զօրաւ՝ առնուլ զվրէժ Ստիլիքոնի․ եկաւ ընդ կիրճս Ալպից, անց ընդ Պադոս, զանց առնէր զամուրսն Ռա-ւեննա եւ աւերելով եւ քանդելով խաղայր յարեւմուտս կոյս եւ հասեալ կայր առաջի Հռոմայ։

Երբ 600 անցեալ էին յորմէ հետէ չէր երեւեալ թշնամի առաջի պարսպաց "Յաւիտենական քաղաքին", եւ 800 ամք՝ յորմէ հետէ չէր մտեալ ի նա օտար թշնամի։ Լի եղեն ահիւ բնա-կիչքն, որոց թիւ համարոյ էր իբրեւ 1,200,000։ փոխանակ դի-մակալ թշնամւոյն լինելոյ՝ ամբաստան լեալ զՍերենայ զկնոջէն Ստիլիքոնեայ, որպէս թէ ի բանի իցէ նա ընդ Գոթաց, սպա-նին։ Իսկ Գոթք առաւել եւս զքաղաքն պնդեալ նեղէին։ Խօ-սէին պատգամաւորութեամբ ընդ Ալարիկեայ, սպառնացեալ ցու-ցանէին նմա զբազմութիւն բազմամբոխ ժողովրդեանն։ Ծիծաղէր Ալարիկոս "Որչափ խիտ առ խիտ է, ասէ, խոտ, նոյնչափ դիւրա-հնձի"։ Պահանջէր նա զգանձս․ իբրեւ հարցին ցնա հրեշտակքն թէ մեզ զի՞նչ թողուցուս․ Զոգիսն, ասէ։ Ապա յանձն առին տալ զինս Հռոմայեցիք 5000 լիտր ոսկւոյ եւ 30,000 լիտր արծա-թոյ եւ այլս եւս ինչ մեծագինս, զի մեկնեսցին Գոթք ի բաց։

Յետրուրիա սպասէր Ալարիկոս զի լցեն զպայմանսն․ բայց Ոնորիոս չառնոյր յանձն։ Այլ իբրեւ Ողիմպիոս ընկեցաւ եւ անց փոխանակ նորա Յովիոս, առնէր սա միւսանգամ պատգամաւո-րութիւն ընդ Ալարիկեայ․ սակայն կայսրն եւ Յովիոս սակաւին յամառէին։ Երկրորդ անգամ խաղաց եկն թագաւորն Գոթաց առաջի Հռոմայ, պաշարեաց զՕստիա, եւ ետ բանալ բռնարար զդրունսն Հռոմայ (409)։

Ընտրեաց ծերակոյտն ըստ խնդրոյն Ալարիկեայ զԱտտալոս զվերակացու քաղաքին ի կայսր՝ հակառակ կայսեր։ Ոնորիոս որ փակեալ կայր ի Ռաւեննա, թուէր այնուհետեւ անհետ լեալ․ այլ յանկարծ յաջողութիւն իմն դիպեցաւ՝ զի թող եկն Ալարիկ

զԱտաւղփոս գժտեալ ընդ նմա, եւ զնշանակս կայսերական պատուոյն առաքեաց միւսանգամ ցՕնորիոս. բայց եւ այնպէս չկարաց ածել զնա ի դաշինս խաղաղութեան։ Նչին երրորդ անգամ Ալարիկ առաջի Հռոմայ. ընդդէմ դարձան նմա քաղաքացիքն, բայց ի գիշերի միում յարձակեալ առ զքաղաքն եւ ետ զնա աւար զօրացն յաւուրս վեց (*)։ Այլ սահմանեցան երկու եկեղեցիք՝ զի լիցին տեղի ապաստանաց անձանց. անզէնքն եւ կուսանք եւ պաշտօնեայք Աստուծոյ եւ որ ինչ յաստուածեղէն պաշտօնն հայէին՝ խնայեցան։ Ալարիկոս իբրեւ իմացաւ թէ առ կուսի ումեք քրիստոնէի գտան պահեալ անօթք մեծագինք եկեղեցւոյ սրբոյն Պետրոսի, ոչ միայն արգել առնուլ զնոսա, այլ եւ տայր տանել զնոսա շքով յեկեղեցի անդր, միաբան շուէին Հռոմայեցիք, յաւելեալ եւ Գութք ի նոսա, եւ ուժգնութիւն պատերազմին դարձաւ յերգս եւ յօրհնութիւնս խաղաղութեան։ Առաւ քաղաքն ի 23 Օգոստոս ամսոյ՝ 410 ամին ի 1164 ամի շինութեան Հռոմայ։

Ալարիկոս խաղաց յետ 6 աւուր ի Կամպանիա, եհաս մինչեւ ցհարաւային ծագս Կալաբրիոյ, կամէր եւ ի Սիկիլիա եւ յԱփրիկէ եւս անցանել, այլ մինչդեռ յայն խորհուրդս էր՝ մեռաւ անդէն ի Կոզենտա (Գոսենցա) 35 ամաց (410)։ Ողբ առին ի վերայ նորա Գութք, դարձուցեալ զջուր Բուսենտոյ գետոյ՝ թաղեցին ի յատակի գետոյն զթագաւորն եւ տալով ածին միւսանգամ զջուրն ընդ նոյն յատակ, զի մի խախտեսցէ ոք զնա ի գերեզմանէն։ Ընտրեցաւ փոխանակ նորա հօրեղբօրորդի նորա Աթաւղփ (Աթոլփ)՝ այր քաջ եւ ազնուական. թող նա զԻտալիա՝ կնքեալ դաշինս՝ զի ինքն կացցէ զօրավար Սորիայ (412). խաղաց գնաց այնուհետեւ ի Գաղլիա, առեալ ընդ իւր զՊղակիդիա դուստր կայսեր՝ որ ամուսնացեալն էր ընդ նմա (414)։

Յորժամ Ալարիկոսն եւ Աթաւղփոս յԻտալիա արշաւեցին՝ առ տարաւ Ստիղիքոն ի գետեզերացն Հռենոսի զզօրսն պահապանս. նմին իրի Ալանք, Սուեւք եւ Վանդալք՝ որ առ արեւելեան ծովուն բնակեալ էին յառաջագոյն, տեսեալ անպահապան զսահմանսն, անցին ընդ Հռենոս. կամ թէ էին նոքա մնացորդք զօրացն Ռադագայսեայ, որք տաւել եւս յաճախեալ եւ բաժանեալ յերիս ցեղս յայնոսիկ՝ անցին ընդ միջնակողմն Հռենոսի եւ այնուհետեւ աւերէին զԳաղլիա (407)։ — Ընդ տիրել Կոստանդիանոս ոմն անուն որ ի Բրիտանիա կացուցեալ էր ապստամբութեամբ՝ կայսր. սա կալաւ ի վարձու զեկեալսն՝ յօգնականութիւն, առ եւ զՍպանիա ի ձեռն Կոստանդեայ որդւոյ իւրոյ։ Թէպէտ եւ առնուլ առ յանձն զտէրութիւն նորա Օնորիոս, բայց յարեաւ ի վերայ նորա իւր իսկ զօրավար՝ Գերոնտիոս, որ սպան զԿոստանդ, եւ խաղայր ի վերայ Կոստանդիանոսի։ Այլ անուանի զօրավար Օնորեայ Կոստանդիոս անուն՝ հասանէր զօրօք ի Գաղլիա.

Digitized by Google

*Թողաւ լքաւ յամենեցունց Գերոնտիոս եւ անձին արար, եւ Կոստանդիանոս, որ էր լեալ ձերբակալ յԱրելատ՝ սպանաւ. եւ այնպէս միացաւ միւսանգամ Գաղիա ընդ տէրութեանն արեւմտից* (411):

*Սակայն Սպանիա եղ ամենեւին ի ձեռաց. քանզի Ալանք, Սուեւք եւ Վանդաղք գրաւեցին զկիրճս լերանցն* (409) *եւ աւերեցին զերկիրն ամս երկուս, եւ ապա կալան անդէն բնակութիւն. Սուեւք որ ի Գաղիկիա նստան, կռեցին դաշինս ընդ Վասքաց (այս ինքն՝ բնակ ազգացն Սպանիացւոց) զի նոքա զստացուածս եւ սոքա զօրինակ վարչութեան իւրեանց հաստատուն ունիցին ընդ իշխանութեամբ թագաւորացն Սուեւաց: Նոյնպէս Ալանք կալան զհինն Լուսիտանիա (զայժմու Փորթուգալ եւ Լէոն). իսկ Վանդաղք զԲետիկա նահանգ (զհարաւային Սպանիա, այս ինքն՝ զԱնտալուզիա) առին* (411):

*Յայնժամ Անորիոս ընդդէմ ազգացս այսոցիկ եւ մանաւանդ ընդդէմ Յովինոսի ուրումն որ ապստամբեալ էր ի սահմանս Մոգունտիայ եւ վարձեալ իւր զԱղեմանս եւ զԲուրգունդացիս եւ զՖրանկս յօգնականութիւն եւ կալեալ զմեծ մասն Գաղիայ, եմուտ ի դաշինս ընդ արեւմտեան Գոթաց՝ որոց թագաւոր Աթաւղփոս էր եւ խոստացաւ նոցա բնակութիւն ի Տուսկիա: Աթաւղփոս յաղթեալ յաղթեաց Յովինոսի, բայց գժտեալ ընդ կայսերն՝ կալաւ զմասն մի Նարբոնականն Գաղիայ եւ զՏառրակոնական նահանգին ի Սպանիա (զայժմու Քաթալոնիա). բայց անդէն ի նմին ամի ի Բարկինոյ (Պարչելոնա) սպանաւ* (415):

*Նորին յաջորդ Վաղղիա եղեւ առաւել յառաջադէմ յաղթութեամբք ի Տառրակոնական գաւառին. կռեաց դաշինս ընդ Անորեայ, որով եւ դարձոյց զՊղակիդիա զայրի կին Աթաւղփայ, եւ յանձն առ գրաւել զերկիրն Սպանիացւոց պատերազմաւ յանուն կայսեր* (418): *Ամենեւին պարտեցան Ալանք սաստիկ պատերազմաւ, անկաւ թագաւոր նոցա Ատաքս եւ մնացորդք նոցա խառնեցան ընդ Վանդաղաց որք հանդերձ Սուեւօք ամրացան յանմատոյց լերինս Գաղիկիայ* (417—419):

*Այսպէս գրեթէ ամենայն Սպանիա դարձաւ միւսանգամ առ Հռոմայեցիս. բայց Վաղղիա կամ ժողովուրդ արեւմտեան Գոթաց ընկալաւ ընդ այնր ամենայնի զերկիրն ի Կարոն գետոյ մինչեւ ցծովն, այս ինքն՝ զԱկուիտանիա Երկրորդ՝ որոյ եւթն գաւառք էին, ուստի եւ Սեպտիմանիա կամ Գոթիայն (Գոթաստանն) կոչեցաւ եւ քաղաք թագաւորանիստ էր Տողոսա (Թուլուզ). այսպէս եղ եկաց թագաւորութիւն արեւմտեան Գոթաց եւ անդէն իսկ ի նմին ամի յաջորդեաց զՎաղղիա՝ Թէոդորիկոս Ա.* (419):

*Իսկ Բրիտանիա յետ մահուն Կոստանդիանոսի ապստամբի՝ չմիաբանեաց այնուհետեւ ընդ տէրութեանն Հռոմայեցւոց. քան-*

Digitized by Google

զի լքեալ թողեալ ի լեգէոնացն Հռոմայեցւոց, նեղեալ ի Հիւսիսոյ՝ ի Պիկտացւոցն եւ ի Սկոտացւոց, եւ ի ծովակողմն կուսէ՝ ի Սաքսոնաց, ազատ զանձինս կացուցին բնակիչքն եւ եդին իւրեանց իշխանս եւ դատաւորս։ Յանձն առ Ոնորիոս զազատութիւն նոցա (410) եւ առ յաջորդաւ նորա ամենեւին իսկ ի բաց քակեցաւ Բրիտանիա (427)։ Նոյնպիսի ինչ եւ յԱրմորիկա (յայժմու Պրըթանեը) դիպեցաւ։

Յայժամ ի բաց անկաւ Յովինոս (413), եթող Ոնորիոս Բուրգունդացւոց զԱղսատիա (զԱլսաս), ուր Աղեմանքն բնակեալ էին, զի պահեսցեն զմնացեալ կողմանն Գաղիայ յերեսաց Աղեմանացն։ Թողեալ այնուհետեւ Բուրգունդացւոց զառաջին տեղի բնակութեան իւրեանց յարեւելակողմն Ոդենուաղդայ ուր նեղէինն անդադար յԱղեմանաց եւ ի Թիւրինգացւոց, բնակեցին այնուհետեւ ի մէջ Նեկքար եւ Մայն գետոց, աստի եւ անտի Հռենոսի եւ ի ձախում գետեզերին ի վեր կոյս ընդ Աղսատիա. գլխաւոր քաղաք նոցա էր Որմատիա։ Իսկ Աղեմանք կալան զերկիրն որ է ընդ մէջ Հռենոս եւ Լան գետոց առ Տաւնոս լերամբ։

Եւ Փրանկք եւս սկսան զօրանալ. վաղ իսկ Փրանկքն Սաղեացիք ընդ որոց ետուն բազում ճակատս Մեծն Կոստանդիանոս եւ Յուլիանոս, դադարեալ էին ի Պետուէ (Պատուկաւ) առ Եյսէլ (Իսալա, Սալա) եւ Շխելթ գետովք. եւ Սիգամբրացիք ի Մերուէ (Մեէրկաւ—երկոքին եւս յայժմու Հոլանդիա)։ Դարձեալ ամբոխ Փրանկաց Հարկատուաց[1], գաղթեալ նստեալ էին ի մէջ Հռենոս, Մոզել եւ Մաաս գետոց. կոչէին սոքա Փրանկք գետեզերեայք[2]։ Յարեցան սոքա ի Փարամունդ որ յամի իբրեւ 420 էր գլուխ Բրուկտացի եւ Քամաւացի եւ Քատտացի ցեղից Փրանկացն բնակելոց ի Վեստփաղիա եւ ի Հասսիա (Հեսսէն)։ Գըլխաւոր քաղաք այսր տէրութեան Փրանկաց էր Կողոնիա, ուստի յարձակեալ բազում անգամ առնուին եւ քանդէին զՏրեւիրս։ Իսկ Սաղեացի եւ Մերուինգացի կամ Սիգամբրացի Փրանկք տարածանէին այնուհետեւ ի Պրաքպանդ եւ ի Հասպանիա (ի սահմանս այժմու Լիէժայ) ընդ երկայնութիւն Մաաս եւ Սամբր գետոց. գլխաւորք նոցա բնակէին ի Դիսպարգոն մերձ ի Լովանիա եւ ըստ հայրենի գաւառին իւրեանց անուանեալ կոչէին Մերուինգացիք կամ Մերովինեանք։

Այսպիսի իմն էին հանգամանք արեւմտեան նահանգաց հռոմէական պետութեանն ի վերջին ամսն Ոնորեայ։ Սա առ իւր աթոռակից (421) զզօրավար իւր զԿոստանդոս ընդ որում ամուսնացաւ քոյր նորա Պղակիդիա։ Բայց Կոստանդոս վախճանեցաւ յետ ամսոց ինչ։ փոխէր ի կենաց եւ կայսր Ոնորիոս յամի 423։ Բաց յօրինաց ինչ իմաստնոց՝ որ ոչ նմա ինչ այնչափ անկ են՝ որ-

1 Laeti. 2 Riparioli կամ Ripuarii.

թողու լքաւ յամենեցունց Գերոնտիոս եւ անձին արար, եւ Կոստանդիանոս, որ էր լեալ ձերբակալ յԱրեղատ՝ սպանաւ. եւ այնպէս միացաւ միւսանգամ Գաղղիա ընդ տէրութեամբ արեւմտից (411)։

Սակայն Սպանիա եւս ամենեւին ի ձեռաց. քանզի Ալանք, Սուեւք եւ Վանդաղք գրաւեցին զկիրճս լերանցն (409) եւ աւերէին զերկիրն ամս երկուս, եւ ապա կալան անդէն բնակութիւն. Սուեւք որ ի Գաղիկիա նստան, կռեցին դաշինս ընդ Վասքաց (այս ինքն՝ բնակ ազգացն Սպանիացւոց) զի նոքա զստացուածս եւ սոքա զօրինակ վարչութեան իւրեանց հաստատուն ունիցին ընդ իշխանութեամբ թագաւորացն Սուեւաց։ Նոյնպէս Ալանք կալան զհինն Լուսիտանիա (զայժմու Փորթուգալ եւ Լէոն). իսկ Վանդաղք զԲետիկա նահանգ (զհարաւային Սպանիա, այս ինքն՝ զԱնտալուզիա) առին (411)։

Յայնժամ Ոնորիոս ընդդէմ ազգացս այսոցիկ եւ մանաւանդ ընդդէմ Յովինոսի ուրումն որ ապստամբեալ էր ի սահմանս Մոգունտիայ եւ վարձեալ իւր զԱղեմանս եւ զԲուրգունդացիս եւ զՖրանկս յօգնականութիւն եւ կալեալ զմեծ մասն Գաղղիայ, եմուտ ի դաշինս ընդ արեւմտեան Գոթաց՝ որոց թագաւոր Աթաւղփոս էր եւ խոստացաւ նոցա բնակութիւն ի Տուսկիա։ Աթաւղփոս յաղթել յաղթեաց Յովինոսի, բայց գժտեալ ընդ կայսերն՝ կալաւ զմասն մի Նարբոնականն Գաղղիայ եւ զՏարրակոնական նահանգին ի Սպանիա (զայժմու Քաթալոնիա). բայց անդէն ի նմին ամի ի Բարկինոյ (Պարչելոնա) սպանաւ (415)։

Նորին յաջորդ Վաղղիա եղեւ առաւել յառաջադէմ յաղթութեամբք ի Տարրակոնական գաւառին. կռեաց դաշինս ընդ Ոնորեայ, որով եւ դարձոյց զՊղակիդիա զայրի կին Աթաւղփայ, եւ յանձն առ գրաւել զերկիրն Սպանիացւոց պատերազմաւ յանուն կայսեր (418)։ Ամենեւին պարտեցան Ալանք սաստիկ պատերազմաւ, անկաւ թագաւոր նոցա Ատաքս եւ մնացորդք նոցա խառնեցան ընդ Վանդաղաց որք հանդերձ Սուեւօք ամրացան յանկետոյց լերինս Գաղիկիայ (417—419)։

Այսպէս գրեթէ ամենայն Սպանիա դարձաւ միւսանգամ առ Հռոմայեցիս. բայց Վաղղիա կամ ժողովուրդ արեւմտեան Գոթաց ընկալաւ ընդ այնր ամենայնի զերկիրն ի Կարոն գետոյ մինչեւ ցԾովն, այս ինքն՝ զԱկուիտանիա Երկրորդ՝ որոյ եւթն գաւառք էին, ուստի եւ Սեպտիմանիա կամ Գոթիայն (Գոթաստանն) կոչեցաւ եւ քաղաք թագաւորանիստ էր Տողոսա (Թուլուզ). այսպէս եւս եկաց թագաւորութիւն արեւմտեան Գոթաց եւ անդէն իսկ ի նմին ամի յաջորդեաց զՎաղղիա՝ Թէոդորիկոս Ա. (419)։

Իսկ Բրիտանիա յետ մահուն Կոստանդիանոսի ապստամբի՝ չմիաբանեաց այնուհետեւ ընդ տէրութեանն Հռոմայեցւոց. քան-

զի լքեալ թողեալ ի լեգէոնացն Հռոմայեցւոց, նեղեալ ի Հիւսիսոյ՝ ի Պիկտացւոցն եւ ի Սկոտացւոց, եւ ի ծովակողմն կուսէ՝ ի Սաքսոնաց, ազատ զանձինս կացուցին բնակիչքն եւ եդին իւրեանց իշխանս եւ դատաւորս։ Յանձն առ Ոնորիոս զազատութիւն նոցա (410) եւ առ յաջորդաւ նորա ամենեւին իսկ ի բաց քակեցաւ Բրիտանիա (427)։ Նոյնպիսի ինչ եւ յԱրմորիկա (յայժմու Պրըթանըը) դիպեցաւ։

Յորժամ ի բաց անկաւ Յովինոս (413), եթող Ոնորիոս Բուրգունդացւոց զՀելուետիա (զՀելուաս), ուր Ալեմանքն բնակեալ էին, զի պահեսցեն զմնացեալ կողմանն Գաղիայ յերեսաց Ալեմանացն։ Թողեալ այնուհետեւ Բուրգունդացւոց զառաջին տեղի բնակութեան իւրեանց յարեւելակողմն Ոդենուաղդայ ուր նեղէինն անդադար յԱլեմանաց եւ ի Թիւրինգացւոց, բնակեցին այնուհետեւ ի մէջ Նեկքար եւ Մայն գետոց, աստի եւ անտի Հռենոսի եւ ի ձախում գետեզերին ի վեր կոյս ընդ Հելուետիա. գլխաւոր քաղաք նոցա էր Որմատիա։ Իսկ Ալեմանք կալան զերկիրն որ է ընդ մէջ Հռենոս եւ Լան գետոց առ Տաւնոս լերամբ։

Եւ Փրանկք եւս սկսան զօրանալ. վաղ իսկ Փրանկքն Սաղեացիք ընդ որոց ետուն բազում ճակատս Մեծն Կոստանդիանոս եւ Յուղիանոս, դադարեալ էին ի Պետուէ (Պատուկաւ) առ Իյսսէլ (Իսալա, Սալա) եւ Ֆեխթ գետովք. եւ Սիգամբրացիք ի Մերուէ (Մէկըկաւ—երկոքին եւս յայժմու Հոլանդիա)։ Դարձեալ ամբոխ Փրանկաց Հարկատուաց[1], գաղթեալ նստեալ էին ի մէջ Հռենոս, Մոզել եւ Մաաս գետոց. կոչէին սոքա Փրանկք գետեզերեայք[2]։ Յարեցան սոքա ի Փարամունդ որ յամի իբրեւ 420 էր գլուխ Բրուկտացի եւ Քամաւացի եւ Քատտացի ցեղից Փրանկացն բնակելոց ի Վեստփաղիա եւ ի Հասսիա (Հեսսէն)։ Գլըխաւոր քաղաք այսր տէրութեան Փրանկաց էր Կողոնիա, ուստի յարձակեալ բազում անգամ առնուին եւ քանդէին զՏրեւիրս։ Իսկ Սաղեացի եւ Մերուինգացի կամ Սիգամբրացի Փրանկք տարածանէին այնուհետեւ ի Պրաքպանդ եւ ի Հաապանիա (ի սահմանս այժմու Լիէժայ) ընդ երկայնութիւն Մաաս եւ Սամբր գետոց. գլխաւորք նոցա բնակէին ի Դիսպարգոն մերձ ի Լովանիա եւ ըստ հայրենի գաւառին իւրեանց անուանեալ կոչէին Մերուինգացիք կամ Մերովինեանք։

Այսպիսի իմն էին հանգամանք արեւմտեան նահանգաց հռոմէական պետութեանն ի վերջին ամսն Ոնորեայ։ Սա առ իւր աթոռակից (421) զզօրավար իւր զԿոստանդոս ընդ որում ամուսնացաւ քոյր նորա Պղակիդիա։ Բայց Կոստանդոս վախճանեցաւ յետ ամսոց ինչ։ փոխէր ի կենաց եւ կայսր Ոնորիոս յամի 423։ Բաց յօրինաց ինչ իմաստնոց՝ որ ոչ նմա ինչ այնչափ տնկ են՝ որ-

1 Laeti. 2 Riparioli կամ Ripuarii.

չափ այնոցիկ որ զնուաճեալն էին, այս ինչ փառք են արդ զի զդադաշելէ մարդասպան խաղս սուսերամարտիկացն եբարձ ի միջոյ, յորս ի վերջնումն սպանաւ Տեղեմաքոս անապատական. զի արկեալ էր նորա զանձն ի տեղի կռուոյն ի մէջ կռուողացն՝ վասն քակելոյ զնոսա ի միմեանց, եւ եղեւ յանկարծ անօրէն քարկոծ։ Հան Ոնորիոս խոկ եւ խոկ հրաման բառնալոյ զխաղսն սպանողականս, եւ բարձաւ իսկ ի սպառ (403)։

Վաղվաղակի ըմբռնէր զաթոռ նորա ատենադպիր նորա Յովհաննէս (423—425). ապա պարտեցաւ նա ի Թէոդոսէ Բ. ի յաջորդէն Արկադեայ (յամէ 408) եւ նստաւ մանուկն Վաղենտինիանոս Գ. (425—455), որդի Կոստանդեայ, ընդ խնամակալութեամբ մօր իւրոյ Պղակիդիայ։ Բայց չէին նոքա առաւել պահել ի հասարակ զանկարգութիւնն որ մերձ ի կործանել էր։

## 95

Իսկ յարեւելս Արկադիոս կայսր (յամէ 395) կայր գրաւեալ ըմբռնեալ ի ձեռս սպասաւորաց իւրոց՝ որ մի ըստ միոջէ զմիմեանս յաջորդէին եւ մեծամեծագոյնք եւ ժանտագոյնք քան զմիմեանս էին։

Ռուփինոս անձնապաշտպանս արեւելեան պետութեան, զորմէ յառաջագոյն ճառեցաւ, խորհէր հնարէր առնել Արկադեայ կին՝ զիւրում դուստր։ Այլ Եւտրոպիոս ներքինապետն հայ յաջողէ գաղտ ի նմանէ հաւանեցուցանէր զկայսր՝ առնուլ զԵւդոքսիա զդուստր Բաւտոնեայ փրանկի՝ որ էր զօրավար առ Գրատիանոսիւ եւ առ Թէոդոսիւ եւ սպարապետ զօրացն։ Բարեդժանն եւ մտացեալն այլ առպարհամանն Եւտրոպիոս տիրէր իմն դիւրաւ ի վերայ տկարոյն Արկադեայ։ Ամեկայն եւ այնպէս տակաւին ծախանայր Ռուփինոս եւ նենգէր ապահովութեամբ զժողովուրդն՝ մինչեւ սպանաւ նա ի Գայինայ, ըստ օրինակին որ յառաջագոյն պատմեցաւ (395)։ Մի միայն առաւ ըմբռնութեան փայլէր յայնժամ ի կայսերական քաղաքին Յովհան Ոսկեբերան հայրապետ (յամէ 397), որ քննէր զորդեւք մեւս եւս Եւդոքսիա յանդգնելն արեւելեան՝ եթէ էր ըստ Արկադիոս՝ որդի արժանի ըստ հօրն իւրոյ Թէոդոսի Ա.։

Ծնաւ Յովհաննէս յԱնտիոք յամի իբրեւ 347։ Հայր նորա Սեկունդոս անուն՝ էր զօրավար ի բանակի եւ մեռաւ ոչ ինչ կարի յետոյ քան զծնունդ որդւոյն։ Անթուսա մայր նորա՝ որ 20ամեայ մնաց այրի, փոյթ ի վերայ ունէր մանկանն կրթութեան։ Եւ նա զնա նախ ի քրիստոնէական հրահանգս եւ ապա առաքէր ի դպրոց ճարտարխօսութեան Լիբանիոսի առն նշանաւորի։ Փոյթ մեծ եւ բազում աշխատութիւն ցուցանէր Ոսկեբերան ի գիտութիւնս, որպէս զի ի հարցանել ուրուք զԼիբանիոս թէ զո՛ ոք արժանի համարիցի կացուցանել իւր յաջորդ, զնա ցուցանէր եւ ընդ այն իմն տրտմէր՝ թէ վաղ յափշտակեցին

Digitized by Google

ցեալ նա զեկեղեցի իւր մեծապայծառ կարգօք սպասաւորացն պաշտաման եւ պատարագի եւ յաճախ ճառիւքն. զիւր տայր աղքատաց եւ որբոց՝ շինելով հիւանդանոցս, բաղանիս եւ օտարանոցս. Հոգայր նա վասն եկեղեցեաց սկսելով մանաւանդ ի վերայ կրթութեան եկեղեցականաց, եւ կատարէր քահանայս ուսեալս եւ վարժեալս ի գիտութեան, առաքէր զնս ի քարոզութիւն ի Փիւնիկէ, յարեւմտակողմանս Ասիոյ եւ ի կողմանս Դանուբայ ի մէջ Գոթաց եւ կարգէր քահանայս վասն Գոթացն ուղղափառաց, եւ զազգս համարձակութիւն Գոթացն արիանոսաց եւ զեւնոմեանց եւ զԱնոմեանց ամփոփեաց ած յառաջին չափին՝ որ առհմանեալ էր նոցա յօրինացն Թէոդոսի Մեծի։ Առաջի արքայնեացն եւ աւագանւոյն էր նորա համարձակախօսութիւն ի բանսն եւ ժուժկալ իմն միայնակրութիւն հեռի յաղմկէ նոցա, որպէս զի եւ սակաւապէտ կերակուրն նորա եւ հանգերձ ոչ ի մեծատուն գանձուց եկեղեցւոյն էին, այլ ի որդւոյն Ողիմպիայ սարկաւագուհւոյ.

Իբրեւ յետ Ռուփինեայ տիրէր ամենայնի Եւտրոպիոս սենեկապան, տուած նմա ամենայն պատիւք, հանեալ ի բդեշխութիւն, ի պատրկութիւն, կանգնեցան անդրիք նորա ոսկեղէնք ի հրապարակս։ Զարչարէր նա զկալուածս յարանց երեւելեաց եւ յառաջնեաց. զօր խրատէր զնա Ոսկեբերան, քանզի մանաւանդ եւ զայն եւս ի վերայ ամենայնի յանդգնէր՝ կարճել եւ զազատութիւնս եկեղեցւոյ եւ տայր բառնալ առանձինն օրինօք զիրաւունս ապաստանաց յանցաւորացն դիմելոց յեկեղեցիս եւ այսպէս լինէր ամենեցուն ատելի եւ գարշելի։

Յայնժամ Գայինաս զօրավար զօրուն ձանձրացեալ իմն՝ յարոյց խռովութիւն, կոչեցեալ նենգութեամբ գունդս ի Հոնաց ի Փոքրն Ասիա։ Յահ մեծ անկաւ քաղաքն կայսերական, եւ Գայինաս փոխանակ տալոյ ճակատ ընդ նոսա՝ տայր պահանջել ի նոցա անուն՝ զգլուխն Եւտրոպեայ։ Մինչդեռ դանդաղէր իմն տակաւին կայսր զպայմանն կատարել, դէպ լինէր Եւտրոպեայ ըմբռնել ի գժտութիւն ընդ Եւդոքսիայ։ Դշխոյն անարգեալ եւ զկծեալ նախատանօք մատչէր առաջի կայսեր արտասուօք՝ ամբաստան զներքինւոյն, առեալ զիւրեւ եւ զերկոսին զաւակսն զմատաղորեայս զՊղակիդիա եւ զՊուղքերիա։ Մերժեցաւ Եւտրոպիոս, եւ նա ապաստան եղեւ մեծաւ դողութեամբ ի սեղան եկեղեցւոյ՝ զորոյ զիրաւունսն տկարացոյց։ Ոսկեբերան ի մէջ անցեալ հազիւ ած ի հաւան զզօրսն Գայինասայ չբռնաբարել զիրաւունս տեղւոյն, եւ տայր կացեալ բարեխօս առաջի Թագաւորին՝ առնոյր շնորհ զկեանսն Եւտրոպեայ, մինչդեռ արտաքոյ առաջի ապարանից Թագաւորին գունդ գունդ զօրացն զզէնսն շկահէին եւ խնդրէին մեծաւ աղաղակաւ զմահն Եւտրոպեայ։ Այլ յետոյ Եւդոքսիա եւ Գայինաս բարբանօք ետուն գլխատել զնա բերեալ յաքսորանացն ի Կիւպրոսէ (399)։

Յայնմ հետէ իշխան էր ամենայնի Գայինաս եւ զաւեալ օգնականութիւն յանհնարին բազմութենէ Գոթացն՝ առնոյր ի Թա-

դաւորէն զոր ինչ եւ կամէր։ Զի Թէպէտ եւ կատարեցաւ պայմանն եւ ամենեքին ակն ունէին խաղաղութեան, անտուստ դուժկան հասանէր Թէ Գայինաս լեգէոնօքն հասեալ է ի Քաղկեդոն, չէր յայտ Թէ իբրեւ բարեկամ արդեւք եԹէ իբրեւ Թշնամի, ի նորա կամսն ապաստան էր առնուլ եւ չառնուլ զմայրաքաղաքն. քանզի չգոյր զօր ունել ընդդէմ նորա։ Առաքեցան առ նա հրեշտակք, այլ նա պահանջէր տալ ի ձեռս արս երիս երեւելիս (զԱւրելիոս հիւպատ, զՍատուռնինոս երբեմն հիւպատ եւ զՅովհան զատենադպիր Թագաւորին), եւ ապա խնդրէր եւ զկայսրն եւս՝ խօսել ընդ նմա դաշամբք։ Սակայն ընկալաւ զԹագաւորն մեծաւ պատուով ի Քաղկեդոն, հաստատեցաւ նա ի սպարապետութեանն եւ ազատ զպատմուճան հիւպատոսութեանն։ Ընդհեւոց նա եւ զայն երիսին զորս աքսորել կամէր՝ աղաչանաց սրբոյ հայրապետին որ չոգաւ վասն նոցա ինքնին ի բանակն նորա։

Այլ յետ սակաւ ինչ միոյ յորժամ զմի յեկեղեցեաց քաղաքին պահանջէր Գայինաս ի կայսերէ վասն իւրոց արիանոս Գոթացն՝ ընդդէմ դարձաւ հայրապետն առնն՝ որոյ առաջի դողայր յայնժամ քաղաքն համօրէն։ Այլ իբրեւ նա մրմռեալ զայրացեալ ի չէն դիմէր, յարեաւ ի վերայ նորա խուժանն ի քաղաքին, արար հրկէզ 7000 այր ի Գոթաց որ Թողեալ էին ի քաղաքին եւ ի տագնապի անդ ապաստանեալ էին յեկեղեցի ուրեք, եւ այնուհետեւ յայտ արարաւ Թէ Թշնամի հայրենեաց է Գայինաս։ Բայց եւ այնպէս՝ իբրեւ աւազակ եղեալ խաղացեալ գայր նա աւերելով զԹրակիա՝ առին առաքեցին Թագաւորն եւ խորհրդականք նորա զհայրապետն սուրբ։ Ընկալաւ զնա խուժադուժն մեծապատուով եւ զաջ ձեռն սրբոյն կալեալ ածէր ի վերայ աչաց իւրոց եւ որդիք նորա ի գուծս՝ փարէին զոտիւք սրբոյն, սակայն զխնդրուածսն նորա չառ յանձն։ Յայնժամ ըստ խորհրդոյ ծերակուտին յանձն եղեւ Փրաւիտայ ումեմն հաւատարիմ Գութ յազգէ՝ գործ զօրավարութեանն. եւ անէր սա ընդառաջ խափանել զանցս հինին ընդ Հելեսպոնտոս՝ մանր եւ Թեթեւ նաւուք պատրաստելովք փութանակի։ Մինչդեռ անտուստ Գայինաս ծանր եւ խարխուլ նաւուք զոր ի փայտահատութենէ անտառացն եւ կազմեալ՝ ակիզբն անցիցն առնէր, խառնակեաց զնաւս յանկարծ մրրիկն եւ խուճապեցոյց զնաւս Փրաւիտայ. ծածկեցաւ Հելեսպոնտոս դիակամբք Գոթացն եւ նաւուքն խորտակելովք, եւ ինքն Գայինաս եղանէր մազապուր ի կողմանս Դանուբայ, ուր եւ պարտեցաւ ի ճակատու առաջի Հոնաց եւ իշխանն նոցա (Ուլդէս անուն) առաքէր զգլուխ նորա պարգեւ Արկադեայ (401)։

Յայնմ հետէ անամօԹն, ժլատն եւ բռնաւորն Եւդոքսիա տիրէր առն իւրում եւ համօրէն տէրութեանն։ Իսկ եւ իսկ գրգռեցաւ Թշնամութիւն ընդ սրբոյն Ոսկեբերանի որ համարձակ



Digitized by Google

կշտամբէր զյոռութիւնս արքունեացն եւ զկանանց. եւ գտաւ իսկ Եւդոքսիայ վաղվաղակի ժամ պատեհ ի վրէժխնդրութիւն, այս ինքն ժամանակ Որոգինեան գժտութեանցն։

## 96

Այդ իսկ ի կատարած կոյս երրորդ դարու բազում ինչ հակառակութիւն լինէր վասն Որոգինեայ։ Եւ արդարեւ իսկ բազում ինչ փիլիսոփայական մտածութիւն օտար յեկեղեցական աւանդութենէ կայր ի գիրս նորա. մանաւանդ չարալուր ինչ լսելեաց էին բանք նորա վասն Բանին Աստուծոյ, յառաջգոյութիւն ոգւոց, արարչութիւն ի յաւիտենից՝ վասն այնորիկ զի չլինի ինչ փոփոխութիւն յԱստուած, եւ այլ եւս ինչ բանք որ ի նոյն կէտ իջեն, որպիսի ինչ՝ ուրանալ զմշտնջենաւորութիւն պատժոց դժոխոց (ըստ Պղատոնի իմն վարդապետութեան որ ասէր թէ ամենայն պատիժք Աստուծոյ բժշկական եւեթ են)։ Այլ այսպիսի վարդապետութիւնք մանաւանդ ի գիրսն Վասն սկզբանց[1] ընծայանային. իսկ ի գիրսն՝ զոր յետոյ գրեալ էր, մեծ մասն մոլորութեանցն ուղղեալ էր կամ ի բաց թողեալ։ Նա եւ բազում ինչ մոլար ի հերետիկոսաց մուծաւ ի գիրս նորա, որպէս ինքն իսկ Որոգինէս ունէր վասն նորին բազում անգամ տրտունջ։

Թէպէտ եւ Ս. Գրիգոր Սքանչելագործ աշակերտ նորա եւ գովիչ՝ լինէր հովանի եւ պաշտպան Որոգինեայ՝ իւրով ճոխութեամբն, սակայն եւ այնպէս ի սկզբան չորրորդ դարու Մեթոդիոս եպիսկոպոս Տիւրացւոց որ եւ վկայ (309)՝ գրէր հակառակ բազմաց ի մոլորութեանց նորա. այլ անդէն եւ ի նորա ջատագովութիւն միւս եւս վկայ Պամփիլոս երէց՝ զորոյ զպատուախնդրութիւնն յետ նորա մահուն (309) հան ի գլուխ Եւսեբիոս Պամփիլեայ կամ Կեսարացի։ Նա աւանիկ եւ մեծամեծք ի վարդապետաց եկեղեցւոյ Գրիգոր Նազիանզացի, Բարսեղ, Ոսկեբերան ի նորա գրոց ունէին զհմտութիւն մեկնութեան գրոց սրբոց։ Եւ անդէն ի ժամանակի արիանոսութեան երկոքին եւս կողմանք կոչէին զՈրոգինէս ի վկայութիւն։ Այլ ի կատարած կոյս նորին դարու, յետ արիանոսութեանն ցածնլոյ, այնուհետեւ այսպէս ի դէպ թուեցաւ ումանց եւ զաղբիւրս եւս նորա ցամաքեցուցանել։ Բայց չէր հնար առանց հակառակութեան՝ իրացն վճարել։

Գիտնագոյնք ի վանականաց յԵգիպտոս եւ ի Պաղեստին՝ ընթեռնուին ստէպ զգիրս Որոգինի, եւ նմին հակառակ այն գիրք տեղի էին բազմամբոխ բազմութեան տխմարագունացն ի վանականաց՝ որ անդստին ի գրոց անտի կշտամբեալ լինէին վասն մոլորութեան իւրեանց. քանզի սոքա համարէին տխմարութեամբ թէ

1 Περὶ ἀρχῶν.

Digitized by Google

մարդկեղէն կերպարանս ունէին Աստուած եւ կոչեցան իսկ ապա Մարդակերպականք։ Ս. Եպիփան որ ի վանականութենէ կոչեցեալ էր յեպիսկոպոսութիւն Կոստանդիայ կամ Սաղամիսայ Կիպրացւոց (յամէ 367), չէր հաղորդ մոլորութեան նոցա, սակայն միաբան էր ընդ նոսա ի մերժումն Որոգինեայ։ Սա քանզի էր լեալ միջամուխ յամենայն եկեղեցական հակառակութիւնս ժամանակաց իւրոց, գրէր զպատմութիւն հերձուածոց յերիս գիրս (յամի 373) եւ զՈրոգինէս եւս եւ զվարդապետութիւն նորա խառնէր ի կարգս հերձուածոցն։ Սակայն եւ այնպէս խաղաղութեամբ էին ընդ նմա եւ տային եւ առնուին թուղթս Յովհաննէս Երուսաղեմայ հայրապետ (386—417) յաջորդ Կիւրղի, Ս. Յերոնիմոս եւ նորին բարեկամ Ռուփինոս երէց Ակուիղէացի, որք առ հասարակ պատուէին զՈրոգինէս, մինչեւ յամի 394 միաբանեցան ընդ հակառակորդս Որոգինեայ եւ ինքն եւս հզօրն Յերոնիմոս՝ որ էր զոյգ երեւելի եւ մեծանուն յարեւմուտս եւ յարեւելս, եւ փոփոխեցան այնուհետեւ իրացն կերպարանք։

Յերոնիմոս († 420, 30 Սեպտ.) ծնեալ ի Ստրիդոն քաղաքի ի գլուխս սահմանաց Պաննոնիայ եւ Դալմատիայ (յամի իբրեւ 346), առաքեաց զնա հայրն (Եւսեբիոս անուն) ընդ եղբօր իւրում կրտսերոյ Պաւղինիանեայ ի Հռոմ յուսումն, եւ լինէր անդ երեւելի ի դպրոցին Դոնատեայ եւ Վիկտորինեայ հռետորաց ճարտարախօսաց արանց հեթանոսաց։ Զառաջինն սիրելի էր նմա յաւուրս միաշաբաթուց եղանել յայց գերեզմանաց մարտիրոսաց եւ ի շիրիմս առաքելոցն Պետրոսի եւ Պաւղոսի, քանզի չէր նմա համարձակ ի քրիստոնէական պաշտամանսն մտանել, վասն զի երախայ էր տակաւին։ Այլ հեթանոսական բարք քաղաքին չանցին զնովաւ անվնաս։

Սա ապա կատարեալ զուսումն գործելոյ շրջեցաւ ընդ Գաղիա (ի Տրեւիրս) եւ ընդ Ակուիլէա (369—372), ապա առ Լիբերեաւ ի Հռոմ մկրտէր։ Այնուհետեւ միայնութեանն սէր ած զնա դարձեալ յԱկուիլէա, ուր ի մէջ կղերականացն Վալերիանոսի եպիսկոպոսի (Քրոմատիոսի, Եւսեբիոսի, Յովբինոսի, Նիկետայ եւ Քրիւսոգոնեայ) իբրեւ ի մէջ պարու հրեշտակաց զանձն համարէր Յերոնիմոս։ Սակայն եւ այնպէս յետ սակաւ ինչ միոյ վասն հակառակութեան իրիք մեկնէր նա անտի բաժանեալ մեծաւ ցաւովք ի ջերմն բարեկամէ իւրմէ ի Ռուփինեայ յերիցուէ Ակուիլէացւոյ, զի երթեալ միայնասցի ուրեք յարեւելս (372)։ Առեալ ի Հռոմէ զմատենանն՝ զոր ուստեք ուստեք ընդօրինակեալ էր յիւր իսկ պէտս, շրջէր ընկերօք ոմամբք (Իննովկենտիոսիւ, Եւագրիոսիւ, Հեղիոդորաւ եւ Հիւղասաւ) ընդ Թրակիա, Պոնտոս, Բիւթանիա, Գաղատիա, Կապադովկիա եւ Կիլիկիա, եւ յամեալ ժամանակս ինչ յԱնտիոք Ասորւոց վասն հիւանդագին ակարութեան եւ վասն լսելոյ զուսումն մեկնութեանն Ապողինարեայ Լաւոդիկեցւոյ ի քաղաքի անդ, ապա հասեալ կալաւ բնակութիւն (374) ի Քաղկիս ընդ մէջ երկրին Ասորւոց եւ Արաբիայ, որ յայնժամ ի ձեռս Սարակինոսաց էր, եւ մեկուսացաւ անդէն զամս 4 ի հանապազորդ ապաշխարութեան եւ ի վաստակս ուսմանց՝ մնալով առ նմա Հիւղասայ միայն եւ տալով եւ առնլով միշտ թուղթս ի բարեկամաց իւրոց ի Փղորենտեայ, ի Քրոմա–

տեայ, ի Հելիոդորայ, ի Նեպոտիանոսէ (քեռորդւոյ Հելիոդորայ) եւ ի Ռուփինեայ։ Այլ առաւել քան զամենայն նեղէին զնա փորձութիւնք։ Ցնորք նորա տագնապէին զնա ամենայն ուրեք պատկերօք անցեալ կենացն ի Հռոմ. ի պաշս անդ պնդութեան եւ ի լլկանս խորհուրդք նորա շրջէին ի պարանցիկս ի Հռոմ։ Բազում անգամ անկանէր առ ոտս Յիսուսի եւ արտասուօքն թանայր, եւ կոծէր զանձն զցայգ եւ զցերեկ։ Երբեմն զամօթի իմն հարկանէր եւ ի սենեկէ իւր առնէր իւրմէ իբրեւ ի գիտակցէ իւրոց անօրէն խորհրդոց՝ գնայր թափառական ի հովիտս խաւարինս կամ ի քարուտս դժնդակս՝ առ ի սանձելոյ զմարմինն աղօթամբ, թէպէտ եւ հանդերձն եւս նորա քուրձ մաղեղէն էր եւ մորթն թխացեալ ամենեւին առաջի առապարին ճառագայթից արեգականն։ Եւ զի առաւել եւս զցնորսն եւ զմիտս զբաղեցուսցէ արկ ձեռն ուսանել զեբրայեցի, ի հրէէ ումեմնէ դարձելոյ ի քրիստոնէութիւն, եւ յայտ իսկ է թէ քանի՛ դժուարին էր նմա որ ի փափուկ բարբառս Յունացն եւ Հռոմայեցւոց մատենագրացն վարժեալ էր՝ անել զկոկորդախօս եւ զխեցբեկ հեգենայս եբրայականին, մանաւանդ զի բազում պահք եւ ճգնութիւնք տկարացուցեալ էին զգլուխն եւ նուաղեցուցեալ զզօրութիւն ոգւոցն։ Ընդ մատեանսն նորա էր եւ Կիկերոն եւ Պղաւտոս, որովք բազում անգամ զուարճանայր եւ լնոյր նմա թեթեւութիւն ի խիստ աշխատութենէն։ Բայց յանձնէ իւր՝ անդէն զհնի սխրալի ընթերցանութեանց չյօժարէր ընդ ընթերցանութիւն մարգարէիցն իբրեւ ընդ անպաճոյճս, մինչեւ տեսլեամբ իւիք (զոր յառաջն՝ տեսիլ ճշմարիտ համարեցաւ եւ ապա երազ) կշտամբէր վասն նորին թէ կիկերոնեան իցէ եւ ոչ քրիստոնեայ եւ յայն սակս գանակոծ եւս ի հրեշտակաց համարէր լեալ։

Թէպէտ եւ յաղթէր Յերոնիմոս ներքին պատերազմին, սակայն այլ իմն հակառակութիւն արտաքուստ առաւել նեղէր զնա։ Այլ եւ այլ կողմանք հերձուածոյ եկեղեցւոյն Անտիոքայ (Մելետեանք, Պաւղինեանք եւ Վիտաղեանք) ջանային սախրել զնա միաբանել ընդ ինքեանս, բայց Յերոնիմոս չհաւանէր յայս եւ գրէր առ Դամասոս քահանայապետ. “Ես յառաջ քան զամենայն զՔրիստոսի զհետ երթեալ՝ երանութեան քում, այսինքն աթոռոյն Պետրոսի հաղորդութեամբ կցորդիմ. զեկեղեցին ի վերայ այնր վիմի շինեալ գիտեմ։ Որ ոք արտաքոյ քան զայս տան ուտիցէ զգառնն, պիղծ է։ Որ ոք ի տապանին առ Նոյի չիցէ, կորիցէ ի սաստկանալ ջրհեղեղին։ ԶՎիտաղիս ոչ ճանաչեմ, զՄելետիոս մերժեմ, զՊաւղինոս չգիտեմ։ Որ ընդ քեզ ոչ ժողովէ, ցրուէ. այսինքն՝ որ Քրիստոսի չէ, Անտիքրիստոսի (Նեռին) է” (Թուղթ. 57). եւ այլուր յաւելու. “Ես մինչեւ ցայս վայր բողոք բարձեալ գոչեմ թէ՝ Որ ընդ Աթոռոյն Պետրոսի կցորդեալ է՝ իմ է։ Մելետիոս, Վիտաղիս եւ Պաւղինոս ասեն թէ յարեալ են ի քեզ. կարէի իսկ հաւատալ՝ եթէ մի ոք եւեթ զայն ասէր, այլ արդ կամ երկուքս ի նոցանէ ստեն եւ կամ ամենեքին”։

Սակայն այսր ամենայնի եղանէր նա յանապատէն եւ երթեալ յԱնտիոք (379) եւ տեղեկացեալ իւրոյն ստուգութեան՝ յանձն առնոյր ձեռնադրել ի Պաւղինեայ յերիցութիւն այնպիսի իմն պայմանաւ՝ զի մի կարգեսցի միայն անդէն յեկեղեցւոջ Անտիոքայ։ Համբաւ ուսման եւ ճարտարախօսութեան Գրիգորի Նազիանզացւոյ ձգեաց զնա ի Կոստանդնուպօլիս (ուր թարգմանեաց զՔրոնիկոնն Եւսեբեայ՝ մատուցեալ յառաջ մինչեւ ցՎաղէս) (380), անտի կամէր երթեալ գաղթել ի

Բեթղահէմ, այլ եւս եւ եւս հաստատէր նմա հրաւէր գալ ընդ Պաւղի-նեայ եւ ընդ Եպիփանու ի Հռոմ վասն քննութեան իրացն արեւելից:

Նա (յամի 381) ի մեծի պատուի էր Երոնիմոս. քահանայապետն Դամասոս արկանէր զնա ի կիր յամենայն կարեւոր գործս եկեղեցւոյ եւ նմա իսկ տայր առնել պատասխանի թղթոցն զոր առաքէին եպիսկոպո-սունք առաքի անուն հարցանել խորհուրդ ի քահանայապետէն: Ընդ նմա ընթեռնոյր քահանայապետն զգիրս սուրբս եւ տայր մեկնել նմա, եւ տայր յանձն արար նմա համեմատել զպէսպէս հռոմայեցի թարգմանու-թիւնս նորոց կտակարանացն՝ ընդ միմեանս եւ ընդ յունականին եւ յօ-րինել անտի նոր ինչ օրինակ հռոմայեցի ըստ ճշդագոյն եւ ուղիղ մտաց բնագրականին: Զայս գործ դժուարին որ կարեւորն էր յայնժամ եկեղեցւոյ՝ հան ի գլուխ Երոնիմոս մեծաւ աշխատութեամբ, մինչեւ առնել Ս. Աւգոստինեայ թէ չէ մարթ գոհանալ զԵրառնէ որչափ ար-ժանն է՝ վասն այսց վաստակոց Երոնիմեայ:

Արբանեկան վարք նորա, ճարտարխօսութիւն եւ բազում գիտութիւն տակաւ ձգէին առ նա զկիերն եւ զարս երեւելիս քաղաքին. այլ առա-ւել քան զամենայն զառաքինի տիկնայս Հռոմայ: Ամբոխ բազում կա-տանաց խռնէին զնովաւ յաճախ՝ ունկնդիր լինել մեկնութեան նորա: Ի սոցանէ նշանաւորք են սրբութեամբ Ասելղա, Մարկելղա, Լէա, Պաւ-ղա եւ դստերք նորա Բղեսիղղա, Պաւղինա, Յուլիա Եւստոքիոն եւ Ռուփինա, եւ յազգաց անտի Պամմաքիոս, Ոկէանոս, Մարկեղինա եւ Դոմնիոն, որ համարեալ բարեկամք էին Երոնիմեայ: Ս. Պաւղա առ յա-ճախագոյն եւս ի նորա վարդապետութեանն վայելելոյ՝ եառ նմա բնա-կութիւն ի տան իւրում, եւ առ Երոնիմոս յանձն: Այլ ազատաբերան համարձակութիւն նորա որով կշտամբէր զագահութիւն, զցեղծութիւն եւ զընդունայնասիրութիւն Հռոմայեցւոց, յորս էին եւ կղերականք ոմանք՝ արար զնա նոցա ատելի. բայց մինչ դեռ կենդանի էր Դամասոս՝ չիշխէին ոք ի վէճ գալ ընդ նմա, յետ մահուն զօրացաւ նախանձն եւ չարախօ-սութիւնն աղարտել զանուն նորա: Չհամարէր այնուհետեւ պատշաճ Երոնիմոս կալ ի Հռոմ եւ յետ զամս իբրեւ 4 կալոյ անդէն՝ դառնայր միւսանգամ յարեւելս հանդերձ եղբարբ իւրով Պաւղինիանեաւ (395): Մեծաւ ուրախութեամբ ընկալաւ զնա Ս. Եպիփան ի Կիպրոս եւ յե-լանել նորա ի քաղաքէն Անտիոքացւոց՝ գնայր ընդ նմա ուղեկից հայ-րապետն Պաւղինոս: Կացեալ յԱղեքսանդրիա ամիս մի լսել զուսումն Դիդիմեայ՝ որ անուանի էր յայնժամ մեկնութեամբ գրոց, դարձաւ ի Բեթղահէմ եւ անդ Ս. Պաւղա, որ եկեալ էր անդր զհետ նորա՝ շի-նեաց նմա վանս, եւ զմենաստան կուսանացն որում վերակացու էր ինքն Պաւղա՝ արար ընդ նորա առաջնորդութեամբ: Շինեաց Երոնիմոս եւ օթեւանս վասն պանդխտելոցն որ գային ի սուրբ տեղիսն:

Ի մեկնութիւնս իւր լինէր նմանօղ որ ինչ լաւ ի մեկնութիւնս ա-ղեքսանդրիականն եւ անտիոքեան դպրոցին գտանէր. յայն սակս զարմա-ցեալ իսկ էր ընդ քաջութիւն մեկնութեանն Որոգինէի՝ զորմէ առակաւն յամի 392 գրէր գովութեամբ առ Պաւղա թէ "Ո՞չ ոք այնչափ ինչ ըն-թեռնուլ կարող է՝ որչափ Որոգինէսն մատենագրեալ է,,. եւ ամէ զնա-վիմբ թէ "Զի՞նչ ընդ այնր առ նա հատուցումն; Դեմետրիոս եպիսկո-պոս դատապարտեաց զնա, իբր ոչ եթէ վասն նորաձեւ ինչ վարդա-պետութեան նորա եւ ոչ վասն հերետիկոսութեան իւրիք, որպէս այժմ շունքն կատաղիք բարբառէին զնմանէ, այլ զի չկարէին տանել հանդիսակ ճարտարխօսութեան եւ գիտութեան նորա,,: Եւ երկուք ամօք կանխա-

Digitized by Google

գոյն քան զայն առեր՝ թէ ի բազում ինչ իրս զհետ գնաց Որոգինի, զայնր՝ զորմէ տխմարաց է ժխտել թէ չէցէ նա մեծ քան զամենայն վարդապետս եկեղեցւոյ յետ Առաքելոց։ Այլ վաղ փոփոխեցան կարծիքն։

Քանզի յամի 394 եկն Ատերբիոս ոմն անուն անհնարին հակառակորդ Որոգինեայ յԵրուսաղէմ, և մատուցանէր չարախօսութիւն մանաւանդ զՌուփինոսէ՝ թէ ի մոլորութիւնս Որոգինեայ մոլորեալ է։ Ոչ ինչ ետ ընդ այն պատասխանի Ռուփինոս, սակայն թուի եթէ հաւանեցաւ իմն յայնժամ Յերոնիմոս բանիցն Ատերբեայ վասն Որոգինի։ Քանզի յետ սակաւ ինչ միոյ իբրեւ դէպ լինէր Եպիփանու երթալ յԵրուսաղէմ և անդ ի վիճակին Յովհաննու ձեռնադրել զՊաւղինիանոս զեղբայր Յերոնիմեայ յերիցութիւն և քարոզել եւս յեկեղեցւոջ ընդդէմ Որոգինի, և այնպէս գրգռէր գժտութիւն ընդ Յովհան Երուսաղեմայ հայրապետ և ընդ Եպիփան, Ռուփինոս կայր ի կողմն Յովհաննու և Յերոնիմոս՝ յԵպիփանու, մինչև քակել իսկ Յերոնիմեայ և ընդ նմա վանականացն Բեթղահեմի ի միաբանութենէ Յովհաննու։ Միջնորդ ի մէջ անկաւ Թէոփիլոս եպիսկոպոս Աղեքսանդրիայ առաքելով զԻւր երէց զԻսիդորոս յԵրուսաղէմ և առաւ Ս. Մեղանիա երէցն տիկին հռոմայեցի, և հաշտեցան ընդ միմեանս ոչ միայն Յովհան և Յերոնիմոս այլ և Ռուփինոս ընդ Յերոնիմեայ (397)։

Լինել լինէր խաղաղութիւն՝ բայց սակաւաժամանակեայ. քանզի և ոչ մի կողմն ի կողմանցն թողոյր զկարծիսն։ Մեկնեալ Ռուփինեայ յԻտալիա՝ թարգմանեաց ի խնդրոյ բարեկամացն զպատասխանատուութիւն Պամփիլեայ վասն Որոգինեայ, և յետ այնորիկ զգլխաւորն ի գործոց անտի Որոգինեայ զՎասն սկզբանց գիրսն ի լեզու հռոմայեցի, և գովէ ի յառաջաբանի անդ մեծանուն զՈրոգինէս ի բանից անտի Յերոնիմոսի. բայց թարգմանութիւնն էր առանց հաւատարմութեան, քանզի որպէս ինքնին իսկ ի յառաջաբանին խոստովան լինի՝ փոփոխեալ իմն է Ռուփինոս ուր ուրեք օտար ինչ բանս կամ դժուարալուրս գտեալ է։ Կասկած առեալ Յերոնիմեայ թէ կամի իմն այնու Ռուփինոս և զնա ցուցանել հաղորդ մոլորութեանցն Որոգինի, գրեալ աղաչէր զնա այսուհետև դադարել յայնպիսի յերկբայն գովութեանց։ Յետ սակաւ ինչ միոյ ինքն Յերոնիմոս ևս թարգմանեաց հաւատարմութեամբ զնոյն գիրս ի խնդրոյ բարեկամացն իւրոց Պամմաքիոսի և Ոկէանոսի՝ որք հակառակ կամաց նորա տարածեցին զօրինակն ի Հռոմ։ Զայրացաւ գժգմեցաւ Ռուփինոս և հան գիր պատասխանատուութեան անձինն՝ հակառակ Յերոնիմեայ լի բանիւք սաստկութեան և ընկալաւ ի Յերոնիմեայ նոյնպէս սաստկութեամբ պատասխանի (402)։ Ի նմին ժամանակի և Անաստասիոս քահանայապետ Հռոմայ հան վճիռ ընդդէմ մոլորութեանցն Որոգինի,

Digitized by Google

քանզի սատակեցեալ իմն էր հակառակութիւնն ի Հռոմ եւ ստիպեցաւ Ռուփինոս ուղղափառ դաւանութեամբ արդարացուցանել զանձն առաջի քահանայապետին (401)։ Այլ ըստ դիպաց իմն՝ անց այն գժտութիւն յԻտալիացւոց անտի յԵգիպտոս եւ անտի ի Կոստանդնուպօլիս, այլ սաստկագոյն եւ բռնագոյն քան զնոյն։

## 97

Թէոփիլոս՝ որ ի կողմն իմն էր Որոգինեայ, ի զատկական թղթին (399) խօսեցաւ սաստիկ ընդդէմ միայնակեցաց Մարդկակերպականաց։ Յայնժամ ի մի վայր ժողովեալ սոքա եւ եկեալ յանապատէ անտի գունդ գունդ յԱղեքսանդրիա՝ սպառնացին զԹէոփիլոս դատապարտել զգիրսն Որոգինի։ Հարկ համարեցաւ անսալ նոցա Թէոփիլոս, սակայն ակամայ։ Բայց ոչ յետ բազում ինչ ժամանակի դէպ լինէր գժտել Թէոփիլեայ ընդ գլխաւորս եկեղեցւոյն իւրոյ՝ ընդ Իսիդորոսի երիցու ծերունւոյ եւ ընդ անուանելոց Երկայն եղբարց վանականաց (այս ինքն՝ Դիոսկորոյ, Ամմոնեայ, Եւսեբեայ եւ Եւթիմեայ)։ Արար նա սիւնհոդոս յԱղեքսանդրիա (401), յորում նզովեցան գիրք եւ կուսակիցք Որոգինեայ, եւ արգելաւ ընթեռնուլ զգիրս նորա, այլ չառին զայն յանձն վանականքն Երկայն եղբարք եւ բազումք ընդ նոսա։

Այնուհետեւ եմուտ Թէոփիլոս զինու զօրութեամբ յանապատ անդր, մերժեաց հան անտի զամենայն վանականս որոգինեանս, որք եւ անկան ի կողմանս Պաղեստինացւոց։ Այլ անտի եւս հալածէր զնոսա գրեալ թուղթ առ եպիսկոպոսունս, եւ այնպէս հասին անկան նոքա ի Կոստանդնուպօլիս։ Ընդ ժողովեաց զնոսա Ոսկեբերան խնամով՝ որս իբրեւ 50, եւ առանց առնելոյ ընդ նոսա հաղորդութիւն կցորդութեան՝ կամէր լինել միջնորդ ընդ նոսա եւ ընդ եպիսկոպոսն նոցա։ Գրեաց գիր առ Թէոփիլոս առնել նմա երեսս իբրեւ որդւոյ եւ եղբօր եւ ընդունել միւսանգամ զվանականսն զայնոսիկ ի հաղորդութիւն։ Չառ յանձն Թէոփիլոս զմիջնորդութիւնն. Արձակ դատաւոր եմ, ասէ, իմոց վանականաց։ Տագնապեալ այնուհետեւ վանականացն՝ հակառակ խրատու հայրապետին դարձան ամբաստանութեամբ առ դշխոյն Եւդոքսիա աղաչել զի ստիպեսցէ զԹէոփիլոս ինքնին գալ եւ արդարացուցանել զանձն առաջի Ոսկեբերանի։ Չոգաւ հրեշտակ յԱղեքսանդրիա հրամանաւ տիկնոջն ածել զԹէոփիլոս։ Չկարաց ընդդէմ դառնալ Թէոփիլոս, սակայն յապաղեաց զերթն՝ մինչեւ յինքն արկ զԵպիփան եւ զայլ եւս եպիսկոպոսունս, եւ նիւթեաց յառաջագոյն զամենայն հակառակ Ոսկեբերանի։ Այսպէս Եպիփան միամտութեամբ իմն ըստ խրատուն Թէոփիլեայ՝ արտաքեալ սիւնհոդոս ի

օրէնք. այս իսկ է ազաքինութեանն մխիթարութիւն,,: Ընդդանեաց զզարծան Թէոփիղեայ, չընկալեալ զկանոնն զայն ժողովոյն Անտիոքայ՝ ոչ ինչ եկեղեցական կանոն ճանաչելով՝ բայց ի կանոնացն Նիկիայ (եւ Սարդիկեայ):

Այլ բազում եպիսկոպոսունք եւ երիցունք, կէսք վասն հալածանացն եւ կէսք իբրեւ ամբաստանք, համանէին ի Հռոմ զաժիւ աքսորանաց հայրապետին որոց. առաջինքն ի նոցանէ էին Կիւրիակոս Սինադայ Փռիւգացւոց, Եւղիսիոս Ապամէայ Բիւթանացւոց. իսկ Դեմետրիոս Պեսինունտայ՝ շրջեալ ընդ կողմանս արեւելից եւ ամենայն ուրեք ցուցեալ զթուղթ Իննովկենտեայ առ երանելին Ոսկեբերան՝ ծանուցանէր զհաղորդութիւն նորա ընդ Հռոմայ. երեր սա ընդ իւր եւ թուղթս յերիցանց եկեղեցւոյն Անտիոքայ, ուր կացուցին ընդ նոյն ժամանակս Թէոփիլեանքն Պորփիւրիոս զոմն հակառակաթոռ Կոստանդիոսի հայրապետի որ յաջորդեաց զՓղաւիանոս († 404). յայտ առնէին թուղթքն զկցորդութիւն հաղորդութեան նոցա ընդ աթոռոյն Հռոմայ, եւ մատուցանէին ամբաստանութիւն զՊորփիւրեայ (404):

Բերեալ էր եւ Կասսիանոս սարկաւագ եկեղեցւոյն Կոստանդնուպօլսեայ թուղթ ի կղերէն եւ ի ժողովրդենէն առ քահանայապետն Հռոմայ: Գրեաց առ սոսա Իննովկենտիոս պատասխանի մխիթարելով եւ քաջալերելով զնոսա իբրեւ հայր ամենայն քրիստոնէից, եւ քաջալերէր զնոսա յուսով տիեզերական ժողովոյ: Գրգռեալ ի քահանայապետէն եւ Ոնորիոս ինքնակալ արեւմտից գրէր յանդիմանելով իմն զեղբայր իւր զԱրկադ վասն իրացն անցելոց. "Այսմ ամենայնի, ասէ, պարտ էր եպիսկոպոսական դատաստանաւ վճարել, զի եպիսկոպոսաց անկ է մեկնութիւն եւ կատարումն աստուածեղէն իրաց, իսկ մեզ՝ հնազանդութիւն առ հաւատս: Երկոքին կողմանքն առաքեցին հրեշտակութիւն յԻտալիա առ քահանայս յաւիտենական քաղաքին (Հռոմայ). այս պարտ էր մեզ ամենեցուն միաբանն դատաստանի,,: Եւ արդեամբք իսկ սահմանեցաւ ի կայսերացն տեղի ժողովոյն Թեսաղոնիկէ՝ ըստ առաջարկութեան ժողովոյն Հռոմայ՝ որ գումարեցաւ վասն նորին իրաց յեպիսկոպոսաց համօրէն արեւմտից (405). եւ առաքեցան հրեշտակք քահանայապետին վասն ժողովոյն այնորիկ յարեւելս: Այլ զուր էր ամենայն. չթողին նոցա թշնամիքն ելանել ի Թեսաղոնիկ, եւ ի Կոստանդնուպօլիս հասեալ՝ արգելեալ փակեցան առանձինն ուրեք, եւ առան ի նոցանէ բռնութեամբ թուղթք նոցա, եւ իբրեւ չկարացին ածել զնոսա կաշառօք հաղորդել ընդ Ատտիկեայ՝ արձակեցին թշնամանօք ի բաց (406):

Եւ զի ամենեւին կտրեսցեն զՈսկեբերան յայսպիսի հաղորդութենէ թղթոց եւ պատգամաւորութեանց՝ տարան հեռագոյն եւս

առնել զնա ի Պիտիւս՝ յարևելեան ծայրեզերս Պոնտոսի ի մեր-ձեն եզերս հռովմէական պետութեան։ Բայց չեհաս անդր սուրբն. ամենևին լքեալ պարտասեալ հասանէր ի Կոմանա. առաքէր տագնապէր զնա առաջնորդ նորա անագորոյն՝ խաղալ յառաջ, այլ այն ինչ անցեալ զԿոմանաւ իբրև կէս ժամու գնաց ճանա-պարհի՝ հարկեցաւ դառնալ յետս, զի մերձ ի վախճան էր երանե-լին. անդ յետ հաղորդելոյ կենարար մարմնոյն Քրիստոսի և ա-ղօթելոյ միասին ընդ մօտակայիցն՝ հանէր զոգին հանդարտիկ բարբառելով և ի մահուան ժամու զայն զոր ի կեանս կրկնէր առէջ՝ թէ «Ի վերայ ամենայնի օրհնեալ լիցի Աստուած. Ամէն»։ (14 Սեպտ. 407)։

Այլ իսկ ամենայն եպիսկոպոսունք և աթոռն Հռոմայ կարեալ էին զհաղորդութիւնն ոչ միայն ընդ Արկադեայ այլ և ընդ եպիսկոպոսաց Ասիոյ, Թրակիոյ և Եգիպտոսի. այլ յետ մահու հայրապետին սրբոյ (407) դնէր քահանայապետն պայման հաղորդութեան եպիսկոպոսացն ընդ հռովմէական եկեղեցւոյ՝ զա-նուն սրբոյն կարգել ի կարգս անուանց հայրապետացն յիշելոց ի պատարագի։ Արկադիոս յետ արգելոյ զքահանայապետն բազում անգամ հրեշտակութեամբ, ընկալաւ զհաղորդութիւնն ընդ ա-թոռոյն Պետրոսի՝ միայն կատարելով զպայմանն. այսպէս և Աղե-քսանդրոս յաջորդ Պորփիւրեայ († 414) յաթոռն Անտիոքայ, և Կիւրղոս յաջորդ Թէոփիլեայ († 412) յաթոռն Աղեքսան-դրիոյ։ Իսկ զԹէոփիլեայ ևս պատմի ի Յովհաննէ Դամասկացւոյ՝ ի մերձենալ ժամու կենացն ապաշխարեալ։

Յետ ապա ուրեմն (438) ածաւ և մարմին սրբոյն ի Կոստանդ-նուպօլիս, անցուցանելով զնա ժողովրդեանն ընդ Ելլեսպոն-տոս որ շողայր ի լուսաւորութենէ անթիւ ճրագացն։

Այլ վախճանեալ էր դշխոյն Եւդոքսիա անդէն յամի եր-կրորդ աքսորանաց հայրապետին սրբոյ (404) և կայսրն Արկադիոս վախճանէր ի յաջորդ ամի մահուան հայրապետին (408)։ Եղեն յԵւդոքսիայ դստերք չորք և ուստր մի. Փլակիլլա (ծն. 397) որ եղև վաղամեռիկ, Պուղքերիա (19 Յունու. 399), Արկադիա (9 Յունու. 400), Թէոդոս (Յունու. կամ 10 Ապր. 401) և Մա-րինա (10 կամ 11 Փետր. 403)։

98

ԶԱրկադիոս յաջորդէր նորին որդի պատանեակն 8ամեայ Թէոդոսիոս Բ. (408—450)։ Կայր նա ամս 6 ընդ խնամակալու-թեամբ Անթեմիոսի վերակացուի՝ որ էր այր աջողակ, քաջամտիկ և արդար, և պաշտպանէր տէրութեանն յերեսաց թշնամեացն և խռովութեանց և զօրութեամբ զինու։ Նա նախ մեծաց ա-

ռաջնորդէր քոյր կայսերն Պուղքերիա՝ որ երկուք ամօք եւեթ երիցագոյն էր քան զեղբայրն, սակայն այնպէս իմն եցոյց հանճար եւ իմաստութիւն, մինչեւ յանձն արար նմա ծերակոյտն զառաջնորդութիւն տէրութեանն՝ կոչեցեալ զնա Օգոստա (414)։ Յանձն առ Պուղքերիա՝ իբր ոչ եթէ հրապուրանօք ինչ փառացն, այլ վասն զեղբայրն յառաջնորդութիւն տէրութեան կրթելոյ եւ առնելոյ զնա միջամտեալս ի գործս։ Իսկ ինքն սիրէր զկեանս բարեպաշտութեան, ուխտեաց նա Աստուծոյ պատարագ մշտնջենաւոր կուսութեան, եւ կարգեալ ի պալատանն ժամս տուընջեան եւ գիշերոյ՝ կայր պատկառ երգոց սաղմոսաց հանդերձ կրտսերագոյն քերբքն Արկադիաւ եւ Մարինաւ, յորս եկեալ յարէր եւ Թէոդոս։ Արտաքոյ ժամուցն այնոցիկ էին ժամք խորհրդականութեանն յորում նստէր միշտ ինքն Պուղքերիա գահերէց։ Երանելի եւ երջանիկ էին առ նովաւ ազգք եւ ազինք։

Ջանայր նա զի եւ եղբայրն վայելեսցէ ի բարւոք կրթութեան, մանաւանդ ուսանիցի զճշմարիտն աստուածպաշտութիւն։ Սակայն եւ այնպէս գտաւ Թէոդոս տկար ոք եւ անհաստատ եւ յօժարագոյն յեկեղեցական մաքառմունս՝ որոց չէրն իսկ խելամուտ։ Այնչափ կարճահաս էր մտօք՝ զի ի նզովել զնա վանականի ուրուք աննշանի եւ անամօթի՝ զարհուրեցաւ անհնարին, եւ զուր ջանացին խելամուտ առնել զնա թէ ընդ վայր են այն նզովք, մինչեւ ածաւ նոյն վանական զի լուծցէ զնզովսն։ Բայց է եւ բազում եւս ինչ՝ որ գովի ի նմա, զոր քոյր նորա ետ գործել։

Ամուսնացոյց զնա Պուղքերիա յամի 421 ընդ բարենշանն եւ իմաստունն Աթենայիսայ դստեր Լեւոնդիոսի փիլիսոփայի աթենացւոյ, զոր առեալ դարձոյց ի քրիստոնէութիւն յորժամ եկեալ էր պահանջել ի նմանէ առնել իրաւունս ի մէջ եղբարց իւրոց որ չտային նմա զբաժին ժառանգութեան հօրն իւրեանց, եւ անուանեցաւ Աթենայիս՝ Եւդոքսիա կամ Եւդոկիա ի յիշատակ առաջնոյն Եւդոքսիայ։

Սոյն յամի իբրեւ 421՝ մղէր Արտաբուրիոս զօրավար ճակատս ընդ Պարսից եւ կատարէր յաղթութիւնս եւ ի դաշինս խաղաղութեանն եդաւ պայման ազատութեան վասն հաւատոցն քրիստոնէից։ Միւս եւս դաշամբք մասն մի Հայոց աշխարհին յարեցաւ ի պետութիւնն Հռոմայեցւոց. իսկ միւս մեծ կէս աշխարհին մնաց ի ձեռս Պարսից, զորոց յետոյ մի ըստ միոջէ։ Խափանեցան եւ ասպատակք Հոնաց առ ժամանակ մի՝ զի ետ նոցա կայսրն հարկ առաւելագոյն՝ որպէս խնդրէինն (442)։

Իսկ այլ եւս մանր պատմութիւնք Թէոդոսեայ Բ. ածեն զմեզ յայլ եւս եկեղեցական գժտութիւնս (ի Նեստորականութեանն եւ յԵւտիքականութեան) ընդ որոց բազում իմն արտաքին եւ ներքին կցորդութիւն ունէր Պեղագեանն գժտութիւն որ

Digitized by Google

յառաջ քան զնոսա յուզեաց ոչ միայն զարեւմուտս այլ եւ զարեւելս ոչ սակաւ։

# 99

Պեղագիոս ոմն վանական Բրիտանացի եկեալ ի Հռոմ (400) լինէր մեծանուն վարուքն եւ գեղեցիկն գիտութեամբք, զորոց վկայէ եւ Օգոստինոս իսկ, թէպէտ եւ Որոսիոս եւ Յերոնիմոս ադէտ եւ զեղխ անուանեն, եւ արդեամբք իսկ չէր ազատ ի կեղծաւորութենէ։ Ուղեկից նորա եւ աշակերտ մտերիմ էր մեւս եւս վանական Կեղեստիոս անուն, որ յառաջին խօսնակ էր (զոր Օգոստինոս սուր միտք[1] կոչէ)։ Միաբան ընդ սմա տարածանէր Պեղագիոս ի Հռոմ խաղաղիկ զկարծիս վարդապետութեան իւրոյ զսկզբնականն մեղաց եւ զշնորհաց (մանաւանդ ի մեկնութեան առ Հռոմայեցիս թղթոյն)։

Պեղագիոս (ըստ Մարիայ Մերկատորեայ) ի բանից ինչ Ռուփինոսի ումեմն ասորի երիցու, աշակերտի Թէոդորի Մոփսուեստացւոյ, առ զսկիզբն ամբարտաւան վարդապետութեան իւրոյ՝ որոյ դիտաւորութիւն իմն թուի հաստատել զպատճառս ծուլացելոցն որ ասեն՝ թէ չիք մեր բաւական զօրութիւն ի կատարումն հրամանաց քրիստոնէութեան։ Բովանդակի ուսումն նորա ի յօդուածս յառաջադրութիւնս. Մեղք Ադամայ նմա միայն գործեցին վնաս. անցանել մեղաց նորա յայլս (մեղքն սկզբնական) չմիաբանէ ընդ բարութեանն Աստուծոյ. այլ մանաւանդ ամենայն մարդ եւ ըստ ոգւոյն եւ ըստ մարմնոյն այնպէս այժմ ծնանի, որպէս Ադամն էր. նա ուանիկ եւ մահն բնական խնդրանէ այնպէս էր կարգեալ յԱստուծոյ, ուստի եւ է իսկ ինչ բնական վասն մարդոյն, յայն սակս լինելոց էր մահ եւ առանց իսկ մեղաց Ադամայ։ Իսկ չարն ընդ որում կռուելոց են ամենայն մարդիկ՝ է նմանելոյ եւեթ եղեւ, եւ ասելն թէ «Ամենեքին մեղան յԱդամ» (Հռոմ. Ե. 12) նշանակէ թէ «Ամենեքին նմանող եղեն Ադամայ մեղանչելովն». ուր կարող էին ըստ բնական զօրութեանն իւրեանց կեալ կեանս առանց մեղաց։ Առ ընդդէմ դառնալոյ չարին եւ յաղթելոյ՝ բաւական է, ասէ, բնական կարողութիւնն առ բարոյական ինչ գործ (զոր կարողութիւն անուանէր Պեղագիոս՝ շնորհս), եւ առ բարւոքն վարել ողջախոհութեամբ եւ կամ առ ածելոյ յարդիւնս զկարողութիւնն զայն՝ տուեալ են, ասէ, որպէս Հրէից օրէնքն, նոյնպէս առանձինն իմն քրիստոնէից՝ վարդապետութիւնն եւ տպաւորին օրինակն Կենարարին, զոր դարձեալ Պեղագիոս անուանէր շնորհս. եւ յայն սակս իսկ ի ստիպել ուրուք զնա մեկնել զվարդապետութիւն իւր ճշգրտագոյնս՝ կարէր համարձակ ասել եթէ շնորհքն Աստուծոյ կարեւոր են առ ամենայն, ուր ընդ կարեւորութեան շնորհացն ըստ մտաց եկեղեցւոյ՝ յայտնապէս կռուէր։ Իսկ Կեղեստիոս առանձինն իմն ընդ սկզբնական մեղաց ոգորէր։

Ընդ այսպիսի ուսման ել ի կռիւ այր մի՝ որ անդէն ընդ ամենայն անցս կենաց իւրոց անձինն իսկ փորձով առեալ էր քաջ ի միտ զմոլորութիւն այնպիսի վարդապետութեանն եւ զշնոր-

1 Acerrimi ingenii.

հայն զօրութիւն եւ զպիտոյս, այս ինքն՝ Աւրելիոս Աւգոստինոս, այրն երեւելի ի համօրէն պատմութեան՝ ըստ ամենայն իսկ մտաց։

Ծնաւ Աւգոստինոս (13 Նոյ. 353) ի Տագաստէ Նումիդացւոց ի հեթանոս հօրէ՝ որ էր Պատրիկիոս անուանեալ (խորհրդակից ատենի խորհրդականաց քաղաքին), սաստիկ բարուք եւ անխտիր առ կրօնս, եւ ի քրիստոնեայ մօրէ որ էր Մոնիկա՝ զարդ կանանց ժամանակին, կրթեալ ի մանկութենէ յուսումն, բարեպաշտօն, ժիր յամենայն գործս քրիստոնէութեան, որ ոչ միայն հաւանեցոյց դարձոյց զայր իւր ի քրիստոնէութիւն սակաւ ինչ յառաջ քան զվախճանն, այլ եւ զսէրն եւս քրիստոնէական հաւատոյն արկեալ էր ի մատաղագոյն միտս որդւոյն, որ յետուստ եկն ի բոյս։ Ուստի Աւգոստինոս ամբառնալ աղաչանօք զձեռս առ Աստուած՝ որ ցուցեալ էր նմա իբրեւ հայր յաճախագութ որ լսէ աղաչանաց մարդկան եւ կարօտութեան նոցա լինի օգնական, բայց զայն մանաւանդ աղաչէր Աւգոստինոս՝ զի մի արբցէ գան ի դպրոցին, այլ իբրեւ եւ այնպէս գանն յաճախէր՝ չլինէր այնուհետեւ այնչափ ինչ վստահ ի զօրութիւն աղօթիցն։

Զառաջինն չսիրէր զուսումն մանաւանդ զսկզբունս դպրութեանն եւ յօժարէր առաւել ի խաղ։ Այլ ի յառաջել ամացն՝ զարթեաւ ի նմա ուսումնասիրութիւն հրապուրեալ մանաւանդ ի քերթողականութենէ (այս ինքն ի դասական բանասիրութենէ)։ Այնուհետեւ տեսեալ զնա հօրն աշողակ ի ճարտարխօսութիւն՝ եդ ի մտի պատրաստել զնա ի պատիւս տէրութեան եւ յայն սակս առաքեաց զնա ի դպրոց ի Մադաւրա Նումիդացւոց, ուր ի մէջ հեթանոսական բազմութեանն եւ լկտի ատնից ամենեւին ապականեալ զերծաւ պատանեակն 16ամեայ. ապա (յետ հօրն վախճանի) եկն Աւգոստինոս ի Կարքեդոն ի բուն գլխաւոր տեղի ուսմանց Ափրիկեայ եւ կայան անկարգութեանց. անդ պատանեակն որ ի բնէ առոյգ եւ ղուարթ էր եւ լի ցնորիւք մտաց՝ մատնեցաւ վտարանդի ի խաղս եւ ի ռոնս անամօթս եւ ի թատրոն լկտի ի մէջ ուսումնակցացն անառակելոց, նա աւանիկ ըստ օրինակի հասակակցացն՝ 19ամեայ ծնանէր որդի (զԱդէոդատոս), սակայն խիղճ մտացն խիթէր զնա սաէպ։ Յետ այնորիկ պատահեալ գրոցն Կիկերոնեայ՝ Հորտենսիոս անուն, հարաւ ի սէր գիտութեանց՝ կամեցեալ լինել նովիմբ նշանաւոր, բուռն հարկանէր զերեւելի երեւելի գրոց՝ ուսանել զնոսա, որպիսի ինչ զՍտորոգութիւնսն Արիստոտելեայ, յորս զվարդապետսն գտէր, եւ անցանէր յուսողութիւն, յաստեղագիտութիւն, յերաժշտութիւն եւ յայլ եւս նոյնպիսիս։ Ամենայն իմիք կամէր լինել տեղեակ ի փիլիսոփայութեան եւ քննայր գտանել յօրինաւորութիւն[1] ինչ որ պարզութեամբ զամենեքումբք անցուցանիցէ։

Թէպէտ եւ ի սաէպ աղաչելոյ մօրն եկն եւ յընթերցումն գրոց սրբոց, այլ չթուեցան նմա գեղեցիկ եւ ճարտարախօս բանքն եւ չգտէր նորա զօրութիւն անսալոյ թելադրութեանց նոցա։ Բայց սակայն չկամէր իմն ամենեւին ի հաւատոյ անտի մօրն հրաժարել, այնու՝ զի որպէս ինքն Աւգոստինոս ասէ, յայն ածեալ էր զնա մայրն զի որ ինչ զՔրիստոսի անունն չունէր՝ չէր բաւական բովանդակ գրաւել զսիրտ նորա յինքն։ Այսպէս ետ նա զանձն ի բանս Մանիքեցւոցն որ խոստանային “ցուցանել նմա զկատարեալն ճշմարտութիւն” քրիստոնէութեան։ Առ զվարդապետութիւն նոցա եւ ուսուցանէր իսկ, մինչեւ արկանելոյ

1 Système.

կենտիոս Ա., բայց ինքն եւ մեկնեցաւ յԷփեսոս առնուլ ձեռնադրութիւն երիցութեան:

Աւգոստինոս որ գործակից էր դատապարտութեան նորա, առնոյր առաքէր զՈրոսիոս զաշակերտ իւր մտանել զհետ Պեղագեայ ի կողմանս արեւելից: Իսկ աստ վաղ յարուցեալ էր ի վերայ Պեղագեայ Երոնիմոս մանաւանդ վասն վարդապետութեան նորա՝ թէ կարող է մարդ ամենեւին ազատ ի մեղաց լինել՝ եթէ կամի: Գումարեցաւ ժողով յԵրուսաղէմ (415), Յովհաննէս եպիսկոպոս Երուսաղեմայ մերձագոյն ի Պեղագիոս թուէր, եւ զի ոմանք ի հայրցն՝ կամ յունարէն կամ հռոմայեցի չիմանային, սահմանեցաւ առաջարկութեամբ Որոսեայ, զի վճիռ դատաստանին յանձն լինիցի քահանայապետին Հռոմայ Իննովկենտիոսի Ա. եւ Պեղագեայ հրամայեցաւ լուռ լինել մինչեւ ցորոշումն նորացն:

Իսկ եւ իսկ յետ այնորիկ անդէն ի նմին ամի զհետ հասանէին Պեղագեայ ի կողմանցն Գաղղիացւոց Հերոս եպիսկոպոս Արելատայ եւ Ղազար եպիսկոպոս Այս քաղաքի մերժեալք յաթոռոց իւրեանց վասն իրիք յանցուածոց: Դոցուն ողքա մուրհակ ամբաստանութեան առ Եւղոգիոս եպիսկոպոս Կեսարիայ Պաղեստինացւոց վասն մոլորութեանցն Պեղագեայ եւ Կեղեստիոսի. գումարեցաւ ժողով 14 եպիսկոպոսաց ի Դիոսպոլիս (կամ Լիդդա): Բայց դատախազքն չկարացին գալ ի ժողովն՝ զի մին միւսոյն հիւանդութեամբ խափանեցաւ. նմին իրի եւ Պեղագիոս խորամանգութեամբ զերծաւ՝ մեկնելով զբանս ինչ ի բանից իւրոց յուղղափառ միտս եւ զայլն ուրանալով թէ ասացեալ իցէ եւ նզովելով միանգամայն միաբան ընդ եպիսկոպոսացն՝ 1. թէ մահկանացու ստեղծեալ իցէ Ադամ, եւ թէ նմա եւեթ վնասեալ իցէ մեղք նորա, 2. թէ չիցեն պիտոյ շնորհք վասն միոյ միոյ ի գործոց, եւ թէ շնորհքն ոչ այլ ինչ իցէ՝ բայց անձնիշխանութիւնն, օրէնքն եւ վարդապետութիւնն: Այսպէս պատրեալ եպիսկոպոսացն՝ եհան վճիռ թէ ուղղափառ է Պեղագիոս:

Մինչդեռ Պեղագիոս ընդ ամենայն տեղիս պարծանօք հռչակէր զիւր յաղթութիւնն եւ զընդունելութիւն եպիսկոպոսացն՝ անտուստ յԱփրիկեցւոց աշխարհին ի խորագոյն իմն քննութիւն անկաւ վարդապետութիւն նորա: Զի իբրեւ հասին անդր Որոսիոս եւ այլ եւս արեւմտեան եպիսկոպոսունք յարեւելից՝ քննեաց Աւգոստինոս զգործս ժողովոյն Դիոսպոլեայ եւ եցոյց զերկդիմի միտս Պեղագեայ. գումարեցաւ բազմամբոխ ժողով ի Կարքեդոն (416) իբրեւ 60 եպիսկոպոսաց եւ միւս եւս ժողով ի Միղեւէ՝ առաջնորդութեամբ Աւգոստինեայ, մերժեցան Պեղագիոս եւ Կեղեստիոս ի հաղորդութենէ եկեղեցւոյ եւ առաքեցին ժողովքն երկոքին թուղթս առ Իննովկենտիոս քահանայապետ Հռոմայ՝ զի "վճիռքն իւրեանց իշխանութեամբ առաքելական աթոռոյ առաւե-

Digitized by Google

լաղայն ունիցին զօրութիւն„: Գումարեալ ժողովս Միլեւիտանոս, զի որպէս արժանն էր դիմեցին յաթոռն Պետրոսի եւ յայս առաջ թէ մերժեալ եւ ստապացեալ են Պելագիոս եւ Կելեստիոս ի հաղորդութենէ եկեղեցւոյ: Այնուհետեւ ուրախութեամբ բարբառէր Աւգոստինոս, յուսացեալ թէ առցէ վաղ եւ վաղ վախճան մոլորութիւնն. «Ահա, ասէր ցժողովուրդն, երկու ժողովք զայն զոր վասն խնդրոյ սահմանեցին՝ առաքեցին առ աթոռն առաքելական, անտի եկին թուղթք հաստատութեան. ապա ուր դատ դատաստանն, այլ երանի թէ եւ մոլորութիւնն„:

Բայց սակայն իբրեւ ի միւսում ամի պապագահէր զԻննովկենտիոս Զոսիմոս (417—418), միաբանեալ Կելեստիոս եւ Պելագիոս յուսացան մտանել ի հաղորդութիւն: Եւ առաջնումն խոկ Կելեստիոս յետ կալոյ ամս ինչ յԵփեսոս եւ անտի փախուցեալ ի Կոստանդնուպոլիս, իբրեւ եւաս թէ մերժեցաւ յԱտտիկոսէ հայրապետէ վասն մոլար ուսմանց եւ զի զգուշացոյց նա գրով զեպիսկոպոսունս Ասիոյ, Թեսաղոնիկեայ եւ Կարքեդոնի, նեղեալ յամենայն կողմանց՝ բողոքեաց առ Զոսիմոս քահանայապետ: Սա՝ քանզի չէր հմուտ անցից նորա, ժողովեալ սինհոդոս՝ քննեաց զդաւանութիւնն՝ զոր մատուցանէր կեղծաւորութեամբ Կելեստիոս, թէ զոր ինչ խօսեալ իցէ վասն խնդրոյն յաւելորդ յանձն առնէ առաքելական դատաստանի նորա, զի եթէ մոլորեցեալ ինչ մոլորութիւն ի ներքս սպրդեալ իցէ՝ առաքելական վճռով նորա ուղղեսցի. դաւանիմք, ասէ, թէ պարտ է մանկանց առնուլ կնիք ի թողութիւն մեղաց ըստ օրինաց կաթուղիկէ եկեղեցւոյ եւ ըստ բանից Աւետարանին, քանզի միայն մկրտելոցն սահմանեաց Տէր զարքայութիւն երկնից, եւ յարժամ ասեմք թէ մանկունք ի թողութիւն մեղաց մկրտին, ոչ զայն կամիմ հաստատել թէ մեղքն սերնդեանք իցէ, որ հեռի է ի կաթուղիկէ եկեղեցւոյ. քանզի մեղք ոչ եթէ ի մարդոյն ծնանին, զի չէ այն յանցանք բնութեան՝ այլ կամաց: Զոսիմոս յետ բազում խնդիր հարցանելոյ զնա՝ առաքէր առ եպիսկոպոսունս Աֆրիկեցւոց չլինել վաղվաղ ի հաւատալ ամբաստանութեանցն եւ կոչէր խոկ զնոսա՝ գալ ցուցանել զդատախազութիւնսն ընդդէմ Կելեստիոսի: Եւ իբրեւ այն ինչ յղեալ էր զայն պատգամ Զոսիմոսի (417)՝ հասանէր առ նա թուղթ ի Պելագեայ հանդերձ մեծաւ եւս թղթով ընծայութեան Պրայիղոսի եպիսկոպոսի Երուսաղէմի յաջորդին Յովհաննու եւ էր ընդ նմին դաւանութիւն Պելագեայ հանգոյն Կելեստեայն, պատ ի պատ ինչ բանիւք զսկզբնական մեղաց եւ զշնորհաց. «Այնպէս դաւանեմք, ասէ, զանձնիշխանութիւնն՝ զի եւ զայս ասեմք թէ կարօտ միշտ աստուածեղէն օգնականութեանն եմք, եւ ոչ միայն նոքին մոլորեալ են որ ընդ Մանեայ ուսուցանեն թէ չկարէ մարդն խորշել ի մեղաց, այլ եւ այնոքիկ որ ընդ Յո-

թեան Պեղագեանց՝ արկանել ձեռնագիր թղթոյն այնորիկ, նոյնպէս եւ Ոնորիոս կայսր հան հրամանս[1] (418—421) մերժել զՊեղագիոս եւ զԿելեստիոս ի հռոմէական սահմանաց. զտեղւոյ եւ զժամանակէ վախճանի նոցա չէ յայտ: Միայն 18 եպիսկոպոսունք չառին յանձն արկանել ձեռնագիր եւ աքսորեցան, յորս հոյակապ էր Յուլիանոս եպիսկոպոս Էկղանոնի Ապուլիացւոց հմուտն եւ գիտուն, որ բազում գրովք մաքառէր ընդ Օգոստինեայ՝ ընդ որում բարեկամութեամբ էր երբեմն: Սակայն բազում իւիք մեղմականագոյնս խորհէր նա քան զՊեղագիոս եւ մօտեալ իմն ի Կէս պեղագեանս: Իսկ ի վերայ հակառակորդացն իւրոց արկանէր մանիքեական մոլորութիւնս, որպէս թէ՝ կարծել արմատական ինչ չարութիւն ի մարդկեղէն բնութեան, ատագանել զամուսնութիւն, եւ վարդապետութիւն մերձաւոր ի ճակատագրականութիւն[2]: Իբրեւ եւս նա հանդերձ ընկերակցօք աքսորանացն թէ զուր է բողոքել ի թղթոյ անտի Զոսիմեայ քահանայապետի առ տիեզերական ժողով, եկին գնացին ի Կիլիկիա առ Թէոդորոս Մոփսուեստացի: Բայց եւ անդ ի գաւառական սիւնհոդոսի դատապարտեցան: Յետ մահուան Զոսիմեայ դարձան յիտաղիա զի քննեսցէ զդատաստան նոցա Կելեստինոս քահանայապետ, եւ իբրեւ մերժեցան ի նմանէ՝ դէմ եդին միւսանգամ յարեւելս. բայց անդէն ի Կոստանդնուպօլիս հան զնոսա հալածական Ատտիկոս հայրապետ: Թէպէտ եւ նորին երկրորդ յաջորդ Նեստորիոս միտագոյն էր ի նոսա վասն ներքին խնամութեան մոլորութեանն, այլ իբրեւ հասին առ նա հրամանք քահանայապետին Կելեստինեայ, եւ Մարիոս Մերկատոր բարեկամ Օգոստինեայ դիպեալ անդէն ի Կոստանդնուպօլիս ունէր զդէմ մոլորեցուցչացն, հան յայնժամ Թէոդոս Բ. օրէնս՝ մերժել զնոսա ի քաղաքէն (429): Եւ յետ այնորիկ ժողովն Եփեսոսական (431) դատապարտէր զվարդապետութիւն Պեղագեայ եւ Կելեստեայ եւ լինէր անհետ յարեւելս: Քանզի այն մոլորութիւն չեղեւ ինչ մուտ ի ժողովրդեանն, այլ ի մէջ դպրանոց եւեթ էր հակառակութիւնն, մինչեւ Յուլիանու պատրելով իմն զանձն առել յայտնապէս թէ ոչ ընդ եկեղեցւոյ է նմա վէճումն, այլ ընդ երկուց վարդապետաց:

## 101

Իսկ յարեւմուտս մատուցաւ հակառակութիւնն յառաջ սակայն յայլ իմն մեղմագոյն կերպարանս, եւ առանձինն՝ վասն Յառաջասահմանութեան (Նախասահմանութեան): — Օգոստինոս ի մեկնելն իւրում ճշգրտագոյնս զկարեւոր հարկ շնորհացն՝ յաւե-

1 Sacra rescripta (Սակրէք): 2 Fatalismus.

լեալ էր սոսկ եւ զորս առաջին կան։ — Յետ մեղացն Ադամայ ըստ կարգի եւ օրինի՝ հարկ էր ամենայն մարդկան կորնչել. այլ Աստուած ըստ մեծութեան ողորմութեան իւրոյ ի բազմութենէ անտի զանգուածոյ անկելոցն ընտրեաց զոմանս տալ նոցա զշնորհս իւր եւ զպարգեւս խապառն հանդերձելոյ. սոքա ընտրին որդիք Աստուծոյ. եւ եթէ մոլորին եւս նոքա առ սակաւ մի յուղւոյ ճանապարհէ, սակայն դառնան ապաքէն ցապաք ի կատարածին ի շնորհս, (զորս եւ կոչէր Գիտացեալս յառաջագոյն, Սահմանեալս յառաջագոյն[1])։ Իսկ հիմն եւ պատճառ ընտրութեանն այնորիկ ոչ այն է, ասէ, զի յառաջագոյն տեսանէ Աստուած եթէ իւրովի գործակից շնորհացն լինելոց է ոք, եւ ոչ արժանիք ինչ մարդկան՝ այլ ազատ ընտրութիւնն Աստուծոյ (զոր կոչէր Յառաջագոյն սահմանումն առ կեանս[2])։ Նմին հակառակ թողու, ասէ, Աստուած զայլսն յապականութեան անդ իւրեանց եւ ցուցանէ ի նոսա զիւր արդարութիւնն, երթան նոքա ապաքէն ցապաք ի կորուստ, իբր ոչ եթէ զի փրկել կամիցին եւ ոչ կարէին, այլ զի ի չարիսն յամեցան կացին բերկրութեամբ ուրախութեամբ։ Այլ պարտ եւ պատշաճ է մարդոյ խոնարհեցուցանել եւեթ զգլուխ իւր առաջի անքննին դատաստանացն Աստուծոյ որ նոցա ողորմութիւն եւ սոցա արդարութիւն ցուցանէ։ Երբեմն եւս իմն հաստատակագոյն խօսի Աւգոստինոս եւ դնէ երկրորդ իմն յառաջագոյն սահմանումն Աստուծոյ (յառաջասահմանումն առ պատիժս[3]), սակայն յայնժամ ցուցանէ միանգամայն եւ զմեծ խտիր երկոցունց յառաջասահմանութեանցն եւ մեկնէ թէ ոչ զմի եւ զնոյն օրինակ սահմանէ Աստուած առ կեանս եւ առ պատիժս։

Իսկ ափրիկեցի վանականք վանացն յԱդրումետոն հայեցեալ յառաջին իմն խստագոյն բանս Աւգոստինեայ որ վասն անվրէպ իմն մեղանչելոյ մարդոյն եւ անընդդիմակաց զօրութեան շնորհաց[4], զորս հարկ էր ուղիղ մտօք իմանալ եթէ համեմատէր ոք զնոսա ընդ բանից մոլորութեանն Պեղագեայ, ընդ որոց կռուէրն Աւգոստինոս, համարեցան թէ զանձնիշխանութիւն մարդոյն ամենեւին իսկ բառնայցէ Աւգոստինոս ի միջոյ (յամի իբրեւ 427)։ Մինչդեռ երկոքումբք գրովք (վասն շնորհաց եւ անձնիշխանութեան, եւ վասն յանդիմանութեան եւ շնորհաց) կամէր շինել զմիտս նոցա վարդապետն սուրբ, անդուստ ազդ եղեւ նմա (428) ի ձեռն երկուց արանց ժողովրդականաց գաղղիացւոց Պրոսպերայ եւ Հիղարիոսի թէ ի Հարաւային Գաղղիա բազումք ի վանականաց եւ ի կղերականաց խիստ իմն հակառակին զվարդապետութիւն նորա, եւ թէպէտ եւ ընդունին եթէ սկզբնականն մեղօք վնասեցաւ եւ տկարացաւ բնականն զօրութիւն, սակայն այսպէս իմն համարին թէ պարտ է մարդ-

1 Praesciti, praedestinati.
2 Praedestinatio ad vitam.
3 Praedestinatio ad poenam.
4 Gratia irresistibilis.

կեղծն կամաց կանխել յընդունելութիւն գործական հաւատոյ, եւ առաջս լեալ աշխուժիւ զայս յաւելի ի նա շնորհն Աստուծոյ եւ այնուհետ կատարի վերստին ծնունդն։ Իսկ զսկզբնն եւս ի շնորհս անգ. ոչ շնորհացն Աստուծոյ տան, այլ որոշման մարդոյն եւ արժանաւորութեան արդեանց նորա։ Յայն սակս թէպէտ եւ համեմատ բաղմաց ի հարց սրբոց՝ ուսուցանէին թէ վճիռն Աստուծոյ վասն փրկութեան ընտրելոցն՝ է յօրինեալ ըստ կանխագիտութեան արժանաւորութեան արդեանց նոցա, սակայն ոչ զայնպիսի արժանաւորութիւն արդեանց իմանային զոր շնորհօքն Աստուծոյ ստացեալ ուրուք իցէ՝ որպէս հայրքն իմանային, այլ որ ի վերելոյ բնական զօրութեանն լեալ իցէ։

Սոքա կոչեցան Կէս պեղագեանք կամ Մասսիլեացիք։ Գլխաւոր ջատագով մոլորութեանն այնորիկ էր Յովհաննէս Կասսիանոս, (ըստ Գեննադեայ՝ սկիւթացի, ըստ Փոտեայ՝ հռոմայեցի) կրթեալ ի վանականութիւն ի Բեթղահէմ, երթեալ երկիցս տեսանել զվարս վանականաց յԷգիպտոս, եւ ապա (400—405) աշակերտ լեալ եւ մտերիմ Յովհաննու Ոսկեբերանի եւ ձեռնադրեալ ի նմանէ սարկաւագ, եւ ապա ի Մասսիլիա լինէր երէց եւ հայր վանաց անդէն։ Քանզի բուն բանք մոլորութեան նորա էին ի գլխաւոր գիրսն նոր՝ (24) Խօսակցութեանց հարցն[1] (յորում ամփոփեալ էր զամենայն զոր ինչ լուեալ էր ի միայնակեցացն եգիպտացւոց վասն վանական կենաց) անուանեցաւ ի հակառակորդաց իւրոց Խօսակցիչ[2]։ Նոյն ի նմանէ էին եւ Փաւստոս եպիսկոպոս Ռիեզայ, Գեննադիոս Մասսիլեացի եւ բազում վանականք. նա եւ հռչակաւոր մատենագիրն եկեղեցւոյ Վինկենտիոս Լերինացի († յամի իբրեւ 450) կարծի ի նոցա համարել։

Իսկ եւ իսկ իբրեւ լուաւ Օգոստինոս սկսաւ տալ նոցա պատասխանի ընդարձակագոյնս (ի գիրսն վասն յառաջասահմանութեան սրբոց, վասն պարգեւի յարատեւ համբերելոյ), այլ յետ սակաւ ինչ միոյ վախճանեցաւ ի բազմավաստակ կենացն (28 Օգ. 430) ի ժամանակի զի պաշարեալ էր քաղաք եպիսկոպոսութեան նորա Հիպպոն ի Վանդալաց։ Փոխանակ Օգոստինեայ կռուէին այնուհետեւ ընդդ. Մասսիլեացւոց Պրոսպեր եւ Հիղարիոս, յորս յաւելցաւ յետոյ եւ Փուլգենտիոս եպիսկոպոս Ռուսպէ քաղաքի Ափրիկեցւոց († 533) եւ անծանօթ մատենագիր գրոցն “Վասն կոչման հեթանոսաց„ (որ ըստ ոմանց համարի Պրոսպեր եւ ըստ այլոց Գելաս Ա. ի սարկաւագութեանն) յորում մեղմացեալ ին են խստագոյն ինչ բանք Օգոստինեայ վասն յառաջասահմանութեան։

Ազդ լեալ էր Կեղեստինեայ քահանայապետի ի ձեռն Պրոսպերայ եւ Հիղարեայ վասն նորոգ մոլորութեանն, եւ կշտամբէր Կեղեստինոս զեպիսկոպոսունս Գաղիայ զի յայնչափ ժամանակս

1 Collationes patrum. 2 Collator.

անցին կացին լուռ։ Յետոյ ուրեմն առհասարակ դատապարտեցաւ եւ վարդապետութիւն Կեսարացւոց յերկրորդ սիւնհոդոսին Առաւսիոյ (Օրանժ, 529) եւ Վասիոնիոյ (Վէզոնա, 530) եւ հաստատեցաւ վարդապետութիւն եկեղեցւոյ թէ եւ «Շնորհին սկիզբն հաւատոցն պտուղ շնորհացն է, եւ պարտ է կանխել շնորհացն՝ զի կարիցէ գործել մարդն գործ բարութեան, նա եւ վասն արդարացելոցն եւ սրբոց պիտոյ են հանապազորդ շնորհք՝ զի տեւել ի բարին մարթասցեն»։ — Հաստատեցան վճիռք սիւնհոդոսացս ի Բոնիփակեայ Բ. քահանայապետէ։ Այլ ըստ յայտնի իսկ բանից Պրոսպերոսեայ քահանայապետի (ի թուղթն առ եպիսկոպոսս Գաղղիոյ) զխորագոյն մեկնութիւնս վասն յառաջահասմանութեան եւ անձման սկզբնական մեղաց յամենեսին՝ ենթող եկեղեցի՝ ազատ առ ի քննութիւն աստուածախօս վարդապետաց, եւ ոչ ամենայն կարծիք Օգոստինեայ վասն սոցին՝ հասան ի հրամանակարգ վարդապետութիւն[1] եկեղեցւոյ։

## 102

Մինչդեռ արեւմուտք այսպէս յառաջէին ի լուսաւորագոյն մեկնութիւն քրիստոնէական մարդկախօսութեանն (վարդապետութեան զմարդոյ), անդուստ եւ արեւելք ըստ խորհրդոց ստուգականն ընթացից՝ վարէին յառաջ զմեկնութիւն քրիստոսախօսութեանն (վարդապետութեանն վասն անձին Քրիստոսի)։

Վասնզի իբրեւ ընդդէմ Արիանոսացն հաստատեցաւ կատարելապէս աստուածեղէն բնութիւնն ի Քրիստոս, որպէս կանխագոյն ընդդէմ Կարծականացն եւ յետ այնորիկ ընդդէմ Ապողինարեայ կատարելապէս մարդկեղէն բնութիւն ի Քրիստոս, այնուհետեւ կայր մնայր խնդիր ի մէջ վասն փոխադարձ հաղորդութեան բնութեանցն եւ գործողութեանց աստուածութեանն եւ մարդկութեան ի Քրիստոս։ Թուի թէ եւ ի սմին դարձեալ Ապողինարեայ գրգռեցան իրքն, որ զմարդկեղէն ոգին յառաջագոյն դնէր մեղուցեալս եւ ապա անկեալս ի մարմինս. յայն սակս եւ Արիանոսք ասէին Բանին մարմին եւեթ առնուլ եւ ոչ ոգի, եւ յայտնագոյնս իսկ Կրտսերն Ապողինար ուսուցանէր չառնուլ Բանին՝ ոգի բանական, որում ընդդէմ ազորէին Մեծն Բարսեղ եւ Գրիգորիոսքն երկոքին (Աստուածաբանն եւ Նիւսացին), զի պարտ էր, ասեն, Բանին առնուլ զամենայն իսկ մասունս մարդոյն, որք միանգամայն փրկելոցն էին, ուր նախ հակառակ ըստ Ապողինարեայ ազնուագոյն իսկ մասն մարդոյն (այս ինքն՝ ոգին) մնայր առանց փրկութեան։ Ի մեկնել զայս հաղորդութիւն Բանին ընդ մարդկութեան հարք որ յԱղեքսանդրիականն դպրոցէ էին՝

1 Dogme.

եւ յարեւմտեան սահմանս եւ երեւելին Աւգոստինոս մեկնել ճշգրա-գոյնս զվարդապետութիւն Բանին մարմնացելոյ ընդդէմ Պելագ-իոսի ուսուցման՝ որ կանխեալ էր քան զՆեստոր ի նոյն մոլորութիւն, զոր յետոյ ևս յետս՝ հաւանեցուցանելով զնա Աւգոստինեայ, յամի իբրեւ 428[1]։

Թէպէտ եւ ոչ հակառակորդութիւն լոկ իրքն էին, սակայն բա-զում ինչ լինէր նպաստ յերկայնժամանակեան հակառակութիւնս եւ այն իսկ՝ զի նախանձընդդէմ ընդ միմեանս էին եկեղեցիքն Ան-տիոքայ եւ Աղեքսանդրիայ, եւ մանաւանդ եկեղեցին Աղեքսան-դրիայ ջանայր հնարէր յաւուրց անտի Գրիգորի Նազիանզացւոյ՝ ունել ընդ իւրով ճոխութեամբ զեպիսկոպոսութիւն արքունական քաղաքին եւ մեծակին Կոստանդնուպոլսեայ, ուր նոքին հակառակ յաճախագոյնս ի մեծակէն Անտիոքայ կոչէին յայն աթոռ եպիսկո-պոսունք, որպէս Ոսկեբերանն, Նեստոր եւ Փղաբիանոս։

Նեստորիոս ծնեալ ի Գերմանիկիա Ասորւոց աշակերտ Թէո-դորի Մոփսուեստացւոյ (+ 428), վանական եւ երէց յԱնտիոք՝ կո-չեցաւ ի հայրապետութիւն Կոստանդնուպոլսոյ յետ Սիսիննէ-ոսի վախճանին (428). ամբարձ զնա Թէոդոս Բ. յայն աթոռ վասն համբաւոյ ճարտարխօսութեան նորա եւ առաւելագոյն բարեպաշ-տութեան, թէպէտ եւ Թէոդորետոս իսկ եպիսկոպոս Կիւրեայ նորին ժամանակակից շատխօս իմն կոչէ զնա եւ անտեղեակ բա-զում իրաց, ցանկացող փառաց առաջի ժողովրդեանն եւ կեղ-ծաւորութեամբ ստացեալ անուն բարեպաշտութեան։ Նա աւա-նիկ իւրքն իսկ Նեստոր յայտնագոյն քան զամենեսին եցոյց զիւրոյ բարուցն նկարագիր, մանաւանդ զանձնապաստանութիւնն յառա-ջնում ճառի անդ զոր ի Կոստանդնուպոլիս խօսեցաւ. "Տուր ինձ,

այժմ հանեալ եւ ի բաց եդեալ, եւ կամ զառա-ջաւորութիւնն՝ մերկացեալ ի մարմնոյ ան-տի, զփառս զոյութեան նորա մի տեսցէ։ 9. Եթէ ոք զմարմինն յերկնից իջեալ եւ ոչ ասէ եւ ի մէնջ լեալ՝ ասիցէ, եւ այլն։ 10. Եթէ ոք ի մարդ որ առանց մասց ի-ցէ, յասայ, եւ այլն եւս„։

1 Պեղագիոս (վանական եւ երէց գա-ղիացի) ի թղթի անդ ուղղութեան (emen-dationis) առ եպիսկոպոսունս Գաղիոյ գրէ. "Զինչ ինչ նախ ամբաստանութիւն զանձնէ մատուցից, անծածքն իմ մեծարոյք եւ քա-հանայք երանելիք, ոչ գիտեմ. եւ զինչ ինչ յետ նախ սրբագրացուցանիցեմ, ոչ գտանեմ։... Եթէ շաղելով ի միս զԱս-տուծոյ կարգողութիւնն ընդ մերոց մասց եւ խառնուրդութեան խոսհիցեմք՝ որպէս թէ ի վասթարագոյն ինչ իրս թուեցի մեզ ի-ջուցանել Աստուծոյ զանձն, եւ յայն սակս այնպէս զմարդն առեցեալ ընդ Տեառն ծնեալ՝ զի ուրոյն որ ինչ Աստուծոյն է՝ Աստուծոյ միայնում տայցեմք, եւ ուրոյն առանձինն որ ինչ միանգամ մարդոյն է՝ մարդոյն եւեթ հաղորդեցեմք, յայտ է թէ չորրորդ իմն զէմս յԵրրորդութիւնն մուծանիցեմք, եւ ի միո-ջէ Որդւոյ Աստուծոյ՝ սկսանիցեմք յօրինել երկուս Քրիստոսս. զոր ինքն Տէր Աստուած Քրիստոս ի բաց տարցի։ Այլ խոստովանիմք զՏէր եւ զԱստուած մեր զՅիսուս Քրիստոս՝ մի միայն Որդի Աստուծոյ, որ անձին իւրում՝ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ ծնաւ, իսկ մեզ՝ ի ժամանակի հա-գեալ սրբով ի Մարիամայ ի միշտ Կուսէ ե-ղեւ մարդ, ծնաւ Աստուած. եւ խոստո-վանելով զերկոսին էութիւնս զմարմնոյ եւ զԲանին՝ ընդունիմք բարեպաշտան հա-ւանութեամբ հաւատոց զմի եւ զնոյն Աս-տուած եւ մարդ միշտ անբաժ եւ անբա-ժին, եւ ի ժամանակէ անտի մարմնոյն առե-լոյ՝ այնպէս զամենայն որ Աստուծոյն է՝ տ-ուեալ անցանել ի մարդ անդր, զի եւ այն ամենայն որ մարդոյն է՝ յԱստուած անդր գայցէ. եւ սովին միաբ՝ եղեւ Բանն՝ մար-մին, իբր ոչ եթէ ի միմեանս ինչ փոխե-լով կամ այլայլելով՝ սա [illegible] լինելոյ որ ինչ չէրն, այլ իբրեւ զօրութեամբ աս-տուածեղէն տնտեսութեանն Բանն Հօր ի Հօրէ երբեք չմեկնելով, մարդ ճշմարտու-թեամբ կամեցաւ լինել, եւ մարմնացաւ Միածինն ծածուկ խորհրդեամբն՝ զոր ինքն գիտէ. քանզի մեզ՝ արժան է հաւատալ եւ նմա՝ գիտել...

առնիցեն ի մարմին շրջեալ, եւ թէ զերկասին բնութիւնս խառնակիցեն ընդ միմեանս: Հայհոյեն, ասէ, զԲանէն որպէս եթէ ի Կուսէն առեալ իցէ սկիզբն եւ չամաչեն Աստուածածին զԿոյսն անուանել: Թէպէտ եւ մարթ է զայն անուն ներել, այնու զի Բանն զմարմին ընտրեաց իւր ի տաճար, այլ ոչ յայսպիսի ինչ միտս թէ մայր լեալ իցէ նա Բանին. յայն սակս պատշաճագոյն է, ասէ, անուանել զնա Քրիստոսածին: Թէ զինչ եւ որպիսի պատերազմունս վասն սոցին կրիցէ՝ համարի լեալ վաղ ծանօթ Կեղեստինեայ ի համբաւոյ. սակայն բազումք, ասէ, յայնցանէ որ որոշեալ էին՝ դարձան յուղղութիւն:

Իսկ Ս. Կիւրեղ յայտ առնէր ի թղթի անդ իւրում թէ պարտ իւր համարի չկալ այսուհետեւ լուռ, այլ "ըստ հին եկեղեցական սովորութեան" տալ զդոյզ քահանայապետին վասն իրացն դիպելոց: Յետ ցուցանելոյ նմա մի ըստ միոջէ զմոլորութիւնսն, պատմէ որ ինչ ցայն վայր գործեցաւ եւ որչափ ճարակեալ չարն է եւ թէ որպիսի ինչ միտք իցեն յարեւելս, եւ խնդրէ խրատ ի նմանէ թէ արդեւք յամիցէ այլ եւս ի հաղորդութեան ընդ Նեստորի:

Նոյն իսկ ի հասանել ճառիցն Նեստորի ի Հռոմ, տեսչութեամբ Յովհաննու սարկաւագապետի (որ է ինքն Յովհան Ե. մեծն) թարգմանեալ էին ի Կասիանոսէ ի հռոմայեցի լեզու, այլ իբրեւ ժամանեաց եւ հրեշտակութիւնն Կիւրղի, իսկ եւ իսկ ժողովէր Կեղեստինոս սինոդոս ի Հռոմ (430): Դատապարտեցաւ վարդապետութիւն Նեստորի եւ եդան եւս նզովք ի վերայ նորա եւ սահմանեցաւ անկանել յաթոռոյն՝ եթէ չկայցէ ի բաց ի մոլորութենէն յետ 10 աւուրց յորմէ հետէ հասանիցէ նմա հրամանն: Առաքեցան թուղթք սինոդոսականք առ եպիսկոպոսունս արեւելից, որպէս եւ առ Յովհան հայրապետ Անտիոքայ յաջորդ Թէոդոտայ (✝ 427), առ կղերն եւ առ ժողովուրդն Կոստանդնուպոլսեայ: Իսկ Կիւրղի առանձինն՝ ոչ միայն յանձն եղեւ վարել զտեսչութիւն եկեղեցւոյն այնորիկ յորժամ ի բաց անկանիցի Նեստոր, այլ եւ զհամօրէն իսկ կատարումն վճռոց սինոդոսին Հռոմայ յանձն արար քահանայապետն՝ զի "Ճոխութեամբ հռոմայական աթոռոյն, ի տեղւոջ եւ փոխանակ քահանայապետին վարեսցի ի դմին՝ իշխանութեամբ"[1]:

Հայեցեալ Կիւրղի ընդ գործոյն ծանրութիւն յառաքել իւրում զթուղթ քահանայապետին առ եպիսկոպոսունս արեւելից՝ յաւելոյր եւ թուղթ մի յիւրմէ յորդորել զնոսա ի միաբան գործակցութիւն, եւ մանաւանդ զհայրապետն Երուսաղեմայ զՅոբենաղիս կամ զՅոբենաղ, եւ աղաչէր հնարել շրջել զմիտս Նեստորի: Նա արդեամբք իսկ հան ի գլուխ զպարտս բարեկամութեանն

1 Nostrae sedis auctoritate adsecta, nostraque vice et loco cum potestate usus.

Յովհաննէս Անտիոքացի՝ աղաչելով յոյժ զՆեստոր մի ընդ Աստուածածինն անուան հակառակել, որ ի բազմաց երանելի երեւելի հարց արկեալ ի կիր, որ եւ ըստ Նեստորի իսկ կարծեացն՝ եթէ ուղիղ որ նովաւ վարկցի, չէր ինչ մերժելի։ Նոյնպէս եւ կարճ իսկ է, ասէ, ժամանակ աւուրցն տասանց սահմանելոց ի քահանայապետէն Հռոմայ, սակայն թէ ուղիղ խորհեսցիս, մի եւեթ ժամ շատ եւ բաւական է լուծանելոյ զդժուարութիւնն եւ դարձուցանելոյ խաղաղութիւն յեկեղեցի անդր յաւելեալ։ Յետ այնորիկ ժողովեր Կիւրեղ սինհոդոս յԱղեքսանդրիա (430), եւ առաքեր անտի 4 եպիսկոպոսունս ի Կոստանդնուպոլիս, ցուցանել Նեստորի զվճիռ քահանայապետին Հռոմայ եւ ընդունել ի նմանէ զհերժումն մոլորութեանց իւրոց։ Բայց վասն զանազան պատճառանաց Նեստորի կարծելոյ՝ ետ նոցա Կիւրեղ ի ձեռս 12 յապաշխարութիւնս կամ նզովս զի արկցէ նա նոցին ձեռնագիր[1]։ Ի վերջ եւս Նեստոր, մերժեաց զվճիռ քահանայապետին եւ հակառակ 12

1 Եթէ ոք ոչ խոստովանեսցի՝ եթէ Աստուած է ըստ ճշմարտութեան Էմմանուէլ, եւ վասն այնորիկ աստուածածին՝ զսուրբ կոյսն. քանզի ծնաւ մարմնապէս զմարմնացեալ զԲանն որ յԱստուծոյ, նզովեալ եղիցի։ 2. Եթէ ոք ոչ խոստովանի ըստ անձնաւորութեան միանալ ընդ մարմնոյ Բանին որ յԱստուծոյ Հօրէ եւ թէ մի է Քրիստոս հանդերձ իւրով մարմնովն, այսինքն՝ զնոյն լեալ Աստուած միանգամայն եւ մարդ, ն. ե։ 3. Եթէ ոք ի վերայ միոյն Քրիստոսի բաժանէ զանձնաւորութիւնսն յետ միաւորութեանն՝ միաւորելով զնոսա միայն յարակցութեամբ որ ըստ պատուոյ իցէ եւ կամ ըստ ձեռնութեան կամ իշխանութեան, եւ ոչ մանաւանդ զուգամիութեամբ՝ որ ըստ բնական միաւորութեան իցէ, ն. ե։ 4. Եթէ ոք երկուց երեսաց կամ անձնաւորութեանց անջատեալ ասէ զբանս աւետարանական եւ առաքելական գրոց եւ կամ զոր վասն Քրիստոսի ի սրբոցն ասացեալ է եւ կամ իւր վասն իւր, եւ զմին ասէ իբրեւ մարդոյ՝ խորհելով առանձին ի Բանէն Աստուծոյ, եւ զմեւսն պարծեալ իբրեւ աստուածավայելուչ՝ միոյն Բանին որ յԱստուծոյ Հօրէ, ն. ե։ 5. Թէ ոք ժպրհի յանդգնել ասել թէ աստուածակիր մարդ է Քրիստոս եւ ոչ մանաւանդ՝ Աստուած ըստ ճշմարտութեան, իբրեւ մի Որդի, եւ բնութեամբ, քանզի եղեւ մարմին Բանն եւ հաղորդ մեզ եղեւ մերձաւորութեամբ արեան եւ մարմնոյ, ն. ե։ 6. Եթէ ոք յանդգնի ասել թէ Բանն որ ի Հօրէ Աստուած կամ տէր է Քրիստոսի, եւ ոչ խոստովան լինի թէ նոյն Աստուած եւ մարդ է միանգամայն, այսու՝ զի Բանն մարմին եղեւ ըստ գրոց, ն. ե։ 7. Եթէ ոք ասիցէ զՅիսուս իբրեւ մարդ ներգործեալ ազդեցութիւն ի Բանէն Աստուծոյ, եւ թէ ի Միածնին փառաւորութիւն մերձեցաւ՝ իբրեւ էր նա այլ ոք արտաքոյ քան զնա կոչեցեալ, ն. ե։ 8. Եթէ ոք լկրի ասել՝ եթէ մարմնոյն որ ի վերն առաւ պարտ է երկրպագակից Բանին Աստուծոյ լինել եւ փառաւորակից եւ ընդ նմին յորջորջել Աստուած իբրեւ զայլ ոք ընդ այլում, (զի եւն կամ ընդն որ ի վերայ յարի՝ հարկ տանէ այսպէս իմանալ), եւ ոչ թէ մանաւանդ միով երկրպագութեամբ պատուեսցէ զԷմմանուէլ, եւ մի փառաբանութիւն ի վեր առ նա առաքեսցէ, այսու՝ զի Բանն մարմին եղեւ, ն. ե։ 9. Եթէ ոք ասասցէ զմի տէր Յիսուս Քրիստոս փառաւորել ի Հոգւոյն, վարելով նովաւ իբրեւ օտար ինչ զօրութեամբ եւ ի նմանէ առեալ զազդեցութիւնն ի վերայ այսոցն պղծոց եւ զնշանսն ի մարդիկ ցուցանել աստուածագործս, եւ ոչ թէ մանաւանդ նորա իսկ սեպհական զՀոգին ասիցէ, որով եւ զաստուածագործ զօրութիւնսն ազդեցուցանիցէ, ն. ե։ 10. Քահանայապետ եւ առաքեալ խոստովանութեան մերոյ ասեն լեալ զՔրիստոս աստուածեղէն գիրք եւ մատուցանել զանձն վասն մեր ի հոտ անուշից Աստուծոյ եւ Հօր. արդ եթէ ոք ոչ ասիցէ թէ որ յԱստուծոյ Բանն էր՝ քահանայապետ մեր եւ առաքեալ եղեւ, այսու՝ զի մարմին եւ ըստ մեզ մարդ եղեւ, այլ՝ այլ ոք ուրոյն մարդ ի կնոջէ. կամ թէ ասիցէ ոք թէ եւ վասն իւր մատոյց նա պատարագ եւ ոչ թէ վասն մեր միայն, քանզի ոչ եթէ կարօտ ինչ պատարագացեր՝ որ մեղսն ոչ գիտէր, ն. ե։ 11. Որ ոչ խոստովանի թէ կենդանարար է մարմին Տեառն եւ սեպհական նորին իսկ Բանին որ յԱստուծոյ Հօրէ, այլ այլոյ ուրուք քան զնա յարեցելոյ ի նա ըստ պատուոյ, եւ կամ իբրեւ աստուածութեանն ասպնջականի. եւ ոչ թէ մանաւանդ՝ կենդանարար, որպէս ասացաք, այսու՝ զի իւր իսկ Բանին է՝ որ կարօղն է զամենայն կենդանի առնել, ն. ե։ 12. Եթէ ոք ոչ խոստովանեսցի զԱստուծոյ Բանն չարչարեալ մարմնով եւ խաչեալ մարմնով եւ զմահ ճաշակեալ մարմնով, որ եւ եղեւ անդրանիկ ի մեռելոց, այսու զի եւ կեանք է եւ կենդանարար, իբրեւ Աստուած, ն. ե.։

Digitized by Google

նզովիցն՝ զնէր եւ ինքն երկոտասան նզովս հակառակ միոյ միոյ ի նոցանէ:

Սակայն եւ եպիսկոպոսունքն արեւելից չընկալան զնզովսն Կիւրղի, որպէս թէ նպաստաւորք Ապողինարեան աղանդոյն լինին: Ընդդէմ եպիսկոպոս Սամոսատայ դնէր առանձին գիրս ընդդէմ նոցա, բայց նշանաւոր է քան զնորայն այն զոր Թէոդորետոսն գրեաց, եպիսկոպոս Կիւրեայ՝ հրամանաւ հայրապետին իւրոյ Յովհաննու Անտիոքացւոյ: Ոչինչ գոյ ի սոսա մոլորութիւն, բայց զի թերեւս ուրանայր խիստ թուէր զհաղորդութիւն սեպհականութեանց երկուցն բնութեանց, եւ այնպէս զրեթէ ճշմարտութեանն ընդ ճշմարտութեանն կռուէին: Ապաքէն Թէոդորետոս (ծն. 393) կրթեալ էր ի մանկութենէ ի կեանս վանականութեան առ ոտս Մակեդոնիոսի մեծի վանականի, որոյ աղօթիւք իսկ շնորհեցաւ ծնունդ նորա՝ ծնողացն, երեւելի էր փայլուք սրբութեան. ածաւ ակամայ յեպիսկոպոսութիւն Կիւրոս քաղաքի Ասորւոց. Թէպէտ եւ յայնժամ եւս դեգերէր յամախագոյն յԱնտիոք՝ քարոզել յեկեղեցւոջ փոխանակ Յովհաննու: Եթէ չէր նորա ժամանակս ինչ պաշտպան լեալ Նեստորի եւ հակառակ Կիւրղի՝ փայլէր անուն նորա յեկեղեցւոջ իբրեւ զՅովհաննու Ոսկեբերանի եւ զՄեծին Բարսղի (ըստ Թիլլեմոնայ գաղիացւոյ): Այսպէս յանկարծուստ փոխեցան միտք արեւելեացն:

## 103

Այլ ընդ նոյն ժամանակս վանականքն եւ կղերականք՝ որ հալածեալ ի Նեստորէ էին, տուեալ էին մուրհակ ամբաստանութեան առ կայսր Թէոդոս Բ. եւ աղաչեցեալ՝ զի լինիցի ժողով տիեզերական: Յետոյ ուրեմն յանձն առ կայսրն թելադրեալ ի քահանայապետէն, թէպէտ եւ զայրացեալ իսկ էր նա ընդ Կիւրեղ, իբրեւ ընդ այր խռովիչ, պատրեալ այսպէս յիւրոց արքունականացն: Սահմանեցաւ սիւնհոդոսն յանուն երկոցունց կայսերացն Թէոդոսի Բ. եւ Վաղենտինիանոսի Գ. ի պենտակոստէս 431 ամին յԵփեսացւոց քաղաքին: Աճապարեաց եհաս նախ Նեստոր 10 եպիսկոպոսօք եւ աւուրբք ինչ կանխագոյն քան զժամադիր ժամանակն հասանէր եւ Կիւրեղ իւրովք եպիսկոպոսօք, եւ այլքն եւս յառաջ կամ յետոյ հասանէին աւելի քան զ200 թուով: Միայն Յովհան Անտիոքացի իւրովք եպիսկոպոսօքն չերեւէր ուրեք:

Յետ ընդ երկարն սպասելոյ՝ ապա հասանէր ի նմանէ թուղթ պատճառելով զերկայնութիւն ճանապարհացն. եւ ի վեշտասաներորդում աւուր պենտակոստէիցն հասին երկուք յեպիսկոպոսաց նորա՝ Ապամեայն եւ Հերապոլեայն՝ յայտ առնել ի նորա անուն զի եթէ դէպք եւ պատահարք տայցեն՝ նմա աւել եւս յամել,

տրտասցեն զոր ինչ իցեն առնելոց։ Բայց առաքեալ էր կայսրն զԿանդիդիանոս զոմն կոմս յԷփեսոս վասն զկարգաւորութիւնն պահելոյ, հրաման տուեալ "մի խառնել ամենեւին ի խնդիրս հաւատոյն, քանզի անօրէնութիւն է, ասէր, որում յեպիսկոպոսական աստիճանէ չիցէ՝ յեկեղեցական իրս եւ ի խորհուրդս զանձն մխել„։ Սակայն եւ այնպէս քանզի բարեկամ էր Նեստորեայ Կանդիդիանոս՝ զամենայն հնարս հնարեցաւ զի յամեցուսցէ զժողովն մինչեւ ցգալուստ արեւելեայցն, քանզի այնպէս է, ասէր, հրաման կայսերն։ Այլ զի չկարաց զրով զհրամանն ցուցանել՝ պատշաճ համարեցաւ այնուհետեւ Կիւրեղ առնել սկիզբն առաջին գումարմանն (22 Յունի), նստեալ ինքնին զահերէց յանուն Կեղեստինեայ քահանայապետի։ Էրիցս հրաւիրեցաւ Նեստոր. յառաջնումն միով աւուրբ յառաջ քան զգումարումն եւ պատասխանի եթէ խորհեցայց եւ եթէ պիտոյ ինչ իցէ՝ եկից։ Բայց անդէն ի նմին ժամանակի 6 եպիսկոպոսք կողմանն նորա բողոքեցին ընդ ժողովել սիւնհոդոսին մինչ չեւ եկեալ արեւելեայցն։ Յերկրորդումն եւ յերրորդումն առաքեալ տայր պատասխանի թէ եկից յորժամ ամենայն եպիսկոպոսունք միանգամայն ի միասին իցեն։ Եպիսկոպոսունքն որ առաքեալ էին առ նա՝ սպասեցին յերկարագոյնս առաջի դրանց ապարանիցն՝ նախատեալ եւ թշնամանեալ ի զօրականէն որ պահէին զտուն նորա։ Ինքնին իսկ Կանդիդիանոս գայր մտանէր ի ժողովն, խնդրէր գոնեայ աւուրս չորս յամեցուցանել զերան, այլ չեդաւ նմա ունկն։

Սկիզբն առնէին հարքն քննութեանցն յեկեղեցւոջ սրբոյ Կուսին. հանգանակն Նիկիայ եւ թուղթք գրեալք յերկուց կողմանց ընթերցան (երկրորդ թուղթն Կիւրղի առ Նեստոր, եւ սորա առ այն պատասխանի եւ որոշումն Կեղեստինոսի քահանայապետի)։ Յետ այնորիկ ի մէջ բերան վկայութիւնք հարցն (Պետրոսի Աղեքսանդրացւոյ, Աթանասի, Յուլիոսի եւ Փեղիքսի Հռոմայ քահանայապետաց, դարձեալ Թէոփիլոսի, Գրիգորի Նազիանզացւոյ եւ Նիւսացւոյն, Բարսղի, Կիպրիանու, Ամբրոսիոսի եւ այլոց) վասն աղերսի երկուց բնութեանց առ միմեանս, եւ յետուստ բազում ճառք ի ճառից Նեստորի համեմատեցան ընդ նոսա։ Ընդ թուղթն ընթերցան եւ երկոտասան նզովք Կիւրղի, այլ չքննեցան եւ չեղեւ վճիռ ինչ զնոցանէ։ Ապա ուրեմն յերեկոյի աւուրն այնորիկ դատապարտեցաւ Նեստոր ի 198 եպիսկոպոսաց եւ արկաւ ի պատուոյ եպիսկոպոսութեանն։ Իսկ ժողովուրդն Եփեսացւոց որ առաջի դրանցն սպասեալ մնային՝ ընկալան մեծաւ ցնծալից ուրախութեամբ զվճիռ. ժողովոյն եւ տարան զհարսն շքով՝ ջահիւք լուցեալովք յիւրաքանչիւր բնակութիւնս։ Ի վաղիւ անդր դատաստան ժողովոյն հրապարակաւ տարածանէր յԷփեսոս եւ հռչակէր քարոզն ընդ քաղաքն ամենայն։ Բայց Կանդիդիան տայր

Digitized by Google

ի բաց պատառել, եւ բողոքէր վասն ամենայնի որ գործեցաւ եւ գրէր առ կայսր ամբաստանութիւն՝ թէ գործեն բռնութիւն Կիւրեղ եւ Մեմնոն եպիսկոպոս Եփեսացւոց. զնոյն նոյնպէս եւ Նեստոր ստոր իւրովք եպիսկոպոսօքն:

Այս ուրեմն յետ աւուրց հնգից (27 Յունի) եկեալ հասանէր Յովհաննէս հայրապետ Անտիոքայ 26 կամ 22 եպիսկոպոսօք: Առաքէր նմա ժողովն ընդ առաջ հրեշտակութիւն յեպիսկոպոսաց անտի հրաւիրել զնա եւ ցուցանել միանգամայն թէ ընկեցեալ է Նեստոր ի պատուոյն: Բայց չտուաւ նոցա թոյլ՝ ելանել առաջի նորա, եւ յետոյ տուան ի ձեռս պահապանացն թուղթքն: Իսկ Յովհաննէս խիկ եւ խիկ իբրեւ իջեալ էր ի կառացն՝ ժողովեալ էր սուինհոդոս յիւրոց եպիսկոպոսաց եւ ի 6 կամ 7 եպիսկոպոսաց որ զՆեստորիւ էին, եւ միայն ի բանից Կանդիդիանոսի եւ վերջից եպիսկոպոսացն այնոցիկ ընկէց յիշխանութենէ զԿիւրեղ եւ զՄեմնոն՝ առանց կոչելոյ զնոսա առաջի՝ իբրեւ արս բանսարկուս. իսկ զայլ եպիսկոպոսունս որոշեաց ի հաղորդութենէ մինչեւ զղջացուցին դատապարտել զերկոտասան նզովսն Կիւրղի: Գործք ժողովոյ սորա աւանդեցան ի գիր եւ առաքեցաւ զրոյց ի Կոստանդինուպոլիս՝ դարձեալ նմանուցանելով ամբաստանութիւն զԿիւրղէ եւ զՄեմնոնեայ թէ յուզեն խռովութիւնս, ուր զզօրականն Նեստոր եւ Յովհաննէս ունէին յիւրեանց անձանց պահպանութիւն:

Մաղվաղակի յետ այնորիկ հասանէին հրեշտակք քահանայապետին՝ Արկադիոս եւ Պրոյեկտոս եպիսկոպոսունք եւ Փիղիպպոս երէց. Աւգոստինոս վախճանեալ էր եւ ափրիկեցի եպիսկոպոսունք չկարացին գալ ի կոչն վասն արշաւանաց Վանդաղացն, բայց Կապրէողոս եպիսկոպոս Կարքեդոնի գրով զկարծիսն առաքէր: Եւ քանզի բերեալ էր հրեշտակացն թուղթ ի Կեղեստինեայ քահանայապետէ առ ժողովն՝ եղեւ միւսանգամ գումարումն (10 Յուլ.), յորում ընթերցաւ թուղթ քահանայապետին որ զառաջին վճիռն իւր զՆեստորէ եւ զյանձնարարութիւնն իւր առ Կիւրեղ երկրորդէր եւ յորդորէր պահել զաւանդութիւնն, յուշ արարեալ թէ անդ ուրեմն են՝ յորում տեղւոջ զՏիմոթէոսն կացոյց Պաւղոս առաքեալ եւ եղեւ նմին թելադիր պահել զաւանդն. քանզի «նոյն է, ասէ, տեղի (Եփեսոս), նոյն խնդիր (Քրիստոս Աստուած եւ մարդ) եւ նոյն պաշտօն (եպիսկոպոսութիւն)»: Նախ ի հռոմայեցի ապա ի յոյն լեզու ընթերցաւ թուղթն եւ ընկալան եպիսկոպոսունքն միաբան բարբառով հաւանութեան: Ի վաղիւ անդր յերրորդում գումարման արկին հրեշտակքն Հռոմայ ձեռնագիր գործոց առաջին գումարմանն որք տուեալ էին նոցա ի քննութիւն յերկրորդումն: Գրեցաւ վասն ամենայն եղելոցն եւ առաքեցաւ առ կայսր ի ձեռն Եւտիքէոսի վանականի: Այս ի չորրորդում գումարմանն (16 Յուլ.) ետուն մուրհակ Կիւրեղ եւ Մեմ-

տայր ամենայն եպիսկոպոսաց դառնալ յիւրաքանչիւր վիճակս ։ Կանդիդիանոս եւ Իրենէոս յաչաց ելին ։

Դարձան ամենայն եպիսկոպոսունք յիւրաքանչիւր աթոռ ան-գէն ի նմին ամի (381, Հոկտ.), այլ չէր միութիւն ընդ նոսա, զի իսկ եւ իսկ յետ դարձին նոցա ժողովեալ սիւնհոդոս նախ ի Տար-սոն եւ ապա յԱնտիոք՝ դատապարտէին զԿիւրեղ եւ զնզովսն նորա ։

## 104

Բայց բազումք յամենայն կողմանց ոգւով խաղաղութեան եւ զեղջմամբ իմն ջանային ի լուծումն գժտութեանն ։ Առաջին ի նո-ցանէ ինքն իսկ Կիւրեղ էր. առաքէր նա հրեշտակութիւն (զՀեր-մոգինէս եւ զԴամասկիոս եպիսկոպոսունս) ի Հռոմ (432) խըն-դրել ի քահանայապետէն՝ զի գրեսցէ թուղթ հաշտութեան առ եպիսկոպոսունս եփեսոսական ժողովոյն եւ իւրով ճոխութեամբ հաւանեցուսցէ մեղմագոյնս լինել առ եպիսկոպոսունս բաժա-նեալս ։ Յայն սակս գրէր առ նոսա Սիքստոս Գ. (432—440) թէ պարտ եւ պատշաճ է թողուլ յիւրաքանչիւր իշխանութեան զեպիսկոպոսունսն որ յԵփեսոս թեկն ածէին Նեստորի, եթէ զու-ղիղ վարդապետութիւն եւ զհաղորդութիւն հռովմէական եկեղե-ցւոյ ընկալցին ։ Առանձինն իմն սիրով եւ գորովալից գրեաց քա-հանայապետն առ Յովհաննէս Անտիոքացի, եւ զՄաքսիմիանոս հայրապետ Կոստանդինուպոլսեայ յորդորէր՝ ժիր ի գործ միաբա-նութեանն լինել ։

Այնուհետեւ եւ Թէոդոս՝ քանզի վասն եկեղեցւոյ եւ տէրու-թեան առհասարակ վնասակար զբաժանումն զայն համարէր՝ խոր-հրդակցութեամբ Մաքսիմիանոսի եւ ժողովոյ նորա կամեցեալ հա-մառօտագոյնս եւ արագագոյնս զերսն բժշկել, հրաման ետ գլխա-ւորաց եկեղեցւոյ կողմանցն, այս ինքն՝ Յովհաննու եւ Կիւրղի ա-ռանձինն առանց եպիսկոպոսաց գալ ի Նիկոմեդիա եւ հաշտել ընդ միմեանս, ապա թէ ոչ՝ չգալ երբեք այնուհետեւ յակն թա-գաւորին ։ Թէպէտ եւ չգային նոքա առ միմեանս՝ զի հիւանդու-թեանն բարբանօք ի չքմեղս լինէր Յովհան, սակայն գործակալ հրամանին Արքեղայոս կոմս ստիպէր զնա անկանել ի պատգամս հաշտութեան ։ Յայնժամ ժողովեալ Յովհաննու սիւնհոդոս յԱն-տիոք առաքէին առ Կիւրեղ պայմանս հաշտութեան՝ խնդրելով միանգամայն ի նմանէ մերժել զ12 նզովսն իւր ։ Զիջաւ Կիւրեղ պայմանացն, բայց որպէս ի դէպ էր՝ չառ յանձն զմերժելն ։ Հա-ճեցաւ իմն այնու Յովհաննէս եւ ծերունի եպիսկոպոսն Ակակիոս Բերիայ եւ մասամբ իմն եւ Թէոդորետոս, այլ ոչ՝ ամենայն սիւն-հոդոսն ։ Յայնժամ ընդ մէջ անցանէր Պաւղոս եպիսկոպոս Եմե-սայ պատուական հասակաւ ծերութեանն եւ հանճարով եւ

Digitized by Google

հմտութեամբ գործոց, հաւանեցուցանէր զնոսա համաձայնութիւ ընդուն վճարել. յօրինեցաւ թուղթ հանդերձ հանգանակաւ իւրք՝ զոր տանել Պաւղոսի տանէր ի դիմաց ամենեցուն յԱղեքսանդրիա: Ընկալաւ Կիւրեղ զհանգանակն տեսեալ զայն միաբան վարդապետութեան իւրում, եւ ի նշանակ միաբանութեան երկուց կողմանցն տայր խօսել Պաւղոսի յեկեղեցւոջ ի մեծաւոր տօնի ծննդեանն (433). ընդ մէջ հատանէր ժողովուրդն զբանս ծերունւոյն ձայն բարձեալ թէ "Ահա այս են հաւատք ուղղութեան, զայս խոկ կամեաք լսել: Որպէս եւ եկիր եպիսկոպոսդ ուղղափառ, արժանի առ արժանին (Կիւրեղ) եկիր": Այսպէս եւ ինքն եւս Կիւրեղ համաձայնութեան բանիւք ի մէջ անցեալ հաստատէր զուղղութիւն բանից նորա եւ յուղարկէր զնա թղթով առ Յովհաննէս Անտիոքացի՝ կրկնեալ անդէն զնոյն հանգանակ Անտիոքացւոց յորոյ վերայ միաբանութիւնն եղեւ, եւ յորում յայտնի իմն նշանակին աստուածեղէն եւ մարդկեղէն բնութիւնքն ի Քրիստոս[1]: Նոյնպէս եւ Յովհաննէս ի բաց եկաց ի Նեստորէ, դատապարտեաց զվարդապետութիւն նորա, յանձն առ կարդալ զՄարիամ Աստուածածին եւ ընկալաւ զՄաքսիմիանոս օրինաւոր եպիսկոպոս Կոստանդնուպօլսոյ (433): Իսկ քանզի Ակակիոս եւս քահանայապետ եւ ամենայն արեւմուտք հաւանեալ յարեցան ի միաբանութիւնն յայն, եղեւ այնուհետեւ ժողովն Եփեսոսի երրորդ ժողով տիեզերական: Ոչ սակաւ նպաստ եղեն ի սոյն միաբանութիւն երկոքին աստեղք լուսաւորք ժամանակին Սիմէոն սիւնակեաց եւ Իսիդորոս Պելուսիացի, նա առ արեւելեայս եւ սա առ Կիւրղի եւ Եգիպտացւոց[2]:

1 "Խոստովանիմք զՏէր մեր Յիսուս Քրիստոս, զՈրդին Աստուծոյ, զՄիածինն՝ աստուած կատարեալ եւ մարդ կատարեալ ի բանաւոր ոգւոյ եւ ի մարմնոյ, որ յառաջ քան զյաւիտեանս ծնաւ ի Հօրէ ըստ աստուածութեանն, իսկ ի վերջին աւուրս՝ զնոյն վասն մեր եւ վասն մերոյ փրկութեան ծնեալ ի Մարիամայ կուսէ ըստ մարդկութեանն, զնոյն ի միասին էակից Հօր ըստ աստուածութեանն եւ ի միասին էակից մեզ ըստ մարդկութեանն. քանզի երկուց բնութեանցն եղեւ միաւորութիւն, վասն որոյ զմի Քրիստոս, զմի Որդի, զմի Տէր խոստովանիմք: Ըստ այսմ մտաց անշփոթ միաւորութեան դաւանիմք զսուրբ Կոյսն՝ աստուածածին, այսինքն՝ զի Աստուած Բանն մարմնացաւ եւ մարդացաւ եւ անդստին ի յղութենէն միաւորեաց ընդ իւր զտաճարն զոր ի նմանէ առ: Իսկ վասն աւետարանական եւ առաքելական բանից զձայնս, գիտեմք՝ զի արք աստուածախօսք երբեմն հասարակացուցանեն՝ իբրեւ ի միոյ դիմաց վերայ, եւ երբեմն ընտրեն՝ իբրեւ յերկուց բնութեանց վերայ, եւ մերթ զաստուածավայելուչսն՝ ըստ աստուածութեանն Քրիստոսի եւ երբեմն զխոնարհագոյնսն ըստ մարդկութեան նորա՝ ընտրեն առ նմա":

2 Իսիդորոս (Աղեքսանդրացի) կոչեցեալ Պելուսացի վասն ի Պելուսիոնն բնակելոյ, էր երեւելի վանականութեամբ: Վանականք աշակերտին Եգիպտացւոց երթային զհետ սրբութեան նորա եւ եպիսկոպոսունք ի Հռոմայ եւ ի Հեռաստանէ գնէին նմա մեծարանս իբրեւ Հօր, եւ գործէին ըստ խորհրդոյ նորա ի գժուարին ինչ դէպս պաշտամանց իւրեանց, նա առաւանիկ եւ սրբութեամբ քաղաքային եւ պատերազմական իրաց եւ արք արքունականք տային եւ առնէին թուղթս ի նմանէ: Ի թղթոց անտի նորա որ առ մեզ իմ պատմին ըստ՝ կան առ Հին ցայժմ 2012 թուղթ: Անդէն ի ժամանակի գժտութեանն ընդ Նեստորի՝ բարեկամութեան համարձակութեամբ զգուշացուցանէր զԿիւրեղ: "Պարտ է քեզ, ասէ, զգուշ լինել ի կանխակալութենէ եւ յատելութենէ. կանխակալութիւն չտեսանէ յստակ, իսկ ատելութիւնն ամենեւին իսկ կոյր է: Թէ սիրել չկամիս, մի վարկպարազ բերել զքեզ դատապարտութեան, այլ հանդարտութեամբ, իրաւամբք եւ արդարութեամբ առնել դատաստան: Աստն ամենք զքէն յեփեսոս՝ եղբօրորդի է Թէոփիլեայ եւ ի հետ նորա գնայ. սակայն խոյր մեծ է ընդ նա եւ ընդ քեզ": Այսպէս ի ժամանակս ժողովոյն: Այլ յետ ժողովոյն գրեալ գրէր. "Օրինակք գրոց սրբոց զարհուրեցուցանեն զիս, եւ հարկ առնեն ինձ առնել քեզ որ

Այսպէս անկեալ էր վաղ ուրեմն միաբնեան աղանդոյն եւ պարարէր ի մէջ բազմամբոխ վանականաց ի սահմանս Հայրապետացն Կոստանդնուպոլսոյ, Անտիոքայ եւ Աղեքսանդրիոյ, յորժամ Կիւրեղ յաշխարհէ վճարէր (444) եւ Դիոսկորոս հանմամբ եւ խորհրդակից վանականացն այնոցիկ կեղծաւորութեամբ եղանէր յաթոռն։ Սա իբրեւ բռնաւոր մանաւանդ քան եպիսկոպոս մեքենէր յազգականսն Կիւրղի հակառակ կտակի Հայրապետին, զսեփհական ինչս նոցա գրաւեալ ի գանձ եկեղեցւոյ եւ ապատուեալ հացարարաց եւ մսագործաց՝ պայմանաւ զի դիւրագին վաճառեսցեն զհացն եւ զմիս, զի այնպէս գտցէ անուն եւ համբաւ ի ժողովրդեանն։ Մերժէր յիշխանութենէ զկղերականսն առանց դատաստանի եւ վարէր ամբարտաւանս ընդ արքունական վերակացուաց աշխարհին Եգիպտացւոց։

Սակայն իսկ եւ իսկ ընդարձակեցաւ ասպարէզ գործոց նորա։ Զօրուն հին խորհուրդ հայրապետաց ոմանց Աղեքսանդրիոյ բուռն հար մատուցանել յառաջ, այս ինքն՝ զաթոռն Աղեքսանդրիոյ անել առաջին յարեւելս եւ հրամանատու, կամ խոնարհեցուցանել իմն զիշխանութիւն հայրապետացն Անտիոքայ եւ Կոստանդնուպոլսոյ[1]։ Իսկ սոյն ձեռն ետուն նմա եւ ժամանակացն հանգամանք։

ՅԱնտիոք յետ Յովհաննու նստեալ էր նորին հօրեղբօրորդի Դոմնոս (440) որ թէպէտ եւ յօժարեալ էր յամենայն սրտէ ի խաղաղութիւն եւ ի միաբանութիւն, այլ տկար էր եւ անզօր։ Նմին իրի դիւրաւ սկսաւ Դիոսկորոս ընդունել ի դատ զամբաստանութիւնս զեպիսկոպոսաց որ ընդ հայրապետութեամբ Անտիոքայ էին, հալածէր զոմանս եւ կտրէր եւս ի հաղորդութենէ զԹէոդորետոս պատճառանօք՝ որպէս թէ յԱնտիոք հրապարակաւ խօսեալ իցէ հակառակ Կիւրղի եւ ուսուցեալ նեստորական վարդապետութիւն, այս ինքն զի Թէոդորետոս բանիւ եւ գրով (ի գիրսն Երանիստէս Բազմակերպարան անուն) յաղթահարէր զվանականն միաբնեայս (446—447)։

Ի Կոստանդնուպոլիս յետ հայրապետին Պրոկղի (434—447) յաջորդէր Փղաւիանոս (447—450) այր հեզ եւ զարմանալի, մեւս եւս Սոկրատեան ոչ վարուքն միայն այլ եւ կենացն արկածիւք։ Խղճմտութեամբ իմն էր ընդ հայրապետին՝ Քրիզաւփիոս ներքինի որ յայնժամ տիրէր իսկ յարքունիսն միաբանեալ ընդ Եւդոկիայ դշխոյի ընդդէմ Պուղքերիայ։ Քանզի Փղաւիան փոխանակ ոսկւոյն՝ զոր Օրհնութեանցն անուամբ տային մեծամեծացն նորըն-

ռանն՝ իսկ եւ իսկ պարտ իցէ խորշել եւ մերժել, քանզի բազում ինչ խոստովանին յայտնապէս զօր եւ մէջ հասարակաց... պղծեա եւ վնասակարեաց....։ (Կիւրեղ առ Նեստորիոս երկրորդ ....)

1 «Պանծացեալ պարծի (Դիոսկոր) ագաղար թէ ունիցի զաթոռն Մարկոսի, թէպէտ եւ գիտէ թէ յԱնտիոք աթոռն Պետրոսի կայ, որ վարդապետն էր Մարկոսի եւ առաջին ի մէջ առաքելոցն եւ գլուխ նոցա»։ (Թէոդորիտոս առ Փղաւիանոս. Թուղթ 86։)

Digitized by Google

ծայ հայրապետաց՝ առաքեաց հաց, եւ դարձեալ՝ զի չառ յանձն կարգել զՊուղքերիա ի սարկաւագուհի, զայրացեալ՝ զի նովին ներքինին եւ դշխոյն հեռացուցանել իմն կամին զկոյսն ի գործոց արքունեացն:

Այլ բուն իսկ գործիք եւ սպասաւորք Դիոսկորեայ ամբաւ բազմութիւն մոլեգին վանականացն էր: Վասնզի բազումք ի նոցանէ դատարկանձունք եւ փառասէրք՝ փոխանակ վանական կանոնացն պահպանութեան գրաւեալք ի քննութիւն վարդապետութեան, որ ոչ անկ էր նոցա, եւ ծնգեալ միաբնեան մոլորութեամբ, պաշտպանեալք յիւրեանց եպիսկոպոսաց՝ որոց գլխաւորն կինէին իբրեւ նեստորականաց, էին ի բանի ընդ Դիոսկորեայ ընդ յաջորդին Կիւրղէ: Գլուխ նոյնպիսեացն վանականաց ի սահմանս հայրապետութեան Անտիոքայ էր Բարսումաս գլխաւոր վանաց, այր բանաւոր՝ որ իբրեւ զօրականս գումարէր զիւրեւ զվանականսն յԱսորիս: — Սոքա միաբան էին ընդ վանականաց որ ի հայրապետութեան Կոստանդնուպոլսեայ էին եւ գլուխ եւ գրգռիչ էր վանականացն աստ Եւտիքէս ոչ սակաւ միջամուխ տեսական իրաց, այլ տանից աշխարհականութեան: Սա յառաջն գործակից էր Դաղմատեայ ի նպաստաւորութիւն ժողովոյն Եփեսոսի եւ բազում անգամ հաղորդէր թղթով ընդ Լեւոնի Ս. քահանայապետին Հռոմայ՝ տալով գոյժ թէ տարածանի օր ըստ օրէ աղանդն նեստորական. քանզի չէր հաւանեալ նա ընդ հանգամանս միաբանութեան Կիւրղի ընդ արեւելեայց եւ նեստորականս համարէր զնոսա: Այսպէս ծերունին ժանտ ելոյց զխարոյկն զոր 200 ամք չկարացին շիջուցանել:

Նոյն յամի 448 բարեկամ նորա եւ մտերիմ Եւսեբիոս եպիսկոպոս Դորիղեայ Փռիւգացւոց (այն որ երբեմն յորժամ ժողովրդականն էր՝ եւ նախ հակառակ վարդապետութեանն Նեստորի) անց ի մէջ ի ժողովն ուրեք ի Կոստանդնուպոլիս (8 Նոյ.) մատուցանել Փլաւիանեայ՝ մուրհակ ամբաստանութեան զԵւտիքեայ թէ կարծիս հերետիկոսութեան ունի եւ քարոզէ, զոր սուրբս եւ զյաջորդս նոցա նաեւ զՓլաւիանոս իսկ կոչէ հերետիկոս: Աղաչէր Փլաւիանոս զԵւսեբիոս զի ինքնին երթեալ շինեսցէ զմիտս նորա, բայց չառ զայն Եւսեբիոս յանձն. քանզի բազում անգամ փորձեալ էր փորձ եւ չվճարեալ ինչ: Յայն սակս սահմանեցաւ կոչել զԵւտիքէս ի ժողով անդր. եւ յետ ուրեմն յետ բազում անգամ կոչելոյ եկն (22 Նոյ.) գնդով միով վանականաց եւ զօրականաց զոր տուեալ էր նմա ի պաշտպանութիւն բարեկամ նորա Խրիսափիոս: Յետ բանից ինչ պատասխանւոյ զոր պատ ի պատ խօսեցաւ՝ ապա եցոյց յայտնապէս եւ համարձակ եթէ «Այսպէս իմն դաւանի թէ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս յառաջ քան զմիաւորութիւնն երկու բնութիւնք էին (թերեւս

զՈրոգինեանց կարծիս ունելով զյառաջագոյութենէ ոգւոց), այլ յետ միաւորութեան՝ մի միայն բնութիւն է նորա, եւ թէ աստուածեղէն մարմին նորա չէ ի միասին էական ընդ մեզ»։ Բայց զմարմինն Քրիստոսի խոստովանէր յօրինեալ ի մարմնոյ Կուսին եւ զլինելն Քրիստոսի կատարելապէս մարդ չուրանայր, եւ չդնէր ինչ խառնակութիւն, այլ հակառակորդք նորա յառաջ բերէին զայն ի վարդապետութենէ նորա¹. միանգամայն յայտ առնէր թէ զգիրս սուրբս նախամեծար համարի քան զհայրս սուրբս (այս ինքն զաւանդութիւն)։ Պահանջէին ափրիկէին զնա դատապարտել զայն վարդապետութիւն եւ ընդունել ոչ միայն զԹուղթն Կիւրղի առ Նեստոր զերկրորդն՝ զոր ընկալաւ ժողովն Եփեսոսի, այլ եւ զհամաձայնական միութեան ընդ արեւելեայս։ Բայց իբրեւ չառ յանձն՝ մերժեցաւ ի հաղորդութենէ եւ ի պաշտօնէ երիցութեան եւ յառաջնորդութենէ վանացն. եւ առժամայն արկին զձեռս ձեռնադրին։ Այնուհետեւ երկոքին կողմանք դիմէին առ քահանայապետն Հռոմայ առ Ղեւոն Ա.։

## 106

Չէ յայտ ստուգութեամբ՝ որպէս քաղաքն նշանակէ եւ ամ ծննդեան սորա որ վասն մեծամեծ առաւելութեանց անձին եւ վասն մեծամեծացն զոր յօգուտ եկեղեցւոյ վճարեաց՝ կոչեցաւ Մեծ։ Սակայն հաւանութեան է թէ ծնեալ իցէ Ղեւոն ի Հռոմ, ի տուսկիացի հօրէ Կուինտիանոս անուն՝ ի կատարած կայս չորրորդ դարու։ Յայտ ի մանկենից նորա է զի հզօրագոյն իմն միտք էին նորա եւ կրթեալ քաջ ի հրահանգս գեղեցիկն դպրութեանց եւ ի գիտութիւնս եկեղեցւոյ։ Վաղ առ Զօսիմոսիւ քահանայապետաւ առաքեցաւ նա իբրեւ ջահընկալ կամ արբանեակ եկեղեցւոյն Հռոմայ ի Կարքեդոն՝ տանել պատգամ վասն խնդրոյն Պեղագեանց (418)։ Առ Կելեստինեաւ (423—432)՝ իբրեւ սարկաւագապետ եկեղեցւոյն Հռոմայ երեւելի էր Ղեւոն, ամենեւին վստահ էր ի նա քահանայապետն, եւ ի նորա ձեռն վճարէր ամենայն ընդդէմ Նեստորի։ Ինքնին Ղեւոն յառաջ իսկ քան զժողովն Եփեսոսական հրաման ետ Կասիանեայ դնել գիրս ընդդէմ Նեստորականութեան՝ զմտաւ ածեալ թէ Կասիանոս որ հմուտ էր արեւելեան լեզուի՝ յարեւելեան հարց անուանք յոր յեցեալ էր Նեստորիոս՝ յանդիմանեսցէ զնա, մանաւանդ յԹոկեղեքեանէ՝ յորոյ ի վարդապետութեանն վայելեալ էր։ Այսպէս գրեաց Կասիանոս զեւթն գիրսն վասն Մարմնաւորութեան Տեառն եւ Նուիրեաց Ղեւոնի սարկաւագապետի առանձինն թղթով (432 կամ 5)։ Յայն սակս եւ սուրբն Կիւրեղ Աղեքսանդրացի յետ ժողովոյն Եփեսոսի դիմէր առ Ղեւոն, խօսել առ քահանայապետն չտալ հաւանութիւն բանից Յոբնաղայ Երուսաղեմացւոյ որ կամէր ափշտակել զպատիւ աթոռոյն իւրոյ։ Այսպէս եւ ինքն քահանայապետն Կելեստինոս նմա տայր յանձն զքննութիւն կէս պեղագեան աղանդոյն յորժամ եկն Պրոսպեր ի Գաղղիայ ի

1 Յիսուս Քրիստոս, ասէր, էր կատարեալ Աստուած եւ ծնաւ կատարեալ մարդ ի սրբոյ Կուսէն, այլ տանից մարմնոյ որ իցէ ի միասին էական (էակից) մեզ, եւ չասեմ, ասէ, թէ մարմինն Աստուծոյ՝ իցէ մարմին մարդոյ, այլ մարդկեղէն մարմին»։

դի (Յուլ. 444) եղանէր հրովարտակ եւ ի Վաղենտինեայ Գ. ըստ թելադրութեան Ղեւոնի, որով մերժէին Մանիքեցիք յամենայն քաղաքաց իւրեանց, ի զինուորական պաշտամանէ եւ յիրաւանց ժառանգութեան։

Յետ սակաւ ինչ միոյ գրեալ զգուշացուցանէր ղեպիսկոպոսունս Վերին Իտալիոյ վասն Պեղագեանց որ ջանային հնարէին սպրդել մտանել յիւրաքանչիւր աթոռ՝ ուստի մերժեալն էին. առաքէր առ նոսա Ղեւոն զձեւ դաւանութեանն որով եւեթ լինելոց էր ընդունելութիւնն դարձելոց ի նոցանէ։ Սուրբն Պրոսպէր էր նորա գրիչ խորհրդակից եւ օգնական։

Նոյն ընդ նոյն ժամանակս դէպ լինէր Ս. Հիղարեայ Արելատայ եպիսկոպոսի ընկենուլ սինհոդոսիւ զՔեղիդոնիոս կամ Կելեդոնիոս զեպիսկոպոս Վեսանտիոնի յիշխանութենէն։ Դիմեաց սա բողոքելով առ Ղեւոն քահանայապետ որ յետ ճշդագոյն քննութեան դատաստանի նորա՝ արձակեաց զնա։ Յանդիմանեալ կշտամբեցաւ Ս. Հիղարիոս ի քահանայապետէն եւ զիշխանութիւն աթոռոյն Արելատայ փոխեցաւ յաթոռն Ղուգդունեայ, եւ Ս. Հիղարիոս խնդրեաց ի նմանէ խոնարհութեամբ հաշտութիւն (444)։ Ի միւսում ամին (445) եղանէր հրովարտակ ի Վաղենտինեայ Գ. զի մի իշխիցեն "եպիսկոպոսունք Գաղղիոյ կամ այլոց նահանգաց, հակառակ հին սովորութեանն, ձեռն արկանել յիրս ինչ առանց հրամանի առն պատուականի եպիսկոպոսի յաւիտենական քաղաքին (Հռոմայ)։ Այլ լիցի այն ամենայն յօրէնս վասն նոցա, որ ինչ միանգամ սահմանեաց կամ սահմանիցէ իշխանութիւն առաքելական աթոռոյն. այնպէս զի եթէ ոք յեպիսկոպոսաց կոչեցեալ յատեան եպիսկոպոսին Հռոմայ՝ չառնուցու յանձն գալ, ի կուսակալէ աշխարհին ստիպեսցի գալ, պահեալ ամենայնիւ զամենայն զոր եդուն հարքն մեր հառաջական եկեղեցւոյ"։

Հասանէր առ նա ամբաստանութիւն յամի 446 վասն բռնութեան Անաստասայ մետրապօլտի Թեսաղոնիկեայ որ էր միանգամայն տեղապահ առաքելական աթոռոյն ի Իլլիրիկէ՝ որ էր մասն արեւմտեան հայրապետութեան. յանդիմանէր զնա քահանայապետն մեծաւ սաստկութեամբ եւ խրատեալ թելադիր լինէր՝ լինել նմանող մեղմական հեզութեան որ բնածին իսկ է առաքելական աթոռոյն Հռոմայ՝ զորոյ ինքն Անաստաս զտեղապահութիւնն ունէր։

Այն ինչ յորդորեալ էր քահանայապետն առհմայրին ժողովել Տոլեդայ եւ զիւրս սպանիական եկեղեցւոյն վասն աղանդոյն Պրիսկեղիանեանց՝ որք միանգամ ամբարձեալ էին զգլուխս իւրեանց ի ժամանակս արշաւանաց բարբարոսացն, անտուստ յարեւելից հնչէր աղմուկն Եւտիքականութեան՝ յոր մանաւանդ պատրաստեալ էր զնա անուշութիւնն իբրեւ ախոյեան (438)։

## 107

Յինքնին Եւտիքէս յառաջ քան զամենայն գրէր առ Ղեւոն քահանայապետ, ամբաստան լինել զսինհոդոսէն թէ յառաջագոյն իսկ միաբանեալ իցէ հակառակ նորա ի թշնամութիւն, թէ զդաւանութիւն նորա գրով չընկալան, ուր ինքն երկուս բնութիւնս ի Քրիստոս ուսուցանէր եւ նզովէր զայնոսիկ որ ոչ այնպէս ուսուցանիցեն, եւ միանգամայն թէ դաւաճանութիւն եւս

Digitized by Google

գոյր վասն կենաց նորա, եւ թէ բողոքեալ եւս իցէ առ սրբութիւն նորա, այսինքն՝ առ Լեւոն եպիսկոպոս Հռոմայ, եւ չիցէ ուրուք եղեալ այնմ ունկն, եւ յետոյ արկանէր զվարդապետութիւն իւր ընդ քննութեամբ եւ վճռով քահանայապետին։ Նոյնպէս գրէր եւ առ Ս. Պետրոս Ոսկեխօս արքեպիսկոպոս Ռաւեննայ՝ ուր նստէր կայսրն արեւմտից (եւ գտանեմք զի յետոյ եւ նմա խրատ տուրբն անսալ ամենայնի զոր Լեւոն սահմանիցէ, զի առանց քահանայապետին հաւանութեան, ասէ, չկարեմ մխել ի վարդապետութիւնս հաւատոց)։ Նոյն եւ ինքն իսկ կայսր Թէոդոս պատրեալ ի Քրիսափեայ գրէր առ քահանայապետն եւ յորդորէր հաստատել միանգամ զխաղաղութիւնն ի մայրաքաղաքին։

Թուղթք սոցա վաղագոյն հասին ի Հռոմ քան զթուղթն Փղաւիանու, նմին իրի եւ Լեւոն մինչ չեւ հասեալ թղթոյ սորա ի Հռոմ գրով յայտ առնէր Փղաւիանու թէ զարմացեալ է զի չառաքեաց ինչ նա զրոյց վասն իրացն, որպէս պարտք իսկ էին նորա եւ խնդրէր զի գրեսցէ զամենայն մանր։ Յայնժամ Փղաւիան առաքէր զհետ թղթոյն եւ զգործս դատաստանին Եւտիքեայ։ Եւ մինչ չեւ քահանայապետին զեւր դատաստան առաքեալ՝ անտուստ Եւտիքէս խնդրեաց ընկալաւ ի կայսերէ սինհոդոս նոր ի քննութիւն գործոց առաջնոյ սինհոդոսին՝ յորում դատապարտեցաւ, ասելով թէ նենգեալ են գործք սինհոդոսին այնորիկ. բայց սակայն իբրեւ քննեցան համեմատեցան ի սինհոդոսի աստ օրինակքն, գտան համեմատ բուն օրինակին մինչեւ ցաղօթքայս ապաստան (8—13, Ապր. 449)։

Սակայն եւ այնպէս ի մտի եղեալ էր Քրիսափիոս զԵւտիքէս ապրեցուցանել եւ զՓղաւիանոս հայրապետ եւ զԵւսեբիոս արկանել յաթոռոց։ Նմին իրի դրդեաց գրգռեաց զԴիոսկորոս հայրապետ Աղեքսանդրիայ (յամէ 444) մեծաւ խոստմամբք՝ հակառակ նոցա, նա եւ զդշխոյն Եւդոկիա յանկոյց յինքն։

Խնդրեաց Դիոսկորոս ժողով տիեզերական եւ ընկալաւ իսկ դիւրաւ. եւ վաղվաղակի հրովարտակ կայսերական (30. Մարտ 449) առ գլխաւորս վճռակացն՝ զի իւրաքանչիւր առեալ 10 մետրապոլիտս եւ այլ եւս 10 եպիսկոպոսունս հմուտս գիտութեան ճեպեսցեն հասանել յԵփեսոս յառաջնում աւուր Օգոստոս ամսոյ, սպառնացեալ Աստուծոյ եւ կայսեր յաչաց ելանել թէ անփոյթ ոք առնիցէ գալ անդր. բայց միայն Թէոդորետոս մի իշխեսցէ գալ, որում վաղ իսկ տուեալ էր հրաման չմեկնել ամենեւին ի քաղաքէ եպիսկոպոսութեան իւրոյ։ Համարձակ իցէ այնոցիկ որ դատեցան զԵւտիքէս՝ գալ, բայց մի տացեն ամենեւին վճիռ ի ժողովին։ Բարսումաս հայր վանաց յանուանէ իսկ հրաւիրեալ էր ի կայսերական հրովարտակին իբրեւ տեղապահ առաջնորդաց վանաց եւ երեւելի հակառակորդ Նեստորի։ Վասն կարգաւորութեանն

մինչեւ այնպէս իմն իրքն յարդարեցան՝ զի փոխանակ զխնդիր վարդապետութեանն լուծանելոյ, դատաստանն Եւտիքեայ բերաւ նախ յառաջ: Յայն սակս ընթերցան գործք սինհոդոսին Կոստանդինուպոլսեայ յորում նոյն դատապարտեցաւ, եւ զառաջինն կարգաւ եւ հանդարտութեամբ ամենայն վճարէր, այլ իբրեւ հասին յայն տեղի՝ ուր հարցանէր Եւսեբիոս Դորիլացի թէ խոստովանեսցի՞ Եւտիքէս երկուս բնութիւնս ի Քրիստոս յետ միաւորութեանն, եւ թէ իցէ՞ Քրիստոս ի միասին էական ընդ մեզ ըստ մարմնոյն, յայնժամ աղաղակել սկսաւ մասն մի բազմութեանն՝ Ի բաց լիցի Եւսեբիոս, արկէք զնա ի խարոյկ, այրեսցի նա կենդանւոյն, արժանի է զի պատառեսցի որպէս պատառեացն եւ բաժանեաց: Իբրեւ եհարց Դիոսկոր զեպիսկոպոսունսն թէ որպիսի՞ ինչ թուիցի ձեզ ասելն երկուս բնութիւնս յետ մարմնաւորութեանն. ետուն ոմանք պատասխանի "Անիծեալ որ այնպէսն ուսուցանիցէ": Բայց զի ոչ ամենեքին այնպէս ինչ աղաղակել կարող էին զի լիցի լսելի, եւ կամ զի լուռ իսկ ամենեւին կային, հրաման ետ եպիսկոպոսացն ամբառնալ ի վեր զձեռս՝ նշանակ հաւանութեան: Գոչեաց միւսանգամ առաւելագոյն բազմութիւնն "Որ երկու բնութիւնս ասէ՝ նզովեալ լիցի": Այսպէս արձակեցաւ Եւտիքէս ի դատապարտութենէն եւ դարձուցաւ յառաջին պատիւն, վասն զի վարդապետութիւն նորա գտաւ առաջի նոցա համեմատ Նիկիական եւ Եփեսոսական ժողովոց: Իսկ վասն հրեշտակացն Հռոմայ չլինէր ինչ ի գումարման աստ, քանզի եւ անդէն իսկ իսկզբանն բողոքեաց Եւտիքէս հակառակ նոցա իբրեւ զպարեկամաց Փղաւիանու:

Իբրեւ այսպէս զչափ առ Դիոսկորոս թէ անսան նմա առ ահին տագնապի եպիսկոպոսունքն, տայր ընթեռնուլ զգործս վեցերորդ գումարման Եփեսոսական ժողովոյն, որ զհաւատոց ճառեալ արգելոյր առնել նորաձեւս. եւ ըստ բանիցն այնոցիկ դատապարտէր զՓղաւիանոս եւ զԵւսեբիոս թէ հակառակ այնմ գործեցին՝ դատապարտեալ զԵւտիքէս, եւ այնպէս անցին ըստ օրէնս հայրցն. այսպիսի ամբաստանութեամբ արկան նոքա յիշխանութենէ: Իսկ Փղաւիանոս ետ գիր բողոքման միում ի հրեշտակացն Հռոմայ, եւ Հիղարիոս սարկաւագ հրապարակաւ բողոքէր վասն անիրաւ դատաստանին այնորիկ: Նա եւ ոմանք յեպիսկոպոսաց անտի անկեալ փարէին զոտիւքն Դիոսկորայ, պաղատէին ի բաց կալ յայնպիսի գործոյ: Յայնժամ յոտն եկաց եզիպտացին, գոչեաց մոլեգին եւ ասէ, Ո՞ւր են կոմսքն. ընդ բանին իսկ եւ իսկ եմուտ ի ներքս յեկեղեցի անդր անթիպատոսն Ասիացւոց եւ զհետ նորա խուժէր ամբոխ զօրականաց, վանականաց եւ խառնաղանճ մարդկան, խարազան եւ շղթայք ի ձեռս: Հիացան զարհուրեցան եպիսկոպոսունքն. զուր էր ամենայն ջան նոցա, ստիպեցան անցանել ի մէջ եւ արկանել ձեռնագիր ի վերայ անգիր քարտիսի: Իսկ ի վերայ Փղաւիանու



Digitized by Google

յարձակեալ անկան վանականքն Բարսաւմայ բռունք, արկին զնա ի գետին, եւ Դիոսկոր կոխեաց ոտամբն։ Այս ածաւ ընդ քարշ ի բանտ եւ ի վաղիւ անդր յաքսորս (յԼիւդիայս Պլեւղացւոց), եւ յաւուրն երրորդի վախճանէր ի Լիւկանաց անտի։ Այնուհետեւ ձեռն արկանէր Դիոսկոր զայլ եւս հակառակորդսն իւր մերժել յիւրաքանչիւր աթոռոց, որք եւ ընկեցան մի ըստ միոջէ յեպիսկոպոսութենէ, ոչ այնոքիկ միայն որ ի ժողովն անդ էին կամ չարկեալ ձեռնագիր, այլ եւ որ ի բացեայն էին եւ կամ արկեալ ձեռնագիր։ Այսպէս մերժեցաւ ի բաց Իբաս Եդեսացի, Թէոդորետոս Կիւրացի, Դանիէլ Խառանացի. փոխանակ Իբայ եղաւ Նոննոս անուն, փոխանակ Դոմնոսի Անտիոքայ հայրապետի՝ Մաքսիմոս ոմն երէց, իսկ փոխանակ Փղաւիանու՝ Անատողիոս երէց Աղեքսանդրացի. եւ յայն եւս յանդգնեցաւ՝ մինչեւ նզովել եւ զքահանայապետն Հռոմայ։ Իբրեւ ամենայն վճարեցաւ՝ եւ մեկնեցաւ վաղվաղակի Դիոսկոր յԵփեսոսէ, եւ քակեցաւ ժողովն, Հաստատեաց զգործս ժողովոյն կայսրն, հան հրաման թէ մի ոք՝ որ զմիաբանութիւն Նեստորի եւ զՓղաւիանու ունի, կարգեսցի եպիսկոպոս։

Այսպէս յաղթեաց միաբնական հերձուած. եպիսկոպոսունք Եգիպտոսի, Պաղեստինեայ եւ Թրակիոյ միաբանեալ եւ հաւանեալ էին ընդ Դիոսկորի, իսկ այլ եւս ամենայն կողմանք էին ընդ Լեւոնի քահանայապետին Հռոմայ։ Ամենեցուն ոգւոց ակնահետեւ աչք ի նա հայէին, ի սմանէ յուսային գտանել օգնականութիւն փրկութեան յաղետիցն հասելոց։ Գեղու իմն զաղէս Թուղթն Թէոդորետեայ, զոր ընդ ժամանակս ընդ այնոսիկ գրեաց առ Լեւոն յորում ասէ դիմել առ նա որպէս երբեմն Պաւղոս դիմեաց առ Պետրոս, յորժամ հակառակութիւնքն էին յԱնտիոք, եւ աղաչէ զքահանայապետն, իբրեւ զգլուխ համօրէն եկեղեցւոյ հասանել յօգնականութիւն ի նեղութեան նորա[1]։

1 «Եթէ Պաւղոս, ասէ, քարոզն ճշմարտութեան եւ փող Հոգւոյն սրբոյ, եկ գնաց առ մեծն Պետրոս, զի ի նմանէ ընկալցի լուծումն վասն օրինական խնդրոյն յաւելելոյ յԱնտիոք, եւս առաւել մեք ապաժամանքս եւ փոքրունք դիմեմք առ աթոռ ձեր առաքելական՝ զի ի ձէնջ ընկալցուք դարման բժշկութեան վիրաց եկեղեցեացն։ Քանզի ձեզ անկ է զյառաջակացութիւնն ունել յամենայնի. քանզի բազմապատիկ իմն առաւելութեամբք փայլէ աթոռ ձեր։ Զի զայլ եւս քաղաքս պայծառ երեւեցուցանէ կամ մեծութիւնն կամ գեղեցկութիւն եւ կամ բնակչացն յաճախութիւն, իսկ զկէսսն՝ որ զրկեալ յայնպիսեաց իցեն՝ պարգեւք ինչ հոգեւորականք չքեղացուցանեն։ Իսկ ձերում քաղաքիդ եւս առաւել բարութեանցն զխոսան յաճախութիւն բարութեանցն. քանզի մեծ է նա քան զամենեսին եւ մեծապայծառ, որ եւ զահերէց է տիեզերաց եւ լի է բնակչացն յաճախութեամբ։ Հանդերձ առքեմբք՝ ունի առատութիւն իշխանութեան, եւ ինքն քաղաքն զիւր իսկ անունն տայ ի վերայ ամենայն հպատակելոցն։ Այլ առաւել իսկ քան զամենայն հաւատք փառաւոր առնեն զնա, որում վկայ վաւերական երանելին է առաքելածնեղէնն Պաւղոս որ բողոք բարձեալ գոչէ «Հաւատք ձեր պատմին ընդ ամենայն աշխարհ»։ Եթէ իսկ եւ իսկ յետ ընդունելոյ զհռչակաւոր կենարար քարոզութեանն՝ այսպիսի զարմանալի պտուղս առատութեան եբեր, արդ ո՞ր ճոխաբանական իցէ յայս ասնել զզօրութիւնն այժմու քարոզութեան բարեպաշտութեանն։ Ունի զարձեալ զշիրիմս զհասարակաց հարցն եւ վարդապետաց՝ զՊետրոսի եւ զՊաւղոսի, որ զոգիս հաւատացելոցն լուսաւորեն։ Այս երանելի եւ աստուածեղէն ամոլք՝ թէպէտ եւ յարեւելս եղին եւ զճառագայթս ընդ բնաւ ծագեալ ծաւալեցին, սակայն անդէն յարեւմուտս արձակեալ ինքնակամ զմուտս կենաց իւրեանց, եւ անտուստ այժմ զհամօրէն տիեզերս լու-

Digitized by Google

Այլ ամենայն ընդ վայր եւ վայրապար. Եւ սոցա եւ քահանայապետին տայր Թէոդոս պատասխանի թէ ամենայն ինչ օրինօք կատարեցաւ յԷփեսոս եւ Փլաւիանոս յիրաւի մերժեցաւ։ Նմին իրի իսկ ի թղթին որ առ քահանայապետն՝ խնդրէր հաստատել զԱնատողիոս յաթոռ հայրապետութեանն Կոստանդինուպոլսոյ, որպէս եւ ինքն եւս Անատողիոս հայցէր զհաւանութիւն եւ զհաստատութիւն քահանայապետին։ Այլ թուղթ պատասխանւոյ քահանայապետին եւ հրեշտակութիւն նորա չժամանեաց երանել առաջի կայսերն, զի կարեցաւ յանկարծուստ թել մեքենաւորութեանց ադքունեացն՝ յանկարծ մահուամբն Թէոդոսի Բ։

Այլ ըստ Նիկեփորայ պատմագրի՝ յորդորեալ Պուղքերիայ ի թղթոյ անտի քահանայապետին Լեւոնի եղեալ ի միաբանութենէն ձեռպէր յարքունիսն, բանայր զաչս եղբօրն՝ որ ախտաւորութեամբն մատնեալ էր ի ձեռս արանց վատաց խորամանկաց. Քրիսափիոս ընկալաւ պատիժ մահու, իսկ դշխոյն Եւդովկիա առ հրաման մեկնել գնալ յԵրուսաղէմ՝ զրկեալ ի կայսերական պատուոյն (449)։

Վախճանէր Թէոդոս Բ. (29, Յուլ. 450) անկեալ յերիվարէ յորսան՝ 50 ամաց, յետ թագաւորելոյ ամս 43, մնացեալ թէ այլոց թագաւորելոյ փոխանակ նորա։ Անջողակ էր նա ի գործել, յայն սակս եւ Գեղեցկագիրն անուանեցաւ։ Անտիոքոս ոմն անուն հանդերձ այլովք եւթն իրաւագիտօք փառաւորեաց զանուն նորա Թէոդոսեան ժողովեան օրինօք, ժողովեալ ի նմա զամենայն հրամանս կայսերաց անդստին ի Կոստանդիանոսէ Մեծէ ի 16 գիրս։

## 108

Այնուհետեւ եղ յաթոռ դշխոյն Պուղքերիա (450—453). բայց ընտրեաց իւր ի փեսայութիւն պայմանաւ կուսութեան՝ զայրն առաքինի եւ զքաջ զ60ամեայ սենեկապետն զՄարկիանոս (450—457) Թրակացի յազգէ եւ արար զնա բարձակից թագաւորութեանն, որ եւ մեծաւ վստահութեամբ եւ պատրաստութեամբ մատուցանէր թագաւորին Հոնաց Ատտիղայ երկաթ՝ փոխանակ հարկի ոսկւոյն, եւ այնպէս զանգիտեալ Ատտիղայ ընդհարկանել ընդ տէրութեանն արեւելից՝ դիմէր յարեւմուտս, ուր միայն Լեւոն քահանայապետ կերպարանօք հեզութեանն ցածուցանէր զխրոխտանս նորա, որպէս յետոյն պատմեսցի։

Ընկալաւ դշխոյն մեծաւ սիրով զհրեշտակութիւնն Լեւոնի (որ առ Թէոդոս առաքեալ էր) եւ զթուղթն յորում սահմանէր քահանայապետն վասն ընդունելութեան Անատողեայ պայմանս, այս ինքն թէ լեալ իցէ հեռի ի վերջին գործոց անտի, եւ ընդունիցի զթուղթն իւր առանց ընդ բանս ինչ · ածելոյ։ Հրեշտակութիւնն այն (երկուց եպիսկոպոսաց Աբունդիոսի եւ

Digitized by Google

Նեստորիոսի եւ երկուց երիցանց) եղեւ Միայուն ի քաղաքին, եւ ի ձեռն նոցա իմանայր այնու-հետեւ քահանայապետն զեկեղեցական անցս արեւելից, եւ նոքօք հաղորդէր զխորհուրդս իւր կայսերացն: Յանձն առ զպայմանս քահանայապետին Անատողիոս մեծայօժարութեամբ, եւ ժողովեալ զգաւառականս եպիսկոպոսունս որ եկեալ էին յողջոյն նորոյ կայսեր՝ արկին միաբան ձեռնագիր Թղթոյն Լեւոնի առ Փղաւիանոս, եւ ապա առաքէր զայն Անատողիոս իսկ եւ իսկ առ եպիսկոպոսունս արեւելից: Աստահ լեալ այնու-հետեւ ի նա քահանայապետին՝ յանձն արար նմա խորհըրդակցութեամբ հրեշտակաց իւրոց որոշել զպայմանսն, եւ ընդունել տակաւ ի հաղորդութիւն զտկարացեալսն ի ժողովին Եփեսոսի. պատուէր տուեալ միանգամայն՝ զի մի յիշեսցին առաջի սըրբոյ սեղանոյ անուանք Դիոսկորայ, Յոբնաղայ եւ նոյնպիսեաց: Այնչափ գործ միաբանութեանն յաջողէր՝ մինչեւ շրջէր այնու-հետեւ քահանայապետն զխորհուրդ իւր եւ չկամէր թէ գումարեսցի ժողովն տիեզերականն՝ զոր խնդրեալ էր ի Թէոդոսէ եւ ի Պուղքերիայ. մանաւանդ զի ածեալ էր Մարկիանեայ փառաւորութեամբ զմարմին Փղաւիանեայ ի Կոստանդնուպոլիս եւ Եւտիքէս ընկեցեալ էր յերիցութենէ եւ յառաջնորդութեանն պատուոյ: Սակայն յետուստ հարկ համարեցաւ զիջանել կամաց դշխոյին եւ Մարկիանեայ, քանզի այսպէս ինձ համարէին սոքա թէ նովին առցեն առաւել հաստատութիւն իրք տէրութեանն:

Սահմանեցաւ տեղի ժողովոյն նախ Նիկիա, այլ ապա ըստ խրատու հրեշտակաց քահանայապետին, եւ զի չկարէր կայսրն ինքնին գալ ի Նիկիա՝ որպէս կամէրն, սահմանեցաւ Քաղկեդոն: Թիւ եպիսկոպոսացն էր առաւել քան զ600, որ է յաճախագոյն քան զամենայն արեւելեան ժողովս. էին ի նոսա եւ բազումք ի հարց սրբոց Եփեսոսական ժողովոյն. սակաւաւորք էին եպիսկոպոսունքն արեւմտից վասն ասպատակի Վանդաղացն՝ յԱփրիկէ, եւ Գոթացն եւ Փրանկաց՝ ի Գաղիա եւ յԻտալիա: Սկիզբն առ ժողովն (451, Հոկտ. 8) յեկեղեցւոջ Ս. Եւփեմիայ առաջի 6 կամ 7 պատգամաւորաց կայսեր յայանց երեւելեաց սինկղիտոսին: Երկու ինչ էր գործ ժողովոյն, նախ՝ առնել դատաստան ի վերայ Դիոսկորի եւ գործակցաց նորա, ի վերայ եպիսկոպոսացն արեւելից՝ որք բարբանօք նեստորականութեան մերժեալ էին յաթոռոց եւ տակաւին դատախազ կայր զնոցանէ կողմն Եգիպտացւոց: Երկրորդ անգամ՝ լուծանել զխնդիրս հաւատոց որ ի ձեռն Նեստորի եւ Եւտիքեայ յուզեցան: Իրք եպիսկոպոսացն յառաջնում եւ յերկրորդում գումարմանն վճարեցան: Նստան գահերէց ժողովոյն հրեշտակք քահանայապետին Ղուկենտիոս Ասկողոնի եւ Պասկասինոս Լիլբէոնի եպիսկոպոսունք հանդերձ Բասիղեաւ եւ Բոնիփակեաւ երիցամբք, ապա Անատող Կոստանդնուպօլեայ, Դիոս-

*կոր Աղեքսանդրիայ եւ ապա այլք կարգաւ։ Բայց իսկ եւ իսկ յայտ առար Պասկասիոս թէ Դիոսկորայ չէ արժան նստել ի դատաստան, այլ ինքն ընդունելոց է դատաստան՝ զի յափշտակեաց յինքն զիշխանութիւն դատաւորութեան եւ «զի առանց հաւանութեան առաքելական աթոռոյն արար սիւնհոդոս, որ ոչ երբեք լեալ է եւ ոչ արժան իսկ»։ Թէպէտ եւ պատգամաւորք կայսերն ցուցին հրեշտակացն թէ չմարթին ինքեանք դատախազ եւ դատաւոր միանգամայն լինել, սակայն եւ այնպէս հրամայեցաւ Դիոսկորի ելանել ի տեղւոջէն եւ կալ ի միջին վայրի։ Քանզի լուեալ զբան կայսերական պատգամաւորացն Եւսեբիոս Դորիլեցի այր հմուտ դատաստանական օրինաց, ել անց ի մէջ լինել դատախազ զԴիոսկորայ եւ ետ գիր ժողովոյն՝ յորում բովանդակեալ կային համառօտիւ անցք աւազակական ժողովոյն, եւ խնդրէր զի քննեսցի։ Հաւանեցան յանձն առին հարքն, եւ սկիզբն եղեւ ընթերցմանց գործոց սիւնհոդոսին այնորիկ, եւ այնպէս զայս յայտ թէ չետ թոյլ Դիոսկոր ընթեռնուլ զթուղթն Լեւոնի՝ յետ բազում անգամ երդմամբ խոստանալոյ, եւ թէ նենգեալ է զգործս սիւնհոդոսին, եւ թէ ստիպեալ է զեպիսկոպոսունսն արկանել ձեռնագիր ի վերայ անգիր քարտիսի, եւ զՓղաւիանոս եւ զԵւսեբիոս առանց իրաւանց մերժեալ յաթոռոցն։ Յայնժամ վճիռ ետ մեծ մասն եպիսկոպոսացն թէ անարժան է Դիոսկոր եպիսկոպոսական պատուոյն, նոյնպէս եւ վասն Յոբնաղայ Երուսաղեմայ, Թաղասիոսի Կեսարիայ, Եւսեբեայ Անկիւրայ, Բասիղիոսի Սելեւկիայ Իսաւրացւոց եւ Եւստաթիոսի Բերիտոսի եպիսկոպոսաց, այնու՝ զի ակալութեամբ անսացին բանից եւ գործոց Դիոսկորի։ Թէոդորետոս եւ Իբաս որ յաւազակական ժողովի նզովեալ էին՝ եղեն ընկալեալ ի հարցն յետ նզովելոյ նոցա յայտնապէս զՆեստոր։ Անդէն յերրորդում գումարմանն եկին եղին առաջի այր ոմանք յԱղեքսանդրացւոց ամբաստանք զԴիոսկորայ. ցուցանէին զգործս բռնութեան հայրապետին իւրեանց, զագահութեանց, զյափշտակութեանց եւ զանառակութեանց ընդ կանանց։ Երիցս կոչեցաւ Դիոսկոր ի ժողով անդր, եւ իբրեւ չառ յանձն գալ, ընկեցաւ նա յեպիսկոպոսութենէն եւ ի քահանայական պատուոյն, նախ վճռով հրեշտակաց քահանայապետին եւ ապա համօրէն իսկ ժողովոյն՝ վասն բռնութեանցն յԵփեսոս, վասն անսաստելոյ ձայնի կոչման ժողովոյն եւ այլոց անօրէն գործոց իւրոց։ Իսկ այլ եւս եպիսկոպոսունք, որպէս Յոբնաղ եւ այլքն ամենեքին որք ցուցեալ էին գործակից գործոց նորա յառաջնում գումարման անդ՝ ապա ի չորրորդում գումարմանն ցուցին առ հասարակ զզջումն եւ ընկալաւ զնոսա ժողովն։*

*Իսկ հաւատոյն խնդիրք յերկրորդ, ի չորրորդ եւ ի հինգերորդ գումարմունսն վճարեցան։ Յերկրորդում անդ յետ ընթեռնլոյ*

Digitized by Google

վկայութիւնս ի Հայրցն առաջնոց՝ ընթերցան թուղթք Կիւրղի առ Նեստոր եւ առ Յովհաննէս Անտիոքացի։ Իսկ իբրեւ յետ այնորիկ ընթերցաւ որպէս պսակ ամենայնի եւ հոյակապ թուղթն Լեւոնի առ Փղաւիանոս՝ գոչել սկսան միաբան հարքն. «Այս են հաւատք հարցն եւ առաքելոց. ամենեքին զնոյն հաւատս ունիմք. ի նոյն հաւատս կան ամենայն ուղղափառք. Պետրոս բերանով Լեւոնի այսպէս խօսեցաւ. առաքեալք այսպէս ուսուցին. ոչ մոլորեցաւ երբեք Լեւոն ի վարդապետութենէ աստուածպաշտութեան եւ ճշմարտութեան»։

Գլխաւոր մասն թղթոյս այս է[1]. «Ողջ կացեալ սեպհականութեան երկոցունց բնութեանցն (եւ էութեանց) եւ ի մի դէմս գումարելով՝ ընկալեալ եղեւ ի մեծութենէ՝ խոնարհութիւնն, ի զօրութենէ՝ տկարութիւնն եւ ի մշտնջենաւորութենէ՝ մահկանացութիւնն. եւ զի առնիցէ հատուցումն մերոցն պարտեաց՝ բնութիւնն անկրական միաւորեցաւ ընդ չարչարելի բնութեան, զի որպէս պիտոյ իսկ ի մեր բժշկութիւն էր՝ մի եւ նոյն միջնորդ Աստուծոյ եւ մարդկան, մարդն Յիսուս Քրիստոս կարող իցէ մեռանել միովն եւ մի լիցի կարող մեռանել միւսովն»։ (Եւ իբրեւ տարակուսէին ինչ ընդ վերջին բանս եպիսկոպոսունք ոմանք Իլիւրիկեայ եւ Պաղեստինեայ՝ ցուցաւ նոցա անդէն ի ժողովոյն նմանագոյն բան Կիւրղի որ ասէր, «Բայց քանզի բուն մարմին նորա շնորհօքն Աստուծոյ ըստ առաքելոյն Պաւղոսի վասն ամենեցուն մեռաւ, յայն սակս ասի զնմանէ վասն մեր մահու համբերեալ. իբր ոչ եթէ ի փորձ մահու եկեալ նորա ըստ իւրում բնութեանն, քանզի անմտութիւն է ասել կամ իմանալ զայս, այլ զի, որպէս վաղն ասացի, մարմին նորա ճաշակեաց զմահ»։ Թուղթ Ա. առ Նեստոր)։

«Այսպէս ողջ եւ կատարեալ բնութեամբ ճշմարիտ մարդոյ ծնաւ Աստուածն ճշմարիտ, բովանդակ՝ իւրովքն, եւ բոլոր՝ մերովքն։ Մեր ասեմք զոր ինչ ի սկզբանէ հաստեաց ի մեզ արարիչն, եւ զոր առն՝ զի նորոգեսցէ։ Քանզի այն ամենայն՝ զոր պատրիչն ած ի վերայ եւ մարդն պատրեալ ընկալաւ, չունէր ինչ հետս ի վերայ Կենարարին։ Եւ ոչ՝ վասն զի հաղորդութիւն ընդ մարդկօրէն տկարութեանց կալաւ՝ յայն սակս հաղորդ ինչ եւ կցորդ մերոց յանցանացն եղեւ։ Առ զկերպարանս ծառայի առանց մեղացն աղտոյ, զմարդկեղէնսն մեծացոյց եւ զաստուածեղէնսն չփոքրկացոյց. քանզի ունայնանալն, որով զանձն՝ որ աներեւոյթն էր՝ երեւելի կացոյց, եւ մինչ արարիչն եւ տէրն ամենայն իրաց էր՝ կամեցաւ մահկանացու ոմն ի մահկանացուաց լինել՝ այն զիջումն ողորմութեանն էր եւ ոչ նուազութիւն զօրութեան։ Յայն սակս որ կացեալ մնացեալ ի կերպարանս Աստուծոյ՝ արար զմարդն, նոյն ի կերպարանս ծառայի՝ եղեւ մարդ։ Քանզի երկոքին բնութիւնքն առանց թերութեան պահեն զիւրեանց սեպհականութիւնն. եւ զոր օրինակ զծառայի կերպարանսն՝ Աստուծոյ կերպարանք չեղծանեն, նոյնպէս եւ զկերպարանսն Աստուծոյ՝ ծառայի կերպարանք ոչ փոքրկացուցանեն։

Զի որովհետեւ ձեռն յանձին հարեալ պարծէր սատանայ թէ մարդն նենգութեամբ իւրով խաբեալ՝ յաստուածեղէն պարգեւացն անկաւ, եւ յանմահութեանն օժտէ մերկացեալ՝ զդառնիկ վճիռ մահուն ընկալաւ, եւ ինքն ի չարիսն իւր սփոփութիւն ինչ եգիտ զզովողութիւն պատուի-

1 Տես զամփոփումն ի Պատմ. Տիեզ. Ժողովոց. Հ. Պօղոս Վ. Յոֆինէեան, էջ 244—253։

Digitized by Google

բանազանցին, եւ Աստուած եւս՝ ըստ պահանջելոյ խրատուցն արդարութեան՝ փոխեաց զվճիռ իւր ի վերայ մարդոյն՝ զոր յայնպիսում պատուհասի հատեալ էր. նմին իրի պէտք եղեն ծածուկ խորհրդոյ անեղծութեանն՝ զի անփոփոխականն Աստուած՝ որոյ կամք չմարթեն վրէպ ի մարդասիրութենէ լինել, զառաջին անմահութիւն գթութեան իւրոյ առ մեզ լցցէ ծածուկ խորհրդովն, եւ մի մարդն որ սատանայական անօրէնութեանն պատրանօք հրապուրեցաւ ի յանցանս, կորիցէ հակառակ Աստուծոյ առաջադրութեանն։

Արդ մնանէ Որդին Աստուծոյ յանարգութիւնս աշխարհիս պայծառինք յերկնաւորական բնակութենէն իջեալ եւ ի հայրենի փառացն ոչ մեկնեալ, նորով կարգաւ եւ նորով ծննդեամբ ծնեալ։ Նորով կարգաւ՝ քանզի որ իւրովքն աներեւոյթ էր՝ մերովքն եղեւ երեւելի, անբովանդակականն կամեցաւ բովանդակել. կացեալ մնացեալ յառաջ քան զժամանակս՝ սկիզբն առնէր լինել ի ժամանակի, ամենայն աշխարհաց տէրն զծառայական կերպարանս առնոյր՝ ծածկեալ զիւր անեզր մեծութիւնն, անկարեկանն Աստուած ոչ գարշեցաւ լինել մարդ չարչարելի, եւ անմահն՝ ընդ մահու օրինօք անկանել։ Իսկ նորովն ծննդեամբ ծնեալ, քանզի անապական կուսութիւնն անգէտ էր ցանկութեան եւ միանգամայն զնիւթ մարմնոյն մատակարարեաց։ Առաւ ի մօրէ Տեառն՝ բնութիւն եւ ոչ յանցանս. եւ ոչ այնու ինչ՝ զի սքանչելի էր ծնունդն՝ աննման է մեզ բնութիւնն ի Տէր մեր Յիսուս Քրիստոս որ յարգանդէ կուսին ծնաւ։ Զի որ ճշմարիտ Աստուածն է, նոյն՝ մարդ է ճշմարիտ. եւ չիք ինչ ստութիւն ի միութեան աստ յայսմիկ, քանզի ի միասին են խոնարհութիւն մարդոյ եւ բարձրութիւն աստուածութեան։ Զի որպէս Աստուած ոչ փոփոխի ողորմելովն, այսպէս եւ մարդն ոչ ծախի ի պատիւն ելանելով։

Զի երկոքին կերպարանքն գործեն հաղորդութեամբ միմեանց զայն՝ որ ինչ սեպհականն է. այս ինքն՝ Բանն գործէ զոր Բանին է, եւ մարմինն կատարէ զոր մարմնոյն է։ Մին ի նոցանէ պայծառանայ սքանչելեօք եւ միւսն անկանի ընդ զրկանօք„։ (Իբրեւ նոքին եպիսկոպոսունք եւ ընդ այս բան տարակուսէին՝ ցուցաւ նոցա միւս բան Կիւրղի որ ասէ, “Ինչ ինչ ի ձայնից առաւելապէս Աստուածութեանն պատշաճէ եւ ինչ ինչ մարդկութեանն եւ ինչ ինչ զմիջին կարգն ունի՝ նշանակելով զՈրդին Աստուծոյ Աստուած լինել եւ մարդ միանգամայն„)։ “Եւ որպէս Բանն ի հայրենի փառացն հաւասարութենէ ոչ մեկնի, նոյնպէս եւ մարմինն զբնութիւն մերոյն ազգի ոչ թողու։ Քանզի, զոր պարտ է մեզ ստէպ յեղյեղուլ, մի եւ նոյն՝ է ճշմարիտ որդի Աստուծոյ եւ ճշմարիտ որդի մարդոյ։ Աստուած, այնու զի “Ի սկզբանէ էր Բանն, եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն„. մարդ, այնու զի “Բանն մարմին եղեւ եւ բնակեաց ի մեզ„։ Աստուած, այնու զի “Ամենայն ինչ նովաւ եղեւ եւ առանց նորա եղեւ եւ ոչինչ„. մարդ, այնու զի “Եղեւ ի կնոջէ, եւ եմուտ ընդ օրինօք„։

Մարմնոյ ծնունդն՝ մարդկեղէն բնութեանն ցուցիչ է, կուսին ծնանել՝ աստուածեղէն զօրութեանն նշանակ։ Տղայութիւն մանկանն՝ յայտ առնէ խանձարրոցն խոնարհութեամբ, մեծութիւն Բարձրելոյն՝ ի բարբառոյ հրեշտակացն ցուցանի։ Նման է մատաղածին մանկանցն՝ զոր Հերովդէսն ամպարշտութեամբ հնարի սպանանել, այլ տէր է ամենայնի՝ որում մոգք ուրախութեամբ խոնարհին յերկրպագութիւն։ Յորժամ ի մկրտութիւն գայր կարապետին իւրոյ Յովհաննու, զի մի թագչիցի՝ թէ

Digitized by Google

ընդ քաղով մարմնոյն աստուածութիւնն ծածկեալ կայ, Հօրն բարբառ յերկնից որոտալով ասէր. «Դա է որդի իմ սիրելի՝ ընդ որ հաճեցայ»: Արդ զոր իբրեւ մարդ սատանայական խորամանկութիւնն փորձէ՝ նմա իբրեւ Աստուծոյ հրեշտակական պաշտամունք հարկանին:

Քաղցնուլ, ծարաւել, վաստակել եւ ի քուն լինել՝ յայտնապէս մարդկօրէն իմն է: Այլ հինգ հացիւ զհինգ հազարս մարդկան յագեցուցանել, եւ տալ կնոջն շամրտացւոյ զջուրն կենդանի, որոյ արբեալ չասցէ որում ըմպէն՝ միւսանգամ ծարաւել, ի վերայ մկանանց ծովուն ցամաքաւ գնալ, եւ սաստելով մրրկին զեղանացեալ ալեաց ցածուցանել՝ առանց երկմտութեան աստուածական է: Եւ զի զլացում ինչ իւիք զանց առնիցեմ, զոր օրինակ ոչ է միոյ նորին բնութեան վշտակից լինել եւ արտասուել ի վերայ բարեկամին մեռելոյ, եւ ի բաց առեալ զկափարիչ չորեքօրեայ գերեզմանին՝ զնոյն ձայնին հրամանաւ միւսանգամ ի կենդանութիւն զարթուցանել. կամ զփայտէ կախել՝ եւ զլոյս տուընջեան ի գիշեր դարձուցեալ՝ զամենայն բնութիւնս դողացուցանել. կամ պնդել բեւեռօք՝ եւ զդրունս դրախտին՝ հաւատոյ աւազակին բանալ. այնպէս ոչ նորին բնութեան է ասել. «Ես եւ հայր իմ մի եմք». եւ ասել. «Հայր իմ մեծ է քան զիս»: Զի թէպէտ եւ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս մի դէմք են Աստուծոյ եւ մարդոյ. այլ այլ իմն այն է՝ որով երկոցունցն եւս հասարակ են թշնամանքն, եւ այլ իմն այն՝ որով հասարակ են փառքն: Քանզի ի մերոյն է նմա փոքրագոյնն քան զհայր՝ մարդկութիւնն. իսկ ի Հօրէ է նմա հաւասար ընդ Հօր՝ աստուածութիւնն: Արդ վասն այսր զխնաց միութեան յերկասին եւս բնութիւնսն իմացելոյ ընթերցեալ լինի թէ «Էջ յերկնից...»:

Այս գիր երեւելի եւ անուանի քան զամենայն գիրս վասն մարմնաւորութեան՝ ի մեծի պատուի լեալ է յեկեղեցւոջ, յառաջն երբեմն ընթերցեալ լինէր ի Հռոմ յեկեղեցւոջ յաւուր տօնի ծննդեանն Քրիստոսի, նոյնպէս եւ ի Գաղիա. Գեղասիոս քահանայապետ (492—496) եդ նզովս որոց մերժեն կամ փոփոխեն եւ զփոքր ինչ մասն նորա:

Միայն եպիսկոպոսունք ոմանք Եգիպտացւոց չկամեցան արկանել նմին ձեռնագիր, զի ասէին թէ առանց կամաց հայրապետին մերոյ որ այժմ չիք ի միջի, չկարեմք առնել ինչ, եւ պատուհասեսցեն իսկ զմեզ եպիսկոպոսունք յորժամ դառնայցեմք յիւրաքանչիւր տեղիս. եւ յայն սակս պարտ է փոխանակ Դիոսկորայ զայլ ոք ընտրել ի հայրապետութիւն՝ զի այնպէս նորա հաւանութեամբ արկցուք ձեռնագիր: Իսկ կայսրն չհամարէր զայն ընդհանրական արաշուամն վարդապետութեանն բաւական, այլ կամէր զի սահմանեսցի հանգանակ ինչ նոր զոր եւ յետոյ յանձն առ ժողովն, եւ ի հինգերորդում գումարմանն որոշեցան ոմանք յեպիսկոպոսաց յօրինել զայն հանգանակ, որ առնէ սկիզբն ի Նիկիական եւ Կոստանդինուպոլսեան հանգանակէ եւ ապա յարէ զկնի զթուղթն Կիւրղի առ Նեստոր եւ առ արեւելեայս, իբրեւ ի յանդիմանութիւն մոլորութեան Նեստորի, եւ ապա զթուղթն Լեւոնի առ Փղաւիանոս ի յանդիմանութիւն Եւտիքեայ եւ յետոյ յարէ բուն հանգանա

հանգամանակ ժողովոյն։ Իբրեւ ընթերցաւ այն՝ հաստատեցաւ միաբան ի հարցն իբրեւ հաւատք հարց եւ առաքելոց։ Գլխաւոր բանք այս են. “Խոստովանեմք զնոյն՝ կատարեալ յաստուածութեան եւ զնոյն՝ կատարեալ ի մարդկութեան, զնոյն՝ Աստուած ճշմարիտ եւ մարդ ճշմարիտ, ի բանաւոր հոգւոյ եւ ի մարմնոյ, զնոյն՝ էակից (բնակից) Հօր ըստ աստուածութեան եւ էակից (բնակից) մեզ ըստ մարդկութեան. ամենայնիւ մեզ նման՝ բաց ի մեղաց. զնոյն՝ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ ծնեալ ըստ աստուածութեանն եւ ի վերջին աւուրս վասն մեր եւ վասն մերոյ փրկութեան ի Մարիամայ յաստուածածնին կուսէ՝ ըստ մարդկութեանն։ Զմի եւ զնոյն Քրիստոս՝ որդի, տէր, միածին, յերկուց բնութեանց[1]՝ առանց խառնակութեան, առանց փոփոխութեան, առանց բաժանելոյ, առանց անջատելոյ ծանուցեալ. ոչ ի բաց բարձեալ երբեք այլակերպութեան (տարբերութեան) բնութեանց վասն միաւորութեանն, այլ մանաւանդ առաւել անկորուստ պահեալ սեպհականութեան (յատկութեան) երկոցունց բնութեանցն, եւ ի մի դէմս եւ ի մի անձն ի միասին գումարեալ. ոչ յերկուս դէմս անջատեալ կամ բաժանեալ, այլ մի եւ նոյն որդի եւ միածին Աստուած Բան, Տէր Յիսուս Քրիստոս„։

Ի վեցերորդ գումարմանն եկն նստաւ ինքն կայսր եւ խօսեցաւ իսկ ի հռոմայեցի լեզու եւ ընթերցաւ առաջի նորա նոյն հանգամանակ. հաւանեցաւ, մանաւանդ թէ ընկալաւ հաւատովք եւ յաւել սահմանել քաղաքական պատիժս՝ որոց այլ ինչ ազգ ուսուցանիցեն։ Իսկ ի յաջորդ 9 գումարմունսն առանձինն ինչ ոմանց ոմանց դատաստանք դատեցան, եւ յօրինեցան 28 կանոնք վասն եկեղեցական կարգաւորութեան, մանաւանդ ընդդէմ վանականաց զատարկացելոց։

Խօսեցան հարք ժողովոյն առ կայսրն մեծաւ գովութեամբ վասն նորա՝ զի այսպիսի իմն սկիզբն թագաւորութեանն արար, եւ վասն երանելի քահանայապետին Լեւոնի “զի անդստին ի ժամանակէ անտի մոլորութեանն (յԵփեսոս) զնա զալթոյց տեսչութիւնն ի վերայ մեծապայծառ աթոռոյն Հռոմայ՝ քննել նոցա նահատակ յառաջամարտիկ յաղթող եւ առանց պարտութեան, որ ամենեւին վառեալ զարդարեալ ճշմարտութեամբ եւ բարբա-

1 Հակառակութիւն իմն եղեւ Հրեշտակացն Հռոմայ ընդ արեւելեան եպիսկոպոսաց՝ որք ընտրեալ էին յօրինել զհանգամանակն, վասն բանից ինչ ի նմա, այլ ոչ մտաց, զի ոմանք կամէին դնել յերկուց բնութեանց, սոյն ի թղթին Լեւոնի էր յերկուս բնութիւնս։ Եպիսկոպոսն եւս ուղիղ էին, այլ զի Դիոսկոր եւ Եւտիքէս առաջինն վարեցան չարաչար, խորհէին իմն Հրեշտակք քահանայապետին։ Զիջանել զիջան արեւելեան եպիսկոպոսունք, որպէս գործք ժողովոյն ցուցանեն, ուստի ի յայն օրինակս է յանձնի յերկուս բնութիւնս, որպէս եւ ի բազում լատինական օրինակս։ Մանաւ ի գործս ժողովոց ի լատինականսն եդեալ in duabus naturis, յաւելու թէ դրոշմէք հռոմայեցիք նշանակեալ են ի լուսանցսն թէ ըստ յունին ընթեռնլի է՝ ex duabus naturis. Ի սահմանի Զ. Կոստանդնուպոլ. ժողովոյն (յամի 680) յորում նոյն հանգամանակ յառաջ բերի՝ ունի յերկուս բնութիւնս. թէպէտ եւ հարքն ի գործս անդ ժողովոյն զյերկուց եւ զյերկուսն ի միասին արկանեն ի կիր։

Digitized by Google

քեալ նախանձու սրբութեան, որպէս երբեմն Պետրոս՝ նոյնպէս եւ սա այժմ զմիաբան ծառայութիւն եւ զխորհուրդս ամենեցուն ուղղեալ հզերաց առ Աստուած: Մի ոք այսուհետեւ, ասեն, խաւարասէր միտով զժառութեան կռուեսցի ընդ բանից Թղթոյ նորա իբրեւ թէ օտար ինչ իցէ ի վարդապետութենէ Եկեղեցւոյ, եւ ցայժմ անծանօթ, ասելով թէ չէ օրէն արտաքոյ քան զհաւատադաւանութիւն երեքհարիւր ութեւտասան հարցն ընծայեցուցանել մեկնութիւնս: Արդարեւ ճշմարիտ է թէ խոստովանութիւն հարցն այնոցիկ ունի յինքեան զգլխաւոր կանոնս հաւատոց. սակայն եւ այնպէս դէպ լինի բազում անգամ զի որք նոքին հակառակին երանեան՝ տան պատճառս բարբառելոյ հակառակ այնր՝ զոր մոլորին խնամոն: Ընդդէմ այնոցիկ՝ որ զճշմարիտ վարդապետութիւնն կամակորեն՝ կարեւոր պիտոյ է ուրոյն ուրոյն տալ պատասխանի նորանձեւութեանցն: Զի եթէ ամենեքին բաւական համարէին զճըշմարտութիւնն եւ ոչ ոք զհետս բարեպաշտութեանն պղտորէր նորաձեւան առնելով, ապա չէր ինչ պիտոյ մանկանց Եկեղեցւոյ այլ ինչ առնել զմտաւ՝ բայց որ ի հանգանակի անդ սահմանեալ է. բայց քանզի բազումք բազում շաղփօք մոլորութեան յուղիղ ճանապարհէ ճշմարտութեանն հեռացան, պիտոյ եղեւ այսուհետեւ մոլորութեանց նոցա կարեւոր յաւելուածովք ընդդէմ երանել. բայց ոչ եթէ նոր ինչ յօդուած հաւատացելոցն հնարելով, որպէս թէ պակաս ինչ ի հաւատոյն կարիցէ լինել, այլ զնորութիւնան իսկ գլխովին պատշաճ բանիւք մերժելով»:

Առանձինն Թղթով խնդակից եւ շնորհակալ լինէր սիւնհոդոսն համօրէն՝ քահանայապետին «զի ամենեցուն եկաց Թարգման բարբառոյ երանելւոյն Պետրոսի», եւ եղեւ ի գործս անդ «առաջնորդ բարեաց», եւ ի ժողովն նոցա «իբրեւ գլուխ առընթեր անդամոց՝ այնպէս առաջնակայ ի ձեռն հրեշտակաց իւրոց»: Ապա զհաստատութիւն կանոնացն զոր կարգեցին՝ խնդրելով «Արդ աղաչեմք, ասեն, զի քոյովք վճռովք զմեր դատաստան պատուեսցես, եւ որպէս մեք ընդ գլխոյդ գոլք միաբան ի բարիս, այսպէս եւ քո բարձրութիւնդ լցցէ որդւոց զվայելուչն»:

Այլ Լեւոն բաց ի սահմանացն հաւատոյ ոչինչ հաստատեաց, այլ մանաւանդ ընդդէմ դարձաւ ամենայն զօրութեամբ վերջին (28երորդ) կանոնի: Քանզի յետ վճարելոյ ամենայնի ի ժողովին՝ որսացեալ Անատոլիոս պատրիարք, յորժամ չէին անդ հրեշտակք քահանայապետին, համոզեաց զեպիսկոպոսունսն Յունաց զի վասն քաղաքային առաւելութեան կայսերական քաղաքին Կոստանդնուպօլսոյ, տացի աթոռոյ նորա երկրորդական պատիւ յետ հռովմէական աթոռոյն, որով տապալէին աստիճան աթոռոյն Աղեքսանդրիոյ եւ Անտիոքայ հասանէր յերրորդ եւ ի չորրորդ կարգ, եւ զայս պահանջէր նա հաստատեալ յայնպիսի ինչ տեղւոյ կար-

յաթոռն Հայրապետութեան իւրն Թէոդոսիոս, եւ յայլ եւս աթոռս եպիսկոպոսացն կացուցանէր զձեռնադրեալսն յիւրմէ։ Այլ յետ 20 ամսոց նուաճէր զնոսա Մարկիանոս եւ Թէոդոսիոս ի բաց աքսորեալ՝ միւսանգամ առնոյր Յոբնաղ զաթոռն անդէն յամի 453. եւ յետ 3 ամսոց ուրեմն Հազիւ դադարեաց աղմուկն։

Յաղեքսանդրիա խստագոյն եւս էին իրքն։ Վաղ իսկ յ17 եպիսկոպոսաց անտի որ զՀետ եկեալ էին Դիոսկորայ՝ չորք վաղվաղակի Հաւանեցան սահմանելոյն ի ժողովոյն, իսկ երեքտասանքն յետ ընտրութեան նորոյ Հայրապետին խոստացան արկանել ձեռնագիր։ Հասանէին եպիսկոպոսունքն չորեքին յԱղեքսանդրիա եւ եւտուն զգոյց թէ մերժեցաւ Դիոսկոր եւ աքսորեցաւ ի Գանգրիս Պափլագոնացւոց († 455) եւ ընտրեցաւ Հայրապետ սարկաւագապետ նորա Պրոտերիոս։ Այլ կողմն Հակառակորդ զրգռեալ զռամիկն որ մէտ ի Դիոսկոր էր, քանզի կաշառեալ էր սա զնոսա բաշխմամբ պարգեւաց՝ յարոյց խռով մեծ. զօրականն որ Հանդարտեցուցանելն եկն՝ քարաձիգ Հալածեալ անկանէր յաւերակս մեհենին Սերապեայ, ուր եւ այրէր զնոսա կենդանւոյն ամբոխն։ Առաքէր Մարկիանոս կայսր գունդ նոր 2000 արանց՝ որք յաւուրս 6 ի կայսերական քաղաքէն անդր Հասանէին, արգելան թատերք եւ բաղանիք, բարձան ի նոցանէ բաշխոյք ցորենոյ։ Խոնարհեցաւ զիջաւ ժողովուրդն առ վշտին, աղաչէին զզօրավար զօրացն զՓղորոս եւ զՊրոտերիոս իսկ զգլխովին՝ միւսանգամ ընդունել ի կայսերէ զշնորհսն Հանեալս եւ շնորհեաց իսկ նոցա կայսրն ըստ բարեխօսանաց Հայրապետին սորա՝ որ եւ իսկ եւ իսկ յետ Հանդարտութեանն ժողովէր սիւնհոդոս յԱղեքսանդրիա եւ դատապարտէին վանականք ոմանք Ապողինարեանք (Միաբնեայք) Հանդերձ պարագլխօք իւրեանց Կուզն (Էղուրոսն) Տիմոթէոսիւ երիցու եւ Թոթովն (Մոնգոսն) Պետրոսիւ, եւ Հրամայէր աքսորել զնոսա կայսրն։

Սակայն եւ այնպէս խռովիչք տանէին եւ բերէին զմիտս ժողովրդեանն, յայն սակս յորդորէր Լեւոն զՊրոտերիոս մտադիւրագոյնս ուսուցանել զժողովուրդն տխմար (454)[1] եւ մինչդեռ Թղթով[2] առաքէր քաջալերս եւ մխիթարութիւն առ Հայրապետն սուրբ՝ մի վհատել, մի ի կոր կործանել ի բազմացն Հակառակութենէ (459), վաղ զօրացեալ էր մրրիկն։

Վախճանեալ էր Պուղքերիա 55 ամաց ընտ առաքինութեամբք եւ գործովք բարութեան (Մարտ. 453) առաջնորդեալ տէրութեանն արեւելից ամս 40. յետ 4 ամաց Հասանէր վախճան կենաց Մարկիանեայ՝ որ նմանող վարուց նորա էր (Յունու. 457)։ Երկոքին եւս պատուին իբրեւ սուրբք յեկեղեցւոջ Յունաց եւ են իսկ արժանի գովութեան եւ մեծարանաց յամենայն ժամանակի։

1 Թուղթ 103

2 Թուղթ 104

Digitized by Google

Որպէս հաստատ առնէր Մեծին Թէոդոսի ոչ միայն յարեւմտեան այլ եւ յարեւելս, եւ այնուհետեւ միջէին փառաւորեքն:

Ասպար որդի Արդաբուրեայ, Ալան յազգէ, էր հզօրագոյն քան զամենայն աւագանին, բայց քանզի արիանոս էր, չկարէր թագաւորել. նմին իրի ի ձեռն նորա կացուցաւ աթոռակալեան Լեւոն, Դակ յազգէ, պայմանաւ՝ զի զմի յորդւոցն Ասպարայ կացուսցէ կեսար: Պսակեցաւ Լեւոն Ա. (457—474) յԱնատողիոսէ հայրապետէ (որպէս յառաջ քան զնա Մարկիանոս), եւ եղեւ այն առաջնութիւն յայնմ հետէ: Նա կոտորել զԱսպար եւ զորդիս նորա, զի ապրեցոյց ի ճախուլթենէ նորա (471): Նոյն նա արշաւան յԱփրիկէ ընդդէմ Վանդալաց մեծաւ ծախուք, այլ չյաջողեցաւ (467): Նշոյց իւր պայազատ զԼեւոն, զորդի դստեր իւրոյ Արիադնեայ եւ Տրակալիսէոսի Իսաւրացւոյ՝ որ կոչեցաւ զանձն Զենոն, եւ նմին վախճանէր յամի 474 (Յուն.):

Լեւոն Բ. առ իւր աթոռակից զհայր իւր զԶենոն եւ մեռաւ ի նմին ամի: Իսկ Զենոն (474—491) գեղձ էր բարուք, բայց կեղծաւորէր ի կերպարանս բարեպաշտութեան. պատրաստեցաւ նախ դաւաճանութիւն ի Վերինայ ի կնոջէն Լեւոնի Բ. վասն թագաւորութեան զնաց Զենոն փախստեայ եւ եղբայր նորա Բասիլիսկոս եղաւ ինքնակալ:

Իսկ եւ իսկ յետ մահու կայսերն Մարկիանեայ (457) Տիմոթէոս Կուզ եւ Պետրոս Թափթափ ժպրհեցան դառնալ ի տեղւոջէ աքսորանացն: Տիմոթէոս ժամ առեալ ժողովրդեան զօր յեկեղեցի՝ տայր զանձն ձեռնադրել նոցա առաջի՝ յեպիսկոպոսութիւն, որպէս առեալ զանձանս հասանէր ի վերայ Պրոտերիոսի որ ապաստանեալ էր ի մկրտարանն, հար խոցեաց զանձն զուրբն եւ զվեց ընկերսն ընդ նմա՝ ներկեալ արեամբ զանեղծն արքութեան, եւ եղան դիակունք նոցա ի տեսիլ եւ ի կատակս: Անդէն վաղվաղակի նզովէր զժողովն Քաղկեդոնի եւ զեպիսկոպոսունսն Հռոմայ եւ Կոստանդնուպոլսեայ եւ դնէր ընդ ամենայն աշխարհն Եգիպտացւոց եպիսկոպոսունս՝ զորս իւրոյ կողմանն:

Իսկ կայսր Լեւոն Բ. զառաջինն թուէր թէ դնդեւել յերկուս կողմանս, ապա դրդեալ յարանց կողմանն Մարկիանեայց՝ կամէր գումարել ժողով նոր: Այլ քանզի խնդիրն սահմանեալ էր միանգամ վճռով համօրէն եկեղեցւոյ՝ չմարթէր միւսանգամ մատուցանել ի խնդիր, եւ ոչ ժողով զժողովոյ վճիռ առնուլ յերկրորդ քննութիւն, մանաւանդ զի անօգուտ եւս էր այն վասն խռովութեան. յայն սակս իսկ ծգնէր Լեւոն քահանայապետ յամենայն զօրութենէ իւրմէ շրջել ի խորհրդոյ անտի զկայսրն (ի Թուղթսն 115—121). մինչեւ յանձն առ կայսր այսու իմն շատանալ զի հարցանիցէ զամենայն եպիսկոպոսունս աշխարհաց ի ձեռն իւրաքանչիւր Մետրապոլտաց թէ զինչ միտք իցեն նոցա զժողովոյն

Կաղկեդոնի. ամենեքին ցուցին թէ ընդունին եւ զհետ երթան ժողովոյն յամենայն սրտէ իւրեանց, եւ մերժեն զանուանական աթոռոյն Աղեքսանդրիոյ։ Յայնժամ աքսորեաց կայսրն զՏիմոթէոս Կուզ եւ ընտրեցաւ հայրապետ Աղեքսանդրիոյ այրն խաղաղարար եւ ուղղափառ Տիմոթէոս Սողոփակիոլոս կամ Խմատունն (460)։ Ընկալաւ Լեւոն զթուղթ հայրապետին եւ հաստատեաց զընտրութիւն նորա՝ մինչ չեւ վախճանեալ ի կենաց (461 Ապր. 11)։

Նոյնպիսի դէպք եւ յԱնտիոք անցին, ուր վաղ սփռեալ էր մոլեգինն Բարսումա զմոլորութիւնն, եւ յետ վախճանի նորա (458) Պետրոս Գնափեւս կամ Թափիչ եկեալ յԱնտիոք ձեռնտուութեամբ Զենոնի փեսայի կայսերն, խռովեաց զեկեղեցին յաւելուածովն՝ որ խաչեցար, զոր յաւելոյր յՆերքսրբեան երգն. մինչեւ առ սրտին նեղութեան հրաժարեաց յեպիսկոպոսութենէն Մարտիրիոս հայրապետ. բայց անդէն աքսորեաց զՊետրոս՝ կայսր Լեւոն։

Այլ միւսանգամ խռովեաց զամենայն կայսր Բասիլիսկոս (475—477). ետ հրաման դառնալոյ Կուզն Տիմոթեայ յԱղեքսանդրիա եւ Թափիչն Պետրոսի յԱնտիոք. նզովեաց կայսերական հրովարտակաւ զսուրբ ժողովն Կաղկեդոնի եւ զգիր սրբոյն Լեւոնի, եւ հրամայէր զամենայն արձանագիրս ժողովոյն հրով մաշել եւ այլ եւս նոյնպիսիս. 300 եպիսկոպոսունք արեւելից ծառայամիտք՝ հաւանեցան դատապարտութեան ժողովոյն։ Սակայն Ակակ հայրապետ Կոստանդնուպոլսոյ (472—490) յաջորդ Գեննադեայ (459—472) չհաւանեցաւ եւ եղեւ դիմադարձ. խռովեցաւ ժողովուրդն եւ ընկեցաւ Բասիլիսկոս յաթոռոյ։

Այսպ յայնժամ շահեալ Զենոնի զզօրավարսն դարձաւ միւսանգամ (474). այսպէս զԲասիլիսկոս քաղցու՝ հանդերձ որդւովքն իւրովք ի դղեկի ուրեք. եւ դաւանութիւն նորա մերժեցաւ։ Դարձաւ Տիմոթէոս Սաղոփակիոլոս (✝ 482) յաթոռ իւր։

Ունէր Զենոն ի հասարակ զեշխանութիւնն իւր նենգութեամբք եւ բռնութեամբք։ Բնակեալ էին յայնժամ ի Պաննոնիա արեւելեան Գութք ունելով թագաւոր զԹէոդորիկոս (յամէ 475)։ Իբրեւ շահել զնա կամեցաւ Զենոն ետ նմա եւ զՄիւսիա եւ անուանեաց պատրիկ եւ հիւպատ (484)։ Այլ այս կամեցեալ հեռացուցանել զնա յիւրմէ՝ հրաման ետ նմա երթալ յԻտալիա եւ յանուն կայսեր հանել զտէրութիւնն յՕդոակերայ, քանզի եւ Թէոդորիկ ցանկայր ունել իւր առանձինն աշխարհ թագաւորութեան։ Զայսմ ամենայնէ պատմեսցի ընդարձակագոյն յիւրում տեղւոջն։ Յետ բազմապատիկ չարեաց մեռաւ Զենոն անորդի (Ապր. 401)։ Ի կատարած կոյս կենաց իւրոց (482) հան Զենոն՝ անզգոյշ խրատու Ակակիոսի զՀենոտիկոնն կամ զգիրն միաբանութեան (Միաբանեայց) որով առաւել եւս սաստկացաւ խռովութիւն եկեղեցւոյ. զորոց այլուր մի ըստ միոջէ։



Digitized by Google

նու՝ առաքէր զզօրս առ Ասպար զալ անկանել ի վերայ Ռաւեն-նայ. Եհաս յանկարծ Ասպար հեծելազօրու եւ եմուտ ի քաղաքն. յետ փոքր ինչ կռուոյ ձերբակալ եղեւ Յովհաննէս իւրոց իսկ զօրավարացն օգնականութեամբ, եւ սպանաւ նա կամ անդէն ի Ռաւեննա հրամանաւ Արդաբուրեայ, կամ յԱկուիլէա՝ յետ զաջ ձեռն կտրելոյ եւ յիշկան վերայ առ առակէ ընդ քաղաքն շրջե-ցուցանելոյ: Յետ երից աւուրց սպանմանն՝ հասանէր Աեցիոս 60,000 Հոնօք. ընդ առաջ ել նորա Ասպար. եղեւ պատերազմ արիւնալից, եւ ընդ երկար անյայտ էր յաղթութիւնն, մինչեւ յե-տոյ միաբանեցին առնել խաղաղութիւն. առաքեցան Հոնք յետս՝ առեալ նոցա զվարձսն. Աեցիոսայ ոչ միայն տուաւ թո-ղութիւն, այլ եւ կոմսութիւն եւս: Ի հանդիսի ձիընթացից էր Թէոդոս Բ. յորժամ հասին աւետիք պարտութեան ապստամբին ի Կոստանդնուպօլիս. «Թողցուք, ասէ կայսր, զկառախաղարանն, երթիցուք գոհանալ զԱստուծոյ», եւ երթայր ամենայն բազմու-թիւնն ընդ նմա յեկեղեցի մինչեւ ընդ երեկս: Առաքեցաւ Հելիոն (այնուհետեւ) պատրիկ՝ յԻտալիա, որ եբեր զՎաղենտինիանոս ի Հռոմ, զգեցոյց նմա ծիրանիս յանուն կայսեր եւ ողջունեաց՝ Օւ-գոստոս (425):

Առաջին ել յաթոռ Վաղենտինիանոս Գ. (425—455) որդի Կոստանդեայ, ընդ խնամակալութեամբ Պղակիդիայ: Երկոքին եւս չէին ատակ ունել ի հասակ զաթոռն:

Ափրիկէ ել իսկ եւ իսկ ի ձեռաց նոցա: Աեցիոս՝ որ ընդ քաջութեանն ունէր եւ խորամանկութիւն, նախանձէր ընդ բա-զում արգելութիւն առնն քաջի Բոնիփակեայ կուսակալի Ափրի-կեցւոց աշխարհին, որ բարեկամն էր Աւգոստինեայ: Կամեցեալ Աեցիոսայ ընկենուլ զնա յիշխանութենէ՝ առնէր զնմանէ քսու-թիւն յաւգուստուհւոյն եւ այսպէս զԲոնիփակիոս իսկ հաւանեցուցանէր՝ թէ ընկեսցեն զնա աւգուստուհին յիշխանութենէ: Ապստամբեաց յայնժամ Բոնիփակիոս եւ կոչեաց զՎանդալս ի Սպանիայ ի թի-կունս օգնականութեան: Թէպէտ եւ հաշտեցաւ Բոնիփակիոս († 432) ընդ աւգուստուհւոյն՝ մինչ չեւ սոցա հասեալ, բայց Գենսե-րիկոս եւ Վանդալք չհաւանէին դառնալ յետս ի ճանապար-հէն: Առին նոքա առ սակաւ սակաւ զամենայն Ափրիկէ (429—439) մեծաւ անագորոյնութեամբ, աւերին զերկիր զամենայն Հռովմայե-ցւոցն, եւ հաստատեցին զտէրութիւնն Վանդալաց, զոր եւ հարկ հաւանեցաւ ընդունել Վաղենտինիանոս Գ. յամի 435: Յետ այսորիկ յաւելին առնուլ եւ զՄաւրիտանիա եւ զՆումիդիա: Բայց յայնժամ ամենայնէ այսր Վաղենտինիանոս ի բաց զարեւմտեան Իլիւ-րիկէ (այս ինքն՝ զՊաննոնիա, զԴաղմատիա եւ զՆորիկոն) առ տէ-րութիւնն Արեւելից զի առցէ կնութեան զԵւդոքսիա զդուստր Թէոդոսի Բ. (437):

Ընտուստ Աէտիոս կազմեալ իւր զօրս ի ցեղից Գերմանացւոց, նովօք կարգեալ յօրինէր զերս տէրութեանն Հռոմայեցւոց ի մէջ Գերմանացն մտելոց ի Գաղիա, եւ առաջնորդէր անդ Հռոմէական բանակին՝ զորով շուրջն պատեալ էին յայնժամ Բուրգունդացիք, Ալեմանք, Փրանկք, Արմորիկացիք եւ արեւմտեան Գութք: Տայր միշտ պատերազմ ընդ սոսա (յամէ 435) երբեմն յաղթութեամբ եւ երբեմն պարտութեամբ: Ի ժամանակի պատերազմացն այնոցիկ՝ բնակեցոյց նա ի կողմանս Վալենտիայ (Վալանսայ) զԱլանսն որ մերժեցին անտի զբնակսն (440): Բայց քանզի խիստ իմն էր առաջնորդութիւն նորա, դրդուէին Գաղիացիք յապստամբութիւն, ձեռն տային ի Կղոդիոս յառաջնորդ Փրանկացն Սաղիացւոց, որ առ յամի 445 զԿամպրէ, զԹուռնէ եւ զամենայն երկիրն մինչեւ ցՍոմ գետ. Թէպէտ եւ հար զնա Աէտիոս առ Շինիւն Հեղենեայ[1], այլ չկարաց մերժել զնա ի բաց: Յետ սակաւ ինչ միոյ Կղոդիոս վախճանեցաւ, եւ Մերովէ յաջորդէր:

## 111

Այս ամենայն հանգամանք Գաղիայ փոփոխեցան ի գալ Հոնացն: — Ատտիղա՝ եղբայրասպանութեամբ միաբանեալ զայլ եւ այլ ցեղս Հոնացն բնակելոց ի կողմանսն յորս յառաջագոյն Գութքն բնակէին, այս ինքն՝ ի մէջ Դանուբ եւ Թէյս գետոց մինչեւ ցՎոլգա (445). ընդ նովաւ էին եւ բազում ցեղք Սարմատաց եւ Գերմանաց. տիրէր նա մեծաւ զօրութեամբ ի փայտակերտ դղեկէն իւրմէ առ Թէյս գետով: Փոքր էին կերպարանք նորա եւ դէմք ժահաղէմք, ահագին աչքն եւ զօրաւոր անդամոցն շարժումն. դողային ի նմանէ ազգք եւ իշխանք նոցա, սիրէր նա կոչել զանձն՝ Աստուծոյ խարազան, եւ արդեամբք զանունն ցուցանէր: Ահաբեկ առնէր զտէրութիւնն արեւելից, քանզի էր ի Սեաւ ծովէ մինչեւ ցԱդրիական ծով, ի Դանուբայ մինչեւ ցսահմանս Յունաց աշխարհին. առ նա ի Թէոդոսէ Բ. զհիւսիսակողմն Թրակիոյ ի՛ հարաւոյ Դանուբայ, եւ 2100 լիտր ոսկւոյ իբրեւ հարկս:

Իսկ իբրեւ կայսր Մարկիանոս փոխանակ ոսկւոյն մատոյց Ատտիղայ երկաթ, եւ դրդէր իսկ զնա Թագաւորն Վանդալաց գալ տալ մարտ պատերազմի ընդ տէրութեանն արեւմտից, հաճոյ Թուեցաւ Ատտիղայ խորհուրդն, ջանաց նախ նենգութեամբ եւ զրով զմիաբանութիւն Գերմանացւոցն ի Գաղիա ընդ Հռոմայեցւոց՝ քակել եւ արկանել ընդ միմեանս (450): Յափանց Թէյս գետոյ խաղացեալ գայր ընդ երկայնութիւն Դանուբայ՝ զօրածանու. զհետ եկին նորա եւ արեւելեան Գութք, որոց իշխանք

1 Vicus Helenae. գղ. Vieux Hesdin.

Digitized by Google

էին Վաղամիր եւ Թէոդիմիր եւ Վիդիմիր, Գեպիդացիք՝ որոց իշխան Հարդերիկոս, Ռուգիացիք եւ Սկիրրացիք, յարեցան ի նոսա եւ Թիւրինգացիք: Ի կողմանս Ռաէնվալտայ Գունդիքար արքայ Բուրգունդաց հանդերձ տոհմիւն իւրով եւ բազում Բուրգունդացւովք կոտորեցան, եւ մնացեալքն առիպեցան զինուորել Ատտիլայ: Անց Ատտիլա ընդ Հռենոս (Թերեւս) ի կողմանս Կողոնիայ, քանդելով, աւերելով մտանէր ի Գաղղիա մինչեւ ցԱւրեղիանոն (Օրլէան):

Սնաէր Այետիոս զօրու իւրով եւ Գերմանացւովք, որ էին ընդ մերազգոյն իշխանութեամբ արեւմտեան պետութեան, այս ինքն՝ արեւմտեան Գութք՝ զօրավարութեամբ Թէոդորիկեայ Ա., Բուրգունդացիք եւ Գետեզերեայ Փրանկք՝ որ ապրեալ էին ի սրոյն Հոնաց, եւ Ալանք եւ Արմորիկացիք կամ Բրիտոնք: Տեղի տայր Ատտիլա առաջի զօրութեան նոցա մինչեւ ի Կատալաւնոն (յայժմու Շալոն առ Մառն գետով): Եղեւ ճակատ ահագին մերձ ի Մուրիակոն (Միւրի). Թէոդորիկոս Ա. թէպէտ եւ յաղթեաց պատերազմին, այլ ինքն անկաւ. Թորիսմունդ նորին որդի առ զվրէժ նորա. ի հասանել գիշերոյ՝ դարձաւ յետս Ատտիլա, եւ զի աւեր էին կողմանքն՝ ել ի Գաղղիոյ՝ ի կողմանս Պաննոնիայ (451):

Զայրացեալ Ատտիլայ ընդ իրսն եւ կոչեցեալ եւս յՈնորիայ ի քեռէն Վաղենտինիանոսի Գ. զի ապրեցուսցէ զնա, քանզի վասն անառակ վարուցն՝ ունէին զնա ի դիպահոջ, անդէն ի միւսում ամի ժողովեալ այլ բազմութիւն՝ խաղայր յԻտալիա. եւ հաս առաջի Ակուիղէայ՝ որ էր նախապարիսպ Իտալիայ ի հիւսիսոյ կողմանէ. ընդ երկար եղեւ դիմակալ քաղաքն, եւ մինչդեռ յուսահատ՝ կամէր ի բաց գնալ Թագաւորն Հոնաց, տեսեալ թէ տարմահաւք հանեալ զձագս իւրեանց ի քաղաքէն՝ բերեն ի բանակ նորա, նշան յայտարար յաջողութեան զիւրսն համարեցաւ, յարձակեցաւ միւսանգամ, առաւ Ակուիղէա, քանդեցաւ եղեւ հարթյատակ: Անդուհետեւ յառաջ մատուցեալ ապականէր զդաշտավայրսն, առնոյր աւար զգեղեցիկ գեղեցիկ քաղաքս վերինն Իտալիայ: Փախչէին թագչէին բնակիչք՝ զի ապրեսցին ի սրոյ. ի փախստէից անտի մեկնելոց ի ծակս Ադրիական ծովուն եղեւ սկիզբն քաղաքին Վենետացւոց: Հուրն եւ նշան այրեցածոյն դծէր զճանապարհ արշաւանին Ատտիլայ. Պադաւիոն ամենայն քաղաքօք յԱթեսիս գետոյ մինչեւ ցՏիկինոս անկան. Մեդիոլան նիստ կայսերաց այրեցաւ. անկաւ եւ Պաւիա, եւ զօրն յաղթող բանակեալ մօտ ի գետախառնուրդս Տիկինոս եւ Պադոս գետոց՝ սպառնայր ի վերայ Ռաւեննայ եւ Հռոմայ: Ոչ կայսր, ոչ ծերակոյտ եւ ոչ զօր ի միջի էր՝ որ ապրեցուցանէր զաշխարհն: Զի Վաղենտինիանոս Գ. փակեալ ի Ռաւեննա՝ էր յահի եւ ի դողութեան եւ

Digitized by Google

ծիս որ եղեւ տակաւ սերմն հերձուածոյն Յունաց յապայ ժամանակս, այս ինքն թէ վասն քաղաքային առաւելութեան քաղաքին Հռոմայ տուեալ իցէ աթոռոյն Հռոմայ յառաջահաս պատիւ ի հարց, եւ յայն սակս պահանջէր եւ զերկրորդականն վասն Կոստանդնուպօլսեայ իբրեւ կայսերական քաղաքի։ Այս իսկ է 28երորդ կանոն ժողովոյն Քաղկեդոնի, որում անդէն ընդդէմ բողոքէին հրեշտակք քահանայապետին, եւ յետոյ բազմագոյն թըղթովք ցուցանէր Լեւոն ճշգրիտ իրաւագիտութեամբ եւ խորին գիտութեամբ գրեալ առ եպիսկոպոսունս սինհոդոսին, առ Անատողիոս († 459), առ հայրապետն Աղեքսանդրիայ եւ Անտիոքայ, առ կայսրն եւ առ դշխոյն Պուղքերիա, թէ հակառակ նախնական իրաւանց այլոց հայրապետացն է․ այլ զուր էր ամենայն եւ ընդ վայր։

## 109

Յետ Քաղկեդոնական ժողովոյն (451) իբրեւ յամս 200 գըժտութիւն եւ աղմուկ էր վասն նորա ընդ ամենայն արեւելս։ Հակառակորդ այնպիսի մեծի ժողովոյ էր կոյր կամ միականի աղանդն Միաբնեայց[1], որոյ բուն կայան եւ աթոռ ի բազում վանորայս էր, յորոց վանականք ստահակեալք՝ նախ յիշխանութենէ եպիսկոպոսաց ջանացին թափել զանձինս, եւ այնուհետեւ իշխել իսկ եպիսկոպոսաց կամէին։

Յիրաւի եւ իմաստութեամբ իսկ հայեցեալ ի հանգամանս ժամանակին՝ չկամէր իմն Լեւոն քահանայապետ ընդ գումարումն ժողովոյն այնորիկ, որպէս եւ եպիսկոպոսունք ժողովոյն չյօժարէին յօրինել ի նմին նոր հանգանակ, քանզի այն ինչ ի գլուխ ելեալ սինհոդոսին՝ անդէն առնոյր սկիզբն աղմուկն։

Նախ ի Պաղեստին ամբարձեալ հասանէին ի Քաղկեդոնէ վանականք բազումք՝ յորս նշանաւոր էր Թէոդոսիոս ոմն անուն։ Ժողովեալ վանականացն գունդ գունդ ի փողոցս եւ ի հրապարակս՝ գոչէին թէ մատնեցան հաւատք ի Քաղկեդոն, դարձան ի վարդապետութիւն Նեստորի, եւ սահմանեցաւ լինել ի Քրիստոս երկու Որդիք, երկու Քրիստոս եւ երկու անձինք։ Գտեալ վանականացն օգնականութիւն եւ յԵւդոկիայ դշխոյէ՝ որ յԵրուսաղէմ էր, գրըգռեցին զժողովուրդն, գրաւեալ կալան զքաղաքն, եւ զՅոբնաղ հայրապետ մերժեալ հանին փախստեայ, քանզի չառ նա յանձն մերժել զժողովն Քաղկեդոնի եւ չկամէր ուսուցանել թէ Քրիստոս յերկուց բնութեանց իցէ եւ ոչ եթէ յերկուս բնութիւնս. սպանին զեպիսկոպոսն Սկիւթոպօլսեայ, աւերէին քանդէին զքաղաքս եւ զգիւղս, եւ չկարէր լինել դիմակալ զօրն։ Անցանէր կայր

1 Monophysites.

յաթոռն հայրապետութեան ինքն Թէոդոսիոս, եւ յայլ եւս աթոռս եպիսկոպոսացն կացուցանէր զձեռնադրեալսն յիւրմէ։ Այլ յետ 20 ամսոց նուաճէր զնոսա Մարկիանոս եւ Թէոդոսիոս ի բաց աքսորեալ՝ միւսանգամ առնոյր Յոբնաղ զաթոռն անդէն յամի 453. եւ յետ 3 ամսոց ուրեմն հազիւ դադարեաց աղմուկն։

Յաղեքսանդրիա խստագոյն եւս էին իրքն։ Վասն զի յ17 եպիսկոպոսաց անտի որ զհետ եկեալ էին Դիոսկորայ՝ չորք վաղվաղակի հաւանեցան սահմանելոցն ի ժողովոյն, իսկ երեքտասանքն յետ ընտրութեան նորոյ հայրապետին խստացան արկանել ձեռնագիր։ Հաւանէին եպիսկոպոսունքն չորեքին յԱղեքսանդրիա եւ եռուն զբոյց թէ մերժեցաւ Դիոսկոր եւ աքսորեցաւ ի Գանգրիս Պափլագոնացւոց (✝ 455) եւ ընտրեցաւ հայրապետ սարկաւագապետ նորա Պրոտերիոս։ Այլ կողմն հակառակորդ զրգռեալ զռամիկն որ մէտ ի Դիոսկոր էր, քանզի կաշառեալ էր առ զնոսա բաշխմամբ պարգեւաց՝ յարոյց խռով մեծ. զօրականն որ հանդարտեցուցանելն եկն՝ քարաձիգ հալածեալ անկանէր յաւերակս մեհենին Սերապեայ, ուր եւ այրէր զնոսա կենդանւոյն ամբոխն։ Առաքէր Մարկիանոս կայսր գունդ նոր 2000 արանց՝ որք յաւուրս 6 ի կայսերական քաղաքէն անդր հասանէին, արգելան թատերք եւ բաղանիք, բարձան ի նոցանէ բաշխոյք ցորենոյ։ Խոնարհեցաւ գիջաւ ժողովուրդն առ վշտին, աղաչէին զզօրավար զօրացն զՓղորոս եւ զՊրոտերիոս իսկ գլխաւորին՝ միւսանգամ ընդունել ի կայսերէ զշնորհսն հանեալս եւ շնորհեաց իսկ նոցա կայսրն ըստ բարեխօսանաց հայրապետին սրբոյ՝ որ եւ իսկ եւ իսկ յետ հանդարտութեանն ժողովէր սիւնհոդոս յԱղեքսանդրիա եւ դատապարտէին վանականք ոմանք Ապողինարեանք (Միաբնեայք) հանդերձ պարագլխօք իւրեանց Կուզն (Էղուրոսն) Տիմոթէոսիւ երիցու եւ Թաթոզն (Մոնգոսն) Պետրոսիւ, եւ հրամայէր աքսորել զնոսա կայսրն։

Սակայն եւ այնպէս խռովիչք տանէին եւ բերէին զմիտս ժողովրդեանն, յայն սակս յորդորէր Ղեւոն զՊրոտերիոս մտադիւրագոյնս ուսուցանել զժողովուրդն տոմար (454)[1] եւ մինչդեռ Թղթով[2] առաքէր քաջալերս եւ մխիթարութիւն առ հայրապետն սուրբ՝ մի վհատել, մի ի կոր կործանել ի բազմացն հակառակութենէ (459), վաղ զօրացեալ էր մրրիկն։

Վախճանեալ էր Պուղքերիա 55 ամաց ընդ առաքինութեամբք եւ գործովք բարութեան (Մարտ. 453) առաջնորդեալ տէրութեանն արեւելից ամս 40. յետ 4 ամաց հասանէր վախճան կենաց Մարկիանեայ՝ որ նմանող վարուց նորա էր (Յունու. 457)։ Երկոքին եւս պատուին իբրեւ սուրբք յեկեղեցւոջ Յունաց եւ են իսկ արժանի գովութեան եւ մեծարանաց յամենայն ժամանակի։

1 Թուղթ 103 2 Թուղթ 104

Digitized by Google

Նոյնպէս հաստատ առնէր Մեծին Թէոդոսի ոչ միայն յարեւմուտս այլ եւ յարեւելս, եւ այնուհետեւ մնացին փառաւորեալքն:

Ասպար որդի Արդաբուրեայ, Ալան յազգէ, էր հզօրագոյն քան զամենայն աւագանին, բայց քանզի արիանոս էր, չկարէր թագաւորել. նմին իրի ի ձեռն նորա կացուցաւ առաջարդեան Լեւոն, Դակ յազգէ, պայմանաւ՝ զի զմի յորդւոցն Ասպարայ կացուսցէ կեսար: Պսակեցաւ Լեւոն Ա. (457—474) յԱնատոլիոսէ հայրապետէ (որպէս յառաջ քան զնա Մարկիանոս), եւ եղեւ այն սովորութիւն յայնմ հետէ: Նա կոտորել զԱսպար եւ զորդիս նորա, զի ազատեսցի ի ճնշութենէ նորա (471): Նորա արշաւանն յԱփրիկէ ընդդէմ Վանդալաց մեծաւ ծախուք, այլ չյաջողեցաւ (467): Եցոյց իւր պայազատ զԼեւոն, զորդի դստեր իւրոյ Արիադնեայ եւ Տրասկալիսէոսի Իսաւրացւոյ՝ որ կոչեցաւ զանձն Զենոն, եւ ինքն վախճանէր յամի 474 (Յունուար.):

Լեւոն Բ. առ իւր աթոռակից զհայր իւր զԶենոն եւ մեռաւ ի նմին ամի: Իսկ Զենոն (474—491) զեղծ էր բարուք, բայց կեղծաւորէր ի կերպարանս բարեպաշտութեան. պատրաստեցաւ նմա դաւաճանութիւն ի Վերինայ ի կնոջէն Լեւոնի Ա. վատութեամբ գնաց Զենոն փախստեայ եւ եղբայր նորա Բասիլիսկոս եղաւ ինքնակալ:

Իսկ եւ իսկ յետ մահու կայսերն Մարկիանեայ (457) Տիմոթէոս Կուզ եւ Պետրոս Թոթով ժպրհեցան դառնալ ի տեղւոջէ աքսորանացն: Տիմոթէոս ժամ սահմանեալ ժողովրդեան գալ յեկեղեցի՝ տայր զանձն ձեռնադրել նոցա առաջի՝ յեպիսկոպոսութիւն, ապա առեալ զամբոխն հասանէր ի վերայ Պրոտերիոսի որ ապաստանեալ էր ի մկրտարանն, հար խուժանն զսուրբն եւ զվեց ընկերսն ընդ նմա՝ ներկեալ արեամբ զսեղանն սրբութեան, եւ եդան դիակունք նոցա ի տեսիլ եւ ի կատականս: Անդէն վաղվաղակի նզովէր զժողովն Քաղկեդոնի եւ զեպիսկոպոսունսն Հռոմայ եւ Կոստանդնուպօլսեայ եւ դնէր ընդ ամենայն աշխարհն Եգիպտացւոց եպիսկոպոսունս՝ զարս իւրոյ կողմանն:

Իսկ կայսր Լեւոն Ա. զառաջինն թուէր իմն դեդեւել յերկուս կողմանս, ապա դրդեալ յարանց կողմանն Միաբնեայց՝ կամէր գումարել ժողով նոր: Այլ քանզի խնդիրն սահմանեալ էր միանգամ վճռով համօրէն եկեղեցւոյ՝ չմարթէր միւանգամ մատուցանել ի խնդիր, եւ ոչ ժողով զժողովոյ վճիռ առնուլ յերկրորդ քննութիւն, մանաւանդ զի անօգուտ եւս էր այն վասն խաղաղութեան. յայն սակս իսկ ճգնէր Լեւոն քահանայապետ յամենայն զօրութենէ իւրմէ շրջել ի խորհրդոյ անտի զկայսրն (ի Թուղթսն 115—121). մինչեւ յանձն առ կայսրն այսու իմն շատանալ զի հարցանիցէ զամենայն եպիսկոպոսունս արեւելից ի ձեռն իւրաքանչիւր Մետրապոլտաց թէ զինչ միտք իցեն նոցա զժողովոյն

Digitized by Google

Քաղկեդոնի. ամենեքին ցուցին թէ ընդունին եւ զհետ երթան ժողովոյն յամենայն սրտէ իւրեանց, եւ մերժեն զառնակալ աթոռոյն Աղեքսանդրիայ։ Յայնժամ աքսորեաց կայսրն զՏիմոթէոս Կուզ եւ ընտրեցաւ հայրապետ Աղեքսանդրիայ այր խաղաղարար եւ ուղղափառ Տիմոթէոս Սողոփակիողոս կամ Իմաստունն (460)։ Ընկալաւ Լեւոն զթուղթ հայրապետին եւ հաստատեաց զընտրութիւն նորա՝ մինչ չեւ վախճանեալ ի կենաց (461 Ապր. 11)։

Սոյնպէս դէպք եւ յԱնտիոք անցին, ուր վաղ սփռեալ էր մոլեգինն Բարսումա զմոլորութիւնն, եւ յետ վախճանի նորա (458) Պետրոս Գնափեւս կամ Թափիչ եկեալ յԱնտիոք ձեռնտուութեամբ Զենոնի փեսայի կայսերն, խռովեաց զեկեղեցին յաւելուածովն՝ որ խաչեցար, զոր յաւելոյր յԵրեքսրբեան երգն. մինչեւ առ սրտին նեղութեան հրաժարեաց յեպիսկոպոսութենէն Մարտիրիոս հայրապետն. բայց անդէն աքսորեաց զՊետրոս՝ կայսր Լեւոն։

Այլ միւսանգամ խառնակեաց զամենայն կայսր Բասիլիսկոս (475—477). եւ հրաման տուեալ Կուզն Տիմոթեայ յԱղեքսանդրիա եւ Թափիչն Պետրոսի յԱնտիոք. նզովեաց կայսերական հրամարտակաւ զսուրբ ժողովն Քաղկեդոնի եւ զգիր սրբոյն Լեւոնի, եւ հրամայէր զամենայն արձանագիրս ժողովոյն հրով մաշել եւ այլ եւս նոյնպիսիս. 300 եպիսկոպոսունք արեւելից ծառայամիտք՝ հաւանեցան դատապարտութեան ժողովոյն։ Սակայն Ակակ հայրապետ Կոստանդնուպոլսեայ (472—490) յաջորդ Գենադեայ (459—472) չհաւանեցաւ եւ եղեւ դիմադարձ. խռովեցաւ ժողովուրդն եւ ընկեցաւ Բասիլիսկոս յաթոռոյ։

Եւս յայնժամ շահեալ Զենոնի զզօրավարսն դարձաւ միւսանգամ (474). սպան զԲասիլիսկոս քաղցու՝ հանդերձ որդւովքն իւրովք ի դղեկի ուրեք. եւ դաւանութիւն նորա մերժեցաւ։ Դարձաւ Տիմոթէոս Սողոփակիողոս († 482) յաթոռ իւր։

Ունէր Զենոն ի հաստի զերջանկութիւնն իւր նենգութեամբք եւ բռնութեամբք։ Նուաճեալ էին յայնժամ ի Պաննոնիա արեւելեան Գութք ունելով թագաւոր զԹէոդորիկոս (յամէ 475)։ Իբրեւ շահել զնա կամեցաւ Զենոն ետ նմա եւ զՄիւսիա եւ անուանեաց պատրիկ եւ հիւպատ (484)։ Այլ ապա կամեցեալ հեռացուցանել զնա յիւրմէ՝ հրաման ետ նմա երթալ յԻտալիա եւ յանուն կայսեր հանել զտէրութիւնն յՈդոակերայ, քանզի եւ Թէոդորիկ ցանկայր ունել իւր առանձինն աշխարհ թագաւորութեան։ Զայսմ ամենայնէ պատմեսցի ընդարձակագոյն յիւրում տեղւոջն։ Յետ բազմապատիկ չարեաց մեռաւ Զենոն անորդի (Ապր. 401)։ Ի կատարած կոյս կենաց իւրոց (482) հան Զենոն՝ անզգոյշ խրատու Ակակիոսի զՀենոտիկոնն կամ զգիրն միաբանութեան (Միաբանեայց) որով առաւել եւս սաստկացաւ խռովութիւն եկեղեցւոյ. զորոց այլուր մի ըստ միոջէ։

նու՝ առաքէր զօրս առ Ասպար գալ անկանել ի վերայ Ռաւեննայ. Եհաս յանկարծ Ասպար հեծելազօրու եւ եմուտ ի քաղաքն. յետ փոքր ինչ կռուոյ ձերբակալ եղեւ Յովհաննէս իւրով իսկ զօրականացն օգնականութեամբ, եւ սպանաւ նա կամ անդէն ի Ռաւեննա հրամանաւ Արդաբուրեայ, կամ յԱկուիլէա՝ յետ զաջ ձեռն կտրելոյ եւ յիշկան վերայ առ առակէ ընդ քաղաքն շրջեցուցանելոյ: Յետ երից աւուրց սպանմանն՝ հասանէր Աէտիոս 60,000 Հոնօք. ընդ առաջ ել նորա Ասպար. եղեւ պատերազմ արիւնալից, եւ ընդ երկար անյայտ էր յաղթութիւնն, մինչեւ յետոյ սա միաբանեցին առնել խաղաղութիւն. առաքեցան Հոնք յետս՝ առեալ նոցա զվարձսն. Աէտեայ ոչ միայն թողութիւն, այլ եւ կոմսութիւն ետ: Ի հանդիսի ձիընթացից էր Թէոդոս Բ. յորժամ հասին աւետիք պարտութեան ապստամբին ի Կոստանդնուպօլիս. «Թողցուք, ասէ կայսր, զխաղամարտիկսն, երթիցուք գոհանալ զԱստուծոյ», եւ երթայր ամենայն բազմութիւնն ընդ նմա յեկեղեցի մինչեւ ընդ երեկս: Առաքեցաւ Հելիոն (այնուհետեւ) պատրիկ՝ յԻտալիա, որ եդիտ զՎաղենտիանոս ի Հռոմ, զգեցոյց նմա ծիրանիս յանուն կայսեր եւ ողջունեաց՝ Օգոստոս (425):

Այսպէս ել յաթոռ Վաղենտիանոս Գ. (425—455) որդի Կոստանդեայ, ընդ խնամակալութեամբ Պղակիդեայ: Երկոքեան եւս չէին ատակ ունել ի հասակի զաթոռն:

Ափրիկէ ել իսկ եւ իսկ ի ձեռաց նոցա: Աէտիոս՝ որ ընդ քաջութեանն ունէր եւ խորամանկութիւն, նախանձէր ընդ բազում ազդեցութիւն առնն լաւի Բոնիփակեայ կուսակալի Ափրիկեցւոց աշխարհին, որ բարեկամն էր Օգոստինեայ: Կամեցեալ Աէտեայ ընկենուլ զնա յիշխանութենէ՝ առնէր զնմանէ քսութիւն յարքունիսն եւ տայր զԲոնիփակիոս իսկ հաւանեցուցանէր՝ թէ ընկեցեն զնա արքունիքն յիշխանութենէ: Ապստամբեաց յայնժամ Բոնիփակիոս եւ կոչեաց զՎանդալս ի Սպանիայ ի թիկունս օգնականութեան: Թէպէտ եւ հաշտեցաւ Բոնիփակիոս († 432) ընդ արքունեացն՝ մինչ չեւ ուրեմն հասեալ, բայց Գենսերիկոս եւ Վանդալք չհաւանէին դառնալ յետս ի ճանապարհէն: Առին ապա առ սակաւ սակաւ զամենայն Ափրիկէ (429—439) մեծաւ անագորունութեամբ, աւարին զերկիր զամենայն Հռոմայեցւոց, եւ հաստատեցին զտէրութիւնն Վանդալաց, զոր եւ հարկ համարեցաւ ընդունել Վաղենտիանոս Գ. յամի 435: Յետ այսորիկ յաւելին առնուլ եւ զՍարդինիա եւ զԿորսիկա: Բայց յայնժամ ամենայնի տայր Վաղենտիանոս ի բաց զարեւմտեան Իլիրիկէ (այս ինքն՝ զՊաննոնիա, զԴալմատիա եւ զՆորիկոն) առ տէրութիւնն Արեւելից զի առցէ կնութեան զԵւդոքսիա զդուստր Թէոդոսի Բ. (437):



Digitized by Google

Ամենուստ Աէտիոս կազմեալ իւր զաւրս ի ցեղից Գերմանացւոց, նոքօք կարգեալ յօրինէր զիրս տէրութեանն Հռոմայեցւոց ի մէջ Գերմանացն մնացելոց ի Գաղղիա, եւ առաջնորդէր անդ Հռոմէական բանակին՝ զորով շուրջն պատեալ էին յայնժամ Բուրգունդացիք, Ալեմանք, Փրանկք, Արմորիկացիք եւ արեւմտեան Գոթք։ Տայր միշտ պատերազմ ընդ սոսա (յամէ 435) երբեմն յաղթութեամբ եւ երբեմն պարտութեամբ։ Ի ժամանակի պատերազմացն այնոցիկ՝ բնակեցոյց նա ի կողմանս Վաղենտիոյ (Վալանսայ) զԱլանսն որ մերժեցին անտի զբնակսն (440)։ Բայց քանզի խիստ իմն էր առաջնորդութիւն նորա, զրգռեցին Գաղղիացիք յապստամբութիւն, ձեռն տային ի Կղոդիոս յառաջնորդ Փրանկացն Սաղիացւոց, որ առ յամի 445 զԿամպրէ, զՏուռնէ եւ զամենայն երկիրն մինչեւ ցՍոմ գետ. Թէպէտ եւ հար զնա Աէտիոս առ Գիւղին Հեղենեայ[1], այլ չկարաց մերժել զնա ի բաց։ Յետ սակաւ ինչ միոյ Կղոդիոս վախճանեցաւ, եւ Մերովէ յաջորդէր։

## 111

Այս ամենայն հանգամանք Գաղղիոյ փոփոխեցան ի գալ Հոնացն։ — Ատտիղա՝ եղբայրասպանութեամբ միապետեալ զայլ եւ այլ ցեղս Հոնացն բնակելոց ի կողմանս յորս յառաջագոյն Գոթքն բնակէին, այս ինքն՝ ի մէջ Դանուբ եւ Թէյս գետոց մինչեւ ցՎոլգա (445). ընդ նովաւ էին եւ բազում ցեղք Սարմատաց եւ Գերմանաց. տիրէր նա մեծաւ զօրութեամբ ի փայտակերտ դղեկէն իւրմէ առ Թէյս գետով։ Փոքր էին կերպարանք նորա եւ դէմք ժահաղէմք, ահագին աչքն եւ զօրաւոր անդամոցն շարժումն. դողային ի նմանէ ազգք եւ իշխանք նոցա, սիրէր նա կոչել զանձն՝ Աստուծոյ խարազան, եւ արդեամբք զանունն ցուցանէր։ Ահարեկ առնէր զտէրութիւնն արեւելից, քանդէր ի Սեաւ ծովէ մինչեւ ցԱդրիական ծով, ի Դանուբայ մինչեւ ցսահմանս Յունաց աշխարհին. առ նա ի Թէոդոսէ Բ. զհիւսիսակողմն Թրակիոյ ի հարաւոյ Դանուբայ, եւ 2100 լիտր ոսկւոյ՝ իբրեւ հարկս։

Իսկ իբրեւ կայսր Մարկիանոս փոխանակ ոսկւոյն մերժեաց Ատտիղայ երկաթ, եւ գրգռէր իսկ զնա Թագաւորն Վանդալաց գալ տալ մարտ պատերազմի ընդ տէրութեանն արեւմտից, հաճոյ թուեցաւ Ատտիղայ խորհուրդն, ջանաց նախ նենգութեամբ եւ գրով զմիաբանութիւն Գերմանացւոցն ի Գաղղիա ընդ Հռոմայեցւոց՝ քակել եւ արկանել ընդ միմեանս (450)։ Յափանց Թէյս գետոյ խաղացեալ գայր ընդ երկայնութիւն Դանուբայ՝ զօրու ծանու. զհետ եկին նորա եւ արեւելեան Գոթք, որոց իշխանք

1 Vicus Helenae. գղ. Vieux Hesdin.

էին Վաղամիր եւ Թէոդիմիր եւ Վիդիմիր, Գեպիդացիք՝ որոց իշխան Արդերիկոս, Ռուգիացիք եւ Սկիրրացիք, յարեցան ի նոսա եւ Թիւրինգացիք: Ի կողմանս Սաէնվալտայ Գունդիքար արքայ Բուրգունդեաց հանդերձ ամենայն իւրով եւ բազում Բուրգունդացւովք կոտորեցան, եւ մնացեալքն ստիպեցան զինուորել Ատտիլայ: Անց Ատտիլա ընդ Հռենոս (Թերեւս) ի կողմանս Կողոնիայ, քանդելով, աւերելով մտանէր ի Գաղիա մինչեւ ցԱւրեղիանոն (Օրլէան):

Անդէր Աէտիոս զօրու իւրով եւ Գերմանացւովք, որ էին ընդ վերագոյն իշխանութեամբ արեւմտեան պետութեան, այս ինքն՝ արեւմտեան Գոթք՝ զօրավարութեամբ Թէոդորիկեայ Ա., Բուրգունդացիք եւ Գետեզերեայ Փրանկք՝ որ ապրեալ էին ի սրոյն Հոնաց, եւ Ալանք եւ Արմորիկացիք կամ Բրիտոնք: Տեղի տայր Ատտիլա առաջի զօրութեան նոցա մինչեւ ի Կատաղաւնոն (յայժմու Շալոն առ Մառն գետով): Եղեւ ճակատ ահագին մերձ ի Մուրիակոն (Միւրի). Թէոդորիկոս Ա. Թէպէտ եւ յաղթեաց պատերազմին, այլ ինքն անկաւ. Թորիսմունդ նորին որդի առ զվրէժ նորա. ի հասանել գիշերոյ՝ դարձաւ յետս Ատտիլա, եւ զի աւեր էին կողմանքն՝ ել ի Գաղիայ՝ ի կողմանս Պաննոնիայ (451):

Զայրացեալ Ատտիլայ ընդ խրան եւ կոչեցեալ եւս յԻտալիայ ի քեռէն Վաղենտինիանոսի Գ. զի ապրեցուսցէ զնա, քանզի վասն անառակ վարուցն՝ ունէին զնա ի դիպահոջ, անդէն ի միւսում ամի ժողովեալ այլ բազմութիւն՝ խաղայր յԻտալիա. եհաս առաջի Ակուիլէայ՝ որ էր նախապարիսպ Իտալիայ ի հիւսիսոյ կողմանէ. ընդ երկար եղեւ դիմակալ քաղաքն, եւ մինչդեռ յուսահատ՝ կամէր ի բաց գնալ Թագաւորն Հոնաց, տեսեալ թէ տարմահաւք հանեալ զձագս իւրեանց ի քաղաքէն՝ բերեն ի բանակ նորա, նշան յայտարար յաջողութեան զիւրն համարեցաւ, յարձակեցաւ միւսանգամ, առաւ Ակուիլէա, քանդեցաւ եղեւ հարթյատակ: Այնուհետեւ յառաջ մատուցեալ ապականէր զդաշտավայրսն, առնոյր աւար զգեղեցիկ գեղեցիկ քաղաքս վերինն Իտալիայ: Փախչէին Թագչէին բնակիչք՝ զի ապրեսցին ի սրոյ. ի փախստէից անտի մեկնելոց ի լճակս Ադրիական ծովուն եղեւ սկիզբն քաղաքին Վենետացւոց: Հուրն եւ նշան այրեցածոյն գծէր զճանապարհ արշաւանին Ատտիլայ. Պադաւիոն ամենայն քաղաքօք յԱթեսիս գետոյ մինչեւ ցՏիկինոս անկան. Մեդիոլան նիստ կայսերաց այրեցաւ. անկաւ եւ Պաւիա, եւ զօրն յաղթող բանակեալ մօտ ի գետախառնուրդս Տիկինոս եւ Պադոս գետոց՝ սպառնայր ի վերայ Ռաւեննայ եւ Հռոմայ: Ոչ կայսր, ոչ ծերակոյտ եւ ոչ զօր ի միջի էր՝ որ ապրեցուցանէր զաշխարհն: Զի Վաղենտինիանոս Գ. փակեալ ի Ռաւեննա՝ էր յահի եւ ի դողութեան եւ

Աէտիոս յաղթողն ճակատուն առ Կատալաւնեաւ յուսահատեալ էր ի փրկութենէն Իտալիոյ: Յանկարծ հասանէր ի բանակ անդր Հոնաց Պ. Լեւոն քահանայապետ ընդ աւագանւոյն ոմանց Հռոմայեցւոց. խօսեցաւ նա ընդ ահագին Թագաւորին Հոնաց, աղաչեաց խնայել ի Հռոմ, սպառնացաւ զվրէժխնդրութիւն դըլխաւոր առաքելոցն պաշտպանչաց մայրաքաղաքին քրիստոնէութեան. ահ կալաւ զնուաճողն ընդ բանսն Պ. Լեւոնի. խոստովան եղեւ թէ տեսս նա տեսիլ ինչ կերպարանաց որ կային առընթեր քահանայապետին եւ սպառնային: Դարձաւ Աթիլա յետս ամենայն բազմութեամբն ի կէս արշաւանին իւրոյ, թողեալ զաւերակն (452):

Յետ սակաւ ինչ միոյ զղջացաւ Աթիլա. սպառնայր միւսանգամ ի վերայ Իտալիոյ, այլ հասեալ յառաջին տեղին՝ դարձաւ այսրէն յետս երթալ ի Գաղիա անցանելով ընդ Հռենոսիւ, անդ հալաւ նա ի Թորինգենոյ արքայէ արեւմտեան Գոթաց. դարձաւ յետս ի գետակ իւր փայտեղէն առ Թայս գետով եւ անդէն սպանաւ յաղջկանէ միոջէ իւրմէ զՀողոփեան (453): Որդիք նորա՝ քանզի բազումք էին, չկամէին Թագաւորել միայն Էլլակայ անդրանկանն. անկաւ սա ի ճակատու ուրեք. այլք Գերմանականք զերծան եւ Թագորդք Հոնացն մեկնեցան ի կողմն Սեաւ ծովու եւ անդր եւս (454):

Ընդ նոյն ժամանակս սպան Վաղենտինիանոս Գ. իւրով ձեռամբ զԱէտիոս՝ զի կասկածանօք էր ընդ նմա, եւ զի զրպարտէր զնա Պետրոնիոս Մաքսիմոս. եւ նա սպանանել եւ զարբեկանս նորա (454). բայց եւ ինքն եւս Վաղենտինիանոս յետ միոյ ամի սպանաւ ի Պետրոնիոսէ Մաքսիմոսէ եւ այսպէս հատաւ տոհմն Թէոդոսի Մեծի եւ յարեւմուտս (455):

## 112

Առ այնուհետեւ Պետրոնիոս Մաքսիմոս զծիրանին, ամուսնացաւ ընդ Եւդոքսիայ կնոջ Վաղենտինիանու. բայց Եւդոքսիա կոչեաց զԳենսերիկոս յԱփրիկեայ խնդրել վրէժ ի սպանողէն. եկն սա բազում նաւատորմիղ նաւօք ի բերան Տիբերիս գետոյ. փախստեայ գնացին սինկղիտիկոսք եւ մեծատունք ի քաղաքացեաց. սպանաւ Մաքսիմոս ի խռովն եւ Հռոմ եբաց զդրունս առաջի Գենսերիկոսի: Պ. Լեւոն քահանայապետ աղաչանօքն եւ պարգեւօքն յայն ած զնա՝ զի խոստացաւ չայրել զքաղաքն, չսպանանել զանզէնսն եւ չվնասել զոնեայ երից գլխաւոր եկեղեցեաց:

Այնուհետեւ Հռոմ 14 տիւ եւ 14 գիշեր (15—29 Յունիս) աւար առաւ, գեղեցիկն Կամպանիա ամենեւին անապատացաւ, Կապուա ի հիմանց քանդեցաւ: Ապա ետ Գենսերիկոս՝ զապաս

առանձինն Եւդոկսիայի եւ դստերացն դորա եւ զգերեցուցանս բազում ի նաւս իւր. եւ յայլ նաւս զգանձս եկեղեցւոյ, զկայսերին եւ զայլոց բարձեալ. բազում հազարաւորք յերեւելի մարդկանէ յորս էր եւ Եւդոքսիա հանդերձ երկուք դստերօքն, առաքեցան յԱփրիկէ, ընդ սոսա առաքէր Լեւոն եւ քահանայս ի տնօրէնութիւն հոգւոց նոցա, եւ պարէն ի սնունդ աղքատացն. իսկ նաւն՝ յորոյ վերայ մնացորդք հրէութեանն եւ հեթանոսութեան էին, ընկղմեցաւ։ Այսպէս կործանեցաւ անկաւ փառաւորութիւն Հռոմայ ապականեալ ի Վանդալացն։

Թէոդորիկոս Բ. Թագաւոր արեւմտեան Գոթաց՝ զԱւիտոս Ավերնոս կացոյց կայսր (455), բայց իշխանութիւն տէրութեանն անկաւ ի ձեռս զօրավարաց գերմանացի զօրուն. Ռիկիմեր զօրավար Սուեւ, յաղթէ՝ երաց զհիւսիսային կողմն Գաղղիոյ առաջի Բուրգունդացւոց. Թէպէտ եւ եհար նա զՎանդալս ի ծովու, սակայն ստիպեաց եւ զկայսրն՝ զի հրաժարեսցի եւ առցէ ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան (456)։

Յետ սակաւ ինչ միոյ ամի եղ նա զՅուլ. Մաժորիանոս յինքնակալութիւն (457). բայց զի սա զօրութեամբ եւ առաքինութեամբ տիրէր եւ երեւելի էր ընդդէմ Գերմանացւոց, սպանաւ թելադրութեամբ Ռիկիմերայ (461)։

Վախճանէր ի նմին ամի եւ Լեւոն Ա. քահանայապետ (Ապր. կամ Նոյ.). Բենեդիկտոս ԺԴ. քահանայապետ կարգեաց զնա ընդ վարդապետս եկեղեցւոյ։ ԶԼեւոն յաջորդէր Հիլարիոս (461—468) եւ զսա՝ Սիմպղիկիոս (468—483)։

Յետ Ռիկիմեր փոխանակ Մաժորիանեայ զԼիբիոս Սեւերոս, զոր չընկալաւ Գաղղիա, այլ Եգիդիոս հրամանատար հաստատեաց անդ տէրութիւն զօր եւ եթող որդւոյ իւրում Սիագրիոսի։ Իսկ Ալեմանք խաղացին մինչեւ ցՄողել գետ։ Յետ յաղթելոյ Ռիկիմերայ՝ Ալանաց դիմելոց յայնժամ յԻտալիա, մեռաւ յանկարծ Սեւերոս՝ թերեւս թունեալ ի Ռիկիմերայ (465)։ Անիշխանութիւն տիրէր Ռիկիմեր ամս երկուս (465—467), այլ առանց անուան կայսերութեան. մինչեւ կարօտ եղեալ օգնականութեան տէրութեանն արեւելից ընդդէմ Վանդալաց որ զրաւեալ ունէին զՍիկիլիա, յանձն առ ընդունել կայսր զոր նոր ընտրեալ յարքունեացն Կոստանդնուպօլսոյ։

Անթեմիոս փեսայ Մարկիանոսի կայսեր առ զծիրանին (467). եւ Ռիկիմեր առար կին զմի ի դստերաց նորա։ Այլ վաղվաղակի յարեաւ գժտութիւն եւ պատերազմ ի մէջ նոցա (469)։ Մինչ Ռիկիմեր զպատերազմն հաստատեալ իւր աթոռ ի Մեդիոլանոն քաղաքի, սակս յետոյ առ նա ի բուռն զՀռոմ, սպանեալ եւ անդէն զկայսրն Անթեմիոս (472)։ Յետ Ռիկիմեր զփեսայ Վալենտիանոսի՝ զԱնիկիոս Ողիբրիոս յինքնակալութիւն. երկոքեան եւս

մեռան, Անթեմիոս յետ 40 աւուրց եւ Ողիբրիոս յետ երից ամսոց ի ժանտէ (472)։

Գունդոբաղդ Թագաւոր Բուրգունդացւոց կամեցաւ կացուցանել կայսր զԳղիկերիոս զոմն. իսկ տէրութիւնն արեւելից կացոյց զՅուլիոս Նեպոս, որ էր հրամանատար Դալմատիոյ։ Գլիկերիոս հաւանեցաւ ընդ ընտրութիւն Նեպոսի եւ ինքն եղեւ եպիսկոպոս Սաղոնայ (474)։ Յուլիոս Նեպոս (474—480) ընկալաւ զհաւանութիւն արեւմտեան Գոթաց՝ տալով նոցա զԱւվեռնիա (զԱվեռն). այլ ապա հալածեալ նորա ի զօրավարէ իւրմէ Որեստեայ՝ գնաց փախստեայ ի Դալմատիա (475), ուր պահէր զանձն օգնականութեամբ տէրութեանն արեւելից։ Իսկ Որեստէս եդ զիւր որդի զՌոմուղոս Մոմիլլոս (31. Հոկտ. 475) յաթոռ ինքնակալութեան. յարեաւ ընդդէմ սորա Ոդոակէր զօրավար Գերմանացի վարձկանաց բնակելոց ի Հարաւային կողմանս Դանուբայ, որք էին ի Սկիրրացւոց, ի Հերուլացւոց, ի Տիւրկիղինգացւոց եւ յայլոց ցեղից, զի կամէին սոքա գտանել ստացուածս երկրի։ Յաղթեաց Ոդոակէր առ Պղակենտիաւ, ապա առ Ռաւեննաւ, ուր կալաւ ձերբակալ զՌոմուղոս եւ առաքեաց ի դղեակն Լուկուղղեանոն ի Կամպանիա, տուեալ եւ հաս ռոճկի որչափ բաւական էր (476)։ — Յուլիոս Նեպոս էր տուեալ Ոդոակերայ զանուն Պատրկի եւ սա այնուհետեւ առաջնորդէր յանուն նորա Իտալիոյ եւ հարաւային կողմանց Դանուբայ, բայց ինքն Յուլիոս Նեպոս մնաց ի Դալմատիա եւ անդէն սպանաւ (4 Մայ. 480)։

Ոդոակէր չեդ զոք այնուհետեւ ինքնակալ, այլ ինքն տիրէր իբրեւ պատրիկ ի վերայ Հռոմայեցւոց եւ իբրեւ Թագաւոր ի վերայ Գերմանացւոց։

Այսպէս առ վախճան արեւմտեան տէրութիւն Հռոմայեցւոց յետ 1234 ամաց շինուածոյ Հռոմ քաղաքի, յետ 510 ամի կայսերութեան։

Առաւել քան զերկոտասան դարս անցեալ էին՝ յորմէ հետէ Հռոմ յաննշան կերպարանաց տակաւ երթեալ հասեալ էր ի մեծութիւն անհամեմատ. այլ այն ժուժկալութիւն, քաջութիւն եւ ճշմարիտ սէր հայրենեաց քաղաքացեացն վաղ բարձեալ էր անհետ ի միջոյ. ապականութիւն բարոյիցն Յունաց սուեր իմն լեալ էր առ Հռոմայեցւոցն զեղխութեամբ։ Ամենայն բարձրագոյն եւ ազնուագոյն ազդմունք եւ խորհուրդք եղծեալ ջնջեալ էին ի մտաց ազգացն այնոցիկ, ամենայն ուրեք նոյն ծառայութիւն, նոյնպիսի եղծագործ ապականութիւն։ Իշխանք տէրութեանն բանաւորք՝ չէին անձանց տեարք այլ խաղալիկք ի ձեռս սիրելեացն իւրեանց եւ ներքինաւորութեանց նոցա, կամ խաղալիկք ստամբակ եւ ժլատ զօրականին՝ որ դնէին եւ ընկենուին զնոսա, որպէս ինչ կամէին։ Ծերակոյտն էր այնուհետեւ խումբ ծառայից անհաւ-

տաանոց՝ որ բազում անգամ երկուց տերանց ի միում աւուր խոնարհէր, մերթ աստուածացուցեալ զայլանդակ ոք յայլանդակաց, մերթ հալածեալ իբրեւ թշնամի հայրենեաց, որպէս ինչ օգուտն թելադրէր։ Չգոյր չափ հարստահարութեան գործակալաց ի գաւառսն։ Ամենայն ջան եւ վաստակ արանց երեւելեաց Հռոմայեցւոցն էր առ ընչաւէտութիւն՝ որով ապա զեղխէին յանխնայ։

Այսպէս բազում ինչ փոփոխէր քրիստոնէութիւնն յաղականութենէ անտի բարուց, եւ հազարաւորք իսկ դարձան ի զգաստութիւն, այլ բազումք ի մեծամեծաց եւ յընչաւէտաց կային տակաւին կապեալ ի հրապոյրս հեթանոսութեանն. եւ յորժամ զօրացաւ կալաւ քրիստոնէական վարդապետութիւնն եւ դադարեցին հալածանք, սակայն եւ այնպէս յոլովք ի քրիստոնէից ձգէին երթայքն յախտս կարեացն որ համօրէն շահեալ տիրեալ էին, եւ այնպէս չէր ինչ առ հասարակ բարձեալ այն ապականութիւն կամ նուազեալ, այլ արկեալ եւեթ էր սերմն հանդերձելոյ նորոգութեանն։

Արտաքուստ արտաքս երթայր եւ յաճախէր թշուառութիւն ժողովրդեանն յարշաւանաց անտի ազգացն բարբարոսաց. որ ինչ յաւարէ աստի սոցա մնայր՝ զայն պաշտպանիչք նոցա որ անդրոտին յեղբարց իւրեանց էին, առնուին պարտ բաշխի։ Սով եւ ժանտ զհետ գայր զայնպիսի արկածիցն։ Հարստահարութեանքն եւ ազգի ազգի նեղութեանք այնչափ վհատեցան ի կոր կործանեցան՝ զի ժամ ի ժամէ սպասէին թէ երբ լուծցի քայքայեսցի ամենայն. քանզի չէր իսկ ամենեւին այնուհետեւ սէր հայրենեաց ի սիրտս։

Սոքինքը գոյ առնուլ ի միտ թէ զիարդ այնպէս դիւրաւ անկաւ կործանեցաւ տէրութիւնն արեւմտից որ այնպէս ահեղն եւ զօրաւոր էր երբեմն։ Ահագին եւ սոսկալի էր աւեր գաւառացն եւ աղէտք բնակչաց նոցա. ընդ ամենայն հուր, սուր, կործանումն եւ ապականութիւն։ Այսպէս դատաստան Աստուծոյ էր այն ի վերայ համաշխարհի չարեաց՝ որպէս Ս. Օգոստինոս (ի գիրսն քաղաքին Աստուծոյ) եւ Որոսիոս եւ Սաղուիանոս մատենագիրք եկեղեցւոյ յանդիման կացուցանեն, բայց էր միանգամայն դարման կարեւոր եւ փրկարար՝ յառաջել սրբել զապականութիւն քաղաքային եւ բարոյական համատարած օրոյն՝ զոր ծնեցին ազգք, զի եկեսցեն կալցին զնոցա տեղի այլք լաւագոյնք եւ ազնուագոյնք քան զնոսա։

Digitized by Google

## Զ

### Հայաստան (ընդ Պարսկաստան)։

## Ը

Տրդատ (Բ), Խոսրով Բ., Տիրան Բ. — Քրիստոնէութիւն, Ս. Գրիգոր Լուսաւորիչն Արիստակէս, Վրթանէս, Յուսիկ (253—352)։

### 113

ԸՌԱՆՑ հաւաստակութեան յայտ է՝ եթէ վախճան պարթեւական պետութեանն՝ է ի Հայոցն պատմութեան սկիզբն ժամանակի երկրք Նորոյ՝ որոյ բազում իմն նկարագիրք են ընտրելիք յառաջնոցն ժամանակաց։ Ի գլուխ այսր ժամանակի անցեալ կայ Տրդատ Մեծն, հոյակապ եւ նշանաւոր քան զամենայն թագաւորս Հայոց յետ Տիգրանայ Մեծի արշակունւոյ։ Պատմութիւն մանկութեան նորա, պանդխտութեանն եւ (56ամեայ) թագաւորութեան լի են այնպիսի ինչ քաղաքային եւ կրօնական դիպուածք՝ որ զամենայն հագամանս կենաց ազգին յայլ իմն կերպարանս փոփոխեն՝ ընծայեցուցանելով միանգամայն հնայուն ինչ կարգս վասն դարուց բազմաց։

Առաջագոյն ծանուցաւ վասն անցից մանկութեանն եւ ունելոյ զաթոռ թագաւորութեան հարցն իւրոց, որպէս ինչ առհասարակ պատմագրութիւնն առաջի ընծայէր[1]։ Քաղաքային դէպք թագաւորութեան նորա այս են։

Վասն նորագոյն եւ սերտագոյն բարեկամութեանն եւ դաշնաւորութեան Հայոց ընդ Հռոմայեցւոց հարկ էր դրգռել Սասանական արքային ընդ սոցա եւ ընդ նոցա միանգամայն։ Դրդեաց հրապուրեաց Շապուհ Բ. յարատամարտութիւն անգամին ի մէջ աշխարհին զԱնակ նահապետ ազգին Արշակունեաց ի Տարօն եւ ի հիւսիսոյ երկրին կոչէր զապստամբ սկիւթական ազգացն արշաւել ի Հայս։

Զօրաժողով լեալ խաղայր ի վերայ սոցա Տրդատ. խառնեցաւ ճակատ ի դաշտին Գարգարացւոց. առնէր Տրդատ յաղթութիւն եւ զբաւ պատերազմին՝ կարելով ընդ մէջ զզօրավար թշնամեացն զարքայն Բասլաց, յորժամ ձգեալ նորա ըստ ամերական արուեստի[2] ազգին զներդեալ քեմխատապատ պարանն յուս ձախակողմանն եւ յանութ աջակողմանն Հայոց թագաւորին՝ կամէր ըմբռնել զնա։ Բայց մեծագնի յաղթութիւնն կատարեցաւ, զի ընդ բազմամբոխ անկեալսն էր եւ սպարապետն Հայոց Արտաւազդ Մանդակունի սիրելի դայեակն եւ սնուցիչ թագաւորին։

1 Տես վերագոյն էջ 170—172։

2 Տես Տակիտ. Գամ. Ա. 79. 5։

Digitized by Google

Այն ինչ գործեալ Թագաւորին ի պնդելոյ զհետ փախստէիցն մինչեւ յաշխարհն Յունաց՝ բերելով ընդ իւր պատանդս, հասանէին աւետիք թէ անկաւ Սղուկ։ Քանզի տանուտէրն ապստամբ յետ սպանանելոյ զիւր փեսայ զհաւատարիմ ծերունին զՄուշեղ՝ ամրացեալ էր յամուրն նորա յՕղական եւ թիկունս պարեալ [illegible] լերին ընդդէմ զօրանայր Թագաւորին եւ աւերէր զերկիրն։ Իսկ Թագաւորն քանզի ի վերայ հիւսիսականացն կամէր խաղալ ի ժամանակին՝ խոստացաւ զիշխանութիւն գնդից եւ դաստակերտաց տալ այնմ որ ածիցէ ձերբակալ զՍղուկ։ Մամգուն գաղթական ի Ճենաց աշխարհէ, ի տոհմէ Թագաւորաց նոցա, անկանէր հաստատածի պատմութեան առ ապստամբին եւ երդմամբք եւ գործովք կեղծաւորեալ՝ հարկանէ զնա յորսոյ նետաձգիւք, ածէ զգլուխն, կոտորէ զտոհմ ապստամբին եւ երկուք միայն անկանին ի դրացի աշխարհն Դոփաց։ Իսկ արքայ տայ եւս Մամգունեայ զամենայն հրովարտակաւ, ըստ խոստմանն, եւ կոչեցաւ իսկ տոհմ Մամիկոնեան կամ Մամգունեան ի նախարարութիւն, բայց մնացելոցն Սլկունեաց հրաման տայր չմեռանել։ Որպէս ի դէպ իսկ է նշմարել, չէր ինչ խառն Թագաւորն յանագորոյնութիւնն՝ որ կից իմն է ընդ գործոյն[1]։

Յետ մահու ապարապետին՝ ըստ հին օրինակին ի չորս զօրավարութիւնն բաժանէր․ կարգէր ի վերայ հիւսիսային գնդին զքրիստոնեայ Թագաւորն Վրաց զՄիհրան եւ ի վերայ այլոցն գնդից զՆազարաթ տայեղ զնահապետ Բագրատունեաց, զՄանաճիհր նահապետ Ռշտունեաց եւ զՎահան նահապետ Ամատունեաց։ Նա ինքն իւրով իսկ անձամբն առեալ զումարտակ ի հիւսիսական ազգացն՝ որոց յաղթեաց, կամէր տալ պատերազմ ընդ Պարսից, բայց քանզի բազումք ի նախարարացն անկեալ յարշաւանս անդ՝ որ վերագոյն ճառեցաւ, չիշխեաց Տրդատ ինքնին յառաջ տալ ճակատ, մինչեւ ի յարձակել զօրուն Յունաց ընդ Սասանեան եւ ինքն ի հիւսիսակողմանէ Պարսից աշխարհին անկանէր եւ զերկրորդն Եկբատանս (Թերեւս զԳանձակ Ատրպատականի) թափեալ եւ կարգեալ վերակացուս՝ դառնայր այսրէն յետս ի խնդրել Ներսեհ Ա․ հաշտութիւն ի Կոստանդիանոսէ։ Այսպէս պատմագիրն Յունաց[2], զոր չէ մարթ միաբանել ընդ հայկական պատմութեանն, բայց փոփոխելով զժամանակն ի վեր կոյս։

## 114

Սոյն հանգամանաց կրկին (արտաքին եւ տոհմային) պատմագրութեանց՝ զոր զյաջորդացն Արտաւազդայ Ա․ մինչեւ ցՏրդատ ցՄեծն ունիմք, ճառեցաւ ըստ արժան բաւականի։ Ի չմիաբանութեան անդ եր-

1 Խոր․ Բ․ Գլ․ ՁԵ․ ՁԷ։

2 Խոր․ Բ․ Գլ․ ՁԴ․ ՁԵ։

կոչմանցն՝ զարտաքինն ընկալեալք, զտոհմայինսն ոչ մերժեալք, հանդերձելոյ միաբանութեանն ակն կալեալք։

Նախ ի Տրդատայ եւ անդր՝ այլ իմն են հանգամանք քաղաքականութեան վասն աղբերսի եւ համեմատութեան տոհմային եւ արտաքին պատմագրութեանց ընդ միմեանս։

1. Ի Տրդատայ մինչեւ ցԹոռնորդի նորա ցԱրշակ Բ. արշալուրջք իմն են՝ յորում նշմարի աղօտ աղօտ միաբանութիւն ինչ երկոցունց ընդ միմեանս, Թէպէտ եւ ի սկզբանն խառնափնդորք իմն առակաւքն։

2. ՅԱրշակայ Բ. մինչեւ ցբաժանումն Հայոց Թագաւորութեան ընդ յունական եւ ընդ պարսկային վերագոյն իշխանութեամբ՝ առնեն միմեանց երկոքին համբոյր հաշտութեան՝ յետ այնպիսի երկայնժամանակեան գժտութեանն։

3. Ի բաժանմանէ անտի Թագաւորութեան եւ անդր՝ այնպիսի իմն առաւելութիւն եւ ճշդութիւն (դիպաց եւ ժամանակագրութեան) առնու պատմագրութիւնն տոհմային (առ Մ. Խորենացւոյ, Կորեան, Եղիշէի եւ Ղ. Փարպեցւոյ), մինչ զի ամէն տոհմային պատմագրութեան անկ է այնուհետեւ առնուլ յինքն զիրաւունս իւր՝ առաւել վճիռ վասն անցիցն՝ զոր զՀայոց իրաց ունիցի պատմագրութիւնն արտաքին, Թէպէտ եւ անսուր։

Խնդիր մեծ է՝ զետեղել զբազմամեայ բազմանման պատմութիւն անցիցն Տրդատայ ի պատշաճական դիրս աշխարհական պատմութեան։ Դժուարութիւն իրացն յերկուց կողմանց ունի զծագումն. արտաքին պատմագիրք ժամանակացս՝ Թէպէտ բազումք Թուով են, այլ ոչ առատ եւ ճիշդ պատմութեանն նիւԹով, եւ տոհմայինքն դարձեալ՝ կասկածելիք ըստ ժամանակագրութեանն։

Սակայն եւ այնպէս է ինչ ինչ՝ որով մերձենան իմն առ միմեանս տոհմայինքն եւ արտաքինք առանց ամենեւին ձեռն ի ձեռն միմեանց տալոյ։

1. Ի կործանել պարԹեւական պետութեան ի Պարսս ի ձեռն Սասանեանն Արտաշրի՝ լինի Թշնամութիւն ընդ սա եւ ընդ Թագաւորն Հայոց (յարձակելով նախ Թագաւորին Հայոց յերկիր սահմանացն Պարսից վասն ապրեցուցանելոյ զազգականսն Արտաւանայ)։ 2. Յուսայ եւ կոչէ Թագաւորն Հայոց զազգակիցսն Արտաւանայ յօգնականութիւն պատերազմի։ 3. Արդեամբք կրէ Արտաշիր յարձակումն յազգականաց Արտաւանայ։ 4. Ի նեղ իսկ մեծ անկանի Արտաշիր։ 5. Լինի փախստեայ (յաշխարհն Հնդկաց)։

Ոչ սակաւ միաբանէ պատմագիրն օտար (Դիոն Կասիոս ժամանակակից) զի ասէ. 1. Թշնամութիւն էր Արտաշրի ընդ Հայոց. նախ իւր ինքնին իսկ Արտաշիր յարձակի ի Հայս։ 2. Քանզի եւ որդիքն Արտաւանայ ի Հայս ապաստանեալ էին։ 3. Ի պարտութիւն մատնի Արտաշիր առաջի Հայոց եւ Մարաց։ 4. Կռուին ի պատերազմի սաստ ընդ նմա եւ որդիքն Արտաւանայ։ 5. Երթայ նա ժողովել զօր յօգնականութիւն, եւ արդեամբք իսկ տեսանեմք զնա յետ երից կամ չորից ամաց ի կռուի ընդ Հռոմայեցւոց (եւ ընդ Հայոց) հանդերձ բազմամբոխ (Հնդկային) փղօք (Լամպրիդ.)։ — Այս հանգամանք էին պատերազմին Հայոց ընդ Արտաշրի ի չորրորդ ամի մահուանն Արտաւանայ յամի 229[1]։

1 Դիոն Կաս. ի վերջ կայս գրոցն։ „Արտաշիր պարսիկ՝ յորժամ յաղԹեաց ՊարԹեւաց երկեւմբք պատերազմաց, եւ սպան զԹագաւոր նոցա զԱրտաւան, ի Հայս յարձակեր. սակայն մերժեալ ի բնակչաց անտի, ի Մարաց ամանց եւ յորդւոցն Արտաւանայ, դարձաւ ի փախուստ՝ որպէս ոմանք համարին. քանզի այլք գրանել առեն յետս՝ զի յանձնապաստ եւս զօրս գումարիցէ„.

Digitized by Google

քարոզել յարքունիս Արտաշիսի եւ ազգականք ոմանք Սաթինկան յազգէ Ալանաց հաւատան։ Այլոց հաւատացելոց սակաւաւորաց (Ոսկեանց) պատմի յետ ամաց բազմաց ստիպեալ տագնապել յարքայորդւոյն ի մոլեգնին Արտաւազդայ յուրացութիւն, եւ ի չառնուլ նոցա յանձն՝ գլխատել հանդերձ առաջնորդաւն իւրեանց Ոսկիասաւ յիւրեանց բնակութեանն ի լերինս Բագրեւանդայ։ Այն իսկ առանց տարակուսանաց է թէ շահեալ տիրեալ էր հեթանոսութիւն ի Հայոց աշխարհին՝ ոչ միայն ի վերջ կոյս դարուն երկրորդի կամ ի սկզբան դարուն երրորդի՝ յորժամ եկն Բարդեծան ասորի առաքելութեամբ ի Հայս[1], այլ եւ յետոյ եւս հարուստ ինչ ժամանակ։

Պատճառք անագան մտին քրիստոնէութեան ի Հայս թուին՝ 1. Վաղն փոփոխել մեծի մասին Հրէիցն գաղթելոց անդր՝ զկրօնս իւրեանց ի հեթանոսութիւն. քանզի քարոզք աւետարանին ամենայն ուրեք առ նոսա իբրեւ առ ծանօթս եւ առ ազգակիցս գային եւ ի ժողովրդանոցէ նոցա սփռէին հաւատք քրիստոնէութեան. ուր նմին հակառակ չերեւի ի Հայս ընդ արձակ թագաւորօք՝ ազատութիւն առանձինն ժողովրդանոցաց՝ զոր ի Հռոմայեցւոց պետութեանն վայելէին Հրեայքն, եւ ոչ առաքելոց համարձակութիւն քարոզելոյ եւ առնելոյ եկամուտս՝ որպէս անդն։ 2. Այլակերպութիւն լեզուին, պակասութիւն յունական գաղթականութեանց, նուազութիւն մտաւորն կրթութեան եւ աշխարհագրական առանձինն դիր երկրին՝ իբրեւ արտաքոյ սահմանաց հռոմէական պետութեան։ 3. Հանապազորդ շարժումն զինուց եւ սպառազինաց եւ աղմուկ։

Սակայն եւ այնպէս առանց իրիք երկմտութեան է թէ ոչ ամենեւին անհետ եւ անծանօթ էր քրիստոնէութիւն ի Հայոց աշխարհին։ Բաւական էր արդեւք առ ի դոյն՝ վկայութիւն դրացւոյն մերոյ Փիրմիլիանու եպիսկոպոսի Կեսարիայ Գամրաց, զորմէ ասի[2] պատմել ի գիրսն Հալածանաց, թէ այնչափ յաճախեալ ի Հայս էին քրիստոնեայք՝ մինչեւ արքայի նոցա (Խոսրովու) յարուցանել հալածանս ի վերայ նոցա եւ զբազումս սպանանել։ Այլ աւաղ՝ զի այն վկայութիւն չունի ինչ այնչափ ոյժ, այնու՝ զի այն մատեան՝ զոր իբրեւ մատեան Փիրմիլիանեայ ի կիր արկանէ պատմագիրն հայ, ունի պատմութիւնս հալածանաց մինչեւ ցամն 311՝ ըստ վկայութեանն նորին պատմագրի, ուր՝ վաղ յամի 269 վախճանեալ էր Փիրմիլիանոս։ Նմին իրի հարկ է մեզ շատանալ վկայութեամբն Տերտուղիանու († 240)՝ որ բազում հաւատացեալս ի Հայս համարի լեալ[3]։ Զնոյն բաւական են հաստատել եւ երկաքին հրովարտակք հալածանաց՝ զոր հան Տրդատ արքայ որդի յա-

1 Խոր. Բ. Գլ. ԿԶ։
2 Խոր. Բ. Գլ. ՀԵ։
3 Տերտուղ. ընդդ. Հրէ։



Digitized by Google

ուղղագոյն ճառելոյ թագաւորին, թէ միայն ցուցցէ նոցին վաւերականութիւնն։

Այլ ընդհանրական դարձ Հայոց աշխարհին՝ որ առ սովին թագաւորաւ դիպեցաւ, չէր հնար առանց նշանաւոր ինչ դիպաց ի գլուխ ելանել։ Եւ առաջին (տոհմային) դրոշմն անգլեկութեան՝ այսպէս իմն իրքն դիպեցան։

## 116

Արդէն Տրդատէս՝ էր թշնամութեամբ ընդ քրիստոնէութեան։ Զայս ատելութիւն այլ ի նա օրինակ հօրն[1], կրթութիւնն առ Դիոկղետիանեայ[2], արքանեկութիւն կայսերացն Հռոմայեցւոց՝ յորոց ժառանգեաց զխորշումն ի քրիստոնէութենէ եւ զհամարելն զնոյն մեռատակար անբրութեան[3], եւ առաւել քան զամենայն հրահանգք փիլիսոփայութեան՝ ուսեալ ի փիլիսոփայից ժամանակին անհնարին թշնամեաց քրիստոնէութեան[4]։ Պատու մաղմաղակի եւ ճառ-րակ եռանդեան այսր Մարկոսի Աւրելեայ։

Իբրեւ սուսերահարն եղեւ հայր նորա Խոսրով եւ զաւակն նորա Անակ պարթեւ մեռաւ գետամէժ ի փախստեանն, Եւթաղ անուն հաւատացեալ Պարսիկ յազգէ՝ ապրեցուցանէր ի կոտորածէ ազգին Անակայ մանուկ մի երկամեայ հանդերձ Սոփիա ստնտուաւ նորա՝ քերբն Եւթաղեայ։ Գնացեալ այնուհետեւ Եւթաղիոս ընդ քեռն իւրում եւ ընդ քեռաւն՝ Բուրդար անուն Պարսիկ յազգէ, յաշխարհն Կապադովկացւոց։ Անդ ի Կեսարացւոց քաղաքին ծաղկեալ պարարէր մանուկն պաշտպանիկ ի հրահանգս քրիստոնէական ուսման[5] (ընդ անուշութեամբ հայակային Փիրմիլիանոսի). սուսեալ էր նմա անուն կապադովկացի Գրիգորիոս։ Յետ ամուսնանալոյ ընդ Մարեմայ դստեր ուրումն Դաւթի եւ երկուս որդիս զԱրիստակէս եւ զՎրթանէս ծնանելոյ՝ մեկնեցան յերրորդում ամի ամուսնութեանն միաբան համաձայնութեամբ ի միմեանց. կրօներն ընդ մօրն մեկնեցաւ ի կայրս կուսանաց. յետ սակաւ ինչ միոց եւ հօրն թողեալ զերկոց որդին առ դայեկաց, եկ գնաց առ Տրդատ (ի Հռոմ) "զհայրենեացն պարտս հատուցանել"[6]։

Անդէն ի պանդխտութեանն սկիզբն առնէր թագաւորական ստիպել զԳրիգոր ի պաշտօն դիցն[7], այլ առաւել եւս՝ յորժամ եմուտ նա յերկիր թագաւորութեան հարցն իւրոց։ Իբրեւ կատարեցան զոհք գոհութեան վասն յաղթութեանցն առ Անահական դիցն յԵրէզն աւանի, հրամայեաց թագաւորն՝ Գրիգորի

1 Խոր. Բ. Գլ. ՀԵ։
2 Ագաթ. էջ 38։
3 Ագաթ. էջ 102—104։
4 Ագաթ. էջ 640։
5 Ագաթ. էջ 38։
6 Թուղթ Արտաւեթեայ առ Խոր. Բ. Գլ.
2։ Ագաթ. էջ 38—39։
7 Ագաթ. էջ 39։

Digitized by Google

*նոցա, առաքեցաւ զրոյց ի կայսերէ առ արքայն Հայոց, խնդրեցան գտան նոքա ի կայանսն իւրեանց: Յետ պահելոյ զնոսա անդէն աւուրս երկուս ասպարափակ ի ձեռն հետեւակ զօրուն՝ ոսկիապատ գահաւորակք սպասաւորօք եւ մեծապայծառ հանդերձիւք հասանէին՝ տանել զՀռիփսիմէ ի սենեակ թագաւորին: Անհնարին էին աղէտք եւ վարանք կուսանացն սրբոց: Առաւ ածաւ Հռիփսիմէ ի սպասաւորացն մերկ վերամբարձ, մերկ ի քարշ ի վանս թագաւորին: Անդէն յարքունի սենեկին ոգորէր աղջիկն մաքառ ընդ մեծազօր սկային ժամս եւթն: Պարտեցաւ վաստակեցաւ լքաւ եալ արտաքս թագաւորն. նոյնպէս կատարէր եւ միւս եւս փորձ թագաւորին: Օրիորդն տկար զնշան թագաւորին ցրուեալ կողոպտեալ՝ թողոյր զնա ամօթալից, բացեալ զդուռն, հատեալ հերձեալ զամբոխ մարդկանն՝ հասանէր առ ընկերսն եւ ապա հարուստ մի արտաքս քան զքաղաքն ելեալ՝ իջեալ ի գուբս ի սալաստանդակի ուրեք՝ մատուցանէր վասն յաղթութեանն գոհութիւնս: Անդր հասանէր գիշերախառն դահճապետն դահճօք հանդերձ. կապեալ պրկեցաւ ի տեղւոջն կոյսն ի չորս ցիցս՝ ըստ երկուց ձեռացն եւ երկուց ոտից. Ջահիւք խանձեցաւ, հանեան խլեցան աչքն եւ յօշեցան անդամքն պատառ պատառ: Ընդ նմին կոտորեցան եւ 32 ոգի յընկերաց նորա եւ մի ոմն յառաջին վանս բնակութեանն. իսկ մարմինքն ընկեցան արտաքոյ քաղաքին ի կերակուր գազանաց եւ թռչնոց: Ի վաղիւ անդր պարագլուխ սրբոցն Գայիանէ՝ որ ածեալ էր յապարանսն զի հաւանեցուսցէ զսան իւր ի կամս թագաւորին, մատուցաւ ի տանջանս հանդերձ երկուք ընկերօք ի տեղւոջ մահապարտացն. կապեալք ի մի մի ցից՝ եղեն մորթազերծ: Այսպէս վկայեցին ընդ ամենայն 37 կուսանք: Մնացեալքն յընկերաց նոցա՝ որ աւելի քան զերեսուն հաշուէին, ցրուեցան փախըստեամբ: Այլ մահն Հռիփսիմեայ՝ որ առանց թագաւորին հրամանի էր, տրտմեցոյց տխրեցոյց արկ զնա ի սուգ. քանզի հատեալ էր սիրտ նորա զհետ:*

*Յետ վեց աւուր իբրեւ ժամ տուեալ ելանէր յորս կառօք թագաւորն, հասանէր պատուհաս ի Տեառնէ՝ փոխել յանասնական ի խոզակերպն կերպարանս (յազգ ինչ ախտի գայլամարդութեան), նոյն անցք մոլեգնութեան եւ ընդ բազումս յարքունականացն եւ Վաղարշապատացւոցն անցանէին: Այսպիսի հանգամանք իրացն էին՝ յորժամ յայտնէին անուրջք առ Խոսրովիդուխտ՝ քոյր թագաւորին, առ օրիորդն զգաստ. այր մի լուսաւոր հրաման տայր առաքել յԱրտաշատ եւ հանել ի վեր զԳրիգոր ի վիրապէն, զի նա բժշկեսցէ զնոսա: Յետ կրկնելոյ այլոց անրջոց՝ ապա առաքեցաւ դայեակն նորա Աւտայ Ամատունի յԱրտաշատ. արկաւ պարան երկայն ի ներքս ի վիրապն, աղաղակեաց Աւտայ կոչելով զԳրիգոր յանուանէ. իբրեւ շարժեցաւ պարանն՝ ձգեցին հանին զԳանիէլս*

Digitized by Google

ի գբոյ անտի՝ թխացեալ սեւացեալ։ Ի վերայ ճանապարհին Վաղարշապատու՝ գայր ընդ առաջ Գրիգորի թագաւորն մերկ՝ դիմեալ յանասնական բնակութենէն, նոյնպէս եւ այլ եւս բազմութիւն մարդկանն մոլեգնելոց եւ փրփրելոց։ Էջ ի ծունր Գրիգորիոս, եւ կացեալ յաղօթս վասն նոցա՝ դարձան նոքա առ սակաւ մի ի զգաստութիւն։ Ի խնդրել նոցա ի նմանէ թողութիւն վասն որոց յանցեանն ի նա, խրատեցուցանէր զնոսա Գրիգոր թէ ինքն հաւասար նոցա բնութեանն է եւ թէ յումէ պարտ իցէ զանձկալութիւն բժշկութեանն ունել[1]։

Զայս ասէր եւ յետ զմարմինս կուսանացն վկայելոց ժողովելոյ եւ պատելոյ իւրաքանչիւր պատառատուն հանդերձիւն, զոր առ ժամն նախամեծար քան զմեծագին պատանս զգերեալն յարքունուստ արար, անց գնաց նստաւ ի հնձանս թագաւորին, ուր վանքն իսկ վկայիցն լեալ էին, եւ անտուստ խօսէր նա ընդ բազմութեանն խռնելոյ յամենայն կողմանց աշխարհին։ Յետ յօժարեցուցանելոյ զմիտս նոցա ի մերժումն կռապաշտութեանն եւ յընդհանրական իմն ընդունելութիւն միոյն եւ երրորդականն Աստուծոյ, պատրաստէր զնոսա ի մկրտութիւն երկամսեայ վարդապետութեամբ ընծայութեան[2], որպէս յայտնի իսկ նշմարի՝ ի վերայ կարգի հանգանակի իրիք՝ ըստ երից իմն գլխաւոր բաժանմանց ճառ արկեալ՝ նախ զՀօրէ եւ միանգամայն զարարչութենէ, երկրորդ՝ զՈրդւոյ եւ միանգամայն զմարմնաւորութենէ, եւ երրորդ զՀոգւոյն սրբոյ եւ միանգամայն զեկեղեցւոյ[3]։

Հանդէս ճշմարտութեան դարձի ժողովրդեանն երեւէր յեռանդնալից փութոյն՝ որով մատեան ի շինութիւն վկայարանացն սահմանելոց ի Գրիգորէ ըստ տեսլեան իրիք եղելոյ առ նա՝ հանդերձ յայտնութեամբ հանդերձելոց ինչ իրաց ի վերայ եկեղեցւոյն՝ որ ի ծնունդս էր յայնժամ։ Ըստ չափոյն՝ զոր ինքնին Գրիգոր զայր ճարտարութեանն ի ձեռն առեալ ցուցանէր, կանգնեցան կացին հասարակաց աշխատութեամբ վկայարանք երեք, մի ի տեղւոջն՝ ուր Հռիփսիմէ վկայեաց, եւ միւս՝ ուր Գայիանէն, եւ երրորդ՝ ի վանս բնակութեան նոցա ի հնձանին։ Զետեղեցան ի նոսա մարմինք նոցա ի տապանս մայրափայտեայս երկաթագամ՝ եդեալ զիւրաքանչիւր իւրով հանդերձիւն, թէպէտ եւ բերեալ կուտեալ կային առաջի Գրիգորի եւղք անուշունք եւ խունկք ազնիւք, գոյնագոյն նարօտք եւ ծիրանիք եւ երկնագոյն սպիտակ դիպակք յօրիորդացն թագաւորազանց եւ ի կանանց պատուականացն։ Աստն տեղեաց տապանացն՝ ինքնին թագաւորն առեալ փայտատ եւ բահ հատանէր զդիրսն. Աշխէն տիկին եւ քոյր թագաւորին օրիորդ Խոսրովիդուխտ ընկալեալ ի հանդերձս իւրեանց

1 Ագաթ. էջ 191—536։
2 Catéchisme.
3 Ագաթ. էջ 101—167։

զհողն բրեալ՝ հանէին արտաքս։ Յետ այնորիկ խնդրէր Տրդատ հրաժեշտ ի Գրիգորէ եւ եւթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի լեառն Մասիս՝ արձանս ութ բերէր կանգնել առ սեմբ վկայարանին Հռիփսիմեայ՝ իբրեւ կոթող յաղթութեան նորա։ Ի վերայ տապանացն Թաղելոց՝ իբրեւ ի տեղիս սահմանեալս վասն սեղանոց, կանգնէին նշանք խաչի, եւ միւս եւս չորրորդ նշան ի տեղւոջն՝ ուր սահմանեցաւ լինել առաջին եկեղեցի (Էջմիածին) եւ պատուեցաւ որմով, դրամբք եւ դռնափակօք։ Նաեւ ուրեմն աղօթք կատարէին, ուր եւ ժողովէր ամբոխն յաւուրս վարդապետութեան։ Նաեւն շնորհէր աղօթիւքն Գրիգորի կատարեալ բժշկութիւն թագաւորին եւ այլոցն խօթացելոց (բորոտաց, անդամալուծաց, գօսացելոց, ջրգողելոց, գոնձացելոց եւ [illegible])[1]։

Իբրեւ այսպէս առաւել քան զառաւել տարածանէին հաւատք եւ երախտիք նորոց վարդապետութեանն եւ զրաւեալ շահեալ էր ուստիկ մարդկանն ի պաշտելեացն զօրութենէ, հնար եւ պատշաճ էր այնուհետեւ ջանալ զհեթանոսութիւնն անդէն ի փառաւորանսն չքնացանել կամ քակելով եւ կամ յեկեղեցիս զմեհեանսն փոխելով։ Առաքեալն Հայոց չհամարեցաւ ի դէպ զվերջին հնարն արկանել ի կիր, զի թէպէտ եւ զանեղիս մեհենացն սահմանեաց վասն շինուածոյ եկեղեցեաց՝ խաչ ի նոսին կանգնելով, սակայն զամենայն յօրինուած մեհենիցն ետ կործանել։ Թագաւորն՝ զոր առաւելագոյնն մտադիւրութեամբ ածէր Գրիգոր ի հրահանգս քրիստոնէական կրթութեանն՝ հանդերձ հանօրէն արշաւիւնի առհմիւն, տայր հրաման մեծաստատ իշխանութեամբ՝ ի բաց կալ ամենեցուն ի սնոտի պաշտամանցն եւ հնազանդ լինել ամենահեշտ լծոյն Քրիստոսի։ Ինքնին Տրդատ ընդ Գրիգորի՝ իշխանօք եւ դրանիւ զօրօք ելանէր ի Վաղարշապատոյ շրջել ընդ աշխարհն. բրեցան կործանեցան կամ այրեցան մեհեանք եւ բագինք եւ պատկերք՝ Տիւր դից (Հերմեայ) մօտ յԱրտաշատ, Բարշամինայ՝ ի Թորդան Դարանաղեաց, Արամազդայ՝ յԱնի, Ոսկեմօրն Անահտայ՝ յԵրէզն աւանի Եկեղեաց, Նանէական դից (Աթենայ)՝ ի Թիլն աւանի եւ Միհրական դից (Հեփեստեայ)՝ ի Բագայառիճն։ Ի մեծագանձ պարգեւաց մեհենիցն հանեալ մասն աղքատաց եւ տառապելոց։ Մանկունք քրմացն ցրուելոց կալեան ի հրահանգս ուսման, իսկ տեղիք մեհենիցն սահմանեցան խաչանշան եւ որմնայատ ի շինութիւն եկեղեցեաց՝ զոր պատրաստէր Գրիգոր հանդերձելոց հովուին[2]։

Առանց իրիք երկմտութեան է՝ թէ վաղագոյն իսկ արդ առաքեալ իցէ Գրիգորի յեկեղեցիսն Գամրաց՝ զի առաքեսցին պաշտօնեայք խորհրդոց առ ընդունելութիւն նորոցն հաւատացելոց։ Այլ զոր խոնարհութիւնն Գրիգորի չտայր նմին իսկ ածել զմտաւ, զայն (որպէս պատմի) Աստուած իսկ ազդէր Ղեւոնդեայ

1 Ագաթ. էջ 537—577։

2 Ագաթ. էջ 577—591։

դէմքն էին, զի ոմն Աղեքսանդրոս անուն կարգէր եպիսկոպոս արքունական դրանն: Դարձեալ ի սոցունց համարոյ յիշեն եպիսկոպոսունք բաց յԱղեքսանդրէ (որ եկաց ապա եպիսկոպոս կողմանց Եփրատական գետոյն) Եւստաթիոս Բասենոյ, Բասսոս, Մովսէս, Եւսեբիոս, Յովհաննէս, Ագապէս, Արտիթէս, Արտուկէս, Անտիոքէս, Տիրիկէս եւ Կիւրակոս, թող զայլ եպիսկոպոսունսն (զորոց թիւ համարի մատենագիրն ընդ ամենայն աւելի քան զ200, այսպէս ոչ առանց աւելորդութեան): Այնուհետեւ համարձակ իսկ էր Գրիգորի՝ միայնանալ ընդ սակաւուց ումանց՝ տալ զանձն առաւելագոյն ի կրթական կեանս, մանաւանդ յետ կարգելոյ զոք իւր փոխանակ: Քանզի ըստ առաջարկութեան թագաւորին կոչեցան որդիք նորա ի Կեսարիայ, առաքելով անդր զԱրտաւազ Մանդակունի ընդ Տաճատայ Աշոցաց իշխանի եւ ընդ Դատայ կարապետին արքայի. կրսերն ի նոցանէ Արիստակէս կուսան՝ որ եղեւ նախամեծար քան զեղբայրն երիցագոյն ամուսնաւոր զՎրթանէս (յայնժամ երէց), ձեռնադրեցաւ ի հօրէն յեպիսկոպոսութիւն՝ լինէր նորա տեղապահ[1]:

Թուէպէտ եւ այսպէս կարգեցաւ յարդարեցաւ ամենայն, այլ մի ինչ տակաւին պիտոյ էր, այս ինքն՝ բարձրագոյն իմն հաստատութիւն եւ օծութիւն ամենայնի ի ձեռն բարձրագոյն ճոխութեան կաթուղիկէ եկեղեցւոյ՝ առ որ համեմատէր նորածին եկեղեցի պարթեւական առաքելոյն իբրեւ դուստր առ մայր: Դիպող էր առայն եւ ժամանակն. քրիստոնէութիւն ելեալ էր ընդ Կոստանդիանոս մեծի ի գահ կայսերացն, շողայր նշան խաչին ի վերայ դրօշահռոմէական լեգէոնացն. հարկ էր եւ թագաւորին Հայոց դաշնաւորի Հռոմայեցւոցն նորոգել կամ կռել դաշինս ընդ նորոց գլխաւորաց պետութեանն (Կոստանդիանոս եւ Լիկիանոս), մանաւանդ զի յառաջ իսկ քան զսակաւ մի ստիպեալ էր տալ մարտ պատերազմի ընդդէմ հռոմէական զօրուն առաջնորդելոյ ի Մաքսիմինեայ Դայիայ: Ել Գրիգոր ընդ Արիստակեայ եւ ընդ Աղեքսանդրու ի Հռոմ կոյս, որպէս եւ Տրդատ ընդ չորից բդեշխացն եւ ընդ այլոց մեծամեծաց՝ հանդերձ 70,000 զօրու (այսպէսն աւելի քան զչափն է թիւս առ մատենագրին): Կռէին դաշինք ի միջի՝ թագաւորին ընդ կայսերն, եւ աթոռականն առաքելոյն Հայոց ընդունէր պատիւ խոստովանողական եւ տայր ընծայութիւն հպատակութեան յաջորդի գլխոյն առաքելոց եւ դառնայր ի նմանէ մեծապարգեւ հանդերձ սպասուք, զետեղել զհռոմէական նուէրսն յեկեղեցիս Հայաստան աշխարհի[2]:

Յետ ամաց ինչ կոչէր Գրիգոր յառաջին տիեզերական ժողովն ի Նիկիա: Առաքեցաւ փոխանակ նորա Արիստակէս երեւեցուցանել զնուիրապետութիւնն Հայաստանի ի պարու անդ եպիսկոպո-

1 Ագաթ. ԷԼ 631—639:

2 Ագաթ. ԷԼ 646—653:

Digitized by Google

տաց կաթուղիկէ եկեղեցւոյ (325)։ Գրիգոր՝ որ յետ դարձին Արիստակիսայ չյաճախէր երեւել ումեք, վախճանէր ի միայնութեան իւրում ի Մանեայ այրսն, եւ ի հովուաց ասէն թաղեալ։ Գլուխ նորա՝ զոր առ Կոստանդիանու Կոպրոնիմոսի փոխեցին կուսանք ամանք Իտալացիք ի Նէապոլիս, պատուի ցայսօր անդէն ի վանս կուսանաց յաջորդաց նոցա[1]։ Կատարէր Հայաստան զյիշատակ նորա անդստին ի կիսոյ չորրորդ դարու. յարեւմուտս Արդոյ քաղաք եւ Նէապոլիս սկսաւ կանուխ կատարել զտօն նորա (30 Սեպտ.) Գրիգոր ԺԶ. քահանայապետ Հռոմայ (1837, Սեպտ. 1) եա համառօտագիր՝ յորում հրամայի զյիշատակ նորա առնուլ ի տօնացոյցն հռոմէական եւ տօնել առ ըստ ամէ ի 1. Հոկտ.։

Իսկ Թագաւորն բարեպաշտօն զմնացուած ամաց խաղաղութեանն յաջողութիւն բարոյից աշխարհին հանէր, մերթ հաւանեցուցանելով եւ մերթ սաստելով՝ որպէս զնախարարսն նոյնպէս եւ զռամիկն բազմութիւնն՝ լինել արդարեւ Քրիստոսի եւ արդեամբք գործոց հեզութեան եւ զգաստութեան զհաւատսն ցուցանել։ Սակայն սոցա խստասրտութիւնն եւ նոցա ամբարհաւաճութիւն, մանաւանդ կանանց եւ հարճիցն խոտորեցուցանելով զսիրտ նոցա՝ ստապատիկ սրտառուչ զԹագաւորն կացուցանէր, մինչեւ թողուլ նմա այնուհետեւ զթագն եւ ձեռեալ ի միայնութիւն. կոչեցաւ միւսանգամ յաթոռն, այլ իբրեւ չառ յանձն՝ դեղեցաւ, որպէս պատմի[2]։ Այս կատարած էր Տրդատայ, որ քրիստոնէագոյն էր քան զԿոստանդիանոս եւ խոնարհ իբրեւ զԹէոդոս, մեծ եւ վաստակաւոր յեկեղեցւոջ Աստուծոյ եւ ի թագաւորութեան իւրում, տիպ եւ օրինակ նմանութեան պայազատաց իւրոց։ Վասն այնորիկ յիրաւի իսկ անդէն ի չորրորդ դարու տարեկան տօնիւ պատուէր զյիշատակ նորա աշխարհն իբրեւ զիւրոյ զյառաջընծայ թագաւորին[3], եւ զմարմնաւոր քաջութիւն նորա զարմանք մարդկանն հռչակեցուցեալ անմահացուցին ի կարգս բանից առակաց թէ Իբրեւ զուէգն Տրդատ՝ որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց, եւ ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւրում զյորձանս ծովուց[4]։

## 117

Ուղղադաւանութիւն վարդապետութեանն՝ զոր յանուն Ս. Գրիգորի ունիմք, այսպիսի ինչ է։

Մի է Աստուած, այլ այնպէս՝ զի իցէ եւ երեք ի միութեան անդ, իբրեւ մի "երեքանձնական բնութիւն,, կամ "միաբուն երեքանձնականութիւն,,։ Այս բազմաւորութիւն ոչ է ի նմա (եկամուտ) յաւելուածով իրիք՝ որ արտաքոյ քան զէութիւն նորա իցէ. այլ ինքն իսկ էու-

1 Պարոնիոս ասէ տանել զայս ի հին Թղթոց եկեղեցւոյն Նէապոլեայ։
2 Խոր. Բ. Գլ. ՂԲ։
3 Բուզ. Դպր. Գ. Գլ. ԺԳ։
4 Ագաթ. էջ 99։

Digitized by Google

*թիւնն յառաջ շարժեալ հասանէ յերրորդութիւն, այս ինքն՝ ի բա- զմանդակութիւն երից անձանց[1], եւ յայն սակս կոչ կոչեն (եղանն) ի սա- սա։ Ցանծինն, յանսկիզբն՝ այլ ի ծնող Հօրէ եղանէ ծնեալն (ծնըն- դեամբ պատճառաւոր = սկզբնաւորն) Որդի։ Որպէս Որդի՝ ի Հօրէ անտի իւրմէ է Որդի, նոյնպէս եւ Հայր՝ Որդւովն է Հայր. եւ այնու բովան- դակեալ կատարի շարժումն յաւիտենական՝ զի յերկոցունց անտի (ի Հօրէ եւ յՈրդւոյ) եղանէ (բխէ) Հոգին սուրբ՝ որ ոչ միայն ի նոցունց է, այլ եւ ի նոսին, քանզի որպէս առ սոցանց նոցա չէ, նոյնպէս եւ ոչ նոքա առանց սորա են[2]։*

*Որ ինչ արտաքոյ Աստուծոյ է՝ արարածք, յերրորդական Աստուծոյ՝ յարարիչ Հօրէ, յարարչակից Որդւոյ եւ ի համագործ Հոգւոյն, ազատ- օրէն, առ սիրոյ ի չգոյէ ստեղծան։ Մարդն որ յետ արարչութեան աներեւութից (հրեշտակաց ստեղծանելոց ի փառաւորութիւն արարչին՝ ինքեանցք) եւ երեւելեացն (անբանաւորաց ստեղծանելոց ի փառաւորու- թիւն արարչին՝ այլովք) ստեղծաւ խառնուրդ ի հոգւոյ եւ ի մարմնոյ՝ կրկին պաշտամամբք՝ լինելոյ նմանող առաջնոցն եւ երեւեցուցիչ փա- ռաւորութեան վերջնոցն առ հասարակաց արարիչ անդր, է պատկեր Աստուծոյ, իբր ոչ եթէ ըստ աստուածեղէն ինչ ինքնակաց էութեանն՝ որում չկարէ նմանել արարածն սկզբնաւոր, այլ զի առ անբան, անա- զատ եւ անաստուածածանօթ արարածովքն՝ ունի բանաւորութիւն եւ ա- զատութիւն, աստուածածանօթութիւն եւ իշխանութիւն ի վերայ նոցա։ Եւ մարդն ի ձեռաց արարչին անմեղ, ի վերայ բնութեանն՝ զարդարեալ յաւելուածով պարգեւաց ըստ ծանօթութեանն եւ ըստ կամաց եւ ըստ զգայութեան, սատի՝ ի միաբանութեան ընդ նիւթական բնութեան եւ ընդ իւրում մարմնոյ (այս ինքն՝ անվիշտ եւ անմահ), եւ անտի՝ յըն- տանեգոյն հաղորդութեան ընդ Աստուծոյ, ունելով վախճան՝ հաստա- տելով ի նմին դաշնակաւոր վիճակի առաւել եւս մերձաւորագոյնս հա- ղորդելոյ Աստուծոյ՝ թէ ինքնին մարդն պահեսցէ կամ ուրանասցէ զանձն մնալ ի գթին՝ յորում յարարչէ անտի եդաւ[3]։ Այլ ստուգաբանութեամբն մերկացաւ նա եւ զաւակ նորա ընդ նմա ի պարգեւաց անտի, եւ ան- կաւ ընդ անիծիւք (այս ինքն՝ եղեւ ընդ մեղօք եւ յանցաւոր առ Աս- տուածութիւն անդր, ընդ վշտօք, հիւանդութեամբ եւ մահու ըստ խա- նարհագոյն կենացն)․ քանզի ապստամբեաց ի նմանէ բնութիւնն անբան, ապստամբեցաւ մարմինն, ըստ օրինի հակառակութեան ակարացաւ հոգին՝ ցանկութեանն հզօրացեալ։ Եւ բնութիւնն եւս շնչաւոր-նիւթական որ վասն մարդոյն էր, ընդ մարդոյն դարձաւ ի պայման վատթարագոյն։ Նա աւանիկ եւ մեւս եւս մասն արարածոց հրեշտակք՝ պահապանք մարդ- կան եւ պատգամաւորք առ նոսա (որք ընդ գիւտ միոյ եւեթ մեղաւորի ուրախ լինին) եղեն ի տրտմութեան ընդ անկումն համօրէն մարդկեղէն ազգի[4]։*

*Այնուհետեւ ի ծածուկ խորհրդեանն Աստուծոյ սահմանեալ էր փրկու- թիւն մարդոյն. յամէր՝ զի պատրաստագոյն լինիցին մարդիկ յընդունե- լութիւնն[5]։ Առ գործ փրկութեան մարդոյն՝ պիտոյ էր ի հարկէ Աս- տուած[6], որպէս պիտոյ էր եւ մարդ[7]։ Որդւոյ անկ էր այն առաւելա- գոյն. զի որով ստեղծն՝ նովին հարկ էր փրկել Հօր՝ որոյ աջ իւր կամ*

1 Ὑποστάσεων.

2 Յաճախապատում, Գլ. Ա. Բ. Ե. Զ։ Ագաթ. էջ 191. 266։

3 Ագաթ. էջ 192—208. 221։

4 Յաճախ. էջ 183. 31—32. 28. 48—49. 147. 168. Ագաթ. էջ 61—63. 216. 258—259։

5 Ագաթ. էջ 260։

6 Ագաթ. էջ 436։

7 Ագաթ. էջ 286։

Digitized by Google

նաւին թեւլադրութիւն մասցն խղճի (պատկերն Աստուծոյ)[1], եւ ոչ եղծեալ անձնիշխանութիւնն՝ որով ունիմք ազատութիւն ատնելոյ զճանապարհս մեր բարիս կամ չարս[2], եւ յայն սակս տուեալ են նմին դաստիարակք երկու՝ աւետիք եւ սպառնալիք[3]։ Հաւատք եւ գործք բարութեան են ի գործարանաւոր հաղորդութեան ընդ մեծեանս[4]։ Կարէ առնուլ աճումն արդարութիւնն[5]։ Մանր խոստովանութիւն խղճի մաքոց հանդերձ զղջմամբ իբրեւ երկրորդ մկրտութիւն է[6]։ Գոյ ընտրութիւն մեղաց մեծաց եւ մանունց[7], դարձեալ այլ են մեղք եւ այլ պարտիք մեղաց, որոց եւ սաստ մարթի ապաշխարութեամբ լինել հատուցումն եւ անդ[8]։ Հրաժարեալքն յաշխարհէ ի բարեգործութեանց կենդանեացն ընդունին նպաստաւորութիւն[9], որպէս եւ կենդանիքն գտանեն օգնականութիւն ի վասատակաց անտի սրբոցն՝ "որ բարեխօսեն Քրիստոսի առ Հայր"[10]։ Բարի է ամուսնութիւն եւ սուրբ, այլ նախապատիւ կուսութիւն[11]։ Առանձինն իմն խորհուրդ է ձեռնադրութիւնն (կարգ)[12]։ Հաղորդութիւն կենարար մարմնոյն եւ արեանն Քրիստոսի (աշխարհին եւ սարսափելի խորհրդոյն) պատրաստէ զմարմինն մահկանացու ի յարութիւն անմահութեան[13]։

## 118

Ընծայեցաւ պատմութիւն դարձի Հայոց աշխարհին ի քրիստոնէութիւն՝ որպէս ինչ պատմէ մատենագիրն Ագաթանգեղոս (որ թարգմանի՝ Հրեշտակ կամ Աւետարանիչ բարութեան)։ Փ. Բիւզանդացի ամենեւին համեմատ նմին ունի զամենայն։ Մ. Խորենացի զերկոսին արկանէ ի կիր անփոփոխ (գրեթէ) ըստ ամենայն մասանց. այլք կրսերագոյնք ժամանակաւ կրկնեն եւեթ զնոցայն. ուստի ամենայն իսկ պատասխանատուութիւն վասն պատմելոցն ճշմարտութեան՝ դառնայ անկանի ի վերայ Ագաթանգեղեան մատենին։

Նորդարեւ եթէ ըստ սկզբանց եւրոպական քննադատութեանն կամիցիմք վարել, Ա. Չմարթի զայն մատեան՝ գրութիւն այնց ժամանակաց համարել՝ յորս գրեալ ասէ զանձնէ ինքն մատեանն, այլ գործ վերջին կիսոյ՝ դարուն չորրորդի, Բ. Ըստ նիւթոյն երեւի 1. սակաւ ինչ անտեղեկութիւն ոչ միայն քաղաքային հանգամանաց ժամանակին՝ զորմէ գրէ մատենագիրն, այլ եւ եկեղեցական հնախօսութեան, 2. աւելաբանութիւն բազում ուրեք, եւ 3. ցանկութիւն սաստիկ՝ պատմելոյ նորանշան զարմանալիս, մինչեւ թուել իմն թէ ըստ Դանիելի գրոցն ձեւեալ իցէ պատմութիւնն. որպիսի ինչ՝ կալ զգաստն Հռիփսիմեայ ընդ թագաւորին, քանալ զդուռն սենեկին եւ վազել արտաքս՝ յիշեցուցանեն զպատերազմ Շուշանայ ընդ ծերոցն լկտեաց, եւ զդուռնն պարտիզին եւ զայլն ամենայն. փոխել թագաւորին Հայոց ի խոզակերպ կերպարանս եւ անասնական բնակութիւնն՝ ակնարկէ զանասնակերպն լինել թագաւորին Բաբելացւոց եւ զբնակել յանտառս. արկանել Գրիգորի ի վիրապ մահապարտաց, կալ անվնաս, արկանել կնոջ միոյ ազդմամբ հրեշտակի

1 Յաճախապ. էջ 75։
2 Յաճախապ. էջ 64։
3 Յաճախապ. էջ 166։
4 Յաճախապ. էջ 56. "Որպէս անդամք կանգնի հասակ, այսպէս բարի գործովք կանգնին հաւատք"։
5 Յաճախապ. էջ 16. 60. 103։
6 Յաճախապ. էջ 177. 13։
7 Յաճախապ. էջ 180։
8 Յաճախապ. էջ 140։
9 Յաճախապ. էջ 137. 141—142։
10 Յաճախապ. էջ 137—138։
11 Յաճախապ. էջ 71։
12 Յաճախապ. էջ 123։
13 Յաճախապ. էջ 138։

Digitized by Google

Նկատառակ մի օր ըստ օրէ ի վերայոյն, եղանել այդպէս՝ այս ամենայն յիշեցուցանէ զարկանել Դանիելի ի գուբն առիւծուց, ղեկերեւլ Ամբակումայ կերակուր օգնականութեամբ հրեշտակին, զանալն անարատ եւ զելանել առաւօտս յաղթող։

Արդարեւ եւ խիստ եւս այն բանադատութիւն իցէ՝ որ ցայս վայր յանդգնիցի յառաջել, սակայն ասոր յառաջ չիշխէ խաղալ, այս ինքն՝ ընդ երկրորդական ինչ հանգամանաց՝ դէական մասունս պատմութեան դարձին Հայոց ընչել։

Նմին իրի՝ մեք առանց կրկնելոյ մանր զդատաճառս՝ բանադատութեանն այնորիկ (որ չէ իսկ անկ տեղւոյս), ընդ երկուց իմն կանոնաց՝ զճշմարտութիւն գոնեայ էական մասանց պատմութեանն այնորիկ համեմատեմք, կշռելով՝ Ա. ընդ արտաքին վկայութեան իրիք՝ որ առանց ունելոյ հաղորդութիւն ընդ Ագաթանգեղեան գրոց՝ զնոյն դէպս պատմիցէ կամ ակնարկիցէ յայտնապէս. Բ. ընդ համազգային կարծեաց՝ զոր մարթ եւ պարտ իցէ ըստ բաւականութեան ազատ յառաջեցուցեմնէ գրոցս համարել։

1. Ըստ ժամանակի դարձին Հայոց ի քրիստոնէութիւն, աստի՝ ընթացք եկեղեցական հանգամանաց Հայոց աշխարհին եւ անտի՝ արտաքնոցն պատմագրաց ակնարկութիւնք միաբանեն ընդ Ագաթանգեղեայ ոչ ինչ կարի անդր կամ այսր քան զսկիզբն չորրորդ դարու զայն դնել։ Սոզոմենոս սակաւիկ ինչ յառաջ քան զԿոստանդիանոս առնէ դիպել, եւ Եւսեբիոս՝ յամի 311 վաղ համարի զերսն վճարել։ Թէպէտ եւ առաւել ազատ ի դժուարութեանց ինչ լինիցիմք՝ եթէ ըստ սովորական օրինակին՝ դնիցեմք զայն դարձ ճշդիւ յամի 301 կամ 302՝ առնելով պինդ զհաշիւ Մ. Խորենացւոյ (Գիրք Բ. Գլ. ՁԲ եւ ՂԱ), սակայն այն ինձ յայտ է՝ թէ Աթանագինէս եպիսկոպոս Սեբաստեայ[1]՝ զորոյ զնշխարս ոսկերացն ած Ս. Գրիգոր ընդ իւր ի Հայաստան՝ ի դառնալ իւրում ձեռնադրեալ ի Կեսարիայ, պսակեցաւ հրով ի հալածման Դիոկղետիանու, որում սկիզբն եղեւ յամի 303, փետր. 23, եւ տեւեաց սաստկութիւնն ամս երկուս։ Եթէ յայսց դիպաց (առ Ագաթանգեղեայ) չկամիցիմք հրաժարել՝ հարկ է հակառակ սովորական համարոյն՝ դնել զժամանակ դարձին ընդ մէջ ամացն 305—310։

2. Ըստ անձանցն՝ գրէ Սոզոմենոս թէ նախ ի թագաւորէ անտի Հայոց սկիզբն առ դարձն։ Եւսեբիոս թագաւորաւ, զօրօք եւ ժողովրդեամբ քրիստոնեայս զՀայս ճանաչէ, եւ այն՝ ջերմն կարի յաստուածպաշտութիւն։ Սոզոմենոս եւ զանուն եւս զթագաւորին տայ, առ որով Հայքն դարձան, կոչելով Տրդատէս։ Յարտաքնոց անտի ի հնոց Ատտիկոս հայրապետ Կոստանդնուպոլսեայ ի սկզբան հինգերորդ դարու յիշէ զԳրիգորէ իբրեւ զծանօթէ ումեք, ի թղթին առ Ս. Սահակ։ Այո՝ մարթ իցէ ումեք թերեւս ունել պատճառս տարակուսելոյ ընդ ճշդութիւն թղթոյն այնորիկ, այլ ընդ գոյութիւն այսր առաքելոյ Հայոց իցէ ումեք հնար եւ երկմտել իսկ։ Անդէն իսկ եւ իսկ ի համօրէն ընթացս չորրորդ դարու քաղաքային կեանք, ամենայն եկեղեցական կարգք եւ յօրինուածք ի Հայոց աշխարհին, նուիրապետութիւնն, տօնք համաշխարհականք, տաճարք եւ գերեզմանք, ամենայն ինչ զնմանէ եւ զորոց ընդ նմա յուշ առնեն։ Չորք եպիսկոպոսապետք նստին մի ըստ միոջէ (ցամն իբրեւ 373) ի զաւակէ Գրիգորի՝ յառաջ մատուցանելով զնոսա ազգին

1 Զոր Ս. Բարսեղ համառօտիւ յիշէ. բովան վկայաբանութիւնն Աթանագինեայ՝ զԱթենոգինեայ՝ զնոյն մանր՝ ունի ճառ. հայերէն։

Digitized by Google

Գրիգոր զնշխարս Աթենոգինեայ ի Սեբաստացւոց քաղաքէն։ Պաղաձեն ժամանակացն համեմատութիւնք. զսկիզբն աթոռակալութեանն Ղեւոնդեայ ոչ գիտեմք, սակայն նշմարեմք զնա վաղ ընդ եպիսկոպոսունս ժողովոյն Անկիւրայ յամի 314 կամ քաղ՝ 313։ Կանոնք եւ գործական իմն վկայութիւն պատմութեան չորրորդ դարու զնոյն աղերս եւ զկապ եկեղեցւոյն Հայոց ընդ եկեղեցւոյն Կեսարիոյ արդարանաք ցուցանէ. յաջորդք Գրիգորի անտի առնուն ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան կամ հաստատութիւն մինչեւ ցամն իբրեւ 373, եւ սոյն ուրեմն զանց փոխելն առնելով՝ զգօրի հակառակութիւն ի միջի[1]։ Մի ի կարի հնագոյն տօնից եկեղեցւոյն Հայոց է տօն Աթենոգինեայ՝ զորոյ անուն զատանեմք կոչեցեալ ի վերայ Թոռնորդւոյն Գրիգորի, որդւոյ Յուսկանն։

5. Վասն երկրորդ ճանապարհորդութեան նորա, այս ինքն՝ ի Հռոմ եկեալ ընդ Տրդատայ, չիք ինչ ուստեք հակառակութիւն. կարգ ժամանակացն՝ որպէս ինչ Ագաթանգեղեան մատեանն ընծայէ, քաջ իսկ պատշաճէ ընթացից ժամանակագրութեան. զի մինչեւ ցամն 324՝ հարկ էր անցանել յարեւմուտս վասն զկայսր Կոստանդիանոս գտանելոյ։ Յայտ ի Թուականաց անտի օրինացն Կոստանդիանու է՝ թէ էր նա ի Հռոմ առ Սեղբեստրոսիւ՝ յամի 315, 318 եւ 319 (յետ ընդմիջելոյ տարւոյն) եւ յայլ եւս ինչ ամս։ Սակայն թերեւս առաւել հաւանութեան է՝ թէ յամի անդ 312 այն կատարեցաւ։ Կոստանդիանոս յաղթեալ Մաքսենտեայ յամի 311 (ըստ ճշգրտագոյն հաշուի) անդէն ի Հռոմէ հանէ հրովարտակ ազատութեան քրիստոնէից, եւ առաքէ եւս առ Մաքսիմինոս՝ որ սաստկացաւ իսկ (յամի 311 կամ 312) դադարեցուցանել զհալածումն քրիստոնէիցն, սոյն եւ զպատերազմն զոր ընդ Հայոց սոյն վասն ստիպելոյ փոխել ի պաշտօն կռոց՝ անդստին յամէ 311, առնելով թշնամիս զՀայս զդաշնաւորս Հռոմէական պետութեանն. այսպէս ոչ միայն եղեւ յայնմ ամի (312) պատրաստ՝ այլ եւ հարկ իսկ Հայոց թագաւորին յետ թշնամութեան գործով զվաղուց դաշինսն եղծանելոյ՝ երթալ նորոգել զնոյն ընդ նորոյ տէրանց Հռոմէական պետութեանն (ընդ հաւատակիցն Կոստանդիանու եւ ընդ Լիկինիանու) որք մինչեւ ցկատարած նորին ամի ի Հռոմ էին։ Ճշդիւ ի նմին ամի, պատմէ Եւսեբիոս՝ օտարականաց բազմաց գալ առ Կոստանդիանոս ի Հռոմ եւ լինել ի նմանէ մեծապարգեւ[2]։ Այլ յամի անդ յայտնի Սեղբեստրոս չէ ի միջի, այլ թուի թէ զայն իսկ պահանջէ Ագաթանգեղոս. թող զայլ ինչ օրինակս՝ ընտիր օրինակն Փարիզեան գրեալ յամի 1204՝ ունի ոչ Սեղբեստրոս, այլ Եւսեբիոս, որպէս եւ օրինակն հին ուստի յոյն քաղուածոյ թարգմանութիւնն առ Մետափրաստեայ յեղեալ է, այսպէս եւ օրինակն ընտիր ի մերում մատենադարանի[3]։ Այն դաշինք Տրդատայ ընդ կայսեր՝ առանց տարակուսանաց է. թուղթ մի Վրթանայ առ կայսր Կոստանդոս նորին որդի (առ

1 Գեղասիոս Կիւզիկեցի պատմագիր ժողովոյն Նիկիոյ (Գիրք Բ. Գլ. ԻԷ) "Ղեոնդիոս, ասէ, Կեսարիոյ Գամրաց, զարդ եկեղեցւոյ Աստուծոյ, ունէր իշխանութիւն եկեղեցեացն Գամրաց, Գաղատիոյ, Պոնտոսի, Պափղագոնիոյ, Պոլեմոնեանն Պոնտոսի, Հայոց Մեծաց եւ Փոքուն,,։

2 Եւսեբ. Վարք Կոստանդիանու, Գիրք Ա. Գլ. ԽԳ։

3 Ի Գրիգորէ կաթուղիկոսէ Տղայն՝ որ ընդ ժամանակս գրչութեան Փարիզեան օրինակին էր, ունիմք յիշեալ զանուն Սեղբեստրոսի ի պատմութեան սոյն, որ կարէր արդեւք յանձնաւորական թղթոյ անտի գաղափար զնոյն առնուլ։ Աւաղ՝ զի ծածկէ յանկարկել անդ զայն պատմութիւն՝ չյիշէ զանուն անուն եպիսկոպոսապետին Հռոմայ։ — Գիտեմք՝ թէ յամէ 311 մինչեւ ցամն 314 երեք քահանայապետք զփոխանս յաջորդեցին, այս ինքն՝ Եւսեբիոս, Մեղքիադէս եւ Սեղբեստրոս, այլ սկիզբն եւ վախճան աթոռակալութեան երկուցն առաջնոց եւ սկիզբն աթոռակալութեան վերջնոյն ընդ յողդողդ իմն ժամանակագրութեամբ է եւ ոչ հաստատուն ինչ պատմութիւն վասն Եւսեբեայ գոյ։

Digitized by Google

Մ. Խորենացւոյ) յիշեցուցանէ զպաշտօնն զայնոսիկ, եւ Թուղթ եպիսկոպոսացն Հայոց զոր Հրեշտակութիւնն Հայոց տարաւ ի քաղաքն կայսերական (յամի 450) կրկնէ զնոյն յիշատակ, եւ պատմագիր ոք ժամանակայն իբրեւ ընդիշէ յաւելու՝ թէ գտաւ ի դիւանի Թուղթ դաշանցն Տրդատայ ընդ Կոստանդիանու[1]: Նոյն գումար եպիսկոպոսաց գրեն եւ տղերս ինչ Հաղորդութեան անդէն ի սկզբան դարձին կամ Հաւատոցն Հայոց ընդ “սրբոյ եպիսկոպոսապետին Հռոմայ„[2]:

6. Յիշատակ երրորդ ճանապարհորդութեանն, այս ինքն՝ գնալոյ Արիստակիսայ ի ժողովն Նիկիական, է գեղեցիկ ինչ կէտ՝ յորում մատեան Ագաթանգեղեան ցուցանէ զՀանդէս ճշմարտութեան էական մասանց պատմութեան իւրոյ ի վերջ կոյս գրոցն: Քանզի յոյն, Հռոմայեցի եւ Հայ օրինակք կարգի անուանց եպիսկոպոսաց ժողովոյն Նիկիայ ունին յանուանէ եւ “զԱրիստակէս ի Հայոց Մեծաց„: Միւս եւս եպիսկոպոս ի Հայոց ի կարգի անդ անուանցն նշմարի՝ “Արստակիոս Ծոփաց„, որ է թերեւս ինքն Արստակէս, մի ի յառաջասուն եպիսկոպոսացն Գրիգորի զորոց զանուանսն յիշէ մի ըստ միոջէ մատեան պատմութեան դարձին Հայոց:

7. Ամն դարձին Վրաց (326) Ռուփինոս[3] լուեալ ի Բակուրայ իշխանէ նոցա[4] պատմէ այսպէս: Կին մի քրիստոնեայ աղախին ի Թագաւորական քաղաքին Վրաց (ի Մծխիթայ) զգաստ եւ մշտամբեր վարուքն զարմացուցանէ զքաղաքն, բժշկէ զարքայորդին մանուկ եւ զդշխոյն զիւխովին: Նա յանձն առեալ զքրիստոնէութիւն ջանայ Հաւանեցուցանել եւ զայր իւր ի նոյն: Սակայն յերկարէ զդարձ իւր Թագաւորն՝ մինչեւ յորս ուրեք ի մէջ անտառաց պատէ զնա խաւար եւ մառախուղ եւ ազատի կոչմամբ Աստուծոյն քրիստոնէից: Այնուհետեւ Թագաւորն Հանդերձ դշխոյիւն Հաւանեցուցանեն զազգն ի քրիստոնէութիւն. ըստ առաջնորդութեան կնոջն շինի եկեղեցի, յորում սիւն մի՝ զոր կանգնել ի վերայ խարսխին ոչ կարէին, աղօթիւք կնոջն իւրովի կանգնեցաւ. Առաքի Հրեշտակութիւն առ կայսր Կոստանդիանոս խնդրել քահանայս եւ այնպէս կատարի դարձ նոցա: Ըստ Խորենացւոյն կինն այն ծառայ՝ է Նունէ եւ Թագաւորն Միհրան. Նման իմն զքանչելիս պատմէին ոչ զանցանեն այլ զխաչէ իմեքէ՝ որ ցայժմ ի պատուի է առ Վրաց, եւ թէ ի Հայոց խնդրեցին նոքա Հովիւս, զոր աղերս եկեղեցւոյն Վրաց ընդ Հայոց Հաստատէ:

— Ձգոն իսկ բաւական գինք փոքր այլ ստոյգ պատմութեանն եպիսկոպոսին Կեսարացւոց վասն Հայոց պատերազմին յաղագս Հաւատոց ընդ կայսերն Մաքսիմինեայ Դայայ (յամի 311)[5]: (Ի վերայ այլոց ինչ նեղութեանց՝ ասէ) “պատերազմ եւս ի բռնաւորէ անտի ընդ Հայոց գրգռեցաւ, ընդ արս՝ որ ի սկզբանէ (ἐξ ἀρχαίου) բարեկամք եւ նիզակակիցք Հռոմէական ժողովրդեան էին: Բայց քանզի եւ նոքա քրիստոնեայք էին եւ ջերմագոյնք ի բարեպաշտութիւնն որ առ աստուածութիւնն է (τὴν εἰς τὸ θεῖον εὐσέβειαν διὰ σπουδῆς ποιουμένους) ջանացաւ աստուածատեացն բռնաւոր բռնութեամբ ածել զնոսա ի պաշտօն կռոցն եւ դիւաց եւ յայն սակս՝ զբարեկամսն յաւելիս, զդաշնաւորսն ի թշնամիս դարձոյց„: Ապա զելից պատերազմին ակնարկեալ՝ յաւելու “ինքն (Մաքսիմինոս) ի պատերազմի անդ ընդ Հայոց Հանդերձ զօրու իւրով գունակ գունակ նեղեալ վտանգեցաւ չարաչար (κατεπονεῖτο)„[6]:

1 Զայս Թուղթ դաշանց՝ չէ պարտ ընդ անվաւերական Համառօտ դրոյ դաշանցն՝ որ այժմ կայ ի մէջ, շփոթել:
2 Եղիշէ, էջ 123—124:
3 Ռուփ. Եկ. պատմ. Ա. 10:
4 Զարմ. առ մերայոյն էջ 378:
5 Եւսեբ. Եկ. պատմ. Գիրք Թ. Գլ. Ը:
6 Վալուա գաղղիացի թարգմանէ. Varias clades atque aerumnas pertulit.

Digitized by Google

## 119

Գրեթէ ամենեքին իսկ ի պայազատացն Տրդատայ, ո՛չ զքաջութիւն նորա ունէին եւ ո՛չ զլաւութիւն, մինչեւ պատերազմունքն հանապազորդք առանց մօտաւորութեան թագաւորին, զբաղումն ի նոցանէ տակաւին չզատէր հեթանոսական բազմակնութիւնն, եւ էին խաղալիկք դասու ներքինեացն որ սովորական ժամանակ էր արքունեացն արեւելից: Յայն սակս եւ ամենայն հրամանն արքունեացն չունէր զօրութիւն բաւական ի վերայ նախարարացն անձնասիրաց՝ որք վաղ յինքնագլուխ իմն իշխանութիւն երանէին՝ իւրաքանչիւր յիւր ամուրն ապաստան, երբեմն տալով ընդ միմեանս մարտ պատերազմի եւ կամ քսութեամբ պատրաստելով միմեանց կործանումն, եւ երբեմն միաբանեալ ընդ միմեանս ընդդէմ թագաւորին, նա ամենեւին ի պատգամս եւս բազում անգամ կամ ընդ Յունաց եւ կամ ընդ Պարսից անկանէին՝ կալ դաշինս կամ ընդունել խոստմունս: Արդ՝ք յայտ իմն է եթէ ի վախճանել իւրաքանչիւր թագաւորի կրկնէր վտանգ բարձման կամ քայքայման թագաւորութեանն, այնու զի ժառանգական պայազատութիւն առհմին Արշակունեաց կայր կախեալ եւ յընտրողութենէ նախարարացն: Մի՛ միայն զօրութիւն կենդրոնացուցիչ եւ նեցուկ աթոռոյ թագաւորութեանն դրդեալ՝ պաշտօնեայք քրիստոնէութեանն էին՝ ունելով աջակից զտոհմն Մամիկոնէից որ զգործ զօրավարութեան աշխարհին գրեթէ որդի ի հօրէ առեալք՝ երախտաւորք մեծամեծք թագաւորութեանն եւ եկեղեցւոյ եղեն: Գրեթէ միշտ իսկ նոյն հաստատամիտ դէպք կրկնին առ իւրաքանչիւր թագաւորօք յայլեւայլ կերպարանս:

Ի Տրդատայ հետէ փոփոխեցաւ իմն աղերս Հայոց աշխարհին ընդ դրացի պետութեանցն: Քանզի ուր ցայնվայր թագաւորք Հայոց ըստ քաղաքականութեան մերթ յարեւելս յենուին եւ մերթ յարեւմուտս, բայց առաւել յօժարագոյնք եւ միտագոյնք յարեւելս էին՝ իբրեւ ի մերձաւորագոյն ազգակիցսն ի Պարթեւս, եւ գարշէին խորշէին յարեւմտից իբրեւ յօտարաց, այնուհետեւ թշնամութեամբ իմն ընդ արեւելից էին միշտ՝ իբրեւ ընդ յափշտակողաց աթոռոյ ազգակից հարստութեանն Արշակունեաց, իբրեւ ընդ պղծակրօնից եւ թշնամեաց քրիստոնէութեան, եւ նմին հակառակ կապեալ ընդ Հռոմայեցւոց պետութեանն ամուսնութեամբ մերձաւորաց կայսերական տանն, մշտնջենաւորն դաշամբք եւ շահու կրօնիցն քրիստոնէութեան. նա եւ կըրթութիւնն եւս եւ հրահանգք եւ արուեստք յայն կողմն զնոսա յօժարեցուցանէին: Սակայն եւ այնպէս ըստ ներքին կենաց՝ միշտ իսկ նախարարքն եւ մեծամեծք եւ ինքն իսկ թագաւորն բարուքն եւ սովորութեամբք ընտանեգոյնք ի Պարսիկսն էին եւ յաճա-



Digitized by Google

խաղոյն էր նոցա ընդ այցա տաւրեւաւ։ Նմին իրի ոչ երբէք հաստատուն ինչ դեսպանական վիճակ յօրինեցաւ վասն Հայոց աշխարհին ի մէջ Հոռոմոց եւ Պարսից պետութեանց, թէպէտ եւ բազում անգամ թուէին ընդ միմեանս միաբանեալ առ ժամանակ մի։ Գրեթէ հանապազորդ իմն պատերազմ էր Պարսից ընդ Հայոց թագաւորաց եւ տակաւ զօրացաւ կալաւ ազդեցութիւն նոցա քան զՀոռոմայեցւոցն, մինչեւ նախ բաժանել եւ ապա բառնալ իսկ ամենեւին ի միջոյ զթագաւորութիւնն Հայոց եւ առնել ընդ նահանգաւ զերկիրն։

## 120

Ոչ ուրեք այնպէս զմի օրինակ իմն միաձեւ յամենայն ժամանակս պատմութիւնն ընթացաւ որպէս ի Պարսկաստանի։ Քանզի եւ առ Սասանեանսն մեծաւ մասամբ կրկնեցան իմն անցք առաջնոցն հարստութեանց, սակայն ոչ այնպիսի հզօր թագաւորք յառաջին հարստութիւնս անդ երեւեցան, որպէս ի սասանականսն։ Ի միապետական առաջնորդութեան անդ սոցա, քանզի միայն կամք արքայից արքայի օրէնք էին, ներքին խաղաղութիւն տէրութեանն մանաւանդ զբարոյից անձին թագաւորին կայր կախեալ։ Տալ ետ Արտաշիր Ա. նոր իմն զօրութիւն տէրութեանն զոր կանգնեաց, եւ բազումք իսկ ի պայազատաց նորա պայծառացան աշխարհակալութեամբ, բայց սակայն յայլոց բազմաց վերայ՝ երեւէին չարիք միապետականք սովորականք արեւելեան արքունեացն, մեղկութիւն եւ բարուցն ապականութիւն, հզօրագոյն ազդեցութիւն կանանցն, անկայունութիւն կարգի պայազատութեան եւ ապստամբութիւնք նախարարացն։ Յայն սակս սակաւաժամանակեան իմն էին բազում անգամ ժամանակք թագաւորութեան թագաւորացն, եւ յեղափոխք մեծաւ բռնութեամբ լինէին. իսկ ի վերջին ժամանակսն կանայք եւս ժառանգեցին կապել թագ։

Մոգք եւ Մոգպետք՝ որոց ամենեցուն գլուխ էր մեծ մոգպետն կամ Մովպետան Մովպետ, ունէին ազդեցութիւն մեծ ի քաղաքային գործս, քանզի ըստ նոցա խորհրդոյն եւ կանխագիտութեան ամենայն ինչ վճարէր։ Ջանային հնարէին նոքա ընդդէմ դառնալ այլոց կրօնից եւ զթագաւոր՝ որ հեռանայր յազդեցութենէ նոցա՝ անաստուած կարծեցուցանէին։ Քաղաք արքունական թագաւորացն էր Տիզբոն հանդէպ Սելեւկիոյ՝ Դկղաթ գետոյ ընդ մէջ անցեալ։ Ոչ միշտ ի նմին չափու էին սահմանք տէրութեանն. առ աշխարհակալօք ոմամբք պատմի ձգել ի Հնդիկ կամ Ինդոս գետոյ մինչեւ ցծովն Միջերկրական եւ յՈքսոս (Ճիհուն, Գեհոն) եւ Յաքսարտէս (Սիրր) գետոց մինչեւ յԵրջանիկն Արաբիա եւ ցսահմանակողմն Եգիպտոսի. այլ միշտ իսկ աշխարհակալութիւնքն այնոքիկ վաղվաղակի եղանէին միւսանգամ ի ձեռաց եւ չեղեւ հնար թագաւորացն Պարսից ունել հաստատուն տէրութիւն անդր քան զՏիգրիս եւ զՅաքսարտէս գետ։ Նա աւանիկ եւ ազգք որ ի մէջ այսց բուն սահմանաց նոցա էին՝ չժողովեցան ի միութիւն. տէրութիւնն զոր ի վերայ մասին իրիք Արաբիոյ կալաւ Շապուհ Բ. եւ առաւել զօրացոյց Խոսրով Բ., չէր ինչ աւելի քան զտէրութիւն պաշտպանութեան եւ ոչ կատարեալ ինչ հնազանդութիւն Արաբացւոց ընդ նոքօք։ Այլ մանաւանդ ի

հիւսիսակողմն կուսէ սպառնային վասնզի տէրութեանն ազգք թափառականք հոմիւք, ցեղք մոնղոլեանք եւ թաթարեանք՝ որպէս Թուրքքն եւ Խազիրք եւ Սպիտակ Հոնք (Հեփթաղք կամ Հեփթաղինիկք)[1]: Կամեցան թագաւորքն Պարսից արգելուլ զասպատակ նոցա բարձրաբերձ որմովք, սակայն խրամատէին բազում անգամ եւ անհնարին էր գնել հաստատուն խաղաղութեան, եւ յաճախ լինէին Պարսից ընդ Սպիտակն Հոնաց գժտութիւնք վասն սահմանաց: Այս Հոնք եւ բարուք եւ մարմնոցն կերպարանօք այլակերպ իմն ազգ ի բուն Հոնաց էին եւ կային ընդ թագաւորօք. ի հիւսիսային սահմանս տէրութեանն Պարսից մինչեւ ցԳորգայ քաղաք ձգէր բնակութիւն նոցա:

Ազգային Պարսից բարձրագոյն ինչ գիտութիւնք, սակայն ծաղկէին արուեստք ինչ եւ անդերկութիւնք: Ի քաղաքսն մեծամեծս (ի Բահլ, ի Բուխարա եւ յայլ եւս քաղաքս) յօրինեալ յղկեցաւ պարսիկ (փարսի) լեզու, որ էր այնուհետեւ ընտիր բարբառ լեզուին Պարսից եւ պահեցաւ յաւակ մինչեւ ցժամանակս Մահմեդականութեանն: Ժամանակք թագաւորութեան թագաւորացն երկուց Խոսրովեանց՝ համարին դար ոսկի պարսիկ բանաստեղծութեան, նկարչութեան, քանդակագործութեան եւ երաժշտութեան: Ի ղօլյսն պարսկական յիշին մանաւանդ նկարիչք Մանի եւ Շապուհ անուն, երաժշտականք՝ Նէքիսար եւ Բարբուդ, եւ քանդակագործ՝ Փերհադ: Իսկ բուն հրահանգք եւ ուսումն Պարսից սեպհական իմն մոգուցն էր, որոց գլխաւոր ուսումն էին օրէնքն Զրադաշտայ՝ ի վերջ իմն դասակարգս ուսման կամ կեշտս, որ կոչէին՝ Համակդեն, Ապարըքաշ, Բոզպայիտ, Պահլաւիկ, Պարսկադեն եւ Մոգպետ[2]: Բայց տակաւ օտարացան ի սոցանէ, մինչեւ յետուստ պատմեակք Պարսից ուսանէին ասորերէն եւ յունարէն յՈւռհայ մինչեւ ցփակումն դպրոցին այնորիկ (435):

Նաղումք ի թագաւորաց էին ամենայն յունական մատենագրութեան. կղերականք նեստորականք էին բժիշկք նոցա, զորս արկանէին ի կիր եւ ի հրեշտակութիւնսն ընդ կայսերաց: Վաճառականութիւնն էր պայծառացեալ, բազում էր նոցա հաղորդութիւն ընդ Հնդկաց, եւ ածէին մետաքս ի Չենաց. զեղխութիւն եւ պաճուճանք մեծամեծացն նպաստ լինէին ծաղկելոյ ազգի ազգի արուեստանոցաց, որպիսի ինչ իւղոց անուշից, բարակամանն կտաւոց եւ պէսպէս անկուածոց: Գլխաւոր նիւթ տալոյ ի ձեռս վաճառականացն արեւմտից էին երիւարք Պարսից: Մշակութեան փոյթ ի վերայ ունէին թագաւորք եւ ամենայն իսկ պատուիրանապահաց օրինացն Զրադաշտայ էր փոյթ ի դարման անասնոց եւ անկոց սրբոց:

Ի սահմանս տէրութեանն Պարսից վաղագոյն իսկ տարածեալ էր քրիստոնէութիւն: Եդեսա ի գլխաւոր քաղաքին Ուռհայաստանի շինեցաւ եկեղեցի յամի 228. ի Միջագետս յիշին կանուխ եկեղեցիքն Ամդայ, Մծբնայ եւ Քաշկարայ. եկեղեցին Սելեւկիայ միացելոյ ընդ Տիզբոնի էր դպրոց քրիստոնէութեան համօրէն տէրութեանն Պարթեւաց կամ Պարսից եւ եպիսկոպոսն Սելեւկիայ–Տիզբոնի էր մետրապոլիտ համօրէն եկեղեցեաց կողմանցն այնոցիկ: Յորժամ զքրիստոնէութիւն ընկալան կայսերք Հռոմայեցւոցն, Պարսիկք ի նեղելն ի սոցանէ՝ այնուհետեւ կասկածանօք իմն ընդ քրիստոնեայս հայէին, յոր դրդէին զնոսա

[1] Եղիշէ եւ Ղազար Փարպեցի բազում ուրեք կոչեն զնոսա այսպէս: Նոյնպէս եւ Յոյնք զորդն զայն անուանեն: Արաբացի մատենագիրք յորջորջեն Հայաթելիթա կամ Հիաթալիթա:

[2] Եղիշէ, էջ 523:



Digitized by Google

զզուանս խաբեանց. Գրիգորիս Կաթողիկոս Աղուանից ձգձգեալ աղաւնաւ ի Վասնեան դաշտին եւ սորին հայր Վրթանէս՝ որ փող յանձնարարեալ էր զեղբայր իւր զԱրիստակէս յեպիսկոպոսապետութիւն, ի մեհենաշատ նահանգին ի Տարօն կրեաց յարձակումն յամենոխէն յարձակելոց ի վերայ նորա յեկեղեցւոջ:

Նմին իրի հաւատարիմք ի նախարարացն խորհուրդ ի մէջ առեալ ընդ կղերականացն՝ առաջեցին հրեշտակութիւն հանդերձ հրովարտակաւ ժողովոյն առ կայսր Կոստանդիոս հաստատել զԽոսրով զորդի Տրդատայ՝ ըստ պայմանի վերջին դաշանցն՝ ի թագաւորութիւն, օգնելով լեգէոնօք հռոմայեցւոցն: Հրեշտակքն էին Մար իշխանն Ծոփաց եւ Գուգ կամ Գուսս իշխանն Հաշտենից, հանդերձ Զանիս իշխանաւն Կորդուաց, Ներսեհիւ Ծոփաց Շահէի, Վաղինակաւ Սիւնեաւ եւ Մանակաւ իշխանաւն Ռշտնեաց:

Նոյն եհաս զօրավար Անտիոքոս յարդարիչ պալատանն [1] զօրու ծանու, բերեալ ծիրանի եւ պսակ հանդերձ հրովարտակաւ: Պսակեցաւ Խոսրով Բ. Կոտակ, հաստատեցան չորեքին զօրավարքն ի գործ զօրավարութեանն ի վերայ չորից զաւառաց: Խաղացեալ զՄանաճիհր հարաւային հայաստանեայ զօրօք եւ կիլիկեցի լեգէոնօք ի պահ զգուշութեան կողմանցն Ասորեստանի եւ Միջագետաց եւ զՎահան արեւելեան հայ զնդաւն եւ գաղատացի լեգէոնօք զկողմանս Ատրպատականի՝ ինքն հանդերձ Բագարատաւ եւ Միհրանաւ հանէ ի Փայտակարանէ զՍանատրուկ հալածական ի Պարսիկս, եւ դարձեալ ընդ աւարաւ՝ գնայ առ կայսր:

Այսուհետեւ թագաւորն որ ոչ հաւատաւ [2] եւ ոչ արութեամբ եւ ուժով հաւասար հօրն էր, պարապէր մնացեալ յորս հաւուց եւ եղջեր եւ տայր անկել անտառս, զՏամճային մայրի եւ զկազմատաճկ պուրակն զխոտորավակերպս առ Ազատ գետով. եւ զարքունիսն զոր ունէր յԱրտաշատ վասն օդոյն ապականութեան փոխէր ի Դուին զոր ինքն իսկ եւ շինել [3]: Սակայն չէր հեռի ի հօրն բարեպաշտութենէ եւ ի զգաստանէր բարուց. կամէր ի պատէ ընդ օդոյս աշխարհին, չէր նախանձաբեկ ընդ անուն քաջութեան զօրավարաց իւրոց, որք էին իսկ արդեացուցիչք աշխարհին եւ նեցուկք աթոռոյ նորա:

Իսկ եւ իսկ յետ փախստեանն Սանատրկոյ առաջի գնդին Մանաճիհրի, անկաւ Բակուր եւ զօրն օգնական ի Պարսից վարեցաւ փախստեայ: Այլ չեղեւ հանգոյ թագաւորին անապարտութիւն զօրավարքն, զի դատեցաւ նա սրով անխնայ ոչ միայն զմարդիկ իշխանութեան ապստամբին, այլ եւ զուամիկ շինականսն: Յորդւոց անտի Բակրայ ապրեցաւ Հեշայ փախուցեալ ի տուն Մամիկոնէից եւ դուստր մի մատաղածին զոր եա արքայ Վաղինակայ իւ-

1 Magister palatii? — Ըստ Թէոդոսեան մատենին՝ գլուխ պաշտօնէից (առ Կոստանդիանու Ա.):

2 Խոր. Գ. Գլ. Ձ.

3 Խոր. Գ. Գլ. Ը.

Digitized by Google

րում սիրելոյ։ Զարար Մանաճիհր երեաս աղաչանաց եպիսկոպո-սին Մծբնացւոց սքանչելւոյն Յակոբայ՝ յորժամ համոզէրն զնա արձակել զգերութիւն ռամկին զոր ած նա ի կողմանց Մծբնայ, նա աւանիկ ի բողոքել նորա առ արքայ՝ զութ սարկաւագունս նորա որ ընդ գերւոյն էին, տայր հանել ի կապանաց եւ ածել ի ծով իբրեւ հեծուկս եպիսկոպոսին առնելով, բայց անէծք սրբոյն զպտ-ղաբերութիւն նահանգին Ջրաւորացն դարձուցին յաղտաղտուկս։

Այնուհետեւ յերկրորդ ի սովորական հնարսն դառնայր սա-սանականն. դրդէր յարուցանէր զազգսն հիւսիսոյ, որք եւ զօրա-ւորութեամբ Սանեսանայ արքայի Մազքթաց անցեալ ընդ Կուր գետ անկանէին ի Հայս իբրեւ 20,000 այր. խորտակեցաւ առաջի նոցա գունդն հիւսիսային, անկաւ Միհրան ի ճակատու, եւ թշ-նամիք ծաւալեցան կալան մինչեւ ցդրունս Վաղարշապատ քա-ղաքի, տիրեալ յաջմէ մինչեւ ցքաղաքն Սատաղացւոց եւ ի ձախ-մէ՝ ցԳանձակ Ատրպատականի։ Աճապարեցին Բագարատ եւ Վա-հան արեւելեան եւ արեւմտեան զօրօքն. արկին զնոսա զԱւշական տապարօքն ի հիւսիսոյ Երասխ գետոյ եւ փախեալ զնոսա ի քա-րուտ տեղիս զի մի ճապաղեսցին ի նեղաձգութիւն ըստ իւրեանց սովորութեանն, սփռեցան նոքա տալ ճակատ յանձկի, եւ ընկե-ցեալ յերիվարէ զօրագլուխ նիզակաւորացն նոցա ի ձեռն Վահա-նայ՝ գնդին Հայոց լինէր յաղթութիւնն։

Աւետօք յաղթութեանն հասանէին զօրավարքն ի Ծոփս առ արքայ, առ որում էր գունդն հարաւային ի պահ զգուշութեան բերդին Դարեւնից՝ յորում էր ամրացեալ արքայ հանդերձ եպիս-կոպոսապետաւն, եւ Բագարատ ինքնին կայր վկայ հաստատուն առանց նախանձու առաջի թագաւորին վասն Վահանայ քաջու-թեացն եւ պարգեւեցաւ նմա Աւշական՝ տեղի ճակատուն. վասա-նին միտք թէ ընդ այր ի նոցանէ քաջութիւն մանաւանդ զարմա-նայցեն։ Նիզակակից զօրավարացս էին՝ Մեհունդակ եւ Գարեգին Ռշտունիք եւ Վարազ Կամսարական։ Սակայն ըստ այլոց պատ-մագրի՝ զսպարապետութիւն կամ զմիագլխապետութիւնն ունէր ըստ պատուոյն Վաչէ որդի Արտաւազդայ եւ էր իսկ ի ճակատու-տուտ[1]։ Իսկ փոխանակ Միհրանայ՝ առ զզօրավարութիւնն Գար-ջոյլ Մաղխազ նահապետ Խորխոռունեաց[2]։

Ի կատարածի յայսմ իսկ գրգռեցաւ պատերազմն ընդ Պար-սից. իբրեւ դադարեցոյց զհարկն թագաւորն Հայոց, հաս զօր ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառ, ել ընդ առաջ գունդն նախարա-րակոյտ սպարապետութեամբ Վաչէի, յերկոցունց կողմանց լինէր ծախումն կոտորածոյ մեծամեծացն եւ ինքն Վաչէ անկանէր ի ճակատուն եւ լինէր վասն նորա սուգ յամենայն աշխարհին։ Բայց եւ ինքն արքայ Խոսրով չյերկարէր յետ այնորիկ ի կեանս. մեռ-

1 Տես Բուզ. Գ. Գլ. Է։ 2 Խոր. Գ. Գլ. Թ։

ջէն գործ ի գործոց նորա այն իսկ էր՝ մատուցանել զպատանեակն Արտաւազդ, զորդի Մաշէի ի բարձ հայրենի գահուն սատրապութեան իբրեւ զորդի առն փառաւորի ի փառաւոր ազգէ, բայց բուն գործ զօրավարութեանն լինէր յանձն Արշաւրայ Կամսարականի եւ Անդովկայ իշխանին Սիւնեաց դայեկաց նորա, զի էին նոքա փեսայք տանն Մամիկոնեան[1]։

Իսկ եւ իսկ լինէր ժողով աւագանւոյն եւ կղերականացն, թերեւս յԱշտիշատ կամ ի Շահապիվանի. սահմանեցաւ զվերակացութիւն աշխարհին առ ժամն ունել Արշաւրի Կամսարականի, որ պահեաց իսկ զերկիրն յարշաւանէն Պարսից, յաղթեալ ճակատուն ի Մռուղն դաշտի, մինչեւ դարձաւ Տիգրան որդի Խոսրովու, որ առաքեալ էր ընդ եպիսկոպոսապետին Վրթանայ՝ ըստ ժողովոյն հաւանութեան առ կայսր Կոստանդիոս՝ առնուլ թագ։

Տիգրան որ զհօրն վատութիւն ունէր առանց հայրենի առաքինութեանն՝ երկակողմանի հարկօք էր ի խաղաղութեան ոչ ընդ Հռոմայեցւոց միայն՝ այլ եւ ընդ Շապհոյ Բ. որ զերծոյցն իսկ զնա յապստամբէ ազգացն հիւսիսականաց անցելոց ընդ դուռն Ճորայ։ Սակայն եւ այնպէս ի կատարած կայս թագաւորութեան իւրոյ անկաւ թշնամութիւն ընդ նա եւ ընդ Շապուհ Բ.։

Պատճառք թշնամութեանն ըստ Մ. Խորենացւոյ այսպիսի ինչ էին։ Այնպէս յաղթէ նմա առ կայսրն Յուլիանու՝ զի յարշաւել նորա ի վերայ Շապհոյ Բ. (յամի 363), արկանէ նմա կամուրջ ի վերայ Եփրատայ՝ մերժելով զպահապանսն Պարսից, տայ նմա պատանդս զիւր երրորդ որդի զՏրդատ եւ զՏիրիթ զորդի Արտաշիսի որդւոյ իւրոյ անդրանկան վախճանելոյ, եւ սահմանէ զգունդն հարաւային զօրավարութեամբ Զօրայի պայազատի իշխանութեանն Մանաճիհրայ յօգնականութիւն կայսեր։ Այլ զօրավարն աստուածապաշտ չհամարեալ ի դէպ լինել ձեռնտուան ուրացողի որ զկորուստ քրիստոնէիցն նիւթէր, հաւանեցուցանէ զիւր գունդն ի նոյն խորհուրդ եւ ամրանայ ի Տմորիս մինչեւ խարկանօք ի ձեռն Հայր մարդպետի կոչէ զնա արքայ առ ինքն՝ զարհուրեալ ի սպառնալեաց թղթոյ իրիք Յուլիանու եւ կոտորէ հանդերձ տամբն՝ գրաւեալ եւ զամուրն նոցա զԱղթամար՝ կացուցանելով փոխանակ նորա ի սպարապետութիւն զնորին զՄաղամնուտ զաւէրն Ընձայ։ Յուսիկ յաջորդ հօր իւրոյ Վրթանայ մեռանի ի ցաւոց բրածեծ գանին՝ զոր կրեաց վասն ջախջախելոյ զպատկերն դիւանկար առաքեալ ի Յուլիանեայ առ Տիրան եւ կանգնեալ ի սմանէ յարքունական եկեղեցւոջն ի Ծոփս։ Յետ սպառութեանն Յուլիանու եւ դաշանց Յովիանու իբրեւ յանդէտս լինելով կոչեաց զՏիրան՝ արքայն սասանական եւ կշտամբեալ խարեաց զաչս նորա եւ արկ ի բանտ ի Կուաշն աւանի։

1 Բուզ. Գ. Գլ. ԺԱ.

քնոցն պատմագրութիւնք, Բ. Բուզանդոյն դէպք զոր դարձեալ նոյն առհմայնին պատմագրութիւն ընծայէ, խառնեալք ի շեղ դրից անուն իւրեանց՝ յաղագս ուղղութեան ժամանակաց զքերեանց զերդհական դիր գաւանն, Գ. Այլն ամենայն մնացեալք ի դիպաց գաւանն երաշխաւորութիւն ստուգութեան վասն միաբան համեմատութեանն իւրեանց։

Ինքեանք իսկ երեքին մատենագիրքն՝ յորոց զպատմութիւն այսց ժամանակաց ունիմք, նպաստ յուղղութիւն անդր լինին։ Ցարեգիրք Անիանոս Մարկեղղինեայ առն հաստատուն եւ անաչառ պատմական կէտս ժամանակագրութեան։ Ինքն Մ. Խորենացի մատուցանէ այնուհետեւ վկայութիւն ճշմարտութեան պատմագրին հռոմայեցւոյ, այնպէս զի հարկ իցէ մեզ ի Մովսիսէ առ Մովսէս բողոք առնուլ կամ Մովսիսիւ զՄովսէս ուղղել։ Ոչ ոք կարաց ցայսօր ճշդիւ զհետ երթալ ժամանակագրութեան պատմութեան այսց ժամանակաց զոր Մ. Խորենացի ընծայէ, այլ կամեցան ինք ուղղել ինքնօրէն (որպիսի ինչ՝ տալով Արշակայ Բ. 15 կամ 18 ամս թագաւորութեան, ուր Մ. Խորենացի տայ 30, եւ այլ եւս ինչ նոյնպիսիս)։ Եթէ ի ներքուստ ի վեր հաշուիցեմք 1. զամս թագաւորաց, 2. զհայրապետացն եւ 3. զնոցին զառ միմեանս համեմատութիւնն՝ գրեթէ մօտ ինք հասանեմք ի ժամանակագրութիւնն զոր ըստ հաստատուն կիտիցն ընծայելոց յԱմմիանոսէ ստիպիմք տալ Արշակայ, Պապայ եւ Վարազդատայ՝ մինչեւ ցբաժանումն թագաւորութեանն։ Փ. Բիւզանդացի զդէպս ինչ ի դիպաց որ յուղղել ժամանակագրութեանն ամենեւին ի բաց անկանելոց էին, պատասխանէ այլով ինք հանգամանօք կամ դրիւ զնոյն ցուցեալ (որպէս վերագոյն նշմարեցաք), եւ կամ միաբանեալ ընդ առաջնոյն ի չմիաբանութեան երկոցունցն։ Իբր ոչ եթէ զՓ. քան զՄ. նախամեծար առնիցեմք, այլ այնմ ինք սովորութեան չանսամք՝ որ զնա մերժէ եւեթ, եւ զսա ընդունի եւեթ։ Այս ամենայն նշմարեցի մանր յընթացս պատմութեանցս յիւրաքանչիւր տեղւոջ, յորժամ ջանայցեմք գտանել մերձենալ ի դոյն ուղղութիւն։

Բ.

**Արշակ Բ., Պապ († 374), Վարազդատ, Մարզպանութիւն, Արշակ Գ., Բաժանումն Հայաստանի, Մասունք բաժնեալն Յունաստանութեան (386). Նոր ցեղ արշակունի, Խոսրով Գ., Վռամշապուհ, Արտաշիր Գ., Բոլանդական բաժնեալն Յունաստանութեան (յամի իբրեւ 350—428)։ Ս. Ներսէս († յամի իբր 373 կամ 4) եւ Ս. Սահակ († 440)։**

## 122

ԱՐՇԱԿ որդի Տիրանայ անդրանիկ անց ի պայազատութիւն (յամէ իբրեւ 350 — իբրեւ 369). Ժամանակ նորա համեմատի ժամանակի Կոստանդեայ, Յուլիանոս, Յովիանոս եւ առաջին ամացն Վաղէսի։ "Նստաւ Արշակ՝ որպէս ի դէպ է ի ձեռն Շապհոյ, որ այնպէս շահել զմիտս ազգին կամեցաւ[1], եւ կամ որ առաւել հաւանութեան է՝ յետ հասանելոյ աշխարհապայման աղաչանաց առ կայսր՝ միաբանեցին երկոքին ակրութիւնքն զի ըստ առաջարկութեան իսկ հօրն նորա Տիրանայ՝ թագաւորեսցէ Արշակ[2]։ Եթէ իսկզբանէ թագաւորութեանն ոչ՝ սակայն յոյժ վա-

1 Խոր. Գ. Գլ. ԺԸ։ 2 Բուզ. Գ. Գլ. ԻԱ։

Digitized by Google

զազգոյն սկսաւ սէրն բարեկամութեան Արշակայ ընդ տէրութեանն Հռոմայեցւոց։ Գտանեմք գունդ ազնուականաց հեծելոց Հայոց ի պատերազմի կայսերն Կոստանդեայ ընդ Մագնենտեայ բռնաւորի ընդ հրամանատարութեամբ Մենեղաւեայ հազարապետի (351) [1]։ Հրաման տայ կայսր Կոստանդիոս չառնուլ հարկս ի կալուածոց անտի՝ զոր ունի Արշակ արքայ Հայոց յերկրի սահմանաց Հռոմայեցւոց [2]։ Իբրեւ զրաւական տեւական հաւատարմութեանն տայր կայսրն Արշակայ կնութեան զօրիորդն Ողոմպիա զդուստր Աբղաբիոսի անձնապահապետի, որ էր լեալ ի խնամն Կոստանդեայ, սնեալ ի պաղատան նորա (ընդ մէջ ամացն 351—355) [3]։ Փ. Բիւզանդացի եւ Մ. Խորենացի պատմեն զնոյն զՈղոմպիադայ՝ որ եկն ի կայսերական տանէ եւ տուեալ իցէ նա ի Վաղեսէ։

Զայն իսկ պահանջէին եւ ժամանակացն հանգամանք։ Այսպէս իսկ առնէր Շապուհ Բ. գտանել ժամ դիպող գրաւել միւսանգամ զնահանգսն որ ի Միջագետս եւ առանձինն իսկ զՀայաստան աշխարհ զոր թող Ներսեհ զաշամբք 40 ամօք յառաջ։ Իսկ եւ իսկ յետ մահուն Կոստանդիանու՝ ծախեալ ամ մի վասն պատրաստութեան՝ անդէն գրգռէր ի մարտ պատերազմի ընդ Նորին որդւոյ Կոստանդեայ. յերկարէր այն պատերազմ եւ երկեալ պատերազմին ամս 25 (338 — 363) անցանելով ընդհատ ինչ ժամանակ ի միջի։ Յայսմ իրացն հանգամանս՝ ոչ միայն օգուտ Հայոց աշխարհին այլ եւ կայսերն Հռոմոց պահանջէր տալ միմեանց ձեռն։ Յայն սակս մտադիւրագոյնս իսկ շահեցաւ զնա կողմն Հռոմայեցւոց՝ իբրեւ կարեւոր դաշնաւոր եւ ոյժ մեծ ընդդէմ զօրութեանն Պարսից։ Թէպէտ եւ բազում անգամ փորձեցաւ Արշակ ի սասանականէն հրապուրանօք, սպառնալեօք, նենգութեամբ՝ թողուլ զկայսրն եւ ի նա յանկչել, այլ զուր [4]։ Քանզի եւ արդեամբք իսկ ասպարէզ պարսկական պատերազմին ոչ միայն Միջագետք էին, այլ եւ հարաւային սահմանք Հայոց։ Երիցս պաշարեցաւ քաղաք Մծբնացւոց ի Շապհոյ բազմամբոխ զօրօք, զառաջինն յամի 338 յաւուրս 63, երկրորդ անգամ յամի 347, եւ յետոյ յամի 350 իբրեւ ամիսս երիս, սակայն ապրեցան քաջալերութեամբ եւ աղօթիւք սրբոյ եպիսկոպոսին իւրեանց Յակոբու. եւ Շապուհ զարհուրեալ յազգի ազգի

1 Մատեան Թէոդոս. Գիրք Ա. Տ. Ա։ Ի սմին օրէնս յիշի Եւսեբիոս մի անուն երբեմն բդեշխ եւ մագիստրոս հեծելոց եւ հետեւակաց եւ Դոմեստիկոս պատրիկ. յանուանց արանցս եւ ի պատուոյ նոցա յայտ իսկ է թէ այն օրէնք ի Կոստանդեայ ժամանակաց է եւ ոչ ի Կոստանդիանու՝ որպէս ունի վերնագիր մատեանն Թէոդոսեան։

2 Զոսիմ. Բ. 51։

3 Ամ. Ի. 11 եւ այլն։ Ս. Աթան. ի Թղթին առ Միայնակեացս, պարսաւելով իսկ զԿոստանդիոս՝ ասէ. Զխոստեալն Կոստասայ զՈղոմպիա եւ բարբարոսաց, զոր նա (Կոստաս) մինչեւ ցվախճան իւր պահեաց եւ սնուցանէր զնա զի լինիցի իւր կին։

4 Ամ. Ի. 11։ Audiebat enim (Constantius) saepius eum (Arsacen) tentatum a rege Persarum fallaciis et minis et dolis, ut Romanorum societate posthabita, suis rationibus stringeretur. Համեմատեա ընդ Բուզանդայ, էջ 186։

Digitized by Google

անյաջող մեկնեցաւ յերաս[1], այլ չեւ էր լեալ խաղաղութեան։ Հրաման առնոյր ի կայսերէ Մուսոնիանոս վերակացու արեւելից առաքել պատգամ առ արքայից արքայ ի ձեռն Դենշապհոյ[2] սպարապետի Պարսից ի Միջագետս, վասն խաղաղութեան (357)։ Բայց զի ի կռուի ուրեմն էր Շապուհ ընդ Հոնաց[3], ընդ Քուշանաց[4], եւ ընդ Գեղաց[5] ի ծայրս սահմանացն, անագան թուղթքն հասանէին, եւ եղեւ ընդ նոսա դաշինս խաղաղութեան եւ թագաւորին Հոնաց Գրումբատայ լեալ դաշնաւոր[6], այնուհետեւ ամբարտաւանագոյն գրէր Շապուհ թուղթ առ կայսր առաքելով ի ձեռն Նարսեհի ուրումն, ցուցեալ թէ եւ այն իսկ խոր չափաւորութիւն է զի զՄիջագետս միայն եւ զՀայաստան պահանջիցէ եւ ոչ ինչ աւելի (358)[7]։ Զառ յանձն կայսր եւ զհետ Նարսեհի առաքեաց հրեշտակս (զՊրոկոպէս կոմս եւ զՍպեկտատոս տրիբուն եւ Նոտար) պատարագօք. յանդիման եղեն Շապհոյ ի Տիզբոն, չկարացին հաւանեցուցանել զնա ի բաց կալ ի պահանջմանցն, եւ դարձան յերաս (358, Աւգ.)։

Նմին իրի անդէն գարնայնի 359 ամին արծարծեցաւ պատերազմ զօրավարութեամբ Ուրսիկինոսի առն քաջի եւ ճարտարի, բայց զսպարապետութիւնն ունէր Սաբինիանոս ծերն եւ անկար՝ ի սադրելոյ Եւսեբեայ սենեկապանի ներքինւոյ։ Յայն սակս չյաջողեցին ինչ այնչափ իրք Կոստանդեայ։ Նմին իրի իսկ խաղաց եկն յառաջադէմ Շապուհ յԵփրատ կոյս՝ անցեալ ընդ Տիգրիս, ունելով ի մտի մտանել յԱսորիս. եհաս հանդերձ թագաւորօքն Հոնաց եւ Աղուանից յԱմիդ (ի Տիգրանակերտ), յորդորէր զքաղաքացիսն տալ ի նա ձեռս. այլ իբրեւ չառին յանձն քաղաքացիքն եւ նետ մի ի քաղաքէ անտի հար ընկէց զպատանեակն կայտառ զորդի Գրումբատայ արքայի Հոնաց, երդուաւ Շապուհ խնդրել զվրէժ դաշնաւորին իւրոյ եւ զքաղաքն Տիգրանակերտացւոց դարձուցանել յաճիւն։ Յետ 73 աւուրց պաշարման եւ հարկանելով բաղխարօք ի թմբից անտի շուրջանակի կազմելոց բաց յունական արուեստի թելադրելոյ յԱնտոնինեայ ի զօրավարէ ումեքէ հռոմայեցւոյ հատուածելոյ առ նա, առաւ քաղաքն եւ աւերեալ քանդէր, զերեւելի երեւելիս հրամանատարացն հռոմայեցւոց եւ Հայոց տայր կախել արքայ Շապուհ, զմնացեալսն (բաց ի սակաւուց ոմանց) վարէր ի գերութիւն (359)[8]։ Զայս պատմէ Ամմիանոս՝ որ էր ի քաղաքի անդ պաշարելոյ եւ փախուցեալ ապրեցաւ ընդ սակաւուց։ Ըստ Խորենացւոյն գլուխ բերդա-

1 Թէոդորիտ. Եկ. Պատմ. Բ. 30։
2 Tamsapor.
3 Chionitae.
4 Cusenae.
5 Gelani.
6 Ամմ. ԺԶ. 9։
7 Ամմ. ԺԷ. 5։ Վերնագիր թղթոյն է "Արքայից արքայ Շապուհ, կցորդ աստեղաց, եղբայր արեգական եւ լուսնի, Կոստանդեայ կայսեր եղբօր խնդալ ողջոյն բազում", համեմատ թղթոյ իմիք առ Խոր.։
8 Ամմ. ԺԹ. 1։

ընդ հուր տալ վասն նորին զբոյյ[1]: Յայնժամ ուրեմն թուի առաքեալ Յուլիանու եւ զեւր պատկերն զդիւանկար առ Արշակ, զոր եւ կանգնէր նա յարքունական եկեղեցւոջն: Վասնզի չէր իսկ այս արտաքոյ ինչ սովորութեան Յուլիանու:

Եւ այնուհետեւ կայսր ի քաղաքէն Անտիոքացւոց դարձեալ (363 Մարտ. 5) հանեալ ի ձմերոցաց զզօրսն՝ որք ժողովեցան ի Հիերապոլիս, եւ էին առ հասարակ 35,000 Հռոմայեցւոց, թող զՍկիւթացիսն կամ զԳութսն եւ զՍարակինոսսն որ եկեալ հասեալ էին յուսով աւարին:

Երթեալ ընդ Հիերապոլիս անց ընդ նաւակամուրջն Եփրատու, որ կայր ի հարաւոյ Բիր դղեկի, հասանէր ի Խառան՝ ուր բաժանէր պողոտայն արքունի յերկուս, մի ընդ ձախմէ ընդ Ադիաբենէ առ Տիգրիս գետով եւ միւս յաջակողմն ընդ Ասորեստան առ Եփրատ գետով: Անդ բաժանէր վասն ճանապարհին ընդ ձախ Յուլիան զզօրսն, գունդ մի 30,000 արանց ի ձեռն տայր երկոցունց զօրավարացն Պրոկոպիոսի եւ Սեբաստիանոսի (մանիքեցւոյ) հրաման տուեալ խաղալ ի Մծբին կոյս, անդ մինչ չեւ անցեալ ընդ Տիգրիս, զգուշանալ ասպատակին Պարսից, որ թերեւս յանկարծ հասանիցէ, ապա անցանելով ընդ Ադիաբենս զգեղեցիկ գեղեցիկ անդս զպտղաբերս աշխարհին Պարսից ապականեալ խանգարել: Այլ խնամով իմն հրաման տայր կայսր զօրավարացն՝ միաբան ընդ Արշակայ արքայի գործել, եւ նովաւ հանդերձ արշաւեալ ընդ աշխարհն Կորդուաց, Մոկաց եւ Հեր եւ Զարեւանդ գաւառի փութանակի հասանիցեն յԱսորեստան ի ժամ նեղութեան իւրք եւ պիտոյից լինել թիկունս օգնականութեան եւ այնպէս միանալ ընդ բուն բանակին առաջի Տիզբոն քաղաքի արքայութեանն Պարսից: Ինքն Յուլիան ընդ աջոյ ճանապարհն հասեալ (Մարտ 27) ի Կաղլինիկոն, որոյ առաջի ժողովեցաւ տորմիղ նաւացն 1100ոց եւ առ Կիրկեսիոնիւ, որ էր բերդ ամուր (շինեալ ի Դիոկղետիանեայ) ի վերայ սահմանաց երկուց թագաւորութեանց ի գետախառնուրդս Խաբոր գետոյ ի գետն Եփրատ. անցեալ ընդ Եփրատ ձգելով նաւակամուրջ 50 նաւաց, խաղայր ընդ երկիր թշնամւոյն միշտ զգետն ի խոնարհ, իբրեւ առ երի նաւամարտիկ նաւաց, որ գային ստէպ զհետ. բուն զօրութիւն հետեւակազօրուն էր ի միջին վայրի զոր ա՛ռ յինքն կայսր, աջ թեւն յայլեւայլ ազգաց ընդ Նեւիտաւ էր միշտ առ երի նաւացն, իսկ զձախոյ թեւն ծածկէր այրուձին ընդ զօրավարութեամբ Արինթէոսի եւ Որմզդի՝ արքայորդւոյն Պարսից դարձելոյ ի քրիստոնէութիւն առ Կոստանդիանու. զառաջս գնդին եւ զկողմն պահէր Լուկիղղիանոս 1500 դիւրաշարժ հեծելօքն, իսկ զվերջապահսն տանէր Սեկունդինոս կուսակալ Ոսրհոյեցւոց:

1 Ամ. ԻԲ. 2.

Digitized by Google

Գժուարին արշաւանն էր, այլ յաջող. հարաւ ցրուեցաւ բանակն արքունի առաջի Տիգրանի, հանդերձ մահանաւոր եւ փղակոյս բազմութեամբ եւ ի հնչիւն փողոյ եւ գոչման հոռոմայեցի եւ գութ զօրուն հալածեցաւ ամենայն, մինչեւ ի ներքս ի պարիսպն քաղաքի, եւ մնաց յաւար բանակն, այլ ոչ առանց մեծի ծախման կոտորածոյ հռոմայեցւոցն իրքն վճարեցան:

Այլ գործ էր այնուհետեւ առնուլ զՏիգրան. ի խորհրդեան զօրավարացն ուհմանեցաւ թէ անհնարին է եւ դժուարին՝ պաշարելով առնուլ ի բռուն. այդ առնէր Շապուհ ի ձեռն Որմզդի՝ առնել դաշինս խաղաղութեան պատուով վասն հռոմայեցւոցն, այլ արհամարհեաց անգոսնեաց Յուլիան եւ դրդեալ ի սուտ խրատուէ հակառակ խորհրդոյ զօրավարացն՝ այրեաց զատորմիղ նաւաց իւրոց տրտնջելով զօրացն (Յուլ.), զի անարգել մերձենայցէ ընդ հիւսիսի արեւմտից ընդ կողմն Ադիաբենայ միանալ ընդ Արշակայ եւ ընդ հիւսիսայինն բանակին ընդդէմ, զօրուն զոր գումարեալ բերէր ի վերայ նորա Շապուհ: Փոշի պարսկական գնդին որ մօտէր՝ կարծեցոյց թէ եկեալ հասեալ իցէ Արշակ զօրօքն, դրդուեցան սատ անդ ճակատք, մինչեւ յետուստ յանկարծակի յարձակումն կրեալ ի հեծելազօրուէն Պարսից եւ ինքն կայսր առանց զրահից մտեալ ի ճակատ՝ եղեւ նետահար (363. Յուլ.)[1]:

Մատթարութիւն հռոմայեցւոցն՝ էր եւ պարտութիւն հայոց թագաւորին. Յովիանոս պայազատ Յուլիանու փութանաց դաշինս եդեալ ընդ Շապհոյ՝ թողլր նմա զնահանգսն յայնկոյս Տիգրիս գետոյ զԱրղն նահանգ, զՄոկաց աշխարհ, զԶաւդէս, զՌեհիմենս եւ զԿորդուաց աշխարհ[2] հանդերձ 15 բերդիւք մանաւանդ Սինգարաւ եւ Մծբինաւ՝ յորմէ հան ակամայ Յովիան զբնակիչսն տանել յԱմիդ[3]: Երկրորդ բուն գլխաւոր մասն դաշանց զոր Շապուհ պահանջէր՝ էր թողուլ առանձինն զթագաւորն հայոց եւ չլինել կայսեր նմին օգնական ի մարտ պատերազմի հակառակ Պարսից: Այսպէս առ երեսս իմն չափաւորութեամբ զնոյն համարէր ընդունել, զոր ի սկզբանն պահանջէր, այս ինքն զրաւել ունել զհայոց աշխարհ[4]:

Յանձն առ կայսր, թողաւ լքաւ Արշակ առաջի պարսկական զօրութեանն՝ որ առաւելագոյնն մրմռեալ զայրանայր յայնժամ, զի թիկունք օգնականութեան հռոմայեցւոց եղեւ թագաւորն հայոց:

Ապաքէն ի սկզբանէ իսկ թուի թէ ածէր Արշակ զմտաւ զտագնապն, որ նմա ի վերայ հասանէր՝ եթէ Պարսիկք յաջողէին, եւ յայն սակս խուսափէր իմն լինել արդեամբք օգնական Յուլիանու,

1 Ամմ. ԻԵ. 8:
2 Arganena, Moxoena, Zabdicena, Rehimena, Corduena.
3 Ամմ. ԻԵ. 9: Զոսիմ. Գ. 34:
4 Ամմ. ԻԵ. 9:

Digitized by Google

Համեմատութիւն գործոց Արշակայ ընդ իւրոց ժամանակակցացն կայսերաց, որպէս ինչ ցայժմ ըստ արտաքին պատմագրութեան (Ամմիանու) ընծայեցաւ՝ նշմարք յառակագոյնս եւ ի առՀմայրին պատմագրութեանն առ Փ. Բուզանդացւոյ: Յայտնի իսկ վասն պատերազմացն Կոստանդեայ եւ Յուլիանու ակնարկեալ (Դպր. Դ. Գլ. ԻԱ.) "Լեալ լինէր, ասէ, Թագաւորին Պարսից ի թշնամութենէ եւ խօսէր Համակ ողջոյն եւ աղաչէր զԱրշակ արքայ Հայոց՝ սիրով Հաշտ եւ միաբան կալ ընդ նմա յամենայն խաղաղութեան: Վասն զի ի մեծ վտանգ շտապի էր Թագաւորն Պարսից տեղայ տեղայ յանդադար պատերազմացն ի Թագաւորաց անտի Յունաց: Իսկ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կամէր անսալ նմա, եւ ոչ Հուպ ինչ լինել ի նա եւ յղել դեսպանս, եւ ոչ ինչ տալ պատասխանս ընծայից. եւ զանունն անգամ նորա ոչ կամէր լսել: Իսկ Թագաւորն Պարսից տեղայ տեղայ յղէր պատասխանս առ նա, առաքէր դեսպանս: Եւ նմին Հաւանեալ կռուէր ընդ Թագաւորին Յունաց" (Կոստանդեայ եւ Յուլիանու, 338—363):

Յետ այնորիկ վասն դաշանց Յովիանու ակնարկեալ՝ յորում Մծբինն առաւ եւ խոստացաւ կայսր չօգնել Թագաւորին Հայոց Հակառակ Պարսից, ասէ. "Այլ իբրեւ եղեւ խաղաղութիւն ի մէջ Թագաւորացն Յունաց եւ ի մէջ Թագաւորին Պարսից Շապհոյ, ուխտից նամակ գրեալ եւ կնքեալ տայր Թագաւորն Յունաց Թագաւորին Պարսից: Եւ գրեալ էր յամենայն նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, զՄծբին քաղաք որ է յԱրուաստանի եւ զՄիջագետս Ասորւոց, եւ միջաշխարհին Հայոց ձեռնթափ եմ, ասէ, թէ կարասցես յաղթել նոցա եւ արկանել ի ծառայութիւն, ես ի թիկունս ոչ եկից նոցա: Արդ ի նեղ ուրեմն անկեալ Թագաւորն Յունաց եւ ի նեղին վճռի՝ զայս ձեւ օրինակի բանիցն կնքէր մուրՀակ եւ տայր Թագաւորին Պարսից, եւ տխուր ճողոպրէր ի նմանէ" (364):

Յետաւոտ յաւելեալ նորին պատմագրի զայն որ զՀետ դաշանցն այնուցիկ եկն՝ ասէ Համեմատ Ամմիանու. "Իբրեւ եղեւ խաղաղութիւն ի մէջ Թագաւորին Յունաց եւ ի մէջ Թագաւորին Պարսից, այնուՀետեւ կազմէր զզօրս իւր Թագաւորն Պարսից Շապուհ եւ խաղաց ի վերայ Արշակայ արքայի Հայոց մարտի պատերազմաւ: Իսկ սաՀմանապաՀքն Թագաւորին Հայոց, որ նստէին ի Գանձակ Ատրպատականի, վաղ ազդ առնէին նմա զերան մինչ չեւ Հասեալ էր նա ի սաՀմանս Ատրպատականի...":

"Նոյն մատենագիր ի պաշարման Մծբնայ առաջքէն յամի 350՝ պատմէ "չուել Արշակայ նախարարօքն ընդ Աղձնիս եւ թափել յերկիրն Արուաստանի դէմ յանդիման Մծբնացւոց քաղաքին, որ էր տեղի ճակատուն՝ յօգնականութիւն Շապհոյ" (Դպր. Դ. Գլ. Ի.): Այլ այն իսկ զի Ամմիանոս միշտ Հաւատարիմ լեալ ասէ զԱրշակայ առ Հռոմայեցիս՝ ընդ կասկածանօք զերծս առնէ:

Ի սոցունց զայս նոր եւ զկարին կարեւոր տեղեկութիւն քաղեմք յառաջ՝ թէ ոչ միայն ըստ արտաքին մատենագրութեանն (Ամմիանու, Թէոդոսեան Մատենին, Սոզոմենայ, Աթանասի եւ Լիբանիոսի), այլ եւ ըստ առՀմայրին պատմագրութեան ոչ Տիրան ինչ է առ Յովիանու, այլ Արշակ Բ. էր ընդ [illegible] ժամանակակից Կոստանդեայ, Յովիանու, Յուլիանու եւ առաջին ամացն Վաղէսի: Այս զլուխ Փ. Բուզանդացւոյ, որում չեւ էր լեալ մատենագրութիւն բաւական, կարէր լինել արդեւք իբրեւ աւաղ բեւեռական առ ուղղութիւն ժամանակագրութեան այսց մատեանց պատմութեան, եթէ Ամմիանոս եւս չէր ի միջի:

## 124

Ո՛չ միայն պատուար ամուր թագաւորին Հայոց ընդդէմ թշնամւոյն՝ միաբանութիւն եւ խաղաղութիւն աշխարհին էր. այլ այն իսկ էին աղէտք՝ զի ո՛չ առ տնին եւ ո՛չ յառաջնորդութեանն յաջողեալ եւ խաղաղութեամբ էր ընդ նախարարացն Արշակ։

Պատանդք ի Տիրանայ տարեալ էին առ Հռոմայեցիս՝ Տիրիթ որդի Արտաշիսի անդրանկան արքայի որ վաղամեռիկն եղեւ եւ Տրդատ երրորդ որդի արքայի[1]։ Տրդատայ վախճանեալ կամ սպանեալ տարապարտ՝ նորին որդի սիրելին Գնել յետ պատուելոյ հիւպատոսութեամբ՝ դառնայր յաշխարհն հայրենի ընդ հօրեղբօր իւրոյ խանտաւորն Տիրիթայ։ Արդ ուրեմն յաջողէր Տիրիթայ հնարիւք միաբանութեամբ ընդ Վարդանայ Մամիկոնեայ զինակրի արքայի արկանել զԱրշակ ի կասկածանս վասն եղբօրորդւոյն իւրոյ Գնելայ, յորժամ փեսայացաւ սա Անտիոքայ նահապետի Սիւնեաց ի դուստրն նորա ի բարենշանն եւ հնարիմաց ի Փառանձեմ. արքունական իմն էին հարստանիքն, ուստերք նախարարացն տուան նմա ի սպաս եւ ի հրահանգս, եւ բնակութիւն էր նորա ի Կուաշ յարքունական նահանգին Արարատայ։ Թէպէտ եւ հրամանաւ արքայի ուստերք նախարարացն արձակեցան եւ ինքն փոխեցաւ բնակել ի Շահապիվանի ի մայրենի ժառանգութեանն, այլ սէր նախարարացն ընդ Գնել եւ խանտանք ընդ մեծութիւն որոց նորա որպէս եւ ընդ կնոջն գեղն՝ կործանեցին զնա. սպանաւ Գնել հրամանաւ Արշակայ յորսան, զոր պատրաստեաց նա արքայի ի Ծաղկոց լերինն, ի ձեռն Վարդանայ՝ իբրեւ ընդ խաղս։ Զփառանձեմ ա՛ռ արքայ ի հարճութիւն, այլ սա դեղեալ սպան զդշխոյն Ողոմպիա վասն տիկնութեանն ի ձեռն Մրջիւնկանն անարժան երիցու. սպանաւ այնուհետեւ նորա թելադրութեամբ եւ Վաղինակ Սիւնի՝ զի առցէ Անտիոք կամ Անդովկ հայր նորա զպատիւ նորա։ Նա եւ զառաջնոյ իսկ զառնն վրէժ հան կինն ժանտ։ Միաբանեալ ընդ Վասակայ մեւս եւս զինակրի՝ կրսերոյ եղբօր Վարդանայ Մամիկոնեայ՝ քսութեամբ տայր սպանանել ի ձեռն նորա զՎարդան, նա եւ զՏիրիթ զնորին սիրելի, յորժամ երթային նոքա հատուած ի Պարս՝ առ չժուժալ թշնամանացն զոր յարքայէ կրեցին[2]։

Արդ եւ ընդ ամենեցուն իսկ նախարարացն անկաւ թագաւորն ի գժտութիւն։ Յօժարեաց շինել Արշակ դաստակերտ առ լեառնստամբն Մասեաց, զԱրշակաւանն, եւ զի փութանակի շէն տեղին լինիցի՝ ըստ օրինակի հիմնարկութին Հռոմայ՝ հրաման տայր զի լինիցի այն տեղի ապաստանաց յանցաւորացն. եւ լցաւ,

1 Խոր. Գ. Գլ. ԺԳ։

2 Խոր. Գ. Գլ. ԻԳ. ԻԵ։ Բուզ. Գ. Գլ. ԺԱ—ԺԵ։

Digitized by Google

աւանացաւ, քաղաքացաւ վայրն աւանդատուօք, պարտականօք, ծառայիւք փախստէիւք, գողօք, սպանողօք եւ կնահանօք: Ո՜ւր էր բողք նախարարացն, ընդ վայր խրատ եպիսկոպոսապետին Ներսիսի: Յետաւուստ ուրեմն դառնացան զկծեցան նախարարքն եւ միաբանեալ բազմաց ի նոցանէ անկան յանկարծ ի վերայ արքունական ձեռակերտին եւ սուր ի վերայ եդեալ զբնակիչսն կոտորեցին. անազան հաս ի վերայ եպիսկոպոսապետն սուրբ, հազիւ թափեաց ի նոցանէ զմանկտին անդիւացս՝ որ ի գերութիւն սահմանեալ էին[1]:

Գրգռէր այնուհետեւ Արշակ ընդ իւրոցն իսկ նախարարաց միաբանելոց ընդ առաջնորդութեամբ Ներսէհի Կամսարականի. ապաւաւորօքն մտերմօք եւ վրացի գնդաւ՝ ի նեղ իմն անկանէր թագաւորն, զի նոքա ի Պարսիկս յեցեալ էին եւ ինքն չունէր այն օգնականութեան իմիք ի Յունաց: Յայնժամ եպիսկոպոսապետն՝ որ յետ անցիցն Գնելայ թողեալ լքեալ էր ամենեւին զարքունիսն՝ կոչեցաւ անկանել ի մէջ: Խոստումն ուղղութեան թագաւորին եւ սոէպ պաղատանք նախարարացն եւ եպիսկոպոսացն ժողովելոց հաւանեցուցին զայլ լինել համօզակէր եւ հաշտեցուցիչ ի մէջ պառակտելոցն, եւ հաստատեցաւ իսկ ուխտ ի միջի՝ նոցա ծառայել միամտութեամբ եւ սմա իշխել ուղղութեամբ:

Այլ չյերկարեաց Արշակ ի խոստմանն. ի բազմաց ի նախարարացն խնդրեցաւ վրէժ, ազգ Կամսարականացն կոտորեցաւ, բաց ի փախուցելոցն առ Հոռոմս ի Սպանդարատայ (յեղբօրորդւոյն Ներսէհի) եւ յորդւոց նորա ի Շաւարշայ եւ ի Գազաւոնէ, եւ գրաւեցան յարքունիս քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ եւ աւանն Արտագերից, եւ համբարք նոցա ածան յԱրմաւիր՝ ուր նստէր թագաւորն: Գիտակունք սպանելոց թողան գէշ գազանաց ի բացի, եւ շինականքն՝ որ կամեցան ամփոփել զսկերս տերանցն, մահու պատուհաս կրեցին. իսկ զԽադ եպիսկոպոս Բագրեւանդայ եւ Արշարունեաց որ ոչ պատահեաց յառաջնում նուագին եւ այսմ ժամանեալ՝ կշտամբէր զթագաւորն, հազիւ ապրեցուցին ի քարշանաց եւ ի քարկոծանաց այլք կորովիք տայգերք դստերն նորա յԱպահունեաց տոհմէ:

Այսպէս անդէն ի ժամանակի զի խաղաղութեան դաշինք Պարսից ընդ Յովիանու կնքեցան եւ դատարկացաւ ձեռն ժառանգական թշնամւոյն թագաւորութեանն Հայոց, բեկեալ իմն էին սիրտք նախարարացն եւ ցրտացեալ ի թագաւորէն եւ յօժարագոյնք իմն ի Պարսիկս, յանձն լինէին նոցա եւ մեծարեալք յարքայից արքայէ դառնային յիւրեանս[2]: Ո՜ւր ժողովեալ խրատէր զնոսա եպիսկոպոսապետն ի սէր եւ ի հնազանդութիւն հայրենի

1 Խոր. Գ. Գլ. ԽԷ:

2 Sollicitans quosdam optimatum et satrapas.



Digitized by Google

թագաւորին եւ ի միաբան պատերազմ ընդդէմ հալածիչ եւ մա-
զանկրօնիկ թագաւորին: «Եթէ բեւր չար իցէ, ասէ, Արշակ, սա-
կայն աստուածապաշտ է, եւ եթէ մեղաւոր եւս իցէ, անկացն թա-
գաւոր ձեր է»[1]: Ընդ էն իսկ յառաջնում հաշտութեանն՝ Մե-
րուժան Նախարարեան Արծրունեաց եւ նորին քեռայր Վահան Մա-
միկոնեան չկամեցեալ հաշտել ընդ թագաւորին՝ երթեալ էին
հաստատ առ Շապուհ ծառայել նմա հակառակ թագաւորին
իւրեանց եւ հայրենի աշխարհին՝ յաւակ թագաւորութեան
Հայոց:

Սոցա առաջնորդութեամբ եւ խորհրդով տասնեքեա Ալա-
նայոզան ոմն պաշտօնէիկ հզօր գնդաւ՝ գալ առնել զթագաւորն
Հայոց: Խոզաւ լքաւ Արշակ յիւրոցն օգնականութենէ, զոր
յիշեցուցանէր զօրավարին Պարսից զհամբերութիւն ազգականութեան.
այսպէս առաւ ի նենգ անկեալ եւ տարի հայեցեալ ի բանս խա-
ղաղութեան եւ հաշտութեան եւ հրապուրանաց եւ երդմանն
Շապհոյ[2], յանձն առ երթալ յարքունիս ատրպատն Արտաց հան-
դերձ սպարապետաւն իւրով Վասակաւ, արձակելով յառաջա-
գոյն զպատարագս[3]: Զառաջինն մեծարեցաւ Արշակ, ապա յետ
թերեւս ամսոյ[4] հրամանս ետուր Շապուհ հանել զնա ի
խորշ մի, կոչել զաչսն[5], եւ կապեալ սարեօք արծաթեօք[6] կամ
երկաթեօք ի խուժաստանի՝ յԱնդմշին (յԱնուշն) բերդի կամ
յԱգաբանս զղեկի պահել (369). անդ չարչարեալ մեռանէր զբռ-
նաւորեամբ[7] եւ կամ առնէր ինքն անձամբ անձին[8]. իսկ Վա-
սակ մորթեալ ըստ Պարսից օրինակին կախեցաւ զմորթ բերդին[9]:

Այսպէս թողաւ անպատուական ի Հռոմայեցւոց թագաւորն՝
որ անեալ բանեալ ընկեց նոցա հաւատարիմ ըստ միաբանութեան
Ամիանու. միայն միրջին զանազանութիւն նորա յաղշաւանքն Յուլիա-
նոս ուծանցոյց առաջքէն զնոսա յիւրմէ, մինչեւ Գիրանեայ ճար-
տարախօսն բիծ եւս մեծանութեան ի Պարսիկս զԱրշակաւ արկանել:

125

Սաղ իսկ յառաջ քան զայլանել թշնամութեանն՝ առաքեալ
էր Շապհոյ առաքել Արշակայ հրաման ածել եւ զդշխոյն Հայոց,
որպէս եւ զկանայս նախարարացն, ոչ միայն զայնոցիկ որ հաւա-

1 Բուզ. Դ. Գլ. ԺԱ:
2 Ամմ. ԻԷ. 12. per exquisitas perjuriisque mistas illecebras. եւ միաբան ընդ նմա փաւստ. Բուզ. Դ. ԾԲ. «Շապուհ արքայ մեծաւ աղաչանօք եւ պատարագօք եւ հրովարտակօք եւ սիրով զԱրշակ առ ինքն կոչէր, զի արասցեն ի մէջ իւրեանց սէր եւ խաղաղութիւն եւ բարեկամութիւն մեծ». եւ ԾԳ. «իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն... նա (Շապուհ) եւս բերել ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, եւ յղեաց»:
3 Խոր. Գ. Գլ. ԼԴ. Բուզ. Դ. Գլ. ԾԳ:
4 Ամմ. անդ: Բուզ. Դ. Գլ. ԾԴ. էջ 168:
5 Ամմ. անդ:
6 Ամմ. անդ:
7 Ամմ. անդ:
8 Խոր. Գ. Գլ. ԺԵ: Բուզ. Ե. Գլ. Է:
9 Բուզ. Դ. Գլ. ԾԴ:

Կիւրղակ եւ Արտաւան հրեշտակութիւն առ Վաղէս եւ աղաչէին զօրօք առաքել նպաստացանել զՊապ յաթոռն։ Այլ քանզի վաղ զայրացեալ էր անհնարին Շապուհ ընդ հռոմայեցւոց վասն ընդունելութեանն այնորիկ, յայն սակս ի դէպ իմն համարէր կայսր չօգնել առ ժամն զօրու, այլ Տերենտեայ դքսի հրաման տայր ածել մուծանել զՊապ ի Հայս, այսպիսի ինչ զգուշութեամբ պայմանաւ՝ զի առաջնորդեսցէ Պապ ազգին, բայց ոչ շուքս թագաւորութեանն եւ զանուն առ ժամն մի կրիցէ, զի մի քակեալ ինչ զդաշինսն հռոմայեցիքն թուիցին։

Իբրեւ զգաստ լինէր այսմ ամենայնի Շապուհ արքայ, ամենեւին իսկ ի մոլեգնութիւն ելանէր. մեծաւ բազմամբքն զօրօք քինախնդիր ի Հայս արշաւէր կամ ինքն եւ կամ զօրավարօքն առաքելովք։ Զահի հարաւ Պապ եւ ընդ նմա Կիւրղակն եւ Արտաւան, եւ իբրեւ չգտին ուստեք թիկունս օգնականութեան, դիմեալ անկան յամուրս լերանց ի վերայ սահմանաց հռոմայեցւոցն եւ ի լերինսն Խաղտեաց (կամ Լազիկայ կամ Կողքեայ)[1]. անդ սակաւ գնդաւ վատառակարեկ առնէին զամիսս 5 զզօրս թագաւորին Արեաց, թագուցեալք ի թաւուտս թանձրախուռն անտառացն եւ խոտորեալք յաղամաղ հեռս շաւղաց վայրացն։ Այնուհետեւ յուսահատեալ արկանել զնոսա ի բուռն, եւ զի տալ եւս անբանւոյն սատակեցեալ ներէր՝ յետ ապականելոյ զամենայն մըրգաբերս երկրին եւ զամուր ամուր տեղիսն քանդելոյ կամ առնլոյ[2] զամուրսն Վանայ, զԱրտաշատու, զՎաղարշապատու, զԵրուանդաշատու, զԶարեհաւանայ, զԶարիշատայ[3], տայր ամենայն բազմութեամբ պատեալ պաշարէր զԱրտագերսն բերդ եւ յետ ազգի ազգի կռուոց՝ լուծանէ լքան ամրականքն (որ ընդ ամենայն զամիսս իբրեւ 14 եղեն ժուժկալ՝ յուսալով մանաւանդ թիկանց օգնականութեան զոր բերիցէ Պապ ի կողմանց հռոմայեցւոց)[4]. վանեալ մկանդեալ առնոյր գունդն Պարսից եւ հրձիգ արարեալ եղծանէր, եւ զթամբիշնն զկին Արշակայ արքայի հանդերձ գանձուք տարեալ վարէին ի գերութիւն[5]։

ՅԱսորեստանի ընդ սայլացից հանեալ սպանին տիկինն[6]։ Վաղ քան զայն եւ Մերուժան Արծրունի նոյնպիսի անցս էր անցուցեալ եւ ընդ կանայս նախարարացն կախելով զնոսա զբերդից իւրաքանչիւր, քանզի նմա իսկ յանձն էր աշխարհն հրամանաւ Արեաց արքային։

Այնուհետեւ հնարէր խորամանգն Շապուհ փորձել միւսանգամ փայփայելով եւ ծածուկ պատգամաւորութեամբ ի կա-

1 Որպէս եւ մեր եւս պատմագիրք զայն կողմանս Խաղտեաց գնեն մերձ առաւել փոխատեկից. տես Ինճիճ, 221. Բուզ. Դ. Գլ. ԾԲ. ի վերջն։

2 Անմ. անդ։

3 Խոր. Գ. Գլ. ԼԵ։ Բուզ. Դ. Գլ. ԾԵ։

4 Բուզ. Դ. Գլ. ԾԵ։

5 Անմ. անդ։ Բուզ. անդ։ Խոր. անդ. Թէպէտ եւ սա ոչ ի բռնութենէ, այլ ի կամաց տայ լինել անձնատուր։

6 Խոր. անդ։ Բուզ. Դ. Գլ. ԾԵ։

Digitized by Google

կածանս ի վերայ Նիւղակայ եւ Արտաւանայ, եւ գրգռէր իմն զթագաւորն մանուկ իբրեւ թէ խլեսցեն իմն նոքա ի նորա վերայ եւ տաւէր իմն իշխանութեան նմին թողուցուն։ Նոյն թագաւորն ի բանս թշնամւոյ աշխարհին իւրոյ եւ տոհմի եւ զգլուխ արանցն առաքէր առ Շապուհ։

Յետ թօթափելոյ զխրատուս պատանեկին՝ դիւրաւ այնուհետեւ թագաւորութիւնն հանդերձ թագաւորաւն իբրեւ աւար կայր առաջի թագաւորին Պարսից։ Նմին իրի հարկ համարեցաւ կայսր առաքել զԱրինթէ կոմս, զայր քաջ հռոմէական լեգէոնօք ի Հայս։ Բայց Շապուհ քանզի տակաւին չհամարէր զանձն կազմեալ ի մարտ պատերազմի ընդ Հռոմայեցւոց, կոչեաց զզօրսն յետս, որք վաղ սկսեալ էին մտանել միւսանգամ ի ներքս ասպատակաւ (370)[1]։ Այլ որպէս հաւանութեան թուի՝ այս իրք յետ միոյ ճակատու դիպեցան որ ի Ձիրաւն կամ ի դաշտավայրին Բագրեւանդայ առ ընդնոտամբն Նպատայ մղեցաւ, առաջի Եփրատա գետոյ, յորում կային առ Տերենտ եւ Արինթէ, Սմբատ տանուտէր որդի Բագարատայ եւ Մուշեղ որդի Վասակայ եւ Սպանդարատ կամսարական, եւ անտի բաց ի պարսկական զօրագլխացն՝ Մերուժան, Ուռնայր արքայ Աղուանից եւ Շերգիր Գելաց արքայ։ Խառնեցաւ ճակատն սաստիկ յերկոցունց կողմանց. նահատակեցան մանկտին Պարսից եւ Հայոց՝ որոց առաւելն իմն էր ապարափակն Հռոմայեցւոց։

Ի խառնուրդսն անկաւ Շերգիր ի ձեռն Սպանդարատայ, Ուռնայր հանաւ ի պատերազմէն խոց վիրաւոր ի ձեռաց Մուշեղի, որ չառ յանձն սպանանել զայր թագաւոր. իսկ Մերուժանայ վիրաւորեալ երիվարն՝ եղեւ ձերբակալ յեղեգս շամբի Կոգայովտի ի ձեռն Սմբատայ ասպետի՝ որ ջեռուցեալ շամփուր երկաթի ատրագոյն եւ բոլորեալ պսակ եդ ի գլուխ նորա եւ ասէ. Պսակեմ զքեզ, Մերուժան, քանզի խնդրէիր թագաւորել Հայոց, եւ ինձ՝ զի ասպետս եմ՝ պարտ է զքեզ պսակել ըստ սովորական հայրենի իշխանութեան իմում[2]։ Իսկ Վահան նորին քեռայր վաղ սպանեալ էր յիւրմէ իսկ որդւոյ ի Սամուելէ՝ որ անկաւ փախստեայ ի Խաղտիս։

Բայց զՊապ չէր թողեալ զօրավարացն Հռոմայեցւոց մտանել ի ճակատ անդր, այլ ի Նպատական լեռնէ դիտէր տեսանել թագաւորն սրտաթունդ զկռիւն, ունելով առընթեր զեպիսկոպոսապետն սուրբ զՆերսէս, որ մերթ յաղօթս կայր եւ մերթ յորդորէր զթագաւորն ուղղել զսիրտ իւր։ Յետ ճակատուն միջնորդ ի մէջ անկեալ սրբոյն՝ տայր խոստանալ թագաւորին գնալ հայրաբար ընդ նախարարսն, եւ սոցա չվտարանջել. եւ դարձոյց իսկ

1 Ամ. ԽԶ։

2 Ըստ Փ. Բուզ. Է. Գլ. ԽԹ. յետոյ ուրեմն ի ճակատու ուրեք ի Բարիանէ նահալածէ Սիւնեաց սպանեալ նա ի Կոգայովտին։

վճարեցին յաղթութիւն կատարեալ։ Յետ այնորիկ յերկոցունց կողմանց յապաղումն իմն լինէր եւ միայն մանր մանր ինչ ճակատք մղէին՝ երբեմն սոցա եւ երբեմն նոցա յաղթելով։ Իբրեւ այսպէս սպառէր մաշէր ժամանակ ամարայնոյն՝ եղեւ առժամն դադարումն պատերազմին յերկոցունց կողմանց։ Այնուհետեւ երկոքին տեարք Արեւելեան եւ Արեւմտից որք հեռի իսկ էին ի գործոյ պատերազմին՝ դարձան յիւրաքանչիւր տեղիս, կայսր յՀերապօլեայ Ասորւոց յԱնտիոք, եւ Շապուհ (թերեւս ի Խորասանէ) ի Տիզբոն (373)[1]։

127

Մինչ դեռ յԱնտիոք էր կայսր՝ ստէպ պատգամ առ նա հասանէր ի կողմանց Հայոց աշխարհին վասն Պապայ արքային։ Տերենտիոս դուքս զօրացն ի Հայս, այր բարեպաշտօն եւ ճշմարտահաւատ[2], կասկածանօք եւ հակառակութեամբ իմն էր ընդ արքային Հայոց, թերեւս վասն տարապարտ սպանման եպիսկոպոսապետի աշխարհին Մեծին Ներսիսի, զոր ինքնին նուիրեաց թագաւորն եւ վասն խանգարման կարգացն լաւութեան, եւ բազումք իսկ ի Հայոց անտի միաբան էին ընդ նմա թերեւս վասն նորին պատճառանաց։ Բայց Տերենտեայ չէր մարթ զքուն պատճառս իրացն մերկանալ առաջի արիանոս կայսեր՝ որ յառաջ քան զամենայն ընդ կորուստ ուղղափառ եկեղեցեացն կամէր։ Շատ համարէր Տերենտ ցուցանել կայսեր զամբարհաւաճութիւն մանկանն թագաւորի եւ զանազորութիւնն առ հնազանդեալսն իւր եւ զապանութիւնս։ Այնուհետեւ հրաւիրեալ կոչէր կայսր զարքայն Հայոց յԱնտիոք պատուով թագաւորաբար, զի միաբան խորհուրդ խորհեսցի իբրեւ ընդ թագաւորի դաշնաւորի ընդդէմ հասարակաց թշնամւոյն ի ժամանակի անդ դադարելոյ պատերազմացն։ Այլ ի Տարսոն Կիլիկեցւոց հասեալ՝ մեծարանաց իմն պատճառանօք պահեցաւ անդէն թագաւորն, ոչ ի բանակ անդր կայսեր կոչէր եւ ոչ զքուն պատճառս փութանակի զալստեանն կարէր իմանալ, քանզի ոչ ոք հանէր նմա ի վեր։ Այսպ ուրեմն ծածուկ զուշակութեամբ ի վերայ հասանէր թէ Տերենտոն թղթով ազդ առնէ կայսեր անձապարել առաքել զայլ ոք ի թագաւորութիւն Հայոց աշխարհին, զի մի, ասէ, առ ատելութեանն զոր ընդ Պապ արքայ ունին եւ վասն ահին թէ գուցէ դարձցի նա այսրէն յետս՝ ազգ մի այսչափ եւ այսպիսի եւ մեզ կարեւոր անցցէ ի կողմն Պարսից միանալ ընդ նոցա իշխանութեամբն, որք ի բնէ իսկ ցանկացեալ էին յափշտակել զազգն զայն բռնութեամբ կամ ահիւ կամ ողոքով։ Ի միտ առ այնուհետեւ թագաւորն զվտանգն մօտալուտ

1 Ամմ. ԻԹ. Գլ. Ա։

2 Ս. Բարսեղ Թղթ. 99, 175 եւ 250. զՏերենտ նորա զարքիւնագուհեա ի Սա- մոսատ՝ կոչէ «պարիսպ չաաաւիրք ի բարեպ- աշտութեան» (Թուղթ 105 յամի 372)։ Թեոդորետ. Եկեղ. Պատմ. Դ. Գլ. ԻԲ։

Digitized by Google

հատանել. խորհեցաւ հնարս եւ ոչ ինչ պատեհագոյն քան զփու-
թանակի փախուստ համարեցաւ ըստ խրատու այնոցիկ յորս
վստահն էր, եւ ժողովեալ երկքհարիւրոցն ուղեկցաց՝ ընդ երկու
առաջադագնաց երիվարօք ելեալ ի քաղաքէն անձապարէր կողմա-
գնդավին: Ըստ հասարակ վայրացն փութացաւ զկնի եւ աղաչէր դառնալ
յետս մինչդեռ յարուարձանեայսն էին, եւ իբրեւ ի բաց դարձա-
ւորն զանգիտեալ ի մահուն պատանալեաց՝ առաքեցաւ լեգէոն մի
զկնի Թագաւորին, այլ ինքն իսկ Թագաւորն դարձաւ յարձակե-
ցաւ սակաւաձեռն գնդաւն ի վերայ նոցա իբրեւ մօտն հասեալ
էին, եւ իբրեւ զկայծակունս այնպէս զնետսն սփռէր գունդն
Հայաստանեայց եւ հանէր զնոսա փախստեայս: Ըստ ինքեանք
ձեռամբ եւ մեծաւ սաստիկ աշխատութեամբ ընթացեալ երկուս
տիւս եւ երկուս գիշերս՝ այնպէս հասանէին յափն Եփրատայ:
Իբրեւ չգտին նաւ անցանել ընդ գետն յաղթ, եւ բազումք չէին
տեղեակ ի լողն գնալոյ եւ մանաւանդ ինքն Թագաւորն առաւել
քան զամենեսեան տաղտապէր՝ յայնժամ գտեալ նոցա տիկս,
քանզի լի էին այգեստանեօք վայրքն, առին կապեցին յերկուց եր-
կուց տկաց վերայ մի մի բազմոցս եւ նստեալ միոյ միոյ յիշխանաց
անտի եւ Թագաւորին իսկ ի գլխովին՝ անցեալ հասանէին յայն-
կոյս (որպէս համանութեան Թուի՝ առաջի Սամոսատ քաղաքի),
եւ մնացեալքն ի դատուէ անտի պատուարացն հեծեալ ի ձիս ի
լող անցանէին մեծաւ աշխատութեամբ՝ լուծեալք, խոնջա-
ցեալք անդր հասանէին զնոցա կնի: Ընդ իբրեւ առ սակաւ մի
ոգի առին եւ արծարծեցան՝ արագագոյնս քան զառաջին աւուրսն
փութային:

Ընտուստ իբրեւ զգայր զանցս իւրացն կայսր, զմտաւ ածեալ
թէ ի թշնամութիւն դարձցի կամ յաւելցէ ի նոյն այնուհետեւ
Թագաւորն, յորժամ յիւր աշխարհն ճողոպրեսցի, անձապարէր
առաքէր հազար մի աղեղնաւորաց հեծելոց թեթեւազինացից զօ-
րավարութեամբ Դանիելի կոմսի եւ Բարզիմերայ հազարապետի
վահանաւորացն: Մինչդեռ Թագաւորն իւրովքն հանգերձ շըր-
ջանս իմն զճանապարհայն գործէր եւ յերկարէր զշաւիղսն, ապա
քանզի հմուտք վայրացն էին, բաժանեալ յերկուս գունդս ընդ
կարճ ճանապարհ կանխեցին կալան զառաջս նոցա եւ զգլուխ եր-
կուց ճանապարհացն, զի հարկ էր ընդ մին ի նոցանէ անցանել:
Այլ ամենայն եղ ի դերեւ: Քանզի ոմն յուղեւորաց՝ յետ տե-
սանելոյ զգունդս զօրանաւորացն՝ պատահեալ Հայոց խոնջելոց
վաստակելոց ի ճանապարհէն, ածաւ առաջի Թագաւորին եւ ազդ
արար զերան գաղտ Թագաւորին: Նա թագուցեալ զահն՝ առաքէր
վաղվաղակի ընդ կողմն աջակողմեան ճանապարհին հեծեալ մի
իբրեւ այն թէ վանս եւ կերակուր պատրաստեսցէ, եւ յետ սակաւ
ինչ միոյ արձակէր մեւս եւս հեծեալ ընդ կողմն ձախու ճանա-

պատրհին, որ չէր ինչ առաւել թէ այլ զք ընդ այլ յղեցաւ։ Իբրեւ այն յարդարեցաւ առ ի գաղափարաց զմիտս դատաւորացն այնուհետեւ թագաւորն ընդ մեծացաւն ընդ որս անցեալ եկեալ էր ուղեւորն՝ նորա առաջնորդութեամբ պատուեալ անցանէր իշխանօքն ընդ դերբաւուքն եւ ընդ նմա եւ նորա շաւիղն որ եւ զդրատու բեռնակրի անձուկ էր։ Այսպէս Մայր զօրն հրամայեցի ի թիկանց թագաւորին, եւ ձերբակալ արարեալ զպատրաստութեան նորա զհեծեալսն արձակեալս խաբկանօք՝ կայսին սպասէին դատաւորի զալստեան թագաւորին իբրեւ որսոյ որ վազ զրուեալ փակեալ իցէ։ Այլ թագաւորն Հայոց Պապ անվնաս հասանէր ողջանդամ յերկիր թագաւորութեան իւրոյ եւ ընկալաւ զնա ուրախութեամբ աշխարհն։ Սակայն կաց նա հաստատուն ի հաւատարմութեան ընդ Հռոմայեցւոց իբրեւ դաշնաւոր նոցա եւ ապար զօրականացն մառացօնս, եւ թերեւս եւ ինքն եւս Վաղէս թոյլ տայր նմա թագաւորել եւ պաշտպանէր իսկ նմա։ Բայց Դանիէլն եւ Բարզիմեր իբրեւ խաբեալք պատրեալք դարձան ի բանակն կայսերականն՝ հանապազ լսէին թշնամանս վատութեան, որպէս թէ զօր ի բանին կայր՝ կորուսին. յայն սակս մատեան ի տկարահոգմն անդր կայսերն՝ որ միշտ մէտ ի կասկածանս էր, մանաւանդ ի հնարից դիւթութեան[1]. Կախարդ է, ասեն, Պապ, եւ արուեստիւ մեզ զանձամբ պատեալ՝ անց յաներեւոյթս. անհնարին հմուտ է Կիրկէական մոգութեանցն առ շրջելոյ եւ խեղելոյ եւ ծնգելոյ զմարմինս մարդկան, եւ ակնարկէին իմն թէ եւ ինքն կայսր չէ այսուհետեւ յապահովս։

Յայնժամ հետէ անհնարին թշնամութեամբ էր կայսր ընդ Հայոց թագաւորին եւ հանապազ նիւթէր դաւ հնարաւորութեամբ՝ զի կամ բռնութեամբ եւ կամ գաղտ յարուցէ արկանիցէ, եւ զիրացն մանրքննաւորութիւն ծածուկ իսկ թղթովք առնէր յանձն Տրայիանոս՝ որ անցեալ կայր յայնժամ ի Հայս փոխանակ Տերենտեայ ի գործ զօրավարութեան զնդին Հռոմայեցւոց։ Տրայիան յետ զրաւելոյ զմիտս թագաւորին քաղցրութեամբ եւ ողոքով, մերթ տալով թուղթս ողջունացոյցս ի կայսերէ իբր բարեկամութեամբ եւ մերթ ինքնին ի խրախուճս թագաւորին բազմելով, եւ այնպէս յետոյ ուրեմն յօրինեալ յարդարեալ զամենայն մանրքննայս դաւուն՝ մեծարանօք ի ճաշ հրաւիրէր։ Նոյն թագաւորն յանդէտս եւ անց բազմեցաւ ի տաճարին խրախութեան ի պատուական բարձին։ Իբրեւ ընտիրք համեղանացն առաջի եղան եւ տունն մեծ հնչէր ի ձայնէ բարբառոյ աղեղանց նուագարանաց եւ փողոցն արգնդաց եւ իբրեւ ընդ գինիս մտին, ինքն կոչնատէրն (կոմս Տրայիանոս) պատճառանօք ի բաց ել ի հացէն, եւ անդէն մի ոմն ի բարբարոս զօրուէ սակրաւորացն (°)[2]

1 Տես Վերագոյն էջ 351.    2 Suprae.

Digitized by Google

չէ հեռի ի ժամանակագրութենէ համեմատեցի պատմագրին, այնու՝ զի եւ սա նմա հաշուելով զամս թագաւորացն Հայոց ի Ներսէսէ ի վեր՝ մահն Պապայ անկանի մօտ աւուրեան յամի 376։ Սակայն եւ այնպէս՝ քաջ պատահութեանն ոչ միայն յերկուց (յարտաքին եւ ի տոհմային) պատմագրաց անտի, այլ եւ յայսմ իսկ ի սեպհական ժամանակագրութենէ իւրմէ սատարեալ՝ գտնելով զՊապ համեմատ ժամանակացն Թէոդոսի Ա., այսպէս։

Յետ մահուն Արշակայ Բ. աղաչէ, ասէ, եպիսկոպոսապետն Ներսէս զկայսր Թէոդոս՝ օգնականութեամբ հաստատեալ թագաւորեցուցանել Հայոց զորդի նորա զՊապ. զոր Տերենտիանոս սպարապետն զօրու ծանու ի Հայս, բերելով զՊապ ընդ իւր եւ մերժի անտի Մերուժան Արծրունի որ գրաւեալ կալեալ էր զերկիրն։ Շապուհ Բ. զչարեալ գումարէ գունդ հարուստ ի ձեռն Մերուժանայ, սակայն եւ Թէոդոս այլ գունդ ստուարացուցանել զլեգէոնն ի Հայս եւ այսպէս կատարի կռիւն եւ յաղթութիւն ի Ձիրաւական դաշտին՝ առաջնորդութեամբ Տերենտիանոսի, Ադդէի կոմսի եւ Գորգոնոսի իշխանի հետեւակ զօրուն։ Վաղ մոռանայ Պապ զերախտիս կայսերն Թէոդոսի. ի ժամանակի խռովութեան իւրոյ ի Թեսաղոնիկէ (որոյ առոյգ թուականն է 390)՝ նշկահէ զնա, զՏերենտիանոս լեգէոնօք պահապանօք Հայոց ի բաց հալածէ։ Դառնայ այսրէն Տերենտիանոս հրամանաւ Թէոդոսի, յանկարծ անկանի ի վերայ բանակին Հայոց, առնէ կիսակատար զգլուխ Գնելոյ նահապետի Անձեւացեաց սպարապետի արեւելեան զօրուն եւ ըմբռնէ զՊապ։ Անկանի յաղերս առաջի զօրավարին թագաւորն Հայոց՝ մի անդէն սպանանել, այլ յանդիման կացուցանել զնա կայսերն. շնորհէ Տերենտիանոս, յանդիման լինի Պապ առաջի Թէոդոսի ի շղթայս եւ գլխատի տապարով[1]։

Նաեւ յայս ի համօրէն ընթացից պատմութեան է՝ թէ չէր հնար Թէոդոսի Ա. առնել գործ ընդ Շապհոյ Բ., եւ ոչ էր նորա այնպիսի զօրութիւն ի Հայոց աշխարհին, Տերենտիանոսն (Տերենտն փ. Բուզանդացւոյ կամ Տերենտիոսն Ամմիանու), որպէս եւ Ադդէն (Ադէն փ. Բուզանդացւոյ կամ Արինթէն Ամմիանու) էին զօրք ի Հայս եւ ի Վիրս (որպէս տեսաք) ոչ առ Թէոդոսիւ Ա. (յետ 379 ամին) այլ առ Վաղեսիւ նորին առաջին աթոռակալաւ։ Թէպէտ եւ Գորգոնոսն դեռ կենդանի էր առ Թէոդոսիւ Ա. այնու զի յիշի նա ի Թէոդոսեան մատենին իբրեւ վերակացու կայսերական կալուածոց (յամի 386), սակայն Տերենտն եւ Արինթէ վախճանեալ էին վաղագոյն՝ անկանելով ի ճակա-

ստիպաւոր զօրքն ի Թիկանց կուռէ նորա կարգեալք պատեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրեւ ընդ գինիսն մտին, որպէս զատուցին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ, եւ առհասարակ թմբկահարք եւ սրնգահարք, քնարահարք եւ փողահարք իւրաքանչիւր արուեստովք պէսպէս ձայնիւք բարբառեցան։ Եւ վահանաւոր լեգէոնին հրաման եառուն. եւ մինչ դեռ թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր, եւ նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր սուսեր ոսկի ի մատունս իւր, իսկ աջ ձեռանն եդեալ էր ի դաստապանն նրանին՝ զոր կապեալն էր յակլու ազդերն իւրում, եւ մինչ դեռ բերանն ի բաժակին էր յըմպելն, եւ ս-չըն յառաջ կայր պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն, հրաման լեներ ակնարկելով զօրացն Յունաց։ Եւ լեգէոն ստիպաւորքն երկու ի Թիկանց կուէ կային ի սպասու ակներեւ վահանօքն, յանկարծօրէն կից ի վեր առեալ զսակուրսն՝ զարկանէին թագաւորին Պապայ. մին կէս զուլն հարկանէր ստիպաւն, եւ միւսն եւս ստիպաւորն զաջ թաթն ձեռինն՝ որ կայր ի վերայ դաստապանին նրանին՝ հարկանէր կտրէր եւ ի բաց ընկենոյր։ Անդէն ի բերանն տապալէր թագաւորն Պապ. եւ գինին աղտոտեաւ եւ արիւնն ապականեցին նովաւ հանդերձ ի վերայ բաժակաց ակնանցն անկանէր, եւ անդէն սատակէր թագաւորն Պապ։ Ընդ չինաթելոյ սանրին խառնութեան...»

1 Խոր. Գ. Գլ. ԼԶ—ԼԹ.

տու անդ ընդդէմ Գոթաց առ Ադրիանուպօլսաւ (յամի 378) ընդ իւրեանց կայսերն ընդ Վաղեսի եւ ընդ 35 զօրավարաւն: Այս յայտ ուրեմն է յամենայն կողմանց՝ թէ միայն Վաղեսի ժամանակացն կշռի ժամանակ (6—7ամեայ) թագաւորութեանն Պապայ, որով երթեալ կցի այն ընդ ժամանակի թագաւորութեան հօրն իւրոյ ըստ նորոգ հաշուին որ վերագոյն ընծայեցաւ:

Յետ Փառներսեհի (Փառենայ՝ ըստ Փ. Բուզ.) առնոյր զեպիսկոպոսապետութիւնն սքանչելին Ներսէս Մեծն, թոռն Յուսկան, յԱթանագինեայ՝ որ ընդ եղբօրն իւրոյ Պապայ մերժեցան ի կարգէ եպիսկոպոսապետութեանն վասն վարուցն անարժանութեան: Ուսեալ Ներսիսի ի հրահանգս ի Կեսարիա Գամրաց (ըստ միաբան վկայութեան Փ. Բուզ. եւ Մ. Խորենացւոյ) ունէր գիտութիւն ուղղիչ եռանդեանն՝ որով եկն ի նորոգութիւն եւ ի յարդարումն եկեղեցական կարգաց աշխարհին. եղեւ նա զօդ միաւորութեան երկուց թագաւորացն Հայոց աստ՝ ընդ իւրեանց նախարարացն եւ անտի՝ ընդ գլխաւորաց հռոմէական պետութեանն: Ընթացք պատմութեան նորա են կից ընդ պատմութեանն Արշակայ Բ. եւ Պապայ եւ ընդ ուղղութեան ժամանակաց նոցա ուղղի եւ նորայն: Յերկոցունց տոհմային պատմագրաց պատմի դեղով ի Պապայ վախճանեալ, ապա մօտ ուրեմն յամս 373—374: Զաքսորել նորա ի Վաղեսէ ի կղզի մի անբնակ եւ զդառնալ անտի հրամանաւ կայսերն Թէոդոսի եւ լինել ի տիեզերական ժողովն Կոստանդնուպօլսոյ (381)՝ ոչ ժամանակագրութիւնն առնու յանձն եւ ոչ արձանագիրք անուանց ժողովոյն այնորիկ, որոց անհնար էր չցուցանել զանուն նորա, որպէս արձանագիրք Նիկիական ժողովոյն ցուցանեն զանուն Արիստակեայ, որ առաւել անծանօթագոյն իմն անուն ի Յոյնս էր:

Այլ երբեւ փոխարէն իմն նմին՝ գտանեմք զՄ. Ներսէս ի Կեսարիա Գամրաց յամի 371 կամ 372 ի ժողովի (32) եպիսկոպոսաց առ սրբովն Բարսղիւ, զի յանուանէ յիշատակի նա ի միաբանական թղթին առ Դամասոս քահանայապետ Հռոմայ եւ առ եպիսկոպոսունս արեւմտից զի առաքեսցին արք՝ որ եկեալ յարդարեսցեն զիրս եկեղեցեացն արեւելից, ածելով ի միաբանութիւն զեպիսկոպոսունս յետ այնչափ արիանոսական գժտութեանցն[1]:

## 128

Քանզի չգոյր Պապայ որդի հուժկու, աճապարեաց կայսր Վաղէս առաքել Հայոց թագաւոր զոք արշակունի, եւ ուրախութեամբ ընկալան զնա Հայք (374): Սա էր պատանեակն կորովի Վարազդատ արշակունի եղբօրորդի Պապայ (ըստ Փաւստ. Բուզանդայ). առանց իրիք տարակուսանաց է՝ թէ Վարազդատ

1 Ի Թուղթս Ս. Բարսղի՝ 69: — Տես եւ վերագոյն եջ 345—346:

էր զոր փոխանակ Պապայ պահէին ի Տարսոն՝ կամէր առաքել ի Հայս Վաղէս, յառաջ քան զամ մի կամ երկուս։ Այլ նորա լեալ յաշխարհին Հոռոմոց երեւելի ի բանամարտիկս եւ ի գազանամարտի ի Պիսաս Խատագիացւոց եւ ի Հեղլենուպոլիս Նեղղաղացւոց եւ ի սահմանակողմանս արեւմտից ընդդէմ գերմանական ազգաց (Լոնգոբարդաց)։ Զնոյն արութիւնս քաջութեանց եւ ճարտար աշխարհին ցուցանէր ի թագաւորութեանն զհետ աւազակաց պնդեալ ի դժուարս Դարանաղեաց եւ վարէր զկնի նոցա զԵփրատաւ՝ յորժամ գունդ աւազակացն սրանայր առաջի նորա՝ խարտակելով զկամուրջն ընդ որ անցին, եւ զարհուրեալ աւազակացն՝ զէնընկէց ի ձեռն եկին[1]։

Արքայ Շապուհ ի վերայ առաջնոց իւրոց աղետիցն լուեալ եւ զմահն Պապայ՝ զոր մեծաւ իսկ խնամով ջանացեալ էր ածել զիւրեւ, տրտմէր տխրէր ի կոր կործանէր։ Եւ իբրեւ զայն եւս զգայր թէ զօրանայ իմն զօրն հռոմէական ի մէջ Հայոց աշխարհին՝ գլխաւորութեամբ Տրայիանոս բանակեալ (ի Բագրեւանդ), քանզի ոչ միայն ճոխութիւն մեծ էր զօրավարացն Հոռոմոց ի վերայ նորոյ թագաւորին, այլ եւ ըստ խրատու Մուշեղի նոցին զօրավարաց հարցեալ զկայսր՝ հասանէր հրաման ամրացուցանել զաշխարհն անպատսպար յերեսաց Պարսից, շինելով մէն մի քաղաք յիւրաքանչիւր գաւառի եւ բազմացուցանելով զբերդսն մինչեւ ի Գանձակ Ատրպատականի, եւ զբազումս յազատաց եւ ի շինականաց զինուորեցուցանել կայսերական թոշակօք[2]. ընդ այս ամենայն զարհուրեցաւ թագաւորն։

Տանջել զանցիցն Պապայ առաջի կայսեր ոչ կարէր, այնու զի զնոյն անցս եւ ինքն ընդ նորին հայր անցոյց։ Նմին իրի զայնմանէ լռեալ՝ այլ ինչ մեծամեծ խորհուրդ ի միտ արկանէր. զԱրաւկ կամ զԱրշակ դեսպանութեամբ առ կայսր առաքեալ՝ խրատ տայր զթագաւորութիւն Հայոց աշխարհին իբրեւ ամենայն իսկ աղետից եւ չարեաց պատճառ՝ զայն բառնալ ջնջել ի միջոյ. եւ եթէ այդ, ասէ, չթուի հաճոյ, ապա գոնեայ դադարեսցէ այսուհետեւ բաժանումն թագաւորութեանն Վրաց յերկուս, եւ ի բաց ելեալ զօրուն Հռոմայեցւոց՝ որ ի պաշտպանութիւն Սաւրոմակայ ի Վիրս կայ՝ թագաւորեսցէ յայսմհետէ միահեծան Ասպակուր զոր իւրն թագաւորեցուցեալ էր։ Բայց Վաղէս տայր պատասխանի թէ զայժմու հանգամանս երկոցունց թագաւորութեանցն չկարեմ փոփոխել, մանաւանդ զի վասն իրացս այսոցիկ վաղ իսկ հաւանութեամբ երկոցունցն կողմանց դաշինք ի մէջ հաստատեցան, եւ իմն պայման եւ պատուշաճ է պահել ճշդիւ զուխտ դաշանցն (ի վախճանի կոյս 374 կամ ի սկզբան 375 ամին)[3]։

1 Խոր. Գ. Գլ. Խ.
2 Փ. Բուզ. Դպր. Ե. Գլ. ԼԳ.
3 Ամմ. Լ. Գլ. Բ։

Իսկ Մամիկոնեանն, Թերեւս կամն զի ժամանակ ի պատրաս- տութիւն պատերազմին կամէր շահել, գրէր այսպէս պատգամ պատասխանւոյ բարբառելով մեծարանս եւ պատճառելով անո- տխրս· չէր եւ չէ հնար, ասէ, դժուարութեանցն կարել արժանապէս՝ Թէ ոչ եկեսցեն կացցեն ի միջի ազգք որ ականջալուր եւ ականա- տես գիտակ դաշանցն են՝ զոր ես ընդ Յովհաննու եդի· քանզի զի- տէր Շապուհ Թէ բազումք ի նոցանէ ի կենաց վախճանեցան:

Ի փարանս իմն անկաւ Վաղէս, եւ խորհուրդ ի մէջ առեալ՝ հրաման տայր Վիկտորեայ մագիստրիանոսի հեծելոցն եւ Ուրբի- կիոսի հրամանատարի (դքսի) զօրացն Միջագետաց երթալ վաղ- վաղակի ի Պարսս, յայտ առնել առաջի Թագաւորին Թէ զիարդ որ պարծիւր արդար եւ չափաւոր լինել եւ ոչ օտարին ինչ իրաց ցանկանալ՝ արդ յետ բազում անգամ խոստման Հայոց տալոյ Թողուլ զնոսա ըստ իւրեանց սահմանադրութեանն եւ օրինաց՝ համակ զհետ պնդեալ գործես անէպ դարան, եւ զարմանալ Թէ չկամի կայսր Թողուլ առանց պաշտպանութեան զՄամիկոնեանն, եԹէ պիտոյ ինչ այն լինիցի:

Արդար իմն էր այն յայտարարութիւն եւ ոչ հեռի ի պատուոյ համեստական պետութեանն: Այսկայն չեղեւ իրացն լուծումն, եւ հրեշտակք Հռոմայեցւոցն դառն տկարադղիք, քանզի առանց գիտելոյ հաղորդանելոյ՝ ընկալան պատասխանի իմն ի Թագաւորէն Հայոց աշ- խարհին, սակաւ յոյժ, զոր մատոյց նոցա Թագաւորն իբրեւ բա- ժանելով իմն զաշխարհն յիւրեանս, զի յայնմհետէ մի խառնեսցի կայսր յիրս մնացելոց մասանց Հայաստան աշխարհին եւ Վրաց: Նա անդէն իսկ եւ իսկ յետ դարձի հրեշտակութեանն հասանէր յարքայից արքայէ Աւրէնն՝ որ էր երկրորդ Թագաւորութեանն Արեաց, մատուցանել զնոյն զատուաս եւ կայսեր: Թէպէտ եւ մե- ծաւ շքով եւ առատութեամբ եղեւ ընկալեալ հրեշտակն, բայց դարձաւ ձեռնունայն, քանզի մերժեցաւ խնդիր նորա ի կայսերա- կան արքունեացն (375):

Տայր պատրաստել այնուհետեւ կայսր Վաղէս կազմութիւն մեծ պատերազմի՝ զի զարմնայնի եւրէ արշաւանաւ ի Պարսս ընդ երիս առաջս երեքումբք գնդօք, եւ անձամբ պատրաստեալ վարձէր զօրս ի Սկիւթացւոց (այս ինքն՝ ի Գոթաց): Իսկ Շապուհ արքայ իբրեւ ի դերեւ ելեալ տեսանէր զամենայն՝ որում մնոտի յուսովն ունէր ակն, անհնարին ի բարկութիւն բրդէր· եւ իբրեւ լսէր Թէ արշա- ւել պատրաստի կայսր, արհամարհեալ իմն զնա, գործ ի ձեռն տայր Սուրենայ երթալ գրաւել, եԹէ հարկ ինչ իցէ եւ զօրու- Թեամբ զինու, զնահանգսն Հայոց զոր Վիկտոր կոմս եւ Ուրբիկիոս յանձն առին Թողուլ նմա, եւ զգունդս Հռոմայեցւոցն որ ի պաշտ- պանութիւն Սաւրոմակայ արքայի Վրաց կային՝ նեղել բազում եւ մերժել անտի զՍաւրոմակ: Նա ըստ հրամանին նոյնպէս եւ ար-



Digitized by Google

դիւնքն կատարեցան վաղվաղակի (376)։ Սակայն գործ պատերազմին յերկուց կողմանց պատգամաւորութեամբ յամէր։ Վասնզի որպէս Թերեւս ծերութիւնն եւ երկեւղ տատանելութեան զօրութեան Հռոմայեցւոցն խափանէր զԹագաւորն Արեաց, նոյնպէս զՎաղէս՝ շարժումն եւ դղրդումն մեծ ի մէջ Գոթայ ազգին, որ ի Թրակիա դիմէին, արգելոյր ի բախելոյ։ Իբրեւ գոյժ անհնարին ի կողմանց Թրակացւոց հասանէր, մինչ չեւ երթեալ անդր՝ աճապարէր առաքէր առ արքայ Շապուհ զՎիկտոր մագիստրիանոս հեծելոցն՝ զի ըստ պահանջելոյ ժամանակին զնա իւրովն արասցէ, եւ այնպէս ամօթալից դաշամբք Հռոմայեցւոցն լնէր վախճան հակառակութեանն, եւ կոմս Տրայիանոս իսկ առեալ զլեգէոնսն որ ի Հայոց աշխարհին էին՝ խաղայր այնուհետեւ ի Թրակիա ի վերայ Գոթաց, եւ այսպէս Թողու Հայաստան ի ձեռս զօրութեանն Պարսից (376)[1]։

Այլ Ամմիանոս, ոչ Եւնապիոս եւ ոչ Զոսիմոս որ զայսոց դաշանց յիշեն՝[2] ասեն ինչ ճշդիւ զպայմանացն, սակայն կարգ բանիցն Ամմիանու եւ կարգ պատմութեանցն որ զկնի՝ ցուցանեն թէ առ Շապուհ յամօթալից դաշինս անդ զՀայաստան աշխարհ՝ որպէս պահանջէրն, զոր եւ վաղ ի նմին ամի զրաւեալ իսկ էր ի ձեռն Մուրենայ։

Այլ զինչ յայնժամ ի դէպ էր անցանել ընդ Վարազդատ՝ Թագաւոր կացուցեալ ի կայսերէ։

Մ. Խորենացի՝ որ զսկիզբն եւ զկատարած (Կամեայ) Թագաւորութեանն Վարազդատայ դնէ առ Թէոդոսիւ Ա., ամբարտաւանեալ յաջողութիւնս իւր՝ ոչ հնազանդէր, ասէ, խրատու վերակացուաց զօրացն Հռոմայեցւոց, նա եւ ընդ Շապհոյ Բ. խօսէր հրեշտակութեամբ դարձուցանել զաշխարհն ի Պարսիկս։ Ազդ լինի զօրավարացն Հռոմայեցւոց՝ որոց հրամայէ կայսր Թէոդոս Ա. առաքել առ ինքն զՎարազդատ ակամայ՝ եթէ ինքնին չյօժարի գալ։ Երթեալ երթայ Վարազդատ, բայց կայսր եւ ոչ տեսոյ արժանի առնէ զԹագաւորն Հայոց, այլ շղթայակապ առաքէ ի Թուղէս կղզի։ Այսպէս երկու Թագաւորք Հայոց մահուամբ կամ գրեթէ մահուամբ պատժին ի Թէոդոսէ Ա։ Յետ այնորիկ իսկ եւ իսկ առաքէ զերկուս որդիսն Պապայ զԱրշակ եւ զՎաղարշակ զօրօք եւ զօրավարօք հանդերձ՝ Թագաւորել ի միասին, որք եւ տան մարտ պատերազմի ընդ Պարսիկս մեծաւ քաջութեամբ։

Սակայն այս դրութիւն պատմութեան է անձնեւին ի հակառակութեան ընդ ընթացից տիեզերական պատմութեանն։ Նախ զի ըստ ժամանակագրութեանն ոչ միայն Արշակայ, ոչ միայն Պապայ (†374), այլ եւ ոչ Վարազդատայ ամս չորս Թագաւորելոյ (374—377) տակաւին գոյ հնար ունել ինչ տուրեւառ ընդ Թէոդոսի Ա. որ յամի 379 եղեւ կայսր։ Ի դրութեան աստ՝ հակառակ հռոմէական պատմութեան՝ լեգէոնք եւ զօրավարք Հռոմայեցւոց ի Հայս են գտնեալ ցամի 378, ուր նոքա վաղ ելեալ էին անտի յառաջ քան զամս երիս ի ժամանակի զի կորանաց դաշինքն կռէին։ Դարձեալ ի սմին դրութեան Հայաստան՝ ոչ միայն մինչեւ ցամի ցայն, այլ եւ յետ այնորիկ կայ մնայ բովանդակ եւ

1 Ամմ. Լ. Գլ. Բ. եւ ԼԱ. Գլ. Է։ 2 Եւնապ. Քաղ. Հրեշտ։ Զօսիմ. Դ։

Digitized by Google

անընդհատ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց եւ չցուցանի ի միջի ժամանակի ակներեւ Պարսից համօրէն աշխարհին։ Նա եւ համօրէն իսկ նկարագիր գործոյն չէ ինչ այնչափ յայտ բարուցն Թէոդոսի։

Այս հարկ է յայլ իմն դրութիւն պատմութեան դիմել՝ որ առաւել միաբան հռոմէական պատմութեան իցէ։

Ըստ Փ. Բուզանդացւոյ, Վարազդատ՝ որ սպան զպարապետ կամ զզինակիր իւր զՄուշեղ նախապետ Մամիկոնենից կամ ի քսութենէ դայեկին իւրոյ Բատայ Սահառունւոյ՝ որ ակն եդեալ էր իշխանութեան նորա, եւ կամ ունելով քէն ընդ Մուշեղ իբրեւ ընդ պատճառ մահուան հօրեղբօր իւրոյ Պապայ, մերժեցաւ յաշխարհէն Հռոմոց ի պարտութիւն մատնեալ առ կարնով յապստամբ կողմանէն հակելոյ ի Պարսիկս գլխաւորութեամբ Մանուէլի եղբօր Մուշեղայ, որում աջակից էր Բաբիկ նահապետ Սիւնեաց։ Այսպէս մերժի թագաւորն առեալ ի կայսերէ. քանզի (ըստ սոյն առհմային պատմագրի) զօրք Հռոմայեցւոցն չէին անդ, զի յետ Պապայ՝ չյերկարեցին նոքա շատ մնալ անդէն [1]։ Սոյն համեմատ են եւ ընթացք արտաքին պատմութեան (առ Ամմիանու), քանզի աստի առաքեալ կայսեր զՎիկտոր երթալ վճարել զիրս դաշանցն ընդ Շապհոյ յամի 376՝ անսաստ արձակէր իսկ եւ իսկ զՊրոփակտուրաս եւ զՑրոյիսանոս լեգէոնքն որ ի Հայս էին՝ ընդդէմ Գոթաց ի Թրակիա [2]։

Յաւալ մնացեալ ասէ նոյն առհմային պատմագիր թէ յետ զՎարազդատ մերժելոյ՝ անկաւ ընդ ձեռամբ Պարսից՝ աշխարհն, որդիք Պապայ տակաւին անհասակաչափք՝ մնանէին ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց Զարմանդխտոյ, առաքէր ի Շապհոյ Սուրէն "զպարսիկ միջ ձոխ ի նախարարաց" 10,000աւ՝ յարդարել զիրս Հայոց աշխարհին իբրեւ մարզպանութեամբ, եւ շահել զսիրտ տիկնոջն արքունական զարգեւօք։ Նոյնպէս եւ Ամմիանոս կամ ի վերջ կոյս նորին ամի (376) եւ կամ իսկզբան 377 ամին ասէ առաքել Շապհոյ զՍուրէն՝ այնպէս զի առանց պատերազմի նուաճեսցէ ընդ ձեռամբ զերկիրն, բայց միանգամայն կազմութեամբ զէն ի գործ արկանելոյ՝ եթէ եղիցի դիմադարձութիւն, եւ արդեամբք իսկ, ասէ, առ ի բուռն զերկիրն վաղվաղակի եւ մնաց իսկ այնպէս ընդ ձեռամբ նորա վասն հանգամանաց իրացն Հռոմայեցւոց [3]։ Ապա ըստ համեմատութեան երկոցունց պատմագրացս 3 կամ 4 ամք թագաւորութեանն Վարազդատայ, որպէս ինչ տայ նմա Մ. Խորենացի, զետեղին կարի քաջ ընդ մէջ ամացն 374՝ յորում նստաւ, եւ 377՝ յորում մերժեցաւ Վարազդատ։

## 129

Յետ մերժելոյ Վարազդատայ՝ թագաւորեցին հօրեղբօրորդիք նորա Արշակ Գ. եւ Վաղարշակ Բ. կամ լինելով վերջնոյն իբրեւ երկրորդ առաջնոյն (ըստ Փ. Բիւզանդացւոյ) եւ կամ հաւասար (ըստ Մ. Խորենացւոյ), կամ իսկ եւ իսկ յետ (աքսորմանցն) Վարազդատայ (ըստ Մ. Խոր.) եւ կամ յետ ամս ինչ սակաւ կալոյ ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց Զարմանդխտոյ եւ

1 Բուզ. Ե. Գլ. ԼԸ.

2 Ամ. ԼԱ. Գլ. Ժ.

3 Ամ. Surenae dedit negotium ut ea... armis repeteret, si quisquam repugnaret... Haec ut statuerat maturata confestim, nec emendari potuerunt nec vindicari, quia rem romanam alius circumsteterat metus totius Gothiae Thracias licentius perrumpentis.



Digitized by Google

ընդ առաջնորդութեամբ Մանուէլի Մամիկոնեանց եւ Բաբկան Սիւ-նեաց նահապետի, առնլով Արշակայ կնութեան զդուստր Բաբկան (ըստ Փ. Բիւզ. զՎարդանդուխտ՝ զդուստր Մանուէլի), եւ Վաղարշակայ՝ զդուստր Սահակայ ասպետի: Վաղարշակ վախճանէր յետ սակաւուց թագաւորութեանն: Յետ մահուն ինչ թագաւորութեանն Արշակայ՝ կնքէին դաշինք Պարսից ընդ Հռոմայեցւոց (Թէոդոսի Ա. ընդ Շապհոյ Գ.) վասն Հայոց աշխարհին, բաժանելով զաշխարհն ընդ երկուս՝ յարեւմտեան եւ յարեւելեան, թագաւորութեանն մնալով ի բաժնին Հռոմայեցւոց, եւ ունելով քաղաք գլխաւոր զԿարին: (Բանզի ըստ Մ. Խորենացւոյ՝ լաւ համարեցաւ Արշակ ընդ քրիստոնեայ իշխանաւ լինել, եւ զարձեալ՝ զի ի Հռոմայեցւոց սահմանաց անտի էր մայրն): Իսկ կողմն պարսկային առաջնորդէր այնուհետեւ պարսիկ մարզպանաւ: Բայց զի բազումք ի նախարարաց այսր կողմանն սկսան գալ ժողովել առ Արշակ արքայ ի բաժնի Հռոմայեցւոցն, նմին իրի հարկ համարեցան այնուհետեւ արքունիքն Տիզբոնի կարգել թագաւոր քրիստոնեայ արշակունի ի բաժնի անդ իւրեանց՝ զԽոսրով Դ. զԹագաւորն Արշակունեաց, ունելով քաղաք գլխաւոր զՎաղարշապատ կամ զՆոր քաղաք: Հրովարտակաւ երդման հրաւիրեալ կոչեցան նախարարքն գալ առնուլ իւրաքանչիւր զիւր աթոռս, սպառնացեալ՝ զչեկելոցն դաստակերտս գրաւել յարքունիս[1]:

Միամտեալ կացին մնացին առ Արշակայ սնընդակիցք արքային եւ մերձաւորք, Դարա որդի Բաբկան տեառն Սիւնեաց աներոյ նորա՝ սպարապետ իւր, Գազաւոն որդի Սպանդարատայ տեառն Շիրակայ եւ Արշարունեաց եւ Պերոզ յազգէն Գարդմանացւոց, թող զայլս յայլեւայլ նախարարութեանց որ ի նմին յարեալ էին: Իսկ այլքն ամենեքին եկին խաղացին սպարէն յիւրաքանչիւր ժառանգութիւնս՝ որ էին նոցա ի բաժնին Խոսրովու:

Թէպէտ եւ չզարձաւ ինչ նոցա ընդդէմ Արշակ արքայ եւ ոչ արգել զոք, այլ եթող զնոսա ազատ երթալ ի կողմ Շապհոյ՝ որպէս էր իսկ խոստացեալ սմա, սակայն վաղվաղակի յայլ ինչ կերպարանս իրքն շրջեցան, եւ անկաւ թշնամութիւն երկոցունց բաժանաւոր թագաւորացն ընդ միմեանս:

Սահակ ասպետ աներ Վաղարշակայ, որոյ երկիր կալուածոց էր ի բաժնին Հռոմայեցւոց, կրեալ արհամարհանս յԱրշակայ, քանզի դրդէր զսա տիկինն Սիւնի ընդդէմ ասպետին՝ որպէս թէ զարդ արքունական ունի սա ի փեսայէն իւրմէ մնացեալ, եւ զի քսութիւն եւս սուտ զնմանէ մատուցաւ յազգականաց իւրոց ի Սպեր գաւառէ, անկաւ ապաստանեալ առ Խոսրով: Մեծարեալ ի նմանէ եւ առեալ կալուածս ի ժառանգութենէ նախարարացն այնոցիկ՝ որ ի բաժնոյն Պարսից առ Արշակայ մնացին, կարգեցաւ

1 Խոր. Գ. Գլ. ԽԲ.

ապաւինելոյ արեւելեան թագաւորութեանն Հայոց։ Այլ պատահարք ի դէպ յաջողէին ցուցանել նմա զզօրութիւն զէնուց իւրոց. Վանանդացիք վարժք յասպատակութիւն՝ ապաւինեալք յանձուկս Տայոց՝ զնէին արշաւան յիշխանութիւն երկոցունց թագաւորացն Հայոց։ Խաղաց ի վերայ նոցա ասպետն, զգէտն սատակեալ՝ զայլսն փարէր փախստական մինչեւ ի կողմանս Մանանաղւոյ։ Նա ուրեմն ի կողմանս Մանանաղւոյ՝ Սահակ Մամիկոնեան ի մտերմաց Արշակայ՝ արդեօք փակեալ ունէր յամուր ուրեք այլի զօրաց զերիս ի նախարարացն՝ որ վաղ ի բանի էին ընդ ասպետին յաժամ առ Արշակայ էր, զՄուրէն Խորխոռունի, զՎահան Ամատունեան եւ զԱշխադար Դիմաքսեան, որք զգանձսն Արշակայ ի ժամանակի զի յարձակէին Հոնաց ի Ծոփս տանէր, յափշտակեալ զայլսն առ Խոսրով։ Մինչեւ Սահակն առնուլ զայսն ձեռնզօր՝ ընդ դիպաց հասեալ ասպետին մերժէր զՍամուէլեանն եւ ընդ նախարարացն երեցունց հատուցանէր զգանձսն առ արքայ Խոսրով որ հան անտի մասն եւ արքային Արեաց։ Զուր պահանջէր Արշակ արքայ զգանձսն ի բաց. իբրեւ ապառէր պատգամաւորութիւնն՝ եւ Արշակ խաղալ զօրաժողով ի վերայ Խոսրովու։ Աճապարէր եւ նա ի կողմանց ծովուն Գեղամայ, սակայն եւ այնպէս եգիտ նա զԱրշակ մնացեալ ի սահմանս թագաւորութեան իւրոյ ի գաւառին Վանանդայ. խռնեցաւ ճակատն յարձակել դաշտին, ի պարտութիւն մատնեցաւ թագաւորն արեւմտեան, անկաւ Դարա Սմինի ի խառնուրդսն եւ եղանէր Արշակ փախստեայ սակաւաւորօք։ Հասանէր իսկ զհետ նորա սպարապետն Խոսրովու, որ պընդեալ էր առնել զհետ, թէ ոչ քաջն Գագաւոն յետս դարձեալ յարձակէր ցրուէր զհետամուտսն եւ այնպէս տայր ժամ Արշակայ փախստեանն։ Չյերկարէր նա ի կեանս յետ պարտութեանն. մաշապական ախտիւ յԵկեղեաց նահանգի վախճանէր թագաւորն լու ի լաւաց թագաւորացն Հայոց (386)։ Անորդի անց Արշակ յաշխարհէ եւ ոչ Թէոդոս կացոյց զոք այնուհետեւ յաթոռն, այլ կոմսք ի կայսերէ կացին ի հռոմէական բաժնին[1], նստեալ որպէս հաւանութեան թուի ի Կարին։ Գլխաւորութիւն իմն ի վերայ նախարարացն ունէր քաջն Գագաւոն իբրեւ Սպարապետեալ։

Այսպէս մնաց մի Հայաստանի յամի իբրեւ 386 լինէր նահանգ հռոմէական, կամ բառնայր մեծարոյ թագաւորութիւն Արշակունեացն միով մասամբն։ Թէպէտ եւ ըստ Մ. Խորենացւոյ Խոսրով Գ. եւ Վռամշապուհ գտնեալ տէրութիւն ինչ ի վերայ նախարարաց այնր մասին ընդունելին ի կայսերաց, այլ վաղ առ Թէոդոսիւ Բ. տեսանեմք եւ զայն բարձեալ։ Զօրավար նորա Անատողիոս եկեալ շինեալ ընդարձակէ զԿարին՝ անուանել քաղաք անուա-

1 «Յայնմ ժամանակէ հետէ, ասէ Պրոկոպիոս պատմագիրն ի վեցերորդ գործս (Վասն շինուած. Գ. Գլ. Ա.) մինչեւ ցայժմ եւ զոր կայսր կամէր՝ կացուցանէր ի վերայ Հայոց. զատ եւ այժմ առ մեզ կոչէին կոմս»։

Digitized by Google

դաշնինն) այլազգ իմն է։ Յետ Վաղարշապատոյ մերժելոյ՝ է համօրէն աշխարհն ընդ իշխանութեամբ Պարսից։ Արքայորդիքն որդիք Պապայ՝ են ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց արշակունւոյ Զարմանդխտոյ եւ ընդ դայեկութեամբ տանն Մամիկոնեանց եւ Սիւնեաց, եւ մարզպան պարսիկ ունի առ ժամն զտեսչութիւն աշխարհին։

Յայսմ իրաց հանգամանս՝ ձեռս տան Հայք միւսանգամ ի Հռոմայեցիս։ Լինի աշխարհաժողով ի Կարին եւ կացուցանի Արշակ ընդ եղբօրն թագաւոր ընդ հովանաւորութեամբ Հռոմայեցւոց ի վերայ համօրէն աշխարհին։

Յետ սակաւ ինչ միոյ միւսանգամ զօրանայ պարսկային կուսակցութիւնն՝ որ ձեռս առնու ի Պարսիկս, խնդրելով ի նոցանէ թագաւոր զոք արշակունի՝ ընդ ձեռամբ պարսկային տէրութեանն։ Առաքի Խոսրով պատանեակ արշակունի ի Հայս զօրօք։ Սակայն այնուհետեւ Արշակ թագաւոր դաշնաւոր Հռոմայեցւոց ելանէ ի կողմանս Եկեղեաց՝ ապաստանել յօգնականութիւն Հռոմայեցւոցն։

Նայնուհետեւ կայսր եւ արքայից արքայ խօսին դեսպանութեամբ ընդ միմեանս, լինին դաշինք ի մէջ եւ բաժանի աշխարհս ընդ երկուս, յերկուս թագաւորս բաժանեալս, յԱրշակ՝ որոյ փոքր բաժինն էր, եւ ի Խոսրով՝ որոյ մեծ էր բաժինն, մին ընդ Հռոմայեցւոց եւ միւսն ընդ Պարսից իշխանութեամբ։

Մ. Խորենացի ոչ երբէք թողու զՀայաստան ի ձեռս Պարսից, Փ. Բիւզանդացի՝ երկիցս թողու, մի յետ մերժմանն Վաղարշապատոյ՝ ըստ բովանդակ մասանց, եւ միւս՝ առ Արշակաւ Գ. միով մասամբն. նա աւելորդ իմն մարզպանութիւն յետ դաշանցն դնէ, եւ սա նոյնպիսի ինչ մարզպանութիւն յետ Վաղարշապատոյ՝ յառաջ քան զԱրշակ Գ.։ Փ. Բիւզանդացի այսմ եւեթ երաշխաւորութիւն ստուգութեան ունի՝ զի յետ Վաղարշապատոյ դնէ զՀայաստան ընդ ձեռամբ պարսկային տէրութեան յամս ոչ սակաւս։

Նաեւ ոչ գոյն ինչ նշաւ ի լուսաւորութիւն պատմութեան եւ ժամանակագրութեան Հայոց լինի արտաքնոցն մատենագրութիւն։ Մեկնի ի մէնջ Ամմիանոս՝ թողեալ մեզ վկայութիւն թէ յետ 376 ամին տեւեաց Հայաստան ամս ոչ սակաւ ի նմին հանգամանս, Պարսից ճնշեցեալ անդէն եւ Հռոմայեցւոց թողեալ անպաշտպան՝ չկարացեալ զինուք առնուլ զիրաւունս իւրեանց՝ ցորքան ժամանակս ի Գոթաց պատերազմունսն զբաղեալ էր պետութիւնն, այս ինքն՝ ցամ 382 (ցերրորդ ամն Թէոդոսի Ա.)[1]։ Ի դիպող իմն ժամու հասանէ մեզ ի թիկունս միւս եւս արտաքին մատենագիր՝ Թեմիստիոս փիլիսոփոս եւ ճարտարախօս, սինկղիտիկոս ժամանակակից ի Կոստանդնուպոլիս, որ հաստատագոյն արարեալ զբանն Ամմիանու առաւել եւս ճշդէ՝ ի ճառին զոր ի սկզբան 383 ամին առաջի Թէոդոսի Ա. խօսեցաւ։ Հայք, ասէ, (որպէս եւ Վիրք) ի սկզբանէ թագաւորութեանն Թէոդոսի Ա. էին զէն ի ձեռն թշնամիք տէրութեանն Հռոմայեցւոց, եւ տակաւին (ի սկզբան 383 ամին) չեն Հայք ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց. սակայն գոյ յոյս ընդ հուպ ընդունելոյ զնոսա այսրէն, եւ այն՝ առանց արեան, քաղցրութեամբ, որպէս սովորութիւնն էր Թէոդոսի Ա.[2]։ Յընթացս նորին ամի

1 Տես վերագոյն եր 515, ծան. 3։
2 Թեմիստ. ճառ ԺԶ. "Հայք... (մերժեցին յինքեանց, կամ) ընդդէմ դարձան (προσεβλήνται) հակառական պետութեան։ ... Որպէս Սկիւթացւոց (Գոթաց) առանց արեան եւ արտասուաց յաղթեցաք, այնպէս եւ զՊարսիկս ոչ յետ բազմաց (οὐκ εἰς μακράν) ածցուք զմեւք. այնպէս եւ զՀայս ընկալցուք միւսանգամ"։

ի Հինգերորդ դար նախարարացն, եւ Թողութիւն վասն զուարթ ազգին Կամսարականաց եւ Ամատունեաց, որ միաբանակալքն հանա- րեալ էին, զի մնացեն այսրէն ի ժառանգութիւն հարցն կալուածոց, բայց առանց գահուց հայրենականաց։ Այսր ամենայնի կատա- րումն յանձն լինէր հրովարտակաւ Արկադի (կամ Վռամայ) առ Թագաւորն Հայոց (393—395)[1]։

Մեսրոպ ի Հացեկաց գեղջէ Տարօն նահանգի, ծնեալ յամի 361 († 441, 13 Մեհեկանի) ի հօրէ՝ որոյ Վարդան անուն էր. աշխարհ ծննդեանն եւ հօրն անուն (զի է անուն ազգահական տանն Մամիկոնենից) յայտ առնէ՝ Թէ ի Մամիկոնեան տոհմէ էր Մեսրոպ։ Նա եւ սա վարժեալ ի մանկութեանէ ի յունական հրա- հանգս, (ըստ Մ. Խոր.) սնեալ եւ ուսեալ առ Ս. Ներսէսի (կամ ի դպրոցսն կարգեալս ի նմանէ)։ Առ Արշակաւ Գ. էր յար- քունիս իբրեւ ատենադպիր, եւ առ Խոսրովաւ Գ. Թողու զար- քունիսն տուեալ զանձն վարուց միայնակեցութեան։ Յետ զօրա- նալոյ կրթական ուսմամբ դպրոցի վանականութեանն՝ եկանէ ի քարոզութիւն, շրջելով ընդ համօրէն աշխարհն, ի գիտութեան Գողթան՝ ուր տակաւին կային հեթանոսական խորհն եւ հնչէին ցուցք նախնեացն հեթանոսականք, ի Սիւնիս, ի Վիրս եւ յԱ- ղուանս։ Այսպ ուրեմն հայերէն նշանագրացն գիւտն (406) դնէր զհիմն տոհմային ուսման՝ ոչ միայն վասն ժամանակին իւրոյ, այլ եւ վասն դարուց բազմաց։

Առ հանդարտ եւ խաղաղութեան Թագաւորաւս ոգի առ աշխարհն Հայոց եւ անդէն ներքուստ ի ներքս՝ լաւելով անդադար հակառա- կութեան նախարարութեանցն ընդ միմեանս եւ ընդ Թագաւորին։ Գործէր նա ձեռն ի ձեռն ընդ եպիսկոպոսապետին եւ ընդ համօ- րէն կղերականաց՝ որոց էր պատուադիր[2], օգնական էր նա նոցա ի կրթութիւն բարոյից ազգին եւ ի յառաջութիւն կրօնից ընդդէմ հեթանոսութեանն։ Նա սատար եւ յառաջացուցիչ դպրութեան ազգին իւրոյ հոգաբարձութեամբ գիւտի հայերէն նշանագրաց եւ կարգմամբ դպրոցաց սահմանելով զծախսն յարքունուստ։ Մի այլ Թէ եւ զկրթութիւն պալատականին իւրոյ եւ որդւոյ հաստատէր նմա համեալ ի գլուխ։ Թողեալ նորա ուստր մի զԱրտաշէս տասնամեայ՝ փոխանակէր խաղաղութեամբ, յետ Խոսրովայ Գ. լեալ առաջին եւ վերջին Թագաւոր Արշակունի՝ որ մեռանիցի անշարժ յաթոռոյ միահեծան Թագաւորութեանն՝ յոր միանգամ ել (414)։

## 131

Խոսրով Գ. որ անդստին յամէ 395 արձակեալ ի կապանացն կայր ի նմին բերդի՝ դարձաւ յաթոռն՝ երթալով ի դուռն Սահա-

1 Խոր. Գ. Գլ. ԽԱ։ 2 Կորիւն։

## Գ.

Վասակ Սիւնի մարզպան, Վարդան Մամիկոնեան, ընդ Յազկերտէ Բ. ոտնել շհայ-դին Մազդեզանց, ապստամբութիւն յԱւարայր (450), դիմադրութիւնն Հայոց մի է չես, ճակատ յԱւարայրի դաշտին (451)։ Կոտորումն նախարարաց եւ ազատաց (452—464)։ — Կրկին ընդ Պարսից ամեխ շհայս ի մեծութեան, դիմադրութիւն եւ պատերազմունք Վահանայ, սպանումն արքունեաց Պարսից (յամի 482), մարզպանութիւն Վահանայ (484)։

## 132

Ի ԲԱՌՆԱԼ թագաւորութեանն Հայոց՝ այն ինչ եւ ի գլուխ զոր յ200 ամաց հետէ նուիրեալ հնարէր հարստութիւն Սասանեանցն։ Բայց այս ոչ եթէ սոցա ինչ առաւելագոյն զօրութեամբ եւ կամ նոցա տկարութեամբ դիւրեցաւ, այլ զի երկոքին կողմանքն՝ ներքինքն եւ արտաքինք կարկառեցին ձեռն ի միմեանս ի մի միաբանութիւն, իւրաքանչիւր վասն անձանցն շահու։ Ամենայն հաստատութիւն Հայոց թագաւորութեանն՝ որոյ միահեծանազնուապետական առաջնորդութիւն էր, ի միաբանութեան նախարարացն ընդ միմեանս եւ ընդ թագաւորին կայր։ Սակայն վաղ իսկ նախարարքն՝ որոց բարձք եւ պատիւք եւ աստիճանք ի թագաւորէ անտի զկիրզենն ունէին, տակաւ մեծացան առհմանք, զօրութեամբ, ամուր ամուր քաղաքօք եւ բերդիւք. Հզօրացոյց զնոսա եւ հնութիւն ազնուականութեան նոցա. եւ այնպէս չէին ինչ զարմանք թէ գայցեն նոքա բազում անգամ ի վէճ ընդ իւրեանց թագաւորին։ Ըստ նմին համեմատութեան վատթարեցաւ, նուազեաց պատիւ մեծարանաց տոհմին Արշակունեաց եւ նշմարեցաւ թէ երերի թագն նոցա եւ աթոռ՝ առանց ձեռաց նոցա։ Ծառայքն Արշակունեաց տեսին զանձինս բարերարս եւ երախտաւորս ազգի եւ տան Արշակունեաց։ Նա առաւել ընդնումն՝ իսկ թագաւորացն եւ ժամանակք ինչ անիշխանութեան ցուցին նոցա եթէ թագաւորի առանց նոցա չմարթի լինել, այլ քաջ մարթի նախարարացն՝ առանց թագաւորի։ Եւ որք ընտրութեամբ կամ խնդրովն իւրեանց սովորեցան դնել թագաւոր, ընդելեալ չհամարեցան ինչ օտար մերժել զնոյն կամ խնդրել բառնալ ի միջոյ։ Ապա յետոյ յայն չափ իրքն հասին՝ զի ոչ պատիւ ինչ եւ ոչ բարձ առանց միջնորդի կարէին ընդունել ի թագաւորէ անտի իւրեանց (անդստին ի ժամանակէ անտի Վռամշապհոյ), ոչ մեծ ինչ պատուհաս կամ սաստ, այլ թագաւոր նոցա էր բուն յարքունիս Տիզբոնի։ Զհարկ աշխարհին՝ զոր թագաւորն հանեալ տայր, կարէր հանել այնուհետեւ մարզպանն՝ որ էր բազում անգամ հայ յազգէ, զայրուձին՝ սպարապետն նոյնպէս հայ, եւ այլքն եւս մի ըստ միոջէ. եւ այսպէս դրեթէ ստուեր իմն թուէր այն՝ որ ի միջոյն բարձաւ։

Digitized by Google

Թէպէտ և այսպէս տեւէր թագաւորութիւնն էր որ ի մէջ բարձաւ, և ներքին զօրութիւն Հայոց աշխարհին այնպէս հզօրագոյն էր ի բարձման թագաւորութեանն՝ որպէս զուն ուրեք յառաջագոյն առ թագաւորութեամբն լեալ, սակայն և այնու՝ զի որոշեալ էր գաւառանն միայն տոհմին Արշակունեաց, կայր և տանձ կայր փառաւորութեան բազմաց։ Նմին հակառակ յետ անկանելոյ ազգին Արշակունեաց ի բաց՝ ըստ առաւելոյ յաւաց թագաւորութեանն՝ յաճախեցին հրապոյրք, որք բաւական էին զըրգռել շարժել զերեւելիս ի նախարարացն՝ նմին անկանել զհետ, և իւրաքանչիւր իսկ ի խոնարհագունից նախարարացն ջանային ի բարձրութիւն՝ տեսեալ թէ խախտեալ քայքայեցաւ առաջին դասաւորութիւնն և ամենայն կայր կախեալ զհաճոյից տէրունեաց Արեաց աշխարհին։

Գիտացին և տէրունիքն Պարսից մարթել տալ նոցին ներքին հանդամանօք աշխարհին, և ածել այնու հետեւ զգործ միաւորութեանն ի կատարումն բովանդակութեան՝ ձգելով զնոսա յորէնս տէրութեանն։ Շապուհ Բ. որ յիւրում ի բուն աշխարհին հալածէր մոլեգին զքրիստոնեայսն (330—366 և 378, 379) երկուցեալ զանգիտէր զնոյն ընդ Հայս ցուցանել, մինչ չեւ հաստատութեամբ տիրեալ աշխարհին։ Թագաւորք նմանք՝ որ յետ նորա կացին, մեղմագոյնք էին, նմին իրի և չէին ինչ զարմանք Արտաշրի տալ Հայոց թագաւոր զՎռամշապուհ և Վռամայ Դ. մարթել ընդ նմա սիրով ի պատա, և Յազկերտի Ա. որ ի բնէ միտագոյն ի քրիստոնեայսն էր և ի մօգուց անուն անուանեալ կոչեցեալ՝ տալ զխոսրով միւսանգամ ի թագաւորութիւն ըստ Հայոց խնդրելոյ։ Այլ ի վերջին ամսն յորժամ դառնացաւ նա ի վերայ քրիստոնէից (յամի 418) աւերելով Աբդայ եպիսկոպոսի ատրուշան մի յաշխարհին Պարսից, թագաւորեցոյց զեւր որդի զՇապուհ ի վերայ Հայոց՝ զի տուրեւառիւք, խրախութեամբք և խնամութեամբք ի դեռն Մազդեզանց զաշխարհն արկանիցէ։ Բայց յետ քառեամ անարգաբար թագաւորելոյ՝ դրդեցաւ համօրէն աշխարհն և նախարարք ի մարտ պատերազմի ընդդէմ զօրութեանն Արեաց, այլակարծեցաւ եղծաւ աշխարհն մինչ չեւ նուաճեալ. լերինք և ափափայք լցան փախստէիւք, մինչեւ յետ երից ամաց թողութիւն յայտնութեան լեալ ի Վռամայ Ե. նորոգեցաւ խաղաղութիւնն, և տուաւ Հայոց թագաւոր վերջին։ Այն իսկ համառօտութիւն իմն պատերազմին Վարդանանց է և նորին յառաջատիպ նմանութիւն։ Սակայն և այնպէս հարկ էր պայազատի նորին թագաւորի՝ Յազկերտի Բ. (439—458 ըստ միաբան հաշուի մերոցն մատենագրաց) զնոյն գործ միւսանգամ փորձել յետ բառնալոյ թագաւորութեանն։

Սաղ յամի 421 Վռամայ Ե. գրգռեալ էր մարտ պատե-

թիւն դիմադարձութեան չէր զանձն պատշաճեալ, այլ եւ ժամ պատեհ առաջի արկելոցն ցանկութեանց եւ գեղեցիկ դէպս դիւրան համարեցաւ՝ խաղալ մեւս եւս քայլ յառաջ հասանել ի կատարեալ բարձրութեանն։ Տակաւին կենդանի իմն էին յիշատակք առաջային թագաւորութեանն. ընդ վաստակոցն յուրացութիւն զաշխարհն ածելոյ՝ անվրէպ վարձս զթագաւորութիւն Հայոց աշխարհին անձինն խոստանայր այս Միրուժան երկրորդ։

Նշին էին եւ այլ եւս պատուականք ի նախարարական ցեղիցն. այրն բարեպաշտօն եւ հզօր ընչաւէտութեամբ՝ Վահան Ամատունի հազարապետ, որ իբրեւ զհայր համարեալ էր աշխարհին, քաջն Արշաւիր Կամսարական եւ Ներշապուհ Արծրունի. այլ առաջնորդ ոք պիտոյ էր նոցա դնել զդէմ նիւթելոցն։ Տոհմք Բագրատունեացն եւ Մամիկոնեանց ընդ երկուս բաժանեալ էին։ Տիրոց ասպետ (յաջորդ Սմբատայ Գ. յասպետութեանն) իշխան պարսկայինն Բագրատունեանց Տարօնոյ (ուրոյն ի Յունական Բագրատունեաց Սպեր նահանգի) շահեալ էր ի կողմն իշխանին Սիւնեաց։ Յունականն Մամիկոնեանք հանդերձ համօրէն Սպարքն Հայք էին ի խաղաղութեան հուսակալութեամբ Վասակայ Մամիկոնենի, ընդ իշխանութեամբ Թէոդոսի Բ. եւ Մարկիանու։ Ամենայն յոյս էր այնուհետեւ ի վերայ տոհմին Մամիկոնենից՝ որ ի պարսկային Հայաստանի գրաւեալ ունէին զքաղաքն տատանի. գլխաւոր տեղի նոցա էր Շահապիվանն։ Վարդան Բ. արոյ ընդ քաջութեան հայրենի տոհմին՝ էր եւ նախանձ հաւատոյ մայրենի ազգին իւրոյ, ունէր ի ժամանակին զսանուտէրութիւնն (անդստին յամէ իբրեւ 433), ունելով օգնական զեղբարսն իւր զՀմայեակ եւ զՀամազասպեան, որք առհասարակ վայելեալ էին ի կրթութեան մայրենի հաւուն իւրեանց Ս. Սահակայ[1]։

133

Այսպիսի հանդամանք իրաց էին Հայոց աշխարհին՝ յորժամ հաստատեցաւ ի խորհրդեան թագաւորին պատճառանօք արշաւանին Կուշանաց կոչել զայրուձի իւրաքանչիւր ազգաց քրիստոնէից, մանաւանդ զՀայոցն, եւ այնպէս նախ անզօրս զնոսա կացուցանել, ապա հնարիւք մուծանել զմոգութիւնն։ Հրովարտակք առ ամենայն ազգս տէրութեանն՝ Արեաց եւ Անարեաց հասանէին, յորս յետ տալոյ նոցա զաւետիս յաղթութեանն ընդդէմ Հոռմայեցւոց, յայտ առնէր զսկիզբն պատերազմին ընդ Կուշանաց, եւ կոչէին իւրաքանչիւր ազգք անցնիւր այրուձիով (441)։ Սոքա թէպէտ եւ զահի հարեալ էին ի բեկանելոյ Հոռոմոց առաջի նոցա, սակայն եւ այնպէս Հայք եւ Վիրք եւ Աղուանք հանդերձ Լփնօք,

1 Կորիւն։

Նուադէխիւք, Կորդուաք եւ Աղձնիւք, նա եւ ի կողմանց իսկ Տաճկաստանի (Արաբիայ) խաղացին իւրաքանչիւր այրուձիով հասանել ի ժամադիր տեղին յԱյրար աշխարհ:

Զերկեամ տուան ճակատք ընդ Կուշանաց, բայց չկարաց յաղթահարել զնոսա Թագաւորն (442—443): Իբրեւ ետես թէ յերկարի գործն՝ արձակեաց զզօրն մարզիկ յիւրաքանչիւր տեղիս, զայլս փոխանակ նոցա առ իւր կոչէր՝ նովին պատրաստութեամբ, եւ այնպէս իւր անդէն քաղաք բնակութեան շինեալ՝ ամ յամէ գնէր արշաւանս զամս իբրեւ 7 (443—448): Ի նեղ մեծ անկաւ Թագաւորն Հոնաց կամ Կուշանաց, աւերեցան եղծան բազում գաւառք նորա, եւ եղաւ պահակ որմապատ, անուանեալ պահակն Հոնաց: Առաքէր այնուհետեւ արքայից արքայ աւետիս ընդ ամենայն աշխարհս, առաքեցան ի զոհս կրակին ցուլք սպիտակք եւ նոխազք գիսաւորք, պակօք եւ պատուովք մեծարեցան մոգքն եւ մոգպետք: Վերջին արշաւան Թագաւորին (յամի 449 գարնայնի) զլաւ իրացն առնէր. փախստեայ ելանէր առաջի բազմամբոխ զօրու նորա Թագաւորն Կուշանաց ի կողմանս հիւսիսային անապատին, առաքէին ասպատակաւորքն Պարսից՝ գաւառաց, տեղեաց, վայրաց. առան բերդք եւ քաղաքք, գերի եւ առ եւ ապուռ եւ աւար ածաւ յերկիր Թագաւորութեանն Պարսից:

Մինչեւ ցայն վայր գաղտ իմն մենքենայէր գողանալ զմիտս քրիստոնէիցն որ ի բանակին էին. երբեմն յաճախէր պարգեւանս օրինաց քրիստոնէութեան յատենի հրապարակաւ, երբեմն տայր հանդէս առնել այլեւայլ կրօնիցն՝ ընդ մոգութեան եւ ընդ քաւդէութեան եւ ընդ այլոց ուսմանց եւ զքրիստոնէութիւն ի ներքս արկանելով, «Հարցէք, ասէր, քննեցէք, տեսէք. թող որ լաւն ընտրեալ կալցուք»: Եւ յետուստ պատուովք հրապուրէր արկանել՝ նախամեծար զկրսերն եւ զանարգս քան զաւագն եւ զպատուականս առնելով: Սակայն ազատ էր տակաւին պաշտօն քրիստոնէութեանն զոր անդէն ի բանակին կղերականքն յայտ յանդիմանն կատարէին, նա աւանիկ ընդ ամենայն կողմանսն տարածանէր քրիստոնէութիւնն, քանզի յայտնի բռնութիւն չկարէր արկանել ի կիր, այնու՝ զի ոչ համագունդ ի միում վայրի էին մեծամեծք աշխարհացն իւրաքանչիւր (442—448):

Այլ յաղթութիւն 449 ամին համարձակեցոյց այնուհետեւ գործել աներկիւղագոյնս: Մոգքն եւ քաւդեայք բարբառէին թէ աստուածքն որ զյաղթութիւնն ետուն՝ ոչ այլ ինչ հատուցումն խնդրեն՝ բայց զաղանդ քրիստոնէութեանն ի միջոյ բառնալ. նմին միաբան էր եւ խորհուրդ աւագանւոյն: Առաքէին դեսպանք ստիպաւ առ ամենայն ազգս եւ լեզուս պարսկային տէրութեանն՝ դադարել յիւրաքանչիւր օրինաց, այլ գական միայնոյ գալ յերկրպագութիւն, այսպէս ունել կրակի եւ զմոգութիւն եւս յայնր մե-

րայ տանել յանձն։ Ընդէն ի ներքս պահ դրանն արգել զգաստա-ձին Հայոց, զՎրաց եւ զԱղուանից, եւ հրաման առնուլ ի վերայ դռնապանացն լինէր՝ զորս յարեւելան գայցեն՝ թողուլ, խոկ յարեւմտից յարեւմուտս արգելուլ զանցումն։ Իսկ եւ յամենայն կողմանց փակէր, արկանէր այնուհետեւ ձեռն՝ տագնապել ամենա-նօք, կապանօք, անարգութեամբ, նուաստութեամբ թշուառք եւ գժնեայ վայրօք ձմերոցաց, երբեմն սովերելով ուտել միս յաղեալ եւ երբեմն զաւմարելով ի նոցանէ զունդս զունդս յերկիր հեռաւոր՝ յանապատն Հիւսիսոյ ի մերս պատերազմի եւ անդէն զբազումս մատնելով սրոյ։

Ընաքեցաւ եւ յաշխարհն Հայոց իբրեւ ի գործ արկանել Գունշապուհ կամ Վեհ-Գունշապուհ։ Սա զառաջինն եկեալ բերեալ զողջոյն թագաւորին եւ խաղաղասիրութիւն կեղծաւորեալ՝ առնէր աշխարհագիր՝ որպէս թէ թողութիւն հարկացն առնիցէ եւ թեթեւութիւն այրուձիոյն առհասարակ։ Այլ սաղեաւքն՝ 1. եկեղեցին եւ վանորայն հանդերձ կղերաւն որ ազատ հարկ էր՝ արկան ընդ արամբ հարկաց։ 2. Հարկ աշխարհին ծանրացաւ կրկին, եւ անհնարին իմն էին մաւսք եւ սակք եւ բաժք եւ հասք լերանց եւ դաշտաց եւ մայրեաց. նա առանձին ոչ միայն շէնաց, այլ եւ աւերակաց իսկ։ 3. Երկ բանսարկութեամբ զնախարարսն ընդ միմեանս եւ յամենայն տան յարոյց խռովութիւն։ 4. Գրգռեաց յարոյց ամբաստանութիւն ի վերայ հազարապետութեան Վահանայ Ամատունւոյ հազարապետի աշխարհին, մերժեցաւ նա ի գործոյն եւ ածաւ պարսիկ փոխանակ նորա (Միհրան անուն)։ 5. Ածաւ եւ այր մոգպետ ի գործ դատաւորութեան՝ զի խափանեսցին դատաւորք որ յառաջագոյն եպիսկոպոսացն լինէին։

Իբրեւ այս ամենայն յարդարեցաւ ի քայքայումն միաբանութեան աշխարհին եւ ի փախուցանել զխնամակալս, ի ցրուել զբնակիչս եւ զի առ ազգասիրութեան փառանցն գիտեցեն յօրէնս մոգութեան, այնուհետեւ հասանէր հրովարտակ ի հազարապետութենէ Արեաց եւ Անարեաց (Իրան եւ Տուրան), յորում առնոյր ուսուցանել զդենպաշտութիւն եւ զէն մազդեզն, թէ ի միութենէ (ի Զրուանայ, ի Ժամանակէ) են երկուորականութիւն արարչական՝ երկուց արարչացն (Որմզդի եւ Արհմենի) եւ արարածոց բարեաց եւ չարի, եւ յանդիմանէր քրիստոնէութիւն՝ իբրեւ վարդապետութիւն հակառակ մոգաց մազդին եւ զգայնոց նորա։

Լինէր ժողով յԱրտաշատ նախարարացն եւ կղերականաց (եպիսկոպոսաց, քորեպիսկոպոսաց եւ երիցանց)։ Յ17 եպիսկոպոսացն էին երեւելիք Յովսէփ եպիսկոպոս Այրարատայ կամ Կաթողիկոսն, Մելիտէ՝ Մանազկերտոյ, Սահակ՝ Ռշտունեաց, Եզնիկ՝ Բագրեւանդայ, Մուշէ՝ Արծրունեաց, Սուրմակ՝ Բզնունեաց (երբեմն հակառակաթոռ Սահակայ), Եղիշէ՝ Ամատունեաց. եւ-

ւորէք յերկրայնոցն՝ Ղեւոնդ եւ Խորէն ի Մրենայ եւ այլք. յաւագ վանականաց՝ Աղան Արծրունի: Ի նախարարաց անտի երեւելիք Մարզպանն եւ տէր Սիւնեաց Վասակ, տէրն Արծրունեաց Ներշապուհ, Մաղխազն Վահէ, Սպարապետն Հայոց Վարդան Մամիկոնեան, երբեմն հազարապետ աշխարհին Վահան Ամատունի եւ այլք, թող զաւագ սեպուհս իւրաքանչիւր տոհմիցն: Միաբանեալ ամենայն բազմութիւնն մեծաւ հաւանութեամբ ի մեծամեծաց ցփոքունս, եւ երդմամբ եդին միաբանութիւն կենաց եւ մահու կալ ի հաւատս ուղղութեանն: Գրեցաւ պատասխանի հազարապետին՝ յայտ արարեալ թէ զպարտս կամիցիր հնազանդութեան առ տէրս, զոր կրօնք քրիստոնէութեանն պատուիրեն, որպէս ցայժմ՝ նոյնպէս եւ յետ այսորիկ հատուսցեն անվրէպ, բայց հրամանաց վասն կրօնից՝ ոչ ձեր ինչ որ տայքդ՝ գոյ իշխանութիւն եւ ոչ մեր պարտք հնազանդութեան: Բայց ըստ Եղիշէի՝ բան առ բան ընդդէմ յանդիմանութիւն զրադաշտական վարդապետութեան՝ ցուցեալ զմիութիւն աստուածութեանն ընդդէմ երկաստուածութեանն, զարարչութիւն յոչնչէ, զանձնիշխանութիւն մարդոյն, զսկիզբն չարեացն, զանկումն մարդկութեան եւ զփրկութիւնն, կնքելով այսպէս՝ զի Եթէ տալին հաւատովք թողուս, ոչ յերկրի այլ տէր փոխանակեմք ընդ քո, եւ ոչ յերկինս այլ Աստուած փոխանակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի: Ի քէն տանջանք եւ ի մէնջ յանձնառութիւնք, սուր քո եւ պարանոցք մեր: Եթէ անմահք իսկ էաք եւ մեռանել մարթ էր մեզ, վասն Քրիստոսի սիրոյն՝ արժան էր, այլու՝ զի եւ նա անմահ էր, եւ այնչափ սիրեաց զմեզ՝ մինչեւ մահ յանձն առ՝ զի եւ մեք նորա մահուամբն ի յաւիտենական մահուանէ ապրեսցուք (ի վերջ 449 կամ ի սկզբան 450 ամին):

Արտաշատեցւոց զայրացոյց զթագաւորն համարձակութիւն դոցին, դրդեաց զնա եւ հազարապետն. Կայր, ասէ, չելանէ ըստ քո հրամանի եւ Հայք կան քեզ ի ծառայութեան, որ մարդ է յերկրի՝ եթէ կարող իցէ քում հրամանիդ ընդդէմ դառնալ: Եւ այսպէս ըստ նորա խրատուն հրովարտակ առաքեաց ի Հայս (որպէս եւ յԱղուանս եւ ի Վիրս) հասանէր՝ կոչել ի դուռն զերեւելիս ի նախարարացն, յանուանէ՝ զմարզպանն, զսպարապետն եւ զերբեմն հազարապետն, զՆերշապուհ Արծրունի, զԱրտակ Ռշտունի, զԳադիշոյ Խորխոռունի, զԱրտակ Մոկացի, զՄանեճ Ապահունի, զԳիւտ Վահեւունի, զՇմաւոն Անձեւացի: Այլք ի նախարարացն առ թագաւորին իսկ ի կարաւանին կամ ի ձմերոցին էին եւ կէսք ի Հոնաց պահակին ի կողմանս Հիւսիսոյ, թող զորս մնացեալ էին ամենեն ի Հայոց աշխարհին՝ ոչինչ կարի նշանաւորք: Այնուհետեւ յետ բազում խորհրդոց՝ սահմանեցաւ երթալ անխափան ի կոչն: Վասակն եւ երթեւեկք պատգամաւորաց երեցունց

Digitized by Google

կողմանց աշխարհաց՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից ընդ [illegible] եդին ընդ միմեանս ուխտ եւ դաշնաւորութիւն։ Պնդեաց քաջալերեաց եպիսկոպոսապետն Յովսէփ զզինուորականսն եւ հաստատեալ զնոսա յուխտին՝ յուղարկէր զնոսա օրհնութեամբ։

Որոց մեծարանաց ընկալաւ զնոսա դուքսն եւ ոչ ըստ սովորական մեծարանացն զօրագլխաց ընդ առաջ առաքելոց ի Թագաւորէն կամ երկիցս եւ երիցս հանդէս պյրուձոյն առնելով կամ զնախնեացն իւրաքանչիւր վաստակս եւ զառն առն քաջութիւն առաջի աթոռակցացն դնելով (450 Փետրուար.— Ապր.)։ Զուր յիշեցուցանէին Թագաւորին նախարարքն զժամանակն Շապհոյ Բ. հօր հաւուն նորա, առ որով էր Հայոց ազատութիւն կրօնից եւ զվաստակս նախնեաց իւրեանց առ նովաւ եւ առ նորին յաջորդօք եւ այժմ զիւրեանցն եւս վաստակս Թերեւս լաւագոյն քան զառաջնոցն՝ զզինուորական վաստակն եւ զյաճախութիւն հարկացն զոր առ սէր նորա առին յանձն։ Մերժեցան եւս անարգանօք յերեսաց Թագաւորին որ սպառնացաւ նոցա ի Սակաստան տալ անցուցանել զնոսա, եւ յիւրաքանչիւր աշխարհ առաքել զօրս անթիւս հանդերձ փղօք, եւ զկին եւ զորդիս ի Խուժաստան տալ խաղացուցանել, զեկեղեցիս եւ զվկայարանս քակել քանդել եւ յապականութիւն դարձուցանել։ Այն սպառնալիք քայքայեցին զմիտս նոցա. խնդրեցաւ ի Թագաւորէն ժամանակ վասն տալոյ պատասխանի։ Իբրեւ ի դերեւ ել յոյսն շահելոյ զմեծամեծս դրանն ի ձեռն կաշառոյ, այնուհետեւ ի կապանս անդ՝ յաղթէր խորհուրդ ոմանց ի Թուլացելոցն որ ետուն խրատ առ ժամն կեղծաւորել ի պաշտօն ստութեանն. յայն խոնարհեցաւ յետուստ արտաքուստ եւ զքանչելին Վարդան՝ ոչ յետ սակաւ դիմադարձութեան։

Զուարճացաւ զուարթացաւ Թագաւորն, տօն մեծ էր առքունեացն, հաշուելով զայն օր լինել անշարժ հաստատութեան Թագաւորութեանն իւրեանց։ Առաքեցան աւետիք յատրուշանս առ մոգսն եւ մոգպետս աշխարհին։ Ինքն Թագաւորն մինչ չեւ ելեալ ի պատերազմ ընդ Քուշանաց՝ յուղարկէր զնախարարսն, յանձն արարեալ ի գլուխ տանել զկատարումն խորհրդոյն ի վերայ համօրէն աշխարհին։ Բայց զի ոչ առանց կասկածանաց էր, ունէր իբրեւ ի պատանդի զԹագաւորսն Աղուանից եւ Վրաց՝ զՎաչէն եւ զՎաչէ, զբդեշխն Գուգարացւոց զԱշուշայ, եւ զՆարիկ Բ. եւ զԱմիրներսեհ զորդիս Վասակայ իբրեւ զնշանաւորս քան զամենայն Հայոց։ Ընդ նախարարացն Հայոց գումարէր յաշխարհն Հայոց պյրուձի եւ ի մոգուց իբրեւ 700 հանդերձ մոգպետիւ, որք մեծաւ խնդութեամբ համագունդ ի տեղեաց տեղեաց խաղացին յերկիրն արեւմտից, զճանապարհայն փայտ ընկենուին, վճռակս արկանէին Թէ որ լեզու որում դասու հասցէ յաշակերտութիւն։ Էր նոցա

Digitized by Google

հրովարտակ արքունի ի ձեռին մինչեւ ցՆաւասարդ գլուխ տարւոյն՝ փակել կնքել զդրունս եկեղեցեաց, գրով համարով առնուլ զսպասս նոցա յարքունիս, առնել դադարումն պաշտամանցն, եւ չուսուցանել կղերականաց զժողովուրդն, եւ վանականաց եւ հաւատաւոր կուսանաց փոխել զհանդերձիկսն եւ լինել ըստ աշխարհական կարգի։ Սկիզբն առնել կանանց նախարարացն եւ դստերաց ազատացն եւ շինականաց ուսուցանել զուսումն մոգուցն, կարծել օրինաց քրիստոնէական ամուսնութեանն, եւ փոխանակ նոցա ի բազմակնութիւն գալ՝ զի աճեցեալ բազմասցին ազգք Հայոց, դստերք հարանց լինիցին եւ քորք եղբարց. մարք մի ելցեն յորդւոց, սակայն թոռունք ելցեն յանկողինս հաւուց։ Պատրուճակք մի զենցին անյաղ, հայք առանց փանդամի մի զանգցին, ծիւղք եւ քակորկք ի կրակ մի ելեսցեն, ձեռք առանց գոմիզոյ (միզոյ կովու, որում տայ զօրութիւն սրբիչ մատեանն Զրադաշտայ) մի լուասցին[1]։

## 134

Գոյժ խրացն վաղվաղոյն ի կղերէ անտի Հայոց որ ի Տիզբոնն ընդ զօրսն էին՝ առաքեցաւ ի Հայս առ ժողով եպիսկոպոսացն։ Այնուհետեւ սփռեցան եպիսկոպոսունքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեղս եւ յագարակս. դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց եւ կանանց, շինականաց եւ ազատաց, զքահանայից եւ զմենակեցաց, խրատ եդին պնդեցին զամենեսեան. յառաջ քան զամենայն մտաբերեալ զնոսա յայն՝ զի ձեռն եզբօր հարազատի ի մերձաւոր խոր լեցի՝ որ անցեալ իցէ ըստ ուխտ հաւատոցն։ Վառեցան կազմեցան Կարքեդոնացիքն քրիստոնեայք, սուր ընդ մէջ եւ վահան ի ձեռին՝ ոչ արանց միայն, այլ եւ կանանց առնականաց։

Այսպէս կազմ եւ պատրաստ էր ամենայն՝ յորժամ հաս ի Հայս գունդն (ի Մայ. ամսեան) եւ բանակեցաւ ի Դաղկոտնահանգի առ գեղաքաղաքաւն Անգղ։ Յետ 25 աւուր փորձ փորձէր ինքնին մոգպետն մոգօքն՝ յաւուր միաշաբաթուն մտանել զրաւել զեկեղեցիսն. յարեաւ խռով ի տեղւոջն եւ հալեւ ելին անձնապուր մոգքն։ Մոգպետն ի գլխովին՝ որ քարկոծեալ հալեդարձաւ կենդանի ի վանսն, գրեթէ մհատեալ եւ յուսահատ էր այնուհետեւ ի գործոյն յաջողութենէ. «Դժէ ինքեանք, ասէ, աստուածքն եկեսցեն յօգնականութիւն, սակայն չէ հնար օրինացս մոգութեան ի Հայս առնուլ հաստատութիւն. թող գրեմ եւ ցուցանեմ, ասէ ցմարզպանն, ի դուռն մովպետան մովպետի եւ գերանդերձապետի եւ մեծի հազարապետին, զի ածցեն զարքայ ի հաւանութիւն՝ զի ըստ առաջին օրինակին տացէ ազատութիւն

1 Եղիշէ, էջ 17—89։ Փարպ. էջ 72—94։

առ բդեշխն Աղձնեաց, առ իշխանն Անգեղ տան, ի Ծոփս, ի Հաշտեանս, յԻնգիլենաց, եւ առ այլ իշխանս կողմանցն եւ առանձինն առ Անատողիոս զօրավարն արեւելից յԱնտիոք՝ փութաթեկանց օգնականութեան (տես ի ներքոյն Յաւել. ամաց):

Բայց պատասխանւոյ հրեշտակութեանցն մնալ չէր ինչ հնար. պատգամաւորութիւն զխաւարութեամբ եպիսկոպոսապետին աշխարհին եկեալ հասեալ կայր ի դաշնաւոր աշխարհէն Վրաց թէ գունդ պարսկային ի կողմանց Հոնաց այսր դարձեալ յօգնականութիւն 300 մոգուցն՝ որ սախալեալ սասանեալն ի քրիստոնէութենէ ի բաց կալ եւ զեկեղեցիս քակել: Այնուհետեւ զզօրն Հայոց՝ որ էր այրուձի մեծաւ մասամբ՝ ժողովեալ յիւրաքանչիւր տանէ նախարարութեանցն եւ յազգունս (յատանեակ) տանէ՝ ընդ երիս բաժանէին հասարակաց հաւանութեամբ: Գունդն առաջին տուացՆերշապուհ Արծրունեան՝ գումարեալ ընդ պահապան աշխարհին ի վերայ սահմանաց Ատրպատականի ի Հեր եւ Զարեւանդ գաւառի. զգունդն երկրորդ առնոյր Վարդան անցանել ընդ սահմանս Վրաց ի վերայ մարզպանին Պարսից որ կայր ի վերայ Աղուանից աշխարհին. իսկ զգունդն երրորդ տային ի ձեռս իշխանին Սիւնեաց՝ որոյ էր գումարեալ զիւրեւ զհամախորհուրդսն իւրաքանչիւր զօրաց:

Մնացեալ այնուհետեւ Վասակ կեղծաւորէր լինել դարանամուտ յամուրս իւրոյ աշխարհին, իբրեւ թէ ընդ նեղուցս ի վերայ պարսկական գնդին յԱղուանս յարձակեցի, բայց արդեամբք՝ գաղտ լինէր գուշակ Սեբուխտայ մարզպանին Պարսից՝ զերաց Հայոց աշխարհին եւ զախտաւութենէ գնդին Վարդանայ որ ի վերայ նորա գայր: Նոյն մարզպանն պարսիկ ի կողմանց Պարսից ընդ Կուր գետ այսր եւ թագաւորազունք ոմանք կողմանցն ընդ նմա. Վարդան յերկու առաջս զգունդն բաժանէր, զաջակողմն տայր Արշաւրայ կամսարականի իւրում փեսայի եւ նիզակակից նմին՝ Մուշ սեպուհ Դիմաքսեան, եւ զահեակն ցԽորէն Խորխոռունի եւ նիզակակից՝ Համայեակ Դիմաքսեան, եւ զմիջոցն յինքն առնոյր: Ի նահանգի Ուտէացւոց հանդէպ Խաղխաղ քաղաքի ձմերոցի արքայութեանն Աղուանից ի դաշտավայրի խռնեցաւ ճակատն. խորտակեցաւ աջ թեւ Պարսից գնդին, եւ փախստականքն յամուրս մայրեաց առ խորագոյն դարիւք Լփինաս գետոյ կոտորեցան, հազիւ ապրէր զուժկան ի մեծ շահաստանն (Պիւշապուհ): Մեծամեծք Պարսից որ ընդ Կուր գետ նաւարկեալ երթային փախստեայ՝ կորեան գետավէժ: Մուշ միայն յերեւելեաց Հայոց թանձրախոռ մօրից դիպեալ կորեաւ:

Այնուհետեւ առան մի ըստ միոջէ ամուրք Աղուանից աշխարհին եւ քակեցան ատրուշանքն. այլ առին զի եղաւ բիծ յաղթութեանն կոտորելով զերամս մոգուցն: Բնականք աշխարհին

որ վասն աստուածպաշտութեան անկեալ էին փախստեայ յամուրս լերանց Կապկոհի՝ դարձան եւ ստուարացեալ նոքօք գնդին Վարդանայ, խաղացին յորմ անդր պահակին Հոնաց կամ Ճորայ. աւերեցաւ ամրութիւն տեղւոյն զոր Թագաւորին կալեալ էր. հարան պահականքն եւ դուռնն ի ձեռն առաւ Վահանայ որ էր յազգէ Թագաւորացն Աղուանից: Առաքեցաւ նոյն Վահան հրեշտակութեամբ յաշխարհն Հոնաց եւ դաշնաւորաց նոցա, եւ կռեցան դաշինք միաբանութեան Հայոց ընդ Հոնաց[1]:

## 135

Ուրախութիւն յաղթութեանն պղտորէր զուժիւ՝ որ ի Հայոց աշխարհէ եհաս՝ թէ յուխտէ քրիստոնէութեանն յետս եկաց Վասակ, աւերեաց հրձիգ արար զբազում կողմանս միջոցի աշխարհին, առան ձմերոցք արքունի եւ կալեանք զօրացն Գառնի, Երամնք, դաստակերտն մեծ Գրոհանակերտ, Վարդանաշատ, ամուրն Աւշական, Փառախոտ, Արդեանք, Յողակերտ (Յողակերտ), Արմաւիր, Կուաշն աւան, Առուճ, Աշնակ, ամենայն տուն Արագածու, Արտաշատ, եւ ամենայն գեղք եւ աւանք նոցա, ընտանիք իւրաքանչիւր նախարարաց փախուցեալ մերժեալ, սպասք եկեղեցեացն ի բաց կողոպտեալ, քահանայք ի կապանս. քանզի գունդն Ներշապհեան չժամանեաց տալ ձեռն ի միջոց աշխարհին, եւ զօրն սակաւաւոր որ աստ ուրեմն կային, մեկնեցան յարեւմտեան եզր աշխարհին:

Պնդէր ժողովէր սպարապետն Հայոց զկաց մնաց զօրացն եւ թէպէտ եւ շատ եւս անձապարէր՝ յետ ամսաւոր ժամանակի հազիւ հասանէր ի սահմանս Հայոց աշխարհին (450 Հոկտ.—Նոյ.): Սակայն ահն նորա վաղագոյն ընթանայր առաջի նորա. լուր յաղթութեանցն փութացոյց տագնապեցոյց զիշխանն Աղուանեաց եղանել յԱյրարատ գաւառէ թողեալ զգերին եւ զաւարն, ապաստանել յամուրս աշխարհին իւրոյ: Այսպէս խնդին սպարապետն եւ նախարարքն գործակիցք բռնացան կալան միանգամ զԹագաւորանիստ տեղին եւ սփռեցին զզօրն ընդ ամենայն աշխարհն, քանզի զռամիկս՝ թշնամեաց գնդին հարեալ էր եւ չգայր այնուհետեւ պատերազմ ի միջի, զի ձմեռն ի վերայ կայր, բայց միայն յապստամբակաւորացն՝ զոր յարձակէր առէպ յաշխարհն Աղուանից: Սահմանեցաւ յեպիսկոպոսապետէն զամենն քաղաքս անցուցանել պահօք եւ աղօթիւք եւ յետ այնորիկ վասն գոհութեան յաղթութեանն առնել տարեկան մշտնջենաւոր խառն ընդ տօնի Յայտնութեանն Քրիստոսի (451 Յունուար.):

Այնուհետեւ զամենայն ժամանակս ձմերայնոյն յերկուս իմն

1 Եղիշէ. էջ 91—134: Փարպ. էջ 94—113:

բանակս բաժանեալ էր աշխարհն։ Զայրարատեան կողմն ունէր Վարդան ախոյեան ընկերօքն՝ Ներշապուհ Արծրունի (կամ Ռմբոսեան) Խորէն Խորխոռունի, Արտակ Պալունի, Վահան Ամատունի, զունդն Վահեւունեաց, Թաթուլ Դիմաքսեան, Արշաւիր Արշարունի, Շմաւոն Ընծայացի, Տաճատ Գնթունի, Ատոմ Գնունի, Խոսրով Գաբեղեան, Կարէն Սահառունի, Հմայեակ Դիմաքսեան եւ միւս եւս այլ Գազրիկ Դիմաքսեան, Ներսեհ Քաջբերունի, Փարսման Մանդակունի, Արսէն Ընծայեցի, Ապրուկ Սղկունի, Վրէն Տաշրացի, Ապրամ Արծրունեացն, Շահ ախոռապետն արքունի, Խուրս Սրուանձտեաց, Գողթեանք, Եկեղեցիք, Տրպատունիք, զօրքն Արշարունեաց եւ ամենայն գաւառակալք արքունի իւրաքանչիւր զօրօք։ Յետոյ եւս փոխանակ յետակացելոց [illegible] զեղբարս եւ զեղբօրորդիս ի տեղի նոցա մտատուցանէր զօրավարն առաջնորդել իւրաքանչիւր զօրու։ Եւ ընդ նոսա միաբանեալ էին ամենայն կղերականք, մանաւանդ էին նոքա շունչ եւ ոգի ամենայն գործոյն գործելոյ. յաղթութիւն պատերազմին յԱղօթս էր նոցա զէն եւ զարդ քաւութեան, եւ սեղանք ամուրք էին ի ձեռս նոցա։ Իսկ զարեւելեան կողմն աշխարհին զրաւեալ ունէր մարզպանն Հայոց։ Միաբանեալ հաւանեալ էին ընդ նմա իշխանն Արշարունեաց Արտակ, Խորխոռունեաց՝ Գադիշոյ, Վահեւունեաց՝ Գիւտ, Բագրատունեաց՝ Տիրոց, Ապահունեաց՝ Մանէճ, Գաբեղենից (կամ Աբեղենից)՝ Արտէն, Ակեաց՝ Ընջուղ, Աւրծայ՝ Ներսեհ, միւս եւս Պալունեաց՝ Վարազշապուհ, սեպուհ մի Ամատունի՝ Մանէն, թող զայլ ազատ մարդիկ եւ զօրս յաստանիկ աւանէ։ Էր ի բանի ընդ նմա եւ Վասակ Մամիկոնեան կուսակալ Սասունին Հայոց։

Յերկոցունց կողմանց առաքէին պատգամս ի Տիզբոն։ Զկնի հրեշտակութեանն առաքելոյ ի Վասակայ՝ զմի ամն յառաջին կապելոցն Գարոնից առաքեցին ուխտապահքն հրեշտակութեամբ յաղերս՝ ցուցեալ նմա զամենայն վնասն որ եղեւ, եւ զաւեր աշխարհին եւ զհարուած զօրացն արքունի եւ զնոցին պատճառանսն՝ զի զուր տարապարտուց ներդեաց զնոսա ի հայրենի օրինացն յետակաղ, զհպատակութիւնս Արքայական իշխանին որ յանձնէ տուտակապաս քինէր՝ իբրեւ չէր ուրուք ի Հայոց ընդ նմա բանս եղեալ։ Խոստագրովն յետ հրեշտակութեան առաքելոյ ի Վասակայ, իբրեւ եւ այս եւս հրեշտակութիւն առ նա հասանէր, մեղմանայր առ վայր մի. քանզի ի Հոնաց արշաւանէ անտի կարօտ էր դադարել եւ երկեւղ եւս ի վերայ կայր՝ թերեւս հայք եկեալ կալ պաշտպան նեղելոցն։ Նմին իրի բառ խորհրդեան արքունեացն անտառ ի ձեռրացէն եղանէր հրովարտակ թողութեան եւ հրաման ազատութեան կրօնից, եւ իսկ եւ իսկ զկալանաւորսն՝ որ ի դրանն էին՝ հանեալ յազատութիւն առաջին ուռճկօք եւ տառացուածովք մեծարէր։

Digitized by Google

եպիսկոպոսացն զոր յետ յաղթութեանն յԱղուանս եւ զբանից այսրէն Այրարատ նահանգի ի ձեռն Վարդանայ՝ առաքեալ էին պատմել ուխտին Կոստանդնուպօլսեայ զաւետիսն, եւ խնդրել զաղօթս նոցա, եւ որպէս հաւանութեան թուղթ՝ զքաջալերախօսութիւն նոցա առ կայսր վասն օգնականութեան Հայոց աշխարհին։

Նովին հնարիւք ի բաց կալաւ Վասակ եւ զիշխանս ամրական կողմանցն զՏմորեացն, զԿորդուաց, զԽաղտեաց, որ են զԱրցախաւ, զՎրաց եւ զԱղուանից եւ ի բաժնէն Յունաց զդղեշխն Եկեղեաց որ յօժարագոյն էր յօգնականութիւն, թէպէտ եւ բեւր աղաչեցին հրեշտակքն առաքեալք ի Հայոց։ Նոյնպէս եւ Հոնք զաշնաւորք արգելան անցանել ընդ պահակն ի ձեռն զօրացն արքունի կոչելոց ի Վասակայ։

Ընդ այս ամենայն հայեցեալ թագաւորին Արեաց եւ զի չառին յանձն Հայք հաւատալ խաբէբայ խոստմանն թողութեան, այնուհետեւ առաքեաց նիզնին հազարապետն Արեաց Միհրներսեհ՝ գունդս գունդս յամենայն աշխարհաց ի ձեռն զումարեալ եւ երամակս փղաց. հասեալ ի Փայտակարան քաղաք, անդ զետեղեալ կայր դիտել ի մօտաւոր զամենայն եւ խնամել ի պատգամաւորաց իշխանին Աղուանից զանցս ներքին կողմանց Հայոց աշխարհին եւ զչափ զօրութեան նոցա եւ պատերազմական պատրաստութիւն։ Իբրեւ զամենայն յարդարեաց, եւ տուարացոյց զգունդն ի վարձկանաց անտի Լփնաց, Ճղբաց, Վատաց, Գուաց, Գղուարաց, Հեճմատակաց, Փասխաց, Փոխաց, Բաւսապացւոց եւ այլոց խառնադանձ ազգաց լեռնորդեայց, այնուհետեւ զամենայն գունդն յանձն առնէր միւսում յաւագացն Մուշկան Նիւսալաւուրտ անուն եւ երկրորդ նմին թողոյր զԴողմձն, որոց գործակից էր եւ ոմն յաւագացն Ատրորմիզդ՝ որ էր լեալ յառաջագոյն գործակալ ի Հայս, ցուցանէր նոցա զիշխանն Աղուանից խրատու եւ առաջնորդ, զի քան յանձն իւր՝ առաւել ի նա էր յուսացեալ՝ յետ ուրախ առնելոյ զնա յուսով թագաւորութեան Հայոց աշխարհին, եւ պատերազմի հրաման տուեալ վասն գարնայնոյն, ինքն ի Տիզբոն առ թագաւորն փութայր։ Այս հանգամանք էին իրացն ի վերջ կոյս ձմերայնոյն (451)[1]։

## 136

Այն ինչ կատարեալ Հայոց զտօն աւուրց զատկացն ուրախութեամբ՝ լու լինէր թէ գունդն պարսկային ի Հեր եւ ի Զարաւանդ գաւառ հասեալ է՝ բանակ բոլորեալ, փոս հատեալ, պատնէշ կանգնեալ, շերտաւոր փակեալ եւ անտուստ սփռեալ ասպատակաւ ի գաւառս գաւառս։ Հրաման տայր այնուհետեւ զօ-

1 Եղիշէ, եր 134—169։ Փարպ. եր 113—116։

Digitized by Google

րավարին Հայոց ժողովել զօրաց իւրաքանչիւր նախարարացն մեկնելոց յիւրաքանչիւր տունս՝ ժողովել յԱրտաշատ քաղաք. անդ հանդէս առնէր սպարապետն, յանձանձէր եւ տեսանէր զպակասութիւնս զինուց կամ երիվարի կամ հանդերձից զօրականին, եւ անտուստ առաքէր ետպուհ յազգէն Ամատունեաց Առանձար անուն մի խոնարհութեամբ եւ քաջութեամբ՝ երթալ դիտել յառաջագոյն զզօրութիւն եւ զդիր թշնամւոյն։ Նորա երթեալ 300 հեծելովք (ըստ Փարպ.) կամ 2000 արամբք (ըստ Եղիշայի), եւ վճարեալ յոր գործ առաքեալ էր՝ անկանէր ապա յանկարծակի զվերջապահ թեւով միով թշնամւոյն, զկէսս կոտորեալ՝ զայլսն փախստեայ ի բանակն հանէր։

Սթափեցան զուարթացան զօրքն, եւ զի լուան յԱմատունեաց թէ վաղ ի մեջոց կոյս աշխարհին շարժէր զօրն պարսկական, հաստատեցաւ ի խորհրդեան գլխաւորաց պատերազմին ինքեանն ելանել ընդ առաջ թշնամւոյն յեզր աշխարհին՝ զի մի բուն աշխարհն վնասեսցի կոտորածիւ կամ գերութեամբ։ Այլ գունդն արքունի ճեպեալ հասանէր ունէր վաղագոյն զմիջոց աշխարհին եւ յԱրտազ գաւառի առ գեղջն Աւարայրի ի շրջափակ տեղի առմուտ դաշտին առ Տղմուտ գետով զակիշ գործեալ բանակէին։ Ընդդէմ յանդիման յԱրտազեան դաշտին հասեալ բանակէր եւ զօրն Հայոց (Մայ. 27)։ Դարձեալ երթեւեկք պատգամաւորաց լինէր՝ բերել խոստմունս թողութեան ի Վասակայ բանիւ թագաւորին, լքուցանել զմիտս զօրականին։ Այլ զօրավարն Հայոց ի մէջ անցեալ քաջալերէր զնոսա, յետ բազում բանից զգիրս Մակաբայեցւոցն ի ձեռն առեալ ընթեռնոյր նոցա, եւ զելս իրացն ցուցանէր համառօտիւ։

Ընդ ի վերջնում գիշերին առաջի հրեշտակաց գնդին արքունի հրամանաւ եպիսկոպոսապետին Յովսեփայ խրատեալ վառէր զնոսա երէցն Ղեւոնդ։ Որ երախայ ոք էր՝ մկրտեցաւ ի գիշերին, եւ ի հաւախօսին կատարէր պաշտօն կանոնին, եւ ապա ընդ առաւօտս ետղան ուղղեալ՝ հաղորդեցան զօրքն ամենայն անմահական մարմնոյն եւ արեանն, իբրեւ նովին նպարակեալք. աղաղակեաց ամենայն բազմութիւնն թէ խառնեսցի արիւն մեր ընդ արիւն մարտիրոսացն եւ լիցուք պատարագ հաճութեան վասն փրկութեան եկեղեցւոյն Աստուծոյ։

Իբրեւ հատան պատգամաւորքն ի միջոյ՝ յիշեցուցանէր զօրավարն Պարսից զհրաման թագաւորին, զեւղն եւ զպատկն եւ զուռն եւ զառատաձեռն պարգեւսն որ յարքունուստ շնորհիցին, զկին եւ զորդիս, զանուն եւ զագարակս եւ զպատուհաս փախստէիցն։ Կարգէր կազմէր Մուշկանն Նիւսալաւուրտ զիւր ճակատն, առ մի մի փիղ՝ երեք հազար սպառազէնս յաջմէ եւ յահեկէ կացուցանէր ընդ երկայնութիւն դաշտին, եւ զգունդն Մատենից ամրացուցեալ

Հմայեկայ եւ յորում անկաւ իշխն իսկ Հմայեակ, դադարեցին զօրք թագաւորին լինել խառնամբոխ յամենայն կողմանս աշխարհին համարձակ եւ լինէին ձեռնպահ եկեղեցեացն, եւ գրեալ հրովարտա-նէր միաբանգամ Մուշկանն Նիւսալաւուրտ յարքունիսն՝ ցուցեալ զօրացն նեղութիւն եւ զամենայն մնաս գործոյն զայն զՎասակաւն արկանէր: Այս հանգամանք էին իրացն ի փոխման կոյս ամբարտաւանութեան:

Տրտմէր թագաւորն մանաւանդ ընդ աւեր ասպատակին Հոնացն, առաքէր հրաման յարքունուստ զի Մուշկանն ամենայն բանակաւն ի վերայ Հոնաց խաղայցէ եւ նորին նիզակակից Ատրորմիզդ Արշա-կան կալցի զՀայս մարզպանութեամբ փոխանակ Վասակայ՝ որում հրամայեցաւ ի դուռն գալ, եւ սիրով եւ խաղաղութեամբ նուա-ճեսցէ այսրէն զամենայն: Ինքնին մարզպանն շուրջ եկեալ ժողո-վէր եւ չինէր զամենեսեան ուխտիւ հաստատութեան թողութեանն արքունի. բաց յեպիսկոպոսացն եւ յերիցանց (ի Սահակայ եպիս-կոպոսէ Ռշտունեաց, ի Մուշեայ երիցուէ Արծրունեաց, ի Սա-մուելէ եւ յԱբրահամէ երիցանց, ի Յովսեփայ եպիսկոպոսապետէ, ի Ղեւոնդայ երիցուէ, ի Քաջաջայ սարկաւագէ եւ յԱրշէնէ երի-ցուէ) որ վասն աւերելոյ ատրուշանաց կամ քանդելոյ՝ կապանօք յարքունիս առաքեցան. այլոց եպիսկոպոսացն հրաման տայր զա-ռաջին իշխանութիւնն եւ զպաշտօն հրապարակաւ ունել, թողոյր առ վայր մի զհարկս աշխարհին, զայրուձին թեթեւացուցանէր, եւ միայնակեցաց հրաման տանէր դառնալ այսրէն յետս եւ ամե-նեցուն իսկ փախստէից, ազատաց եւ շինականաց յարքունուստ ցուցանէր հրաման գալ ունել զիւրաքանչիւր ագարս. նա աւանիկ հրովարտակք արքունի հրաման տային՝ որոց ակամայ կալեալ ի-ցէ զմոգութիւն՝ իշխել անդրէն ունել զքրիստոնէութիւն:

Շինութիւն աշխարհին եւ հաստատութիւն եկեղեցեացն հաւանեցուցին զնախարարսն որ վաղ իսկ կամ ռոճկին նուազու-թեամբ եւ կամ սաստկութեամբ ձմերայնւոյն սկսելոյ ի տաղնապի կայլին՝ անկանել ի պատգամս ընդ մարզպանին՝ որ ետ ածել գիր ողոքանաց եւ ուխտ հաստատութեան թողութեան յարքունուստ վասն նոցա: Այլ հարկ էր նոցա այնուհետեւ (ի վերջ 451 ամին)[1] երթալ ի կոչ թագաւորին ի ձմերոցն արքունի փութանակի ա-ռանց կասկածանաց, թողեալ զկին եւ զորդիս եւ զինչս ի ձեռս մարզ-պանին[2]:

## 137

Լինէր (սկզբան 452 ամին) ատեան հարցափորձի նախ առաջի հազարապետին Միհրներսեհի եւ ապա յանդիման թագաւորին ի մէջ կողմանն նախարարացն եւ կողմանն Վասակայ. ի մէջ եկեալ

1 Փարպ. էջ 129—130:
2 Եղիշէ, էջ 171—234: Փարպ. էջ 123—133:

Digitized by Google

երեւելին թուղթքն Վասակայ վաւերական մատանեաւք նորա յաշխարհն Վրաց, Աղուանից, յԱղձնիս, առ կայսր եւ առ սպարապետն Անտիոքայ[1] Անատողիոս. մի ըստ միոջէ եղեն ամբաստան Մուշկանն Նիւսալաւուրտ վասն խաբէութեանց նորա եւ գողութեան հարկաց արքունի, մերքն նեղեալք ի Հայոց աշխարհին, իւր իսկ ազգականք ցուցանէին զմիաբանութիւն նորա երբեմն ընդ Հեռանայ Հոնի, որ աւերեալ էր զերկիր տէրութեանն Պարսից, Աղուանից, Հայոց եւ Հոռոմոց, եւ յետ այնորիկ զմիաբանութիւնն եւ զառաջնորդն լինել Հայոց ապստամբութեանն, նոյնպէս եւ քահանայք չմոռին ինչ նմին ջատագով: Յանդիմանեաց զնա ստակակոծ թագաւորն, եւ մերկացուցանել յօրինաց պատուոյն՝ որով զարդարեալ նստեալ կայր ի ներքին հրապարակի մեծամեծացն, կապեալ ձեռօք եւ կապեալ ոտիւք հեծուցեալ ի ձի մատակ կանացարար տարան եռուն ի բանտ մահապարտացն. խափանած հարկաց աշխարհին արկաւ ի վերայ տան նորա, անգամ եւ զհարց եւ զհաւուց եւ զեւր արարս եւ զզարդս կանանց եւս եւս ի տոյժսն եւ ոչ կարաց հատուցանել, մինչեւ հարցանել թէ կայցէ ինչ գանձ ի գերեզմանս նախնեաց իւրոց: Ընդ կեցեալ ի մուրոյ ձեռասուն ծառայիցն՝ ապա քամեալ ի թանձրամածութենէն՝ տարեալ տողնալից մեռանէր, հեծեծեալ ընդ յանցանան ամս քանի մի, ծեծելով զեւր դէմս «ընկալ, ասէր, անձն մեղաւոր, զձաղս զոր եա բերել քեզ ուխտանենգութիւն աւետարանին եւ արիւնն Վարդանայ եւ այլոցն ցանկալի հաղորդելոցն ընդ նմա»[2]: Այսպէս այն որ կամէրն մեղօք թագաւոր լինել Հայոց աշխարհին ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա յայնմ աշխարհի: Իսկ տէրութիւն Սիւնեաց աշխարհին անդէն ի նմին աւուր մահապարտութեանն տուաւ թշնամւոյ նորա եւ փեսայի՝ Վարազվաղանայ:

Սակայն եւ ոչ նախարարքն ինչ արձակեցան իբրեւ արդարացեալք. պահեցան նոքա զգուշութեամբ ընդ այն ի նախարարաց որ յառաջագոյնն արգելեալ կային անդ՝ ի ձմերոցին ի Վրկանս եւ յամէ 454 ի ղեկին Նիւշապուհ քաղաքի յԱպար աշխարհին, առհասարակ արք իբրեւ 35 կամ 37: Յազգէն Սիւնեաց՝ Բաբգէն եւ Բակուր եղբարք, յԱրծրունեաց՝ Ներշապուհ, Շաւասպ, Շնգին (կամ Շնդին), Մեհրուժան, Գադիշու եւ Ցամակ, ի Մամիկոնէից՝ Համազասպեան, Համազասպ, Արտաւազդ եւ Մուշեղ, ի Կամսարականաց՝ Արշաւիր, Թաթ, Վարձ (կամ Վարձոյ), Ներսեհ եւ Աշոտ, յԱմատունեաց՝ Վահան եւ Առանձար եւ Արնակ (կամ Առնակ), ի Գնթունեաց՝ Ատոմ, ի Դիմաքսենից՝ Թաթուլ եւ Սատոյ այլ եւս երկու ազգակցօք, յԸնծայեցեաց՝ Շմաւոն, Զուարէն եւ Առաւան, յԱռաւեղենից՝ Փա-

1 Զոր Փարպ. «Յաղարտական Անտիոքայ», առէ, օրինակքն Եղիշէի ունին՝ «Յապարայկան Անտիոքայ»:

2 Բանք զոր ի ծառայից իւրէ նորա լուեալ գրէ Փարպեցի:



Digitized by Google

պահ, Վարազդէն եւ Գուռղ, ի մէջ Արծրունեաց՝ Աշխադամ, ի Մանդակունեաց՝ Սահակ եւ Փարսման, ի Տաշրացեաց՝ Վարէն, յԱփխենից՝ Բաբիկ եւ Յոհան (կամ Յուսիկան)։

Քահանայք որոց մեծ մասն զատուածին ընդ տոսս էր կապեալ տառապ շղթայիւք յօրինեալք ի մոգուցն՝ տարանին մի ըստ միոջէ։ Քանզի իբրեւ վասնթարացաւ թագաւորն յարշաւանսն ընդդէմ Քուշանաց (յամի 454) որք ի նոյն ամին զնա անկանեալ ի վերայ միոյ միոյ ի թեւոց նորա անձամբ գնդաւ, ըստ խրատու հազարապետին՝ ամէնն մոգքն զհաւան զկապեալսն քահանայսն, զի իբրեւ ի սպանողաց կրակի չհնազանդեցաւ վրէժ առնուանցէ նոցունց։ Ընդ նմին Սամուէլ երէց եւ Աբրահամ սարկաւագ երկոքին յԱրած գեղջէ Արտաշատայ որ ի կապանսն էին՝ տարանին զուգաւ ի Վարդէս (ըստ Փարպ. Վարդգէս), ուստի եւ Խոսթիկ եպիսկոպոս Ռստունեաց ազատեալ երեկն ի Վասակայ (յամի 450) իբրեւ զհասակակ յաջորդին՝ տարանու այժմ յԱստրուստանի։ Աստ առաջեցաւ ամբարտակայեան Գնէնշապուհ կամ Մեհ Գնէնշապուհ ի Նիւշապուհ եւ յանապատի ուրեք հեռի ի քաղաքէն մօտ ի Թեւան գեւղ տարանան յեւ բազում հարցափորձք Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց, Յովսէփ ի Վայոց ձորոյ ի գեղջէ Հողոցմանց, Ղեւոնդ երէց ի Վանանդայ ի գեղջէ Իջեւանից, Մուշէ դրան երէց Արծրունեաց յԱղբակոյ, Արշէն երէց յԻղեգեկաց Բագրեւանդայ, Քաջաջ սարկաւագ Ռշտունեաց ի Նիւշապուհ քաղաքէ (Յուլ. 31)։ Մոգպետ մի իշխան գնեալն Աստ աշխարհին, անհնարին հմուտ օրինացն նոցա, որում յանձն իսկ էր պահպանութիւն կապելոցն քահանայից, այն ինչ զարմացեալ էր ի քրիստոնէութիւն յետ տեսլեան իրիք եւ յաղթութեան նոցին ընդերդ. հարց զնա Գնէնշապուհ ի ծածուկ եւ առաքեցաւ զաղտ յանկանեւ քան զԿուրան եւ զՄակուրան եւ անդէն ընկեցաւ ի վերայ (454)[1]։ Աշակերտք եպիսկոպոսացն, Խորէն եւ Աբրահամ, յետ կորեալ զականջսն մօտ՝ առաքեցան յերկիրն Բաբելոնեայ ի Շահուղ (կամ Շապուղ) ի գործ մշակութեան արքունի, որք անդ դարձեալ ձեռնադրաւորհեցութեանք ընդ Շահուղ, ընդ Մեշայի եւ ընդ Քաշկայ՝ ժողովեցին առաջ ի հաւատացելոց աշխարհին Ասորեստանի եւ Խուժաստանի, առնել կամ առաքել թոշակս առ նախարարսն կապեալս՝ առ յամէ, մինչեւ առ Պերոզին վասանցի վախճանէր Խորէնն յԱսորեստանի, եւ յետ ամաց ինչ առաջնորդեալ ի նախարարացն, եւ հաւատացելոցն Ասորեստանեաց առաջել երախտաւորութիւն ընչից փոխանակ ընդ հարիր նորա՝ եկն ի Հայս եւ ողջունեցաւ ուրախութեամբ իբրեւ կարապետ դարձեալն նախարարացն (463) եւ յետ ամաց ինչ կարգէր յեպիսկոպոսութիւն աշխարհին Բզնունեաց[2]։

1 Վասն մոգպետին չիք ամենեւին յիշատակ առ Փարպեցւոյն։ 2 Փարպ. 185։

Իսկ ընդ նախարարսն՝ որ ոչ ի նոցանէ միայն, այլ եւ ի կանանց անտի ընդունէին Թոշակս՝ զոր առաքէին նոքա առ յամէ ի մխիթարութիւն, համառելով ի ռոճիկէն կարգելոյ նոցա յարքունուստ[1], վաղ գուԹ արկեալ էր վերակացու աշխարհին Հրեւայ Հարեւ Ըզոմշապուհ կամ Հրեւ Ընտմաշապուհ եւ ջանայր ազգի ազգի հնարիւք ածել ի հաւան զԹագաւորն արձակել զնոսա: Այլ Թագաւորին վախճանեալ ընդ նոյն աւուրս (458), ընդ հակառակս ելեալ երկուց որդւոցն Որմզդատայ եւ Պերոզայ ի վերայ աԹոռութեանն կռուէին. եւ էր այնուհետեւ ընդ երկուս բաժանեալ գունդն Արեաց՝ մինչեւ դայեակն կրտսերոյն Ռահամ անուն ի Մեհրան տոհմէն եւ Ճակատ ընդ երիցուն, արար ձերբակալ եւ սպան առ եւեղ, եւ այնպէս Թագաւորեաց ամենն նորա Պերոզ միահեծան (յամէ 460): Ընդէն յառաջնում ամի միահեծան Թագաւորութեանն առաքեցաւ ի Թագաւորէն Յըզատ Վշնասպ նորին դայեկորդի սիրելի, արձակեցան նախարարքն ի կապանացն, ածան ի Հայս եւ կարգեցաւ նոցա ռոճիկ եւ տուեալ նոցա ազատագինութիւն եւս՝ հրամանաւ Աշտատայ հօր Յըզատն Վշնասպայ առաքեցան ի մարտ պատերազմի ընդ այլուձիոյն[2]: Արգելան նոքա այնպէս յարքունիս ամս երիս կամ չորս՝ վասն ապստամբութեան Աղուանից ալքայի քեռորդւոյն Պերոզի (457—463). զի զզջացեալ նորա ընդ ուրացութիւնն՝ առ զէն, խրամատեաց զպահակն Ճորայ, եբեր զօրս ի Մազքթաց, միաբանեաց զ11 Թագաւորսն լեռնորդեայս եւ ընդդէմ եկաց պատերազմաւ ընդ Արեաց գնդին եւ գրով եւ պատգամաւ յանդիմանէր զարքունիսն "ի վերայ այնչափ սիրոյ եւ վաստակոց Հայոց աշխարհին, փոխանակ կեանս առնելոյ՝ զարեւ հատէք, ասէր": Յետոյ յանձն առ Թագաւորն կալ նմա քրիստոնէութեամբ, որ եւ Թողեալ զԹագաւորութիւնն դարձաւ ի վանս մենակեցութեան (463): Ի միւսում ամին արձակեցան նախարարքն յիւրաքանչիւր տունս իւրաքանչիւր կենօք եւ պատուով (464):

Այսպէս ընդ բառնալ Թագաւորին եւ գործակցացն նորա՝ լուծեալ խաղաղէր ամենայն աշխարհն. Միհրներսեհ յառաջ իսկ քան զմահն Յազկերտի կամ առ Պերոզիւ փոխեալ էր ի գործոյ հազարապետութեանն եւ ձեռնակար եւս զատեալ ի գործ արքունի. սակայն պատճառ զնմանէ[3] ապա ուրեմն յաղԹեալ ի հաստատութենէ մտաց կայսերացն՝ սէր արկեալ ընդ նոսա, եւ բարեխօս լեալ վասն նոցա առ Թագաւորն եւ զամենայն աւեր աշխարհին Հայոց յիւրն կրԹեալ[4]:

1 Եղիշ. էջ 360:

2 Այսպէս ըստ Փարպ. այլ Եղիշէ զայս ամենայն դնէ առ Յազկերտիւ լեալ, սակայն ժամանակագրութիւն նորա՝ որ հակառակ է ստէպ պատմութեանն իւրում՝ է փորձն պատմութեանն եւ ժամանակագրութեան Փարպեցւոյն, քանզի նոյն Եղիշէ 9 ամս եւ ամիսս 6 առնէ լինել նախարարաց ի կապանս, որ է 452—460, ուր ըստ նորին իսկ Եղիշէի մեռաւ Յազկ. յամի 458:

3 Եղիշ. 346—347:

4 Եղիշէ, էջ 334—355: Փարպ. 133—190:

Digitized by Google

Սակայն այն ամենայն շրջան մի էր կրօնական պատմութեան. մեւս եւս շրջան նորին պատմութեան ի վերայ կայցէ սոս այլով թագաւորաւ եւ այլովք գործակցօք՝ հակառակ այլոց ուղղոց ի վիցագանց Մամիկոնեան տոհմին։

## 138

Ընդ նոյն ժամանակս արքունիքն Արեաց մեղմական հնազանդային վարէին յառաջ զոր նախն ի մեծ եղին։ Ի գլուխ գործոյն կայ մարզպան պարսիկ նստեալ ի Դուին, նախ Ատրորմիզդ (յամէ 452) եւ յետ նորա Ատրվշնասպ Յազդմանդեան հանդերձ պարդի Հազարապետաւն Հայոց՝ որոյ Վեհ Վեհնամ անուն էր։ Տակաւ իբրեւ խմոր ածուէր գաղտ դենն մազդեզն. որպէս ի հեռաւորութեան նախարարացն կալանաւորաց, նոյնպէս եւ յետ արձակմանն նոցա՝ գահք տանուտէրութեան նախարարութեանց, գործակալութիւնք արքունի եւ ամենայն պատիւ մեծարանաց յուխարհին Հայոց՝ էր գնոց ուրացութեան յարքունիս Թագաւորին, չգոյր մարդ անարգ՝ որ ոչ փառաւորէր ի Թագաւորէն ընդ երկրպագութեան արեգական, եւ ոչ վտանակ ինչ երեւելի՝ որ հանդ իցէ արքունեաց առանց պաշտաման կրակի։ Այսպէս առաւել յետս ընկրկէին որ առաջինիք ոք քաջք էին յիրի եւ ի բանի, զի այնուհետեւ այն այրուձին քաջ որ բուն զօրութիւն պարսկական բանակին էր, այլ վատ եւ ապաժաման քան զամենայն զունդ Արեաց՝ զՀայոց գունդն անուանէր Թագաւորն։ Գլխաւոր ուրացեալցն էր մաղխազն կամ Խորխոռունին Գադիշոյ, յոր յարեցաւ յետոյ եւ նորին ազգակից Գարջոյլ, եւ Գդիհոն տէր Սիւնեաց՝ պայազատ Վարազվաղանայ. սոքին էին խորհրդակք եւ քաջալերիչք մարզպանացն եւ զօրավարացն Պարսից առ ի [illegible]բերեանց տոհմային քաղաքացեացն։

Յետ Յովսեփայ՝ կայրն մի լոտ միոջէ Մելիտէ կամ Մելիտ Մանազկերտացի, Մովսէս Մանազկերտացի եւ Գիւտ յԱրահեզայ Տայոց։ Սա անդստին յամէ 465 յոր հմտութեամբն եւ ճարտարխօսութեամբ զոր ի վերայ եկեղեցական նախանձաւորութեան ունէր՝ առաւել իմն զօրութեամբ հակառակ չարեացն երեւէր, փոյթ ի վերայ ունելով հրահանգաց կրթութեան ժողովրդեան, բայց առանձինն իսկ ի վերայ մանկտւոյ նախարարացն, մանաւանդ տոհմին Մամիկոնէից եւ Կամսարականաց։

Վահանն եւ արդեամբք իսկ մեւս եւս սատ աշակերտութեան դարձեալ ի տոհմէ անտի Մամիկոնէից շողայր ի պայծառ միջին։ Վարդանայ անժառանգ յարու մանկանէ վախճանեալ՝ մնայր տանուտէրութիւն այնր տոհմի՝ եղբօրորդւոցն յետ մահու հօրն նոցա Հմայեկի։ Վասակայ վաղ ըմբռնեալ էր ի զատս ձեռաց դայե

կռուոյն (450) եւ տառապեալ յարգելանին (452) իբրեւ հաճոյ ինչ կատարեցեալ առնել Թագաւորին՝ որ եւս զմանկտին ցիւր հազա-րապետս ցՄիհրներսեհ, մինչեւ արար երեսս աղաչանաց Աշուշայ Վրաց բդեշխի եւ պարգեւեաց նմա իբրեւ կարի առն սիրելոյ եւ վստահատակաւորի, որ դարձոյց իսկ զնոսա առ մայրն իւրեանց Զուիկ՝ դուստր զքայրն զԱնուշվռամ ունէր ի կնութեան բդեշխն։ Ընդէն ի Վրաց աշխարհին ընդ խնամատուն առաջնորդութեամբ մօրն սնեալ զարգացանային Վահանն եւ Վասակ եւ Արտաշէս, իսկ կրտսերագոյն քեռն զամենեսին Վարդ՝ նա առ դայեակն ի Տայս էր եւ անդ սնեալ ի դուռն արքունի։ Ի տոհմէ Կամսարականացն խնամելոց տանն Մամիկոնենից՝ էին նշանաւոր որդիքն Արշաւրայ՝ Ներսեհ տէր Շիրակայ եւ Հրահատ։ Յաջողակութիւն պատանեկացն՝ մանաւանդ անդրանկանն Մամիկոնենից Վահանայ՝ որում յանձն էր գործ ոսկեհատին արքունի, սիրելի առնէր զնոսա գործակա-լացն Պարսից որ ի դրանն գային, եւ համբաւն նոցա առ Թագա-ւոր անդր հասանէր։ Սակայն ոչ միայն յիշատակք գործոց նա-խնեացն նոցա՝ որոց հանապազ պատերազմաւ աշխատ կալեալ էր զԱրիս, որպէս լինէին ընդունելոյ զարժան պատիւն, այլ եւ ազ-գակցացն անհաւատարմութիւնք վասն ապստամբութեան հապ ստէպ յարքունիս զՎահանայ հասանէին։ Այնչափ հրապոյրքն եւ մեն-քենայութիւնք զօրեցին՝ զի ածին զնա երթալ ի դուռն եւ ուրացեալ ըստ հօրեղբօրն օրինակի եւ արձակեցաւ ի Հայս յետ գալոյ եղբօր նորա Վարդայ մնալ անդէն իբրեւ պատանդ (յամի իբրեւ 479)։ Այլ այն ստրջանք յանկարծական գործոյն՝ առաւե-լագոյն եռանդն ածին նմա ի ջնջումն այնպիսի արատոյ կենացն եւ միանգամայն ի շահ եկեղեցւոյ։

Վաղ իսկ միաբան խորհրդով եպիսկոպոսապետին Գիւտայ եւ նախարարացն աստուածապաշտաց առաքեցաւ մի անգամ եւ երկիցս գաղտ պատգամաւորութիւն առ կայսր Լեւոն Ա. (յամի իբրեւ 470), այլ առաւել քան զլոյս եւ զխոստումն՝ ոչ ինչ օգնականութիւն արդեամբք ի կայսերէ հասանէր, միայն հրաման տայր կայսր պաշտպանելոյ փախստէիցն Հայոց յիւրում բաժնին։ Ամբաստանութիւն եւս վասն նորին կրէր եպիսկոպոսապետն ի ձեռն Գադիշոյի, կոչեցաւ եւ ի դուռն եւ ի գործոյ պաշտամանն ի բաց մերժեալ՝ դարձաւ յաշխարհն կալ առանց իշխանութեան (472—475)։

Սակայն խորհուրդ նախարարացն կայր մնայր դիպող ժամու՝ որ յետ ամաց ինչ ել նոցա ընդ առաջ։ Մինչդեռ ի կռուի ու-րեմն էր Թագաւորն ընդ Հոնացն Հեփթաղաց (481)[1], Վախթանգ բդեշխ Վրաց սպան զուրացեալ Թագաւորն Վրաց զՎազգէն,

1 Փարպ. էջ 205։ Գրիգոր. Պարս. պատմ. Ա. Յ.

Digitized by Google

նուազ սակաւք վիճաբանեցին ընդ Մամիկոնեան տոհմին. միոյ սեպուհք ոմանք, Յովհան Ընձաւացի եւ Ներսեհ Ճղրուանդանի, եկին ի կոչն պատրաստութեամբ. նա աւանիկ եւ զօրքս եւս մերձե-ցան զհետ իշխանք Ընձաւացեաց եւ Մոկաց՝ Աբեւուէկ. եւ Յով-հան այրուձիով առ քաղաքագեղջն Ընաւասու (482 Մար-կամ Ապր.)։

Ընդէն զարնայնի հասանէր գունդ պարսիկ ի Հեր եւ Զարե-ւանդ գաւառ գլխաւորքն՝ պահլաւն Աստրինա, Վլախսա Նփե-րեան, Աշտիշնասպաս Նխոապեան կամ Խոսրովեան կամ Ցա-պեան եւ Գողիհոնա ավրամքն Արենեայց, եւ ի վերայ ամենեցուն Աշտներսեհ փուշտիպանացն սպարապետ։ Ճեպեաց Վահան ի Գըր-նայ, եւ յետ օրհնութեան կաթուղիկոսին՝ որ ընդ նմա իսկ ե-կեալ էր, դարձեալ յԱրտազ գաւառի առ Ներսեհապատեան գե-ղիւ ճակատն յարդարեցաւ։ Ամենայն զօրութիւն ճակատուն սա-ուճին էր, ի միջոցի՝ մարզպանն Վահան, ընդ աջմէ՝ Բաշշ կամ Բաշղ Վահեւունի, Բարգէն, Աշոտ եւ Փապագ Պալունի, յա-հեկէ՝ կամսարականքն եւ եղբայր սպարապետին, եւ ինքն իսկ սպա-րապետն հանդերձ Վրենաւ Վանանդացւով պատրաստէր յաղ-նականութիւն տկարացեալ կողմանն։ Զառաջինն՝ միջոց գնդին Հայոց աղմկեցաւ եւ աջակողմեան գնդին Հայոց հարաւ եւ եր-թայր փախստեայ, այլ յաղթութիւնն որ ի ձախում թեւի անդ միաբան գործակցութեամբ գնդին Վահանայ ընդդէմ աջոյ թե-ւին՝ առ Կատուշքն եւ գունդն սիւնիէր, գործեցաւ, քաջալերեաց զնոսա դառնալ յանկարծ ի վերայ հալածչացն։ Չկրուէր բանակ պարսիկ՝ թողեալ վիրաւորս առաւել քան զմեռեալսն։ Դա-նային Հայք լցեալ աւարաւ առ կաթուղիկոսն Յովհան խնդալից որ "ոչ այնչափ ընդ յաղթութիւնն ուրախ լինէր, որչափ ընդ այն՝ զի հաշտ զԱստուած ընդ նոսա տեսանէր"։ Լրումն ուրախու-թեանն լինէր աւետեօք գալստեանն Վարդայ կրսերոյ եղբօր սպա-րապետին՝ որ ի կապանացն փախուցեալ եկեալ էր աջակցել իւր օրինակաւ (Մայ. — Յուն.)։

Այն ինչ ի գլուխ հանեալ նոցա զպատերազմն եւ հանգչէին ի ջերմկին Վարշակի՝ դեսպանք ի Վրաց հասանէին. քանզի միւս եւս գունդ պարսիկ զօրավարութեամբ Միհրանայ անդր դիմեալ էր, եւ թագաւոր աշխարհին Վախթանգ չժամանեալ հանել զնոսա՝ խոյս տուեալ ի սահմանակից լերինս Հայոց՝ խնդրէր թի-կունս ի Հայոց ըստ դաշանցն պայմանի, առանց ի վեր հանելոյ թէ Հայք չեկին ի կռիւն։ Ճեպէր զօրն հայազունդ ի սահմանակից գաւառն Կանգարաց, պատրէր զնոսա Վախթանգ մօտալուս գալստեամբ Հոնաց՝ մինչեւ ի լերանց անտի առ տարաւ զնոսա ի դաշտավայրսն Ճարմանայնոյ առ Կուր գետով։ Յետ աւուրց ինչ հասանէր կայր եւ Միհրան յայնկոյս գետոյն. եւն յայս խարէու-

Digitized by Google

թիւն Թագաւորին, այլ հարկ էր այնուհետեւ ճակատել սա-
կաւաժամեան ընդ հարուստ գնդին, զաջակողմն թեւոյն առեալ
Ներշապհի Վահեւունւոյ եւ Սատունի Գաբեղենի, զձախակողմն՝
Վախթանգայ, եւ զմիջոցն՝ Վահանայ։ Մասն մի գնդին Հայոց
անկց ի կողմն, անկաւ Սահակ ասպետ եւ մարզպան եւ եղբայր
ապստամբեալքն Վասակ՝ որ ի խառնուրդս անդ ունեալ զԱտրներսեհ
Սասանականն՝ զի խնդրէր նիզակ փոխանակ այնր որ բեկաւ, ձայն ի
վերայ եղեալ ասէր «Փութա, Ներսեհ, տանել նիզակ եւ դար-
ձիր եկ առաջ, քանզի ոչ երբէք կարեմք տանել ժամ զքանչէք
այսպիսի վաճառաց, ուր մահ զանմահութիւն եւ առժամայնն՝
զյաւիտենականն առնու»։ Յրուեցաւ գունդն Վրաց եւ զօրն
Հայոց ուշ ունէր այնուհետեւ փախստեան ոչ առանց ինչ կար-
գի։ ԶԲաբգէն Սիւնի եգիտ խոց կարեւէր ապարապեան ի մէջ
դիւականացն զճանապարհայն եւ հեծոյց ի նժոյգն, բայց Հրահատ
Կամսարական՝ զոր ընկէց երիվար իւր, անկաւ ի ձեռս Միհրանայ
(482 Յուլ. կամ Օգոստ.)։

Այնուհետեւ մանր մանր կռուովք՝ օգնեալ ի տեղեացն հրա-
տութենէ խաղ առնէր Վահան սակաւաւորք զզօրավարս Պար-
սից մի ըստ միոջէ։ Միհրան ընդ որով նուաճեալ էր համօրէն
աշխարհն Վրաց՝ պնդել պնդէր համարձակ զհետ Վահանայ եւ
զսակաւաւորացն որ գնացեալ էին. բայց մինչդեռ ի սահմանակցու-
թեան Տարօնին Հայոց ի Դու գեղջն խօսէր պատգամաւորու-
թեամբ ընդ սպարապետին՝ որ ի Մկնառինջն բանակեալ էր բա-
ցագոյն ի նմանէ երկուք հրասախօք, կոչեցաւ նա յանկարծ յետս
ի դրանէ, եւ մեկնէր անդէն զօրավարն պարսիկ յետ զՀրահատ
արձակելոյ եւ զՅազդ Սիւնի չարախօսութեամբ Սիւնեայն Գդի-
հոնի գլխատելոյ ի Նագաւանի (Սեպտ. 25)[1]։

# 139

Գրաւէր այնուհետեւ Վահան համարձակ զմիջոց աշխարհին,
մատչէին ուխտք պատարագաց ի Վաղարշապատ եւ յոստանին
Դուին։ Եւ ի գլուխ ձմեռն մինչեւ գարնայնի հասանէր
նոր գունդ պարսիկ զօրավարութեամբ Զարմիհր Հազարաւուխ-
տայ (483)։ Սա անցեալ ընդ Երասխ առ Արտաշատաւ՝ թելա-
դրութեամբ Հայոց ոմանց ուխտանենգաց աճապարեալ եկն յոս-
տան անդր. Ճակատեցաւ վաղվաղակի առաջի մայրեացն Խոսրո-
վակերտի մօտ ի Դուին ի դաշտագետին վայրի։ Այլ Հայք յետ
փնասելոյ նոցա՝ ապա եկին փախստեայ միւսանգամ յամուր տեղիս
սահմանացն Խաղտեաց. կաթուղիկոսն Յովհան՝ որ չժամանեաց
մեկնել ի քաղաքէ յառաջ քան զճակատն, առ տագնապի փա-

1 Փարպ. եջ 190—245։

խոշտանեալն անկեալ ի ձեռն՝ գտաւ կիսամահ։ Զհետ մահուանն զՎահանայ Հազարաւուխտ առեալ զձեռնասարհացն զամենայն աշխարհին եւ գործեալ կոտորած բազում՝ հասեալ ի Յաղնեաց Նահանգ եւ ի Շաղագոմն յերկիր սահմանաց Հռոմայեցւոց բաժանին եւ վրիպեալ ընթանալ անդրէն զՎահան՝ դառնայր ի Բասեան ի Գուռ գեւղ ի դաշտ Արծաթաղբերացն։ Անդր գնացեալ ի դրանէ հասանէր բերեալ հրաման երթալ Հազարաւուխտայ ի վերայ Վաղտանգայ Վրաց արքայի, յօգնականութիւն աշխատանին զոր դնէր արքայ Պերոզ ի վերայ Հոնացն Հեփթաղաց։ Ի Վիրս եւս յերկուս բաժանեալ էր ժողովուրդն. ձեան եւսն զօրավարին ուխտանենիցն եւ էր Վախտանգ փախստեայ ի կողմանս Եգեր աշխարհին։ Իսկ ի վերայ Հայոց թողեալ էր Հազարաւուխտայ մարզպան զՇապուհ ի Միհրան տոհմէ պարսիկ պատուիրեալ եւ այրուձիւք գնդաւ, եւ զԳդիհոն Նմին օգնական Ալանաց գնդաւ, եւ գործ յանձն էր նոցա ի Հազարաւուխտայ զՎահան ապականել ի բունն՝ մինչ չեւ զաւեալ նորա իւր զօրութիւն։ Փորձեաց Շապուհ անկանել ի վերայ նորա ի գեղջի՝ նախ առ Ծաղեկ գեղջն ի սահմանակցութեանն Հաշտենից, առ Արծաթեաւ Կարնոյ (ի հիւսիսակողմն ծովուն Կարնոյ), առ Ներքին գեղջն Արշամունեաց գաւառին՝ ուր հարաւ ղակիշ զնդին Պարսից, օգնականութեամբ Ներգաղացոց, եւ առ Շաւեայ գեղջն՝ ուր մեռ առաջին յոյժ տախտարացն Վահանայ անկաւ Գդիհոն ի ճակատու դրդիչն առաջնորդ զօրավարին Պարսից եւ ցրուեցաւ գունդն Սիւնի. սակայն ոչ առանց կոտորածի Վահանեանցն։ Զահի հարեալ էր Շապուհ զուցէ առաջեալ Վահանայ ի սահմանակից անդիան Անձայ, Ծոփաց եւ Հաշտենից առ հայ մարզին՝ ստուարացուցէ զիւր զունդն, եւ խորհէր մեկնել ի միջոց աշխարհին Հայոց եւ սպասել հզօրագոյն գնդաւ ի պատեհ ժամու զգործն վճարել։ Այն ինչ չուեալ յԱղուարն գեղջ Բասենոյ՝ զուժկան առ Շապուհ հասանէր առ զրոյց պարտութեանն եւ սպանման թագաւորին Պերոզի ի Հեփթաղացն եւ զկոտորածի մեծամեծացն[1], եւ որպէս ի Վրաց աշխարհէ Հազարաւուխտ՝ այնպէս եւ ի Հայոց Շապուհ ի դուռն կոչէր ի խորհուրդ աւագանւոյն։ Դարձաւ Վահան ի վերջ կալ անմարտանւոյն երրորդ անգամ եւ գրաւեաց կալաւ զմիջոց աշխարհին եւ կատարէին ուխտք պատարագացն գոհութեան ի Վաղարշապատ։

Ընդ սոյն ընտրեաց աւագանին Արեաց ի բարձ թագաւորութեան զՎաղարշ եղբայր՝ բուռն եւ անձնահաւան Պերոզի, զայր հեզ եւ աշխարհաշէն։ Նորա առաջի պատմեցան մի ըստ միոջէ հանդամանք Հայոց աշխարհին, քաջութիւն Վահանայ եւ ակամայ ապստամբութիւնն։ Այնուհետեւ ընդ խորհրդեան

1 Փարպ. Պատմ. Պարս. պատեր. Ա. 4։ Ագաթ. Դ.

Զարմիհր Հազարաւուխտայ եւ Շապհոյ՝ գործ յանձն լինէր ի թագաւորէն ցՆիխոր անուն Վշնասպդատ, ցայր խոհական եւ խաղաղասէր, երթալ ամենայն իսկ քաղցրութեամբ ընդ կամացն Վահանայ եւ նորին ընկերացն նուաճել զաշխարհն: Գարնայնի (484) ժողովեալ զայրուձին Ատրպատականի վասն զգուշութեան՝ հասեալ կայր Նիխորն ի Նուարսակ գիւղ Հեր եւ Զարեւանդ գաւառաց: Ընդառաջ առաքեցաւ առ Վահան՝ Շապուհ խորհրդեան դպիր եւ Միհր Վշնասպ Ռուսպանեցի: Ժողովէր սպարապետն զնախարարս եւ զազատս Հայոց եւ զամենայն այրուձին եւ ցուցանէր զբանս պատգամաւորացն, եւ այնպէս միաբան հաւանութեամբ յառաջարկեան պայմանս հաշտութեան զայս առաքեցին. 1. Ազատութիւն հայրենի օրինաց քրիստոնէութեան, զհայ այր ոչ չդարձուցանել ի մոգութիւն, կամ վասն մոգութեան չտալ գահ եւ պատիւ, կրակարանս ի Հայոց աշխարհին չշինել: 2. Առնել խտիր ազնուականացն Հայոց եւ ազատաց ըստ հայրենի օրինակին, նոյնպէս եւ վաստակաւորացն եւ չվաստակաւորաց, եւ մի խառն ի խուռն զանարգս յառաջ մատուցանել: 3. Արքային արքայի՝ բանից քսուացն եւ սուտակապարաց չլսել միտ, այլ իւրով աչօք եւ իւրով ականջօք լսել եւ գտանել զամենայն:

Առաքեցան պայմանքս առ Նիխոր ի ձեռն Յաշկուրայ Արծրունւոյ, Սահակայ որդւոյ Արշաւրի Կամսարականի, Վասակուրայ Կոպքայնոյ, Առաւանայ Աղէքսիկեցւոյ եւ Պաճակայ ի մարդպետական տանէն: Մեծախոհութեամբ յանձն առ Նիխոր զպայմանսն եւ հրաւիրեաց զՎահան գալ կալ զդաշինսն: Անդէն յՆոդքին գիւղ Արտազու հասեալ Վահանայ՝ խնդրեաց եւ ընկալաւ պատանդս ի մեծամեծացն Պարսից՝ զՆաղէ զատրպատականն Շահապ, զՄեհ-Մեհնամ որ երբեմն հազարապետն էր Հայոց եւ զՎներշապուհ զեղբայրն Միհրանայ, հանդերձ այլովք հեծելովք արամբք աւագօք. ապա եմուտ ի բանակն Արեաց ի հնչիւն փողոց ըստ օրինակի պատուականին Արեաց, պատուեալ մեծարեցան Վահան եւ ուխտապահք ի նախարարացն յատենի աւագանւոյն. խոստացաւ Նիխոր ի բանէ թագաւորին անյիշութիւն իրացն անցելոց, եղեն ընթրիք հաշտութեան յաւուրս բազումս, յորոց մերժեալ էին ուխտանենգքն ամօթալից:

Յետ այնորիկ իսկ եւ իսկ դէպ ժամանակ առաջի պատահէր ցուցանել Վահանայ վաստակս առաջի թագաւորին: Վաղաղէ հաս զրոյց թէ Զարեհ որդի Պերոզի ել հակառակ ընտրութեանն Արեաց եւ եկն ի վերայ հօրեղբօրն զօրու: Ըստ խնդրոյն Նիխորայ կազմեալ առաքէր վաղվաղակի ի դուռն խառն ընդ գնդին Նիխորայ՝ Վահան զայրուձին, գումարեալ ի ձեռն Վրենայ Վանանդացւոյ: Ի պարտութիւն մատնեցաւ գունդն զա-

ըեհեան, ձերբակալ եղեւ ինքն արքայորդին յամուրս լերանց եւ փողոտեցաւ յարքունի հրապարակին իբրեւ զանասուն։ Ի խառնուրդս ճակատուն երեւելի լինէր եղբօրորդի սպարապետացն Հայոց մանուկն Գրիգոր որդի Վասակայ։ Ամենայն ինչ ի գլուխ ելեալ էր՝ յորժամ ինքնին Վահանն միայնակ մնացեալ այրուձիոյն ի դուռն հասանէր։ Յորկիցս ելեալ յատեան թագաւորին՝ գրով եւ կնքով արքունի տուաւ հաստատութիւն դաշանցն՝ որ ընդ Նուարսակայ եդան, տուաւ նմա տանուտէրութիւն տոհմին Մամիկոնեանց եւ սպարապետութիւն ի վերայ այրուձիոյն, եւ այս առանձին խնդրէր Վահան եւ զտանուտէրութիւն տանն Կամսարականաց վասն ժառանգին որ ի տոհմի անդ էր. իսկ վասն տէրութեանն Արծրունեաց խոստացաւ թագաւորն՝ տալ յետ տեսանելոյ փուտակի ինչ զնոցա։

Դարձաւ այնուհետեւ ուխտապահ նախարարօքն յիւր ոստանն ի Դուին՝ ողջունեալ ի կաթուղիկոսէն Յովհաննէ՝ որ եկեալ էր ընդ առաջ նորա, եւ այց արարեալ եկեղեցւոյն Վաղարշապատու եւ տեղեաց կուսանացն վկայելոց՝ կատարել զուխտս իւրեանց եւ զնուէրս։ Անդէկան պարսիկ՝ որ ի նմին ամի մարզպան ի Հայս առաքեցաւ, յետ խաղաղութեամբ եւ իմաստութեամբ առաջնորդելոյ աշխարհին՝ հաւանեցոյց զդուռնն միանգամ ի Հայոց անտի կացուցանել մարզպան ի վերայ աշխարհին, եւ այնպէս անդէն ի միւսում ամի առաքէր ի թագաւորէն հրովարտակ մարզպանութեան առ Վահան ի Դուին։ Իսկ եւ իսկ յետ ընթերցուածի հրովարտակին՝ ել սպարապետն ի տունն Աստուծոյ ի գոհութիւն, ընդ մէջ ամբոխի բազմութեանն խուռներնթաց դիմելոյ, եւ ազնուական կաթուղիկոսն Յովհան յաստիճանէ բեմին յայտ առնէր զուրախութիւնն ընդ գեղեցիկ յաղթութիւն համբերութեանն եւ զցաւս սրտին ընդ անկումն ուխտանենգացն, քաջալերեալ զնոսա ի համապազորդն տեւողութիւն եւ զսոսա ի բժշկութիւն ապաշխարութեանն։ "Օրհնեալ տէր Աստուած Իսրայէլի, ասէ, որ ետ ինձ տեսանել զօրդիս եկեղեցւոյս՝ որ ինձ հաւատացաւ՝ պատուով շքեղութեամբ պայծառացեալ ի Քրիստոսէ։ Փախեաւ Ադոնիա որ առանց Աստուծոյ կարծէր թագաւորել, օգնականացն զգեցեալ զամօթ՝ սալացեալք ընդ նեղանացի թագչին։ Այլ ձեռն տուք գթալով, չէ առա ի քարեղէն ասլը գրեալ անթողութիւնք օրինացն։ Քրիստոս է աստ՝ որ ասէ Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն" (484)[1]։

1 Փարպ. էջ 245—317.

## Ի.

## ՆԵՐՔԻՆ ՀԱՆԳԱՄԱՆՔ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### Ա.

*Առաջնորդութիւն, խորհուրդք եւ պաշտամունք:*

### 140

Առաջ Նիկիացւոց ընդ Կոստանդեան: Տէրութիւնն յառաջին երիս դարսն թշնամութեամբ եւ հակառակութեամբ էր ընդ եկեղեցւոյ, այլ առնոյր յանձն եկեղեցի կալ հպատակ ամենայն տէրութեան՝ որ միանգամ հաստատեալ կայցէ, եւ հնազանդել խել ամենայն հրամանաց նորա՝ որ ոչ հակառակ պատուիրանաց Քրիստոսի կրօնիցն իցեն: Իսկ առ Կոստանդիանու փոփոխեցաւ աղերսն, զթշնամութիւնն փոխանակեաց վստահութիւն եւ սէր: Իսկ եւ իսկ իբրեւ ընկալեալ եղեւ եկեղեցի Քրիստոսի ի քաղաքական օրինաց իբրեւ մարմին կամ ընկերութիւն օրինաւոր, սահմանեցան նմա օրինօք՝ իբրեւ առաւելութիւնք, 1. Ազատութիւն կղերականաց ի պաշտամանց եւ ի պարտուց տէրութեան, 2. Առանձին ատեան դատաստանի վասն կղերականաց, 3. Իրաւունք ստանալոյ պարգեւս եւ ժառանգութիւնս՝ որոց մեծ ինչ մասն ծախէր հրամանաւ եպիսկոպոսին ի դարման հիւանդաց եւ որբոց եւ անպատսպարան ծերոց, 4. Իրաւունք ապաստանաց նուիրական տեղեաց, 5. Իրաւունք դատաւորութեան եպիսկոպոսին ի քաղաքային հակառակութիւնս, յորժամ ժողովրդականք միաբանեսցին դիմել յատեան եպիսկոպոսին վասն քաղաքային ինչ դժուարութեան ընդ միմեանս[1], 6. Իշխանութիւն խրատելոյ եւ յորդորելոյ զքաղաքային դատաւորսն՝ մարդասիրութիւն առ բանտաւորսն ցուցանել, եւ միանգամայն եպիսկոպոսաց՝ այց առնելոյ բանտաւորաց յաւուրս չորեքշաբաթու եւ ուրբաթու:

Այլ թէպէտ եւ քրիստոնէութիւն չէր իբրեւ զհեթանոսական կրօնսն ընդ քաղաքային տէրութեան բաւեալ եւ առնչեցեալ, այլ առանց զինքն նէ կախելոյ՝ հաստատեալ կայր յաստուածային եւ նմին իրի չէր պարտ զքաղաքային իշխանութիւն ընդ իշխանութեան եկեղեցւոյ խառնակել, զոր եւ գոնեայ բանիւք բազում անգամ յայտ արար առաջին կայսրն քրիստոնեայ՝ Կոստանդիանոս. սակայն ոչ ինքն միշտ եւ ոչ ամենայն յաջորդք նորա գործովք ցուցին: Այնուհետեւ չարաչար իմն սովորեցան կայսերքն յաւելուլ խառնել յիւր կրօնից՝ հանելով հրամանս հաւատոց, դնելով եւ բառնալով զեպիսկոպոսունս եւ այնպէս խառնակեալ շփոթեցին զամենայն, որպէս ցայս վայր նշմարեցաք եւ յետ այսորիկ տեսցուք առաւել առաւելագոյնս զնոյն յարեւելս: Այլ յարեւմուտս առաւել ազատագոյնս ի քաղաքային իշխանութենէ յորդորեցան իրք եկեղեցւոյ, եւ սակաւ ազդեցութիւն տէրութեան՝ մանաւանդ ի վերայ ներքին հանգամանաց նուազէր, մինչեւ ի բուն Միջնամի ժամանակի յետս ընդդէմ՝ ինքն եկեղեցի կալաւ առաւելագոյն ազդեցութիւն ի վերայ տէրութեան յարեւմուտս, ուր յարեւելս էր լեալ վաղ սորուկ եւ ազատին ընդ երկաթեղէն ձեռամբք կայսերացն Բիւզանդացւոց:

Աստիճանք: Ըստ բազմանալ գործոց եկեղեցւոյ՝ յաճախեցին եւ նոր

1 Տես Ա. Կորնթ. Զ. 1...:

Digitized by Google

պաշտօնեայք։ Ի տեսչութիւն ընչից եկեղեցւոյ կացուցին եպիսկոպոսունք ի հինգերորդ դարէ հետէ Տնտես[1] ոք՝ որ եւ տայր համարս եպիսկոպոսին, վասն նշանակելոյ զեկեղեցական գործս, Նոտարս[2] կամ Նշանագիրս, ի պահպանութիւն գրելոցն՝ դիւանապանս[3], Պաշտպանեայք[4] որք իրաւանց եկեղեցւոյ կային ջատագով առաջի աշխարհական ատենի։ Զեպիսկոպոսաւն էր միշտ ի չորրորդ դարէ հետէ պաշտօնեայ ոք սենեկակից կամ Սինկելլոս[5]։ Երիցապետն փոխանակ եպիսկոպոսին կատարէր զպաշտամունս եկեղեցւոյ ի պակասել նորա, իսկ Սարկաւագապետն կամ արքիդիակոնն՝ որ յարեւելս էր գլխաւոր քան զամենայն կղերականս յետ եպիսկոպոսապետին, կայր ի գլուխ գործոց առաջնորդութեան, էր տեղապահ եպիսկոպոսին ի սինոդոսս եւ ի մահուան նորա առաջնորդէր եկեղեցւոյն մինչեւ ցընտրութիւն եպիսկոպոսի ուրուք։ Նմին հակառակ յարեւմուտս ընդ նոյն ժամանակս բարձաւ տակաւ պաշտօն սարկաւագապետաց, այլ յարեւելս տեւէր։ Նոյնպէս բարձան տակաւ եւ Քորեպիսկոպոսունք "զի մի անուն եւ ճոխութիւն եպիսկոպոսին իջցէ յանարգութիւն"։ Նա եւ վասն զարմանոյ հիւանդաց եւ թաղման մեռելոց կային ինչ ընկերութիւնք՝ որպէս Անձնամատոյցք կամ Բրիչք[6]։ Բայց քանզի մեծ մասն ամենեցունց սոցա ի կղերականաց սակի էին, եւ կային միայն հին խոնարհագոյն կարգքն կէս սարկաւագաց, անագնոսաց, երգեցկաց կամ փսաղտաց, երդմնեցուցչաց եւ դռնապանաց՝ յարեւելս, կէս սարկաւագաց, արգանեկաց (ջահակալաց) եւ այլոց մի ըստ միոջէ՝ յարեւմուտս, յայն տակս վասն զանազան յաճախութիւն կղերականաց կարծելոյ՝ եղեն օրէնք ինչ կայսերականք, որ գժուարին գործէին բաղձանց մտանել ի կղերական պատիւ եւ զառաւելութիւնն ինչ կղերականաց ամփոփէին։ Սակայն եւ այնպէս օրէնք ինչ (ի 520 ամի) սահմանեցան զի գլխաւոր եկեղեցին Հռոմայ ունիցի երիցունս 60, սարկաւագունս 100, կէս սարկաւագունս 90, արգանեակս 110, երգեցիկս 20 եւ դռնապանս 110։

Կղերականք՝ որպէս յառաջն՝ նոյնպէս եւ խաղաղան ժամանակաց այսոցիկ ընդունէին զհրահանգս ուսմանց ի բանից վարդապետութեան իւրեանց եպիսկոպոսին, քանզի եւ մեծամեծք իսկ ի վարդապետաց եւ յաստուածախօսաց ժամանակին նախ ըստ աշխարհական ուսմանց կրթեալ էին եւ ապա եկին յեկեղեցական կարգ։ Սակայն տակաւ յաճախեցին եկեղեցական դպրոցք ըստ օրինակի Աղեքսանդրիական եւ Անտիոքեան դպրոցացն, որպէս յՈւռհայ՝ վասն պարսիկ կղերականաց, ի Կեսարիա Պաղեստինացւոց (հաստատեալ ի Պամփիլեայ մկայէ), ի Մծբինն Միջագետաց՝ վասն Ասորւոց, եւ ի Հռինոկորուրա Պաղեստինացւոց։ Իսկ յարեւմուտս՝ մեծն Աւգոստինոս իւրովք իսկ գրովք կրթէր զկղերն իւր եւ ըստ օրինակի նորա բազում եկեղեցական վարժոցք[7] յԱփրիկէ եւ յԻտալիա հաստատեցան։ Վասն վարուց եւ կարգաց ուղղութեան քահանայից գրեցան եւ մատեանք գեղեցիկք, որպիսի ինչ՝ Ամբրոսիոսի Վասն պարտուց պաշտօնէից, Գրիգորի Նազիանզացւոյ՝ Բան վասն փախստեան (իւրոյ ի քահանայութենէ), Յոհաննու Ոսկեբերանի՝ անհամեմատ գիրն Վասն քահանայութեան. այլ առաւել քան զամենայն՝ Հովուական կանոն սրբոյն Գրիգորի Մեծի քահանայապետին Հռոմայ։ Զխրատս եւ զկարգս զոր այն մատեանք թելադրէին՝ վճիռքն եւս սինոդոսաց եւ հրամանք քահանայապետաց Հռոմայ առնէին ածել յարդիւնս։

1 Οἰκόνομος
2 Notarii, Exceptores.
3 Χαρτοφύλακες.
4 Ἔκδικος.
5 Σύγκελλος.
6 Parabolani, Copiatae, Fossores.
7 Seminarium.

Թուէպէտ եւ օրէն էր առնուլ մանկանց՝ խոնարհագոյն աստիճանս, սակայն պատուէր էր զձեռնադրութիւն սարկաւագութեանն յ30երորդ ամի հասակին եւեթ տալ, եւ յետ 5 ամաց՝ զքահանայութեանն, եւ ապա ցուցեալ ուղղութիւն յամենայն աստիճանս՝ յետ 10 ամաց լինել արժանի եպիսկոպոսութեան: Բայց բազում անգամ չպահէին այս օրէնք, քանզի բազումք յեպիսկոպոսաց վասն կուսակլոյ անձին կղերականաց զեւրեանմբք առ ի ցոյց իւր՝ անճապարէին դնել առաժամ ձեռն յայնպիսեացն վերայ որ առ արտաքին շահու դիմէին յայն պատիւ: — Չէր պարտ դարձելոց ի հերետիկոսաց կամ ի հերձուածողաց կամ հրապարակաւ ապաշխարողաց տալ ձեռնադրութիւն: Ի ձեռնադրութեան երիցանց՝ կարեւոր էր եւ վկայութիւն առաջակայ ժողովրդեանն՝ թէ «Արժանի է»: Միշտ իսկ ձեռնադրութիւնն լինէր վասն պաշտաման այսր նիշ կամ այնր եկեղեցւոյ, իսկ ազատ ձեռնադրութիւն դուն ուրեք լինէր. փոխել երիցու կամ սարկաւագի յայլ ինչ եկեղեցի՝ վասն մեծամեծ ինչ պատճառաց եւեթ շնորհէր: — Կատարելագոյն ի մէջ դասին պարագ կուսակրօնեան կամ անկուսակրօնեան կղերականաց. եւ ըստ յայտնի բանից Եւսեբեայ, Յերոնիմեայ, Ոսկեբերանի, Եպիփանու եւ այլոց՝ առաւելով շահեալ տիրէր յարեւելս պահպանութիւն կուսութեան կղերականաց, մինչեւ (ըստ Գրիգորի Նազիանզացւոյ) այնպէս իմն տարածեալ եւ հաստատեալ էր այն ի միտս ժողովրդեանն՝ զի չկամէր ժողովուրդն յերիցանց ամուսնացելոց ընդունել խորհուրդս: Եւ զայս իսկ, ասէին հարքն, պահանջէ ի քահանայից՝ սրբութիւնն ի պաշտաման պատարագի եւ ի մատակարարութեան խորհրդոց սրբոց, եւ այն «զի ուսուցիչքն եւ քարոզք աւետարանին ազատագոյնս կարիցեն տալ զանձինս ի բարձրագոյն ուսմունս. եւ թէ նոքա՝ որ վաստակենն յաստուածեղէն եւ ի հոգեւորն ծնունդ, ոչ եթէ մի կամ երկուս մանկունս իցեն կրթելոց՝ այլ զկրթութիւն եւ զսնունդ բազմամբոխ բազմութեան առնլոց են յանձն»:

Սակայն եւ այնպէս՝ բազում դէպք ի պատմութեան եւ յաւելուած բանիցն Եպիփանեայ թէ «ուր եկեղեցական օրէնքն պահին» ցուցանեն թէ ոչ ճշդիւ ամենայն ուրեք այն պահէր. յայն սակս եւ ի Նիկիական ժողովին ըստ խրատուն Պափնուտիոսի եպիսկոպոսի՝ այնչափ ինչ եւեթ պատուիրեցաւ՝ որչափ ժողովքն Անկիւրայ եւ Նէոկեսարեայ հրամայեալ էին, այս ինքն՝ զի սարկաւագունք, երիցունք եւ եպիսկոպոսունք յետ ձեռնադրութեանն մի իշխիցեն ամուսնանալ: Այլ յարեւմուտս ճշգագոյն էր պահպանութիւն կուսութեանն օրինաց, ընդ որով կային այնուհետեւ եւ կէս սարկաւագունք, այնու զի եւ սոքա մատուցեալ էին յայնժամ ի պաշտօն սեղանոյ: Ի դոյն պահպանութիւն յօժարեցուցեալ փութացուցին մանաւանդ Ամբրոսիոս, Աւգոստինոս եւ Յերոնիմոս. Սիրիկիոս եւ Իննովկենտիոս Ա. քահանայապետք կրկնեցին եւ երեքկնեցին զհրամանս ընդ խստագոյն պատժովք: Իսկ յարեւելս Թէպէտ եւ Յուստինիանոս աշխարհական օրինօք ստիպէր ի նոյն, այլ զուր. Նմին իրի եւ յունական ժողովն Տրուղղեան (692) որ միայն ի կղերականաց հայրապետութեանն Կոստանդնուպոլսեայ էր ժողովեալ, յեպիսկոպոսաց եւեթ պահանջէր կուսութեան կեանս, իսկ ի սարկաւագաց եւ յերիցանց չպահանջէր յառաջ քան զձեռնադրութիւնն խոստումն կենաց ժուժկալութեան՝ եթէ վաղ ամուսնաւորք էին, եւ հրաման տայր ամուսնութեան յառաջ քան զձեռնադրութիւնն: Այսպէս մինչեւ ցայօր առ նոսա:

Պէտք կենաց կղերականացն, որպէս կանխագոյն ասացաւ, վճարէին ի

կանոնականաց արդ հաստատեալքն զոր ասացին ըստ Քրիստոսի բանիցն[1], յոր եւ յայտնի իսկ յորդորէին զնոսա Ամբրոսիոս, Աւգոստինոս, Յերոնիմոս, Ոսկեբերան եւ այլք։ Յաւելան ի նոյն եւ ժառանգութիւնք թողեալք, եւ շնորհեալ էր Կոստանդիանոս կղերականաց ամ ըստ ամէ ցորեան ի հասարակաց մթերից։ Յարեւմուտս հաւաք եկեղեցւոյ բաժանէին ի չորս մասունս՝ վասն եպիսկոպոսի, վասն կղերին, վասն աղքատաց եւ վասն շինուածոյ եկեղեցւոյն։ Սակայն գտան բազումք՝ ոչ միայն յերիցանց եւ ի սարկաւագաց, այլ եւ յեպիսկոպոսաց իսկ՝ որ յեւրեանց ձեռացն վաճառականք էին, յոր եւ յորդորէր զնոսա չորրորդ ժողովն Կարքեդոնի։ Բայց սահմանեալ նշանակեալ էին եւ գործք ինչ եւ պաշտամունք՝ յոր չէր արժան մտել կղերականաց։

## 141

Աշխարհական էր վիճակն նորա։ Ի փոփոխել հանգամանաց եկեղեցւոյ իսկզբան չորրորդ դարու, եպիսկոպոսունք՝ որք յառաջն առաւել քան զամենեսին ընդ հալածանօք եւ ընդ վտանգաւ կենաց էին, այնուհետեւ քան զամենեսին ի պատիւս եւ ի մեծութիւնս փայլէին. յայն սակս եւ բազումք յանարժանից անկն դնէին աթոռոյ, եւ կէսք ի մեծապարծութիւն եւ ի վատնութիւն հասանէին։ Սակայն եւ այնպէս մեծ մասն եպիսկոպոսացն, որպէս եւ այլն հեթանոս Ամիանոս Մարկեղինոս վկայէ՝ կայուն մնացին յառաջին անպաճոյճ կեանսն։

Ընտրութեան եպիսկոպոսաց ունէր ինչ մասն ժողովուրդն եւ ի սկզբան չորրորդ դարու՝ որպէս եւ յառաջ քան զայն, կամ առաջի արկանէր ժողովուրդն զոք յեպիսկոպոսութիւն եւ եպիսկոպոսունք նահանգին հաստատէին զնա, եւ կամ յետս ընդդէմ։ Ըստ սահմանից Նիկիական ժողովոյ որ յետոյ յարեւելս եւ յարեւմուտս պահեցաւ իբրեւ կանոն հաստատուն՝ պարտ էր ընտրութեան եպիսկոպոսին, եթէ հնար ինչ էր, լինել յամենայն եպիսկոպոսաց եւ կամ յերից եպիսկոպոսաց նահանգին այնորիկ, եւ յետ հասանելոյ գրով հաւանութեան հեռաւորացն՝ առնուլ հաստատութիւն ի Մետրապոլտէն. զնոյն սահմանէր եւ սինհոդոսն Անտիոքայ (341) եւ չորրորդ ժողովն Կարքեդոնի (398)։ Եւ կայսերք եւս ունէին մասն յընտրութեանն՝ կամ առաջի արկանելով եւ կամ հաստատելով։ Բայց քանզի ժողովուրդն ոչ միշտ այնուհետեւ զորժանաւորսն, այլ զփառաւորսն բազում անգամ, նա մանաւանդ եւ հերետիկոսս եւս ընտրէր, անկաւ ի շնորհաց անտի, եւ այնուհետեւ սահմանք սինհոդոսին Լաւոդիկեայ (372) տակաւ ընկալան զօրութիւն, որ պատուիրէ թէ միայն կղերն եւ եպիսկոպոսունքն եւ Մետրապոլիտն նահանգին ընտրեսցեն եւ կացուսցեն զեպիսկոպոսունսն։ Իսկ կայսերքն բռնաւորք, որպիսի ոք Կոստանդիոսն եւ Վաղէս էին, ի պաղատանէ առաքէին արս յեպիսկոպոսութիւն եկեղեցւոյ (որպէս Աթանաս ասէ)։ Սակայն եւ բարեպաշտքն ի կայսերաց վասն առնլոյ զառաջս յաղմկից եւ ներհակութեանց՝ ինքնին անձամբ պարտեալ ընտրէին արժանաւոր զոք, որպէս Արկադիոս ի մեռանել Նեկտարեայ՝ նստոյց զմեծն Յովհան Ոսկեբերան, եւ ապա կղերն եւ ժողովուրդն հաւանեցան իբրեւ երկրորդ ընտրութեամբ։ Եպիսկոպոսն իբրեւ փեսայ իմն համարեալ էր իւրում եկեղեցւոյն եւ վիճակին եւ իբրեւ անքակ իմն կապով կապեալ, յայն սակս եւ

1 Ղուկ. Ժ. 7։ Ա. Կորնթ. Թ. 13։

Digitized by Google

դոմնկիաւ, եւ էր նորա մայրաքաղաք՝ Կեսարիա Կապադովկացւոց, 5 Վիճակն Թրակիոյ՝ 6 նահանգք, յորում մայրաքաղաք էր Հերակլէա Թրակացւոց: Եպիսկոպոսք մայրաքաղաքաց այսոցիկ ըստ անուան քաղաքային վերակացուին կոչէին Մետրոպոլիտ կամ Արքեպիսկոպոս (Եպիսկոպոսապետ). յետոյ անուն ի կիր հարկանէին (Պատրիարք) անուն՝ որ յետ սակաւ ինչ միոյ եղեւ անուն նշանակիչ հնգից երեւելի Մետրապոլտաց, այս ինքն՝ Հռոմայ, Աղեքսանդրիոյ, Անտիոքայ, Երուսաղեմի եւ Կոստանդնուպոլսոյ:

Վերջին երկուք ի հայրապետութեանցս յետոյ ուրեմն յաւելան: Զի ի սահմանաց անտի հայրապետութեան Անտիոքայ ոչ միայն Կիպրոս բաժանեցաւ ի պատճառս արիանոսութեան աթոռոյն Անտիոքայ, այլ եւ եկեղեցին Երուսաղեմի իբրեւ պատմական "Մայր ամենայն եկեղեցեաց" ամբարձաւ ի ձեռն ժողովոց[1] ի պատիւ, մինչեւ ճոխանալ եւ ի վերայ Կեսարիայ Պաղեստինացւոց որ էր Մետրապոլտական աթոռ նորա, եւ ի չորրորդ ժողովոյն հաստատեցաւ ընդ իշխանութեամբ նորա Առաջին եւ Երկրորդ եւ Երրորդն Պաղեստին, եւ այսպէս կոչէր համօրէն՝ հայրապետութիւն Երուսաղեմի:

Ըստ նմին օրինակի եւ եպիսկոպոսունք նորոյ քաղաքին Կոստանդինուպոլսոյ, որք յառաջագոյն էին ընդ իշխանութեամբ Մետրապոլտին Հերակլէայ, խորամանկութեամբ եւ պատճառանօք կայսերական պատուոյ քաղաքին՝ այսին ի ժողովս ինչ (382—451) ամբառնալ զաթոռ իւրեանց յերկրորդական պատիւ յետ եպիսկոպոսին Հռոմայ՝ յարելով յիւրեանս զեկեղեցական իշխանութիւն սահմանաց բազմաց առ Պոնտոս գետով եւ զվիճակս ինքնագլուխ Մետրապոլտացն կամ Կողմնապետացն[2] Հերակլէայ, Եփեսոսի եւ Կեսարիայ Կապադովկացւոց: Իսկ գահերիցութիւն եւ գլխաւորութիւնն ի վերայ ամենեցուն[3] ընծայէր միշտ յաջորդացն Պետրոսի:

Իսկ յարեւմուտս ուր քաղաքային բաժանումն բաժանէր համօրէն զերկիր սահմանացն յերիս վերակացութիւնս՝ ի Իլիւրիկէ, յԻտալիա (յոր կից էր Ափրիկէ) եւ ի Գաղիա, չգոյր աթոռ առաքելական՝ բաց յաթոռոյն Հռոմայ եւ ոչ մեծամեծ ինչ եւ ճոխ քաղաք: Յայն սակս չերեւի ինչ աստ ճշգրիտ բաժանումն եկեղեցական վիճակաց: Մանաւանդ զի դժուարին է զընդարձակութիւն Հռոմէական հայրապետութեան սահմանել, այնու զի բազում անգամ չէ դիւրին աստ ընտրել ի միմեանց զհայրապետական եւ զգահերիցական իրաւունս քահանայապետին: Այսչափ ինչ ստոյգ է թէ հայրապետութիւն եպիսկոպոսին Հռոմայ "գլխովն արեւմտից" բովանդակէր զԻտալիա, զԳաղիա, զՍպանիա, զՍարդինիա, զՍիկիլիա, զարեւմտեան եւ զարեւելեան Իլիւրիկէ՝ յորում առաքելական տեղապահք յանուն եպիսկոպոսին Հռոմայ վարէին զիրաւունս հայրապետութեան: Իսկ եկեղեցին Ափրիկեցւոց՝ որոց բազմամբոխ յոյժ էին եպիսկոպոսունքն, չառնուին յանձն լինել ընդ հռոմէական հայրապետութեամբ՝ մինչեւ ցժամանակ Վանդալացն, թէպէտ եւ զգահերիցութեան իրաւունս գիտէին քաջ եւ ընդունէին մեծաւ հպատակութեամբ առաւել քան զայլ կողմանս: Այսպէս եւ Մաւրոս արքեպիսկոպոս Հռաւեննայ հակառակ կայր այնմ՝ առանց պատնելոյ ընդդէմ քահանայապետական կամ գահերիցական իրաւանց եպիսկոպոսին Հռոմայ:

Նոյն իրաւունք հայրապետացն եւ կողմնապետաց էին՝ հաստատել զմետրապոլիտսն որ ընդ իւրեանց իշխանութեամբ էին, ժողովել վի-

1 Կան. Նիկ. 7: 2 Ἔξαρχος. 3 Πρὸ πάντων πρωτεῖα.

Digitized by Google

Ճակական սիւնհոդոսս եւ լինել գահերէց, ընդունել բողոքս ի գաւառական սիւնհոդոսաց, ծանուցանել մետրապոլտաց զկայսերական հրամանս եւ այլ եւս նոյնպիսիս։ Բայց հրաման էր հայրապետաց եւ մետրապոլտաց ի չորրորդ տիեզերական ժողովոյ՝ չսահմանել մեծամեծ ինչ իրս առանց հաւանութեան վիճակական սիւնհոդոսաց։

## 142

Պատրիարքութեան կամ Էլխաւորութեան եպիսկոպոսին Հռոմայ։ Ամենայն իսկ համօրէն հանգամանք ժամանակացն նպաստաւոր ինչ էին ցուցանել տակաւ յայտնագոյն զգլխաւոր վարդապետութիւն եկեղեցւոյ որ վասն գլխաւորութեան կամ գահերիցութեան (ոչ պատուոյ միայն այլ եւ իրաւանց) իբրեւ զկէտ միութեան, զմիջավայր եւ զվէմ անկեան եկեղեցւոյ, զեպիսկոպոսն Հռոմայ՝ երեւեցուցին այսր միութեան, պաշտպանիչ եւ հովանի հաւատոց եւ եկեղեցական օրինաց, իշխան վերագոյն ի վերայ հայրապետաց եւ յայն սակս նստեալ եւ ծանուցեալ գահերէց ի տիեզերական ժողովս իբրեւ գլուխ համօրէն կաթուղիկէ եկեղեցւոյ։ — Ընդունելութիւն գահերիցութեան եպիսկոպոսին Հռոմայ եւ գոյութիւն հռոմէական կաթուղիկէ եկեղեցւոյ՝ է մի ի մեծամեծ սքանչելեաց անտի զոր Տէր եցոյց, եթէ միտ եդեալ նկատիցէ ոք զհեստ, զամբարտաւան, զփառասէր եւ զանձնասէր բարս իւրաքանչիւր մարդոյ, կամ միով իսկ բանիւ ասել՝ զմիտագոյնն լինել ամենեցուն ի բաժանումն եւ յինքնագլուխ ազատութիւն։ Ապաքէն անհնարին է ճոխսիրութեան (իշխանասիրութեան) առաջնոց եպիսկոպոսաց կամ սիւնհոդոսաց կամ միոյ իսկ առն փառասիրի յաջողութիւն զիւրն համարել. ուր յամենայն իսկ եւ ի բնաւ ժամանակի հազարաւորք արանց ճոխսիրաց եւ փառասիրաց զմիմեամբք ելանել առնէին։ Արդ զիա՞րդ յայսմ ընդ միմեանս միաբանեցին, ո՞րպէս արկին զանձինս ընդ հպատակութեամբ մարդիկ՝ ազգաւ, լեզուաւ եւ միտութեամբք ընդ միմեանս հակառակք, ընդէր ետուն թոյլ զի մի ոք միայն տակաւ յաճախեսցէ տիրել եւ հրաման տալ, մանաւանդ զի ոչ զէնք գոյին նորա եւ ոչ սպառազէնք։ Ապա ոչ եթէ մի այն յօրինեալ կազմեաց իւր զեկեղեցին զայն զմեծ ընդ այսպիսի միութեամբ, այլ հաւատքն որ առ մի Տէր եւ առ մի կոչումն կամ վախճան, եւ սէրն մեծ միաւորիչն ամենայնի, Տէրն եւ Հոգի նորա սուրբ որ նոյնպէս մի է։ Նաւանիկ՝ ոչ միայն ինքն քահանայապետն Հռոմայ չած ի գոյ զկաթուղիկէական եկեղեցին, այլ մանաւանդ ինքն բարձրացումն քահանայապետութեան է ածեալ յառաջ ի Հոգւոյ անտի՝ որ ի կաթուղիկէականութեան կամ յընդհանրականութեան անդ եկեղեցւոյն զանձն երեւեցուցանէ։

Վաղվաղակի ի յառնել կռուոյ արիանոսութեանն՝ դիմեցին հայրապետքն, եպիսկոպոսունք, նոքին իսկ համապայծառ աստեղք արեւելից, Աթանաս Աղեքսանդրիոյ, Եւստաթիոս Անտիոքայ, Մարկեղղոս Անկիւրայ, Ղուկիոս Ադրիանուպօլսոյ, յետոյ Ոսկեբերան եւ Կիւրեղ Աղեքսանդրիոյ, առ եպիսկոպոսն Հռոմայ։ Նա աւանիկ եւ բողոքք իսկ ի հերետիկոսաց անտի, որպէս Դոնատեանք եւ Եւսեբեանք, Պեղագիոս, Կեղեստիոս, Պրիսկիղիանոս, Վիտաղիս ապողինարեան, Նեստոր եւ Եւտիքէս, ծանուցեալ գիտէին զգահերէց աւագութիւն նորա, եւ յայն սակս ջանային առաջի նորա արդարացուցանել զանձինս, այնպէս զի զամենայն ինչ վճարեալ համարէին՝ եթէ յաջողէր երբեք նոցա զնա ունել ապաւէն եւ պաշտպան։

Digitized by Google

կամ հիմն եւ ակիզբն պայմանի երկրպագութեան ոչ մտադրեալքն ինչ համարեալ էր, այլ աւանդաւորք, այն իսկ՝ զի եպիսկոպոսն Հռոմայ է յաջորդ Պետրոսի՝ այնր որ ի Քրիստոսէ գլուխ առաքելոցն կամ քահանայապետութեան եկեղեցւոյ կացուցաւ յինքն եւ ի յաջորդսն իւր: «Ցայն սակս, ասէ Ցերոնիմոս, ի մէջ երկոտասանիցն մին ընտրի, զի գլուխ կացուցեալ՝ անհնարին պատճառք հերձուածոց բարձցին ի միջոյ. ընդ աթոռոյն Պետրոսի հաղորդութեամբ կցորդիմ. որ ընդ հաւատական եկեղեցւոյ կարգեալ չէ՝ օտարոտի եկեղեցւոյ է»: Նոյնպէս Ոպտատոսի եւ Աւգոստինոս. «Դատաստանն Հռոմայ՝ է դատաստան համօրէն եկեղեցւոյ, չէ մարթ զվճիռ նորա արկանել այլ եւս ընդ քննութեամբ, այլ պարտ է ընդունել խոնարհութեամբ եւ ածել յարգանս»: «Որ ի Հռոմայ դատապարտեալ է՝ ի համօրէն տիեզերաց դատապարտեալ է: Բարբառեցաւ Հռոմ, կատարեցաւ դատն, երանի թէ առնուր վախճան եւ մոլորութիւնն»: Այլ անուն որոշիչ առաւելութեան նորա յառաջ ածեն եւս ի մէջ. քանզի անունն Պապ (այս ինքն Հայր) եւ զայլոց եւս եպիսկոպոսաց արկանէր ի հնումն խառն ի խուռն ի կիր: Ջատագովքն յարեւմուտս ի վեցերորդ դարու եղեւ սովորական առանձինն իմն՝ զեպիսկոպոսն Հռոմայ կոչել Պապ: Ցետ անուանն «Տիեզերական հայրապետ», զոր ամբարտաւանութեամբ առ իւր Յովհաննէս Պահօղ Հայրապետ Կոստանդնուպօլսոյ՝ առ անուն եւ քահանայապետն Հռոմայ Գրիգոր Ա. Մեծն՝ կոչել «Ծառայ ծառայից Աստուծոյ», ի կշտամբութիւն ամբարտաւանելոյն՝ զայր, եւ այն անուն պահի ցայժմ նոյնպէս առանց յաւելուածոց:

## 143

Եկեղեցիք եւ զարդք նոցա: Ցետ ազատելոյ քրիստոնէից ի հալածանաց եւ ի բռնութենէ՝ յօրինեալ յարդարեցան վաղվաղակի արտաքին հրապարակաւ պաշտամունք ըստ ներքին ոգւոյ քրիստոնէութեան, որք եւ առանց էական ինչ փոփոխման կան մնան հաստատուն վասն ամենայն իսկ ժամանակաց:

«Յանխ փոխանակ տանց առանձնականաց եւ գետնափոր վայրաց՝ տաճարք կամ եկեղեցիք յաճախեցին եւ գեղեցկացան, մանաւանդ փութովն Կոստանդիանոսի եւ մօր նորա Հեղինեայ. ոսկւով եւ արծաթով եւ ականց պատուականօք զարդարեցան, եւ ի նոցին նիւթոց յօրինեցան եւ սպասքն սուրբք, մինչեւ ուրեք ուրեք անցանել եւ ըստ չափ: Նա աւանիկ եւ մեհեանք հեթանոսաց եւ շինուածք հասարակաց, մանաւանդ որ Բասիլիկքն կամ Արքունականքն կոչէին (որ էին տեղիք դատաստանաց) առեալ ի պէտս հասարակաց պաշտամանց քրիստոնէից, որ եւ փոխեցան յեկեղեցիս վասն պատշաճութեան ձեւոյն, ուստի եւ զանունն իսկ ընկալան մեծամեծ եկեղեցիքն կոչել՝ Արքունականս[1]: Սովորական ձեւ եկեղեցեաց էր նաւակաձեւ, այլ առաւել ի կերպարանս խաչի: Ներքինն նոցա բաժանէր յաճախագոյն յերիս մասունս, 1. յարեւմուտս՝ Սրահն[2], վասն այնոցիկ որ չիցեն քրիստոնեայ, 2. Նաւակն[3],

քանզի եւ յիւր եկեղեցի՝ յանդիմանեալ եւ զայնասիկ որ խառն ի խուռն արկին զնոսա յաթոռոյ»: Եւ Սոզոմենոսին՝ Եկ. Պատմ. Գ. 10. «Քահանայական (ἱερατικὸν) օրէնք են զի անվաւեր եւ անզօր համարեսցի որ ինչ առանց կամաց (παρὰ γνώμην) եպիսկոպոսին Հռոմայ գործեսցի»: Եւ դարձեալ՝ Գ. 8. «Քանզի վասն պատուոյ աթոռոյն, ասէ, ամենեցուն հոգ առ նա (առ եպիսկոպոսն Հռոմայ) պատշաճէր, դարձոյց եւ ամենեցուն զիւրաքանչիւր եկեղեցիս»:

1 Basilicae.
2 Νάρθηξ, πρόναος
3 Ναός, navis, oratorium laicorum.

Digitized by Google

վասն երախայից, ապաշխարողաց եւ հաւատացելոց ուրոյն ուրոյն կարգելոց, 3. Դասն կամ բեմն[1] էր յանձուկագոյնս բարձրագոյն, փակարանաւ եւ վարագուրաւ անջրպետեալ, արտաքուստ՝ իբրեւ կէս բոլորակ։ Անդ կայր սեղանն, յառաջին ժամանակին՝ յանձակ ի փայտէ, իսկ ի չորրորդ դարէ հետէ՝ յանձակ ի վիմէ, համանգերձ խաչիւ եւ ճրագարանօք. ի վերայ սեղանոյն աւանդեալ կայր Հոգի սուրբ ի կերպարանս աղաւնոյ։ Նախ ի վախճան կոյս ուրեմն չորրորդ դարու յիշատակին լեալ բազում սեղանոց ի միում եկեղեցւոջ, ուր յառաջն մի եւեթ սեղան էր ի միում եկեղեցւոջ, եւ կոչէր "միածին"։ Կամ ի սահմանի անդ ուր էջէր Նաւն եւ Դասն, կամ ի Նաւի անդ՝ կային մի կամ երկու բարձրագոյն ատեանք[2], իսկ վասն կայոց եպիսկոպոսին յուսուցանելն զժողովուրդն՝ կայր ի Դասու անդ մեւս եւս բարձրագոյն տեղի։ Կանթեղք անշէջք լուսաւորէին զվայրսն իբրեւ նշանակք մշտնջենաւորին փառաւորութեան Տեառն տաճարին որ ի վերին է քան զտիւ եւ քան զգիշեր։ Ի մուտս անդ եկեղեցւոյն կայր աւազան ջրոյ կամ Աղբիւր[3] ի լուացումն ձեռաց։ Մեծամեծք յեկեղեցեաց ունէին ապրնթեր եւ այլ եւս շինուածս, մանաւանդ Մկրտարանս[4] ի ձեւ Ութանկեան եկեղեցւոյ ի Հռոմ (որ սուրբք ուրեք այնչափ ընդարձակագոյնք էին՝ մինչեւ ժողովել անդէն սինոդոսաց), դարձեալ՝ եւ տեղիս պահելոյ սպասուց եւ կահուց եկեղեցւոյ[5]։ Նուիրումն եկեղեցեաց յիշէր ի միասին ընդ շինութեան տաճարին եկեղեցեաց, կատարէր ամ ըստ ամէ տօն յիշատակի նուիրմանն՝ այս ինքն է Նաւակատիք[6]։ Գեղեցիկ գիւտ զանգակացն եւ աշտարակաց նոցա յ5երորդ դարու տարածեցաւ։ Ի պատկերաց անտի որ յորմունս եկեղեցեացն եւ ի տունս էին՝ գլխաւոր խաչն էր. ի տունս, ի տանիս, ի քաղաքս եւ ի գեղս, ի լերինս եւ ի դաշտս, ի ծովու՝ ի վերայ նաւաց, ի վերայ զինուց, մատենից եւ այլոց նոյնպիսեաց շողշողէր նշան խաչին, յիշեցուցանել քրիստոնէիցն զկոչումն քրիստոնէական կենաց, այս ինքն՝ կրել վասն Աստուծոյ եւ չարչարանօք մտանել ընդ Քրիստոսի ի փառս։ Նա եւ պատկերք կերպարանաց Քրիստոսի, սրբոց, մարտիրոսաց եւ նկարք ի պատմութեանց ինչ գրոց սրբոց դնէին հրապարակաւ վասն տխմարաց եւ իմաստնոց յօգուտ եւ ի շինութիւն մեծ։ Այս պատկերք էին կամ ըստ պատմական ինչ կերպարանաց եւ կամ նմանութեամբ եւ նշանակաւ իւիք։ Միայն վասն երեւեցուցանելոյ զՔրիստոս իբրեւ գառն, ընդդէմ դարձաւ Տրուղղեան (յունական) ժողովն, այլ ոչ իրաւամբք, եւ վասն այսորիկ յաճախէր իսկ միշտ այն պատկեր եւ յետ այնորիկ։

Յաճախեցին եւ այլեւայլ զարդք եւ տօնական հանդերձք կղերականաց յայլեւայլ գործս եկեղեցական սպասաւորութեանն. նշանաւոր էր մանաւանդ եպիսկոպոսական հանդերձն. առ Յոյնս գոյր Ուրար[7] եւ արկանելի ինչ շուրջանակի ի սպիտակ ասուէ[8] իբրեւ նշանակ գառին գտելոյ եւ բարձելոյ յուս[9] Հովուին։ Զայս (պալլիուն) արկանէին ի կիր եւ յարեւմուտս եւ անդստին ի 6երորդ դարէ առաքէր այն ի քահանայապետաց Հռոմայ առ Մետրապոլիտս իբրեւ նշանակ եկեղեցական հաղորդութեան ընդ նոսա եւ հպատակութեան սոցա առ երեւելի գլուխն եկեղեցւոյ։ Խոյրն[10] յօրինեալ ի մեծագին կերպասուց, բազում ան-

1 Βῆμα, sanctuarium.
2 Ἄμβων.
3 Κρήνη, cantharus.
4 Βαπτιστήριον, φωτιστήριον, babtisterium, illuminatorium.
5 Secretarium կամ diaconicum magnum.
6 Encaenia.
7 Ὠράριον, orarium որ յետոյ stola կոչեցաւ։
8 Ὠμοφόριον, Ոմոփորոն, Ուսակիր, pallium, պալլիուն։
9 Ὦμος
10 Tiara կամ mitra.

Digitized by Google

դամ ասկեհուռ եւ ոսկեմանեակ՝ էր նշանակ եպիսկոպոսական ճոխութեան եւ յարեւելս եւ յարեւմուտս. իսկ յարեւմուտս վարէին եպիսկոպոսունք եւ հովուական մատանեաւ եւ գաւազանաւ:

Զարդարեցաւ հրապարակաւոր պաշտօնն Աստուծոյ եկեղեցական բանաստեղծութեամբ եւ երաժշտութեամբ: Յարեւելս լինէր մեծանուն նորանոր հնարողն Սինեսիոս խորհրդական օրհնութեամբքն, նոյնպէս եւ Եփրեմ Ասորի՝ որ յօրինէր եկեղեցական երգս փոխանակ երգոցն Բարդեծանայ, երկոքեան Ապողինարքն, Գրիգոր Նազիանզացի եւ Բասիլիոս Մեծն. ի մէջ արեւմտեայց՝ Հիղարիոս Պիկտաւիացի եւ Ամբրոսիոս՝ զորոց զերգսն գովութեամբ ընկալաւ Գ. ժողովն Տոլետոյ. զկնի նոցա՝ քրիստոնեայ պոէտքն Կղաւդիոս Մամերտոս, Պաւղինոս եպիսկոպոս Նոլայ, Սեդուլիոս, Պրոսպեր, Գրիգոր Մեծն, եւ երեւելին քան զնոսա բանաստեղծական արուեստին՝ Պրուդենտիոս († յետ 405 ամի): Երգն՝ որ անուանի Ամբրոսեան („Զքեզ Աստուած գովեմք„) պատմի իմն առաջեալ ի սրբոյն Ամբրոսիոսէ առ յանկոյ վաղվաղակի ի լցութենէ ուրախութեան սրտին ի մկրտելն զՕգոստինոս: Զերգելոց եւ զխօսելոց սաղմոսաց պատմանն մուծեալ անդստին ի սրբոյն Իգնատիոսէ Աստուածազգեցէ: Վասն նուագաց եւ ձայնից երեւելի քան զամենեսին եղեն յարեւմուտս Ամբրոսիոս եւ Գրիգոր Մեծն, նա՝ Ամբրոսեան եւ սա՝ Գրիգորեան նուագօքն[1]: Նուագքն Գրիգորեանք առաւել քան զառաւել ածան ի կատարումն ի ձեռն դպրոցին երգեցողաց զոր հաստատեաց նոյն իսկ քահանայապետն եւ տակաւ տարածեցաւ ընդ ամենայն արեւմուտս: Յետ սակաւ ինչ միոյ յաւելաւ երգինացն բարբառ՝ արժանի կոչելոյ „արձագանգս երգոց հրեշտակականն դասուց„:

Տօնք որ հաստատեալ կային յառաջին ժամանակին, այս են՝ միաշաբաթին, զատկաց, պենտեկոստէից, եւ պահք չորեքշաբաթւոյ եւ ուրբաթու՝ կային նոյին նոյնպէս. իսկ ի դնել Կոստանդիանոսի օրէնս „ի միաշաբաթուց աւուրս չառնել դատաստանս եւ դադարել յայլոց եւս աշխատութեանց եւ զզօրականն ժողովել ի հասարակաց աղօթս„ եւ դարձեալ՝ ի կարգել ժողովոյն Լաւոդիկեայ կանոնս չանցուցանել պատուհասաւ զօր շաբաթուն անգործ լոկ օրինակի Հրէից, առաւելագոյն փառաւորեցաւ օր միաշաբաթւոյն: Եւ վասն տօնի զատկաց ի ժողովն Արելատայ եւ Նիկիայ սահմանեցաւ մի եւ նոյն ժամանակ վասն ամենեցուն. թէպէտ եւ եղեւ միանգամ այլակերպութիւն վասն այլ եւ այլ հաշուոց Հռոմայեցւոցն եւ Աղեքսանդրացւոց, սակայն եւ այն բարձաւ յետոյ՝ յետ մտանելոյ յարեւմտեայս Դիոնիսեան շրջանին: Նոյնպէս եւ 40օրեայ պահոցն պատրաստութիւն առ այն տօն առ հասարակ յամենեսին ձգեցաւ, եւ յաւուրս պահոցս այսոցիկ չէր օրէն կատարել տօնս մարտիրոսաց, հարսանիս եւ այլ եւս նոյնպիսիս[2]: Մանաւանդ սրբագոյն իմն էր վերջին շաբաթն յառաջ քան զտօն զատկին[3] եւ ի նմին՝ Հինգշաբաթին, օր տարեկան ընթրեաց Տեառն[4], Ուրբաթն՝ օր Խաչի[5] եւ Շաբաթն: — Ըստ ստոյգ վկայութեանց՝ ի սկզբան չորրորդ դարու կատարէր տօն Վերացման կամ Համբարձման[6] եւ օրինակաւ Մամերտոսի եպիսկոպոսի Վիեննայ Գաղիացւոց (469) յառաջ քան զայն տօն կատարէին նախ ի Գաղիա ապա հրամանաւ Ղեւոնի Գ. յամենայն իսկ

1 Cantus ambrosianus, cantus gregorianus.

2 Ժող. Լաւոդ. կան. 51 եւ 52. տես եւ 48. 50:

3 Ἑβδομὰς μεγάλη. Աւագ շաբաթ:

4 Dies anniversarius coenae Domini.

5 Ἡμέρα τοῦ σταυροῦ, dies crucis.

6 Ἑορτὴ τῆς ἀναλήψεως կամ ἡ ἐπισωζομένη. Օր փրկութեան:

Digitized by Google

առհասարակ իմն կայր սովորութիւն յարուցելոյ եւ յարութեան մկրտելոյ զմանկունս. կշտամբեալ յանդիմանէ Գրիգոր Աստուածաբանս զաւելորդ հոգս մարցն վասն ակարութեան մանկանցն, ասելով թէ ապա՛ք անդի չարին ի վերայ մանկանն, ի խանձարրոց սրբեսցի, Հոգւոյն սրբոյ նուիրեսցի. դու երկնչիս յաստուածեղէն կնքոյն վասն բնութեանն ակարութեան, որպէս փոքրոգի եւ ոչ, մայրդ: Աննա նուիրեաց Աստուծոյ զորդեակն իւր զՍամուէլ մինչ չեւ ծնեալ, իսկ եւ իսկ յետ ծննդեանն՝ եւ զնա ի քահանայութիւն եւ կրթեաց զնա ի հանդերձեալ քահանայութեան. փոխանակ է մարդկօրէն իրաց երկնչելոյ՝ եղեւ նա վստահ յԱստուած,,: Եւ յաճախէին իսկ բազում անգամ առաւօտուցք հարցն սրբոց վասն յամեցուցանելոյ արանց հաւատացելոց զմկրտութիւն: Առանձինն սահմանեալ ժամանակ մկրտութեան էին տօնքն Յայտնութեան եւ Պենտեկոստէից, բայց մանաւանդ տօն Զատկին: Ի Զատկին նորատունկքն մկրտեալք արկանէին հանդերձս սպիտակս եւ նովին շրջէին զպայծառն ամենայն, եւ ի յաջորդ կիւրակէի ի բաց դնէին, ուստի եւ կիւրակէն այն յարութեան կոչէր Նոր կիւրակէ յետ սպիտակաց կամ սպիտակաց ի բաց հանելոց[1]:

Սուրբ յառաջին ժամանակն միշտ ընդ մկրտութեան տուեալ լինէր դրոշմն, այժմ յաճախագոյնս բաժանեցաւ ի մկրտութենէ, մանաւանդ յարեւմուտս. քանզի այժմ յաճախէին մկրտել երեխայք, ուր դրոշմն յատկապէս էր համարեալ սեպհական գործ եպիսկոպոսին, եւ սովոր էր տալ զայն եպիսկոպոսն առաջնորդ եպիսկոպոսական եկեղեցւոյն իւրոյ՝ ի ժամանակի այցելութեանց իւրոց: Զեւղն դրոշմին օրհնէր եպիսկոպոսն ի վերայ սեղանոյ:

## 145

Միջավայր եւ կենդրոն եկեղեցական խմբից էր պատարագն նա խորհուրդն Գոհաբանութեան: Անդէն ի սկզբան ժամանակաց կոչէր ժողովուրդն յեկեղեցի՝ ոչ միայն ի սովորական առաւօտու եւ երեկոյին աղօթսն, այլ եւ ի պատարագն՝ նշանաւ հարման ուռան ի վերայ քրէական նիւթոյ, եւ ապա ձայնիւ զանգակի անդստին յ7երորդ դարէ: Երկու գլխաւոր մասունք էին պատարագին. առաջինումն (պատարագին երախայից[2]) մնային եւ երախայքն եւ հեթանոսք իսկ, իսկ երկրորդումն՝ միայն հաւատացեալքն մկրտեալք: Սկիզբն լինէր պատարագին երախայից՝ ըստ այլեւայլ պատարագամատուցաց կամ երգովք սաղմոսաց եւ կամ ընթերցուածովք գրոց սրբոց: Իսկ զսաղմոսսն կամ ամենայն իսկ ժողովեալքն միաբարբառ երգէին եւ կամ յերկուս դասս բաժանեալ՝ փոխնի կցէին զիւրաքանչիւր տուն սաղմոսացն յերկուց կողմանց՝ մանաւանդ անդստին չորրորդ դարէ յարեւելս, եւ յարեւմուտս՝ անդստին յԱմբրոսիոսէ: Յետ առաջնոյ սաղմոսին (որ մուտն[3] կոչի)՝ ըստ բուն հին պատարագամատուցաց գային պաղատանք վասն ողորմութեան (Տէր ողորմեա[4]), ապա ընդարձակագոյն Փառաբանութիւն[5] այլեւայլ օրինակաւ յայլեւայլ պատարագամատոյցս. ապա եպիսկոպոսն ողջոյն ժողովրդեանն (Խաղաղութիւն ընդ ձեզ կամ ընդ ամենեսին) եւ ապա յանուն ամենեցուն աղօթս ինչ (որ կոչի Ժողովածք[6], իբրեւ թէ զխնդրուածս ժողովրդեանն

1 Dominica in albis sc. depositis, s. dominica post albas.
2 Missa catechumenorum.
3 Introitus.
4 Κύριε ἐλέησον
5 Δοξολογία, gloria
6 Collecta.

ժողովէ)։ Յետ այնորիկ նստէր յաթոռն բարձու եւ միով աստիճանաւ խոնարհագոյն նստէին երիցունքն՝ ի կէս բոլորակ, իսկ սարկաւագունք կային կանգուն։ Ելանէր ընթերցիչն կամ անագնոստն յամբիոնն եւ ընթեռնոյր հատուած ինչ յառաքելական թղթոց կամ ի հնոց կտակարանաց ի բարբառ ժողովրդեան, բազում ուրեք ըստ ճաշոցաց տօնաձեռն ի դոյն իսկ յօրինելոց. եւ ապա յետ երգոյ սաղմոսին (որ աստիճանաւորն[1] կոչի) անդէն ընթերցիչն, իսկ ի վեցերորդ դարէ հետէ՝ միայն սարկաւագն ընթեռնոյր զաւետարանն՝ զոր յետոյ եպիսկոպոսն յաթոռոյ անտի իւրմէ եւ կամ առ սեղանոյն կանգուն կացեալ մեկնէր՝ խառնելով խրատս գործականս (եւ կոչէր՝ խօսք ընտանութեան[2]) եւ կամ արձակ ինչ ճառս[3]։ Իբրեւ կարի ինչ հաճոյ ժողովրդեանն լինէր բանն՝ երբեմն ըստ հեթանոսական սովորութեանն յաճախէր հարկանել ծափս կամ հանել կայթիւնս, մինչեւ հարկ համարել Ոսկեբերանի առնել երբեմն ցնոսա թէ “Չէ աստ թատր, չէք նստեալ տեսանել զխաղալիկսն„ եւ միւս եւս նուազ՝ թէ “Դուք կայթէք, այլ ինձ արտասուք գան„։ Ապա հրաման տայր սարկաւագն բարձրաբարբառ ի բաց ելանել կարգաւ նախ անհաւատից, ապա երախայից, դիւահարաց եւ ապաշխարողաց։ Ի փակել դրանցն՝ յորդորէր սարկաւագն զմնացեալսն ի ներքս՝ զհաւատացեալսն միաբանել՝ մատուցանել աղօթս վասն արձակելոցն, վասն ուխտի մանկանց (կղերականաց), վասն համօրէն եկեղեցւոյ, վասն արանց եւ կանանց եւ վասն ամենայն չափոյ հասակի, վասն բարեկամաց եւ թշնամեաց։ Եւ որ մօտ առ միմեանս կային՝ տային իւրերաց համբոյր խաղաղութեան եւ սիրոյ։

Այսպէս առնոյր այնուհետեւ սկիզբն պատարագ հաւատացելոցն[4], եւ սարկաւագունքն (եւ կէս սարկաւագունք յարեւմուտս) զատանէին յընծայից կամ ի նուիրաց[5] անտի հաւատացելոցն եկելոց անդր՝ զկարեւորն վասն պատարագին եւ հաղորդութեան ժողովրդեանն եւ բերեալ լինէր ի վերայ սեղանոյն, եւ ընդ նոյն գինի ի բաժակն խառնեալ եւ ջուր անվրէպ. անդէն իսկ յաղօթս մատուցման ընծայիցն[6], անուանին ընծայքն նկատելով զհանդերձեալ նուիրագործութիւն նոցա՝ “պատարագ անարատ, ծնեալ ի ծոցոյ Մարիամայ„, եւ միանգամայն լինէր խնկարկութիւն (որ յիշի անդստին ի չորրորդ դարէ)։ Ապա մատուցանէր սարկաւագն ջուր՝ եպիսկոպոսին լուանալ զձեռսն, եւ երկրորդ քննութիւն խղճի մտաց թէ արդեւք ունիցի ոք խէթ զեղբօրէն, եւ յետ այնորիկ յորդորական աղօթք (որ Յառաջաբանն կամ Գոհութիւն[7] կոչի) թէ “Նայեսցուք առ Տէր ահիւ եւ դողութեամբ, ի վեր (ընծայեցուցէք) զմիտս„. եւ տայր ժողովուրդն պատասխանի՝ “Ունիմք առ Տէր զմիտս„. եւ ի յորդորել եպիսկոպոսին լինել հաղորդ գոհացողութեանն՝ տայր պատասխանի թէ “Արժան եւ իրաւ է...„, եւ կատարէր Յառաջաբանն կամ Գոհութիւնն հրեշտակական երգովն՝ Սուրբ, Սուրբ, Սուրբ, յոր խառնէր եւ ժողովուրդն զբարբառ իւր։ Յետ այսորիկ սկսանէր բուն գլխաւոր մասն պատարագի (որ կոչի Մատուցումն[8]) եւ անուանի կանոն ի ժամանակէ անտի Գրիգորի Մեծի։ Անդէն լինէր մի ըստ միոջէ յիշատակ վասն ամենայն հաւատացելոց, վասն եպիսկոպոսին կամ հայրապետին, վասն կայսեր կամ թագաւորին, եւ վասն ամենայն երախտաւորաց եկեղեցւոյ եւ առանձինն իմն վասն քահանայապետին Հռոմայ՝ որոյ ա-

1 Gradualis.
2 Ὁμιλία, Homilia, tractatus.
3 Λόγος, sermo.
4 Missa fidelium.
5 Oblatio.
6 Offertorium.
7 Πρόλογος, εὐχαριστία, Praefatio.
8 Ἀνάφορα, actio, secretum.

Digitized by Google

առաջին ճաշակելն: Իսկ մանկունք՝ միայն ըստ կերպարանաց գինւոյ ընդունէին: Հացն որով վարէին ի խորհրդոյն՝ էր խմորեալ յարեւելս, նոյնպէս եւ յարեւմուտս՝ բաց ի սակաւ ինչ գիւղից ուրեք ուրեք. բայց առ ժամանակօք Փոտոսի վէճ զօրացեալ կալեալ էր յարեւմտեան եկեղեցւոջ՝ անխմորին կամ բաղարջի. այլ խառնումն սակաւ ինչ ջրոյ ի բաժակին էր միաբան առհասարակ յարեւմուտս եւ յարեւելս ի բաց իսկ ի Հայոց ժամանակաց: Վասն առաւելագոյն երկիւղածութեան եւ մեծարանաց խորհրդոյն սորայ՝ կամէին ծածկել հաւատացեալքն եւ անօթի հաղորդէին (որպէս յիշատակէ Ցերտուղիանոս), զոր այլս ժողովն Կարթագենի Գ. (397, կան. 29) յայտնի հրամայէ եւ ի բաց առնու զաւագ հինգշաբաթին՝ յորում հաղորդութիւնն լինէր ընդ երեկս ըստ օրինակի ընթրեացն Քրիստոսի: Նմին հակառակ ուրեք ուրեք շուայտել եւս հաւանէր յԱգապէսն՝ որ կից էին ընդ խորհրդեան գոհութեան. յայն սակս առաջին կշտամբէին զայն հարքն, եւ ժողովքն Գանգրիկեայ (372) եւ Լաւոդիկեայ (393) արգելին զանկարգ յեկեղեցւոջ ուտել Ագապս. եւ արգելմամբք իսկ նուազեալ բարձաւ այն սովորութիւն ի միջոյ:

Յայսմ ամենայնի ամենեցուն իսկ կենդանագոյն երեւէր հաւատքն եւ վարդապետութիւն կաթողիկէ եկեղեցւոյ զխորհրդոյ հաղորդութեան թէ ճշմարիտ մարմին եւ արիւն Քրիստոսի է գոյափոխութեամբ եւ միանգամայն պատարագ. այլ թէ ոչ՝ զմէ՞ այնչափ հրամանք եւ զգուշութիւն վասն կարի մանր փշրանաց՝ մինչեւ պատուիրել սուրբ հարցն, այնպէս զգոյշ լինել զի ի հաղորդելն մի ինչ մասն ոտանիցէ կամ անկանիցի, որպէս զգոյշ ոք լինիցի եւ վասն աւազահատոյ ոսկւոյ:

Նոյնպէս ընդ ժամանակս ընդ այնոսիկ բազում ուրեք ծածկութիւն էր առաջի անուսմնաց վասն դժուարալուր վարդապետութեանց ըստ հրաման կենարարին (Մատթ. Է. 6), եւ մանաւանդ վասն մարդեղութեան Քրիստոսի ի խորհրդեանս ըստ աստուածութեան եւ ըստ մարդկութեան՝ լռութիւն էր առաջի երախայից եւ բազումք իսկ ի հարց եւ ի գիրսն եւս զգուշութեամբ գրէին զայնպիսի իրաց. այսպիսի վարդապետութիւնք կոչէին Անճառք կամ ծածուկք[1]: Սակայն եւ այնպէս երբեք երբեք վերացուցանէին հարքն զքող ծածկութեանցն ըստ պիտոյիցն եւ ըստ հանգամանաց ժամանակին: Այսպէս Կիւրեղ Երուսաղեմացի զայնոսիկ՝ որ յետ երախայութեանն կատարելոյ նորոգ մկրտեալ էին ի զատկին, առնէր միջամուխ խորհրդոցն ասելով՝ "Որպէս ի Կանա Գալիլեացւոց զջուր փոխեաց ի գինի՝ որ մերձաւոր է արեան, արդ չհամարիս զնա արժանի հաւատարմութեան՝ յորժամ զգինի յարիւն փոխիցէ: Առ մարմնաւոր հարսանիսն կոչեցեալ՝ զայնպիսի զարմանալի նշան եցոյց, ո՞րչափ եւս առաւել պարտ եւ պատշաճ իցէ հաւատալ թէ զմարմին իւր եւ զարիւն տայցէ կերակուր որդւոց առագաստի: Արդ ամենայն իսկ հաւանութեամբ ընկալցուք իբրեւ մարմին եւ արիւն Քրիստոսի: Քանզի ի կերպարանս հացի տուեալ լինի քեզ մարմինն եւ ի կերպարանս գինւոյ տուեալ լինի քեզ արիւն, զի յորժամ առնուցուս զմարմին եւ զարիւն Քրիստոսի՝ մարմնակից եւ արիւնակից նմա եղիցես: Քանզի այնպէս քրիստոսակիրք լինիմք՝ բաշխելով մարմնոյ նորա եւ արեան յանդամս մեր. այսպէս ըստ երանելւոյն Պետրոսի աստուածեղէն բնութեանն լինիմք հաղորդակիցք: — Յայն սակս մի իբրեւ ի դոյզն ինչ հաց եւ ի գինի հայեցես, քանզի մարմին եւ արիւն Քրիստոսի են ըստ Քրիստոսի իսկ բանից: Զի թէպէտ եւ զգայութիւնն այնպէս թելադրիցէ քեզ, սակայն

1 Ἄῤῥητα, arcana.

ընդունմամբ առաքեալ հաստատագրելոյ եւ ձեռնադրելոյ ամենեքին զորս անկարելու-թիւն անհաւանութեան իբրեւ անփորձականի եւ աստուածային կարգ։ Ա-մուսնութիւն աղանդաւորաց ընդ հերետիկոսաց բազում անգամ արգե-լաւ յարեւելս եւ ցուցաւ անհաստատ (Ժող. Ղաւոդ. [372] կան. 47 եւ 31. Ժող. Տրուլ. [692] կան. 72).

Զխորհուրդ օծման հիւանդաց ի մէջ բերէ Ոսկեբերան իբրեւ առանձին առաւելութիւն քահանայութեան նորոց կտակարանաց քան զհնոցն կտակարանաց[1], եւ Աւգոստինոս եւ այլք վկայեն մատակարարու-թեան խորհրդոյս այնորիկ[2]. Գրիգոր Մեծն զօրինակ մատակարարու-թեան եւ զձեւն մի ըստ միոջէ կարգէ ի գիրսն մատակարարութեան խորհրդոց։

Իսկ մարմինք փախճանելոցն, որ առաւելն լեալ էր Հռովմայ տոհմի զա-մենայն ժամանակս կենացն եւ զրկեալ յաւէտ հաղորդութեանն խորհրդո-ցաց եւ սահմանեալ երբեմն անձնուլ փառաւորութիւն՝ անկեալ լինէր ի փոսորոյ[3] ի տեղիս գերեզմանաց (որ տապանքն կամ քնարանքն[4] կո-չէին) երգովք սաղմոսաց. առ գերեզմանաւն լինէին աղօթք, եւ ապա՝ եթէ ընդ աւուրս էր թաղումն՝ մատչէր պատարագ։ Եւ ըստ աւէտ յարգողելոյ եկեղեցւոյ՝ լինէին ասաա աւուրք ողորմութեանց վասն ան-ջատելոյն, եւ ամ ըստ ամէ կատարէր ամն յիշատակի նորա մատուցմամբ պատարագի։ Որ վասն յանցանացն ապաշխարեալ լինէին եւ անձնատուրաց եւ որք կամակար առանց մկրտութեան եւ այլոց խորհրդոց յաշխարհէ վճա-րէին՝ նոցա չշնորհէր թաղումն։

## 147

**Բարոյական կեանք քրիստոնէից եւ վանականութիւն** — Ընդհանրական տա-րածումն քրիստոնէութեան եւ նորոգ ինչ հիմնարկութիւնք ի կրթու-թիւն եւ ի հրահանգս մարդկանն՝ արարին փոփոխումն մեծ ի լաւ անդր։ Սակայն՝ զոր բազումք ի հարց յերրորդ դարու անդ ասէին՝ թէ ամենեքին հալածանացն թուլացուցանեն զքրիստոնեայսն, զնոյն առաւել եւս յայտնեաւ էր տեսանել յերկայնժամանակեան խաղաղութեանն՝ որ հո-վացուցեալ ցրտացոյց զքրիստոնեայսն։ Չիք գտանել զսէրն եւ զանձնա-կան ընկերսիրութիւն առաջնոցն դարուց եւ ոչ միշտ զնոյն ներող գնացս առ հեթանոսսն՝ զոր ինքեանք քրիստոնեայքն յառաջագոյն պահանջէին ի նոցանէ վասն անձանց ի ժամանակի հալածանացն։ Գլխաւոր պատ-ճառք այն էին՝ զի առաջնորդք եկեղեցեացն, որպէս եւ քրիստոնեայքն առհասարակ՝ ոչ եթէ միշտ եւ ներողութիւնս եւ զրկումն ընդունելու-թեամբ քրիստոնէութեանն գտանէին, այլ պաշտպանութիւն, պատիւ եւ մեծութիւն։ Այսպէս՝ էր յեկեղեցւոջ բազմութիւն քրիստոնէից որ զանուն եւեթ եւ զկերպարանս քրիստոնէութեան ունէին, կամ զարտա-քին եւեթ գործս քրիստոնէութեան՝ առանց ներքին ճշմարիտ բարե-պաշտութեան ցուցանէին։ Երթալ երթային բազումք ջերմեռանդն իմն յԵրուսաղէմ ի սուրբ տեղիսն (մանաւանդ մօտ ի ժամանակս Զատկաց), այլ բազումք այնոքիկ էին որ վասն արտաքին ինչ պատճառաց առնէին զայն պանդխտութիւն՝ մինչեւ յուշ առնել նոցա Ս. Յերոնիմոսի, թէ ոչ յԵրուսաղէմ լինել ինչ օգուտ է, այլ աստուածահաճոյ կեանս յԵրու-

1 Վասն քահան. Գ. Գլ. 6։
2 Ճառ. 215, Զժամանակէ. Իննոկ. Ա. Թղթ. 1. առ Դեկենտ. Եւգուբ. Գլ. 8։
3 Fossarii.
4 Arcae, coemeteria, dormitoria.



Digitized by Google

տողէմ կեալ։ Դարձեալ՝ ի մեծամեծ գժտութիւնս անդ հաւատոց յարուցելոց՝ երեւէին նշանակք սիրոյ եւ հաւատարիմ պահպանութեան հաւատոյ. բայց բազում ինչ նպաստ եղեն այն գժտութիւնք ի խանգարումն օրինաւոր կարգաց եւ բարոյից լաւութեան։

Սակայն ոչ իրաւացի ինչ դատաստան է՝ եթէ զթերութիւնսն զայնասիկ ոք ի վերայ ամենեցուն տահաւասարակ արկանիցէ։ Անհամեմատ իմն գեղեցիկ են նկարագիրք հարցն սրբոց եւ վարդապետաց՝ որք յոյժ բազմաւորք ի դարս յայսոսիկ կացին, որովք եւ յետոյ եւս ի դարս բազումս եգիտ եկեղեցի շինութիւն մեծ։ Մարք նոցա բարեպաշտօնք (Բարսղի, Ոսկեբերանի, Աւգոստինեայ, Թէոդորետեայ եւ այլոց) եւ ժողովուրդք եկեղեցեացն՝ որք սերտ սիրով կապեալ էին ընդ եպիսկոպոսին իւրեանց, յայտ արարեալ ցուցանեն թէ էր յայնժամ պատշաճ ինչ ոգի աստուածպաշտութեան։ Արժանի իմն մտադրութեան է եւ այն՝ զի ազատօրէն բարձաւ վիճակ գերեացն. ի սոյն յորդորէին առհասարակ զժողովուրդն երեւելիք յեպիսկոպոսաց ժամանակին, բայց առաւել քան զամենեսին Ոսկեբերան՝ որ խօսէր յաճախ՝ յայտ արարեալ զսկիզբն գերութեանն եւ զբնածին ազատութիւն մարդոյն եւ զանկորուստ իրաւունս նորա՝ ըստ լուսաւորութեանն ընծայելոյ մեզ յօրինաց անտի Քրիստոսի, թելադիր լինէր տերանց նոցա կրթել եւ ուսուցանել զնոսա եւ թողուլ իսկ ազատս։ Պտուղ թելադրութեանցն այնոցիկ երեւէր իսկ եւ իսկ՝ յորժամ հաւանէր եւ իշխանութիւնն քաղաքային հանել օրէնս մի ըստ միոջէ ի դիւրութիւն եւ յազատութիւն գերեացն։

Ծաղիկ եւ վայելչութիւն բարոյական կենաց ժամանակացս են կեանք վանականութեան՝ որ է կանխումն իմն հրեշտակական կենաց՝ որ կայ մնայ ամենեցուն յանտի կեանս (Ղուկ. ի. 35)։ Վանականութիւն էր զարդ ամենայն իսկ արանց երեւելեաց ժամանակիս. Աթանաս, Բարսեղ, Գրիգոր Նազիանզացի, Ոսկեբերան, Եփրեմ, Յերոնիմոս, Աւգոստինոս, Թէոդորետոս եւ այլք զառաւելութիւն լուսոյն՝ որով զմարդիկ զիւրեանց եւ զհանդերձելոց ժամանակաց լուսաւորեցին, ի վանականութենէ ծծեցին։ Ծանրութիւն եւ զարմանալի զգաստութիւն վարուց նոցա եւ գնացից, իմաստութիւն վարդապետութեան նոցա, խորութիւն մտածութեանց նոցա եւ օծութիւն բանից նոցա ոչ այն արտաքին դրոշմն էր զոր ի դպրոցաց անտի Աթենացւոց եւ Աղեքսանդրացւոց առին, այլ պտուղ ինչ խայծեալ՝ մենաւոր ճգնական կենաց իւրեանց՝ զոր վարեցին կամ առանձինն եւ կամ ընդ առաջնորդութեամբ վանականաց երկիւղածաց յանապատսն Եգիպտացւոց կամ Ասորւոց։ Սակայն եւ այն առանց երկմտութեան է՝ թէ բազում ինչ անկարգ ի վանականս ժամանակիս երեւեցաւ, որպէս յայտ ի պատմութենէ Նեստորականութեան եւ Եւտիքականութեան է։ Յայն սակս ճշմարիտ եւ դիպող իմն է նկարագիր Աւգոստինեայ՝ որ ասէ. "Որպէս ոչ տեսի մարդիկ լաւագոյն քան զայսն՝ որ ի վանս իցեն, նոյնպէս չէ իմ տեսեալ մարդիկ վատթարագոյն քան զվատթարսն վանականս,,։

Աստ իսկ կային նշմարանք այնց կենաց յառաջին ժամանակսն[1], այլ բուն սկիզբն է ի Ս. Անտոնէ։ Ծնեալ սա յազնուական եւ ի մեծատուն ծնողաց, մնաց որբ ի նոցանէ ի մանուկ հասակին. չէր յօժար ի խաղս հասակակցացն եւ ոչ ուսման ինչ այնչափ, այլ ճգնական կենաց ունէր սէր։ Ի պատանեկութեանն զհետ երթեալ բանիցն Քրիստոսի (Մատթ. ժթ. 21, եւ Զ. 34) եթող զինչսն եւ չոգաւ զհետ անապատաւորաց

1 Տես վերագոյն եղ 233։

Digitized by Google

ժամանակին։ Ցետ մերձելոյ ընդ բնութեան եւ ընդ սատանայի եւ յաղթելոյ շնորհօքն Աստուծոյ, եթող զմիայնութիւնն ի ժամանակի հալածանացն Մաքսիմինեայ (311) երթալ լինել բազմաց պաշտպան, մխիթար եւ քաջալերիչ յԱղեքսանդրիա։ Ի դառնալ նորա անտի՝ բազումք յարեցան ի նա աշակերտել եւ նմանել նմա, որք եւ շուրջ եկեալ զնովաւ, իբրեւ որդիք զհայր՝ զմեծամեծս ելեւել առնէին ի հրահանգս առաքինութեան եւ աստուածպաշտութեան, պարապելով եւ ի ձեռագործս՝ առ ի բարերարութիւն աղքատաց մերձաւորաց եւ հեռաւորաց։ Անտոն յամենեցունց պատուեալ եւ համբաւեալ իբրեւ սքանչելագործ՝ մեծ էր ի խոնարհութեան զանձն ունէր։ Ցորժամ կայսր Կոստանդիանոս եւ նորին որդիք գրեցին առ նա՝ ասէր ցմանկունսն. Մի ինչ ընդ այն զարմանայք՝ եթէ կայսր գրէ առ մեզ, զի մարդ ոք լոկ է նա. այլ ընդ այն սքանչացարուք՝ զի Աստուած զօրէնսն մարդկան ետ եւ Որդւովն խօսեցաւ առ մեզ։ Գրեաց պատասխանի առ կայսր՝ ուրախ լինիմ, ասէ, զի Քրիստոսի երկիր պագանէք. կատարեցէք զպարտս առաջնորդութեան ձերոյ, յիշեցէք զհանդերձեալ դատաստանն, եւ թէ Քրիստոս միայն է ճշմարիտ եւ յաւիտենից թագաւոր։ Զպակասութիւն հրահանգաց գիտութեանն լնոյր առատութիւն մտաց նորա՝ որ կիրթ էր ի դիտողութիւն բնութեան եւ կենդանի ընթերցուած գրոց սրբոց, որովք ընդ ուսելոց եւ չուսելոց կարող էր միանգամայն խօսել եւ շինել զնոսա։ Սովին պապանձեցոյց զփիլիսոփայսն. բազում ինչ նպաստ եղեւ ի խոստովանութիւն աստուածութեանն Քրիստոսի եւ ի խաղաղութիւն եկեղեցւոյ՝ ի դժնութիւնս անդ Արիանոսացն եւ Մելետեանսաց. եկեալ նա ի զարմացման եւ զհանդերձեալ նեղութիւնս եկեղեցւոյ եւ արտասուեաց։ Զգացեալ թէ մօտ է վախճան իւր, միայնացաւ խորագոյն յանապատն. յետ խրատելոյ զվանականսն հեռանալ ի մոլորութեանց եւ պահել զուղղութիւն հարցն՝ վախճանեցաւ ամաց 105 (350), թողեալ գեղեցիկ ինչ եւ բազմամբոխ ընտանիս։ Վասն զուարթութեան ոգւոյ իւրոյ ոչ երբեք երեւեցաւ խոժոռադէմ, վասն ուրախութեան սրտին՝ ոչ երբեք տրտում։ Այսպիսի ինչ կեանք գրեալ ի մատենի յանուն՝ որպիսի ոք Աթանասիոսն էր, հարկ էր թէ հրապուրէին զբազումս՝ նմանել եւ երթալ զհետ։

Պաքոմիոս զառաջինն զեցկանոն (laurae) որ աստ անդ եւ կամ մօտ առ միմեանս կանգնեալ կային, եւ զմիայնակեացսն (μοναχοί) որ ուրոյն ուրոյն բնակեալ էին, ած ի մի սերտագոյն միաբանութիւն, եդեալ (340) ի Տաբեննա կղզւոջ Նեղոս գետոյ կարգ ինչ վանականաց (κοινόβιον, claustrum) եւ միաբանական միաձեւ կենաց հասարակաց։ Ի նմին ժամանակի նոյնպիսի ինչ միաբանութիւն վանականաց յօրինէր ի վերայ Նիտրեան լերանց՝ Ամմոնիոս, եւ յանապատին Գազայ՝ Ս. Հիղարիոն, եւ սատարին տարածեցան կեանք վանականութեան ի Պաղեստին եւ յԱսորիս։ Զանայր եւս Եւստաթիոս Սեբաստացի զնոյն ի Հայաստանի եւ ի Փոքրն Ասիա տարածանել. թէպէտ եւ ճգնէր կայսր Վաղէս կարճել զբազմամբոխ յաճախութիւն վանականաց՝ առնլով զնոսա ի կարգս զօրաց իւրոց, այլ զուր։ Առաւել քան զամենեսին զարգացոյց զվանականութիւն յարեւելս Մեծն Բարսեղիոս. գրեաց նա ոչ միայն նոցա կանոնս, այլ եւ վանս եւս եդ մօտ ի Նէոկեսարիա, իբրեւ զօրութիւն մեծ ընդդէմ Արիանոսութեան։

Առաջինն ժողովրդականք էին վանականքն, միայն վերակացուք կամ առաջնորդք վանիցն (ἡγούμενος, ἀρχιμανδρίτης, ἀββᾶς) էին քահանայք. ամենեքին էին ընդ տեսչութեամբ եպիսկոպոսին։ Ցետ այ-

Digitized by Google

ղանդակոս երեց գաղղիացի (402) հակառակեցաւ գրով եւ բանիւ ամուսնութեան կղերականաց, պաշտաման սրբոց եւ նշխարաց նոցա, խոտելով զհաւատացեալսն իբրեւ մեհերոյ եւ փոշւոյ երկրպագուս։ Ընդ նմին պատասխանի Յերոնիմոս՝ թէ "Բարեպաշտութիւն հաւատացելոցն ամենեւին այլ ինչ առնանէ ի նոսա, եւ զգայ թէ չէ ինչ ի նոսա մեռելոտի. ի առնանել անդ զնշխարսն ի վեր ուրեմն ընծայեցուցանելն զնոսա՝ առ տուրբսն որ կենդանի են առ Աստուծոյ՝ որ չէն Աստուած մեռելոց այլ կենդանեաց,,։ Հելուիդիոս եւ Բոնոսոս Սարդիկեցի առաւել եւս քան զՅովինիանոս յանդգնեցան ասել զսրբոյ Կուսէն՝ թէ որ ի Նոր կտակարանն եղբարք եւ քորքն Յիսուսի յիշին, իցեն որդիք Մարեմայ եւ Յովսեփայ։ Հակառակ Բոնոսեայ պաշտպանէր Ամբրոսիոս անփոփոխ վարդապետութեան կաթուղիկէ եկեղեցւոյ վասն մշտնջենաւոր կուսութեանն Մարեմայ. նոյն հակառակ ընդդէմ դարձաւ եկեղեցի երկրպագութեանն զոր մատուցանէին Մարեմայ իբրեւ Աստուծոյ՝ կանայքն կողլիւրիդիանեանք յԱրաբիա։

## Բ.

### Եկեղեցական մատենագրութիւն։

### 148

ԶՎԱՐՈՒՑ եւ զգործոց մատենագրաց չորրորդ եւ հինգերորդ դարու ճառեցաւ բաւականութեամբ. իսկ զամենայն ճառս մատենից նոցա մանր ի համար արկեալ թուել՝ այն անցանէ ըստ չափ եւ ըստ պատեհութիւն մատենիս։ Գլխաւոր գրութիւնք եկեղեցական մատենագրաց (մինչեւ ցԶ. դար) այս են՝ ըստ նիւթոյն կարգի։

*Պատմութիւն։* — Եկեղեցական մատենագրաց անկ էր եկեղեցական իսկ պատմութիւն գրել։ Այլ զեկեղեցւոյ պատմութիւն յայնժամ ուրեմն դիպող էր սկսանել արկանել ընդ գրով՝ յորժամ տարածեալ սփռէր եկեղեցի, ազգի ազգի յոյզս կրէր եւ ընդ բազում պատահարս անցանէր։ Ըստ չորից աւետարանացն եւ գործոց առաքելոց որ սկիզբն իսկ եկեղեցական պատմութեան է՝ առաւել ամփոփագոյն իսկ եկեղեցական պատմութիւն ընծայեցոյց Հեգեսիպպոս քրիստոնեայ դարձեալ ի հրէութենէ առ Ադրիանու ըստ Եւսեբեայ, կամ առ Մարկոսն Աւրելեաւ ըստ Յերոնիմեայ, որ գրեաց Յիշատակս եկեղեցական գործոց[1] ի հինգ գիրս. սակայն եւ այն չէր ինչ կատարեալ։ Նմին իրի յիրաւի առնէ Եւսեբիոս Կեսարացի (ծն. յամի իբրեւ 270, † 338) զանձնէ ի յառաջաբանին՝ թէ ինքն զառաջինն բուռն հարկանիցէ գրել եկեղեցական պատմութիւն։ Ի վերայ հիման Քրոնիկոնին իւրոյ՝ գրեաց նա զիւր եկեղեցական պատմութիւն ի 10 գիրս որ եւ հասանէ ցամն 324։ Քանզի սիրելի էր նա Կոստանդիանու՝ եմուտ նա համարձակ ի դիւանս տէրութեանն, յորոց զամենայն բազում փութով եւ հաւատարմութեամբ ժողովեաց, եւ յայն սակս գտանեմք առ նմա մթերս տեղեկութեանց վասն ազգի ազգի հանգամանաց եկեղեցական կենաց։ Յիրաւի ասէ ոմն ի մատենագրաց՝ թէ գոհանալ պարտ է զամենախնամն Աստուծոյ վասն պահպանութեան այսց գրոց, զի առանց սորա մութ իսկ մնայր մեզ ծանօթութիւն երից առաջնոցն դարուց։ Այլ այն միայն են աղէտք՝ զի ոչ

1 Ὑπομνήματα τῶν ἐκκλησιαστικῶν πράξεων.

Digitized by Google

*ամենայն ուրեք զկարեւոր բանդատութիւնն ի կիր արկ Եւսեբիոս եւ վարքն Կոստանդիանու (ի 4 գիրս) առաւել իբրեւ ճառ ինչ գովութեան գրեալ է ։ Ի կէս հինգերորդ դարու յառաջ մատոյց զԵւսեբիոս՝ Սոկրատէս խօսնակ*[1], *ի Կոստանդինուպօլիս ։ Մատեան պատմութեան նորա (306—439) գրեալ է փութով, ճշդութեամբ եւ մեղմական հանդարտութեամբ ։ Զեւսեբիոս յառաջ մատոյց դարձեալ՝ յամէ 323 մինչեւ ցամ 423 Հերմիաս Սոզոմենոս (յառաջ քան զամն 446), նոյնպէս խօսնակ ի Կոստանդինուպօլիս ։ Եթէ համեմատիցէ ոք զՍոկրատ ընդ Սոզոմենեայ՝ յայտ է թէ առանց հայելոյ ի միմեանս գրեցին զպատմութիւն ժամանակացն այնոցիկ ։ Թէոդորետոս եպիսկոպոս Կիւրեայ († 457 կամ 458) ունէր ի մտի դարձեալ մատուցանել յառաջ զԵւսեբիոս յամէ 322—427, գրելով զամենայն յանձնէ եւ ոչ մուրացածոյ ինչ օրինակաւ, որ բազմօք անցոյց զՍոկրատաւ եւ զՍոզոմենեաւ ։ Գրեաց եւ Փիլոստորգիոս գամիրացի եւնոմիանոս՝ պատմութիւն եկեղեցւոյ (300—425) իբրեւ ի պատասխանատուութիւն արիանոսաց աղանդոյ, զորոյ զհատուածս միայն ունիմք ի Փոտիոսի մատենադարանին ։ Թէոդորոս ընթերցիչ ի սկզբան վեցերորդ դարու արար քաղուածոյս ի Սոկրատայ եւ ի Թէոդորետեայ յերկուս դպրութիւնս, մատոյց յառաջ եւ զՍոկրատայ պատմութիւն (435—518), յայնց գրոց յորս յառաջն մնայ՝ հատուածք եւեթ կան առ Նիկեփորայ Կալլիստեան՝ որ եկաց մատենագիր ի չորեքտասաներորդ դարու ։ Եւագրիոս ի կէս վեցերորդ դարու յառաջ մատոյց զՍոկրատայ եւ զԹէոդորետայ պատմութիւնն (431—594) ։ Ապա յաջորդեն զնոսա ի վեցերորդ դարուն մատենագիրք որ ի Կոստանդինուպօլիս երեւեցան, եւ անուանին Բիւզանդեանք ։*

*Իսկ ի Հռոմոց չերեւեցաւ ոք ի ժամանակին յայնմիկ մատենագիր եկեղեցւոյ պատմութեան որ յանձնէ քննեալ գրիցէ ինչ, այլ ամենեքին թարգմանիչք եւ քաղիչք էին Յունացն, որպէս Ռուփինոս երէց ակուիլէացի որ զԵւսեբիոս փոխեաց ի հռոմ լեզու (յամի իբրեւ 400) եւ զտասն դպրութիւնսն յինն դպրութիւնս ամփոփեաց. եւ յառաջ մատուցեալ զգործն՝ յաւել եւ զպատմութիւն արիանոսացն յերկուս դպրութիւնս մինչեւ ցամն 395 ։ Ժամանակակից նորա Սուլպիկիոս Սեւերոս երէց գաղղիացի, որ քրիստոնեայ Սաղուստիոս անուն ժառանգեաց, գրեաց զպատմութիւն ի սկզբանէ աշխարհի մինչեւ ց400 ամ Տեառն, յորում կայ բազում ինչ եւ զեկեղեցւոյ իրաց ։ Պաւղոս Որոսիոս սպանիացի յազգէ՝ որ նեղեալ ի հինէ եկն առ Աւգոստինոս եւ Յերոնիմոս, հրամանաւ Աւգոստինեայ գրեաց պատմութիւն ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցամ Տեառն 416, յորում յայտ կամի առնել թէ զհարուածսն որ հասին ի վերայ Հռոմայ ի հինիցն արշաւանաց, չէ պարտ ընդունելութեան քրիստոնէութեանն գրել ։ Մարկոս Աւրելիոս Կասսիոդորոս հանդերձ Եպիփանեաւ ումեմն արար քաղուածոյս ի Հռոմ լեզու ի Սոկրատայ, ի Սոզոմենայ եւ ի Թէոդորետայ*[2], *եւ յառաջ եւս մատոյց զՍոկրատայ պատմութիւնն մինչեւ ցամն 518, որ ի միջնումն ժամանակի եղեւ այլոց աղբեւր հին եկեղեցւոյ պատմութեան ։ Դիոնիսիոս Եքսիգուոս հռոմ յազգէ հայր վանաց ի վեցերորդ դարու՝ կարգեաց զթիւ ամացն Քրիստոսի փոխանակ այլոց թուականաց եւ ժողովեաց զթուղթս քահանայապետականս ։*

*Ընդդէմ Հելլենացւոց եւ Հրէից ։* — *Եւսեբեայ Կեսարացւոյ 15 գիրք "Պատրաստութեան աւետարանի" գործ գեղեցիկ, լի կարեւոր յիշատա-*

1 Scholasticus.

2 Historia tripartita.

հաւատոյն եւ վկայութեամբք, որովք պատրաստէ իմն ընթերցողին մատենագիրն յընդունելութիւն քրիստոնէութեան, դարձեալ՝ միւս եւս "Գիր հակառակ Հիերոկղի,, իբրեւ յանդիմանութիւն Հիերոկղի գրոյն, անուանելոյ "Ճշմարտասէր,,: — Աթանասի "Ճառ հակառակ հեթանոսաց,, յորում ընդդիմութիւնս կռոցն ճառէ: — Գրիգորի Նազիանզացւոյ երկու ճառք կշտամբութեան ի Յուլիանոս Ուրացեալ: — Թէոդորիտոսի "Ճառք Ժ. վասն առողջութեան,, որովք զմոլորական կարծիս հեթանոսացն վասն ճակատագրի ջնջէ, եւ միւս եւս մնացեալ "Վասն դարմանոյ հեթանոսացն ախտից՝ գիրք ԺԲ.,, հակառակ Յուլիանու: — Կիւրղի Աղեքսանդրացւոյ "Վասն սրբոյ հաւատոյ քրիստոնէիցն հակառակ գրոց ամպարշտին Յուլիանու,, յորում մի ըստ միոջէ այլ պատասխանի պատճառացն Յուլիանու հակառակ քրիստոնէութեան: — Մարթի է այն կարգ համել եւ զԲարսեղի "զԹ. ճառս վեցօրեայ արարչութեան,, իբրեւ հակառակ անաստուածից: — Գրիգորի Նիւսացւոյ "Վասն արարչութեան մարդոյն,, յորում զմոլորութիւնս փիլիսոփայիցն Յունաց վասն բնութեան ոգւոյն կշտամբէ, նոյնպէս միւս եւս գիր "Հակառակ հեթանոսաց ի հասարակաց ծանօթութեանց,,: — Ոսկեբերանի "Գ. Ճառք հակառակ այնոցիկ՝ որ դիւաց ասեն վարել զմարդկեղէն կեանս,,. դարձեալ "Գիրն ի Բաբիղաս եւ հակառակ Յուլիանու եւ հեթանոսաց,,: — Նեմեսեայ Եմեսացւոյ "Գիր վասն բնութեան մարդոյն,, յորում ճառի հակառակ չարաչար կարծեաց փիլիսոփայիցն, ճակատագրի, եւ հաստատի ազատութիւն մարդոյն եւ Աստուծոյ առողջութիւնն, խնամութիւնն եւ մարդասիրութիւն: — Զաքարիայ Միտիլենացւոյ եպիսկոպոսի "Վասն օրհասի արեղերաց,, կամ վասն արարչութեան աշխարհի եւ հակառակ ինքնակաց նիւթոյ փիլիսոփայիցն:

Ի հռոմայեցի մատենագրաց անտի՝ Առնոբիոսի "Գիրք Է. հակառակ հեթանոսաց,,: — Ղակտանտիոսի "Աստուածեղէն հրահանգաց գիրք Է.,, յորս զմիութիւն Աստուծոյ ցուցանէ, զկռապաշտութիւն եւ զհեթանոսական փիլիսոփայութիւնն յանդիմանէ, զքրիստոնէական վարդապետութենէ, զարդարութենէ քրիստոնէական օրինաց եւ զանկրօնութենէ հեթանոսացն, զճշմարիտն պաշտամանէ Աստուծոյ, զերանելի կենաց եւ զոգւոյն անմահութենէ ճառէ. դարձեալ միւս եւս "Գիր վասն բարկութեանն Աստուծոյ,, յորում որպէս զոգի՝ նոյնպէս եւ զմարմին մարդոյն ցուցանէ գեղեցիկ նշանակ Աստուծոյ զօրութեանն, բարութեանն եւ իմաստութեան: "Գիրն վասն մահու հալածչացն,, գրեալ առ Դոնատոս խոստովանող՝ ցուցանել ի մահուց անտի Դիոկղետիանոսի, Գաղերիոյ եւ այլոց՝ զԱստուծոյ վրէժխնդրութիւնն եւ զճշմարտութիւն քրիստոնէութեանն: — Պրուդենտիոսի "Գիրք Բ. հակառակ Սիմմաքեայ,, հեթանոսի առ Վաղենտիանոս: — Յուլիոսի Ֆիրմիկեայ Մատեռնայ "Վասն մոլորութեան արտաքնոցն կրօնից,,: — Պաւղոսի Որոսիոսի "Է. Գիրք պատմութեանց,, որովք ջանայ մերժել զզրպարտութիւն հեթանոսացն որ զքրիստոնէութիւն դնէին պատճառս թշուառութեանցն յայնժամ ի վերայ հռոմէական տէրութեանն հասելոց: — Աւգոստինեայ՝ "Գ. Գիրք հակառակ Ակադեմականաց,, զորոց զսկեպտիկեան կարծիս քակեալ՝ յորդորէ զՌոմանիանոս առն գալ ի ճշմարիտն փիլիսոփայութիւն (ի քրիստոնէութիւն). "Գիրն առ Մանղիոս Թէոդորոս,, վասն երանելի կենաց զոր ի ծանօթութեան ճշմարտին Աստուծոյ դնէ հայրն. "Բ. Գիրք վասն կարգի,, առ Զենոբիոս՝ յորում ճառէ զնախախնամութենէ. "Մեկնութիւն վեցից խնդրոց հակառակ հեթանոսաց,, յորում

Digitized by Google

Նազիանզացւոյ "Երկու ճառք կամ թուղթք առ Կղեդոնիոս երէց հակառակ Ապողինարեայ,,: — Գրիգորի Նիւսացւոյ "Հակառակ Ապողինարեայ թուղթ առ Թէոփիղոս,, (եպիսկոպոս Աղեքսանդրացւոց). Նորին "Բան հակառակաճառական (ἀντιῤῥήτικος) ընդդէմ Ապողինարեայ,, յորում յոյժ հաւաստեաւ զաղանդոյն ճառէ: — Ոսկեբերանի "Թուղթ առ Կեսարիոս վանական,,: — Ս. Դամասոսի քահանայապետի թուղթ առ Պաւղինոս Անտիոքացի վասն կանոնաց հաւատոյ ընդդէմ Մակեդոնի, Եւնոմեայ եւ Ապողինարեայ [1]. Նորին "Թուղթ սիւնհոդոսական հակառակ Ապողինարեայ եւ Տիմոթեայ,,: — Ղեւոնդիոսի Բիւզանդացւոյ "Հակառակ այնոցիկ՝ որ զԱպողինարին բարբառեն,,:

Ընդդէմ փոքունց ոմանց հերձուածողաց (Պրիսկիղիանեանց, Հեղուիդեանց, Յովինիանեանց եւ Վիգիղանդեանց): — Ս. Սիրիկիոսի քահանայապետի "Թուղթ (7երորդ) հակառակ Յովինիանեայ հերետիկոսի,, առաքեալ առ այլ եւ այլ եպիսկոպոսունս, յորում զվարդապետութիւն Յովինիանու եւ զընկերացն ի մէջ բերեալ ծանուցանէ հրապարակաւ եւ զգլխաւոր վարդապետս մոլորութեանն այնորիկ դատապարտէ յանուանէ: — Ամբրոսիոսի եւ այլոց եպիսկոպոսաց "Թուղթ (42երորդ) առ Սիրիկիոս քահանայապետ,, յորում Յովինիանեայ մոլորութիւնք դատապարտին: — Երոնիմեայ "Գիր հակառակ Հեղուիդեայ,, եւ "Վասն մշտնջենաւոր կուսութեան Ս. Մարեմայ,,. դարձեալ "Գիրք Բ. հակառակ Յովինիանեայ,, եւ Պատասխանատուութիւն (վասն սորին գրոց) առ Պամմաքիոս. դարձեալ "Թուղթ առ Վիգիղանտիոս,, երէց Բարկինոնացի, եւ "Թուղթ (37երորդ) առ Ռիպարիոս,, երէց Տառակոնացի՝ որ գրեալ էր նմա թէ Վիգիղանտիոս սաստանէ զմեծարանս նշխարաց մարտիրոսացն եւ զհսկմունս քրիստոնէիցն առ գերեզմանօք նոցա. ասասաւին յորդորեալ գրէ Երոնիմոս "զԳիրսն ընդդէմ Վիգիղանտեայ,, ցուցեալ զսովորութիւն եկեղեցւոյ վասն պաշտաման սրբոց եւ մեծարանաց նշխարաց: — Որոսեայ՝ "Ազդեցութիւն վասն մոլորութեան Պրիսկիղղիանեանց եւ Որոգինեանց,, որ է թուղթ ինչ՝ յորում հարցանէ վասն նոցին զՕգոստինոս, եւ առ Օգոստինոս պատասխանի ի "Գիրսն առ Որոսիոս հակառակ Պրիսկիղղիանեանց եւ Որոգինեանց,,: — Ղեւոնի Մեծի "Թուղթ առ Տուրիբիոս,, հակառակ Պրիսկիղղիանեանց, եւ Տուրիբեայ եպիսկոպոսի Հիսպաղացւոյ "Թուղթ վասն աղանդոյն Պրիսկիղղիանեանց առ Իդակիոս եւ Կեպոնիոս,,: — Ս. Իղդեփոնսի Տոլետացւոյ "Գիր վասն անարատ կուսութեան երանելւոյն Մարիամու,,:

Հակառակ Պեղագեանց եւ Կէս Պեղագեանց: — Երոնիմեայ Թուղթ (43.) առ Կտեսիփոն եւ "Խօսք հակառակ Պեղագեանց,, ի գիրս Գ.: — Որոսիոսի "Բան պատասխանատուութեան հակառակ Պեղագեանց վասն անձնիշխանութեան,, յորում պատմէ հաւաստեաւ զսիւնհոդոսն Երուսաղեմացւոց (415): — Օգոստինեայ բազում են հակառակ Պեղագեանց ճառեանք. գլխաւորք ի նոցանէ "Վասն մեղացն արժանեաց եւ թողութեան եւ վասն մկրտութեան մանկանց առ Մարկեղղինոս գիրք Գ. Վասն ոգւոյ եւ գրոյ առ նոյն. Վասն բնութեան եւ շնորհաց. Վասն շնորհացն Քրիստոսի եւ սկզբնական մեղաց գիրք Բ. Վասն հարսանեաց եւ ցանկութեան. Վասն ոգւոյ եւ ծագման նորա հակառակ Յուղիանու (եպիսկոպոսի Եկղանենի) գիրք Զ. առ երկրորդ պատասխանին Յուղիանու գիրք Զ.,,: Պատրաստէր Օգոստինոս մեւս եւս գիր առ երրորդ պատասխանի Յուղիանու, այլ արգել զայն օրհաս նորա: — Մարեայ Մերկատորի

1 Տես վերագոյն եր. 360:

